ՀԱՅԿԱԿԱՆ ՄԱՏԵՆԱՇԱՐ
ԳԱԼՈՒՍՏ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆ ՀԻՄՆԱՐԿՈՒԹԵԱՆ

ՆԻԿՈՂԱՅՈՍ ԱԴՈՆՑ

# Ե Ր Կ Ե Ր

## Զ

(ԼՐԱՑՈՒՑԻՉ ՀԱՏՈՐ)

## ՀՐԱՊԱՐԱԿԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ
ԵՊՀ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
2012

ՀՏԴ 070
ԳՄԴ 76.12
Ա 205

Հրատարակության պատրաստեց
Պ. Հ. Հովհաննիսյանը

Աղոնց Ն. Գ.
Ա 205 Երկեր / Ն. Աղոնց; Խմբ.՝ Պ. Հ. Հովհաննիսյան; Թարգմ.՝ Վ. Ա. Դիլոյան, Գ. Ա. Մաղոյան, Օ. Ս. Վարդազարյան.- Եր.: ԵՊՀ հրատ., 2012:
Հատ. Ձ: Հրապարակախոսություն.- 540 էջ + 1 ներդիր.- (Հայկական մատենաշար):

*Նիկողայոս Աղոնցի երկերի վեցերորդ հատորն ընդգրկում է ականավոր հայագետի հրապարակախոսությունը: Ներկայացված ուսումնասիրություններից շատերը կարևոր ներդրում են հայ հասարակական-քաղաքական մտքի բնագավառում:*

*Հասցեագրվում է հայագետներին, քաղաքագետներին և ընթերցող հանրությանը:*

ՀՏԴ 070
ԳՄԴ 76.12

ISBN 978-5-8084-1643-7




*Խմբագրական հանձնաժողով՝*

**Հովհաննիսյան Պ. Հ.**
**Մադոյան Ա. Գ.**
**Սիմոնյան Ա. Հ.**
**Ստեփանյան Պ. Գ.**

*Հատորը հրատարակության պատրաստեց*

**Պ. Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԸ**

*Թարգմանիչներ՝*

**Վ. Ա. Դիլոյան**
**Գ. Ա. Մադոյան**
**Օ. Ս. Վարդազարյան**

## ՆԻԿՈՂԱՅՈՍ ԱԴՈՆՑԻ ՀՐԱՊԱՐԱԿԱԽՈՍԱԿԱՆ ԺԱՌԱՆԳՈՒԹՅՈՒՆԸ

2006-2012 թթ. ընթացքում Երևանի պետական համալսարանի հրատարակչությունը, «Գալուստ Կիւլպենկեան հիմնարկութեան» հայկական բաժանմունքի սիրահոժար նախաձեռնությամբ ու նյութական աջակցությամբ, ընթերցողի սեղանին դրեց ականավոր պատմաբան Նիկողայոս Ադոնցի Երկերի հինգհատորյակը[1]: Իրականություն դարձավ հայագետների բազում սերունդների մեծ ու անհնարին թվացող փափագը՝ Նիկողայոս Ադոնցի գրավոր հարուստ ժառանգությունը մոտ ու հասու դարձավ բազմահազար ընթերցողներին և գիտական հանրությանը: Լույս տեսած գրախոսականներից մեկում այն համարվեց «Մեծ անծանոթի երկրորդ հայտնությունն իր ժողովրդին»[2]:

Բնականաբար, հինգհատորյակը չի հավակնում և չէր էլ կարող հավակնել ամփոփելու Ադոնցի բազմաժանր ու բազմալեզու ժառանգության բոլոր կողմերը: Հինգ հատորյակից դուրս են մնացել պատմաբանի ստեղծագործությունների գլուխգործոցը՝ «Հայաստանը Հուստի-

[1] Տե՛ս Նիկողայոս Ադոնց, Երկեր հինգ հատորով, հատ. Ա (Պատմագիտական ուսումնասիրություններ), Երևան, 2006, 652 էջ: Հատ. Բ (Պատմա-բանասիրական ուսումնասիրություններ), Երևան, 2006, 680 էջ: Հատ. Գ (Հայերենագիտական ուսումնասիրություններ), Երևան, 2008, 688 էջ: Հատ. Դ (Քննական պատմություն Հայոց), Երևան, 2009, 720 էջ: Հատ. Ե (Հայ-բյուզանդական ուսումնասիրություններ), Երևան, 2012, 620 էջ: Հատորները (խմբագրական հանձնաժողով՝ Պ. Հ. Հովհաննիսյան, Ա. Գ. Մաղոյան, Ա. Հր. Սիմոնյան և և Պ. Գ. Ստեփանյան) հրատարակության է պատրաստել Պ. Հ. Հովհաննիսյանը:

[2] Տե՛ս հետևյալ գրախոսականները՝ Ա. Ե. Պետրոսյան, Նիկողայոս Ադոնց, Երկեր, հատ. Ա, «Պատմա-բանասիրական հանդես», 2006, № 3, էջ 280-285: Հ. Ժ. Հարությունյան, Նիկողայոս Ադոնցի Երկերի Ա հատորը, «Ազգ», օրաթերթ, 2007, 7 հուլիսի, № 127, էջ Ը; Նույնի՝ «Մի կարևոր հրատարակություն. Ն. Ադոնց, Երկեր, հատ. Գ», «Էջմիածին», 2008, № Ը, էջ 129-132; Նույնի՝ «Ն. Ադոնցի Երկերի Դ հատորի հրատարակումը», «Քրիստոնյա Հայաստան», երկշաբաթաթերթ, 2010, հունիս Ա, № 11, էջ 6: Ա. Գ. Քալաշյան, Նիկողայոս Ադոնց, Երկեր հինգ հատորով, հատ. Ա-Գ, «Բանբեր Երևանի համալսարանի», 2008, № 2, էջ 186-192; Նույնի՝ «Պատմաբանի երկրորդ հայտնությունը», «Էջմիածին», 2009, № Դ, էջ 119-126; Նույնի՝ «Ն. Ադոնցի Երկերի Բ հատորի վերաբերյալ», «Հայ ասավածաբան», տարեգիրք, Երևան, 2011, էջ 259-268 և այլն:

նիանոսի դարաշրջանում» մեծածավալ մենագրությունը[1], հրապարակախոսական երկասիրությունները[2], նամականին[3] և մի քանի մանր հետազոտություններ, որ ցրված են եվրոպական մասնագիտական տարեգրքերի ու ամսագրերի, մասնավորապես հայկական մամուլի («Նոր Դար», «Մշակ» և այլն) էջերում[4]: Բացի այդ, Ն. Ադոնցի թողոնում առկա են նաև սևագիր, հիմնականում անմշակ ուսումնասիրություններ: Դրանցից մի քանիսը, որ ավարտուն էին և հնարավորինս պատրաստ տպագրության, ընդգրկվեցին երկերի տարբեր (ինչպես նաև այս) հատորներում: Մյուսները թեև մեծ արժեք են ներկայացնում[5], սակայն կարոտ են մանրակրկիտ դասակարգման և ուսումնասիրության: Դա հայագիտության առաջնահերթ խնդիրներից է, որի համար բնակա-

---

[1] Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, СПб., 1908; 2$^{oe}$ изд., Ереван, 1971: Տե՛ս նաև նույնի անգլերեն թարգմանությունը, որն իրականացրել է Նինա Գարսոյանը (Lisbon, 1970) և Ա. Թ. ու Է. Հ. Խոնդկարյանների հայերեն թարգմանությունը (Երևան, 1987): Ի դեպ, 2009 թվականին Ս. Պետերբուրգի հայկական համայնքի նախաձեռնությամբ պատշաճ մակարդակով նշվել է մենագրության լույս ընծայման 100-ամյակը (տե՛ս «Новый взгляд на истории Армении». Сборник статей посвященный творчеству Николая Адонца, СПб., 2009).

[2] Այս բնագավառին վերաբերող Ն. Ադոնցի 16 ուսումնասիրություններ 1996 թ. մեկ գրքով լույս է ընծայել «Հայագիտակ» հրատարակչությունը (տե՛ս Ն. Ադոնց, Հայկական հարց, Երևան, 1996, 244 էջ):

[3] Ն. Ադոնցի առանձին նամակներ լույս են ընծայել Ռ. Դարբինյանը («Հայրենիք», 1963, № 5, էջ 21-26), Ա. Հ. Ադամյանը («Բանբեր Հայաստանի արխիվների», 1966, № 3, էջ 112-120), Պ. Հ. Հակոբյանը («Լրաբեր», ՀԽՍՀ ԳԱ հասարակ. գիտ., 1975, №11, էջ 82-111), Պ. Հ. Հովհաննիսյանը («Բանբեր Երևանի համալսարանի», 1988, № 3, էջ 87-96; «Հայկազյան Հայագիտական հանդես», հատ. ԺԳ, Բեյրութ, 1993, էջ 107-111; «Էջմիածին», 2003, № Ձ, էջ 100-109 և այլն:

[4] Երկերից դուրս մնացած աշխատանքներից հատկապես նշանակալից են Մ. Կանարի հեղինակակցությամբ տպագրված «Quelques nom de personnage Byzantins dans une piècedu poète arabe Abû Firâs», «Byzantion», 1936, t. XI, fasc. 2, p. 451-460 հոդվածը, «Ժան Բոդեն» ընկերության տարեգրքում լույս տեսած «L'aspect iranien du servage» («Ֆեոդալիզմի իրանական արտահայտությունը») ուսումնասիրությունը (տե՛ս «Recueil de la Société Jean Bodin», Bruxelles, 1937, p. 135-153), «Byzantion»-ում տպագրված մի քանի արժեքավոր գրախոսականներ (տե՛ս «Byzantion», 1933, t. VIII, p. 350-358; 1934, t. IX, p. 409-411) և այլն:

[5] Առանձնապես հետաքրքրություն են ներկայացնում «Հայոց լեզվի փոխհարաբերությունները իրանական և հաբեթական լեզուների հետ» (ֆրանսերեն, 20 էջ), «Տոներն ու սրբերի պաշտամունքը Հայոց եկեղեցում» (ֆրանսերեն, 178 էջ), «Տոնացույց» (հայերեն, 600 էջ), «Հայերենի ստուգաբանական բառարան» (ստուգաբանվել է 92 բառ), «Հայերեն արմատական բառարան» (անկանոն, խառնիխուռն, բազմաթիվ էջերի կորուստներով), «Հայերեն-վրացերեն բառարան» (37 էջ, անավարտ) և այլն (բոլորն էլ Համազգայինի Բեյրութի գրական պահոց, պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդ):

նաքար անհրաժեշտ են համապատասխան մասնագետներ, ժամանակ, պայմաններ ու հնարավորություններ:

Երևանի պետական համալսարանի հրատարակչությունը ձեռնամուխ է եղել մեծավաստակ պատմաբանի լայնընդգրկուն ժառանգության առավել քիչ հայտնի կողմերից մեկի՝ հրապարակախոսական ուսումնասիրությունների հրատարակությանը, որպես Երկերի 6-րդ հատոր: Առանձնակի գոհունակությամբ ենք շեշտում, որ դա հնարավոր է դարձել «Գալուստ Կիւլպենկեան հիմնարկութեան» սիրահոժար հոգողության շնորհիվ: Լիահույս ենք, որ «Գալուստ Կիւլպենկեան հիմնարկութիւն»-ը կաջակցի նաև Ադոնցի մյուս երկասիրությունների և մասնավորապես «Նամականու» հրատարակությանը:

Սույն 6-րդ հատորը համարյա ամբողջությամբ ամփոփում է այս բնագավառում Ադոնցի կատարած աշխատանքները: Այստեղ զետեղված 32 նյութերից միայն 16-ն էին նախապես լույս տեսել «Հայկական հարց» ժողովածուում (1996), մյուսները հրապարակվում են առաջին անգամ, մի քանիսն էլ թարգմանություններ են ռուսերենից:

Ն. Ադոնցի հրապարակախոսական աշխատանքները ստեղծվել են պատմական կոնկրետ միջավայրում, պատմական այս կամ այն իրադարձության ներգործության ներքո: Ուստի պատշաճ է, որ Ադոնցին նախ ներկայացնենք որպես հասարակականորեն ապրող և գործող անհատ, հետո նոր միայն արժևորենք միջավայրի արդյունք հանդիսացող հրապարակախոսական վաստակը:

Նիկողայոս Ադոնցի հայտնի կենսագրականներում մատնանշվում է սոսկ նրա գիտական գործունեության ընդհանուր նկարագիրը և երբեմն միայն առանձին տեղեկություններ են տրվում նրա կենսագրության մասին: Ուշադրությունից դուրս է մնացել պատմաբանի հրապարակախոսական ժառանգության բնութագիրը, ազգային-հասարակական գործունեությունը, որոնք էլ բնորոշում են նրան որպես անհատի, քաղաքացու և անմնացորդ հայրենասերի: Ադոնցը զուտ գրասենյակային գիտնական կամ զուտ լսարանային դասախոս չէր, նա միաժամանակ ազգային ու հասարակական գործիչ էր և երբեք չդարձավ կողքից դիտող ու դատողություններ անող:

Դեռևս համալսարանական ուսումնառության տարիներին նա կամա թե ակամա շփվում էր ազգային ինչ-ինչ կազմակերպությունների, միությունների, կուսակցությունների և անհատ գործիչների հետ: Իր հիմնական խնդիրը համարելով կրթություն ստանալն ու գիտական պարապմունքները՝ նա հաճախ հրաժարվում էր մասնակցել ուսանողական

հավաքույթներին, ստեպ կազմակերպվող դաշտախնջույքներին ու սրճարանային ժամանցներին: Փարիզյան ուսումնառության շրջանում նրա վրա ցնցող տպավորություն էին թողնում այն հայ ուսանողները, որոնք երկու-երեք տարի այնտեղ ապրելուց հետո, չէին կարողացել յուրացնել անգամ ֆրանսերենը, քանզի ամբողջությամբ զբաղված էին զվարճություններով ու աղմկարարությամբ: 1902 թ. գրած նամակներից մեկում նա դառնությամբ գրում է. «Կարծում եմ ուսանողական շատ ակումբներ ժամանակի անտեղի վատնում են և կորուստ»: Դասերից, գիտական պարապմունքներից, գրքերից ու ձեռագրերից դուրս միակ բնագավառը, որ գրավում էր երիտասարդ Աղոնցին ու ստիպում մոռանալ առօրյա հոգսերը, ազգային-հասարակական կյանքն էր: Փարիզում նա առիթ չէր կորցնում հաճախելու Հայկական հարցի առիթով կազմակերպվող հավաքույթներին՝ հետևելու Մինաս Չերազի, Անատոլ Ֆրանսի, Ժորժ Կլեմանսոյի, Ֆրանսիս դը Պրեսանսեի դասախոսություններին: Հատկանշական է, որ նա վճռականապես հրաժարվեց այդ տարիներին երիտասարդության շրջանում լայն տարածում գտած այս կամ այն քաղաքական կուսակցությանն անդամագրվելու միտումից՝ հավատարիմ մնալով համազգային գաղափարաբանությանն ու գործելակերպին:

Արտասահմանյան գիտական գործուղումից Ս. Պետերբուրգ վերադառնալուց անմիջապես հետո Աղոնցը ապրեց ոչ միայն գիտական, հրատարակչական[1], այլև ազգային-հասարակական լիարժեք ծանրաբեռնված կյանքով: 1904 թ. նա ընտրվեց Ս. Պետերբուրգի Հայոց եկեղեցական գույքերի վարչության անդամ, ապա՝ նախագահի տեղակալ: Տեղի եկեղեցական խորհուրդը տնօրինում էր որոշակի ֆինանսական միջոցներ, որ տրամադրում էր զանազան ազգային կարիքների, մասնավորապես աղքատ ուսանողների թոշակավորելու համար: 1904 թ. դեկտեմբերի 18-ին Ա. Չոպանյանին ուղղված նամակում Աղոնցը ներկայացնում է այս բնագավառում եկեղեցական խորհրդի որոշ գործառույթներ. «Տեղվույս եկեղեցական խորհուրդն ամեն տարի

[1] 1903-1904 թթ. Ս. Պետերբուրգում խմբագրել և հրատարակել է «Բանբեր գրականության և արվեստի» վեցամսյա հանդեսի զույգ (Ա. Չոպանյանի արտահայտությամբ՝ «սիրուն») հատորները: Գրական տնուրանալի ճաշակի, մեծ համառության ու ծրաջանության արդյունք այս հատորները անջնջելի հետք են թողել հայ մտքի անդաստանում և հասկանալի է, որ դրանում նախ և առաջ վիթխարի են անխոնջ խմբագրի ծառայությունները:

ավելի քան 17.000 ռուբլի կցոե ուսանողությանը»[1]: Յետաքրքրությունից զուրկ չէ այն հանգամանքը, որ Աղոնցի միջնորդությամբ է, որ Խորհուրդը նպաստ է նշանակել Սորբոնի համալսարանի գրականության բաժնի ուսանող, նշանավոր բանաստեղծ Սիամանթոյին. «Քանի որ Խորհուրդը սկզբունքով և գործով նպաստում է ուսանող երիտասարդության, ցանկալի կլիներ, որ նա հաճեր հարգելու պարոն Յարճանյանի խնդիրը: Նա միանգամայն արժանի է Ձեր օգնության, որովհետև ուսանող է, գրող և վերջապես՝ հիվանդ: Նրա ապագան կապված է հայ գրականության հետ և նրա կորուստը կորուստ է հայ գրականության համար»[2]: Աղոնցի գործունեության այս կողմի վերաբերյալ արժեքավոր են մասնավորապես Ս. Վրացյանի վկայությունները, որ այդ տարիներին սովորում էր Ս. Պետերբուրգի համալսարանի իրավաբանական ֆակուլտետում. «Ս. Պետերբուրգում հայ ուսանողությունը համախմբված էր տնտեսական գետնի վրա, այսպես կոչված «ժողով» միության մեջ: «ժողով»-ի կենտրոնը եկեղեցու շենքում էր, հոգաբարձության կից, որի կազմում էին գտնվում պրոֆ. Ն. Աղոնցի, պրոֆ. Վ. Վարդանյանի և իրավաբան Ա. Ասրիբեգյանի նման ականավոր դեմքեր, և որոնք գործում էին հաշտ ու համերաշխ, փոխադարձ վստահությամբ»[3]: Մեկ այլ ժամանակակից՝ Ե. Սարգսյանը, հավաստում է, որ եկեղեցական խորհուրդը կարևոր և շնորհակալ աշխատանք էր կատարում Ս. Պետերբուրգի հայոց կյանքում: Այն «զգալի ուշադրություն էր դարձնում հայ ուսանողության գործերին և թոշակներ ու նպաստներ էր բաժանում շուրջ 30-40 ուսանողների համար»[4]: Կարիքավոր ուսանողներին տրվելիք նպաստների սկզբունքը Աղոնցի առաջարկությամբ շուտով արմատապես խմբագրվում է: Խորհուրդը հանգում է այն կարևոր եզրակացության, որ «չքավորությունը տակավին բավարար հիմք չէ, որ ուսանողին օգնելու հարկավորությունը պարտավոր համարվի: Յայ եկեղեցու օգնություն հայցելու իրավունք ունենալու են միմիայն այն անձինք, որ ապագայում պիտանի են լինելու այս կամ այն մտքով հայ ազգին՝ նրա մերձավոր

---

[1] Ե. Չարենցի անվ. Գրականության և արվեստի թանգարան, Արշակ Չոպանյանի ֆոնդ, I, բաժին 133, № 26:

[2] ՀՀ Ազգային արխիվ, ֆոնդ 399, ց. 1, գ. 63:

[3] Ս. Վրացյան, Կյանքի ուղիներով. դեպքեր, դեմքեր, ապրումներ, գիրք Բ, Բեյրութ, 1960, էջ 116: Տե՛ս նաև «Հովիվ», ամսագիր, Թիֆլիս, 1908, № 26, էջ 408-409:

[4] Ե. Սարգսյան, Դեմքեր ու դեպքեր Պետրոգրադի կյանքից, տե՛ս «Հայրենիք», ամսագիր, 1965, էջ 46, հմմտ. Հ. Տերտերյան, Ինն ամիս Մայկոպում և փախուստ, «Հայրենիք», ամսագիր, 1955, № 5, էջ 55-59:

կարիքները դարմանելով»[1]: Դարձյալ Ադոնցի առաջարկով է, որ հայտնի դրամատեր Ա. Տարասովի կամքով Հայոց եկեղեցուն կտակված 60.000 ռուբլի գումարից 50 հազարը հատկացվում է Գևորգյան, իսկ 10 հազարը՝ Լազարյան ճեմարաններին: 1912 թ. խորհրդի տրամադրության ներքո եղած գումարներից 1000 ռուբլի է հատկացվում Գևորգյան ճեմարանին՝ դաշտային գյուղատնտեսական գործնական պարապմունքներ կազմակերպելու և ևս 1000 ռուբլի՝ ֆիզիկայի լաբորատորիայի համար սարքավորումներ գնելու[2]: Ընդառաջելով Երևանի փոխթեմակալ Խորեն եպ. Մուրադբեգյանի խնդրագրին՝ Խորհուրդը որոշակի նպաստներ է տրամադրում Երևանի Գայանյան օրիորդաց վարժարանի նյութական կարիքները հոգալու համար[3]: Նկատի ունենալով Անիի հնագիտական պեղումների գործընթացը արագացնելու անհրաժեշտությունը, ինչպես նաև Անիի եկեղեցիների մեծ մասի անմխիթար վիճակը՝ Ն. Ադոնցը Խորհրդի առջև հարց է բարձրացնում հանգանակությունների միջոցով դրանցից առավել վթարայինները լրիվ կամ մասնակի վերանորոգել: Խորհուրդը մի նշանակալից գումար է առանձնացնում այդ նպատակի համար, որից 1400 ռուբլի տրամադրվում է միայն հուշարձանների ընթացիկ նորոգությանը[4]:

1912 թ. հունիսին Ադոնցը Ամենայն Հայոց Գևորգ Ե նորընտիր կաթողիկոսին ուղեկցել է Ս. Պետերբուրգյան պաշտոնական հանդիպումների ժամանակ, իսկ հուլիսի 1-ին որպես Ս. Պետերբուրգի հայկական համայնքի ներկայացուցիչ Ս. Էջմիածնում մասնակցել Ամենայն Հայոց կաթողիկոսի օծման արարողությանը[5]:

Ն. Ադոնցի ազգային-հասարակական գործունեության ամենանշանակալից էջերն աղերսվում են «Սանկտ-Պետերբուրգի հայկական

---

[1] Ե. Չարենցի անվ. Գրականության և արվեստի թանգարան, Արշակ Չոպանյանի ֆոնդ, I բաժին 133, № 26:

[2] Տե՛ս «Արարատ», 1912, 2, փետրվար, էջ 191:

[3] ՀՀ Ազգային արխիվ, ֆոնդ 6, ց. 1, գ. 83, թ. 17:

[4] Տե՛ս «Հովիտ», շաբաթաթերթ, Թիֆլիս, 1912, № 28, էջ 454: Համեմատության համար նշենք, որ Անիի պեղումները ֆինանսավորող «Ռուսական կայսերական հնագիտական հանձնաժողովը» 1904-1909 թվականների համար հատկացրել էր ընդամենը 1400 ռուբլի (տե՛ս Ա. Մնացականյան, Նիկողայոս Մառը և հայկական ճարտարապետությունը, Երևան, 1969, էջ 17): Ն. Ադոնցի հետևողական ջանքերի շնորհիվ Ն. Մառի գլխավորած Անիի հնագիտական արշավախմբի հիմնական ֆինանսավորումը 1904-1917 թվականներին իրականացվել է Ս. Պետերբուրգի Հայկական եկեղեցական խորհրդի կողմից:

[5] «Արարատ», 1912, № VII-VIII, էջ 609:

խմբակ» կազմակերպությանը, որը կազմակերպվել էր 1907 թ. տեղի մի խումբ նշանավոր հայ մտավորականների ջանքերով: Խմբակի կանոնադրությունը նախապատրաստել էին Ն. Ադոնցը, Ս. Տիգրանյանը, Վ. Վարդանյանը: 1907 թ. դեկտեմբերի 14-ին քաղաքագլուխ գեներալ Դրաչևսկին հաստատում է խմբակի ծրագիրն ու կանոնադրությունը[1]: Խմբակն ուներ 216 անդամ, որոնց թվում էին Մ. Աճեմյանը, Ա. Ասրիբեգյանը, Ն. Ադոնցը, Ստ. Գուլիշամբարովը, Ալ. Թամանյանը, Մ. Պապաջանյանը, Վ. Սուրենյանցը, Ալ. Սպենդիարյանը, Ա. Սարուխանը, Հ. Սաղաթելյանը, Վ. Վարդանյանը, Գր. և Ս. Տիգրանյան եղբայրները և ուրիշներ: Խորհրդի նախագահ է ընտրվել Ս. Պետերբուրգի բժշկական ինստիտուտի պրոֆեսոր, Ռուսական բնախոսական ընկերության իսկական անդամ Վարդան Վարդանյանը (Վարդանով), իսկ փոխնախագահ՝ Նիկողայոս Ադոնցը: Խորհրդի նպատակն էր ռուսական լայն հանրությանը ծանոթացնել Հայաստանի պատմությանն ու մշակութային արժեքներին, պետական-քաղաքական շրջանների մոտ բարձրացնել հայ ժողովրդին հուզող խնդիրները և բարենպաստ կարծիք ստեղծել Արևմտյան Հայաստանում բարենորոգումներ անցկացնելու վերաբերյալ:

Ն. Ադոնցի ազգային-հասարակական գործունեության ասպարեզում նոր հորիզոններ են բացվում 1912 թվականին, երբ Բալկանյան պատերազմի թողած նպաստավոր տպավորությունների ներքո հայ հասարակական-քաղաքական շրջանակներում սկսվում են փայփայել Հայկական հարցի վերաբացման գաղափարներ: Ռուսական կողմը ևս ակտիվացնում է իր գործունեությունն այս բնագավառում: Ցարական դիվանագիտությունը ցանկանում էր ավելի գործնական կապեր հաստատել արևմտահայ հասարակական-մշակութային շրջանների հետ: Հենց այս ժամանակ է, որ ռուսական արտաքին գործոց նախարարության հանձնարարականներով Կ. Պոլիս են այցելում Պետական դումայի անդամ Մ. Պապաջանյանը, բժիշկ, հանրահայտ հասարակական գործիչ Հակոբ Զավրյանը, «Հայկական խմբակ»-ի անդամներ Ս. Տիգրանյանն ու Ն. Ադոնցը[2] և ուրիշներ:

---

[1] «Коммунист», газ., 1990, 25 ноября, с. 3.

[2] Երախտագիտությամբ նշում ենք, որ «Սանկտ-Պետերբուրգի հայկական խմբակ»-ի՝ Հայկական հարցին վերաբերող արձանագրությունների հինգ մեծածավալ հատորները (12 նոյեմբերի 1912-1917) ուսումնասիրելու համար մեզ է տրամադրել պրոֆ. Լ. Ա. Սարգսյանը: Այս անգնահատելի սկզբնաղբյուրը հավուր պատշաճի կհրատարակվի առաջիկայում:

Ն. Աղոնցը և Ս. Տիգրանյանը Կ. Պոլիս են ժամանում 1912 թ. տեմբերի վերջերին և գործնական մի շարք հանդիպումներ ուն Գր. Զոհրապի, Գ. Նորատունկյանի, Պ. Հալաճյանի, Մաղաքիա ար Օրմանյանի և պոլսահայ այլ ազգայինների հետ: Ինչպես ժամա շատ առաջավոր հայ հասարակական գործիչներ, այնպես էլ Ն. Աղ չափազանց հավատացած էր, թե առաջիկա բարենորոգում Արևմտյան Հայաստանում, կամ հայկական ինքնավարության կեր մը հնարավոր է սոսկ Ռուսաստանի հովանավորությամբ: Նա հա ված էր, որ հայերի ռուսական կողմնորոշումը միակ ճիշտ միջոց տվյալ իրադրության պայմաններում և ըստ այդմ էլ արևմտահայ ծիչներին խորհուրդ էր տալիս հետևելու այդ ուղենիշին:

Առաջին համաշխարհային պատերազմը և Հայոց ցեղասպա թյունը իրենց խոր կնիքն են թողնում Ն. Աղոնցի հասարակական-ղաքական գործունեության վրա: Նրա համար բացվում են գործ նոր, անծանոթ ասպարեզներ: Նա ամբողջովին ներգրավվում է Պ րոգրադի հայկական խմբակի աշխատանքներին, մասնակց արևմտահայ տարագիրների ու որբերի տեղավորման, նրանց նյու կան օժանդակություն ցույց տալու աշխատանքներին: Երբ 1916 սկզբներին ռուսական կառավարությունը միանվագ 250.000 ռուբլի կի է տրամադրում Հայոց Ազգային բյուրոյի որբանոցների բա հանձնախմբին, բյուրոյի նախագահ Մեսրոպ եպ. Տեր-Մովսիսյա անհրաժեշտ է համարում Ն. Աղոնցին և Վ. Վարդանյանին հանձնարա այդ գումարը բաժանելու որբանոցներ պահող կազմակերպություննե միջև[1]:

Ն. Աղոնցը կազմակերպչական կարևոր դերակատարություն է ու ցել 1916 թ. մայիսին Պետրոգրադում գումարված հայկական համ գումարի հրավիրման աշխատանքներին[2]: Բացի պրակտիկ գործունեւ թյունից, նա զբաղվում է նաև գիտատեսական հարցերով: Այդ շրջանո (1916-1917 թթ.) է, որ նա պետրոգրադյան ամսագրերում տպագրում խիստ ուշագրավ հոդվածներ՝ նվիրված Հայկական հարցին, որոնցո մատնանշում է դրա լուծման հնարավոր ուղիները[3]:

---

[1] Տե՛ս Լ. Ազատյան, Հայ որբերը Մեծ եղեռնի, Լոս Անջելես, 1995, էջ 48:

[2] Ив. Амиров, Армянский съезд, «Армянский вестник», 1916, № 12-13, с. 2 Համագումարի աշխատանքների մասին մանրամասն տե՛ս «Армянский вестник 1916, № 17-18.

[3] Տե՛ս նույն, էջ 124-139, 141-148:

1916 թ. ամռանը Ն. Մառի, Ա. Լոռու-Մելիք Քալանթարի, Հ. Օրբելու հետ Ադոնցը մասնակցում է Գիտությունների կայսերական ակադեմիայի հնագիտական այն արշավախմբին, որը գործուղվել էր ռուսական բանակների կողմից ազատագրված Մուշ, Էրզրում: Այնուհետև նույն թվականին ղեկավարում է Վանի հնագիտական արշավախումբը:

Այդ օրերին կատարած նրա գրառումներն ու օրագրությունը, որ պահվում են Համազգայինի Բեյրութի գրական պահոցում, ցույց են տալիս, թե որքան խորն է ապրել հայացետն իր ժողովրդին հասած դաժան հարվածները, որքան մտահոգ է եղել հայկական հինավուրց մշակույթի հետագա ճակատագրի համար: Այնքան ցնցող են տպավորությունները, որ նա օրեր շարունակ հայտնվել է անզգայության վիճակում. «Չգիտեմ ինչպես եմ շնչում և ինչպես եմ ապրում այս բոլորից հետո»,- գրում է նա նոթատետրում[1]: Սակայն այդ գրառումներում կան նաև հույսի ինչ-որ շողեր արթնացնող տողեր: Պատմաբանը լիահույս էր, թե այս արհավիրքն էլ կանցնի և ի վերջո հարազատ ժողովրդի մնացվածքը հնարավորություն կունենա վերադառնալու հինավուրց հայրենիք:

Այդ հույսերը հատկապես բորբոքվեցին, երբ Փետրվարյան հաղթական հեղափոխությամբ տապալվեցին ինքնակալական կարգերը: Այդ պահի գնահատմանը Ադոնցի նվիրած մտորումները, թեև ձեռագիր ու անավարտ, ցույց են տալիս, թե որքան նա ճիշտ է ըմբռնել Փետրվարի դերն ու նշանակությունը Ռուսաստանի ժողովուրդների կյանքում. «Ժամանակը ունակ չէ փոխելու պատմության դատավճիռը: Փետրվարյան հեղաշրջումը երազ չէ, այլ իրական իրադարձություն, որը կատարվեց ամբողջ աշխարհի աչքի առջև և ամբողջ Ռուսաստանի հավանությամբ: Բավական է հիշել Պետական դումայի առջևով անցնող հանդիսավոր երթը այն անձանց, որոնք ներկայացնում էին բոլոր կազմակերպություններին և ժողովրդական խավերին՝ բազմանշանակ ցույց՝ որի գլուխ կանգնած էին իրենք՝ հրաժարված կայսերական տան անդամները:

Փետրվարը՝ նոր Ռուսաստանի ծննդյան երկունքն է, եզրափակիչ ակորդը հին կարգերի և հիմքը նոր պետական շինարարության: Բոլշևիկյան ամպոտ ու թուխպ եղանակը հոգեվարքային ջղաձգություններ են, որ դատապարտված են մահվան:

---

[1] Տե՛ս Համազգայինի Բեյրութի գրական պահոց, պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդ, պահարան I, զզրոց Բ, թղթածրար 5:

Յուրաքանչյուր քաղաքական գործունեություն, որպեսզի բեղմնավոր լինի, պետք է որոշակի նպատակ ունենա, հատուկ արտահայտված խնդիր: Ներկայումս չի կարող լինել այլ և առավել իրական կարգախոս Ռուսաստանի վերածնությանն ուղղված համերաշխ աշխատանքի համար, քան փետրվարի 17-ի պատմական դատավճիռը, այն դատավճիռը, որի առջև գլուխ խոնարհեց անգամ երկրի տերն ինքը՝ պատմության թելադրանքի հստակ գիտակցությամբ»[1]:

Ժամանակի թելադրանքով է, որ ազգային անխոնջ գործիչը 1917 թ. մայիսին գործուն մասնակցություն է ունեցել հայկական զինվորական համաձնաժողովի ստեղծմանը, աջակցել գեներալ Յակոբ Բագրատունուն՝ հայկական բանակային կորպուսի կազմակերպման ուղղությամբ ձեռնարկված աշխատանքներին[2]: Ռ. Լեռնյանի (Լ. Նազարյանց) վկայությամբ 1917 թ. վերջերին Արոնցը Ռոստոմի (Ստ. Զորյան), Մ. Աճեմյանի և գեներալ Լ. Տիգրանյանի հետ կարևոր դերակատարություն է ունեցել Բրեստ-Լիտովսկի հաշտության բանակցությունների ժամանակ Յայկական հարցի վերաբերյալ Վահան Տերյանի տրամադրության ներքո գտնվող թղթածրարի ստեղծման աշխատանքներին[3]: Սակայն Արոնցին վիճակված չէր ապրել և ստեղծագործել բոլշևիկյան Ռուսաստանի իրականության պայմաններում, որի «ամպոտ ու թուխպ եղանակը» նրան էլ պարտադրեց վտարանդիի տխուր ճակատագիրը:

Տարագրության տարիներին ինչպես Լոնդոնում, այնպես էլ Փարիզում չընդհատվող գիտա-ստեղծագործական աշխատանքները զուգորդվում են ազգային-հասարակական անդուլ գործունեությանը, որի առանցքը շարունակում էին մնալ Յայկական հարցի հետ աղերսվող գործառույթները: Դրան նպաստում էր նաև այն իրողությունը, որ Փարիզում էր գտնվում Յայկական ազգային պատվիրակության կենտրոնատեղին: Պատվիրակության նախագահ Գ. Նորատունկյանը հիանալի

---

[1] Համազգայինի Բեյրութի գրական պահոց, պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդ, պահարան I, զզրոց Թ, թղթածրար Ա-8: Մեծ հետաքրքրություն է ներկայացնում հոդվածի մակագրություն. Ադոնցը նախապես այն ստորագրել է Politicus («Քաղաքագետ»), հետո ջնջել և մակագրել Humilis («Նվաստ»)՝ փակագծում հավաստելով իրական հեղինակին (Н. Адонц):

[2] Ա. Նազարյան, Հայկական զորամասերի կազմավորումը Կովկասյան ճակատում (1914-1918 թթ.), Երևան, 1999, էջ 99-100:

[3] Ռ. Լեռնյան, Իմ հուշերից, տե՛ս «Հայրենիք», տարեգիրք, Բոստոն, 1943, էջ 149-150:

գիտակցելով Աղոնցի ներկայության կարևորությունը՝ 1921 թ. դեկտեմբերի 3-ի գրությամբ դիմում է նրան աշխատակցության.

«Մեծարգո Տիար,

Մեր ազգային դատին կապված ինչ-ինչ իրավաքանական խնդիրներ սերտելու և պատրաստելու համար, Ազգային պատվիրակությունս հարկ տեսավ իրեն գործակից առնել իրավագետ-խորհրդականներու հանձնախումբ մը:

Ծանուցանելով Ձերդ ազնվությանը, թե անդամ նշանակված եք սույն հանձնախմբին, Պատվիրակությունս մեծ հույս ունի, որ չեք զլանար Ձեր փորձված կարողության և արժանյաց նպաստը բերել այս առթիվ իր աշխատությանց:

Մնան հատուկ հարգանոք
նախագահ
Գ. Նորատունկյան»[1]:

Առանց տատանվելու Ն. Ադոնցը հատուկ նամակով տալիս է իր համաձայնությունը.

«Առ Նախագահն
Ազգային պատվիրակության
Ազնիվ Տիար,

Ի պատասխան գրությանդ 3 դեկտեմբերի, սեպուհ պարտքս կհամարեմ վկայելու Ձերդ Գերազանցության հարգանացս հետ իմ պատրաստակամությունս՝ պիտանի լինել հիշածդ աշխատությանց Ձերդ տնօրինությամբ և իմս կարողության չափով:

Խնդրեմ ընդունեք հարգանացս
հավաստիքը
Ն. Ադոնց»[2]:

Ն. Ադոնցը համագործակցում է Ազգային պատվիրակության իրավագիտական հանձնախմբին, որի կազմում, բացի իրենից, ներգրավված էին նաև Մ. Պապաջանյանը, Գր. Սնապյանը և Մ. Ս. Դավիթ-Բեկը[3]: Ադոն-

[1] Համազգայինի Բեյրութի գրական պահոց, պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդ, պահարան I, ծրար Ե, Ա-8, թ. 22:
[2] ՀՀ Ազգային արխիվ, ֆոնդ 430, ց. 1, գ. 139, թ. 6:
[3] Անդ, ֆոնդ 430, ց. 1, գ. 139, թ. 2:

ցը Պատվիրակության համար կազմել է տեղեկագրեր, հուշագրեր՝ Հայաստանի սահմանների, բնակչության կազմի ու թվաքանակի վերաբերյալ: Նրա աշխատանքները հիմք են ծառայել Ազգային, իսկ այնուհետև Միացյալ պատվիրակության կողմից Ազգերի լիգայի Գերագույն խորհրդին ներկայացված բազմաթիվ փաստաթղթերի ու շրջաբերականների[1]: Պատմաբանը համագործակցում էր նաև Հայաստանի Հանրապետության պատվիրակության հետ: Բավական է միայն հիշատակել, որ 1921 թ. ապրիլի 7-ին Լոնդոնում Խորհրդային Ռուսաստանի արտաքին առևտրի ժողկոմ Լ. Բ. Կրասինի հետ հատուկ հանդիպմանը Ավ. Ահարոնյանը գնացել էր Ադոնցի ուղեկցությամբ[2]:

Տարագրության ընթացքում, հատկապես փարիզյան առաջին տասը տարիներին, Ադոնցը չխանգրող եռանդով շարունակում էր ապրել բուռն հասարակական-ազգային առօրյայով: 1920-1930-ական թվականների փարիզահայ միջավայրը համեմատության դյուզն իսկ եզր չուներ Սփյուռքի որևէ այլ համայնքի հետ: Այստեղ էին համախմբվել արևելահայ ու արևմտահայ տարագիր համարյա բոլոր աչքի ընկնող արվեստագետներն ու գրողները, հասարակական-քաղաքական գործիչները: Փարիզը հայկական գրական-մշակութային կյանքի մի ուրույն բոհեմ էր, որ Հայկական Տանիհինգից հետո առաջացած վհատությունը փարատելու ինչ-ինչ ճիգեր էր թափում: Այստեղ էին հանգրվանել Ավ. Ահարոնյանը, Մ. Աճեմյանը, Ա. Գյուլխանդանյանը, Կ. Զարյանը, Հովհ. Զավրյանը, Ա. Խան-Գորոյանը, Հ. Խան-Մասեհյանը, Ալ. Խատիսյանը, Ա. Խոնդկարյանը, Վ. Թորգոմյանը, Ավ. Իսահակյանը, Արր. Ղուկասյանը, Գ. Նորատունկյանը, Շահան Շահնուրը, Լևոն Շանթը, Վ. Շուշանյանը, Ա. Շահխաթունին, Մ. Պապաջանյանը, Պողոս Նուբարը, Ա. Ջամալյանը, Ս. Վրացյանը, Կ. Սասունին, Միք. Վարանդյանը, Օհան Կարոն և շատ ուրիշներ: Փարիզյան տարիները (1921-1931 թթ.) լի էին ոչ միայն գիտական-ստեղծագործական ակնհայտ նվաճումներով, այլև ազգային-հասարակական բուռն իրադարձություններով: Դեռևս տարագրության առաջին տարում (19 մայիսի 1921 թ.) հրավեր է ստանում մասնակցել Եվրոպայում «էջմիածնանպաստ հանգանակության կեդրոնական հանձնաժողովի» աշխատանքներին՝ «նկատի ունենալով Ձեր ջերմ վերաբերմունքը և նախանձախնդրությունը դեպի Մայր Աթոռի

---

[1] Տե՛ս սույն, էջ 230-235 և այլն:

[2] Ավ. Ահարոնյան, Սարդարապատից մինչև Սևր և Լոզան (քաղաքական օրագիր. 1919-1927 թթ.), Բ տպագր., Երևան, 2001, էջ 161-163:

պահպանությունն ու պայծառությունը»[1]: 1925 թ. ընտրվել է Փարիզի Հայոց թեմական «Կեդրոնական առժամյա վարչության անդամ»[2] և նպաստել հանուն Մայր Աթոռի նվիրատվությունների հանգանակությանը:

Ն. Ադոնցը գործուն մասնակցություն է ունեցել փարիզահայ գրական կյանքի բոլոր նշանակալից իրադարձություններին: Ինչպես Ս. Վրացյանն է փաստում՝ «Փրոֆ. Ն. Ադոնց ընտանի էր հայ գրականության մեջ: Ոչ միայն հին, այլև նոր մատենագրությունը լավ ուսումնասիրած էր և ուշի-ուշով կհետևեր նոր հեղինակներու երկերուն»[3]: 1928 թ. դեկտեմբերի 11-ին փարիզահայ մտավորականների խորհրդակցության ժամանակ հիմնադրվում է «Հայ գրական ակումբ» միությունը: Հատկանշական է, որ այդքան մի տեղ հավաքված գրողներից նա է ընտրվել գրական ակումբի նախագահ, իսկ ատենապետ՝ Վ. Թագվորյանը, խորհրդական՝ Ռ. Բերբերյանը, անդամներ՝ Լևոն Շանթը, Հ. Զավրյանը, Ա. Խոնդկարյանը, Ա. Վաչյանը, Մ. Տեր-Պետերյանը և ուրիշներ[4]: «Գրական ակումբ»-ի նիստերում մեծ հետաքրքրությամբ են լսվել Ադոնցի՝ «Նոր տարին և Նավասարդի տոնակատարությունները հայոց մեջ»[5], «Պռոշյանց ընտանիքը և Իսրայել Օրին»[6], «Մկրտիչ Պեշիկթաշլյանի մասին»[7], ինչպես նաև «Արտավան Արշակունի», «Հայերը բյուզանդական գիտության մեջ», «Խորենացու դերը գրականության մեջ» և այլ զեկուցումներ[8]: Ն. Ադոնցը ընտրվել է Ավետիս Ահարոնյանի քառասնամյա գրական գործունեության (1890-1930 թթ.) հոբելյանական կենտրոնական հանձնաժողովի գործադիր մարմնի նախագահ[9], Աստվա-

---

[1] Համազգայինի Բեյրութի գրական պահոց, պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդ, պահարան I, գզրոց Ե/Ա-8, թ. 6:

[2] Տե՛ս «Ընդարձակ օրացույց Ս. Փրկչյան հիվանդանոցի հայոց», Կ. Պոլիս, 1926, էջ 102:

[3] Ս. Վրացյան, Փրոֆ. Նիկողայոս Ադոնց, «Հայրենիք», օրաթերթ, 1942, 27 փետրվարի:

[4] «Փարիզի Հայ գրական ակումբ»-ի մասին մանրամասն տե՛ս «Յառաջ», օրաթերթ, 1928, 5 դեկտեմբերի:

[5] Նույնը, 1928, 29 դեկտեմբերի:

[6] Նույնը, 1929, 6 հունվարի:

[7] Նույնը, 1930, 27 նոյեմբերի:

[8] Տե՛ս «Հայ մշակույթի օրը», ժողովածու, Փարիզ, 1932, էջ 153-155:

[9] Տե՛ս «Յառաջ», 1929, 26 փետրվարի, հմմտ. «Հայրենիք», ամսագիր, 1929, № 6, ապրիլ, էջ 175: Գրողի 40-ամյա գրական գործունեությանը նվիրված հանդիսավոր նիստի ժամանակ Ն. Ադոնցի ելույթը տե՛ս «Յառաջ», 1930, 14 մայիսի:

ծաշնչի հայերեն թարգմանության 1500-ամյակի կենտրոնական հոբելյանական հանձնաժողովի փոխնախագահ[1], Րաֆֆու ծննդյան 100-ամյակի հոբելյանական կազմակերպիչ հանձնաժողովի (1935)[2], «Սասունցի Դավիթ էպոսի 1000-ամյակի» տոնակատարության (1939) և այլ հանձնաժողովների անդամ: Հրապարակային դասախոսություններ է կարդացել նշանավոր գրողներ Հակոբ Պարոնյանի[3] և Համաստեղի[4], միջնադարի ականավոր բժշկապետ Ամիրդովլաթ Ամասիացու[5], ազգային քարերար Մկրտիչ Սանասարյանի[6], Կարապետ Եզյանցի[7] և այլոց մասին: Չէր զլանում իր մասնակցությունը բերել երիտասարդ գրողների «Յառաջ» միության 1927 թ. Փարիզում հիմնադրած Սանասարյան ժողովրդական համալսարանի աշխատանքներին, որտեղ ղեկավարում էր հայագիտական բաժնի աշխատանքները և դասավանդում «Հայոց քննական պատմություն» (հնագույն շրջանից մինչև XIX դարի սկիզբը) ու «Հայ մատենագրություն» առարկաները[8]: Գրական, ուսանողական, երիտասարդական, կանանց, արվեստագիտական, հայրենակցական և այլ միությունների հրավերներով Փարիզում, Բրյուսելում բազմաթիվ

---

[1] Ամփոփիչ նիստում, որ տեղի է ունեցել 1936 թ. մարտի 29-ին Սորբոնի համալսարանի մեծ դահլիճում, Ադոնցը ներկայացրել է «Հայացած Աստվածաշունչը և նրա պատմական տարողությունը» զեկուցումը (տե՛ս «Անահիտ», ամսագիր, Փարիզ, 1936, № 3, ապրիլ-մայիս, էջ 16-23):

[2] Հոբելյանական հանդիսավոր նիստի ժամանակ Ն. Ադոնցը հանդես է եկել ընդարձակ զեկուցումով [տե՛ս «Րաֆֆի (Հակոբ Մելիք-Հակոբյան). Կյանքը, գրականությունը, հիշողություններ»], Փարիզ, 1937, էջ 122-148, հմմտ. «Հայրենիք», օրաթերթ, Բոստոն, 1938, 14 հունվարի:

[3] Ն. Ադոնց, Հակոբ Պարոնյանի գրականությունը (մահվան քառասնամյակի առթիվ), տե՛ս «Կյանք և արվեստ», տարեգիրք, Փարիզ, 1932, էջ 165:

[4] Ն. Ադոնց, Համաստեղի գրականության մասին, տե՛ս «Յառաջ», 1929, 1 մարտի: Հատկանշակա՛ն է Համաստեղի գրական ժառանգության Ադոնցյան գնահատականը, որն այժմեական է և չի կորցրել իր արժեքը. «Մինչև հիմա մեր վիպական գրականությունը եղած է ավելի շատ հրապարակագրություն: Այդ իհարկե պայմաններու արդյունք է: Մեր գրողները կյանքը նկարագրած են ոչ թե այնպես, ինչպես որ կա, այլ ինչպես որ կուզեն, որ ըլլար: Համաստեղի տեղը հայ գրականության մեջ, եթե շատ խորը մտնենք, Արոսյանի շարքին կրնանք դասել: Թե՛ Արոսյան և թե՛ Պռոշյանը մը նկարագրած են մեր գյուղը: Համաստեղ առաջին անգամ է, որ կկանգնի իսկական իրական պատվանդանի վրա, որ և պետք է կառուցանել նոր շենքը» (անդ):

[5] «Յառաջ», 1927, 7 հունիսի:

[6] Նույնը, 1927, 16 հունիսի:

[7] Նույնը, 1928, 7 հունիսի:

[8] «Յառաջ», 1928, 4 հունվարի, հմմտ. Հ. Բերբերյան, Փրոֆ. Ն. Ադոնց, «Զվարթնոց», տարեգիրք, Փարիզ, 1944, էջ 233:

պատասխանություններ է կարդացել հայ կյանքի ամենատարբեր հարցերի վերաբերյալ[1]:

Ն. Աղոնցը ոչ միայն գիտնական էր ու հանրային-ազգային գործիչ, այլև իսկատիպ հայրենասեր՝ «հայ յուր հոգու բոլոր էությամբ»[2]: Նա այն եզակի գործիչներից էր, որ անկախ հայրենի երկրի քաղաքական ու կուսակցական պատկանելիությունից, միանշանակ պաշտամունք, պատկառանք ու սեր ուներ նրա նկատմամբ: Ս. Վրացյանը ճիշտ է բնութագրել Աղոնց-գործչին. «Յակառակ, որ կպատկաներ պահպանողական ուղղության, իր լայնախոհ բնավորությամբ ան բարեկամներու լայն շրջանակ ուներ և՛ ազատամիտ-արմատականներու, և՛ Դաշնակցականներու և՛ նույնիսկ բոլշևիկների մեջ՝ չնայած որ վերջիններս անհանդուրժելի զրկանքներու ենթարկած էին զինքը»[3]:

Ինչպես արտասահմանյան տարագրությունից առաջ, այնպես էլ արտերկրում բոլոր պայմաններում հնարավորինս աշխատել է օգտակար լինել իր հեռավոր հայրենիքին՝ թե՛ նյութապես և թե՛ բարոյապես: Նրա նախաձեռնությամբ ու գործուն մասնակցությամբ է, որ 1926 թ. հոկտեմբերի 29-ին Փարիզում հրավիրվում է հասարակական, մշակութային, քաղաքական ճանաչված դեմքերի մի խորհրդակցություն՝ «Յայաստանի երկրաշարժի առթիվ օժանդակություն կազմակերպելու համար»: Ստեղծվում է աղետյալներին օգնելու կենտրոնական նպաստամատույց մի մարմին՝ բաղկացած չորս հոգուց (Նիկողայոս Աղոնց, Ալեքսանդր Խատիսյան, Արշակ Խան-Գորոյան, Վահրամ Թորգոմյան), որն անմիջապես միջոցառումներ է մշակում հանգանակություն կազմակերպելու ուղղությամբ[4]: Իր բազմաթիվ նամակներում, թղթակցություններում, ելույթներում ու բանախոսություններում սփյուռքահայությանը կոչ էր անում սատար կանգնել հայրենիքին՝ նրա պատմության այս ամենածանր ժամանակներից մեկում, հայրենիք, որ անկախ գույնից ու երանգավորումից միշտ էլ, հավիտենապես մնում է հայրենիք, օգտակար լինել նրա մշակութային-շինարարական առօրյային: 1928 թ. գրած նամակներից մեկում հստակորեն արտահայտում է իր հավատամքը. «Որքան և ծանր լինի հայ ժողովրդի դրությունն այդտեղ (այ-

---

[1] Տե՛ս «Հայ մշակույթի օր», Փարիզ, 1932, էջ 153-155; հմմտ. «Կյանք և արվեստ», տարեգիրք, Փարիզ, 1932, էջ 167:

[2] «Հասկ», 1954, № 3, էջ 87:

[3] Ս. Վրացյան, փրոֆ. Ն. Աղոնց, «Հայրենիք», օրաթերթ, 1942, 27 փետրվարի:

[4] «Յառաջ», 1926, 31 հոկտեմբերի, հմմտ. «Հայրենիք», ամսագիր, 1926, № 2, դեկտեմբեր, էջ 151:

սինքն Խորհրդային Հայաստանում – Պ. Հ.), դարձյալ հայրենիքն է, որ իր էությամբ լցնում է շատ պակաս և ամենից առաջ կորուստը, որին ենթարկված են հայրենիքից դուրս հածող (դեգերող – Պ. Հ.) ահագին բազմությունները: Հերոսական միջոցներ են հարկավոր նրանց փրկելու վերահաս ձուլումից և փչանալուց»[1]: Նույնը հավաստում է Աղոնցի երբեմնի ուսանող Արփիար Մեծիկյանը. «Այստեղ ավելորդ չեմ համարում ընդգծել Ն. Աղոնցի սերն ու գուրգուրանքը դեպի Մայր հայրենիքը: ... [Մի օր նա ինձ ասաց]. Արփիա՛ր, ինչ վերապահումներ էլ ունենանք ներկա Հայաստանի (այսինքն Խորհրդային Հայաստանի – Պ. Հ.) հանդեպ, չմոռանաս՝ սա հայության վերջին ապավենն է, վերջին հենարանը. կորցրինք այս – կկորցնենք ամենը, կանցնենք պատմության արխիվը, մահացած ազգերի շարքը»[2]: Հատկանշական է պատմաբանի վերջին նամակներից մեկը (15 ապրիլի, 1940 թ.), որն ուղղված էր «Հայրենիք» ամսագրի խմբագիր Ա. Չիլինգարյանին (Ռուբեն Դարբինյան). «Կարծում եմ, որ վատ չէր լինի, եթե սակավ մի պայքարող եռանդ խնայեիր, մտրակդ ծգեիր և ավելի հաշտ և սրտացավ աչքով նայեիր մեր աղքատիկ հայրենի հյուղին, մեր խեղճ սոխակեր հայրենիքին: Գիտես, որ մեր ժողովուրդն ուրիշ սնունդ չունի քան սոխը: Խոհեմություն չէ անձնպատակ քննադատություններով սառեցնել տարաշխարհիկ հայությունը հույսի միակ աղոտ ճրագեն, նրա ապագայի միակ երաշխիքեն»[3]: Աղոնցի վերջին օրերին ու ժամերին ականատես բուժող բժիշկ Մինաս Միսաքը, որ հարազատ զավակի նման մինչև վերջին պահը չէր հեռանում հիվանդի սնարից, վկայում է, որ նա մահացավ անտրտունջ ու ներողամիտ ոգիով. «Մահվանից մեկ շաբաթ առաջ սաստիկ տենդ ուներ և օրերով ուշքի չէր գալիս: Մի օր հանկարծ արթնացավ և բռնելով ձեռքս հարցրեց. ի՞նչ եղավ, Հայաստանի մասին տեղեկություններ պիտի բերեիր»[4]: Հայտնի է, որ մինչև վեջին օրերը, մինչև վերջին պահը մտքով հեռավոր հայրենիքի հետ էր:

Ն. Աղոնցի մահն անդառնալի կորուստ էր բովանդակ հայ մշակույթի, հայ հասարակական-քաղաքական մտքի, հայագիտության համար:

---

[1] «Բանբեր Հայաստանի արխիվների», 1966, № 3, էջ 112-120:

[2] Ա. Մեծիկյան, Նամակ Բելգիայից (28 օգոստոսի, 1963), տե՛ս «Սովետական Հայաստանը և սփյուռքահայությունը». Վավերագրեր, հրատարակության են պատրաստել Ս. Բեհբուդյանը և Խ. Գալստյանը, փաստաթուղթ № 27, «Բանբեր Հայաստանի արխիվների», 1970, № 2, էջ 52-53:

[3] «Հայրենիք», ամսագիր, 1963, մայիս, էջ 25-26:

[4] Տե՛ս Ն. Ադոնց, Հայկական հարց, Երևան, 1996, էջ 18-19:

Նրա մահն արձանագրող «Սիոն» պարբերականը շեշտել է. «Մեր օրերու մեծագույն կորուստն է ու երկրորդն է անիկա, Կոմիտասեն ետքը. անոնք մարդիկ էին, որոնք ազգ մը գտան»[1]:

*
* *

Նիկողայոս Ադոնցը գիտական գործունեություն է ծավալել XX դարի առաջին կեսին: Շուրջ 50-ամյա (1895-1940) գործունեության ընթացքում նա թողել է ավելի քան 150 ուսումնասիրություն, որոնք վերաբերում են հայագիտության համարյա բոլոր բնագավառներին՝ լեզվաբանությանը, գրականագիտությանը, բնագրագիտությանը, պատմական աշխարհագրությանը, կրոնին, եկեղեցուն և արվեստին, Հայաստանի քաղաքական ու տնտեսական պատմությանը (հնագույն ժամանակներից մինչև իր օրերը): Նա երևելի էր նաև բյուզանդագիտության բնագավառում և իրավամբ համարվում է այդ համակարգի մեծագույն և պատկառելի ներկայացուցիչներից, որն իր ուսումնասիրություններով արմատապես սրբագրեց հին բյուզանդագիտության կաղապարված, սրբազնացված բազում տեսակետներ:

Զարմանալի թարմ և ինքնատիպ է նաև Ն. Ադոնցի հրապարակախոսությունը: Սա բոլորովին նոր, անծանոթ լույսի ներքո է ներկայացնում համբավավոր մտավորականին: Ինչպես իր պատմագիտական ու բանասիրական ուսումնասիրություններում, այնպես էլ այս ասպարեզում Ադոնցի, որպես գիտնականի, առանձնահատկությունը կայանում է նրա զարմանալի հմտությունը համեմատական մեթոդի կիրառման բնագավառում, որը ոչ միայն հիմնարար ատաղձ էր ապահովում իր աշխատանքներին, այլև նոր լույս սփռում: Պատմաբանին նվիրված Մեծի Տանն Կիլիկիո կաթողիկոս Գարեգին Ա Հովսեփյանի գնահատական խոսքում շեշտվում է. «Նորա (Ն. Ադոնցի - Պ. Հ.) զարմանալի սրամտությամբ, հումորով լի, բանաստեղծական և հաճելի ձևակերպությամբ մտքերի զուգորդությունն ու շարահարությունը դարձնում են նորա գրվածքները հետաքրքրական և գրավիչ»[2]:

Բնականաբար, Ադոնցի բովանդակ ստեղծագործական ժառանգության մեջ իրենց առավել գրավչությամբ ու հետաքրքրությամբ, հրատապությամբ ու ազգային-քաղաքական հնչեղությամբ մասնավորա-

---

[1] «Սիոն», 1942, մայիս-հունիս, էջ 122:

[2] Գարեգին Ա կաթողիկոս, Պրոֆ. Ն. Ադոնց, «Հասկ», 1954, № 3, էջ 89:

պես պետք է աչքի ընկնեին հրապարակախոսական երկասիրությունները: Թեև նման աշխատանքների թիվը մեծ չէ (շուրջ չորս տասնյակ), սակայն դրանք պակաս կարևորություն չունեն, քան պատմագիտական երկերը: Թեմատիկ առումով դրանք կարելի է տրոհել երկու՝ Հայոց եկեղեցու պատմությանը և Հայկական հարցին ու Հայոց Մեծ եղեռնին նվիրված բաժինների:

Հանրահայտ է, որ Ադոնցը համարյա իր բոլոր աշխատություններում, ի շարս այլևայլ հիմնահարցերի, անդրադարձել է նաև Հայոց եկեղեցու պատմությանը վերաբերող խնդիրներին: Եվ դա խիստ բնական էր ու հասկանալի, քանզի եկեղեցու և ժողովրդի պատմությունը անխզելիորեն շաղկապված են միմյանց և մեկը հանդես է գալիս մյուսի հետ որպես մի ամբողջական համակարգ: Սակայն պատմաբանի գիտական ժառանգության մեջ սակավ չեն նաև այն էջերը, որոնք նվիրված են զուտ եկեղեցու պատմությանը, եկեղեցական մատենագիտությանն ու արվեստին, հոգևոր նշանավոր գործիչներին[1]: Նա չափազանց բարձր ու դրական է գնահատել եկեղեցու խաղացած դերն ու նշանակությունը հայոց կյանքում: Իր օրերում, երբ սովորական ու մոդայիկ էին դարձել ուրացումներն ու հարձակումները եկեղեցու և հոգևորականության դեմ և իրենց ազատական համարող մարդիկ աշխատում էին նսեմացնել այդ արժեքների նշանակությունը հայոց անցյալ, ներկա և ապագա կյանքում՝ Ադոնցն իր հրապարակախոսական երկերով հանդես է գալիս ի պաշտպանություն ոչ միայն եկեղեցուն, այլև ընդհանրապես ազգային ավանդույթներին, հայոց դավանանքին և ազգային այլ արժեքներին[2]: «Մեր եկեղեցին,- գրում է նա,- մեզ համար այն չէ, ինչ ուրիշների եկեղեցին իրենց համար: Հայոց եկեղեցին և ժողովուրդը անջատ գաղափարներ չեն, այլ մի մարմին, միևնույն: Հայոց եկեղեցին մեր գոյության խարիսխն է եղել անցյալում և այժմ էլ հիմք է մնում նույն ներկա

---

[1] Դրանցից կառանձնացնենք «Հայսմավուրք», «Ճառընտիր» ու «Ճաշոց» ժողովածուներին նվիրված ուսումնասիրությունները, «Գրիգոր Անավարզեցու տօնացոյց»-ը (բոլորն էլ ձեռագիր), ինչպես նաև «Գրիգոր Լուսավորիչ և Անակ Պարթև», «Հայոց առաքելությունը Հռնաց աշխարհում (Զ դար)», «Հայ - ծաթերի ծագման խնդիրը» (տե՛ս Ն. Ադոնց, Երկեր, հատ. Ա, Երևան, 2006), «Հայացած Աստվածաշունչը և անոր պատմական տարողությունը», «Ամպելիոս՝ Քերսոնի եպիսկոպոս» (տե՛ս Ն. Ադոնց, Երկեր, հատ. Բ, Երևան, 2006) և այլն:

[2] Տե՛ս «Մի էջ կաթողիկոսության մերձավոր անցյալից», «Հայոց եկեղեցու 1600-ամյակի նախօրեին», «Կաթողիկոսական ընտրություն և մամուլը», «Կեղծը քարքերի և մտքերի աշխարհում», «Ամենայն Հայոց կաթողիկոս Խորեն Ա-ի հիշատակին», «Տ. Թորգոմ Սրբազան պատրիարքի հիշատակին» (բոլորն էլ աստ):

դժնդակ պայմաններում. մի օղակ և կապ ցան և ցրիվ հայության»[1]: Դեռևս 1904 թ. նա գրել է. «Ազգային միակ հաստատություն լինելով (ներկա հանգամանքներում գրեթե միակը), եկեղեցին մեծ պատասխանատվություն ունի հասարակության առջև»[2]: Իսկ մեկ այլ առիթով շեշտել է. «Ոչինչ այնքան տաղտկալի չէ, քան այն տափակ ճշմարտության քարոզը, թե կրոնն ու ազգը տարբեր բաներ են: Ներկա պայմաններում ուղղակի հանցանք է նման քարոզը: Մեր ժողովրդի գիտակցության մեջ ազգն ու կրոնը ոչ միայն տարբերիչ չեն, այլև սերտիվ կապված են: Ոչ մի բանավոր հիմք չկա կարծելու, թե Հայ եկեղեցին այլևս ազգային գործոն չէ. նա եղել է և մնում է ամրակուռ գոտի հայության մեջքին»[3]:

Նա հատկապես կարևորել է Մայր Աթոռ Ս. Էջմիածնի գահակալների առանձնահատուկ առաքելությունը երկրի և ժողովրդի ճակատագրում. «Կաթողիկոսը,- գրել է նա 1911 թվականին,- Էջմիածնի վանահայրը չէ և ընտրվում է ոչ թե վանքի ագարակները ջրելու, ավազուտները շենացնելու կամ մի քանի եղուկ դպրոցներ կառավարելու: Ամենայն Հայոց հայրապետն ամենից առաջ ընդհանուր հայության վերին պահապանն է, նրա տառապած, բայց անաղարտ խղճի վկան աշխարհի առաջ, մարմնացած նշանաբանն ամենուրեք տարագիր ազգի բարոյական միության»[4]: Ն. Ադոնցին անչափ հուզել են 1930-ական թվականներին եկեղեցու շուրջ Հայրենիքում և Սփյուռքում տեղի ունեցող անցանկանալի իրադարձությունները: Առանձնակի մտահոգված էր Սփյուռքի ներեկեղեցական կյանքում պառակտման ախտանիշների ի հայտ գալով և հնարավոր բոլոր միջոցներով պայքարել եկեղեցական միասնության համար և պարսավել բաժանարարներին. «Անջատվել Էջմիածնից, տիասության վկայական է, այն կտանի մինչև մեռք: Եկեղեցու արժեքը, որպես ազգային գործոն, իր վարչական միության մեջ է, այն մի մարմին է»[5]: Պատմաբանի եզրակացությունը միանշանակ է. «Մենք այսօր և վաղվան համար պետք ունենք Ամերիկայում մի և միակ

---

[1] Տե՛ս աստ, էջ 283 (ընդգծումը մերն է - Պ. Հ.):

[2] Պ. Հ. Հովհաննիսյան, Ադոնցյան մասունքներ, «Հայկազյան Հայագիտական հանդես», հատ. ԺԳ, Բեյրութ, 1993, էջ 109:

[3] Ն. Ադոնց, Պեշիկթաշլյան և կցորդ խնդիրներ, «Հայրենիք» ամսագիր, Բոստոն, 1931, № 6, ապրիլ, էջ 91, հմմտ. «Ազդարար», օրաթերթ, Ստամբուլ, 1931, 24 ապրիլի:

[4] Աստ, էջ 76:

[5] Աստ, էջ 286:

եկեղեցու պետի, իբրև էջմիածնի ներկայացուցչի»[1]: Շեշտելով, թե ներկա իրադրության պայմաններում Ս. էջմիածինը ամայի է և անշուք, «թափուր իր զարդերից, բայց և այնպես փայլում է նրա Կաթողիկեի խաչը իր շուրջը ծավալված բարոյական սրբության մեջ: Պահում է իր վեհությունը, լուռ է, բայց որքա՜ն հնչեղ է այդ լռությունը. այն իր էությամբ մարդասիրական անսասան վկայություն է, քարից կառուցված մեծ Ավետարան է»[2]: Միաժամանակ նա զարմանալիորեն կանխատեսել էր, թե անպայման կգա այն օրը, երբ «կինչե փրկարար ժամը» և Ս. էջմիածինը, որ տառապում է իրավազրկության և բռնության լծի ներքո, դարձյալ կպերճանա: Ճիշտ է նկատել անվանի բանաստեղծ, պատմաբանի սան Մուշեղ Իշխանը, թե «Աղոնցի եկեղեցասիրությունը միայն դարավոր արժեքներու պահպանման և ազգային մտահոգությանց արդյունք չէր: Նա եկեղեցին կնկատեր մեր գոյության առաջին հիմնաքարը և մեր ինքնուրույն մշակույթի լավագույն ստեղծագործությունը: ... Հայ լեզվին չափ և գուցե անկե առաջ՝ Հայ եկեղեցիի դարավոր պարիսպներուն կուզեր կառչած տեսնել տարագիր հայ բեկորները»[3]:

Մինչև վերջին շունչը հայրենասեր պատմաբանը հավատարիմ մնաց իր իդեալներին, թե որևէ ազգ կենդանի է իր լեզվով, հավատքով ու պատմությամբ: Եվ ամեն ինչ արեց, որպեսզի կարևոր գիտական ուսումնասիրություններով ու հրապարակախոսական նոթերով իր նպաստը բերե այդ վեհ իդեալների իրականացմանը:

Ն. Աղոնցի Երկերի վեցերորդ հատորի նյութերի զգալի մասը վերաբերում է Հայկական հարցի և Մեծ Եղեռնի թեմատիկային: Անդրադառնալով հայ ժողովրդի մեծագույն ողբերգությանը, պատմաբանը փորձում է պատասխանել ամենաառաջնային հարցին՝ ովքե՞ր են մեղավորները, արդյո՞ք կարելի էր խուսափել գեհենից: Նա չի դիմում նման հարցադրումների ժամանակ կրկնված այնքան ծամծմված պատասխանի օգնությանը, թե «մեղավորներն են թուրքը, քուրդը, գերմանացին, Արևմուտքը, Ռուսաստանը և այլք»: Չժխտելով նշվածների մեղքի ու պատասխանատվության բաժինը՝ Աղոնցը հարցին մոտենում է այլ տեսանկյունից: Նա փորձում է անկողմնակալությամբ ի ցույց դնել և քննադատել նաև հայ քաղաքական ու կուսակցական կազմակերպու-

---

[1] «էջմիածին», 2009, № Ձ, էջ 105:

[2] Աստ, էջ 284:

[3] Մ. Իշխան, Փրոֆ. Նիկողայոս Աղոնց. հուշեր և տպավորություններ, տե՛ս Մ. Իշխան, Երեք մեծ հայեր, Բեյրութ, 1952, էջ 30-32:

թյունների որդեգրած ուղեգիծը, որ շատ դեպքերում կորստաբեր եղավ և պատճառներից մեկը տեղի ունեցածի: Իր ապագա ընդդիմախոսներին նա ցուցում է. «Քննադատությունը հասարակական առաջադիմության հիմն է և մեր սուրբ իրավունքը, բայց ոչ թե դատական վճիռներ արձակելու համար, այլ որպեսզի ըմբռնենք անցյալի խոտորումներն իրենց ծագումով և նորապես դարմանել աշխատենք»[1]: Առաջնորդվելով առաջադրված այս սկզբունքով, նա ստիպված էր փաստել. «Այսօր մենք մենակ ենք մեր դիակների հետ: Սգավոր ենք, Մեծ Եղեռնը մեր պարանոցին, մեղապարտ ենք բոլորս, ամեն ոք իր չափով, որը՝ գործով, որը՝ անգործությամբ»[2]: Պատմաբանի հայեցակետով Հայոց ողբերգությունը սկսվում է ճիշտ այն պահից, երբ հայկական վիլայեթների համար քաղաքական ծրագրեր սկսեցին մշակել դրսեցի հայերը. «Ազատագրական կոչը դրսեցի էր հղացումով և գործադրությամբ: Ճշմարիտ դարման էր, եթե կուզեք, որոշ հիվանդության դեմ ընդհանրապես, բայց ոչ նկատառյալ հիվանդի համար: Գաղափարը նման է բույսի և ծաղկում է իրեն հողում: Եթե ազատագրության ծառը ներածո չլիներ, այլ տեղական տունկ՝ տեղի սերմերից ծլած, Հայաստանը սպանդանոց չէր դառնա այնպիսի տկարությամբ:

... Անտարակույս շարժման ծրագրողներն ունեին պահանջած մակարդակը, բայց նույնչափ անտարակույս է, որ այն ժողովուրդը և հողը, որի համար ծրագրված էր շարժումը, չուներ նույն պատրաստականությունը»[3]: Պատմաբանի կարծիքով քաղաքական ու զինված պայքարի ժամանակ հաշվից դուրս պետք է մնան Աստված, ճակատագիր, արդարություն և բարոյական նման այլ կատեգորիաներ: Այն ժողովուրդը, որ հույսը դնում է նման բարոյական կատեգորիաների վրա, չի կարող հասնել որևէ հաջողության: Սրանք անտես, աներևույթ և անկշռելի ուժեր են, կարող են գալ և չգալ: Այդոնցը խստորեն քննադատում է այն հայ քաղաքական գործիչներին, որոնք հորդորում էին ապստամբել թուրքերի դեմ ասելով՝ «Սկսենք գործը, մնացածը Աստծո ձեռքին է: Հայաստանը աստղ ունի, երկնքում արդար Դատավոր կա»: Մերժելով նման խրատը՝ պատմաբանը նշում է, որ հայրենասիրություն, հույսը, հավատը, սերը հոգեկան առաջինաբարո կարևոր ազդակներ են, սակայն բավական չեն քաղաքական հաղթանակների հասնելու

---

[1] Աստ, էջ 250:

[2] Նույնը, էջ 261:

[3] Նույնը, էջ 256:

համար: Հնարավոր չէ մի երկրում, մի որևէ ժողովրդի մեջ ապստամբական լայն շարժումներ բորբոքել, որի հարյուրից իննսունինը երբեք հրացան չի տեսել և ծանոթ չէ զինվորականությանը: Հետևաբար նման պայմաններում «Վաղաժամ էին և՛ Հնչակների ղողանջը, և՛ Դրոշակների ծածանումը»[1]: Քննադատելով այն քաղաքական գործիչներին, ովքեր պնդում էին, թե մեծ տերությունները թիկունք կկանգնեն հայերին, ընկերվարական միջազգայինը (ինտերնացիոնալը) իրենց հետ է և ուրեմն բավական է բողոքի ցույցեր բարձրացնել, ըմբոստ պայթյուններ և արշավանքներ կազմակերպել և Թուրքիան խոստացած բարենորոգումները կիրագործի՝ Աղոնցը անհնարին էր համարում նման ճանապարհով հասնել հաջողության: Եզրակացությունը միանշանակ է՝ միակ ելքը զինվորագրվելն է. դանդաղ, անաղմուկ զինվելը, նախապատրաստվելը: Անհրաժեշտ է, որ ժողովրդի մեծ մասը, գոնե հարյուրից հիսունը, զենք օգտագործել գիտենա: Մենք կռվազան չենք,- գրում է նա,- սակայն պետք է սովորենք զենք օգտագործել: Ծանո[illegible]
խուսափենք: Պատեհությունից օգտվենք խոնարհ ճակատով ու համի բերանով: Պատրաստ և զգաստ լինենք, որպեսզի չկորչենք անփառունակ, կռվողների ոտքի տակ կոխան: Մեր զգաստությունը, պատրաստվածությունը, միասնությունը կլինեն մեծագույն հարգանք բյուրավոր զոհերի հիշատակին:

Բալկանյան առաջին պատերազմի շրջանում (1912-1913) վերաբացված Հայկական հարցն ամբողջովին կլանեց Աղոնցի ուշադրությունն ու առօրյան: Անգամ պաշտպանության պատրաստ դոկտորական ատենախոսությունն առժամանակ դրեց մի կողմ: Իր տեսական և պրակտիկ գործունեությամբ նա հայտնվում է իրադարձությունների կենտրոնում: Կառավարության հանձնարարությամբ Ն. Աղոնցը Ս. Տիգրանյանը, բժիշկ Հ. Զավրյանը և Պետական Դումայի պատգամավոր Մ. Պապաջանյանը 1912 թ. վերջերին այցելում են Կ. Պոլիս՝ տեղում հանդիպումներ ունենալու հայ հասարակական-քաղաքական գործիչների հետ, ճշգրտելու նրանց վերաբերմունքը Հայկական հարցի նկատմամբ և ծանոթանալու նրանց քաղաքական ակնկալություններին: Առաջնայինը արևմտահայ գործիչներին դեպի Ռուսաստան կողմնորոշելն էր: Հանձնարարությունը խիստ պատասխանատու էր և վկայում էր միաժամանակ Աղոնցի անկասկած վաստակած հեղինակության և վստա-

[1] Սստ, էջ 256:

հություն ու հավատ ներշնչելու ունակությունների մասին: Կ. Պոլսում հանդիպումների լայն ու բազմաշերտ շրջանակը (պատրիարք Հովհաննես եպ. Արշարունի, նախկին պատրիարք Մաղաքիա արքեպ. Օրմանյան, արտաքին գործոց նախարար Գաբրիել էֆենտի Նորատունկյան, հանրօգուտ շինությանց նախարար Պետրոս Հալաճյան, իրավաբան Գրիգոր Զոհրապ և ուրիշներ) վկայում է ռուսահայ բանագնացների առջև դրված լայն ծրագրերի մասին: Հատկապես հատկանշական են արևմտահայ ազգային վարչության ատենապետ Ստեփան Գարայանի հետ տեսակցության ժամանակ վերջինիս մտահոգիչ հետևյալ խոսքերը, որ բերում է Ն. Ադոնցը հաշվետվության մեջ. «Ներկա ժամանակներում մենք, որ վարում ենք հայ ժողովրդի քաղաքականությունը, չափից դուրս պատասխանատու պահ ենք ապրում: Արդյո՞ք ճիշտ ճանապարհ ենք ընտրում մենք, արդյո՞ք քաղաքական սխալ չենք գործում, հետևելով այդ և ոչ թե ուրիշ գծի: Այդ հարցին կպատասխանի ապագան»[1]: Այս խոսքերն Ադոնցն արձանագրել է 1913 թ. հունվարին: Իսկ տեսակցությունից ճիշտ երկու տարի անց սկսվեց արևմտահայերի Մեծ Եղեռնը: Տարիներ հետո պետք է խոստովաներ, որ ազգովին սխալ թույլ տվեցինք:

1916-1921 թվականները բացառիկ տեղ են գրավում պատմաբանի կենսագրության մեջ: Այդ տարիներին նա որևէ գիտական ուսումնասիրություն չի տպագրել և մի կողմ դնելով գիտական աշխատանքները՝ ամբողջովին նվիրվել է մի կողմից գաղթականներին տեղավորելու ջանքերին, մյուս կողմից՝ դարձյալ արծարծվող Հայկական հարցի նախապատրաստմանը, որն, իհարկե, այժմ ուներ այլ բովանդակություն, քան 1912-1914 թվականներին էր:

Բացի պրակտիկ գործունեությունից, Ադոնցը զբաղվում է նաև գիտատեսական հարցերով: Այդ ժամանակ է, որ նա պետրոգրադյան գիտաքաղաքական հայտնի ամսագրերում տպագրում է Հայկական հարցին նվիրված խիստ ուշագրավ մի քանի հոդվածներ: Առաջին հոդվածը՝ «Հայկական հարցը և գերմանական ծրագրերը», գրել է 1918 թ. մարտի առաջին կեսին, այն է Բրեստ-Լիտովսկի հաշտության պայմանագրից անմիջապես հետո: Այստեղ հեղինակը մանրամասն վերլուծում է Հայկական հարցում Ռուսաստանի որդեգրած քաղաքականության սկզբունքներն ու զարգացման հնարավոր միտումները, վեր հանում այդ երկրի պատասխանատվությունը Հայոց մեծ ողբերգության համա-

[1] Աստ, էջ 119:

տեքստում: «Մեծ եղեռնի միջոցով է, որ,- գրում է նա,- հայերը դառնապես վարձահատույց եղան դեպի Ռուսաստանն իրենց ձգտման ու համակրանքի համար: Օգտվելով պատերազմի ընձեռած հնարավորություններից՝ պատերազմի մեջ ներքաշված Թուրքիան այնպիսի ջարդեր սկսեց, որ ստիպեց մոռանալ նախկինում դարերով հայերին բաժին ընկած սարսափները»[1]:

Արդոնցի համոզմամբ, ցեղասպանության գլխավոր շարժառիթը Հայկական հարցի ուժգնացումն էր 1912-1914 թթ., ինչպես նաև հայերի շեշտված ռուսասիրությունը: «Հայ ազգաբնակչությունը հայկական նահանգներում ու ամբողջ Փոքր Ասիայում հիմնականում կոտորվեց, մասամբ էլ բռնի տեղահանվեց և քշվեց Սիրիայի ու Միջագետքի անապատները»: Արդոնցը օբյեկտիվորեն է ներկայացնում նաև Ռուսաստանի երկդիմի քաղաքականությունը ռազմաճակատային հայտնի իրադարձությունների կապակցությամբ: Նրա կարծիքով, Մեծ եղեռնի զոհերի թիվն ավելի քիչ կլիներ, եթե ռուսական բանակն «իր դանդաղ առաջխաղացումով ու արագ նահանջներով ծայրահեղության» չհասցներ երկրի ավերվածությունը:

Հայկական հարցի վերաբերյալ, ըստ էության, նույն քաղաքականությունն էր որդեգրել նաև նորաստեղծ խորհրդային Ռուսաստանի կառավարությունը: Արդոնցը մանրամասն վերլուծում է նոր իշխանությունների նշանավոր հրովարտակը արևմտահայոց ճակատագրի վերաբերյալ և գալիս այն ճիշտ եզրակացության, որ առանցքային տարբերություն գոյություն չունի, դեռ ավելին՝ աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը՝ խորհրդային Հանրապետությունը, հայերին հանձնում է աշխարհում ամենաբռնապետական պետությանը՝ թուրքական բռնակալությանը[2]: Պատմաբանը մանրամասն վերլուծելով աշխարհաքաղաքական այն բարդ պայմանները, որոնք նախորդեցին և հետևեցին Բրեստի հաշտության պայմանագրին՝ արձանագրում է այն իրողությունը, որ խորհրդային իշխանությունները որևէ կոնկրետ քայլ չձեռնարկեցին ի պաշտպանություն սեփական հրովարտակի և «նույնքան հեշտությամբ այն պատռեցին, ինչպես որ տվել էին»: Քննադատելով բոլշևիկների դիրքորոշումը Հայկական հարցի նկատմամբ, Արդոնցը դիպուկ նկատում է, որ նրանք այս էտապում կատարում են Պիղատոսի դերը և հորդորում «չլվանալ ձեռքերը թանաքով, այլ ձեռ-

[1] Աստ, էջ 126:

[2] Նույնը, էջ 141:

նարկել իրական քայլեր», որոնք կապահովեն ջարդերից մազապուրծ գաղթականների տարրական իրավունքներն ու ֆիզիկական գոյությունը: «Սոցիալիստական պետությունը,- գրում է նա,- իրավունք չունի աչք փակել հարյուր հազարավոր հայ տարագիրների տառապանքների հանդեպ, որոնք տառապում են Միջագետքի տափաստաններում: Եթե հաշտությունը իսկապես կայացել է, ապա այն պետք է վերադարձնի նրանց իրենց ավերված օջախները, և այդ մասին պետք է հոգ տանեն ամենից առաջ նրանք, ովքեր պայքարել և իրագործել է այդ հաշտությունը: Խաղաղասեր և ազատ չէ նա, որ մտածում է խաղաղության մասին միայն իր համար»[1]: Հայերի նկատմամբ Խորհրդային Ռուսաստանի որդեգրած քաղաքականության Ադոնցյան գնահատականը որքան էլ որ անվերապահ է, այնքան էլ իրատեսական. «Ծանր և դառն է մտածել, որ աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը դուրս եկավ մի մուրճ, որ անսպասելի հարվածով կռեց Հայաստանի ստրկության արդեն ընկնող շղթաները»[2]:

Հայկական հարցին նվիրված Ադոնցի մյուս աշխատությունը՝ «Առաջավոր Ասիայի հիմնահարցի լուծման շուրջ», դարձյալ գրվել է Պետրոգրադում և դարձյալ 1918 թ. երկրորդ կեսին: Սակայն զանազան հանգամանքներ խանգարել են Ադոնցին հոդվածը հրատարակել 1918 թվականին: Նույն ճակատագրին է արժանացել նաև «Թուրքիայի անդամահատումը» հոդվածը՝ գրված 1918 թ. կեսերին, նախորդից քիչ ավելի ուշ: 1920 թ., երբ Ադոնցն արդեն բնակվում էր Լոնդոնում, նշված հոդվածները ներկայացնում է անգլիացի ընթերցողների ուշադրությանը, այն համոզմամբ, թե դրանց «տեսական հետաքրքրությունը մնում է ուժի մեջ»: Հոդվածները, մեկ այլ ուսումնասիրության հետ, Ադոնցը հրատարակել է առանձին գրքով[3]:

«Առաջավոր Ասիայի հիմնահարցի լուծման շուրջ» հոդվածում (ի դեպ, անգլերեն հրատարակության վերնագիրն է՝ «Հայկական հարցի պատմական հիմքը և Թուրքիայի անկումը») հեղինակը հետևողականորեն զարգացնում է այն տեսակետը, որ պատերազմի ավարտից հետո մեծ և հաղթող տերությունների կողմից նախապատրաստվող հաշտության բանակցություններում անպայմանորեն պետք է դրվի Թուրքիայի անդամահատության հարցը: Որպես պետություն, անշուշտ,

[1] Տե՛ս սատ, էջ 147:
[2] Նույնը, էջ 148:
[3] N. Adonz, Towards The Solution of the Armenian question, London, 1920.

Թուրքիան կարող է գոյատևել, սակայն տարածքային ոչ այն սահմաններում, որոնցում այժմ պարփակվում է կայսրությունը: Տրամաբանական է սպասել, որ արաբական երկրները կստանան քաղաքական անկախություն: Մերձավորարևելյան թուրքական տիրույթները կանջատվեն Թուրքիայից և կվերածվեն որպես միանգամայն անկախ նոր քաղաքական միավորներ՝ հնարավոր է եվրոպական որևէ պետության հովանավորության ներքո: Սպասելի է, որ տերությունները ի վերջո կպարտադրեն պարտված Թուրքիային, որպեսզի նա ճանաչի նաև Հայաստանի քաղաքական անկախությունը, որ կարելի կլինի կազմակերպել ռուսական զորքերի կողմից գրավյալ Արևմտյան Հայաստանի տարածքում: Դա, ըստ պատմաբանի, կլինի Հայկական հարցի միակ ճիշտ և տրամաբանական լուծումը: Թուրքիայի անդամահատումն անկասելի է,- գրում է հեղինակը,- միայն թե տերություններն իրենց մեջ ուժ գտնեն այն իրականություն դարձնելու ուղղությամբ: «Իսկ թուրքական իրավունքները պետք է ճանաչվեն միայն թուրքերով բնակեցված սահմաններում, մնացյալ հողերը, որոնք բնակեցված են այլ ժողովուրդներով, դուրս են բերվելու թուրքական իշխանության լծից»[1]:

Վերջապես մյուս հոդվածը՝ «Թուրքիայի անդամահատումը», իր առջև նպատակ է դրել կանխորոշելու պարտված Թուրքիայի ճակատագիրը: Հեղինակը կարծում է, թե տերությունները ճիշտ վարված կլինեն, եթե թուրքական պետության տարածք ճանաչեն ամբողջ Անատոլիան՝ մինչև Տրապիզոն-Ադանա գիծը: Այդ գծից արևելք տարածվում են հայկական հողերը՝ Փոքր Հայքը, Կիլիկիան և Մեծ Հայքը: Հայաստանը պետք է ընդգրկի Տրապիզոնի սանջակի արևելյան կեսը, Սվազը, Ադանա և Մարաշ սանջակները, ինչպես նաև Էրզրումի, Բիթլիսի, Խարբերդի վիլայեթները, Վանի սանջակն ու Դիարբեքիրի սանջակի մի մասը: Ահա նման սահմաններում արդարացի կլինի ստեղծել հայկական պետություն: Թուրքիայի տարածքում պետք է ստեղծել Սիրիա պետությունը՝ Լիբանանով հանդերձ: Բաղդադ և Բասրա վիլայեթները, Մոսուլի վիլայեթով հանդերձ հիմք կարող են ծառայել Արաբստան պետության կազմավորման համար: Մոսուլի, Հաքյարի սանջակները, Տիգրիսից արևելք ընկած տարածքները կկազմեն Քուրդիստան պետությունը:

[1] Նույն, էջ 180:

Այսպիսով, Օսմանյան կայսրության անդամահատմամբ ի հայտ կգան հետևյալ նոր պետությունները՝ Թուրքիա, Հայաստան, Արաբստան, Սիրիա և Քուրդիստան:

«Երբ Թուրքիայի հետ հաշիվները մաքրելու պահը գա,- գրում է Արնոնցը,- և դրվի Հայաստանի ազատագրման հարցը, ապա արդարության պարտքն է վերապահել հայերին տնօրինել իրենց և իրենց երկիրը»[1]:

Ցավոք, Արնոնցի այս տեսական կանխատեսումները, հատկապես Հայկական հարցի վերաբերմամբ, ապագայում իրենց լուծումը չստացան: Նա մեծ ճշտությամբ կանխատեսել է Սիրիայի և արաբական մյուս երկրների կազմավորման հնարավորությունը, սակայն ինչ վերաբերում է Հայաստանին և Քուրդիստանին, դրանք ոչ միայն չլուծվեցին, այլև հետագայում քրդերի համար ավարտվեց ցեղասպանությամբ, իսկ հայերի համար տարածքային կորուստներով:

1920 թ. ընթացքում լույս տեսավ պատմաբանի «Հայկական հարցը Սևրում» նշանակալից հոդվածը՝ զետեղված անգլերեն ժողովածուի մեջ: Պետք է խոստովանել, որ այն ցայսօր լավագույններից է համարվում Սևրին նվիրված գրականության մեջ: Անշուշտ, իրավացի է, Վ. Ա. Դիլոյանը, երբ գրում է, թե Արնոնցի «սույն աշխատությունը պատմագիտական, ազգագրական, քաղաքական, աշխարհագրական, տընտեսագիտական և հրապարակախոսական անուրանալի արժանիքներով օժտված մի գործ է, որը մինչև օրս էլ չի կորցրել իր արդիական նշանակությունը: Այս աշխատությամբ Արնոնցը մեր առջև հառնում է իբրև մի անաչառ հայրենասեր, որը գիտական օբյեկտիվությամբ հիմնավորում է իր ժողովրդի դատը, որը շարունակում է մնալ քաղաքակիրթ աշխարհի ճակատին դրոշմված մի խարան՝ մի ամբողջ ժողովրդի Գողգոթան հանիրավի մոռացության տալու համար»[2]: Սևրի պայմանագրի հայկական հոդվածներն այդպես էլ իրենց լուծումը չստացան և, փաստորեն, Հայկական հարցի լուծումը դարձյալ հետաձգվեց: «Ճիշտ այն պահին,- դառնորեն արձանագրում է պատմաբանը,- երբ ակնկալիքներ սպասում էինք թափած արյան գնին, մեր մար-

---

[1] Աստ, էջ 197:

[2] Վ. Ա. Դիլոյան, Թարգմանչի կողմից, տե՛ս Ն. Արնոնց, Հայկական հարցի լուծման շուրջ: Անգլերենից թարգմանեց և հրատարակության պատրաստեց Վ. Ա. Դիլոյանը, Երևան, 1989, էջ 10:

տիրոսության և մարդկային իրավունքների հաղթանակին, շրջմոլ բախտը մի անգամ ևս երեսը շրջեց մեզնից»[1]:

Սրանից հետո գրված հոդվածներում («Հողային զիջումներ Թու քիային», «Հայաստանի սահմանների խնդիրը», «Հայկական հար ների կողմերից մեկը», «Հայկական հարցը ամերիկյան սենատում» այլն) Արոնը անդրադարձել է Վ. Վիլսոնի «իրավարար պայման կարգին», Լոնդոնի և Լոզանի կոնֆերանսներում Հայկական հարցի ա ծարծումներին: Սրանցում խստորեն դատապարտել է Խորհրդային Ռ սաստանին, որն ամեն ինչ արեց կործանելու Հայաստանի Հանր պետությունը, որի արդյունքում «երազների բոցավառ խարույկից մնա միայն մի աղոտ ճրագ, որ առկայծում է Արագածի ստորոտին, ավա այնքա՜ն թույլ, որ նրա շողերը հազիվ են հասնում մինչև Արաքսի ջրե և անզոր են լուսավորելու Մասիսի մռայլ ճակատը, անուժ ճեղքելու ա կողմ տիրող որբ և ամայի մթությունը...»[2]:

Ինչպես համոզվեցինք, հարուստ ու բազմաժանր է Ն. Արոնցի հր պարակախոսական ժառանգությունը: Նա հարստացրել է հայ հաս րակական-քաղաքագիտական միտքը, որպես այսօր է ընդունված աս քաղաքական հայագիտությունը, անանց ու մնայուն արժեքներ Մեծագույն հայագետի մասին սույն ակնարկը ցանկանում ե ավարտել Մուշեղ Իշխանի գնահատականով. «Չինք ճանչնալով կ րելի էր սիրել Հայոց աշխարհը և խորաչափել մասամբ անոր անհո գանձարանին հարստությունները: Արոնց կներկայանար իբրև իր մա երկրին արժանավոր զավակը, ուժեղ և կենսահորդ ժառանգատեր Կզգայիր, թե ան իր սրտին ու ձեռքերուն մեջ բռնած է դարերուն հ ոգեղեն ամբողջ վաստակը, սնած անով և նոր իմաստությամբ մը կյանքը նվիրաբերած անոր բարգավաճության»[3]:

*
* *

Ն. Արոնցի երկերի սույն վեցերորդ հատորում զետեղված պատմաբանի հրապարակախոսության մեզ հայտնի բոլոր միավո ները: Չենք կասկածում, որ կան նաև այլ միավորներ, մանավանդ 191 1918 թթ. ռուսական պարբերական մամուլի էջերում, սակայն, որոն

[1] Աստ, էջ 249:
[2] Նույն տեղում:
[3] Մուշեղ Իշխան, նշվ. աշխ., էջ 17:

մեզ հասու չեն եղել: Առանձին փաստերից կարելի է ենթադրել, որ 1920-1930-ական թվականներին նա աշխատակցել է և հրապարակախոսական հոդվածներ է տպագրել նաև ռուսական վտարանդիական մամուլում:

Հատորի հավելվածում անհրաժեշտ համարեցինք տեղադրել «Դաշնակցության գործի» առնչությամբ քննչական մարմիններին Ադոնցի տված ցուցմունքը և «Կարապետ Եզով» արխիվային չտպագրված նյութերը, համազգային նշանակություն ունեցող առանձին հոբելյանների առիթով գրված ուղերձները, ինչպես նաև Ա. Բրոկհաուզի և Ի. Էֆրոնի «Հանրագիտական բառարան»-ի երկրորդ հրատարակության երրորդ հատորի համար գրված «Հայաստան», «Հայ գրականություն» և «Հայոց լեզու» հոդվածները: Թեև նշվածները պարունակում են հանրամատչելի գիտելիքներ և ունեն տեղեկատու բնույթ, սակայն գրված են ջերմ հայրենասիրական շնչով ու ազգային արժանապատվության զգացումով և հենց այդ առումով էլ բնութագրում են հոդվածագրին:

Հատորի նյութերը դասակարգված են ըստ պատմական ժամանակագրության: Մեր կողմից ավելացված կամ վերծանված բառերը դրվում են ուղիղ [ ] փակագծերի մեջ, իսկ կատարված ծանոթագրությունները, որոնց հերթական համարներն առնված են կլոր ( ) փակագծերի մեջ, տրվում են ծանոթագրությունների բաժնում: Հատորում զետեղված նյութերից շատերը հանված են ՀՀ Ազգային արխիվի տարբեր ֆոնդերից, իսկ 14-ը Համազգայինի Բեյրութի գրական պահոցի պրոֆ. Նիկողայոս Ադոնցի թղթոնից: Մեր շնորհակալությունն ենք հայտնում Համազգայինի Բեյրութի գրական պահոցի և Հայագիտական բարձրագույն հիմնարկի աշխատակիցներին, որոնք հնարավորություն ընձեռեցին ծանոթանալու Ն. Ադոնցի թղթոնի նյութերին: Առանձնակի երախտագիտությամբ ենք շեշտում հանգուցյալ պրոֆ. Վ. Ա. Դիլոյանի աշխատանքը, որի հմտալից թարգմանությունները շատ կողմերով նպաստեցին գործի հաջողությանը:

**ՊԵՏՐՈՍ Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**

## ՄԻ ԷՋ ԿԱԹՈՂԻԿՈՍՈՒԹՅԱՆ ՄԵՐՁԱՎՈՐ ԱՆՑՅԱԼԻՑ

Մելքիսեդեկ և Երեմիա եպիսկոպոսների թղթակցությունը կարող է մտքեր պղտորել, առանց հարկավոր լուսաբանության:

Ո՞վ են այս եպիսկոպոսները, ի՞նչ պայմաններում է տեղի ունեցել նրանց թղթակցությունը և ի՞նչ է վերջինիս հասարակական արժեքը և որքա՞ն հիմնավոր է Մակար կաթողիկոսի հասցեին ուղղված ամբաստանությունը:

Մելքիսեդեկ Զմյուռնիո առաջնորդ էր, երբ 1885 թ. կաթողիկոսական առաջին թեկնածու ընտրվեց (1): Երկրորդ թեկնածուն էր Քիշնևի և Բեսարաբիայի [թեմի] առաջնորդ Մակար արքեպիսկոպոսը՝ կաթողիկոսության տեղապահը (2): Ռուսաց կայսրը՝ Աղեքսանդր III-ը հաստատեց Մակար արքեպիսկոպոսի թեկնածությունը՝ հակառակ ընդունված սովորության, որով միշտ հավանություն էր տրվում առաջին ընտրյալին: Մերժված Մելքիսեդեկ եպիսկոպոսը դառնացավ, վրիպած տեսնելով մեծ պատվի առիթը: Դառնությունը հասկանալի էր և մարդկորեն ներելի: Լուսավորչի գահին արժանանալ՝ եզակի փառք է և տենչանքի վերջակետ ամեն մի եկեղեցականի համար: Մելքիսեդեկ, անպայման, մեծապես պիտի գնահատվեր և իր անվան ավելի մեծ շուք բերած կլիներ, եթե պարկեշտություն ունենար մնալու վեհ լռության մեջ, թողնելով իր համակիրներին ասել կամ անել ինչ որ հնար էր այս առթիվ: Տարաբախտաբար, նա այս փափկանկատությունը չունեցավ և ազատորեն հրապարակ նետվեց, անձամբ պաշտպանելու կորցրած դատը: Ներողամիտ մարդիկ, գիտակ մարդկային թերությունների, կարող էին պահանջկոտ չլինել նաև այս տկարության հանդեպ, եթե վշտացած եպիսկոպոսը պահեր գործը նեղ սահմաններում, բավականանալով հերքել կայսերական անվստահությունն իր անձին վրա: Սակայն Մելքիսեդեկ ավելի առաջեց անխոհեմության ուղիի վրա և ջանք չխնայեց համոզելու հայ աշխարհը, որ իր ձախողանքը մի սխալոր աղետ էր Հայ եկեղեցու և ազգի համար, մի անդարմանելի չարիք, որի բուն աղբյուրն է որպես թե Պոլոժենիա կոչված եկեղեցական կանոնագիրը[1], ուստի և ամեն ճիգ թափեց վարկաբեկ անելու Հայ եկեղեցու կանոնագիրը (3), այլև սևացնելու նորընտիր հայրապետին, առանց պատկառելու, որ իբր եկեղեցական պարտավոր էր հարգանք տածել իր մեծավորը, եկեղեցու պետը:

[1] Այստեղ և հետագայում ընդգծումները հեղինակինն են (Պ. Հ.):

Մակարի հայրապետության երրորդ տարին էր, 1888 թվին, երբ Կ. Պոլսում հրատարակվեց **«Երկու խոսք Ռուսաստանի հայոց կրոնական և կրթական վիճակին վրա»** գրությունը, ուր մոլար հայացքներ, բյուր դատողություններ և բուռն կիրք արձակ դաշտ են գտել (4):

Արդ, [Մելքիսեդեկի] Երեմիա արքեպիսկոպոսին (5) գրած թուղթն այլ բան չէ, քան ամփոփումն հիշյալ գրության: Մակար գահ բարձրացավ առանց լայն համակրանքի, առանց ժողովրդական ծափերի, բայց վարեց իր սրբազան պաշտոնը, ինչպես կտեսնենք, ամենայն արժանապատվությամբ, և թողեց բարի անուն և հիշատակ: Սակայն Մելքիսեդեկ և մի քանի ուրիշներ մնացին հառած իրենց համոզման: Հանգուցյալ հայրապետի (6) շիրիմը տակավին թարմ էր, երբ Մելքիսեդեկ հարկ տեսավ գրել Էջմիածին և կրկնել հին երգը: Թվում է, թե կաթողիկոսանալու փափագը դեռ սառած չէր: Նորորեն հիշեցնում է մոտիկ անցյալը, իր ընտրության և մերժումի պարագան, և չէ խորշում անվանարկելու մի անգամ ևս իր մեռած մրցորդին, որակելով նրան՝ «ռուս տերության արարած», որ «ստրկորեն ընդունեց օտարադավան վեհապետից կաթողիկոսությունը որպես մի ռուս մետրոպոլիտություն»: Մելքիսեդեկ սրբազանը կարծում է, որ «ռուս կառավարությունը «Պոլոժենիայի օրեն մտադրած է հափշտակել կաթողիկոսական ընտրության իրավունքը», որ «հայրապետական աթոռի գոյությունն անգամ վտանգի է ենթարկվում» և այս շնորհիվ ոչ միայն «օտարի բռնաբարության», այլ նաև «եկեղեցականաց անսիրելության և փառամոլության»: Վերջինս ուղղված է «Մակար սրբազանի օտարոտի գահակալության»: Ողբալով Էջմիածնի կացությունը, Մելքիսեդեկ հորդորում է զգաստանալ և դիմադրել ռուսական բռնության, որովհետև «Հայոց եկեղեցվո կյանքը դիմադրության մեջ է, հզոր դիմադրության»: Հետևապես դիմադրող, կռվի մարդ է հարկավոր Մայր Աթոռի վերա: Արիստակես եպիսկոպոսն (7) «անվանարկվում է որպես հետամուտ կաթողիկոսության»: Ասել է, թե Մելքիսեդեկ չէ հավատում Արիստակեսին վերագրած ձգտումին: Հարություն պատրիարքը (8) «վաճառել է ազգի ընտրական իրավունքը», [Խ.] Աշըգյան (9) «արդեն իսկ պատրաստական ծառա է ռուս քաղաքականության», Մ. Խրիմյանը՝ «զառամյալ ավելի հանգստյան կկարոտի քան պաշտոնի» (10): Ուրեմն, էլ ո՞վ մնաց հրապարակի վրա, արժանի կաթողիկոսության: Եզրակացությունը դժվար չէ:

Մելքիսեդեկի այս ընդդիմադրական քարոզը, եթե անկեղծ է և իր համոզումն է, ամեն պարագային մեծ իմաստություն չէ վարչական մարդու համար: Ինք որ իր երիտասարդության տոգորված լինելով այն գաղափարներով, որոնց զոհ գնացին Նալբանդյան (11) և ուրիշներ, չկարողացավ

պաշտպանել իր անձը և ստիպված եղավ թողնել Ռուսիան (12), այժմ կա
ծում է, որ հայրապետական գահին թիկնած դյուրին կլինի դիմադրությա
պաշտպանվել եկեղեցու իրավունքները: Հարկավ, դիմադրությունը պետք է, ե
հարկը պահանջում է: Մեզ այնպես է թվում, սակայն, որ եկեղեցին վարելու
իր շահերը պաշտպանելու մեծագույն արվեստը այն բարձր կարողությու
է, այն խոհական աչալրջությունը, որ բռնության և դիմադրության տեղիք
տալիս, պահելով եկեղեցին իր իրավունքի և պարտականության սահմա
ների մեջ, համաձայն ընդունված օրինագրի կամ կանոնագրի: Ռուս կ
ռավարության վերջին միջամտությունը եկեղեցական գործերի մեջ (
բնական հետևանք էր մեր եկեղեցականության վարչական ապիկարությ
Տրտունջն ու բողոքը արժան երևույթներ են և դարձան մեզանում մի գս
դարուն լաք սքողելու մեր սեփական անկարողությունը և նետելու ուրիշնե
վերա պատասխանատվության ծանրությունը: Այս կարգի են Պոլոժենիե
դեմ ուղղված գանգատները: Պետք է խոստովանել, որ Պոլոժենիան մի մ
բարիք էր Հայ եկեղեցու համար, մի կանոնագիր, որ հանում էր եկեղեցին
դարավոր շփոթ և խառնակ վիճակից: Կարիք չկա խորանալու պա
մության մեջ: Հիշենք միայն անմահ Պատմահոր խոսքերը Վաղարշակ
գավորի բերանից «ո՛չ կարգք ինչ աստ լեալ յայտնի, և ո՛չ մեհենից պաշտ
մունք. և ո՛չ գլխաւորաց աշխարհիս առաջինն յայտնի է, և ո՛չ վերջինն, և
այլ ինչ օրինաւոր, այլ խառն ի խուռն ամենայն և վայրենի» (14): Այս «վ
րենի» մթնոլորտում էր թավալում և հայ եկեղեցական կյանքը: Բյուզ
դական կայսրությունը, որի ժամանակ կրոնն ավելի մեծ հրապույր
ուներ, երբեք չհոժարեց հովանավորել Հայ եկեղեցին, զլացավ ճանա
պետական մարմին, թողեց եկեղեցին իր բախտին, պատրաստ միշտ բ
քայելու, հունական եպիսկոպոսություններ հաստատեց Հայաստանի
Սելջուկյան արշավանքը վերջ տվավ այս ավերիչ քաղաքականությ
հույն նվիրապետությունը վերացավ մեր երկրից: Մուսուլման տիրա
տության ներքո Հայ եկեղեցին շատ գարուններ տեսավ, շատ ձմեռնե
առանձնաշնորհումներ ունեցավ և զրկանքներ կրեց: Երբեք չկարողաց
այս թե այն պատճառով հաստատուն իրավակարգ մշակել, թողնելով ա
ինչ տեղի և ժամանակի պայմաններին և կաթողիկոսների անհատա
հնարավորություններին և օտար վեհապետների տրամադրություններին

Ռուսական կայսրությունն էր, որ Արարատյան դաշտը Մայր Աթ
գրավելուց հետո, հետամուտ եղավ դարմանել վիրավոր Հայ եկեղեցին,
նորմավորելով նրա ներքին կյանքն իր պատմական հիմքերի վրա: Տարի
շարունակ աշխատեց մոտեն ծանոթանալ նրա անցյալին, ավանդույթ
ներին և սովորույթներին, բարք ու վարքին, դիմեց մասնագետ հայեր

նրանց հանձնեց կազմել Հայ եկեղեցու համար հիմնական մի կանոնագիր: Շահան-Ջրպետը (Եդեսիայի հայ և Փարիզի Արևելյան լեզուների դպրոցի պրոֆեսոր, հրավիրված ուսուցիչ Ներսիսյան դպրոցի) (15) և Սերովբե եպիսկոպոս (16) պատրաստեցին մի նախագիծ (17): Ռուս կառավարությունը չշտապեց. նախագիծը նորանոր քննության ենթարկեց, լրջորեն ուսումնասիրեց բոլոր կետերը, կարևոր սրբագրություններ արավ գրեթե միշտ ի նպաստ Հայ եկեղեցու, և խմբագրությանն ավելի կատարյալ ձև տալով՝ հաստատեց և հրապարակեց կայսերական հրովարտակով 1836 թվի մարտի 11-ին:

Հայ բազմաչարչար եկեղեցին ելավ վերջապես ամեն տեսակ կամայականությունների շրջանակից և կանգնեց օրինական թմբի վրա: Կարգ ու կանոնն առաջին պայմանն է որևէ հաստատության, թե հասարակության առաջադիմության:

Նոր կանոնագիրն ոչնչով չէր մեղանչում Հայ եկեղեցու ավանդության կամ շահերի դեմ, այլ լրացնում էր կարևոր պակասները: Գուցե կատարյալ գործ չէր, բայց անկատարն ավելի լավ է, քան ոչինչը և ո՞վ է, որ պիտի մշակեր կատարյալը (18):

Արդ եկեղեցուն վիճակված այս բարեկարգությունն անգամ տրտունջի և բողոքի նյութ եղավ: Առաջինն եղավ Կ. Պոլսո պատրիարքը (19), որ դժգոհություն հայտնեց հախուռն կերպով, որ նորահաստատ սինոդը (20) սահմանափակում է հայոց հայրապետի միահեծան իշխանությունը: Բարեմիտ պատրիարքը մոռացել էր, որ իր իսկ պատրիարքարանի գոյությունն ամենամեծ սահմանափակումն էր հայրապետական միահեծանության, նրա իրավասությունից հանելով հայության խոշորագույն մասը: Բողոքը բացատրելու է թերևս այն անվստահությամբ, որ տիրում էր Պոլսի հայ շրջաններում հանդեպ Ռուսիո: Սակայն Սինոդ հաստատելու գաղափարը ծնվել էր սկզբնապես հայ գլուխներում և ոչ ռուս: Մինաս Լազարյանն էր (21) Էջմիածնի հավատարմատարը՝ Պետերբուրգ և իմաստուն խորհրդակիցը կաթողիկոսների, որ առաջին անգամ Սինոդի խնդիր հարուցեց: Դավիթ-Դանիելյան աղմուկները (22) ծանր տպավորություն էր թողել օտարների վրա, հինավուրց եկեղեցու վարկը արատավորելու չափ: Սրտացավ Լազարյանն առաջարկեց մի սինոդատարան հաստատել բարձրաստիճան եկեղեցականներից, մի հեղինակավոր մարմին, որ օժանդակ լիներ կաթողիկոսին և հսկեր հայրապետական կանոնավոր հաջորդության վերա, թույլ չտալով տխուր երևույթների կրկնությունը: Դանիել կաթողիկոս, հետո Եփրեմ կաթողիկոս (23), դիմեցին ռուս կառավարության նույն բաղձանքով: Առաջին դիմումը ստորագրած է ի միջի այլոց Ներսես վարդապետ, ապագա Ներսես Ե

կաթողիկոսը (24): Ռուսները ընթացք չավին խնդրին, այն սուկ պատճառով, որ Մայր Աթոռը տակավին ռուսական սահմաններից դուրս էր և անխոհեմություն կլիներ միջամտել օտար պետության մեջ նստող կաթողիկոսարանի գործերին: Իսկ երբ գրավեցին Երևանը, ձեռնամուխ եղան կարգի բերելու Հայ եկեղեցու վիճակը, որի հետևանքը եղավ, երկարամյա աշխատություններից հետո, 1836 թ. Պոլոժենիան:

Մատթեոս Ա կաթողիկոսը (25), ինչպես և Կ. Պոլսի պատրիարքը (26), հաշտ աչքով չնայեց նոր կանոնադրության վերա. վերաքննության ծրագիրներ պատրաստեցին, որոնց մասին կարելի է գաղափար կազմել Մատթեոս եպ. Իզմիրլյանի (27) ստորագրությամբ հրատարակված **«Տեղեկագիր կաթողիկոսական երկրորդ հանձնաժողովո առ ազգային ընդհանուր ժողովն»** (Կ. Պոլիս, 1883) զեկուցումից:

Կ. Պոլիս շարունակեց միշտ խեթ նայել Պոլոժենիային, չափազանցնելով նրա թերիքը և գրեթե ուրանալով անվիճելի արժանիքը: Մելքիսեդեկ եպիսկոպոսը ծայրահեղ դժգոհներից էր: Այնքան հեռու է գնում իր սրտմտության մեջ, որ կայսեր վերապահված իրավունքը՝ երկու թեկնածուից մեկը հաստատել, համարում է հափշտակություն ընտրական իրավունքի, ինչո՞ւ: Երկրորդ թեկնածուն փողոցից չէ առնված: Նա ևս ընտրված է ազգովին: Պետք է խոստովանել, որ ազգային ընտրական ժողովը շատ հետևողական է եղել իր ընտրության մեջ: Ներսես Ե-ի ընտրության ժամանակ, ինքը Ներսես հանձնարարեց ի միջի այլոց Մատթեոս եպիսկոպոսին և արդարև իրենից հետո նա կոչվեց Էջմիածին: Մատթեոսի երկրորդն էր Գևորգ եպիսկոպոս (28), և հաջորդ ընտրության նա գահ բարձրացավ: Խրիմյանի հետ թեկնածու էր Մատթեոս Իզմիրլյան, որ նրան հաջորդեց: Մնաց Մելքիսեդեկի դեպքը: Ներսես Վարժապետյանի (29) հետ երկրորդ թեկնածու էր ընտրվել Խրիմյան և ուրեմն, նա պետք է լիներ Ներսեսի հաջորդը: Սակայն շատերն ընդդիմացան նրան, մեծ համարում չունենալով նրա վարչական ձիրքերի մասին, և առաջ մղեցին Մակարի թեկնածությունը: Այսպիսով մրցությունը Խրիմյանի և Մակարի միջև էր: Մելքիսեդեկ բնավ մեծաքանակ համկիրներ չուներ, և նրա հաջողությունը պարզ հետևանք էր ընտրական խաղի, երբ բուն մրցորդները, հակառակորդին տապալելու նպատակով, ձայն են տալիս երկուստեք մի երրորդ անձի: Մակար ավելի քվե ստացավ, քան Խրիմյան, բայց մրցույթից օգտվեց Մելքիսեդեկ՝ համաձայն դասական առածի՝ «երկուսը կռվելիս, շահում է երրորդը» (30):

Մելքիսեդեկի հաղթությունը ձևական էր և հետևապես, պետք չէր այնքան աղմկել: Մակարի հաստատումը, սկզբունքի տեսակետեն ևս, չէր

բռնաբարում Հայ եկեղեցու «գերիշխանության» իրավունքը: Լինենք իրավախոհ: Օրենքի պահանջը՝ ներկայացնել երկու ընտրյալ, նշանակում է, որ կայսրն իրեն է վերապահում երկուսից մեկն ընտրելու վերջին իրավունքը: Հակառակ դեպքում, այսինքն՝ եթե հաստատողը պարտավոր է վավերացնել առաջին կոչված թեկնածուն, այն ժամանակ ի՞նչ իմաստ ունի երկուսի ընտրությունն ու ներկայացումը: Մյուս կողմից, հարկավ, անպատեհություն է տեսնել հաստատված երկրորդ և ոչ առաջին թեկնածուն: Միակ պատվավոր ելքը մնում է այն, որ ընտրական ժողովը կանգ առնի երկու հավասարարժեք անունների վերա՝ առանց «առաջին» և «երկրորդ» որակումի: Սրանով ազգային ձայնը և կայսրի հաճությունը կխուսափեին ընդհարումից: Իսկ եթե դժգոհ բծախնդիրը համառեր և խնդիր ծագեր օրինագրի կետը փոխելու, ո՞վ կարող էր երաշխավորել, որ կաթողիկոսի հաստատությունը չէր վերապահվի այս անգամ Երևանի նահանգապետին, նման նախկին խաներին, կամ Կովկասի կառավարչապետին, ինչ որ կլիներ խոշոր հարված Մայր Աթոռի արժանապատվության: Տակավին ռուսաց տիրապետության տակ չանցած, մեր կաթողիկոսները ձգտում էին հաստատվել Ռուսիո կայսեր կողմից՝ իրենց դիրքը բարձրացնելու համար: Պոլոժենիան իրականացրեց նրանց բաղձանքը: Ռուսական շահերին ընդդեմ չէր հովանավորել Հայ եկեղեցին: Կովկասի փոխարքաներ՝ իշխան Վորոնցով (31) և իր հաջորդ իշխան Բարյատինսկի (32) շատ բարյացակամ էին: Ներսես Աշտարակեցու մահից հետո, նոր կաթողիկոսի ընտրության առթիվ, իշխան Բարյատինսկի հարցնում էր Պետերբուրգի արքունիքը, թե ի՞նչ դիրք պետք է բռնել հայերի վերաբերմամբ և ի՞նչ քաղաքականության հետևել: Արդյո՞ք պետք է ստեղծել հայերից մի զորավոր և հավաք ազգություն՝ առաջացող ուրույնության շավղով և ընդունակ քաղաքական կարևոր կշիռ ունենալու արևելյան խնդիրներում, թե ընդհակառակը, գերադասելի է կասեցնել նրանց բարոյական զարգացումը մշտապես կայսերական հսկողության և թաթի տակ պահելու ցանկությամբ: Մի դեպքում, նույն իշխանի կարծիքով, կարևոր է, որ կաթողիկոսը լինի մի ազնիվ, լուսամիտ, հաստատ նկարագիր ունեցող մի դեմք, մյուս դեպքում՝ բավ է տեսնել հայրապետական գահի վերա անարժան մեն՝ բարոյապես վարկից զուրկ և պատրաստ ծառայելու զործիք ռուսաց քաղաքականության:

Մատթեոսի ընտրությունը և այն արտակարգ շքեղ ընդունելությունը, որին չէր արժանացել ոչ մի նորընտիր՝ առաջ և հետո, վկայում էին անխարդախ, որ առաջին տեսակետն է, որ հաղթանակել է: Իշխան Բարյատինսկին հայտնել էր արդեն իր հայացքը նախապես առաջին մինիստրին (33) ուղղված նամակում, թե պետք է հովանի լինել Հայ եկեղեցուն

և ազգության, որպեսզի կարելի լինի գրավել բուրքահայերի համակրանքը՝ ընդդեմ եվրոպական պետությունների ազդեցության: Տարաբախտաբար Մատթեոս Ա օրվան մարդը չեղավ և չկարողացավ շահավետել նպաստավոր տրամադրությունները և արժեցնել հայրապետական գահի նշանությունը: Մնաց մի միջնադարյան վանական, որ ավելի կրոնական գրքեր գրելով զբաղեց (34), քան վարչական գործերով: Անհմտությունը, թե Պոլսեն բերած նախապաշարմունքը Պոլոժենիայի նկատմամբ թույլ չավին նրան, փոխանակ քննադատելու, օգտվել լայնորեն այն բոլոր հնարավորություններից, որ տալիս էր Պոլոժենիան և ամուր հիմքերի վերա դնում գեր դպրոցական գործը:

Երևանի նահանգը գրավելուց հետո Պասկևիչն անգամ անհրաժեշտ էր համարում Էջմիածնում բանալ մի հոգևոր բարձր դպրոց Հայ եկեղեցու համար նոր և լուսավորյալ անձեր պատրաստելու համար: Իշխան Բարյատինսկին հիշյալ գրության մեջ հիշում է, որ Գաբրիել վարդ. Այվազյան (35) դպրոց է հիմնել Օդեսայում (36) և այն միտքն է հայտնում, որ թեև ռուս կառավարությունը միշտ թերահավատությամբ է վերաբերել դրսեն եկած ուսուցիչների և դաստիարակների վերա, բայց հայոց դպրոցին պետք է թողնել կատարյալ ազատություն, թե՛ ծրագրի և թե՛ ավանդության եղանակի վերաբերյալ, հայ միտքն ու համակրությունը շահելու դիտավորությամբ: Քիչ հետո Աղեքսանդր II-ի ազատարար շունչը փչեց համայն Ռուսիայի վերա: Բարեհաջող կացությունից հնար էր օգտվել և օժտել հայ ազգը սեփական կանոնավոր դպրոցներով և ապահովել հայ մշակույթի ու հայության ինքնուրույնությունը: Բայց թերացանք այդ սրբազան պարտքի և պահանջի մեջ: Պոլոժենիան հրահանգում է, որ Հայ եկեղեցու զավակների կրթության համար Ս. Էջմիածնի ամեն մի թեմում հաստատվում է հոգևոր դպրոց: Վեց թեմից երկուսը երբեք չունեցան պահանջված դպրոցը, իսկ մյուս թեմերի դպրոցները մնացին խղճուկ վիճակի մեջ, առանց մշակված և հաստատված ծրագրի, և անկարող հավասարվել պետական վարժարաններին: Ս. Էջմիածնի ճեմարանը հիմնվեց միայն 1874 թվին և եղավ ազգային կրթության հնոց կես դար շարունակ (37): Բարեկարգ դպրոցները կազմում են այժմ էլ մեր գոյության խարիսխը: Ի՞նչ կլիներ ներկա մեր մշակույթի վիճակը, եթե միջնակարգ հոգևոր դպրոցները կանգնած լինեին կրթական պահանջների բարձրության վերա: Ծխական դպրոցներն ավելի եղկելի դրության մեջ էին: Հնուց սովորություն էր, որ գյուղական եկեղեցիներում տեղական քահանան, թե տիրացուն ձմռան օրերին գեղջուկ երեխաներին գրել կարդալ էին սովորեցնում: Պոլոժենիան ընդունել էր, այդ սովորության համաձայն, որ ամեն մի եկեղեցի և վանք կարող է ունենալ

դպրոց: Սակայն ոչ-ոք փույթ չտարավ երեք գյուղական դպրոցների մասին մինչև Մատթեոս Ա, երբ հաստատվեցին հոգաբարձու մարմիններ և նրանց հանձնեցին գործը: Գևորգ Դ թեմական տեսուչներ նշանակեց՝ ընդհանուր հսկողության համար: Բայց և այնպես դրությունը մնաց խառնակ՝ ծրագրերի, ուսուցիչների պատրաստականության և նյութական միջոցների նկատմամբ: 1871-1872 թվականներին ռուսական վարժարանները նոր կազմակերպություն ստացան բաժանվելով երկու կարգի՝ գիմնազիա և ռեալական դպրոց: Գուցե մերձավոր առիթն այս վերանորոգության եղավ այն, որ ռուս կառավարությունը հրաման հանեց 1873 թ., որ բոլոր կարգի և ազգի վարժարանները՝ հաշված և հայ դպրոցները (բացի թեմական հոգևոր դպրոցներից) ենթակա են Լուսավորության նախարարության տնօրինությանը: Գևորգ Դ կաթողիկոսն հարկավոր բացատրություն տվեց կառավարության, որ դպրոցները եկեղեցական են և ոչ հասարակական և ըստ Պոլոժենիայի գտնվում են հայ հոգևոր իշխանության տեսչության ներքո: Կառավարությունը թողեց խնդիրը նախկին վիճակի մեջ, միայն պնդեց որ հոգևոր իշխանությունը պարտավոր է տարեկան հաշվետվություն ներկայացնել: Թվում է, որ ազգային իշխանությունը թերացավ, անփույթ գտնվեց այս պարտավորության հանդեպ, ուստի ռուս կառավարությունը քանիցս անգամ սաստելուց հետո 1884 թվին սուր կերպարանք տվեց հարցին՝ պահանջելով անմիջապես գործադրել նախարարության որոշումները հայ դպրոցների վերաբերյալ, և որովհետև Հայրապետական աթոռը թափուր էր, Սինոդը իրեն իրավասու չհամարեց միջամուխ լինել խնդրին մինչև նոր հայրապետի ընտրությունը: Կառավարությունը, անտեղի փութկոտությամբ, և բռնի միջոցներով փակեց դպրոցները 1885 թվին:

Այս անօրինակ բրտությունն անսպասելի չէր: Աղեքսանդր II կայսրի եղերական մահից հետո մի նոր և ազգայնամոլ հոսանք սկսվեց Աղեքսանդր III-ի օրով: Հայերի հանդեպ բռնած դիրքը բնավ չէր համապատասխանում այն տրամադրություններին, որ ստեղծել էր Հայկական հարցը՝ խրախուսելով քաղաքական շարժումը, փութացնել իրագործումն այն երազների, որ այնքան մոտալուտ էին թվում: Սկզբից ևեթ ռուսաց կառավարությունը թշնամական վերաբերմունք որդեգրեց դեպի հայ քաղաքական խանդավառությունը, շարունակեց աննվազ եռանդով իր անիմաստ քաղաքականությունը մինչև մեծ պատերազմը (38): Ռուս մոլեռանդության առաջին զոհը եղավ հայ դպրոցը: Հոգաբարձական աղմկալի ընտրությունները, մանավանդ գլխավոր քաղաքներում, անվերջ գանգատներ ուսուցիչներից, թե հոգաբարձուներից, որոնց լայն արձագանք էր տալիս անհեռատես մամուլը, այլ բանի չծառայեցին, քան կենտրոնացնել կառավարական ուշադ-

թությունը հայ դպրոցների վերա և, առավել, որ տեղական անբար-յացակամ ռուս պաշտոնեությունը պատրաստ էր ամեն կարգի բան-սարկություններ անել բարձր իշխանության հաճելի լինելու համար: Ռուս կառավարությունը բյուր տեղեկություններ ուներ հայոց դպրոցների թվի և տնտեսության մասին: Չափազանցրած կարծիք ուներ մանավանդ դպրոց-ների [նյութական] միջոցների և դրանց աղբյուրի մասին: Թերթերի աղ-մուկները տեղիք էին տվել կարծելու, որ միջոցները գլխավորապես ժո-ղովրդական են և կառավարությունը հույս ուներ դպրոցները գրավելուց հետո նախկին միջոցներով պահել նույն դպրոցները՝ Կովկասի շրջանային հոգաբարձության հսկողության տակ: Հիասթափումը մեծ էր, երբ Մայր Աթոռը բացատրեց, որ մեր դպրոցները ժողովրդական չեն և ոչ էլ սեփական գույք ունեն, այլ միայն եկեղեցական են, որովհետև պահվում են եկեղեցու հասույթներով: Հետևապես չար գործն առաջ տանելու համար մնում էր հարվածն ուղղել դեպի եկեղեցու սեփականությունը, պատրվակ բռնելով չարամիտ ամբաստանությունները, թե եկեղեցու հարստությունը ծառայում է սնուցանելու արտասահմանյան հեղափոխական կազմակերպություն-ներին: Հեռու չգնանք: Դառնանք Սելիխեղեկ եպիսկոպոսի մեղադրության:

Մակար արքեպիսկոպոսը [կաթողիկոս] ընտրվեց, երբ դպրոցներն ար-դեն փակված էին: Սելիխեղեկի կարծիքով «փակված դպրոցները Մակարի ձեռքով չբացվեցան, զի նա տերության արարածն էր» և «ծխական դպրոցներն իսկ պետական ծրագրի և հսկողության ենթարկվեցան»: Այստեղ դիտավորյալ շփոթ կա մեղադրականի մեջ: Փակված դպրոցները հենց նույն ծխական դպրոցներն էին, որ շնորհիվ Մակարի վերաբացվեցին: Անտեղյակ ընթերցողը պիտի կարծե, թե այլ էին բռնի փակված դպրոցները, որ փակ մնացին և այլ ծխական, որ նոր պատուհաս կրեցին՝ ենթարկվելով պետական հսկողության: Օծվելուց հետո Մակարի առաջին գործը եղավ դպրոցների խնդիրը: Խորհրդակցության հրավիրեց ձեռնհաս դեմքեր, ամենեն կարող մասնագետներ, ինչպես Սեդրակ Մանդինյան՝ նշանավոր մանկավարժ (39), Կարապետ Կոստանյանց՝ մեծանուն հայագետ (40), Արշակ Նահապետյան՝ ճեմարանի տեսուչ, հետագայում եկեղեցական (41), Ստեփանոս Պալասանյան՝ պատմագետ (42), և սրանցից կազմեց մի հատուկ հանձնաժողով, որին և հանձնեց խնդրի խորունկ և բազմակողմ ուսումնասիրությունը՝ մի քանի վանականների աջակցությամբ: Հանձնա-ժողովը ստուգեց վիճակագրական տեղեկությունները ծխական դպրոցների թվի և նյութական աղբյուրների մասին: Երկուհարյուրից ավելի չէին այն դպրոցները, որոնք կարող էին փոքրիշատե ապահով համարվել տնտե-սապես: Սրանց համար և մշակվեց ընդհանուր ծրագիր: Փակված

դպրոցները մեծ մասով նախակրթարաններ էին: Քաղաքների մեջ միայն կային ավելի թվով դասարաններ: Թիֆլիսում Գայանյան և Հովնանյան աղջկանց դպրոցները բացառիկ երևույթ էին իրենց վեց դասարաններով: Նոր դպրոցական ծրագիրն ընդունում էր հինգ տարվա դասավանդություն՝ Ա, Բ և Գ պատրաստական դասարաններ և Ա, Բ դասարաններ: Ավարտողները կարող էին շարունակել իրենց կրթությունը թեմական դպրոցներում: Ուսուցիչների վարձատրության խնդիրը ևս կանոնավոր և պարտավորիչ ձև ստացավ երկարգ կոպարների հաստատությամբ: Կառավարության շատ պահանջները չընդունվեցին պարտ ու պատշաճ բացատրությամբ:

1886 թվին, դպրոցները մի քանի ամիս փակ մնալուց հետո, բացեցին իրենց դռները, առանց արտաքին որևէ փոփոխության. նույն հոգաբարձությունները, նույն ուսուցիչները, նույն սովորույթները դպրոցական կյանքի: Մելքիսեդեկը սխալվում է կարծելով, որ հայ ուսուցիչների ընտրությունը պիտի կատարվեր այնուհետև Կովկասի շրջանի հոգաբարձուի գիտությամբ: Ընտրության եղանակը մնում էր նախկինը, այսինքն՝ վերապահվում էր հոգաբարձության, հսկողությունը պատկանում էր հոգևոր իշխանության:

Կովկասյան հոգաբարձուի պահանջն էր, որ ուսուցչական կազմի մեջ չսպրդեն անբաղձալի վարքի տեր անձեր, կամ օտարահպատակներ և զանազան փախստականներ կասկածելի անցյալով: Մերժել հոգաբարձուի ցանկությունը, նշանակում է անտեղի կասկածներ հարուցել ուսուցիչների վերաբերյալ: Ուսուցիչները մեծ մասամբ մեր դպրոցականներից էին, թեմական դպրոցներից և ճեմարանից:

Մանկավարժական գործին անձնվեր և անշահասեր անձեր էին, վեր կասկածից, և եթե իրենք քաշվում էին ռուսական աչքերից՝ միակ պատճառը հակառուսական տրամադրությունները չէին, այլ ռուսերենի անբավարար գիտությունը: Արդյո՞ք չընդմիջեց այնուհետև լուսավորությունը մեր դպրոցական գործերի մեջ, կամ վերջինները զգացին պետական հսկողության ծանրությունը: Երբեք: Հարցը տեսական կամ ձևական սկզբունքից այն կողմ չանցավ:

Հայոց պատմություն և աշխարհագրություն ավանդում էին թեմական դպրոցներում ինչպես ճեմարանում՝ երրորդ դասարանից սկսված: Հետևապես ծխական դպրոցներում նրանք տեղ չունեին: Ռուսաց պատմություն և աշխարհագրություն, ինչպես և ընդհանուր պատմություն և աշխարհագրություն ճեմարանում ավանդվում էին երկրորդ դասարանից: Ծխականները երկրորդ կամ վերջին տարին պարտավոր էին նույն առարկաների վերաբերյալ տարրական տեղեկություններ տալ, նայելով ուսուցչի կարողության:

Ռուսաց լեզվով կրոնի դասեր ավանդել հայ աշակերտներին՝ կաթողիկոսի կողմից չընդունվեց: Մելքիսեդեկի հոռի մարգարեությունը, թե երբևիցե պիտի նույն պահանջը գործադրվեր՝ երբեք չիրականացավ: Այս խնդիրը ծագել էր հայ ծնողների ամոքալի նախաձեռնությամբ: Կրոնը ռուս դպրոցներում առաջնակարգ առարկաների թվում էր, թեև շատ վատ է ավանդվում: Հայ տղաների վերաբերյալ հայ կրոնը նույն բարձր դիրքն ուներ: Կրոնագիտության թվանշանը համարվում էր հայտարար և՛ տղայի բարոյականության և՛ վարք ու բարքի: Պարտավորիչ էր, որ բոլորն էլ բարձր նիշ, այն է հինգ, ստանան, այլապես չէին կարող փոխել դասարանը և հասունության վկայական ստանալ: Մոսկվայում մի քանի անմիտ հայ ծնողներ, որոնց զավակները հայերեն չգիտեին և ցանկություն չունեին գեթ տառերը յուրացնել և մի քանի աղոթքներ անգիր անել, դիմեցին դպրոցի վարչության, խնդրելով, որ իրենց զավակները կրոնի դասերից հետևեին ռուս լեզվով՝ բարձր նշան և լավ վկայական ստանալու նպատակով: Ահա՛ խնդրի ցավոտ ծագումը: Ի՞նչ կարելի է սպասել հայ լեզվի ուսուցումից, երբ ցանկացողների թիվը շատ ավելի նվազ էր և դասարանը գրեթե դատարկ:

Ծանր կացությունից Մակար կաթողիկոսն ելավ պատվով, կատարեց ինչ-որ հնարավոր էր՝ առանց ցնցումների, առանց նոր անախորժությանց դուռ բանալու: Իրեն վիճակված դատը վարեց եկեղեցու պետին վայել մեղմությամբ: Խուսափեց բողոքավոր աղաղակներից, բայց և չիջավ լալկան աղերսողի նկունության: Կանգնած իր դիրքի բարձրության վերա՝ պաշտպանեց եկեղեցու իրավունքները դպրոցական խնդրում և չուրացավ նաև պետության պետական պատկան հսկողության իրավունքը, որպեսզի չզորացնե ավելի ևս այն անտեղի կասկածները, թե հայ դպրոցները հակապետական քարոզի հնոցներ են: Հայ դպրոցում գաղտնիք չկար, դռները բաց էին պետության առաջ: Թող գան հսկիչները և փարատեն իրենց անվստահությունը: Առանց հարձակողական ձևեր առնելու հայոց հայրապետը հանդարտորեն քննության առավ պաշտոնական առաջարկներն ու պահանջները և ներկայացրեց իր նկատողություններն որպես սրբագրություններ, ուղղումներ՝ փաստելով իր առարկություններն այնպիսի կուռ ու տրամաբանական դատողությամբ, որ հարկադրեց կառավարության, գործը հնարավոր հաջողությամբ պսակելու չափ:

Մակար կաթողիկոսը մեծ գիտության տեր չէր, բայց գիտեր մեծապես գնահատել գիտության արժեքը: Մ<այր> Աթոռի ժառանգավորաց դպրոցն իր սաների մեջ դաստիարակում էր անկեղծ սեր դեպի եկեղեցականի կոչումը և անշեղ հավատարմություն եկեղեցու սրբազան ավանդներին: Նույն հատկությամբ օժտված էին նույն դպրոցի գրեթե բոլոր իր ժամանակակից և

հետագա սաները: Կան գիտուն գլուխներ, որ պատասխանատու պաշտոնի կոչվելով, և վստահանալով միմիայն իրենց գիտության, ցանկացած գործնական արդյունք չեն տալիս: Եվ ընդհակառակը, հաճախ գիտությամբ պակասավորները դիմելով ավելի կարող անձերի օգնության, բեղմնավոր աշխատանք են կատարում: Մակար կաթողիկոսը, առաջին տարին նեք, շրջապատեց իրեն այն ժամանակվա ամենեն պատրաստված և հրապարակի վրա կանգնուն մտավոր բարձր ուժերով, նրանց հավատաց ճեմարանի ղեկը, և օգտվեց նրանց կարողությունից նաև հայրապետական գործերի մեջ: Վերջինի նկատմամբ հիշելու է հատկապես Պետրոս Սիմոնյանցի (43) մատուցած ծառայությունը: Սա խմբագիր էր «Մեղու Հայաստանի» [illegible] Մակարի և նրա թեկնածության ջերմեռանդ պաշտպան: Մակարի ընտրությունից հետո տեղափոխվեց Էջմիածին, ստանձնելով «Արարատ»-ի խմբագրությունը: Դատապարտողներ ունեցավ այս անպայման սխալ քայլի համար: Բայց ամեն պարագային պիտանի եղավ և վստահելի նեցուկ նորընտիր հայրապետին և, կարելի է ասել, գլխավոր թելադրիչ նրա վարչական գծի: Սիմոնյան փոքրահասակ և վտիտ մարմնով մի մարդ էր, բայց ծանրաբեռնված երկար տարիների փորձառությամբ և հայ կյանքի խորունկ գիտությամբ՝ այս թե այն կողմը սահմանի: Հայկական հարցի արևածագին, երբ օդը թնդում էր խուլ և լուռ աղաղակներով և <անհրաժեշտ էր> գծել գործունեության նոր և շառաչյուն ուղիներ ի սպաս նվիրական նպատակների, Սիմոնյան գրեթե միակն էր, որ մնաց անմասն ընդհանուր խանդավառության, շշնջալով՝ «հանդարտ կացեք, կկտորեն ժողովուրդը», ասաց ոչ հետնյալ մարգարեի շնչով, այլ նախիմաց հեռատեսության թռիչքով: Այս մարդը, խոհեմության այս վարպետը, իր տեղն ունի մեր մտավոր շարժումի պատմության մեջ, որի «Մեղու»-ն շատ հյութեղ ծաղիկներ է տվել մեր նոր կյանքի, նոր լեզվի առաջադիմության և անարդարություն է ուրանալ երախտավորի երախտիքը, և «հետադեմ ու խավարամիտ» բառեր նետելով, անցնել մոտեն:

Մակար կաթողիկոսի առաջ մի ուրիշ ծանր խնդիր կար: Գևորգ Դ-ի մահից հետո ճեմարանի տեսուչներ նշանակվեցին հաջորդաբար Աղափիրյանց եպիսկոպոսը (44), Մեսրոպ Սմբատյան եպիսկոպոսը (45), Սարգիս Գասպարյան Ապարանցին (46), Նիկողայոս Խոսրովյան (47), մեկը մյուսից ապիկար, անծանոթ դպրոցական գործին: Մակար կաթողիկոսն անօրինակ փայփայանք ունեցավ ճեմարանի հանդեպ: Հրավիրեց Արշակ Նահապետյանին տեսչի պաշտոնով (48): Ս. Պետերբուրգի համալսարանից էր, բնագիտական-մաթեմատիկական բաժինն ավարտած: Կ. Եզյանը (49) Ա. Նահապետյանին, Փիլ. Վարդանյանին (50) և Ս. Մանդինյանին պատրաստել

էր Սանասարյան դպրոցի (51) համար: Ինչ-ինչ պատճառով սրանք հրաժարվել էին գնալ Էրզրում: Երեքն էլ հրավիրվեցին [Գևորգյան] ճեմարան: Ռուս կառավարությունը պահանջել էր ունենալ ճեմարանի կանոնադրությունը: Ասել կուզեր, որ ճեմարանի վիճակն անորոշ էր և պահանջված ծրագիրը երբեք չէ ներկայացվել կառավարությանը: Ա. Նահապետյանն իր ընկերակիցների հետ միասին մշակեց ծրագիր, կազմեց մի գրություն, ուր մի առ մի հերքվում էր բոլոր այն լուտանքները, որ մութ ուժերը կուտակել էին ճեմարանի վերա՝ սկսած բարոն դը Նիկոլայից մինչև Կ. Պ. Ցանովսկին (52): Այս հին և կնճռոտ խնդիրը ևս իր լուծումն ստացավ:

Ուսուցչական կազմը թարմացավ Նահապետյանի օրով: Հրավիրվեցին նոր և թարմ ուժեր: Հիշենք՝ Հովհաննես Հովհաննիսյան՝ մեր անվանի բանաստեղծը (53), Եղիշե Մաղաքյան, որ տարաբախտաբար շուտով հիվանդացավ անբուժելի ցավով (54), Ստեփանոս Լիսիցյան (55), Հովհ. Սաղաթելյան (56), Խոջայան (57), Գասպարյան (58), Նիկողայոս Քարամյան (59), հետևից՝ Մկրտիչ Պալյան – նախկին մխիթարյան (60): Հրավիրվեց Մաղաքիա Օրմանյան (61), որ կարողացավ ճեմարանը դնել որպես մի տեղահան սյուն իր իսկական պատվանդանի վերա: Տասներեք տարի է անցել ճեմարանի հիմնադրության օրեն և <այն> տակավին ոչ մի սպասավոր չէր տվել եկեղեցուն, այնինչ ճեմարանի բուն նպատակներից մեկն էր և գլխավորը՝ պատրաստել լուսավոր եկեղեցականներ: Օրմանյան սրբազան թեև մի տարի միայն դասախոսեց ճեմարանում, բայց այդ էլ բավական եղավ, որ պանծացներ եկեղեցական բեմը, որպես անկաշկանդ գործունեության վեհ ասպարեզ, և ահա տարիների անպտուղ ծառը տվավ առաջին և ատոք բերքը: Ինքը՝ տեսուչ Ա. Նահապետյանն առաջին օրինակը տվավ և հագավ վանականի սև սքեմը: Նրան հետևեցին իր սիրելի աշակերտներից Կարապետ Տեր-Մկրտչյան (62), Գարեգին Հովսեփյան (63), Տիգրան Տեր-Հովհաննիսյան <Տիրայր արքեպիսկոպոս> (64), Գևորգ Չորեքչյան (65), Սողոմոն Գևորգյան <Կոմիտաս> (66), Լուսեղեն Զոհրաբյան <Հուսիկ եպիսկ. Ռումանիո> (67), Ղևոնդ Գյանջեցյան (68) և Մուշեղ Տեր-Գաբրիելյան (69): Վերջինս մեռավ երիտասարդ հասակում, իսկ Գյանջեցյան ակամա թողեց սքեմը:

# ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑՈՒ ՀԱԶԱՐԴԵՑՀԱՐՅՈՒՐԱՄՅԱԿԻ ՆԱԽՕՐԵԻՆ

*Edle Seele, entreiss dich dem Wahn*
*Und den himmlischen Glauben bewahre**.
**Schiller**

Եկեղեցու տոն տոնել այնպիսի ժամանակ, երբ քաղաքակրթության հառաջընթաց, կյանքի սև ու սպիտակին այնպե՛ս զգայուն ազգը բացարձակ մաքառ և հալածանք է հարուցել եկեղեցական ավանդների դեմ, նշանակե քերևս ումպետ և տարաժամ գործ կատարել: Սակայն դեռևս Պլատոնին խռովում էր այն միտքը, թե ինչ-որ ճշմարիտ է մի դեպքում, մի բանի համար, կարող էր ճշմարիտ լինել բոլորի նկատմամբ, և փիլիսոփան ավաղում էր, հասկանալով այն դառնությունը, որ ճշմարտությունն էլ հարաբերական է: Արդարև, ճշմարտություն ասածդ, մանավանդ ընկերական-հասարակական աշխարհում, լոկ ինչ-ինչ երևույթների հարաբերությունն է: Երևույթների փոփոխմամբ՝ փոփոխվում են նաև նոցա հարաբերությունները և ուրեմն ճշմարտությունը: Այս փոփոխումները առկախ են ո՛չ միայն տեղից և ժամանակից, այլ և այն հայեցակետից, որով մենք մերձենում ենք երևույթ- ները գնահատելու և նոցա իսկական արժեքն ու բնավորությունն ըմբռնելու: Առանց որոշ տեսակետի՝ նյութը կարելի է անվերջ ծամել, ինչպես որ ծամծմվեց ազգային եկեղեցու նշանակության խնդիրը, մինչև որ հասավ ձանձրույթի և անտարբերության, գրեթե լռությունը:

Հանրացած կարծիք է, որ կրոնն ազգության գործոններից չէ: Մի ազգի անվկանդ պահոնները, ասում են, լեզուն ու երկիրն է, իսկ կրոնն աննշանակ է: Տարբեր կրոնական համոզմունքի տեր մարդիկ կարող են միևնույն ազ- գության պատկանել: Այսպես՝ գերմանացին մնում է գերմանացի, լինի կա- թոլիկ, թե բողոքական: Նույնն է և հայի համար. ինչ կ’ուզե լինի դավանան- քով՝ լուսավորչական, թե՛ կաթոլիկ բողոքական, թե՛ հունադավան և նույնիսկ մահմեդական, փույթ չէ, սրանով նորա հայությունը չի խախտվում: Այս մի անխոս ճշմարտություն է համարվում:

Սակայն սխալ չէ և այն, անգիտություն կլիներ ուրանալ, որ կրոնն իր պատմական կյանքում ազգայնության խնդրի հանդիման այսպիսի վատուժ

* *Ազնիվ հոգի պոկվի՛ր մոլորությունից*
*Եվ պահպանի՛ր երկնային հավատը:*

և ապիկար իմն չէ եղել: Կրոնական նշանավոր վարդապետությունները, ուր որ երևացել են, որ ազգի մեջ որ ծնունդ են առել, միշտ հուժկու դրոշմ են թողել նորա վերա և իրենով միանգամայն բնորոշել ազգերի պատմական քաղաքակրթական ինքնահատկությունը: Մի՞թե կարելի է պնդել, որ հին հնդիկը հնդիկ կմնար ազգով, առանց անհրաժեշտորեն բրահմանական կամ բուդդայական լինելու, կամ պարսիկը՝ պարսիկ, առանց զրադաշտականության: Մտածելո՞ւ բան է, որ կլասիկ հույնը, ինչպես նա ներկայանում է մեզ գրականության մեջ, օրինակ, մի Պերիկլես (1), հույն համարվեր անկախ օլիմպիական սրբազան աշխարհայեցողությունից, եթե փրփրածինն Աֆրոդիտեի (2) փոխարեն, ասենք, մի մեղսալիր Աստարտե (3) պաշտեր: Միևնույնը կարելի է ասել և մահմեդականության համար. միջնադարյան արաբն առանց իսլամի, նույնն է, ինչ որ աղբյուրն առանց ջրի: Այս ազգությունները և իրենց դավանած կրոնները այնպիսի սերտությամբ են կապված, որ դժվար է միմյանցից զատել, գրեթե ձուլվում են միասին և կազմում են մի անքակ միություն, մի գաղափար:

Իսկ այժմու ժամանակները՝ կրոնները այլևս ազգորոշ նշանակություն չունեն: Հնդիկը կամ արաբը այսօր կարող են այլ և այլ դավանության պատկանել և միևնույն ժամանակ մնալ իրենց ազգության անդամ: Կրոնի ազդեցությունը ո՛չ միայն ազգայնության խնդրում, այլ ընդհանրապես ժամանակակից մարդու բարոյական կյանքի մեջ, տկարացել է: Ոմանք վշտով, մյուսները չարախինդ բավականությամբ հաստատում են, որ կրոնի դարն անցավ, կրոնը մեռած է: Նրա այժմյան անկենդան վիճակը խորհրդավոր պատկերով ներկայացրած է նորագույն գրողներից մեկի՝ Մ. Մետեռլինկի (4) «Կույրերը» («Les aveugles») երկի մեջ:

Հինավուրց անտառում, աստղազարդ երկնքի տակ, գիշերվա կեսին նստած է մի զառամյալ քահանա՝ արձակ ու սև վերարկուի մեջ ծվարած: Անշարժ, ինչպես դիակ, գլուխը հետաձիգ, թիկն է տված հսկայական, խոռոչավոր կաղնուն: Դեմքը կապույտ, շրթունքը կիսախուփ. աչքերը մունջ ու պլշած է՛լ չէին նայում հավիտենականության տեսանելի կողմը և կարծես արյուն էր կոխած անթիվ ու անհիշատակ ցավերի արցունքից: Ճերմակ մազերը չոր ու նոսր փնջերով փռվում էին դեմքին. երեսն ավելի պայծառ և ավելի տարտամ էր, քան ամեն ինչ որ նրան շրջապատում էր անտառի ուշիմ լռության մեջ: Վտիտ ձեռքերը ուղղաձիգ հանգչում էին ազդրերի վերա: Ծերունու շուրջը՝ քարերի, ծառերի կոճղերի և մեռած տերևների վերա հու-հոն նստոտած էին կույրեր՝ այր և կանայք, պարզ, միալար սև շորերով: Մի քանիսը աղոթում են, և խուլ ու անընդհատ ձայնով ողբում. մյուսները սպասում են, արմունկները ծնկների վերա և դեմքը ձեռքերի մեջ: Բոլորն

անշարժ են: Տխրության ծառերը՝ լացկան ուռիները ու նոճիները սքողում են նրանց անդավաճան սավերներով: Մութ է գիշերը, խիստ մութ, չնայելով, որ լուսնի լույսը աշխատում էր վանել տերևներից խավարը: Կույրերը սկսում են խոսել՝ մոլորված են և ուզում են իմանալ, ո՛րտեղ են և ո՛ւր պիտի երթան, կամ ի՛նչ են անելու: «Գրեթե ամեն բան գիտեն, ինչ-որ հարկավոր է իմանալ», միայն ՝զրույց են անում, սպասելով քահանայի դարձին. քահանան նրանց բերել-հասցրել է անտառը և հանկարծ անհետացել: Այժմ սպասում են, սպասում և չի գալիս: «Քահանան խիստ ծերացել է: Թվում է, որ քանի ժամանակից ի վեր էլ ոչինչ չի տեսնում. չի ուզում նաև խոստովանել, վախենալով, որ մի ուրիշը կգա և իր տեղը կբռնե: Նրա տեսողությունը կասկածելի է: Հարկավոր է մի այլ առաջնորդ. անշո՛ւշտ նա մոլորցրել է կույրերիս և որոնում է ճանապարհը: Ո՞ւր է գնացել»:

Այսպես խոսելով կույրերը սկսում են խարխափել անտառի մեջ, վերջը շոշափում են մի դիակ և գլխի են ընկնում, որ այդ քահանայի մարմինն է: Քահանան մեռել է անտառում լուռ ու մունջ, ժայռի վրա նստած:

Այս պատմության մեջ քահանան կրոնի նշանակն է, որ ուղեկցելով մարդկանց մինչև կյանքի մութ անտառը, կորցնում է իր բարոյական ուժը, մեռնում է, թողնելով իր հետևորդներին մթության մեջ՝ անհույս և անօգնական: Նրանք իբրև կույրեր խարխափում են խավարի մեջ և անկարող ելքի հնար գտնելու, աղերսում են՝ «Ayez pitié de nous!» - Գթացե՛ք մեզ: Որտեղի՞ց պիտի գա այս գթությունը:

Կրոնը տապալված է և նրա մահը աներկբայելի, և միանգամայն բնական է համարվում: Տասնևիններորդ դարում իշխող փիլիսոփայական աշխարհայեցողության այսպես կոչված «եռյակ դրության օրենքի՝ «loi des trios ėtats» համաձայն, մարդկային միտքն իր զարգացման պատմության ընթացքում անցնում է հաջորդաբար երեք շրջան՝ աստվածաբանական, բնազանցական և գիտական կամ դրական: Մարդկությունն արդեն բոլորել է առաջին երկու շրջանները և մտել է երրորդը: Կրոնական հայացքները և բնազանցական խնդիրներն ընդմիշտ թաղված պետք է համարել: Նոր շրջանը դրական և ճշմարիտ գիտությունների շրջանն է, զուտ բանականության օրենքների վրա հիմնված: Իրականությունը մատնեց այս հաստատության միակողմանիությունը, բնազանցական խնդիրները շարունակեցին առաջվա պես զբաղեցնել մարդուս, որովհետև նրանք նույնպիսի անխուսափելի պետք և խնդրանք են հոգու, որպես ճիշտ գիտությունները, և միայն թևարձակ հափշտակությամբ կամ թյուրիմացությամբ կարելի է ուրանալ նոցա կարևորությունը: Դրական գիտության հիմը փորձնական իմացություննն է, իսկ սա սահմանափակ է, որովհետև ընդգրկում է

միայն տեսանելի աշխարհը. և հետ է կասում անսահմանության և անհունության առաջ, տեղի տալով բնազանցական մտածական կարողության:

Բայց և այնպես, նորագույն փիլիսոփայությունն ընդունելով հանդերձ բնազանցական խնդիրների օրինական իրավունքը, ոչինչ սատար չէ հասցնում կրոնին: Վերածնած մետաֆիզիկեն ինք ևս թշնամի է հռչակվում կրոնին և մահվան դատապարտում նրան: «Ֆիզիկեն և մետաֆիզիկեն,- ասում է Ա. Շոպենհաուեր (5) - կրոնի բնածին թշնամիներն են. սա էլ նրանց ոխերիմն է, որ միշտ ջանադիր է նրանց ընկճել, ինչպես նրանք՝ սրան քանդել. խաղաղության կամ հաշտության մասին խոսել՝ ծիծաղելի է, իսկական bellum ad internecionem է (6). կրոնները անգիտության զավակներ են և իրենց մորից երկար չեն ապրում... Հավատն ու գիտությունը,- շարունակում է նույն փիլիսոփան,- անհարիր բաներ են միևնույն գլխի մեջ. նույնն են, ինչ որ ոչխարն ու գայլը միասին մի վանդակում. գիտությունը գայլն է, որ սպառնում է իր հարևանին լափել... Նախկին դարերում կրոնը մի անտառ էր, ուր պահվում էին խաշինք և կարողանում էին ծածկվել: Բայց այժմ, այնքա՜ն կտրտվելուց հետո, մի մացառուտ թուփ է, որի ետևը՝ պետք եղած ժամանակ, թաքնվում են նենգավորները: Այս պատճառով միշտ զգուշանալու է այն մարդկանցից, որոնց ցանկությունն է ամենուրեք կրոնը խոթել, և նրանց տեսնելիս հիշելու է իսպանական առածը՝ Detras de la cruz está sl diablo («Խաչի ետևը կանգնած է սատանան»)[1]:

Թվում է, որ միայն հավատն ու հավատալիքները կամ կրոնները շփոթելով կարելի է հանգել այսօրինակ հուսահատական եզրակացության: Սոքա տարբեր են. մեկն անմահ է, մյուսն՝ անցավոր: Հավատը մարդու անկապտելի հատկություններից է, որ բնավ չի ոչնչանում այս կամ այն հավատալիքների խախտումով ու անկումով: Հեթանոսությունն իր տեսակներով, բուդդայականություն, մահմեդականություն և այլ կրոններ հավատի պայմանական արտահայտություններն են ժամանակի ու տեղի սահմաններում, և հավիտենական լինելու առանձնաշնորհը չունեն: Նրանց տապալումը դեռ անկարող է հողդողդել կրոնի պահանջը:

Այն, ինչ որ մնում է անսասան՝ հավատն է, հոգու կենդրոնական զորությունը: Մեր դարում, որովհետև ինչ-ինչ հավատալիքներ կորցրել են իրենց բարոյական արժեքը, ուստի մարդիկ կարծում են, որ հավատը նույնպես ապավարակված է: Գիտության մեջ ևս շատ կարծեցյալ ճշմարտություններ հերքվում են, բայց սրանով գիտության հարգը չէ աղոտանում: Նոր փի-

[1] A. Schopenhauer, Parerga und Paralipomena. Über Religion.

փիլիսոփայական տեսությունների մեջ հավատն առանձին նշանակություն է ստանում իբրև գիտության անկախ աղբյուր, հարկավ, ոչ այն մտքով, ինչպես հնումն էր:

Քննական փիլիսոփայության վերծանությամբ, արտաքին աշխարհը մեր ներացի (սուբյեկտիվ) գիտակցության արգասիքն է. առարկաները ու երևույթները, իբրև մեր զգացողությանց արտաքին ձևափոխություններ, նույն կարգի երևույթ են, ինչպիսի են մեր զգացումները, մտքերը, խղճերը, այսինքն՝ զուտ բանականության տեսակետից, ոչինչ զանազանություն չկա ներքին և արտաքին փորձի մեջ: Ուրեմն ինչիցն է, որ մեկը թվում է իբրև մեզնից անկախ և իրապես գոյություն ունեցող, իսկ մյուսը՝ ներքինը, ո՛չ. ինչու մեր զգացումները, մտքերը ևս չեն առարկայանում բնության մեջ: Փորձնական (էմպիրիկ) ինչպես և բանական (ռացիոնալ) գիտությունն անզոր է բացատրելու այս հանգամանքը, որ և ստեղծել է փիլիսոփայական մտքի տագնապ: Փրկության ելքը ռուս հայտնի փիլիսոփան՝ Վլ. Սոլովյով (7), տեսնում է հավատի, իբրև առանձին տեսակ գիտության մեջ:

«Մենք զգում ենք առարկայի այս կամ այն ներգործությունը, մտածում ենք նրա ընդհանուր հատկությունները և հավատացած ենք, որ նա իր սեպուհ կամ անպայման գոյությունն ունի: Այս հավատը բնավին կախված չէ ո՛չ առարկայից ստացած զգացողություններից, և ո՛չ էլ նրա մասին ունեցած գաղափարից. ընդհակառակը, մեր զգացությանց և գաղափարների արտացի՝ օբյեկտիվ նշանակությունն ուղղակի պայմանավորված է այն հավատով, որ ունինք առարկայի ինքնուրույն գոյության վրա: Արդարև, եթե հավատացած չլինեինք, որ առարկան մեզնից անկախ գոյություն ունի, չէինք կարող մեր զգացություններն ու գաղափարները նրան վերաբերել. և այս դեպքում զգացություններն ու գաղափարները կմնային լոկ գիտակցության ներացի՝ սուբյեկտիվ դրություններ, ներքին զգացմունքներ և [illegible] իմացական նշանակություն չէին ունենա, քան, որ հոգեկան գործոններ են: Այսպիսով, մեր զգացությանց ու գաղափարների արտացի նշանակությունը կախված է մեր հավատից, թե նրանց առարկան անպայման և անկախ գոյություն ունի, մի գոյություն, որ մտքերի և զգացությանց սահմաններից դուրս է: Այս անպայման գոյությունը, որի մասին մեզ հասկացողություն չեն տալիս զգացություններն ու մտքերը, այսինքն՝ որ չի կարող ո՛չ էմպիրիկ և ո՛չ ռացիոնալ իմացության առարկա

լինել, և որը սակայն պայման է այդ գիտության, ակներև, կազմում է մի ուրիշ և երրորդ տեսակի իմացության առարկա, որի անունն է հավատ»[1]:

Այսպես հավատն իր բարձր իմաստով, վերացական ձևով, բափուր է որևէ բովանդակությունից, մի զորություն է, որ մեր գիտակցության ներացի արտահայտություններից ստեղծում է արտաքին իրականություն և հանդիսանում է պայման և անհրաժեշտ նախադրյալ ճշմարիտ գիտության: Հավատքի տեսական առաջնակարգ նշանակությունից բղխում է և՛ նրա կենսական և՛ գործնական ուժը: Այժմ, երբ կյանքի անսովոր եռացման մեջ, հալվել են էական հավատալիքները բարոյական, գրական և հասարակական աշխարհում, հավատն էլ՝ թվում է, կորցրել է իր նշանակությունը: Հավատալիքների քայքայումից հետո աշխատելու է չէ թե հրաժարիլ հավատից, այլ նրան նոր բովանդակության հետ զուգել:

Նախկին պաշտամունքներն այլևս հավատի նյութ չեն կարող լինել: Հավատի իրավասության շրջանը նեղացել է. շատ բան անցել դարձել է գիտության սեփականություն այս կամ այն մտքով:

Մի ժամանակ կրոնը ընդգրկում էր ո՛չ միայն կրոնական կյանքը անձուկ իմաստով, այլ կյանքն իր ամբողջությամբ: Վեդաները, Ավեստան, Հոմերոսը կամ հրեից Ս. Գիրքը և նույն իսկ Ղուրանը սոսկ կրոնական գրքեր չեն. նրանք ամփոփում են համապատասխան ժողովրդի կենցաղի վերաբերյալ ամեն տեսակ իմաստություններ և խրատներ: Գիտություն, օրենք, բարոյականություն, կարգ, կանոն, ծես, սովորություն, բոլորը կապված էին կրոնի հետ և կազմում էին մի միություն: Կամաց-կամաց գիտություններն անջատվելով, ազատագրվեցին կրոնից. և կարծես գրավելով մարդու երկրավոր բախտը տնօրինելու իրավունքը, կրոնին թողեցին հանդերձյալ կյանքի հոգսը: Փիլիսոփայական մտքի հառաջանալովը՝ կրոնը զրկվեց և այդ սեփականությունից: Մետաֆիզիկեն, որ մտածողության որոշ սիստեմ է, թեև եղանակներով տարբեր գիտություններից, կորզեց կրոնից բարձր խնդիրների աշխարհը: Նույնիսկ Գերագույն էակի գոյության խնդիրն անցել է մետաֆիզիկեին, ինչպես և բարոյականությունը՝ բարոյագիտության:

Այսքան տաշվելուց, կամ ինչպես Շոպենհաուերն է ասում, «կտրտվելուց» հետո, ուրեմն ի՞նչ է մնում կրոնին ասելու այս աշխարհում: Բացասական պատասխանը մեկնում է նրա այժմյան կեղծ ու պատիր դիրքը. ո՛չ երկյուղ է ազդում և ո՛չ սեր վայելում, երկրավոր մեծությունն ու փառքն աղոտացել է: Հավատը ինչպես մի սրբազան անոթ՝ մնացել է դատարկ:

---

[1] Вл. Соловьев, Критика отвлеченных начал, стр. 308, 309, изд. 1902, см. "Новый путь", март, 1903.

Կրոնն իր անցյալ բարձրության վերա կանգնելու համար, այսուհետև չպետք է ձգտե սեփական հաստատուն բովանդակություն ունենալու: Քրիստոնեության վեհությունը մյուս կրոնների հանդիման հենց այն բացարձակ և անպայման հավատի քաղոգության մեջ էր: «Հավատա, որ ապրես»` ահա Քրիստոսի վարդապետության էությունը (8) և քրիստոնեական հավատի իսկական հանգանակը: Փրկիչը խույս էր տալիս որոշակի պարզելու, թե ինչի պետք էր հավատալ, որովհետև այդ չէր կարևորը: Հավատալիքը ժամանակի և տեղի պայմանների ծնունդ են և ուրեմն միշտ փոփոխության և անկայունության ենթակա: Հրեական կյանքը ստեղծել էր «օրենքներ», և Հիսուս ո՛չ միայն ընդդեմ չէր, այլ խորհուրդ էր տալիս հրեաներին կատարել հայրենական օրենքները: Հին օրենքը լուծանելու չէր եկել, և ոչ նոր օրենք տալու: Հրեաները, որոնց համար կրոնը լոկ մի շարք պատվիրաններ էր, չէին ըմբռնում Հիսուսի վարդապետության իմաստը. և հարցնում էին անդադար, ո՞րն է նոր քարոզչության մեծ պատվիրանը: Նրանք լսեցին Մեծ վարդապետից, որ առաջին և ամենամեծ պատվիրանն է` սիրել Աստծուն և սիրել ընկերոջը: Ունկնդիրները չգուշացան, որովհետև Հիսուս չպարզեց նրանց իմոտո ընկերսիրությունը. մերձավորի սերը պետք է գործով արտահայտվի, իսկ անելիք գործերը նախապես որոշելն` ինչպես մովսիսական օրենքն էր անում, Քրիստոսի քարոզած ուսումից դուրս էր, այդ գիտության գործն է: Երկու սերը միմյանց հետ զուգելով, Փրկիչ ուզեց շեշտել, որ անհատական հավատը` մարդու իրեն սեփական Աստվածը` «սիրեսցես զԱստուած քո» (9), պետք է շաղկապվի գործի հետ: Կատարյալը նա է, որի գործերի և հավատի մեջ ներքին ներդաշնակություն կա: Իսկ գործերի որոշումը կախված է գիտությունից:

Հավատն իր իսկական սահմաններում թշնամի չէ գիտության, ընդհակառակը` նրա համար մի զաղտնի նեցուկ է, մի բարձրադեմ փարոս, որ աղոտ նշույլով լուսավորում է նորա հեռավոր ուղին: Գիտության խոշոր հաղթանակները` տիեզերական ձգողականությունից մինչև հարաճուն առաջադիմության գաղափարը լոկ հիպոթեզներ են, այսինքն` հանգչում են հավատի վերա: Հավատից թափուր չէ նաև գիտական նշանավոր մեթոդներից մին` ներածականը, induction, որի հիմամբ, օրինակ, վստահ ենք, որ արեգակը վաղը ևս պետք է ծագե իր ժամին: Առօրյա կյանքում հավատի իմաստալից արտահայտությունն են «համոզմունքները», որ բարոյական մարդու ամենաթանկ զարդն է կազմում: Գուցե օտարոտի թվի, որ համոզմունք ասածդ մոտ է ավելի անապացույց հավատի, քան զուտ ճշմարտության: Հիրավի, ոչ ոք չի ասի, որ համոզված է, թե երկու անգամ երկուս հավասար է չորսի: Համոզմունք են անվանում այն եղվածները կամ

հաստատությունները, որոնք դեռ բացահայտ ու ակներև ճշմարտություններ չեն, այլ ներքաղրում են հայտնի չափով հավատ: Կարելի է համոզված լինել, օրինակ, որ սոցիալիզմը տանում է դեպ երանություն, առանց կարողանալու ապացուցել և ընդհակառակը, հնարավոր են դեպքեր, երբ պերճախոս ապացույցներ տակավին ակար են մարդկանց համոզելու[1]:

Այսպես՝ գիտությունն անհաշտելի չէ հավատի հետ. ինչպես որ ինքը հավատից ուժ է ստանում, այնպես էլ իր նվաճումներով նրան բովանդակություն և կենդանություն է ընծայում: Գիտությունից սնունդ առնող հավատը մի տեսակ ինտելեկտուալ, մտավոր հավատ է: Գուցե սրանով կարելի չի լինի վերականգնել կրոնի նախկին հրամայական վեհությունը: Կարևորն ու էականն այն է, որ հավատը զորություն ունենա ներշնչելու և անհողդողդ պահելու մեր մեջ վեհազույն ձգտումները, իդեալ՝ մի գաղափար, որ նոր ժամանակների ծնունդ լինելով, կարող է փոխարինել այն ոգեշունչ և սրբազան տրամադրությունը, որ հնում հատուկ էր կրոնին: Իդեալները կրոնի բեկորներն են. քանի որ իրականությունը միատեսակ և միապաղաղ էր, գոնե մարդկանց մտքում, կարող էր սնել և պահել իր վերա ընդհանուր կրոնի սկզբունքն ու շենքը: Իրականության բազմազանվելովը, ընդհանուր շենքը պիտի գլորվեր. և նրա փշուրներից sub specie (10) իդեալների ամեն անհատ, հող ու համայնք պիտի վերցներ այն, ինչ որ իրեն պետք է: Այս կրոնի անհատականացումն է:

XIX դարի նշանաքանն անհատականության սկզբունքն է: Իբրև հետևանք անհատական զարգացման և միևնույն ժամանակ պայման, նույն դարում ուռճացավ և ազգայնության գաղափարը: Ո՛չ հնում և ո՛չ միջին դարերում ազգայնությունը բացարձակ և գիտակցական սկզբունքի նշանակություն չուներ: Վերածնության դարից, երբ երևեցան նշաններ՝ քոքվելու կրոնի լուծը, անհատի զարգացման հետ համահավասար սկսեցին աճել և ազգայնական բացորոշ հակումներ, ու իրենց փայլուն արտահայտությունը գտան XIX դարում: Հաջողության պատճառներից մեկը՝ անտարակույս, այն է, որ ազգությունը տալիս է անհատի զարգացման պատշաճ ու նպաստավոր պայմաններ: Անհատորեն զարգանալ, բառիս ճշմարիտ իմաստով, նշանակում է բարգավաճել այն ուղղությամբ, որ թելադրում է դարավոր նյարդային համակարգության կազմը: Վերջինս ձևակերպված է որոշ պայմանների ազդեցության տակ, ինչպես՝ հող, ջուր, լեզու, պատմական

[1] С. Н. Булгаков, Проблемы идеализма.

ավանդություններ, գործում սովորույթներ՝ մի խոսքով՝ այն ամենը, ինչ որ որոշում է մի ժողովուրդ, մի ազգ մյուսից: Եվ առավելապես այս միևնույն պայմաններն կարող են տալ անհատական զարգացման անհրաժեշտ և ցանկալի մթնոլորտ: Մյուս կողմից մի ազգ, եթե գոյություն ունի և պիտի ունենա, նրա համար է, որ քաղաքակրթության պատմության մեջ իր սեպուհ էջը գրավե: Եթե այդպիսի կոչում զգացվում է, անհրաժեշտ է յուրապես զարգանալ, սեփական ընդունակություններ յուրովի բացանել. այլապես ասած, ազգային անհատականություն մշակել: Մի ազգի վսեմ ձգտումն ու գոյության իրավունքը ա՛յլ ավելի սուրբ սկզբունք չէ ճանաչում:

Կյանքն անխուսափելիորեն թանձրունակում է վերացականը, և ազգային անհատականությունն արտահայտում է այլևայլ միջոցներով. մեզանում, մեր անհատականության ու ինքնուրույնության պատկերը հանդիսանում է նշանակորեն՝ sensu simbolico (11), մեր Եկեղեցին: Բախտն այսպես է սահմանել: Անզոհունակները թող հիշեն հռչակավոր փիլիսոփայի խոսքերը Դեմոփիլոսի բերանում՝ «Ով որ բնական ոտ չունի, փայտե ոտը նրա համար մեծ բան է»:

Այսպիսի իմաստով եկեղեցին կարող է պահել իր նշանակությունը հասարակական ամբողջության համար, ստորին գռեհկից մինչև բարձրակիրթ պաշտոնյան: Առաջինը թո՛ղ այնտեղ որոնե և տեսնե այն հարցերի պատասխանը, որոնց համար կրթվածը ուրիշ տեղ է դիմում: Կարիք և արդարացնող հիմք չկա բնավ ո՛չ միայն անջատվելու՝ այլ նույն իսկ խորթանալու եկեղեցուց:

Խղճի ազատությունը, դժբախտաբար, այնքան պարզ գաղափար չէ, որ թերմիտ կրոնափոխներին չհաջողվեր նրա անունով «դներ հանել»: Կրոնական զգացմունքը, ինչպես ամեն մի զգացմունք, ուրեմն լոկ իբրև հոգեկան գործողություն, նույնն է բոլոր կրոններում. ա՛յլ է նրա արտահայտությունը: Կրոնական խիղճը պայմանավորված է զգացմունքի երևմամբ. նա կապ ունի առավելապես նրա արտահայտության եղանակի նշանների և ձևերի ու սովորությունների հետ, ինչով որ զանազանվում են եկեղեցիները: Բեկանել այն դարավոր կեղևը, որի մեջ երևան է եկել և արտահայտվել իր նմանների հանդիման կրոնական զգացմունքը, իսկապես ճշմարիտ կրոնական խիղճ ունեցող մարդու համար համազոր է համոզմունքի փոխելուն. և նույնչափ ծանր է, որչափ դավաճանությունը բարոյական մարդու համար:

Ազգությունները հավետ հիշատակ են թողնում պատմության մեջ իրենց անհատականությամբ՝ այն հատկությունների միահամուռությամբ, որոնցով

որոշվում են մյուսներից: Որոնց համար թանկ է մեր ազգության այդ իրավունքը, նորա գոյության բանական հիմքը, մի ցանկություն կարող են ունենալ, որ 16 դարի վրա կանգնած Հաստատությունն անվթար մնա և նորա ազատությունը անսասան: Թո՛ղ մերձավոր հանդեսը առիթ լինի փարատելու Եկեղեցու ազգային նշանակության մասին եղած ամեն մի տարապարտ կասկած:

## ՁԵԿՈՒՑՈՒՄ ԿԱՐԴԱՑՎԱԾ ԱՅԼԱԶԳԻՆԵՐԻ ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ

(նոյեմբեր, 1905 թ.)

Դժվար թե հնդեվրոպական ազգերի թվում, որոնց շարքը, ինչպես հայտնի է, դասվում են նաև հայերը, գտնվի մեկ ուրիշը, որ իր պատմության սկզբից ևեթ հայտնված լինի նույնքան անշահեկան պայմաններում: Չբաղեցնելով մի տարածք, որ բոլոր կողմերից պաշտպանելու կարիք ունի, հայոց ազգն ստիպված էր մշտական պայքար մղել յուր ինքնության և ինքնուրույնության համար: Ժամանակ առ ժամանակ նրանց հաջողվում էր հաղթահարել բոլոր խոչընդոտները և վերածվել հզոր տերության, սակայն Հայոց երկրի աշխարհագրական աներեւանպաստ պայմանները ու տարածքը, որ ծավալվում էր մշտապես միմյանց հետ մրցակցող՝ Պարթևստանի և Հռոմի, Սասանյանների և Բյուզանդիայի, արաբների և բյուզանդացվոց տերությունների միջև, անհավասար պայքարում վատնում էին հայոց ուժերը: Ոչ միայն Հայաստանի, այլև ամբողջ Առաջավոր Ասիայի պատմության մեջ բեկումնային պահ հանդիսացավ երկու ազգակից ժողովուրդների՝ հայերի և հնդեվրոպական մյուս ժողովրդի՝ պարսիկների բաժանումը հոգևոր հենքի վրա, երբ հայերն ընդունեցին քրիստոնեություն, իսկ պարսիկները՝ իսլամ, որից հետո մոնղոլական ցեղերի մրրկալից հեղեղը, այլևս արգելքի չհանդիպելով, հորդեց Պարսկաստանի, Հայաստանի, Փոքր Ասիայի վրա և հասավ Եվրոպա, ամենուր ի չիք դարձնելով հազարամյա քաղաքակրթության պտուղները: Հայոց համար սկսվեց զորշ և անարև մի դարաշրջան: Քաղաքական ինքնուրույնության կորստի հետ մոնղոլների իրականացրած անդադար ու զանգվածային ջարդերի և դրանցով պայմանավորված արտագաղթի արդյունքում հայոց ազգը խիստ նվազեց, իսկ մոնղոլների իսլամ ընդունելուց հետո (1) հայոց պատմությունը վերածվեց մի համատարած մարտիրոսության հանուն քրիստոնեական կրոնի: Թվում է, թե նման իրավիճակում հայերը պետք է անէանային, ինչպես նրանց որոշ հարևաններ, որ չդիմանալով գոյության անտանելի պայմաններին՝ ձուլվեցին նվաճողների հետ: Սակայն անձնազոհ նվիրումը քրիստոնեությանը և ազգի ինքնագիտակցության մեջ խորապես արմատավորված քրիստոնեական մշակույթի հիմնադրույթները փրկեցին հայերին՝ մշտապես վառ

պահելով պայծառ ապագայի հույսերը: Մի պահ, երբ Մերձավոր Արևելքում հայտնվեցին խաչակիրները, փայլատակեց հուսո ճառագայթը: Այդ պահին Կիլիկիայում ձևավորված Հայկական թագավորությունը միացավ խաչակրաց առաքելությանը, սակայն այս պայքարն ողբերգական ավարտ ունեցավ ոչ միայն խաչակիրների, այլ նաև հայոց համար, որ այդ պայքարում կորցրեցին իրենց ինքնիշխան պետությունը: Սա XIV հարյուրամյակում էր: Դրանից հետո հայերին չհաջողվեց ինքնուրույն քաղաքական կյանք ստեղծել, եթե ի նկատ չառնենք մինչև XVIII դարն Արցախում (Ելիզավետպոլի նահանգ) գոյություն ունեցած մանր մելիքությունները: Ստեղծված հուզիչ իրավիճակում հայերն իրենց հայացքը հառեցին դեպի հյուսիս, և նրանք ոգի առան, երբ ռուսները հայտնվեցին Կովկասի մատույցներում: Նրանք հույսով էին, թե ռուսական-քրիստոնեական իշխանության հաստատմամբ Կովկասում կյանքի պայմանները կբարելավվեն: Ռուսների՝ կանխավ նախանշված և բնական առաջխաղացումը տեղի քրիստոնյա բնակչությունը գոհունակությամբ ընդունեց: Բավական է ասել, որ ռուսական բանակի շարքերում իր տեղը գրավեց հայկական լեգեոնը, որը գլխավորում էր հանրաճանաչ Ներսես եպիսկոպոսը՝ ապագա կաթողիկոսը (2): Ռուսների առաջխաղացումն ավարտվեց Հայաստանի հայտնի մասի Ռուսաստանի հետ միավորմամբ: Գրավյալ մարզում համեմատաբար տանելի կարգեր հաստատվեցին: Այդ պահից սկսվում է Հայաստանի արևելյան մասի մտավոր վերածնունդը. բացվում են դպրոցներ, ի հայտ են գալիս տպագիր պարբերականներ, ստեղծվում են լուսավորական հաստատություններ: Հայ մտավոր զարթոնքի և լուսավորության գործում մեծ դեր խաղացին Վենետիկի և Վիեննայի Մխիթարյան միաբանությունների գիտնականները, որ զբաղված էին հայոց պատմության ուսումնասիրմամբ և վեր հանմամբ ըստ հայկական բազմաթիվ ձեռագրերի, ինչպես և հայկական գրական հուշարձանների հրատարակությամբ: Դրանց տպագրումը մեծ հետաքրքրություն առաջացրեց եվրոպական գիտական շրջաններում, այն բանի շնորհիվ, որ դրանք հարուստ նյութ էին պարունակում նաև ընդհանուր պատմության վերաբերմամբ: Հայ մատենագրության էջերում գտնվեցին մի շարք արժեքավոր գրական հուշարձաններ և թարգմանություններ հույն դասականներից, որոնց մի մասը չէր պահպանվել բնագրով: Ազգի պատմական քաղաքակրթությունը հաստատապես ի հայտ եկավ բարձրագույն կրթության հանդեպ մեծագույն ձգտմամբ, ձևավորվեց մտավորականությունը, որ ծառայում էր Կովկասում մշակութային և քաղաքացիական հասարակության կազմավորմանը:

Սկսվեցին 1860-ական թվականները, որ իրենց արձագանքը գտան նաև հայ մտավորականության մեջ: Ստ. Նազարյանցն ու Ա. Գերցենի բարեկամ Մ. Նալբանդյանը, պետք է հայ կյանքում և գրականության մեջ նոր հոսանքի սկիզբը դնեին: Իսկ նրանց հաջորդ՝ հանգուցյալ հրապարակախոս Գր. Արծրունու ջանքերով այս նոր հոսանքը պիտի դառնար համայն մտածող հայության սեփականությունը: Կրթության և նոր հիմունքներով իր կյանքը ձևափոխելու ձգտումը գրավեց ամբողջ հայ ժողովրդին: Երկու սեռերի երեխաների համար հայկական նահանգները ծածկվեցին ժողովրդական դպրոցների լայն ցանցով, կազմավորվեցին կրթական ծավալուն նպատակներ հետապնդող միություններ, հիմնվեցին թերթեր, ամսագրեր, փայլուն գրականություն, ինչպես և հիմքը դրվեց մշտապես գործող ազգային թատրոնի: [18]77-1878 թթ. քրիստոնյաների ազատագրական դրոշի ներքո սկսվեց ռուս-թուրքական պատերազմը: Տաճկահայությունը գոհունակությամբ ընդունեց ռուսական զորքերին՝ նրանցից ակնկալելով թուրքական ծանր լծից ազատագրում: Պատերազմն ավարտվեց: Սան-Ստեֆանոյի պայմանագրի 16-րդ կետով Ռուսաստանը բարեփոխումներ էր պահանջում Թուրքա-Հայաստանում: Այս պահանջը մտավ բեռլինյան պայմանագրի 61-րդ հոդվածի մեջ. բարեփոխումները պետք է իրականացվեին Մեծ տերությունների հսկողության ներքո, սակայն դրանք թղթային ճանաչումից այն կողմ չանցան: Մինչդեռ համայն հայության հայացքն ուղղված էր խոստացված բարեփոխումների կողմը, որոնց Թուրքիան պատասխանում էր բոլոր հնարավոր միջոցներով, որ միտված էին Թուրքիո մեջ հայկական տարրի թուլացմանն ու արմատախիլ անելուն:

Ալեքսանդր II կայսեր մահից հետո (3) ռուսական կառավարության քաղաքականությունը կտրուկ փոխվեց թե՛ ռուսաստանաբնակ հայերի, և թե՛ Թուրքիայում Հայկական հարցի առնչությամբ: Ռուսա-Հայաստանում ամենածայրահեղ ձևերն ընդունեց ռուսացման քաղաքականությունը: Կառավարությանը թվում էր, թե հարևան մշակութային ազգը՝ վրացիները, եկեղեցական միության և ազգային բոլոր ինքնուրույն կառույցների ոչնչացման շնորհիվ արդեն իսկ ամբողջովին կուլ էին գնացել և բռնել ռուսացման ուղին, որ նույնը պետք է անել նաև հայերի հետ: Ուստի կառավարությունն իր ռուսացման քաղաքականության բոլոր հարվածները հիմնականում ուղղել էր հայերի դեմ, որն իր պատկերացմամբ դեռևս չափազանց շատ ինքնուրույնություն ուներ՝ ինքնավար Հայ եկեղեցու և հայկական դպրոցների ու կրթական կառույցների հանգամանքով: Կառավարության անդամներն այստեղ անջատողականության տարրեր էին նկատում: Իսկ երբ արձանագրվեցին Թուրքիայում բնակվող իրենց եղբայրա-

կիցների վիճակի բարելավմանն ուղղված ռուսահայության առաջին փոր-ձերը, ռուսական կառավարությունն սկսեց հայերին կասկածել հայկական քաղավորություն վերստեղծելու ձգտման մեջ: Ռուսաստանի, Թուրքիայի և Պարսկաստանի հայկական գավառների միավորմամբ մեծ Հայաստանի հարության մասին մի մտացածին գաղափար հորինվեց և վերագրվեց հա-յերին, չնայած այն բացահայտ փաստին, որ այդ տարածքների բնակ-չության ժողովրդագրական իրավիճակը նման կասկածների տեղիք չէր տալիս: Ռուսաստանի և Թուրքիայի կողմից սկսվեցին երկկողմանի դաժան հետապնդումներ. Ռուսա-Հայաստանում փակվեցին հայկական դպրոց-ներն ու կրթական հաստատությունները: Սարսափելի հալածանքներ սկսվեցին այն գործիչների նկատմամբ, ովքեր անդամակցում էին Դաշ-նակցություն կուսակցությանը, որ հիմնվել էր իննսուն թվականին՝ միակ նպատակ ունենալով հասնել Թուրքա-Հայաստանի բարեփոխումների իրա-կանացմանը, բարեփոխումներ, որ նախագծվել էին Ալեքսանդր II-ի կա-ռավարության կողմից: Այս բարեփոխումների իրականացման Մեծ տերու-թյունների բոլոր փորձերը հանդիպում էին ռուսական կառավարության հարուցած անհաղթահարելի խոչընդոտներին: Երբ անգլիական կառավա-րությունը կամեցավ իր միջամտությամբ դադարեցնել [18]95 թ. հայկական ջարդերը Թուրքիայում, այնժամ ռուսաց արտաքին գործոց նախարար իշխան Լոբանով-Ռոստովսկին (4) հայտարարեց, թե թուրքական գործերին նման միջամտումը կդիտվի իբրև casus belli (5): Կոտորածը շարունակեց և հարյուրհազարավոր մարդկանց կյանք արժեցավ: Իշխան Գոլիցինի (6) երկաթե ձեռքն իր ողջ ծանրությամբ իջավ հայկական կյանքի բոլոր դրսևորումների վրա, իսկ մնացյալ գրեթե բոլոր պաշտոնյաները ձգտում էին պատճենել իրենց սատրապին: Մինչդեռ իշխան Գոլիցինը նոր՝ ծանր հարված էր նախապատրաստում՝ օրենք Հայ եկեղեցու ողջ ունեցվածքի առգրավման մասին (7), կամ ավելի ճիշտ՝ ժողովրդի ունեցվածքի, քանի որ Հայ եկեղեցին ծայրաստիճան ժողովրդավարական է, ամբողջությամբ հիմնված ընտրական կարգի վրա, ուստի եկեղեցական ինչքի կառա-վարման գործում մշտապես մասնակցում էին նաև ժողովրդի ընտրված ներկայացուցիչները: Այս օրենքի փաստացի կիրառումն ամենուրեք հան-դիպեց ժողովրդի դիմադրությանը, որ զենքն ի ձեռն պաշտպանում էր իր ունեցվածքն ու իրավունքները: Սկսվեցին նոր ձերբակալություններ ու նոր հետապնդումներ: Հայերի հանդեպ վախը համակել էր մթնոլորտը: Այս պայմաններում Հայ հեղափոխական դաշնակցությունն անհրաժեշտ հա-մարեց իր գործունեությունը տարածել նաև Ռուսա-Հայաստանում և

կառավարության ահաբեկիչ գործունեությանը հակադրել իր ահաբեկչությունը:

Այդ պահին Ռուսաստանում սկիզբ առած և ամրապնդված բանվորական շարժումն արտահայտվել էր նաև Բաքվում. այստեղ հայ բանվորները, իբրև մշակութային տարր, նույնպես լայն մասնակցություն էին ունեցել այդ շարժմանը: Իշխանության ներկայացուցիչները որոշեցին խեղդել լույս աշխարհ եկող ազատագրական շարժումը, և դիմեցին իրենց իսկ կողմից բազմիցս հնչեցված գաղափարի իրագործմանը. թաթարներին լարել հայերի դեմ: Սկսվեց ոստիկանական նողկալի սադրանքը և իրականացավ կայենական գործը, որ մինչ այժմ շարունակվում է ամբողջ Անդրկովկասով մեկ՝ պատճառ դառնալով երկուստեք մեծաքիվ զոհերի (8):

Եվ այն ժամանակ, երբ Ռուսաստանի բոլոր ժողովուրդներն այլազան հնարավոր համաժողովներում և հանրահավաքներում պարզում էին իրենց կարիքներն ու վերաբերմունքը ապագայի՝ նոր Ռուսաստանի հանդեպ, հայ ժողովրդի համար առողջ ուժերն ու մտքերն ուղղված էին մի և միակ նպատակին, միակ խնդրին՝ ժողովրդի ինքնապաշտպանության հարցին: Նման պայմաններում հայերը, որ մշտապես Կովկասի մշակութային շարժման առաջին շարքերում էին, բնականաբար, չէին կարող գործուն կերպով արձագանքել ռուսաստանյան ժամանակակից շարժմանը: Հայոց ներկայացուցիչների միակ համագումարը, որ կայացավ ընթացիկ տարվա մարտին (9)՝ Թիֆլիսում, ընդունեց մի շարք ծրագրեր, որոնց հիմքում ընկած են ռուսական ազատագրական շարժման բոլոր գերակա և հիմնական պահանջները: Ընդգծելով տեղական ինքնակառավարման անհրաժեշտությունը, այնուամենայնիվ, այս ծրագիրն ինքնավարության պահանջ չի առաջադրել (10): Եվ դա արվել է լիովին գիտակցված. Կովկասի բնակչության բազմազգության և ազգերի տեղաբաշխվածության ծայրահեղ խրթնության պայմաններում, բնակչության որոշ հատվածներ գտնվում են մշակութային տարբեր աստիճանների վրա, կտրուկ, հաճախ փոխընկալունակության աստիճանի տարբերվելով իրարից: Կովկասի ինքնավարության հարցը ծայրահեղ բարդ է, խճճված և իր կարգավորման համար պահանջում է նախնական լուրջ դիտարկումներ և Կովկասի ժողովուրդների տևական համատեղ մշակութային աշխատանք:

Երբ իրագործվի այս աշխատանքը, երբ փոխըմբռնումը և հետաքրքրությունների նույնականության գիտակցումը հասու կլինի բոլորին, կամ առնվազն Կովկասի հիմնական ժողովուրդներին. լոկ այն ժամանակ Կովկասի ինքնավարության պահանջը կդառնա տարածաշրջանի համընդհանուր կենսական կարգախոս:

## ԿԱԹՈՂԻԿՈՍԱԿԱՆ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՄԱՄՈՒԼԸ

Լինում են երբեմն խնդիրներ, որոնց մասին որքան շատ է գրվում, այնքան ավելի խճողվում են: Կաթողիկոսական հարցը այս վատաբախտ խնդիրներից մեկն է դարձել (1): Ամբողջ տարին ծամծմելուց հետո, խնդիրը մնում է գրեթե նույն վիճակի մեջ, ինչ որ առաջ: Մամուլը անզոր հանդիսացավ պարզելու, թե ո՛վ է արժանավոր հաջորդը Լուսավորչի Գահի, և նրա ջանքն ու ճիգն այն տխուր բացասական հետևանքն ունեցան, որ հրապարակի վրա դրված անունները բոլորն էլ արատավորվեցին: Փոխանակ կասկածները փարատելու, նոր ամպեր դիզեցին հայտնի անվանց շուրջը և մեծապես նպաստեցին հասարակության անտարբերության. լայն շրջանները մեկուսացան, անվստահ խելամուտ լինելու իսկական ճշմարտության: Մայր Աթոռի գահակալի խնդիրը, որ հասարակական մտքի և հոգածության բարձր առարկան պետք է լիներ, որպես արժան էր, հեռզհետե սեղմվեց և գրական մրցության և արշավի նյութ դարձավ: Երբ հասարակությունը սառչում է հարցից, վերջինս կորցնում է դրական հողը, և վիճաբանությունները ակամայից ստանում են տեսական բնավորություն:

Հրապարակախոսությունը գործն ու գործնականը թողած՝ անպտուղ տեսության ետևից ընկավ և փոխանակ իրական տրամադրությունները զտելու, իրական ուժերը հաշվի առնելու՝ հենց սկզբից թանաք չխնայեց եղած անունները հետ մղել և խարխափել լավագույնը գտնելու անհույս որոնումների մեջ, որպեսզի մի անգամ ևս արդարացնե իմաստուն առածը, որ «Լավագույնը լավի թշնամին է»: Եվ ամենից ցավալին այն է, որ մամուլը չխնայեց նույնիսկ մեր ազգային արժանապատվությունը և ապիկար եղավ գեթ պահելու հարցն այն բարձրության վրա, որը վայելում է նա իրավամբ օրենքի և հայ ազգի գիտակցության մեջ: Պետք էր կարծել, որ մեր զարգացման արդի շրջանում ընդունակ կլինեինք չնսեմացնել վեհ խնդիրը նախ և առաջ արտաքնապես. մինչդեռ կաթողիկոսական ընտրության մասին այնպիսի լեզվով են խոսում և այնպիսի վերաբերմունք ցույց տալիս, որ, կարծես, խոսքը Մայր Աթոռի սրբազան գահակալի մասին չէ, այլ շինական մի քեթխուդայի, մի ստորին իշխանավորի: Հայ եկեղեցու բարձրաստիճան եպիսկոպոսների վերաբերմամբ ի լուր աշխարհի աղաղակվում են այնպիսի խոսքեր, որոնք անվայել են նույնիսկ հետին սարքազի: Ամենայն Հայոց

հայրապետի ընտրությունն իր արծվի բարձրությունից իջած՝ նմանում էր մի գեշի, որի շուրջը ճախրում էին մեր բարձրաձոն գրականները: Անհիմն զովքն ու փառաբանությունն, որքան և անտեղի, ավելի տանելի է, քան նույնանման վատաբանությունը, որովհետև հավասար պայմաններում բարեմտությունը գերադասելի է չարասրտությունից, լավատեսությունը վեր՝ քան հոռետեսությունը:

Երբ արտաքին պատկառանքը, քաղաքավարության տարրական պահանջն իսկ զգացվում է այն անձանց, որոնք հռչակվում են կաթողիկոսական թեկնածուներ, դժվար է սպասել, որ ներքին վերաբերումն լինի բավարար:

Մեր աղքատիկ կյանքի համար կաթողիկոսի ընտրությունը խոշոր հարց է, գեթ նրանով, որ ընդգրկում է մեր ազգային ամբողջությունը: Ամեն մի այսպիսի ընդհանրական գործ, մինչև անգամ անկախ իր հասարակական արժեքից, անդրադարձնում է անհրաժեշտորեն այն տրամադրությունները, որոնք կենդրոնում են և գունավորում հասարակական կյանքը որոշ շրջանում: Եթե ընդունում ենք, որ մեր կյանքը ևս օտար չէ գաղափարական աշխարհին, որ նա ունի իր ընդհանուր ձգտումները և տենչերը, որոնք բանել են և հարգի, և որոնք որոշ գաղափարական գույն են տալիս մեր կենսական մթնոլորտին, ապա ուրեմն նրանք պետք է ցոլանան անվրեպ համազգային ընտրության գործում, ինչ բնավորություն որ էլ ունենա ընտրությունը: Հետևապես, ընտրական պայքարը լավագույն վայրկյան է դիտելու, թե որո՞նք են այդ հիմնական տրամադրությունները, կյանքը, գաղափարական հոսանքները:

Գաղտնի չէ, որ ընտրական աղմուկները կենտրոնացած են մի անվան շուրջը, նախկին պատրիարք Մաղաքիա արքեպիսկոպոսի (2): Մեր նորագույն պատմությունը չգիտե մի ուրիշ նման դեպք, երբ մի հատիկ անուն այսպես խռովեր հայ հասարակությանը, այսպես երկպառակեր ընդհանուր տրամադրությունը երկու տարբեր թեր և դեմ բանակների: Ենթադրում ենք, որ երկու կողմն էլ, թե՛ պաշտպանները և թե՛ հակառակորդները, կանգնած են անկեղծության և համոզմունքի հողի վրա, այլապես միտք չկա խոսելու:

Երբ մի եզակի անուն, մի սոսկ եպիսկոպոս, ստանում է այնպիսի արտասովոր նշանակություն, որ գունավորում է համազգային ընտրությունը և հիմք է ծառայում կուսակցական կուտակման, նշանակում է, որ խնդիրը լոկ անձնական բարեմասնության կամ վատամասնության մասին չէ, այլ որոշ գործելակերպի, մի հայտնի աշխարհայացքի, որ հասարակության մեջ երեւում է առաջ բերում: Արդ՝ ո՞րն է այն սկզբունքը, այն գործելակերպը, որի մարմնացումն է համարվում Մաղաքիա պատրիարքը և որն երկատում է

այնպես ներհակորեն ազգի ամբողջությունը: Այս կարևոր հարցի առաջ՝ մամուլը պարզեց ավանդական դարձած դրոշները, որոնք բարձր ի վեր ծածանվում են թերթերի լայնարձակ էջերում ամեն անգամ, երբ պետք է զգացվում որևէ հասարակական հանգույց լուծել: Մամուլն ուզեց հավատացնել, որ հակառակությունները այդ երկու դրոշների շուրջն են կատարվում, մինը կրում է ժողովրդական կուսակցությունը, մյուսը՝ կղերական: Երկու բանակները զանազանվում են միմյանցից ձգտումով և ամբողջ կազմով. մեկը՝ առաջադիմական է, հալածիչ խավարի, զինվոր ընդհանրության իրավունքների, այնպիսի սկզբունքների, որոնք տանում են դեպ ժողովրդի գերիշխանություն, մյուս բանակը խավարամիտ է, հետադեմ, աշխատում է եկեղեցին խրամատել ժողովրդից, ստեղծել կուռ հոգևորականություն և եկեղեցին դարձնել նրա շահերի մարդկանց ասպարեզ: Այս հայացքն այնքան է կրկնվում, որ գրեթե պատմական հասարակական տեսության ուժ է ստացել:

Հարցը տեսականորեն մաշելուց հետո, երբ վերջապես կուսակցությունները հրապարակ նետեցին այն սրբազան թեկնածուների անունները, որոնք կոչված էին իրականացնելու համապատասխան տենչանքները, գործի տեղյակ մարդիկ իրավամբ կարող էին հիասթափվել, որ տեսությունն ու հույսերը չեն պատասխանում իսկության գոնե, ինչ վերաբերում է ընտրելիներին: Գուցե կան ազատամիտներ, որոնք կարծում են, որ Եղիշե (3), Մեսրոպ (4), Գևորգ (5) և Խորեն (6) եպիսկոպոսներն և այլն ազատամիտներ են, և կամ կան խավարամիտներ, որոնք թույլ չեն տալիս, որ Մաղաքիա (7) և Կարապետ (8) եպիսկոպոսները լուսո և կրթական ճաշակն առած լինեն. համենայն դեպս այդ սրբազաններն իրենց մասին այդ կարծիքը չունեն. իսկ այն գիտակ ճշմարտությունը, որ կուսակցություններից դուրս է կանգնած, բացարձակ վկայում է, որ հիշյալ եկեղեցականների մեջ գաղափարական տարբերություն չկա: Կարապետ և Մեսրոպ եպիսկոպոսներն անցյալի մշուշով ծածկված անձնավորություններ չեն. մենք բոլորս ճանաչում ենք նրանց, շատերս վայելում ենք նրանց անձնական մտերմությունը (9). նրանք քաջածանոթ են մեզ աշխարհականությունից մինչև եպիսկոպոսություն տանող շրջաններում. կարող ենք վկայել, որ ինչքան էլ նրանք տարբեր լինեն միմյանցից իբրև մարդ, աշխարհայացքի նկատմամբ նույն մեծություններն են, երկուսն էլ բացարձակ միևնույն հայացքն ունեն Հայ եկեղեցու վերաբերյալ խնդիրներում: Նույնամտություն կլինի կարծել, որ «հետադեմ» Օրմանյանը պակաս է հասկանում եկեղեցու և ժողովրդի փոխադարձ հարաբերությունները, քան «առաջադեմ» Սուրենյանցը և Դուրյանը: Հայ եկեղեցականները զանազանվում են միմյանցից իրենց

յուչման ծառայելու պատրաստականությամբ կամ կարողությամբ, առաջինությամբ կամ այլ մարդկային հատկություններով, բայց ոչ եկեղեցու ւանդեպ բռնած դիրքով. գաղափարական համերաշխությունը ցույց միակ ճարդն է, միակ գոտին, որ կապում է այլապես պառակտված և քայքայված եկեղեցականությունը:

Ժողովրդական և կղերական բաժանումներ իսկական իմաստով իրական հող չունեն ոչ միայն հայ հոգևորականության, այլև հայ հասարակության մեջ ընդհանրապես: Հրապարակախոսական մտքի տկարության նշան է, տեսական հայեցողության անհաջող փորձ՝ կռվի նշանաբան հռչակել մեր կյանքում ժողովրդավարությունը: Ոչ այն պատճառով, որ այդ վեհ սկզբունքը առարկության հանդիպելու վտանգ ունի. ժողովրդական սկզբունքը քարոզել մեր մեջ՝ նշանակում է քաղցածին մեկնել, թե ի՞նչ է քաղցը, կամ լեռների անապակ օդում ապրող հովվին խորհուրդ տալ մաքուր օդ շնչել. այսինքն՝ մի ունայն և անվաստակ գործ կատարել: Ժողովրդական սկզբունքն իր ծայրահեղ արտահայտությամբ, **«ժողովրդի համար և ժողովրդի միջոցով»** բանաձևով, մարդասեր քաղաքակրթության մեծ ավետումներից մեկն է: Երբ պետական կամ հասարակական մարմինը պատկերացնում է բանձր շերտավորում, և միապաղաղ կազմը խորշոմում է հարստության, իշխանության, իրավունքի և այլ գործոն ուժերի անհավասար բաշխմամբ, և առաջանում են շահերի և աշխարհայացքի հակամարտ խմբեր, երբ շքեղ ազնվականությունը, զորավոր հոգևորականությունը, փարթամ քաղաքացիությունը (10) տիրանում են կյանքի լիության, և նրա բոլոր առավելությունները դառնում են բախտի մի բուռն ստահակների ժառանգություն, ահա այն ժամանակ արդարության ձայնը պահանջում է, որ զրկված մեծամասնության, ժողովրդական ամբոխի, որ հասարակական կյանքի նպատակն է կազմում, մարդկային իրավունքները հարգվեն և պատշաճորեն արտոնվեն: Ամեն մի հանրային մարմին, որ պետական կամ հասարակական նկատառումով միություն է ներկայացնում, մատնված է շերտավորման օրենքին, ուստի և «ժողովրդի համար և նրա ձեռքով» նշանաբանը հնչում է իբրև հրամայական պահանջ, մարդասիրության վեհ կոչ: Հայ կյանքն ևս բացառություն չի թվում ընդհանուր օրենքից, շերտավորումը նրան խորթ չէ. մեր մեջ ևս կան հարստության դեզեր: Երկրագործ շինականության աղքատիկ մակարդակի վրա կամ նրա կողքին կանգնում են տնտեսական բարձրություններ, որոնցից մի քանիսն իրենց պատկառելի տեղն ունեն արդյունաբերական լայն աշխարհում: Այլ պայմաններում կարող էինք թերևս պարծենալ մեր նործիլ քաղաքացիությամբ, տեսնելով նրա մեջ գրավական, որ ժամանակի հետ համընթաց ենք գնում, ձեռք բերելով

այն, ինչ որ պահանջում է դարը կատարի կենսամարտում գոյությունները պահովելու համար: Բայց մի հանգամանք կա, որ մթագնում է մեր կյանքի պատկերը: Բուրժուականությունը մեր մեջ կենտրոնախույզ զորություն է. որքան բարձրանում են ազգային ընդհանուր կացության մակերևույթից, այնքան օտարանում են ազգությունից: Հայկական մթնոլորտն անզոր է իր մեջ պահելու և սնելու բարձր դասակարգային տարրեր: Բարեկեցության սանդուխտը, կարելի է ասել, ազգադրժական, ապազգային շավիղ է:

Այս մի տխուր երևույթ է, հատուկ ամեն մի համայնքի, որ քաղաքական կամ կուլտուրական ինքնուրույն մեծություն չէ: Մանր ազգությունների կյանքը կարծես շրջանակ չունի և նման է ծովի, ուր ուռուցիկ ալիքները հորձանք տալով նետվում են ցամաք և անհետանում. չկա ամբարտակ, չկա ժայռե ափ, որին բախվելով ետ մղվեն դեպի ծով և մասնակից լինեին հարազատ ջրերի խաղին: Առաջադիմության հոտառու հայը գյուղից անցնում է մերձավոր քաղաքը, այստեղից երկրի խոշոր կենտրոնները. և որքան հեռանում է, այնքան խորթանում է հայությունից: Եթե մնում է հայ, համենայն դեպս ոչ մասնակից հայության քաղաքակրթական գործին: Հայ լեզուն, գիրն ու գրականությունը, արվեստն ու թատրոնը, վարժարանն ու կրթությունը, հասարակական հիմնարկությունները օտար են նրան: Այդպիսի անհատը մնում է հայության կառչած ծագումով, բայց բնավ շահագրգռված չէ հայ կյանքով. և եթե երևան է գալիս լոկ նրա համար, որ մարդասիրության մի բարի գործ կատարի, մի որևէ ձեռնարկություն հովանավորի:

Անջատման հոսանքն այնքան բնական և զորեղ է թվում, որ իր հետ է տանում նույնիսկ հայ անդաստանի գործիչներին: Հայ խմբագրի, ուսուցչի և այլ գործիչների զավակները մեծ մասամբ ծառայում են հայ շրջանակից դուրս, եթե միայն նրանց հայրերը կարողացել են փոքր ի շատե վերանալ միջակ դրությունից: Եթե սրանց որդիքը մի կերպ կակազում են հայերեն, վստահ եղեք, որ աղջիկները ոչինչ չգիտեն, իսկ հետևյալ սերունդը բոլորովին կտրվում է հայերենի կողմից:

Այսպիսով ոչ միայն նյութական հարստությունները, այլև մտավորը դուրս են հեղեղվում հայ կյանքի ափերից: Հրապարակի վրա մնում են բացի գյուղացիությունից, քաղաքների մանր առևտրական և արհեստավոր ազգաբնակչությունը և կրթված դասից այն տարրերը, որոնք դեռ արյունով կապված են շինականության և մանր քաղաքացիության հետ: Արդ՝ քանի որ բարձր խավերը բնական թափով վտարանդվում են հայ կյանքից, և ասպարեզը մնում է հասարակ ժողովրդին և նրա անմիջական զավակներին, առնվազն անտեղություն է ժողովրդական սկզբունքը կովի կոչ հայտա-

բարել: Ո՞վ է մեզանից այդ սկզբունքը խլում, որտեղ է հակառակ բանակը. աղքատից աղքատությունը խլող չկա. ուզենք չուզենք ժողովրդական ենք և՛ արյունով, և՛ հայեցողությամբ, որովհետև սոցիալական պարագաներն են, որ ձուլում և կաղապարում են տրամադրություններին և ոչ ունայն գաղափարաբանությունը: Մեր ժողովրդավարությանը վտանգ չէ սպառնում նաև հոգևորականությունը, այն պարզ պատճառով, որ նա ևս նույն սոցիալական խմորից է շաղախված, ինչ որ աշխարհական գործիչները, իսկ ծագումն արդեն որոշում է աշխարհայեցողությունը: Մի ժամանակ, երբ մեր երկրի ուժը կազմում էին ավատական իշխանությունները, եկեղեցու պաշտոնյաները ևս մի տեսակ հոգևոր նախարարներ էին, և շատերը ծագմամբ իսկ առաջնակարգ տներիցն էին: Ազնվականության փոխարինող այժմյան բուրժուազիան եթե մնար մեր մեջ իբր գործոն դասակարգ, հայ եկեղեցականությունը գուցե կազմով և ձգտումներով համակերպվեր նրան. բայց քանի որ բուրժուազիան քամվում է մեզանից, եկեղեցին, ինչպես և մյուս ապարեզները մնում են միևնույն գյուղական և մանր քաղաքացիական ժողովրդի ձեռքում:

Եթե քահանան տգետ է, ոչնչով չի զանազանվում իր համագյուղացուց. եթե կրթված է, նույն աշխարհական ինտելիգենտն է: Ժամանակակից հոգևորականը և աշխարհականը հարազատ եղբայրներ են և՛ արյունով, և՛ մտքով: Հին դարերի հետ համեմատած՝ այն տարբերությունը կա, որ առաջ աշխարհականներն էին կրթվում՝ ինչպես հոգևորականները, այժմ հոգևորականներն են նմանում աշխարհականներին: Մի Եղիշե Մուրադյան, վարժապետ էր, թե վարդապետ, միևնույն մարդն էր և մնաց (11). փոխված էր միայն տարազը: Երվանդ (12), Թոմաս (13), Սամբրե (14), Ղևոնդ (15) և այլ վարդապետներ և նույնպիսի մի շարք սարկավագներ, որոնց ուսերին վանական վերարկուն միայն ծանրություն էր, պատվական աշխարհականներ էին առաջ և այժմ: Ոչ միայն Մեսրոպ եպիսկոպոսը (16), այլև «կղերամիտ» Կարապետը (17) Լեոյի և Առաքելյանի (18) հետ գաղափարակիցներ են. եթե սրանք վեղար դնեն, նույն հաջողությամբ կկառավարեն Ատրպատականի թեմը և կտնօրինեն սինոդի գործերը. և ընդհակառակը, սրբազանները ոչ պակաս փայլուն հրապարակախոսներ կլինեն: Ի՞նչ են Մատթեոսի (19) նման վարդապետները, եթե ոչ մի Պապունի (20), մի Զամալյան (21) իրենց էությամբ և արտահայտությամբ: Իզուր չէ, որ հայ գործիչները Էջմիածնում վանական կյանքի համար կանոնադրություն էին մշակում (22). իզուր չէ, երբ աշխարհականները հնարավոր են գտնում իրենց միջից կաթողիկոս ընտրել. պատահական երևույթ չէ, որ միմիայն

հայոց կուսակրոն հոգևորականներն իրենց ազգանուններով են հրապարակ ելնում, հակառակ կուսակրոնության հիմնական գաղափարի:

Զարմանալու չէ նաև, որ թուրքահայ Ազգային ժողովի խորհրդատու անդամներից մեկը հղացել էր համաճարեղ նախագիծ կուսակրոն հոգևորականների ամուսնության վերաբերյալ:

Այս բոլորից հետո հասկանալի պիտի լինի, թե ինչո՞ւ կղերամտություն է համարվում այն տարրական պահանջն ու ցանկությունը, որ հոգևորականը չաշխատի աշխարհականին նմանվել. եթե բժիշկները, փաստաբանները, ուսուցիչները, գրականները, ինժեներները ընկերություններ են կազմում, ֆոնդեր են հիմնում, ինչո՞ւ ներելի չլինի և եկեղեցականությանը՝ այդպիսի միություն կազմել, որպեսզի եկեղեցին կազմակերպության նմանություն ստանա, և ոչ թե բաժանոր ընկերություն:

Արդ, քանի որ մեր այժմյան եկեղեցականությունը կազմված է նույն մարմնից և ոսկորներից, ինչ որ մյուս հասարակական ուժերը, խոսք չի կարող լինել կղերականության մասին, իբրև որոշ դասակարգի, այլ լոկ մի տեսակ միության, կազմակերպության:

Ամեն մի խմբակցություն, դասակարգ կոչվելու համար, պետք է որոշ սոցիալական տիրմ ունենա իր տակը. այլապես հասարակական երևույթ չէ: Թող այս կամ այն խումբն իրեն ժողովրդական անվանե, թող մյուսները արծարծեն, որքան կուզեն, կղերական մտքեր,- այս բոլորը կմնան տեսություններ, մտքի փոխառյալ ելունդներ. լավագույն դեպքում ծիրանի զգեստ մեր հասարակական մերկությունը ծածկելու, կամ գուցե,- ինչպես բանաստեղծն է ասում «Ծաղիկներ, որ ծլում են սրտի ավերակներից տխուր հատակը ծածկելու համար»:

Այսպիսով, ժողովրդասիրական հառաչները, ավելորդ աղմուկները, հրապարակախոսական սեթևեթանքները ոչ միայն չեն պարզում, այլ սքողում են ընտրական պայքարի գաղափարական միջուկը: Եկեղեցու շուրջը և նրա անունով հարուցված խնդիրները, համենայն դեպս, ոչինչ կամ երկրորդական նշանակություն ունեն, որքան հարցը վերաբերում է Մաղաքիա արքեպիսկոպոսի թեկնածության: Նրա կաթողիկոսության մաքուր հակառակորդները, նրանք՝ որոնք կանգնած են ներկա կռվում գաղափարական հողի վրա, Կ. Պոլսի մի թերթում հայտարարում են իրենց այն համոզմունքը, որ «կաթողիկոսական խնդիրը իրենց բնավ չի հետաքրքրում, որովհետև եկեղեցին իբրև հնացած հաստատություն ոչ մի դեր չունի կատարելու հայ կյանքում, և դեկը պետք է անցնի ռամկավարական սկզբունքներով կազմակերպված ուժերին. ով կուզե՝ թող լինի կաթողիկոս, մեզ համար միևնույն է,- ասում է թերթը,- մենք պետք է աշխատենք, որ Օրմանյանը չլինի» (հուլիս

ամսվա համարներից մեկում): Այս շիտակ, որքան և օտարոտի, դատողությունը բաց է անում Օրմանյանի դեմ մղված մաքառման հիմնաքարը: Խնդիրն, ուրեմն, ժողովրդական կամ կղերական հայեցակետները չեն. սրանք միայն սեպեր են՝ մեր կարծիքով տեսական, ուրիշների համար զուտ նյութական-գաղափարական կոճղը պնդելու համար: Այստեղ արդեն կանգնում ենք կուսակցական այնպիսի հողի վրա, որ մտացածին կամ շինծու չէ, այլ իրական, վերցված մեր հայրենի երկրից, նրա տառապանքների պատմությունից: Դարերի ընթացքում մեզ դառնապես ալեկոծել են թե՛ ներքին կենցաղի առօրյա վեճերը, որքան էլ որ նրանք կորստաբեր եղած լինեն, այլ առավելապես արտաքին քաղաքականության վերաբերյալ երերումները: Երկու տեսակ ըմբռնումն, երկու տրամադրություն կարմիր գծերով ակոսում են մեր ամբողջ անցյալը - ազատասիրություն, որ տանում է դառն կյանքից դեպի նահատակություն, և խոհականություն, որ դիմանում է նույն կյանքին լավագույն ապագայի հույսով: Այս ուղղությունները հանդիսանում են հայ ոգու տանջալից գալարումները բռնության ճիրաններում և ունեցել են իրենց հուսահատ, թե համառ հետևորդները ինչպես հնում, այնպես և այժմ: Քաղաքական վերջին ուժերը սպառելուց հետո, երբ շուրջանակի պատեցին մեզ մահմեդական պետությունները, հետզհետե սկսեց հասունանալ հեռավոր քրիստոնյա պետությունների հովանավորությանն ապավինելու միտքն ու հույսը: XVI դարից սկսած մինչև վերջին ժամանակներս որպիսի՜ աշխատություն թափեցին այս ուղղությամբ մեր նախնիք և որչափով հաջողեցրին, հայտնի է: 1878 թ. մեր դարավոր տենչանքների պսակման կետը պիտի լիներ (23), բայց բախտը վճռական րոպեին մի անգամ ևս երեսը մեզնից դարձրեց և վարդի փոխարեն փշեր ցանեց մեր երկրում: Անակնկալ հուսախաբությունից հետո՝ մտքերը բնականորեն փեղկվեցին ավանդական ուղղությամբ երկու հակառակ տրամադրության՝ հաշտարար քաղաքականության և պահանջկոտ թշնամության: Երևան եկան այն բանակները, որ **mutatis mutandis** (24) մեր պատմության սեփականությունն են: Վերստին հնչեցին ձայներ, որոնք հին դարերի ղողանջներ էին. «չկարենք ժուժկալել տագնապիս, յորում կայ երկիրս Հայոց» (25), որի պատասխանն էր դառն ճշմարտությունը. «Մանկունք էք և կրտսերագոյնք հասակաւ, գիտեմ, եթէ ոչ կարէք զղեմ ունել զօրութեան բազմագլուխ վիշապին... փշրեսջիք որպէս անօթ բրուտի» (26): Երկու տարբեր հայեցողությունները որպիսի հիմունքներ ունեցան, բոլորիս հայտնի է: Ազգային ժողովն իր նշանավոր ատենապետներով և պատրիարքներով 1884 թ. սկսած հետամուտ է եղել խաղաղական և հաշտարար քաղաքականության: Եթե մի կողմ նետենք հակառակ ուղղության մի քանի գծերը, մանավանդ

նրա արտաքին անհարազատ և անտեղի կերպարանքը, որով մեր մարդասիրական կոչը, մարդկային տարրական պահանջները, հեղափոխական ապառնալից տարազով ծրարվեց և արդար դատը խրտվիլակ դարձավ պետությունների առաջ, եթե անտես անենք այս հանգամանքը և ի նկատի առնենք հարյուրավոր նահատակների արյունը, որոնք իոժարակամ մարտիրոսանալով սրբագործեցին իրենց համոզմունքը և գործելակերպը, պետք է ընդունել, արդարադատ լինելու համար, որ երկու քաղաքականությունն էլ, գործունեության երկու եղանակներն էլ, մեր մերձավոր և հեռավոր անցյալի ավանդներն են. ճշմարիտ կիրառությամբ նրանք են այն երկու թիակները, որոնց զորությամբ մեր գոյության ալեծածան նավակը սահել է կյանքի հորձանուտ ծովում հնուց ի վեր: Խնդիրն ուրեմն այն չէ, թե ո՛ր հայեցողությունն է անպայման ճշմարիտը, կամ ո՛ր գործելակերպը կարող է մեր կյանքի նշանաբանը լինել, այլ միմիայն նրանց հարաբերական արժեքը, համեմատական պիտանիությունն այս կամ այն վայրկյանում (27):

Մինչև մայիսյան մեմորանդումը (28), եթե դեռևս կարելի էր խոսել մարտական քաղաքականության մասին, նրանից հետո երբ վերջին հույսներս, դարավոր դատը, թաղվեց մեր արյան հեղեղների մեջ, Եվրոպայի աչքի առաջ, այդ մասին շշնջալն իսկ կլիներ խակ տղայամտություն: Ահա այսպիսի հուսահատ ժամանակ է, որ պատրիարքական աթոռ է կոչվում Մաղաքիա արքեպիսկոպոսը (29): Ազգային ժողովն իր այն կազմով, որ ընտրել էր Մատթեոս պատրիարքին, նույն ժողովն այժմ տալիս էր իր քվեն Օրմանյանին: Առաջին իսկ ճառում նորընտիր պատրիարքը շեշտեց այն քաղաքական ծրագիրը, այն գործելակերպը, որին պետք է հետևեր անհողդողդ, և որն ոչ միայն իր անձնական տեսությունն էր, այլ ամբողջ ժողովի ցանկությունը: Վերջերս պատրիարքի այս նշանավոր ճառն անհետեք մեկնությանց նյութ դարձավ տարօրինակ թյուրիմացությամբ: Ուստի ավելորդ չենք համարում բերել ճառի էական մասը:

«Վստահ եմ, որ սիրելի ազգիս դարավոր հավատարմության անխախտ սկզբունքը և պարտաճանաչ ուղղության ավանդական ընթացքը և օգնստոսափառ կայսերական գահուն իր հայ հպատակաց վկայած խնամոտ ակնարկը պիտի հարատևեն անխափան, և պիտի լինին պետության և ազգին միջև միջնորդական փափուկ պաշտամանս գրավականներ և օրհնյալ ազգիս ապահովության, անդորրության և երջանկության վերահաստատման ազդեցիկ միջոցներ:

Ս. եկեղեցվույս նվիրյալ պաշտոնյայքս և օրհնյալ ազգիս բովանդակ անհատներն այդ սկզբունքներն մեզի առաջնորդ ունենալով և անկեղծավոր ուղղությամբ ձեռք ձեռքի տալով և վեհազոր ինքնակալիս բարձր պաշտ-

պանության վստահելով և բնակակից ազգաց ամենուն հետ սիրո և եղբայրության ավանդական կապերը պնդելով խղճի մտոք և խաղաղությամբ աշխատինք զարգացման և բարեկեցության, կրոնքնիս և ազգությաննիս ինչպես որ մինչի ցարդ անխախտ պահեր ենք և պահելու արտոնությունն վայելեր ենք, օրինավորության շավղեն չշեղելով՝ հարատևենք պահպանել, ազգին ցավերն ու վերքերն կարող լինիմք բուժել և դարմանել, մեր եկեղեցիներն ու դպրոցները, բարեպաշտական ու բարեգործական հաստատությունները պայծառացնենք, վերանորոգենք և աճեցնենք և այդ ճամբուն մեջ քալելով՝ վստահ լինինք, թե մեր բանավոր և օրինավոր խնդիրներն ալ ընդունելի և հաջող եղք կունենան և՛ մենք և՛ բովանդակ Օսմանյան կայսրության հպատակք առ հասարակ և անխտիր մխիթարությամբ և երջանկությամբ կլցվեին: Բարձրելույն Աստուծո անհուն ողորմությամբ և օգնությամբ վեհապետիս խնամոք»:

Այս բանախոսությունն, որ իր ներքին իմաստով և արտաքին ձևով կարող է զոհացնել ամենապահանջկոտ մարդուն, պարզորեն բնորոշում է այն քաղաքականությունը, որ անվանել ենք հաշտարար, խաղաղական և որին աշխատել է հետևել Ազգային ժողովը Ներսես պատրիարքի (30) քաղաքական ծրագիրների խորտակումից հետո: Բեռլինի վեհաժողովը մազաչափ անգամ չբարվոքելով հայոց վիճակը՝ ստեղծել էր այնպիսի մի դրություն, որ հայերը նկատվում էին Թուրքիայում իբր ապստամբներ, մի տեսակ գերիներ թշնամու բանակում և ո՛չ թե օրինավոր հպատակներ: Հաշտարար քաղաքականության նպատակն էր գեթ վերականգնել թուրք կառավարության առաջ հայի նախկին և այժմ խախտված հպատակության իրավունքները, հակառակ հեղափոխական կազմակերպությունների ցույցերին, որոնք ընդունակ էին անհավատարմության նշան համարվել և նորանոր արհավիրքների տեղիք տալ:

Պատրիարքի ճառն Ազգային ժողովն ողջունեց ծափահարություններով, և նրա ատենապետը դիմեց նրան հետևյալ խոսքերով.

«Դուք, սրբազան տէր, այնպիսի ժամանակ մը կը բարձրանաք յայս գահ պատրիարքական, որ բազմազան դժուարութիւնք զայն կը շրջապատեն և կը խրտչեցնեն ամենէն զօրաւորները. բայց դուք պիտի յաղթէք՝ ամենուն, զի դուք էք միշտ անձնուէր հովիւ, միշտ աշխատասէր, միշտ ուղղամիտ, պիտի կատարէք անվրէպ այն բարձր և դժուարին պաշտօնը, յոր ազգը կոչեց զձեզ և զոր մեր վեհափառ կայսրը վստահեցաւ ի ձեզ»:

Այստեղից հետևում է, որ ժողովի ընտրությունը գիտակցական էր: Նորընտիրը արկածավորի մեկը չէր, որ գահ էր բարձրանում քմահաճ ծրագրով և սուլթանին ծառայելու պատրաստականությամբ, ինչպես կարծում են մի

քանիսները. պատրիարքական գավազանի հետ նա ստանում էր Ազգային ժողովից որոշ սկզբունքների հավանություն: Այդ սկզբունքներին հավատարիմ մնաց պատրիարքն իր գահակալության տարիներին և իրավունք չուներ այլապես գործելու, որովհետև այդ քաղաքականությունը հրամայական պահանջ էր բոլոր այն ազգայինների համար, որոնք լավ էին համարում հայրենի երկրում ցավել ու լուռ տանջվել, քան փախչել և հոխորտալ օտար աշխարհներում:

Ցավելով պետք է հիշել, որ Օրմանյանի գահակալական ճառը Լեոն ներբողներս փորձեց գործադրել ի վնաս պատրիարքի, բարդելով նրա վրա այնպիսի արատներ, որոնք վկայում են, թե որպիսի անարդարության և թյուրիմացության ընդունակ կարող է լինել մեղադրողը: Սահմանադրական ուխտը կատարելուց հետո, պատրիարքը հիշում է, որ սահմանադրության «մեջ նախատեսված վերաքննությունն որոշված լինելով, երբ կայսերական **վավերացմամբ վերաքննյալն հաջորդե,** այն պիտի լինի» ուխտի առարկան: Այս խոսքերի առիթով գրում է Լեոն. «Օրմանյան պատրիարքն ուխտում է կատարել մի կանոնադրություն, որ դեռ գոյություն չուներ, դեռ չէր էլ խմբագրված: Հայ ժողովուրդն էր ստեղծել իր սահմանադրությունը, բայց այս ժողովրդի մասին ոչ մի խոսք. կա միայն կայսերական վավերացումը, այսինքն՝ Աբդուլ-Համիդի, այն Համիդի, որ հենց այդ խոսքերը արտասանած միջոցին կանգնած էր 150.000 հայ դիակների վրա: Օրմանյանն ուխտում է կատարել Համիդի վավերացումը, առանց նույնիսկ իմանալու, թե ի՛նչ պիտի լինի այդ վավերացման մեջ: Սա թյուրիմացության արդյունք չէ, սա աշխարհայացք է»,- բացականչում է Լեոն («Հորիզոն», № 212):

Դժբախտաբար, թյուրիմացություն է և թյուրիմացը Լեոն է: Եթե նա ներողություն քաշեր ուշադիր լինելու պատրիարքի խոսքերին և միտ դներ «վերաքննյալն» բառին, նրա չարամիտ կասկածները կփարատվեին, և պատրիարքն ազատ կմնար անվայել դասից: Լեոյին, անշուշտ, հայտնի է, որ սահմանադրության վերաքննությունը նախատեսված է սահմանադրության 99-րդ հոդվածում, և այստեղ ևս ցույց է տրված վերաքննության եղանակը. հայտնի է նաև, որ Ազգային ժողովը շատ վաղուց հարկավորություն էր զգացել վերաքննության:

Վերջապես այն նիստում, ուր ընտրվում էր Օրմանյանը, որոշված էր նաև ձեռնամուխ լինել վերաքննությանը, հանձնարարելով Խառը ժողովին մշակել փոփոխելի կետերը և տալ վերաքննիչ հանձնաժողովին՝ համաձայն § 99-ի: Այնուհետև «վերաքննյալն» վավերացնում է սուլթանը դարձյալ նույն սահմանադրության համաձայն: Ուրեմն, սրբազան Օրմանյանը չէ, որ մոռանում է հայ ժողովրդին, որովհետև «վերաքննյալն» կարող է միմիայն

Ազգային ժողովի կողմից լինել, իսկ սուլթանին վերապահված է լոկ վավերացումն և ոչ վերաքննություն:

Սերքը բացառապես Լեոյինն է, որ ուզում է մոռացնել տալ ժողովրդին, որպեսզի մի անգամ ևս վկայե իր ժողովրդասիրությունը և, միևնույն ժամանակ մի անգամ ևս զրկե պատրիարքին այդ համեստ առաքինությունից:

Սրանով չբավականանալով, Լեոն փորձում է փետել «հմուտ աստվածաբան հռչակված Օրմանյանի» դափնին և նրա աստվածաբանական սխալներն ուղղել: Պատրիարքը շարունակում է իր ճառը: «Գալով իմ անձին, եթե մեկը կար, որ ինքզինք հեռու պիտի նկատեր պատրիարքական աթոռն ելնելու պատվեն, այն ալ ես էի ստուգիվ, որ գիտակ անձիս չափավորության՝ զոհությամբ աշխատած էի ցարդ՝ մասնավոր և համեստ պաշտոններու մեջ: Այսօր ընդհանուր և բարձր պաշտոնի մը լուծ կդրվի վրաս, և ես պարտավորյալ կխոնարհիմ անոր առջև, որպեսզի չստեմ ամբողջ կենացս հաստատուն կանոնը, չխուսափել որևէ աշխատութենե և զոհողութենե, երբ բարձր կամք մը զայն կօրինագրե: Պատկառելի ժողովիդ ընտրությամբ հայտնած օրինական կամքը և մեր վեհազոր ինքնակալին կայսերական հրամանով հայտնած իշխանական կամքը ինձ համար աստվածային կամքին արտահայտությունն կլինեն, այն կամքին՝ որ բազավորաց սրտերու և բազմաց ձայներուն մեջ կխոսի»:

Այս տողերից Լեոն հնարավոր է գտել հանել մի ահավոր եզրակացություն, հանդուգն մեղադրական հերյուրանք. Օրմանյանը խորապես ու անկեղծորեն հավատացած է, թե «աստվածային կամքը պետք է որոնել Աբդուլ-Համիդի սրտի մեջ և միայն այնտեղ»: Մեծ գյուտ, ծանր զաղտնիք բաց արած մարդու իրավունքով, մեր պատմաբանը, իհարկե, չի զլանում մարդասիրական և հայրենասիրական ճիչեր արձակել, խրատներ կարդալ պատրիարքին, որոնց նա այնքա՛ն պետք ուներ, որպեսզի այդ ապաշնորհ ազգապետի կույր աչերը բացվեն և տեսնի, թե ով է սուլթան Աբդուլը, որ անհոգ և անզետ սրբազանն իմանա վերջապես Լեոյից, թե ով է կարմիր գազանը, և ատրկական շողոքորթությամբ չքարոզե, թե «ճիշտ և ճիշտ աստվածային կամքն էր կատարում Աբդուլ իր գազանություններով, որոնք նույն այդ Աստծուն ճանաչող համայն աշխարհը քարացրին սարսափից»: Մինչդեռ ամեն ոք, որ կարդալու և կարդացածն ըմբռնելու տարերքը յուրացրել է, մեզ հետ կհամաձայնի, որ պատրիարքի մեղադրելի խոսքերը ոչ մի թյուրիմաց հասկացողության տեղիք չեն տալիս: Նորընտիր պատրիարքն ասում է, որ ինքն անարժան է այդ վեհ պաշտոնին, բայց ստիպված է ընդունել, սկզբունքով խոնարհելով բարձր կամքի առաջ: Ո՞րն է այս դեպքում այդ բարձր կամքը, որ նրան կոչում է պատրիարքական աթոռ. ժողովի

կամքը և սուլթանի կամքը, որովհետև ժողովն ընտրում է պատրիարքին և սուլթանը հաստատում: Ինչո՞ւ համար են այդ երկու կամքերը բարձր. որովհետև հնուց վկայված է «Vox populi vox Dei», այսինքն՝ «Ձայն բազմաց ձայն Աստուծո». եթե պատրիարքական ընտրությունը կատարվեր հին հռոմեական հրապարակում, պատրիարքը կբավականանար միմիայն այս առածով, բայց որովհետև ընտրությունը quasi սահմանադրական կարգերի համաձայն օրինավոր է ճանաչվում սուլթանի վավերացումից, նրա իշխանական կամքի հաճությունից հետո, ուստի և «vox populi»-ին պատրիարքը կցում է և «vox կամ voluntas regis» (կամքն իշխանի): Ամեն մի այսպիսի իշխանական կամք, որ գալիս է հաստատելու ժողովի ընտրությամբ հայտնված կամքը, այսինքն՝ բազմաց ձայնը, ինքնըստինքյան ստանում է վերջինիս աստվածային ձայնը լինելու հատկությունը: Հետևապես, ինչպես Օրմանյան սրբազանը, այնպես էլ ամեն մի բանավոր էակ, որ զուրկ չէ մտածելու ունակությունից, կարող է վկայել, որ նույնիսկ սուլթան Աբդուլի կամքը, եթե միայն այդ կամքը հաստատում է ժողովրդական կանոնավոր ընտրության արդյունքը, այն աստվածային կամքն է, որ «բազավորաց սիրտերում և բազմաց ձայներում մեջ կը խոսի»:

Արդ՝ մի՞թե այստեղից հետևում է, որ Օրմանյանը սրբագործում է կամ աստվածային կամքի արտահայտություն է համարում Համիդի կամքն ընդհանրապես: Տրամաբանության հոտն առած դպրոցականը, որ գիտե, թե ի՞նչ է I. և A. նախադասություններ, կվկայե, որ այդպես ընդհանրացնել մասնավոր դեպքը տրամաբանական մտքի այբուբենի դեմ է: Ընթերցող հասարակության գիտության և դատաստանին ենք թողնում, թե որքան արդար և ազնիվ վարմունք է Լեոյի և նրա գրչակիցների կողմից ամիսների ընթացքում թմբկահարել բարձրաղաղակին, որ Օրմանյանը սուլթան Համիդի բոլոր զազանություններն համարում է իբրև Աստծու կամք և թելադրություն և կամ Օրմանյանը հայհոյում է հարյուր հազարավոր նահատակների հիշատակը, Համիդին հռչակելով նախախնամության գործիք և այլ այսպիսի անարգ և նենգամիտ կցկցանքներ:

լիներ. այս կլիներ մեզ համար բարոյական մխիթարություն, որովհե[...] ամեն մարդ, որի համար թանկ է հայ գիրը և գործիչի պատիվը, չի կար[...] հաշտվել, որ պսակավոր հրապարակախոսը, որի երկարամյա աշխատ[...] թյան հոբելյանը տոնել է հասարակությունը (31), կեղծարարության ո[...] նշույլ ցույց տա:

Կեղծիքի վատթար տեսակն այն է, որ կամա, թե ակամա թանձրացն[...] է առանց այն էլ անլույս շրջապատի խավարը, խտացնում է նրա ստ[...]

բային կողմերը, եղծելով լուսավոր կետերը: Մբնոլորտի մաքրությունը հարկավոր է մանավանդ այժմ, երբ կատարվում է մեր կյանքի համար կարևոր ընտրություն: Քննադատական հաշվեկշիռը պիտի չանցնե արատավորման կամ դիտավորյալ վարկաբեկման սահմանները:

Եթե հարկավորություն կա չափել ընտրելիների նաև քաղաքական հայեցողությունը, պետք է անել խղճով և այն զգուշությամբ, որ պահանջում է խնդրի նրբությունը: Վերև շեշտված երկու գործելակերպեն էլ իրենց հիմն ունեն. ուրեմն հարգենք նրանց իրավունքները և լինենք այնքան մաքուր, որ հայացքների տարբերությունը դավաճանության չվերածենք:

Մաքրությունն և ճշմարտասիրությունը զոհ կլինեին, եթե ընտրելիների վերաբերմամբ զոնե այնպիսի կարծիք ունենալ աշխատեինք, որպիսին ունենք մենք ընտրողներս մեր անձի մասին, և որ հայ բարձր հոգևորականության, եկեղեցու ծառայության մեջ ալևորած սրբազան գլուխներին չխնայինք զեթ այն առօրյա բարեմասնությունները, որոնցից զուրկ չեն համարում իրենց սովորական մահկանացուները: Ազգային քվեով պատրիարքական գահ կոչված եպիսկոպոսի անվան շուրջն ինչե՞ր ասես չկատարվեցին: Գահընկեցության ամոքահար պարագաներին հաջորդեցին անլուր ամբաստանություններ. նենգության, գողության, արծաթասիրության և այլ հանցանքների զառիվայրով թավալելով, ապաքախտ եպիսկոպոսին կանգնեցրին ազգադավության սյունի առաջ, որպես հոգևոր ավազակի, որ Գողգոթա էր հանել իր ժողովրդի խաչը (32):

Այսօրինակ գործողություններ վնասում են ամենից շատ մեր ազգային արժանապատվության, այլ և սպառնում են վարկաբեկ անել ընտրական սկզբունքը մեր մեջ: Իզուր չէ, որ այդ սկզբունքը լայն տեղ է բռնած մեր հասարակական կյանքում. քանի որ մեր բարձրավիզությունը հայտնի է, քանի որ դժվարությամբ ենք ենթարկվում հեղինակության, ավանդության, կարգ ու կարգապահության, չենք ուզում գլուխներս խոնարհել որևէ ներքին ուժի առաջ, մնում է մեզ միակ ապավեն՝ ընտրությունը: Եթե հակամետ չենք, ինչպես առօրյա կյանքն է ցույց տալիս, մերձավորի առավելությունները խոստովանել, քան թերիքը ընդգծել, կամ խոստովանում ենք միայն նրա համար, որ մի ուրիշին տապալենք, մնում է ընդունել, որ բոլորս էլ հավասար ենք. և այս դեպքում միայն ընտրական սկզբունքը կարող է ծայրագույն հեղինակության, բարձր իշխանության աղբյուր ծառայել մեզ. ով կընտրվի, թող նա համարվի արժանավորը: Իրերի այս դրությունը նվիրական պարտք է դնում հայ հասարակության վրա անպայման մաքրությամբ վերաբերել ընտրության, որպեսզի նրա հետևանքը պատահական չլինի, որ ընտրվի իսկապես նա, ով մեծամասնության գիտակցության մեջ արժանավորի

համբավ է վայելում, այլապես անհաջող ընտրությունները կարող են հեռզհետե կորցնել տալ ընտրական սկզբունքի հիմքն ու պիտանությունը, որից հետո մեր հասարակական կյանքն ու հաստատությունները քայքայման ու կազմալուծության վտանգին կենթարկվեն:

Պետք է հուսալ, որ մամուլը կարող կլիներ օր առաջ հրապարակ հանել արժանավորագույն անձանց անուններ, որպեսզի ընտրող ժողովուրդը գիտակցորեն մոտենար ընտրության: Դժբախտաբար մամուլն ինքը խարխափելով անգիտության մեջ՝ հաջողեց միայն շփոթություն ձգել եղած հասարակական տրամադրության մեջ. փոխանակ անաչառ և ուղղակի ցույց տալու, թե ո՞վ է արժանավորը, ճգնեց ապացուցանել, թե ո՞վ է անարժանը, ժողովրդին թողնելով արժանավորը գտնելու ծանրությունն ու պատասխանատվությունը: Մամուլը թերացավ կատարել իր պարտավորությունները որպես հարկն էր, մասամբ այն պատճառով, որ Մայր Աթոռի գահակալի համար երբեմն այսպիսի հատկություններ էին որոնում և շեշտում, որ աննշանակ կամ երկրորդական պետք է նկատվեին համայն հայության պետ կոչվողի նկատմամբ:

Կաթողիկոսը Էջմիածնի վանահայրը չէ և ընտրվում է ոչ թե վանքի ագարակները ջրելու, ավազուտները շենացնելու կամ մի քանի եղուկ դպրոցներ կառավարելու, որոնք ամենից քիչ պետք են հենց այն մարդկանց, որոնք ամենից շատ են խոսում այս մասին, որովհետև նրանց զավակները չեն հաճախում այդ դպրոցները: Ամենայն Հայոց հայրապետն ամենից առաջ ընդհանուր հայության վերին պահապանն է, նրա տառապած, բայց անաղարտ խղճի վկան աշխարհի առաջ, մարմնացած նշանարանն ամենուրեք տարագիր ազգի բարոյական միության: Տհասության և կարճամտության կակազումն է այն տղայամիտ մտածողությունը, թե կաթողիկոսն ավելի ռուսահայերի համար նշանակություն ունի, քան թուրքահայերի: Այսպես մտածելով կարող ենք իջեցնել նրան մինչև Երևանի թեմակալությունը: Ներկա եկեղեցական դասի մեջ կա մի մարդ, որ գուցե և վատ է, բայց եղածներից ամենալավն է, գուցե կատարելության տիպար չէ, բայց անպայման այն պիտանի անձնավորությունն է, որ ընդունակ է ցրել թյուր հասկացողությունները և բուժել Էջմիածինը քրոնիկական հիվանդությունից՝ արժանավորապես տնօրինելով [illegible] կապված հասարակական խոշոր և մանր խնդիրները, և Մայր Աթոռն իր հեռզհետե խոնարհվող դրությունից հանել և կանգնել այն բարձրության վրա, որ վայել է հայության բարոյական կենտրոնին, և տալ նրան այն արքայական շուքը, որ ճանաչված է օրենքի առաջ. դա Նախկին պատրիարք Մաղաքիա արքեպիսկոպոսն է: Տեսական և գործնական լուրջ

պատրաստությունը, գիտությունն ու փորձառությունը, աշխարհայացքի հաստատությունը, ալեզարդության պատկառանքը և, որ գլխավորն է, բարձր հեղինակությունը, որ չնայելով բոլոր ամբաստանության՝ մնում է բարձր ի գլուխ ոչ միայն հայության շրջաններում, այլ և օտար պետությանց առաջ – կազմում են առավելությանց այնպիսի մի գումարումն, որ տալիս է նրան եզակի դրություն իր ատիճանակից եկեղեցականների շարքում: Էջմիածնի համար նա կլինի առաջին գահակալը, որի մեջ հայրենի պատմության ավանդները լուսավորված են նոր եվրոպական քաղաքակրթության և վարչական ճշմարիտ հասկացողության իսկական լույսով. նույնիսկ նրա քաղաքական հակառակորդները, եթե ուզում են լսել խղճի ձայնը, այն խղճի, որ վեհագույն բանականություն է, պետք է խոստովանեն, որ Օրմանյանն է մնում նաև միակ անձն, որ հնարավորություն ունի՝ շնորհիվ իր գրական հռչակի արտաքին աշխարհում՝ ձայն բարձրացնել ընդհանուր հայության կենտրոնից նրա հոտի այն մասի համար, որին, ինչպես երևում է, վիճակված է մնալ դեռևս իր նախկին դրության մեջ, քանի որ հազիվ պարզված հորիզոնը նորից մթնում է անհայտության մառախուղով:

## ԿԵՂԾԸ ԲԱՐՔԵՐԻ ԵՎ ՄՏՔԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

Հասարակական կյանքի շրջաններում պատահում են երբեմն վայրկյաններ, երբ որոշ կարծիքներ, որոշ մտքեր մեխի հատկություն են ստանում, որքան խփում ես, այնքան ամրանում են:

Այս գիտնալով հանդերձ, միմիայն քաղաքացիական պարտքի ծանրությունից, թե համեղիությունից մղված, հարկավոր դատեցինք իր ժամանակին անձնական տեսություններս հայտնել ընտրությունների առիթով:

Մեր փափագն էր՝ մոլար մտքերի և անսաստ զգացումների խառնակ ծալքերից հանել և պարզել գաղափարական թելը, որպեսզի կարելի լինի որոշել խոտանն ու պիտանին, իսկականը և հետսամուտը:

Գրությունս պատրաստել էի «Հորիզոն» թերթի (1) համար, հուսալով, որ մեր տարալուր ձայնը, նրա միանվագ գեղգեղանքին առընթեր, թերևս նպաստի ընթերցողներին ավելի զգաստորեն վերաբերվել պատասխանատու գործին: Սակայն հիշյալ օրագիրը, որ օր առաջ կարծիքների ազատության կողմնակից էր հռչակել իրեն, անհնար գտավ հյուրընկալելու մեզ, անշուշտ, ազատությունից ավելի բարձր կշռելով ընթերցողների շահը, որ չլինի թե նրանք վրիպեն ճշմարտության շավղից, այն ճշմարտության, որ պաշտպանում էր նրա համբավավոր աշխատակիցն (2) այնպիսի թանկ գնով:

Հոդվածը լույս տեսավ «Մշակում» (№№ 259, 260), ինչպես կհիշեն ընթերցողները:

Ընտրական թափորը պերճությամբ կատարելուց հետո, «Հորիզոն» պատվական թերթը պատեհ ժամանակ է գտել գրությանս անդրադառնալու:

Այնտեղ կային անախորժ կետեր, որ վերաբերում էին հարգո օրագրի վաստակավոր գործակցի գրական վատանունության. անախորժ, որովհետև ինչ որ հարում է կեղծարարության, ծանր է թե՛ անողի, թե՛ մերկացնողի, և թե՛ լսողի համար:

Ազնվությունն իբր անձնական բարեմասնություն՝ պահանջում էր ապաշավության խոսքեր, իսկ իբր հասարակական շիտակության շեշտ՝ պարտավորում էր ննջողին հրապարակավ հետ վերցնել ամբաստանության գիր այն շերտերը, որ այնպիսի հեշտությամբ դարսվում էին մի հատիկ վեղարի շուրջը:

Այն ինչ՝ ննջքն աչքերը փակեց, որ ավելի ուժգին աղաղակե և ամեն շփոթի մեջ խեղդի ներքին դատավորի ձայնը և հիմք տա կարծելու, որ մենք սխալվել էինք, ոճիրը վերագրելով բյուրիմացության:

«Հորիզոն» թերթը ևս որ ակամա մեղսակից էր հանցագործության, զղջման խոսք չարտասանեց. և փոխանակ սթափվելու և լռելյայն դատնությունը ճաշակելու՝ փորձեց անուշություն որոնել մի ապաշնորհ դաշտում, անշնորհք խիզախումով:

Ոմն պարոն, կանացի տկարությամբ թաքնվելով Մ. կեղծանվան տակ (3), հանձն է առել սրբելու «Հորիզոն»-ից և նրա աշխատակցից արատը, մերկացնելով մեր տգիտությունը, մեր «ինքնահավան տգիտությունը» («Հորիզոն», №№ 11, 12 և 13) այն տեսությունների նկատմամբ, որ արծարծվում են հիշյալ հոդվածումս:

Հարկ չկա նկատելու, որ ոչ մի տգիտություն և առավելապես մեր տգիտությունը, չի կարող արդարացնել եղած կեղծիքը, եթե մենք կանգ ենք առնում մի անանուն և անվայել գրության վրա մեղանչելով մեր սովորության և ճաշակի դեմ, միմիայն այն պատճառով, որ այստեղ կեղծությունը, բազմած՝ տգիտության թիկունքին, աղարտում է բանն հարցեր: Դարանակալ գրիչն իր գրությունը համեստորեն համարում է ուսումնասիրություն «մեր մտավորականության բարքերից», լուսաբանում «մեր» համալսարանական մտավորականության որոշ հատվածի վրդովեցուցիչ բարքերի, նրա աչառու ամբարտավանության և անօրինակ փոքրոգության («Հորիզոն», № 13):

Մարդ էակի լեզուն շատ անգամ ավելի բան է ասում նրա մասին, քան թե միտքը: Այսօրինակ բերան կարող է ունենալ միմիայն նա, ով մտավորականության և ոչ իսկ բարոյականության համալսարանի շեմը չի կոխած: Պետք էր հուսալ, որ անհայտ պարոնը, որին այնպես սազում է հովվական խարազանը, յուրացրած կլիներ այն հասարակ ճշմարտությունը, որ առնվազն անվայել է բարքերի մաքրության և կամ փոքրոգության մասին ճառել, և վեհերոտությամբ ապավինել Մ. տառին: Առաքինությունը պահանջում է ամենից առաջ անահ ուղղորդություն և այնքան չի տուժում բացարձակ արատներից, որքան կեղծ առաքինությունից և կամ դիմակավոր առաքինախոսներից:

Դիմակավորության տեսակետից շատ բնորոշ է և այն հանգամանքը, որ պ. Մ.-ն չէ բավականացել ծպտել միայն բարոյագիտության համեստ վերարկուով, այլև կարևոր է համարել ուսերին նետել նաև ազատամտության պերճ սամույրը... որպեսզի հիմք ունենա նախ և առաջ [Գ-ր.] Արծրունու ուրվականի առաջ ծունր դնել, երեսը խաչակնքել, կարոտակեզ աչքերը

հառել դեպի այն երանավետ օրերը, երբ ազատական ոգին դեռ սավառնում էր «Մշակ»-ի էջերում: Հառաչալից մորմոքները վկայում են թերևս, որ պ. Մ.-ի մտքի թոքով կապերը արձակվել են «Մշակ»-ի խմբագրատանը, և դժվար չէ կռահել այն, ինչ որ նա պարկեշտորեն ծածկում է, որ լույսն ու ազատամտությունն իր հետևից անցել են «Մշակ»-ից դեպի «Հորիզոն»:

Անշուշտ, «Մշակ»-ը պ. Մ.-ին նոր Պրոմեթևս (4) չէ համարում և ոչ «Հորիզոն»-ի էջերը ազատամտության հնոց: Բայց և այնպես պ. Մ.-ն ազատամտության և առաջադիմության մեղեդին թերանին՝ խեթ հայացք է ձգում «Մշակ»-ի վրա, որի համար մենք մեղապարտ ենք, և շտապում տապալելու մեր «տխաս մտքերը», կորզելու «գիտնականության օրեոլը» (5):

Իհարկե, մեզ համար մեծ ցավ է, որ մեր գիտնականությունը չի ընդունում և մեզ պարկեշտության վկայական տալ չի ուզում այնպիսի մի ծանրագլուխ անձնավորություն, որպիսին է պ. Մ.-ն, որ գիտությունն ու համեստությունը զրկած, անտարակույս, հիմք ունի իրեն արտոնելու այդօրինակ վկայաթերթեր բաշխելու խոնարհ կոչումը:

Մեր ցավը կարելի է ամոքել նրանով, որ վայելչության և մարդկային ու ազգային արժանապատվության մասին այնպիսի հասկացություն ունի պ. Մ.-ն, որ միայնակ իրեն է հատուկ...

Նրան դուրեկան չէ և մինչև իսկ անըմբռնելի մեր այն տարրական պահանջը, թե անկիրթ և սանձարձակ լեզուն սահման պետք է ճանաչե եկեղեցու ալևոր պետերի նկատմամբ, լինեն նրանք նույնիսկ այնպիսի ոչնչություններ, որպիսիք են Օրմանյան, Չամիչյան (6), Աշըգյան (7)՝ Կ. Պոլսի Հայոց պատրիարքներ, որոնց դժբախտությունն այն է, որ գահ են բարձրացել ազգի քվեով, բայց առանց Մ.-ի հավանության: Լի տրտունջով՝ պ. Մ.-ն մի անգամ ևս խրոխտում է, որ պարտավոր չէ բնավ քաղաքավարի լինել դեպի հայ պատրիարքները, և հաղթական շարժումով անցնում է մեր «պատմագիտական վերլուծումներին» չմոռանալով հետը վերցնել, իբրև վկաներ, [Գր.] Արծրունուն, [Մ.] Նալբանդյանին, Րաֆֆուն:

Գիտությամբ ուռճացած մարդու զարկով, պ. Մ.-ն հավաստացնում է, որ ագետից հողվածը մի խակաբանություն է, և իբրև ապացույց բերում քաղվածքներ գրությունիցս:

Քաղումները շատ խրատական են. այստեղ ցոլանում է Մ.-ի ծածկված էությունը **«մտքի և բարքի»** տեսակետից: Հենց այս պատճառով արժե կանգ առնել նախ և առաջ քաղվածների վրա, որքան և տաղտկալի լինի թե՛ ընթերցողի և թե՛ մեզ համար:

«Ժողովրդական և կղերական բաժանումներն իսկական իմաստով իրական հող ունեն ոչ միայն հայ հոգևորականության, այլ և հայ հասարակության մեջ ընդհանրապես»:

Մեր այս պարզ մտքի առիթով պ. Մ.-ն բացականչում է. «Ի՞նչ ասել է իսկական մտքով. ի՞նչ է նշանակում հայ հասարակության մեջ ընդհանրապես. խոսքը ռուսահայ հասարակության մասի՞ն է, թե՞ ամբողջ հայկական, թե՞ ընդհանրապես չկան, իսկ մասնավորապես կան» և այլն:

Թերավարժ տղան անգամ կարող էր ինքն իրեն լուծել այսպիսի հարցեր, առանց հասարակության օգնության: Մոլեգին «հակակղերականությունն» է, երևի, պատճառը, որ պ. Մ.-ի մտքով չի անցնում, որ հայ հոգևորականությունը հայ հասարակության մասն է: Այլապես, ինչո՞ւ պետք է բանականի գլուխը փակ մնար մի հասարակ մտքի հանդեպ, թե այսինչ երևույթը չկա ոչ միայն հոգևորական դասի, այլև հայ հասարակության մեջ ընդհանրապես:

Ամբողջության մի հատվածի, մի կտորի մասին մի բան ասել և ապա նույնը ընդհանրացնել և մյուս մասերի վերաբերմամբ՝ այս տրամաբանական մտածության սովորական քայլ է:

Արդ՝ Մ.-ի անհասկացողությունը կեղծի՞ք է, թե՞ իրավ իմացական թուլություն, այսինքն՝ բարքի՞ պակասություն է, թե՞ մտքի:

Զարմանալի է, որ նույն չարաբախտ I. և A., այսինքն՝ մասնավոր և ընդհանուր նախադասությունները են, որ գայթակղության քար են դարձել անցյալ անգամ պ. Լեոյի համար, ինչպես տեսանք, իսկ այս անգամ պ. Մ.-ի, մտածության տարօրինակ խնամությամբ:

Հոգևոր արյունակցություն է երևում հարգո պարոնների մեջ և հետևյալ օրինակում: Մեր խոսքերն են.

«Ժողովրդական սկզբունքն իր ծայրահեղ արտահայտությամբ՝ **«ժողովրդի համար և ժողովրդի միջոցով»** բանաձևով, մարդասեր քաղաքակրթության մեծ ավետումներից մեկն է: Երբ պետական կամ հասարակական մարմինը պատկերացնում է բանձր շերտավորում, և միապաղաղ կազմը խորշոմում է հարստության, իշխանության, իրավունքի և այլ գործոն ուժերի անհավասար բաշխմամբ, և առաջանում են շահերի և աշխարհահայացքի հակամարտ խմբեր..., այն ժամանակ արդարության ձայնը պահանջում է, որ զրկված մեծամասնության, ժողովրդական ամբոխի մարդկային իրավունքները հարգվեն և պատշաճորեն տնօրինվեն: **Ամեն մի հանրային մարմին, որ պետական կամ հասարակական նկատումով միություն է ներկայացնում, մատնված է շերտավորման օրենքին, ուստի և «ժողովրդի**

համար և նրա ձեռքով» նշանարանը հնչում է իբրև հրամայական պահանջ, մարդասիրության վեհ կոչ»:

Դարանակալ պարոնը քաղելով միմիայն ընդգծված տողերը՝ բույլ է տալիս իրեն հետևյալ մարգարիտը.

«Լավ չեմ ըմբռնում և այս խորախորհուրդ բեզիսը. տրամաբանական այս հյուսվածքում նախադրյալը և եզրակացությունը ռռնում են իրար դեմ մի ողբալի անններդաշնակության մեջ: Անկեղծորեն ցավում ենք, որ ստիպված ենք այսպիսի տարականոնություններ արձանագրել մի չափահաս և ինտելիգենտ մարդու գրվածքում, որ հրապարակ է գալիս ուսուցանելու հայ հրապարակախոսներին»:

Դժվար չէ տեսնել, որ ընդգծված նախադասությունը, որ պ. Մ.-ին անհեթեթություն է թվում, սերտորեն կապված է նախընթաց պարբերության հետ և միասին կազմում են մի տրամաբանական ամբողջություն, մի հավաքույթ այսպիսի ձևի:

Երբ լինում է A երևույթը, լինում է և B (ավագ նախադրյալ):

Արդ՝ A երևույթը կա (կրտսեր նախադրյալ):

Ուրեմն կա և B (եզրակացություն):

Մարդ պետք է Մ.-ի տրամաբանական պատրաստությունն ունենա, որ ավագ նախադրյալը մի կողմ ծալի և կրտսեր նախադրյալի և եզրակացության մեջ կապ որոնի. դարձյալ միմիայն բարոյական նսրության տեր պետք է լինի, որ դեռ ճակատ ունենա «տարականոնություններ արձանագրել չափահաս մարդու գրվածքում», և իր հոգևոր կաղությունն ուրիշներին վերագրելու և այն էլ ապերասանության այնպիսի՜ եղանակով:

Այդ արդեն և՛ բարքի, և՛ մտքի խեղություն է: Որքան նման է պ. Մ.-ն իր վարմունքով Լեոյին, որ նույնօրինակ անզրազետ՝ բանաքաղությունը առաքինության բոժոժ էր շինել իր համար և դրնչում, փոշի էր բարձրացնում պատրիարքի անվան շուրջը, հանրայակատար թեքևամտության բռիչքով...

Նման խակբեկությամբ վերիվայր է հոլովում պ. Մ.-ն և մեր այն միտքը, թե «ծագումը որոշում է աշխարհայացքը», այսինքն՝ ամեն մի դասակարգ իր նիստն ու կացն ունի նյութի և մտքի, մարմնի և հոգու աշխարհում. նայելով, թե մարդ, որ դասակարգից է ծագում, որին է պատկանում, նույն կարգի էլ աշխարհայացք է ունենում: Եվ որովհետև հայ հոգևորական, թե աշխարհական գործիչների մի ոտին՝ դեռ կարոտության տրեխն է, իսկ գլխին՝ մտքի փափախը, այսինքն՝ հայ շինականության և մանր քաղաքացիության որդիներն են, դրանց մեջ դասակարգային խտրոց չէ կարող լինել. և ուրեմն դասակարգային շահերի ընդհարում տեսնել կաթողիկոսական ընտրության ժխորում ոչ մի բանավոր հիմք չկա:

Մտքի այս փոքրիկ հացը պ. Մ.-ի համար քար է դարձել. նրան «սոցիոլոգիական հայտնություն» է թվում, որ «ծագումը որոշում է աշխարհահայեցողությունը», որովհետև պարոնը գիտե, որ ամեն տեղ բուրժուազիան նվաստ ծագում է ունեցել, օրինակ՝ Ֆրանսիայում բուրժուազիան ծագել է միջնադարյան արհեստավոր համայնքներից. և չնայելով սրան, արևմտյան բուրժուազիան և հասարակ ժողովուրդը անհաշտ թշնամիներ են այսօր. ասել է, թե ծագման խնդիրը նշանակություն չունի:

Մեր հարգո հակառակորդը մի անգամ և, ապացուցանում է, որ անընդունակ է հպատակվել մտածողության օրենքներին և տրամաբանական ստուռմներն ու շեղումները բնավորություն է դարձրել:

Եվ իիրավի, միայն պ. Մ.-ի զարտուղի միտքը կարող է ծագումը իբր պատկանելություն այս կամ այն դասակարգին շփոթել դասակարգի պատմական ծագման, առաջգնացության, այսպես ասած ծննդականության հետ: Բուրժուականի որդին՝ բուրժուական է, գյուղացու որդին՝ գյուղացի. սա ծագումն է: Բուրժուականությունը ծագում է նախնի գյուղացիությունից, կամ գյուղացիությունը՝ կիսամերկ վայրենիներից. սա էլ ծագումն է: Մեր խոսքը առաջինի մասին է, քանի որ մեր մտավորականները, աշխարհական, թե հոգևոր, մինչույն հասարակ, ռամիկ դասիցն են, նրանց մեջ դասակարգային պառակտումներ որոնելը սխալ է, և եղած կուսակցական կամ այլ կուտակումներին դասակարգային խտրության բնավորություն տալը բացարձակ թյուր հասկացողություն է:

Մեր «այս ակներև սոփեստությունը ջրելու համար» պ. Մ.-ն հիշում է, որ «գյուղական գզիրների, տանուտերերի, գրագիրների, վաշխառուների և ամեն տեսակ ցեցերի լեզուն նույնպես շաղախված է ռամկական խմորից», բայց «ոսկալի պատուհաս են... ժողովրդի համար, թե՛ Կովկասում, թե՛ Թուրքիայում»: Պ<արոն> Մ.-ն մոռանում է, որ հիշյալ ցեցերը դասակարգային չարիքներ չեն, ինչպես որ դասակարգային չարիք չէ մի ստրաժնիկ, մի յասաուլ. այսպիսի ցեցեր կարող են լինել ամեն դասակարգի և ամեն փեշակի մարդկանց մեջ. բոլոր գզիրները պատուհաս չեն, ինչպես և բոլոր հրապարակախոսները և գրողները բարերար հրեշտակներ չեն: Բարքի և վարքի մաքրությունը, ազնվությունը և ճշմարտասիրությունը դասակարգային շրջանակներից դուրս են մնում. և եթե պ. Մ.-ն անհեթեթ ոստյունով վեճի նյութից անցնում է ցեցերին, անշուշտ, միմիայն նրա համար, որ ավելորդ անգամ ցուցաբերի իր ժողովրդասիրությունը, և այս դեպքում հետևելով պ. Լեոյի օրինակին:

Անծանոթ պարոնի այլանդակ խաղերը, այն թեթևությունը, որով մի տրամաբանական թփից ցատկում է մյուսը, ամենից առաջ մտավոր անկա-

տարության մշան են: Օրինակները աշխուժորեն վկայում են, որ Մ.-ի պատրաստակամությունը շատ չէ բարձրացած խալֆայական գետնատարած ուսմունքից: Քննադատական բանաքաղության եպերելի եղանակը, երբ մի գրությունից հանվում են մի-մի նախադասություն, հատիկ-հատիկ բառեր կամ մտքեր, և առանց միտ դնելու տրամաբանական թելին, որը բառերին և դարձվածքներին տալիս է շիտակ իմաստը, և որոշում նրանց դիրքն ամբողջության մեջ՝ հեղեղում են հակառակորդի մտքերը, ծափծափի զարնում, ասում ենք, այս եղանակը հատուկ է այնպիսի սկավառակների, որոնք կերտված են սաղմոսագրքի, առակների և կամ Խիկար Իմաստունի (8) սերտողությամբ: Շարադրության նախադասությունները հատ-հատ սաղմոսի տներ կարծելով, կանգ են առնում նրանց վրա, և ձախլելով բարբաջում: [Մ.] Նալբանդյանը, որին այնքան սիրում է պ. Մ.-ն, այսպիսի գլուխներին անվանում էր «բառերի պահարան». այստեղ ամեն բան կարող է գտնվել, բայց ոչ այն ներքին կապը, որ բառերը շաղկապում է միմյանց հետ և մտավոր հարստություն, գանձ դարձնում, և որը ձեռք է բերվում մտքի կանոնավոր մարզությամբ և համենայն դեպս ոչ խալֆայական քերականով:

*
* *

Անծանոթ հակառակորդիս իմացականության տափաստանը կատարյալ ապառաժոտ է, ուր բարի սերմերը կամ կորչում են, կամ չարամիտ որոմներ են ծգում: Տկարացավ ընթռնել մի քանի մտքեր և խորհրդածություններ, որ չէր գտել Արծրունու կամ Նալբանդյանի մոտ: Ասածներս առաքելական հայտնություններ չէին. բուրժուականությունը քափվում է հայ կյանքի ափերից, վտարվում է ազգային մթնոլորտից - ահա մի միտք, որ խոշոր և սև տառերով գրված է արդի հայ իրականության ճակատին և ընթեռնելի է ամեն մեկի համար, որ ընդունակ է երևույթներ կարդալու: Ով չի տեսնում, որ նյութի և մտքի հարստության գետակները բավական է, որ քիչ զորանան, թողնում են հայրենի հողը և սրընթաց չքանում օվկիանի ծոցում:

Գաղտնիք չէ, որ նույն գետերը փոխանակ ջերմ շոգի դառնալու մեր առաջխաղացության համար՝ բարձրանալով ամպանում են և հողմավար քշվում մեր երկնակամարից:

Այս մի տխուր, բայց և այնպես անողոք երևույթ է քաղաքական կամ կուլտուրական մեծությունից զուրկ ազգերի համար, և այնքան բնական, որ քարշում է մինչև իսկ հայ գործիչներին:

Պ<արոն> Մ.-ն այս ընդհանրացման առաջ նահանջում է, միտք մտքի է տալիս, իրեն հատուկ հետևողությամբ գտնում է մեր միտքը և՛ «օրիգինալ» և՛ «արտառոց». քիչ է մնում, որ ըմբռնե, բայց վայրկենական լույսի նշույլը կորչում է խավարի մեջ:

Բուրժուականության օտարացումը պ. Մ.-ն համարում է «չապացուցված և չապացուց(ան)ելի» և մեզ հանդիմանում է, որ բնական ենք կոչում մի երևույթ, որ «հակասում է ազգայնության ճակատագրի համաշխարհային օրենքին»:

Սաղմոսը կռնատակին մեծացած գիտունը կարող է, իհարկե, խոսել այնպիսի համաշխարհային օրենքի մասին, որը հավասարապես հովանի է բոլոր ազգություններին: Դժբախտաբար, օրենքներից մեծն այն է, որ հնչում է cuique suum (9), և որ զանազանություն է տեսնում հավի և արծվի, եղնիկի և առյուծի միջև:

Ով որ «երանեալ է այր» կարդալով՝ կարծում է, որ բոլոր մարդիկ արդարության ճանապարհով պիտի գնան, նա կարող է յուրովի գաղափար ունենալ բնական և անբնական երևույթների մասին: Երբ ազգի վերին շերտերը օտարանում են այնպիսի անշեղությամբ, որ հակառակ երևույթը բացառություն է թվում, «նորմալը» առաջինն է և ոչ երկրորդը, թեպետ և սա հակառակ լինի բարոյագիտական բնականության: Նույնչափ «նորմալ» է, որքան որ առաքինությունն առաքինի մարդու համար և մոլությունն արատավորի, թեև երկուսն էլ Աստծո պատկերն են կրում:

Բուրժուականության օտարացման չի հավատում պ. Մ.-ն, մինչդեռ երեկվա բուրժուազիայի ներկայացուցիչները դրամի, թե մտքի աշխարհում – լինեն նրանք լոկ ունևորներ, թե պրոֆեսորներ, գրողներ, գործիչներ - երկրորդ, թե երրորդ սերնդում չքանում են հայ հորիզոնից: Բավական է աչք ածել և տեսնել, թե ովքե՞ր են մեր գործիչները հրապարակի վրա: Հազարավոր բարձրակիրթ ուժերից հատուկենտ անհատներ են միայն ելնում մեջտեղ, և նրանք էլ իբրև սիրողներ, պատրաստ՝ հարմար առիթով հեռանալ. իսկ ասպարեզը մնում է միջին կրթության տեր անձերի:

Պատահական երևույթ չէ, որ հայ բուրժուազիան անմասն է հայ գրականության և մեր բոլոր գրողները հասարակ դասից են. Րաֆֆի, Շիրվանզադե, Աղայան, Թումանյան, Իսահակյան, Ծատուրյան, Մուրացան, Նար-Դոս և այլն և այլն: Բավական է, որ պ. Մ.-ն հիշեր Լեոյին:

Եթե բախտը նրան Ամիր խալֆայի շեմքից համալսարան նետեր, հավանորեն և նա կհեռանար մեզնից. այդ կողմից երախտապարտ ենք մեծ վարժապետին:

Պատվական Մ.-ն, եթե մի քիչ իր միտքը լարեր, կհասկանար, թե ինչո՛ւ ասպարեզը խալֆայական աշակերտության է մնում, մինչդեռ Ռուսաստանում և Եվրոպայում համալսարան չկա, որ հայ սաներ չունենա: Համալսարանը բուրժուական կրթության վայր է, և նրա սաները իբրև բուրժուականության մտավորականներ, բուրժուազիայի հետ միասին երես են դարձնում մեզնից, մեր կյանքի լճակը փոքր համարելով իրենց պատրաստականության ճավի համար: Այսպիսի պայմաններում բուրժուականության հարձակումից երկյուղ կրելով կռիվ հռչակել նրա դեմ՝ նշանակում է խրխինջ բարձրացնել սավերների դեմ, կամ մտավոր սարուկ դառնալով մերկապարանոց նշանարաններից փախչողի ետևից գնդակ արձակել հարձակվողի տեղ ընդունելով նրան:

Բայց պ. Մ.-ն այն գրիչներից է, որոնք հրապարակախոսությունը դեռ չեն որոշում վաղեմի քարոզչությունից և խարազանելն ու բարոյախոսելն իրենց կոչումը համարելով՝ պատրաստ են ստեղծել բուրժուականություն, եթե չկա էլ, որպեսզի դեմ ու դեմը «արատավորներ» ունենան կովի և մաքառման համար: Տեսեք, պ. Մ. «հասարակական գիտության այբուբենում» ի՛նչ է կարդում. «Բուրժուականությունը իբրև աշխարհայացք և հոգեբանություն միմիայն Ռոտշիլդների (10) և Մանթաշյանների մթնոլորտում չի բարգավաճում, այլ և ավելի մանր ու միջակ վաճառականության շրջաններում, այլ և մտքի, արվեստի, գրականության աշխարհում: Բուրժուական մտայնություն կարող է ունենալ և մի համեստ ինտելիգենտ-պրոլետար, մի բժիշկ, մի փաստաբան, մի օրագրող, մի պաշտոնյա, գործակատար, և նույնիսկ ավելի նվաստ հասարակական կատեգորիայի մի անհատ»:

Պարոնը չի բացատրում, թե ինչպես է կատարվում հոգու այս կերպարանափոխությունը. երևի կարծում է, որ մի մանրավաճառ, մի գործակատար, կամ ավելի նվաստ դիրքի անձ, ասենք՝ մի դռնապան, մի ջրկիր, մի չարչի բավական է, որ մի լավ գիրք թերթի բուրժուազիայի մասին, կամ մի լավ վեպ կարդա նրա կյանքից, իսկույն կյուրացնի «բուրժուականության աշխարհայացքն ու հոգեբանությունը»:

Ճշմարիտն եմ ասում, ավելի դյուրին է Մ.-ին Լեոյի գրքերը կարդալով պատմագիտության աստղի ծակից անցնել, քան մի մանրավաճառի հիշյալ միջոցով բուրժուական դառնալ: Մի գործակատար կարող է, իհարկե, բուրժուական «մտայնություն» ունենալ, ճիշտ այնպես, ինչպես մի մոնք կարող է տապակվել Սպենսեր (11) դառնալու տենդով: Բայց ինչպես որ գիտությունը շահ չունի այդպիսի տապակումներից, այնպես էլ ժողովրդավարության ոչ մի վտանգ չի սպառնում չարչիների բուրժուականությունից: «Ինտելիգենտ պրոլետարը», լինի մի ուսուցիչ կամ մի բժիշկ, որ բուրժուա-

կան մտայնություն ունենալով ուտենու տակ ոտ ոտի վրա դրած պաղ ջուր է խմում և նարգիլե քաշում, դասակարգային կռվում գուցե և զինվոր է, բայց պայտով ոչ բուրժուականության կողմից, և ժողովրդավարը կարող է հանգիստ ննջել:

Բուրժուականությունն իբրև դասակարգ դրամական և մտավոր ատաղձով, ինչպես երևում է, այնքան էլ պարզ հասկացողություն չէ պ. Մ.-ի համար, այլապես այնպիսի ներողամտությամբ չէր ասի, որ բուրժուականությունն իբր աշխարհայացք կարող է երևալ «նաև մտքի, արվեստի և գրականության աշխարհում»: Մինչդեռ նրան պիտի հայտնի լինի, որ նոր քաղաքակրթությունն իր բոլոր հրաշալիքներով բուրժուական առաջադիմության արդյունք է, բուրժուական ստեղծագործության շենք:

Դասակարգային այլազանությանց մասին մոլար կամ աղոտ հասկացողություն ունենալով, պ. Մ.-ն շփոթում է **բուրժուա** գաղափարը մի կողմից **բուրժու** քամահրական արտահայտության, մյուս կողմից **բյուրգեր** իմաստի հետ և հնարավոր է գտնում խոսել «նահապետական բուրժուականության» մասին, որ մի կոպիտ **contradiction in adiecto** է (12):

Խառնակ գաղափարներն են պատճառը, որ պ. Մ.-ն չի ընդունում բուրժուականության ստարացումը և, ընդհակառակը, գովական հույս է ներշնչում, որ բուրժուազիան հետզհետե ավելի է ազգայնանում: Նրա կարծիքով, այն բուրժուազիան, որ «խպառ ստարացած, ապազգայնացած՝ գոյություն ուներ Մ. Նալբանդյանի օրով, այսօր դարձյալ նույնն է իր հիմնական ախորժակներով (*), միայն ավելի զարգացած և ավելի **ազգայնացած**»: Առաջ տանելով իր պատմական տեսությունը, պ. Մ.-ն վկայում է, որ անցյալ [XIX] դարի 50-ական թվականներից «ծայր է տվել հին և նորի մաքառումը, երբ սկսեցին իրար զարնվել ժողովրդավարական գաղափարը և հին, բորբոսնած դավանանքներն ի դեմս **իշխող դասակարգերի**՝ հոգևորականության և նորածիլ բուրժուազիայի»: Այն օրվանից «հայ բուրժուազիան և բուրժուատիպ ինտելիգենցիան հետզհետե մոտեցել են ազգայնության և հայրենասիրության ավազանին»:

Լերկումերկ պատգամներն «իրողություն» հռչակելով, պ. Մ.-ն սրանով մեր «պատմագիտական թեզիսները» ջրած է համարում: Չնայելով, որ նա սաստում է, որ «այդ իրողությունը ժխտել՝ ասել է արևի լույսը ժխտել», մենք անխոհեմությամբ բացեբաց ժխտում ենք:

Մեր հակառակորդը մտածում է բառերով և կարծում է, որ բառը լոկ հագագ է և ոչ գաղափարի պատյան:

Նախ և առաջ 1850-ական թվականներին հայ բուրժուազիա չկար, կար միայն մանր քաղաքացիություն, բյուրգերություն: Ենթադրենք, որ պ. Մ.-ն

փոքրը մեծացնելու քուլությամբ հասարակ քաղաքացիությունը բուրժուազիա է համարում, ինչպես որ պատրաստ է գյուղական զգիրին բուրժուա անվանել: Բայց անններելի է միանգամայն՝ «հին ու բորբոսնած» անվանել նոր քաղաքացիության և հոգևորականության դավանանքները: Եթե «հասարակական գիտության այբուբենը» չշփոթեր խալֆայության տեսրի հետ, նա կիմանար, որ հենց այդ նորածիլ քաղաքացիությունն է կազմում մեր վերածնության գետինը: Ազգային կյանքի և գիտակցության զարթնումը բնական արդյունք է առավելապես ռուսաբնակ հայության կուլտուրական առաջադիմության, այն բարեկեցության, որին հասել էր Ռուսաստանի քաղաքների հայ ազգաբնակությունը, կամաց-կամաց բարձրանալով կենցաղավարական ստորին մակարդակից մինչև քաղաքացիության աստիճանը: Աննշանակ չէ, որ «Հյուսիսափայլ»-ը ծնունդ առավ Մոսկվայում:

Բավական է աչքի անցնել «Հյուսիսափայլ»-ը (13) և նույնիսկ «Կռունկ»-ի (14) ընթերցողների ցուցակը, որ համոզվենք, որ նոր մտավորականությունը ծնունդ էր նոր քաղաքացիության. և մեր վերակենդանությունն, իրոք, «քաղաքավարություն» էր: Շարժումը, սկիզբն առնելով Ռուսիայում, հետզհետե քևակոխեց մայր երկրի սահմանները: Վերակենդանության ալիքները վարեցին Կովկասի հայ քաղաքները և ողողեցին երկիրը, իսկ ազգային կյանքը մնաց նույն մանր քաղաքացիության ուսերին: Սոցիալական տեսակետից, այսինքն՝ որքան խնդիրը վերաբերում է դասակարգային խմորին, իրերի կացությունը չի փոխվել: Սկզբում կյանքը կենտրոնացած էր առավելապես Նախիջևանում, Աստրախանում, մայրաքաղաքներում, Ղզլարում, Մոզդոկում, Թիֆլիսում, իսկ այժմ ուժը անցած է Թիֆլիս, Բաքու, Ալեքսանդրապոլ, Երևան, Շուշի և շրջակա վայրեր: Արդի կյանքը բարձր է առաջվանից այնքան, որքան այժմյան քաղաքացիությունը, մնալով համդերձ մանր՝ վեր է նախկինից քանակով և՛ որակով, և՛ վերջապես հայրենի ջրի, և՛ օդի կենարարությամբ: Վեր է ոչ թե այն պատճառով, որ «նախկին իսպառ ապազգայնացած բուրժուազիան» այժմ ավելի մոտեցել է ազգայնության, ինչպես կարծում է պ. Մ.-ն, այլ որովհետև կենսական ընդհանուր մակերևույթն է բարձրացել իր դասակարգային հարկերով. այժմյան շինականությունը բարձր է նախկին շինականությունից և քաղաքացիությունը՝ նախկին քաղաքացիությունից. երկուսն էլ կրկնակի շատ, քան առաջ: Նոր է քաղաքացիության վրա կանգնած նորակազմիկ բուրժուազիան, որ, սակայն, մեր կյանքի համար այն կարգի բարձր աշտանակներից է, որոնք իրենց տակը չեն լուսավորում և իրենց անտարբերությամբ վարակում են նաև ստորին քաղաքացիությունը:

Այս առաջխաղացման մեջ դասակարգային կռիվ չկա. կա միայն լույսի, եվրոպական լույսի մաքառում, որ ուզում է տիրել հայրենի խավարամած հողին, սփռվելով նոր քաղաքացիության թևերի վրա: Նազարյանցը, Նալբանդյանը և մյուսները, իբրև հայ հրապարակախոսներ, եթե ոչ անհատներ, քարոզման էին նույն նորաբողբոջ քաղաքացիության հասարակական տենչանքների, այն դավանանքների, որ գիտության տիրացուն անվանում է «բորբոսնած»:

Գաղափարական շփումները, կուսակցական ընդհարումները տեղի են ունեցել միևնույն քաղաքացիական շրջաններում. և միմիայն Մ.-ի պես սոցիոլոգները կարող են նկատել իբր ժողովրդական ոգորումն ընդդեմ բուրժուականության և կղերականության: Միմիայն նրան է պատշաճ պնդել, որ 60-ական թվականներից մինչև մեր օրերը «կաս-կարմիր ժապավենով անցնում են ժողովրդական և կղերական սկզբունքների տենդոտ պայքարը»: «Կղերը հետամնաց, միջնադարյան տարր է, պորտապարար, hակահասարակական» - ավետում է ազատամտական նազով պ. Մ.-ն ծեռքը դնելով Րաֆֆու և Շահազիզի ուսերին: Ով իր պատմական գիտությունը սերտել է այսպիսի հեղինակավոր պատմաբանների մոտ, նրան ներելի է մրմնջալ, որ «հայոց ազգի դժբախտության գլխավոր պատճառներից մինը կղերն է»: Կարծում ենք, ժամանակն է վերջապես դեն ձգել մտքի այս եղկելի լաթերը. ժամանակն է՝ օտարոտի քրքիջով չվրդովել անցյալի լուռ տքնությունը: Ինչ ներելի է թերևս մի վիպասանի, մի երգողի, անվայել է պատմաբանի: Հրապարակով այսպիսի խոսքեր նետել հայ եկեղեցականության երեսին, այն դասի, որ գոնե քաղաքական ազատության և նման ուժերի սպառումից հետո վառ լուսին է եղել մեր խավար երկրում, որ պահել պահպանել է ազատություններից ամենաբարձրը – խղճի ազատությունը – ընդդեմ սրարշավ փոքրիկների, և ազգի ինքնաճանաչությունը տանջալից բավիղների միջից հանել հասցրել է նոր աշխարհի շեմը, կրկնում ենք, այսպիսի խոսքեր շշնջալ՝ նշանակում է անարգել մեր պատմությունը, նրա խաչը և խաչելությունը: Մի՞թե նոր քաղաքական, թե կրթական վերածնության կարապետները նույն հոգևորականները չեն եղել: Սիմեոն (15), Հովսեփ (16), Ներսես (17) կաթողիկոսները կոթողներ են նոր կյանքի դռան: Նույնիսկ երեկվա երերուն պատկերները, որոնց առաջ թավալում էր պատկառանքի վեհությունը իջեցնելով աջեմական մեղկության, նույն եկեղեցին է տվել՝ մի Վարժապետյան, Խրիմյան, թե Իզմիրլյան:

Հրապարակախոսական միտքը պետք է որ վերջապես ազատվի շինծու պաճուճանքներից:

Կղերականությունը պատմական և քաղաքական որոշ հասկացողություն է՝ կերտված միջին դարերում, երբ եկեղեցին մրցում էր պետությունների հետ իբր համազոր կազմակերպություն: Այդ սկզբունքն այժմ էլ կա եվրոպական կյանքում և նրա հետևորդները պառլամենտներում պաշտպանում են եկեղեցու պետական իրավունքի մնացորդները ընդդեմ պետության ձեռնձգության. կղերականությունը, ուրեմն մի ձգտումն է պահպանելու եկեղեցու հինավուրց արտոնությունները, որոնք ներկա հասկացողությամբ պետական իրավասության են պատկանում: Հասկանալի է, որ եվրոպացու համար կղերականությունը հետամնացություն է իբր հակապետական և «հակահասարակական» երևույթ: Իսկ այնտեղ, ուր եկեղեցին արյունակից չէ պետության, խնդիրը փոխվում է և հակակղերականությունը իբր անրակ ազատագրության օդ է ցնդում: Հայության հողի վրա կանգուն գլուխը կղերական է այս իմաստով, Նալբանդյանից սկսած մինչև Օրմանյանը:

«Մեր դավանությունը հայոց ազգի ամբողջական ապահովության վերաբերությամբ այսպես է, թե ազգը պիտի իր գոյությունը պահպանի իր եկեղեցու միջնորդությամբ: Համաշխարհային հեղափոխությունների մեջ, եկեղեցու ինքնուրույնությունը եղել է և է մեր ազգի ապահովության գրավականը» («Հյուսիսափայլ», 1860, 467):

Այս՝ Օրմանյանի խոսքերը չեն, ընթերցող, այլ Նալբանդյանի. այսպես է մտածում մեր «լավագույն նախորդը», որի անունը սրբություն է պ. Մ.-ի բերանում: Այս «դավանությունը» ավելի քան կղերամտություն է. և որքան որ շեշտվում է այստեղ եկեղեցու իրավունքների անբռնաբարելիության սկզբունքը, սեփականություն է ժամանակակից հայ մտավորականներին: Իսկ եթե սրանից դուրս կա կղերականությունը, և նրա պաշտպաններն և բշնամիներն են մի կողմից Կարապետ, Երվանդ, Հուսիկ, Գարեգին հոգևորականները, կամ Քալանթար (18), Առաքելյան, Սպանդարյան (19), Թաղևոսյան (20) աշխարհականները, և մյուս կողմից Մեսրոպ, Բագրատ (21), Մատթեոս, Մելյան (22) հայրերը կամ Լեո և նմանները, այսպիսի «գաղափարական» խրամատ տեսնել արժանի է միմիայն գրական զգիրներին...

Մեր ախոյանի միտքն այնպես ակոսված է կղերական և հակակղերական ժապավեններով, որ այլ կուսակցական հող ընդունել անկարանում է. և պատրաստ է Նալբանդյանին և մյուս լավագույն նախորդներին «դոնքիշոտներ» հռչակել, եթե միայն նրանք «կղերի և նահապետական բուրժուականության» դեմ չեն կռվել: Կուսակցություններ եղել են, կան և կլինեն, բայց նրանք դասակարգային չեն. այս է խնդիրը:

Մեր լավագույն նախորդները կռվել են, այո՛, հարուածել, բայց միմիայն լուսավորության և գիտության անունով: Նրանք շատ լավ գիտեին, որ լու-

սավորությունն է այն անհրաժեշտ տափը, որի վրա առաջանում են տեսակ-տեսակ գաղափարական նախշեր, և միմիայն լուսավորության հողի վրա ծագած տարաձայնությունները կարող են առաջ մղել կյանքի ճռնչող սայլը:

Կուսակցական կստակումները բարդ երևույթ են հենց իրենց ոչ գաղափարական շերտերով... Մշակականության երեկվա հաղթ սյունն այսօր նույն մշակականությունը հակակուլտուրական հոսանք է հռչակում. ինչո՞ւ. պատահովապես ոչ գաղափարական փոփոխության համար. եթե մշակականությունը այդպես փոփոխական, այդքան շուտ նետելու չափ թեթև գաղափար էր, ապա ավելորդ էր տարիների ընթացքում նրան ծառայել, նրանով գեղազարդվել: Այս վերին աստիճանի խրատական է և լավ լուսաբանություն մեր կուսակցական բարքերի:

Մտքի հապճեպ բեկումը անհամոզկերության և գաղափարական անտարբերության նշան է: Իսկ վերջինս է իսկական մայրը բոլոր այն հետամուտ սողոսկումների, որոնք խեղդում են հասարակական երևույթների և հոսանքների գաղափարական միջուկը:

Կաթողիկոսական ընտրության պայքարում կար գաղափարական բովանդակություն, որ աշխատեցինք պարզել անցյալ հոդվածում - և որ, ինչպես կարելի էր սպասել, անմատչելի մնաց պ. Մ.-ի պատմական հասկացողության - բայց կային և անհարազատ ու կողմնակի վայուններ, իրենց բարձրադրինչ գաղափարաքանությամբ: Ինչպես որ ծառը պտղով է ճանաչվում, այնպես էլ իրողությունը՝ արդյունքով:

Այժմ, երբ ընտրությունն իրողություն է, կարող ենք գին դնել այդ վայունին, այն վերասլաց դղրդոցին, որ «Թիֆլիսից հասնում էր մինչև Ղալաթիայի հայոց պատլամենտը» (23): Ի՞նչ է արդյունքը. **ընդոծին արեղայությունը հաղթանակեց եվրոպական գիտության:** Գաղափարական հակառակորդները կարող են ցնծալ, որ հաղթությունը տարան փարիսեցիների ձեռքով: Իսկ վերջիններիս, իբրև հայրապետական գահի մթության արբանյակների, ամենից քիչ վայել է հիշել Նազարյանցի և Նալբանդյանի հառաչանքները, որովհետև սրանք ամենից առաջ սիրող էին լուսավորության և թշնամի՝ խալֆայության (24):

Կանգ առնենք. հարկ չկա բաղխելու փակ գլուխներին, մանավանդ, եթե նրանք պարուրված են կեղծության մշուշով: Իսկ կեղծություններից ամենավտանգավորն այն է, որ պատում է ամենաթանկագինը՝ գաղափարը. այստեղ է, որ ծնվում են ազատամտության փասիաններ..., արմատանում են մոլար հասկացողություններ բևեռի ամրությամբ, որոնք, ինչպես ասում է Ֆրանսիացի իմաստունը, որքան զարկում ես՝ այնքան պնդվում են...

## ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ ԹՈՒՐՔԻԱՅՈՒՄ

**(Հաշվետվություն Ս. Պետերբուրգի Հայկական խմբակի կողմից նրա երկու գործուղված անդամների՝ Կոստանդնուպոլիս կատարած ուղևորության մասին)**

Ս. Պետերբուրգից մենք մեկնեցինք դեկտեմբերի 24-ին ճեպընթաց գնացքով: Ճանապարհին մենք ավելորդ չհամարեցինք տեղեկացնել Թիֆլիսի և Բաքվի մեր Խորհրդակցությանը (1) համանման Խորհրդակցության բյուրոյին (2) մեր առաքելության մասին, պատրաստակամություն հայտնելով հարկ եղած դեպքում օգտակար լինել նրանց: Օդեսայից երկու նամակ գրեցինք Ս. Ս. Արությունովի (3) և Կ. Հ. Խատիսովի (4) անունով. այդ մասին նույն այդ ժամանակ հատուկ տեղեկացրինք մեր Խորհրդակցության նախագահին (5):

Դեկտեմբերի 27-ին «Աֆոն» շոգենավով դուրս եկանք Օդեսայից և հաջորդ օրը, ուրբաթ կեսօրին, մենք արդեն թուրքական մայրաքաղաքում էինք: Շոգենավի վրա մենք ծանոթացանք և զրույցի բռնվեցինք մեր պատահական ուղեկցի, ոմն Յանչևեցկու հետ, որը նոր նշանակված էր Կոստանդնուպոլսում Ս. Պետերբուրգի Հեռագրական գործակալության թղթակից: Ըստ նրա, նախկին թղթակցից մասամբ դժգոհ էին այն պատճառով, որ նա քիչ ուշադրություն էր դարձնում թուրքական գավառների, մասնավորապես Հայաստանի կյանքի վրա: Պրն. Յանչևեցկին անբռնազբոսիկ կերպով կիսում էր մեզ հետ իր հայացքները Արևելյան հարցում ռուսական քաղաքականության վերաբերյալ: Նա հայտնեց, որ նախկինում եղել է Միջին Արևելքի տարբեր երկրներում, այդ թվում նաև Պարսկաստանում, որտեղ Թեհրանում և նրա շրջակայքում տեսել և անձամբ զգացել է ռուսների հանդեպ հայ ազգաբնակչության ամենաջերմ, հոգեհարազատ վերաբերմունքը: Պատմեց պանիսլամիզմի վերաբերյալ իր դասախոսությունների մասին, որ վերջերս նա կարդացել էր Ս. Պետերբուրգում և որոնք առարկություններ էին առաջ բերել մահմեդականների շրջանում: Սրանք դժգոհ էին նրա դասախոսություններում պանիսլամիստական շարժման գոյության մատնանշումից: Մեր այն հարցին, թե արդյոք ինքը չէ՞ Թեհրանից ստացված թղթակցությունների հեղինակը, որոնք տպագրվել էին «Новое время» օրաթերթում (6) և հարձակումներ էին պարունակում հայերի վրա, մեր

ուղեկիցը պատասխանեց, որ դա իր եղբայրն է, որի հայացքները շատ բաներում ինքը չի բաժանում: Մեր ուղևորությունն էլ, թեև մենք նրա նպատակի մասին ոչինչ չէինք հայտնել Ցանչևեցկուն, հիմք էր ծառայել թղթակցին հունվարի 7-ին Կոստանդնուպոլսից հղված հետևյալ գործակալական հեռագրի համար, որը տպագրվեց ռուսական լրագրերում. «Մի քանի օր շարունակ այստեղ (Կոստանդնուպոլսում) տեղի էին ունենում ականավոր հայ գործիչների, գիտնականների, գրողների խորհրդակցություններ, որոնք հավաքվել էին տարբեր վայրերից, այդ թվում և Ռուսաստանից»: Մինչդեռ Կոստանդնուպոլսում ոչ մի խորհրդակցություն և համագումար չէր եղել:

Կոստանդնուպոլիս ժամանելուց հետո ո՛չ նավահանգստում և ո՛չ էլ մաքսատանը թուրքական իշխանությունների կողմից որևէ դժվարության և ստուգումների չհանդիպեցինք: Ազատ մուտք գործեցինք քաղաք և իջևանեցինք լավագույն հյուրանոցներից մեկում՝ «Թոքաթլյան» հոթելում, մայրաքաղաքի գլխավոր մայրուղու՝ Բերա փողոցի վրա: Հյուրանոցը հայազգի Մկրտիչ Թոքաթլյանը պահում է եվրոպական ոճով, պահանջվող ճաշակի բոլոր ավյալներով, ամեն տեսակի հարմարություններով և հարմարանքներով: Առաջին հարկում, որի վիթխարի պատուհաններով փողոց է նայում, տեղավորված են նույնպես նրան պատկանող Կոստանդնուպոլսում լավագույն ռեստորանը և սրճարանը, որոնք իրենց են գրավում բոլոր ազգությունների մտավորականությանը և տեղական բարձր հասարակության ներկայացուցիչներից շատերին: Թոքաթլյանն ինքը, որ ծագումով Փոքր Ասիայի Թոքաթ քաղաքից է, բարեհամբույր արտաքինով և համեստ շարժուձևով, դուրս եկավ հետաքրքիր անձնավորություն, ձեռներեց և բարեգործ: Հոթելը կառուցել և սարքավորել էր ինքն իր միջոցներով՝ Հայոց եկեղեցուն պատկանող գետնի վրա, որին էլ բոլորը պետք է մնան որոշակի տարիներ անց:

Հյուրանոցից փողոց դուրս գալով մենք շատ տեղին հանդիպեցինք մեզ քաջածանոթ նկարիչ Թերլեմեզյանին (7), որը սիրով հանձն առավ ուղեկցել մեզ հայկական «Բյուզանդիոն» լրագրի (8) խմբագրատուն, որտեղ մենք հույս ունեինք հանդիպել մեր ծանոթներից մի քանիսին, ամենից առաջ բժիշկ Հ. Խ. Զավրիևին (9):

Խմբագրությունում մենք իմացանք, որ այդ օրը, այսինքն՝ ուրբաթ օրը, երբ սովորաբար տեղի են ունենում Հայոց Ազգային ժողովի նիստերը, պետք է կայանա տոներից առաջ վերջին նիստը: Մենք իսկույն ևեթ շտապեցինք այնտեղ մասնակցելու նիստին և ծանոթանալու երեսփոխանների, Ազգային ժողովի անդամների հետ: Բայց, ցավոք սրտի, նիստը, քվորումի բացակա-

յության պատճառով, չէր կարող տեղի ունենալ, և մինչև մեր գալը ներկա երեսփոխանները գրեթե բոլորն արդեն հասցրել էին ցրվել: Մենք զրկվեցինք այնքան բուռն մեզ հետաքրքրող Թուրքիայի հայոց ներկայացուցչական հաստատությունը տեսնելու հնարավորությունից:

Մեզ հայտնեցին, որ հաջորդ օրը (շաբաթ) (10) տեղի է ունենալու Ազգային ժողովի վարչության առընթեր հատուկ հանձնաժողովի նիստ: Այստեղ էլ մենք ծանոթացանք Ազգային ժողովի անդամներից մեկի, որը միաժամանակ Վանի վիլայեթի երեսփոխանն է օսմանյան պառլամենտում, Վահան Փափազյանի (11), հայտնի գրողի եղբոր (12) հետ: Այդ ծանոթությունը մեզ համար խիստ օգտակար էր՝ նա մեզ մեծ ծառայություններ մատուցեց և աջակցեց Կոստանդնուպոլսում գտնված ամբողջ ժամանակամիջոցում:

Մենք դիտեցինք Ազգային ժողովի դահլիճը, ավելի քան համեստ և՛ չափերով, և՛ կահավորանքով: Հենց այդտեղ էլ մտանք այսպես կոչված Կեդրոնական վարժարանի՝ արևմտյան տիպի միջնակարգ ուսումնական հաստատության շենքը: Նրա տեսուչ պ. Նալբանդյանը մեզ որոշ տվյալներ հաղորդեց վարժարանի 150 աշակերտների և 26 ուսուցիչների [բկաքանակի] մասին: Այնուհետև դիտեցինք փոքրիկ բակի մեջտեղում գտնվող եկեղեցին, որը շուրջբոլորը կառուցված շենքերով է պատած: Մեզ համար նորություն էին կաքոլիկ և լյութերական եկեղեցիների նման եկեղեցում դրված նստարանները:

Ոչ հարուստ տպավորություններով մենք դուրս եկանք մեր ազգային հիմնարկությունների այդ կենտրոնից և գնացինք արդեն հիշված լրագրի խմբագրություն: Առկա էին ամբողջ խմբագրական կազմը և գլխավոր աշխատակիցները՝ պատասխանատու խմբագիր Ռ. Զարդարյանը (13), Փափազյանը (Վահանի և Վրթանեսի եղբայրը, նախկին վանական Մաշտոցը) (14), Խաչատրյանցը՝ Սանասարյան վարժարանի նախկին տեսուչը (15), ինչպես նաև Ակնունին (Մալումյանը) (16), Զավարյանը (17), բժիշկ Զավրիևը և ուրիշներ: Նրանց ընկերակցության մեջ անցկացրինք ամբողջ երեկոն. հետո մեզ միացավ գերմանական լրագրերի աշխատակից և թղթակից Թոփչյանցը (18):

Հաջորդ օրը առավոտյան (դեկտեմբերի 29-ին, շաբաթ օրը) մենք նորից պատրիարքարան գնացինք: Մտահոգված մեր առաքելության կատարմամբ, մենք ուզում էինք տեղեկանալ ամենից առաջ այն մասին, թե ինչ են նախաձեռնել կամ մտադիր են նախաձեռնել հայ պաշտոնական շրջանները՝ պատրիարքարանը Ազգային ժողովի հետ միասին, ընթացիկ քաղաքական պահի պայմաններում:

Իր դեկտեմբերի 21-ի նիստում Ազգային ժողովը, լսելով Ազգային վարչության զեկուցումը Հայաստանում անցկացվելիք բարենորոգումների հարցում իր ընդունած գործողությունների մարտավարության և ծրագրի մասին, արտահայտել էր իր վստահությունն Ազգային վարչությանը՝ հավանություն տալով նրա տեսակետին: Այդ նույն նիստում երեսփոխան Շահրիկյանը (19) հայտարարել էր Դաշնակցություն կուսակցության անունից, որ նա, մի կողմ թողնելով իր տեսական նկրտումները, միանում է օրվա պահանջներին, որպեսզի պաշտպանի հայ ժողովրդի միակամությունը հայկական մարզերի բարեփոխումների այնքան կենսական հարցում (նիստի մասին հաշվետվությունը տե՛ս «Առաջամարտ» լրագրի (20) դեկտեմբերի 21-ի թիվ 35-ում):

Մենք իմացանք, որ Ազգային վարչությանն առընթեր կազմվել է նրա կողմից առանձնացված հատուկ հանձնաժողով՝ Ապահովության հանձնաժողով անվամբ, թվով ութ հոգի և որին է հանձնարարված բոլոր գործերի վարումը, կապված Հայկական հարցի և նրա նոր փուլի հետ: Հանձնաժողովը նիստեր է անում պատրիարքի՝ Հովհաննես եպիսկոպոսի (Արշարունի) (21) նախագահությամբ. նրա անդամների թվում են նախկին պատրիարք Եղիշե եպիսկոպոսը (Դուրյան), Գրիգորիս վարդապետը (Պալաքյան) (22), Գնել վարդապետը (Գալեմքեարյան) (23) և պարոնայք ազգային վարչության նախագահ Ստեփան Գարայանը (24) և նրա անդամներ Ոսկան Մարտիկյանը (25), թուրքական ֆինանսների մինիստրության գլխավոր տեսուչ, իսկ այժմ Մահմադ Շևքեթ փաշայի երիտթուրքական կաբինետում փոստի և հեռագրատների նախարար, Վահան Փափազյանը, պրոֆ. Տեր-Հակոբյանը (26): Հանձնաժողովի աշխատանքը և բուն գոյությունը պետք է խիստ գաղտնի լինեին (27): Այն բանից հետո, երբ Ամենայն Հայոց սրբազնագույն կաթողիկոսը (28) պաշտոնապես բարձրացրեց Հայկական հարցը՝ դիմելով ռուսական կառավարությանը, և վերջինս հանձնառու եղավ պաշտոնապես այն վարելու, Ազգային վարչությունը հնարավորություն ստացավ ձևականորեն հեռանալու միջազգային խորհրդաժողովի առջև այդ միջնորդության մեջ պաշտոնական մասնակցությունից: Բայց Ազգային վարչությունը, հասկանալի պատճառներով ձեռնպահ մնալով բացահայտ ելույթից, միևնույն ժամանակ անհրաժեշտ էր գտնում իրազեկ պահել, աջակցել և մասամբ էլ ուղղություն տալ կաթողիկոսին տերություններին ուղղված նրա դիմումում: Այդ նպատակով էլ նա ընտրել էր հիշյալ հանձնաժողովն ամեն ինչում Հայ եկեղեցու գլխի հետ համաձայնությամբ գործելու և անհրաժեշտ նյութերի, տեղե-

կությունների և ճկատառումների հայթայթումով նրան սատարելու պարտավորությամբ:

Ապահովության հանձնաժողովի գործունեությունն արտահայտվեց բարեփոխումների հայկական տեսանկյունից ենթադրվող և ընդունելի նախագծի մշակման մեջ, եվրոպական տերությունների ներկայացուցիչների, և գլխավորապես Կոստանդնուպոլսում ռուսական դեսպանության հետ հարաբերությունների մեջ մտնելու և բանակցություններ վարելու գործում: Բացի այդ, հանձնաժողովը պրակներով հրատարակում և հարկ եղած ոլորտներում տարածում է նյութեր ու հաղորդագրություններ, որոնք նպատակ ունեն ներկայացնել իրերի փաստական դրությունը Հայաստանում և պարզաբանել Թուրքիայի հայոց կյանքում դրանց բավարարման կարիքներն ու միջոցները:

Բարեփոխումների նախագիծը (հիմնական դրույթները) Հանձնաժողովը նախապատրաստեց դեկտեմբերի կեսերին, կից աշխարհագրական քարտեզով, որտեղ ճշտորեն նշված էր վերափոխման ենթակա տարածքը վեց հայկական վիլայեթների սահմաններում: Քարտեզին հարակցված է գծված տարածքը բնակեցնող ժողովուրդների և՛ հայ, և՛ առանձին վերցրած մահմեդական զանգվածի բոլոր մյուս զանազան էթնիկական տարրերի միջև հարաբերակցության վիճակագրական աղյուսակ: Մենք ձեռք բերեցինք այդ նախագծի և աղյուսակի պատճենները, որոնք առաջարկում ենք Խորհրդակցության ուշադրությանը: Դրա համար էլ թող մեզ թույլ տրվի կանգ չառնել դրանց վրա և անցնել այն բանակցությունների և հարաբերությունների շարադրմանը, որ վարել է Հանձնաժողովը դեսպանությունների հետ Կոստանդնուպոլսում և Թուրքիայից դուրս:

Նոյեմբերի 13-ին պատրիարքը պ.պ. Ոսկանի (29) և Զոհրապի (30) ուղեկցությամբ այցելեց ռուսական դեսպան, հոֆմայստեր Մ. Ն. Գիրսին (31) և, դարձնելով նրա ուշադրությունը Թուրքիայում հայերի ծանր դրության վրա, խնդրեց, որպեսզի ներկա՝ պատմական առումով կարևոր պահին, երբ պատերազմ է գնում հանուն քրիստոնեական ժողովուրդների ազատագրման մահմեդական տիրապետությունից (32), չմոռացվեն մահմեդական միջավայրում հեծող հայերը: Դեսպանը, որի մոտ էր գտնվում առաջին թարգման պ. Ա. Մանդելշտամը (33), հարցրել է պատրիարքին, թե ինչ է այժմ կատարվում հայկական նահանգներում և չի՞ բարելավվել արդյոք հայերի դրությունը համեմատությամբ նրա հետ, ինչ եղել է նախկինում:

Պատրիարքը նշել է, որ առանձին նահանգներում հայերի դրությունը նախկինի պես մնում է տագնապալի, չեն բացառվում մասնակի կոտո-

բածները, կողոպուտները և իշխանությունների կողմից չսանձահարվող վայրի ցեղերի ավերիչ ասպատակությունները:

- Ռուսական կառավարությունը համակրանքով է վերաբերում հայերին,- հայտարարել է պ. դեսպանը,- և շատ կցանկանար բարելավել նրանց դրությունը Թուրքիայում, բայց թե ինչպես - դա է դժվարին հարցը: Ի՞նչ միջոց կառաջարկեիք դուք ինքներդ, հայերդ:

- Մեզ, հայերիս համար, մեկ բան պարզ է,- պատասխանել է պատրիարքը,- որ մեր փրկությունը համենայն դեպս թուրքերից չի գալու: Մենք համոզված ենք, որ թուրքերը, անգամ ցանկության դեպքում, անզոր են մեզ համար ստեղծելու կենցաղի այլ և լավագույն պայմաններ: Մեր միակ հույսը քրիստոնեական մեծ տերության վրա է, որը կկարողանար դասավորել մեր ճակատագիրը թեկուզև այնպես, ինչպես որ Ավստրիան կարգավորել է Հերցոգովինան (34):

Պատրիարքի խոսքերը, ըստ երևույթին, ազդել էին դեսպանի վրա և նա ասել էր, որ պատերազմի հետևանքները վերացնելու համար նախատեսվում է տերությունների ներկայացուցիչների խորհրդաժողով (35) և այնտեղ, հնարավոր է, որ կքննարկվի նաև Հայկական հարցը:

Դեսպանը ցանկացել է իմանալ, արդյո՞ք հայկական բոլոր կուսակցությունները և հասարակական կազմակերպությունները համերաշխ են իրենց քաղաքական բաղձանքներում տվյալ հարցում, ինչպես նաև՝ որքա՞ն բարձր է կաթողիկոսի հեղինակությունը թուրքահայերի աչքում: Դրան հետևել է պատրիարքի հաստատական պատասխանը:

Դեսպանը հայտնել է, որ ռուսական դեսպանությունը նախազգուշացրել է թուրքական կառավարությանը, որպեսզի Ռումելիայից եկած մուհաջիրներին (գաղթականներին) չտեղավորի ռուսական սահմանին մերձակա վիլայեթներում: Հրաժեշտ տալիս դեսպանը հավանությամբ նշել է, որ հայկական մամուլը իրեն պատշաճ կերպով և խելամտորեն է պահում քաղաքական արդի պահի առնչությամբ:

Երկրորդ ժամադրությունը տեղի է ունեցել Ոսկան էֆենդու և պ. Մանդելշտամի միջև (դեկտեմբերի 28-ին): Զրույցը սկզբում պտտվել է հայկական վիլայեթների համար Բ. Դռան կողմից նախագծվող բարեփոխումների հարցի շուրջ, ընդ որում պ. Մանդելշտամը հետաքրքրվել է հայոց պատրիարքարանի վերաբերմունքով հանդեպ թուրքական կառավարության այդ ձեռնարկման: Այնուհետև Ոսկան էֆենդին ինքն է հարցրել, թե չե՞ն ստացվել արդյոք Ս. Պետերբուրգից սպասվող հրահանգները:

- Առաջ քաշել Հայկական հարցը հիմա,- պատասխանել է պ. Մանդելշտամը,- և այն հաշվով, որպեսզի այն դրվի խորհրդաժողովի քննարկմանը,

մենք համարում ենք անընդունակահարմար և անօգուտ, և հենց ի շահ բուն հարցի: Բանն այն է, որ Եռյակ համաձայնությունը (36) հույս չի դնում Եռյակ միության (37) աջակցության վրա և կարծում է, որ վերջինս ավելի շատ կսկսի հակազդրծել: Ահա թե ինչու հիմք չկա Հայկական հարցը վեց տերությունների քննարկմանը դնել մի խորհրդաժողովում, որը գումարվում է կարգավորելու համար Բալկաններում ծագած վիճելի հարցերը: Եռյակ համաձայնության տերությունները կարող են միմյանց հետ պայմանավորվել Հայկական հարցի մասին և լուծել այն Եռյակ միությունից անկախ:

Պարոն Մանդելշտամը ցանկացել է իմանալ, թե ինչումն է հայկական պատվիրակության առաքելությունը Փարիզում (38): Ոսկան էֆենդին բացատրել է, թե ինչ պայմաններում է ծնվել պատվիրակության մասին միտքը, որ այն կապ ունի ռուսական կառավարությանը հղված կաթողիկոսի դիմումի հետ (39) և բնական հետևանքն է այն բանակցությունների, որ վարել է Ս. Պետերբուրգում Մեսրոպ եպիսկոպոսը (40) կաթողիկոսի անունից: Ոսկան էֆենդին մատնանշել է նաև այն պարագան, որ պատվիրակությունը առայժմ ոչ մի գործուն քայլ չի ձեռնարկել, սոսկ հանդիպում է ունեցել Ֆրանսիայի արտաքին գործերի նախարար պ. Պուանկարեի (41) հետ և ձեռք է բերել ֆրանսիական կառավարության աջակցության խոստումը:

Այնուհետև խոսք է գնացել հայկական բարեփոխումների էության մասին և թարգմանը հարցրել է պ. Ոսկանին, արդյոք պատրիարքարանը պատրաստի նախագիծ ունի՞, և ո՞րն է նրա էությունը:

Ոսկան էֆենդին պատասխանել է, որ նախքան սեփական նախագծի մասին մտածելը, մեզ անհրաժեշտ է իմանալ ռուսական կառավարության ծրագրերը: Նախագիծը կազմելիս մենք կուզենայինք այն խարսխել դեստությունից, [illegible] մեզ հաշիվ տալ հնարավորի սահմանների մասին և կանգնեինք իրականացվող ձգտումների հաստատուն գետնի վրա: Այն, ինչ մենք կարող ենք և ունենք այժմ հայտարարելու, անկախ ձեր ցուցումներից, դա եվրոպական վերահսկողության անհրաժեշտության գիտակցումն է բարեփոխումների գործում,- ահա միակ և անհրաժեշտ պայմանը մեր կյանքում:

- Հետևաբար, ցանկալի չէ, որ ընդհանուր կառավարիչը թուրք լինի,- եզրակացնում է պ. Մանդելշտամը:

- Ոչ մի դեպքում, փորձը ցույց է տալիս, որ թուրքն ըստ իր էության պիտանի չէ մեր կյանքում բարելավումներ մտցնելու: Մեզ պետք է այնպիսի վերահսկողություն, որը մտցվում է Մակեդոնիայում:

- Արդյո՞ք բոլոր կուսակցությունները են այդպես մտածում,- հարցրեց պ. Մանդելշտամը:

- Եթե խոսքը գնում է Դաշնակցություն կուսակցության մասին, ապա նա Հայկական հարցում գործում է միակամ Ազգային ժողովի հետ, մեր մեջ տարաձայնություն չկա:

Ի եզրակացումն պ. Մանդելշտամը խոսեց Վանում Գափամաճյանի (42) սպանության մասին և հետաքրքրվեց իմանալ, թե դաշնակցականների գործը չէ՞ արդյոք այդ սպանությունը: Եվ լսելով Ոսկան էֆենդուց, որ դաշնակցական մամուլը հանցագործության մեղավորների մասին տարածված լուրերի կապակցությամբ հայտարարել է, որ կուսակցությունը վաղուց է հրաժարվել ահաբեկչությունից՝ պ. Մանդելշտամը նկատեց, որ դա շատ կարևոր է, քանզի ռուսական կառավարությունը արտակարգ կերպով բացասաբար է վերաբերվում ահաբեկչությանը:

Այդ հանդիպման հաջորդ օրը, դեկտեմբերի 29-ին, պ. Մանդելշտամն իր մոտ է հրավիրել Ոսկան էֆենդուն և խնդրել դեսպանատուն ներկայացնել այն բարեփոխումների նախագիծը, որը պատրիարքարանում ցանկալի են համարում: Ոսկան էֆենդին օգտվել է առիթից և հայտնել Ապահովության հանձնաժողովում որոշված նախագծի կետերը: Պ<արոն> Մանդելշտամը գտել է, որ նախագիծը պետք է բավարար չափով մշակված լինի, մոտավորապես 1895 թ. մայիսյան ակտի ծավալով (43):

Հաջորդ օրը առավոտյան պ. Մանդելշտամը մեկ անգամ ևս իր մոտ էր հրավիրել Ոսկան էֆենդուն և զարմանք հայտնել իր ստացած այն տեղեկությունների մասին, որ Նուբար փաշան գնում է Լոնդոն՝ խորհրդաժողովում Հայկական հարցի քննարկմանը հասնելու նպատակով: Այդ պարագան, ըստ թարգմանի խոսքերի, չի համապատասխանում ռուսական կառավարության մտադրություններին, ինչպես որ հայտնվել էր նախորդ բանակցություններից մեկի ժամանակ իրեն՝ Ոսկան էֆենդուն: Պ. Մանդելշտամը այդ մասին խոսել էր հուզված, ինչպես թվացել էր պ. Ոսկանին, և վերջինս հարկ էր համարել հանգստացնել նրան. հայտարարելով, որ այդ լուրերը վստահությա́ն արժանի չեն և ամենևին չեն հաստատվում պատրիարքարանում ունեցած ավելի հավաստի տեղեկություններով:

Դեսպանության հետ բանակցություններ էր ունեցել, ի դեմս պ. Մանդելշտամի, նաև բժիշկ Հ. Խ. Զավրիևը, որը Կոստանդնուպոլսի հայկական շրջաններում ռուսասիրական քաղաքականության ամենավառ ներկայացուցիչն է: Իսկն ասած, նրան է պատկանում ռուսական դեսպանության հետ հարաբերությունների նախաձեռնությունը: Հանուն ընդհանուր շահերի ռուսական դեսպանության հետ մերձենալու և փոխըմբռնման առաջին քայլե-

րը արվել են նույն Զավրիևի կողմից դեռևս դեսպան պ. Չարիկովի (44) ժամանակ: Իր հայացքների ճշմարտացիությամբ և համոզմունքների անկեղծությամբ Զավրիևը շահել է դեսպանական շրջաններում մեր հարցով հետաքրքրվող անձանց վստահությունը: Պ<արոն> Մանդելշտամի հետ ունեցած զրույցի ընթացքում նա քանիցս այն միտքն է զարգացրել, որ հայերը ռուսների բնական դաշնակիցներն են Թուրքիայի խավարամիտ բնակչության վայրի ու անքաղաքակիրթ զանգվածի մեջ, և դրա համար էլ Ռուսաստանի հովանավորության հիմքը և հույսը ունեն, ոչ միայն ի շահ իրենց, այլև ի շահ ռուսների: Շատ բան, որ մեզ հաղորդել էր Ոսկան էֆենդին դեսպանության հետ վարած իր բանակցությունների մասին, մենք լսեցինք նաև Զավրիևի շուրթերից, որպես արդյունք իր զրույցների պ. Մանդելշտամի հետ:

Կանխապես ապահովվելով ռուսական դեսպանության բարյացակամ վերաբերմունքը, պատրիարքարանը, ավելի ճիշտ նրան առընթեր Հանձնաժողովը սկսեց հող նախապատրաստել և մյուս դեսպանություններում:

Դեկտեմբերի 31-ին տեղի ունեցավ հանդիպում ֆրանսիական դեսպանի (45) հետ: Դեսպանը հայտարարեց, որ Հայկական հարցի վերաբերյալ համերաշխություն գոյություն ունի Եռյակ համաձայնության տերությունների միջև և չթաքցրեց, որ Անգլիայի և Ռուսաստանի միջև հակադիր շահերի բախման դեպքում, անկասկած, կտուժի Հայկական հարցը: Ի նկատի ունենալով դա, խորհուրդ տվեց հայերին կապ և բարի հարաբերություններ պահպանել այդ երկու տերությունների հետ: Ինչ վերաբերում է բարեփոխումներին, ապա, գլխավոր գծերով, ծանոթանալով Անվտանգության հանձնախմբի կազմած նախագծին, ֆրանսիական դեսպանը գտավ այն ընդհանուր առմամբ ընդունելի և իրականանալի: Միայն նկատեց, որ ընդհանուր կառավարչի կամ կոմիսարի փոխարեն ավելի լավ կլիներ սահմանափակվել եվրոպական վերահսկողության պահանջով: Դեսպանը հետաքրքրվեց իմանալ, թե Ռուսաստանը չէ արդյո՞ք այն տերությունը, որին պետք է հանձնարարվի, ինչպես ասված է նախագծում, ընդունված բարեփոխումների իրագործումը: Նրան պատասխանեցին, որ կազմողները անպայման միայն Ռուսաստանին ի նկատի չունեն, այլ շահագրգիռ տերություններից ցանկացածին, որը կկամենա իր վրա վերցնել այդ խնդիրը մյուս տերությունների համաձայնությամբ: Այնուհետև դեսպանը հարցրեց պատվիրակության վերաբերյալ և ցանկացավ իմանալ, հետապնդո՞ւմ է արդյոք այն որոշակի քաղաքական խնդիր Եվրոպայում, տերությունների վրա ճնշում գործադրելու իմաստով,

քե՞ սոսկ քաղաքավարական պարտքի արտահայտություն է բարեկամական տերությունների նկատմամբ:

Էլ ավելի վաղ, այդ հանդիպումից մեկ շաբաթ առաջ՝ դեկտեմբերի 24-ին, Համձնաժողովի անդամ պրոֆ. Տեր-Հակոբյանն այցելել էր անգլիական դեսպան սըր Լաուտերին (46) և պատրիարքի անունից խնդրել ուշադրություն դարձնել հայերի ողբալի դրության վրա: Դեսպանի ընդունելությունը բարյացակամներից չէր:

- Ի՞նչ են ուզում հայերը,- տարակուսալից ձայներանգով դիմել էր դեսպանը այցելուին:

- Հայերի դրությունը նախկինի պես մնում է անմխիթարական,- պատասխանում է Տեր-Հակոբյանը,- սպանությունները, ավազակությունները և ամեն տեսակի բռնությունները կյանքի ու ունեցվածքի նկատմամբ մռայլում են խաղաղ բնակչության կյանքը, որը աջակցություն չի ստանում կառավարությունից բռնաբարիչների դեմ:

- Մեր հյուպատոսները ոչ մի նման բան մեզ չեն զեկուցում, ըստ մեր տեղեկությունների սպանություններ տեղի են ունեցել միայն Սղերդի շրջանում:

- Սպանությունները սովորական երևույթ են բոլոր նահանգներում և անխուսափելի են դառնում այն բանի հետևանքով, որ հայերը անզեն են, իսկ քրդերը՝ զինված, հայերից խլում են զենքը, իսկ քրդերին զինում են: Ահա թե ինչու հայերից ոչ ոք վստահ չէ և չի կարող աներկյուղ լինել վաղվա օրվա համար:

- Քրդերը, իրականում, խաղաղ և հնազանդ ժողովուրդ են, այդ ինչպե՞ս են նրանք վայրագություններ թույլ տալիս,- առարկում է անգլիական դեսպանը:

- Մեր երկրի ամբողջ դժբախտությունն այն է, որ չկա օրենքի վրա հենվող արդարացի իշխանություն: Թուրքերը մշակում են օրենքներ և հրապարակում դրանք, բայց բացարձակապես անհոգ են կամ անզոր դրանք կենսագործելու, որով լայն դուռ է բացվում վայրի ցեղերի սանձարձակ կրքերի և ազետ ատիճանավորների կամայականության համար:

- Ուրեմն, ի՞նչ է հայերի պահանջը,- հարցնում է դեսպանը:

- Կյանքի, պատվի և ունեցվածքի ապահովություն՝ ահա մեր միակ ցանկությունը:

- Ինչպես Անգլիայո՞ւմ,- ընդհատում է դեսպանը:

- Օ՛, ոչ: Անգլիան դեռ հեռու է մեզ համար, մեր լավագույն ցանկությունները հանգում են այն տարրական հասկացություններին, որոնք կազմում են վերջին անգլիացու անկապտելի ստացվածքը:

- Ցավոք սրտի, անգլիական նավերը չեն կարող նավարկել մինչև Վան ու Մուշ,- ասաց դեսպանը,- և դրա համար էլ ինչ նշանակություն կարող են ունենալ բոլոր այդ խոսակցությունները բարեփոխումների մասին, երաշխիքների մասին և այլն...

Այստեղ մասնակցող դեսպանական երկու անձանցից մեկը նկատում է, իբրև առարկություն դեսպանին, որ եթե Եվրոպան հրաժարվի հայերից և հոգ չտանի նրանց ճակատագիրը կարգավորելու մասին, ապա նրանց դրությունը Թուրքիայում էլ ավելի կվատթարանա և նրանք ստիպված կլինեն ձեռք մեկնել իրենց հարևան Ռուսաստանին:

- Դա կնշանակե,- խոսք է մեջ գցում դեսպանը,- սատանայի ձեռքից փախչել ծովն ընկնել (այսինքն՝ կրակից պրծնել, բոցն ընկնել):

- Ավելի լավ չէ՞,- առարկում է նույն անձնավորությունը,- ծովում խեղդվել, քան սատանայի ձեռքին տանջվել:

Այդ ժամանակ Տեր-Հակոբյանը ոտքի է կանգնում և հայտարարում, որ իր այցելության նպատակն է պատրիարքի խնդրանքը դեսպանի միջոցով հաղորդել անգլիական կառավարությանը՝ աջակցելու Հայկական հարցի լուծմանը: Ըստ Տեր-Հակոբյանի պատմածի, այդ խոսքերը լսելով դեսպանը նկատելիորեն շփոթվեց և կատարելապես ուրիշ, ավելի քաղաքավարի եղանակով հայտարարեց, որ պատրիարքի խնդրանքը անպայման կհաղորդի անգլիական կառավարությանը:

Երբ Տեր-Հակոբյանը հեռանում էր, նրան մոտեցավ զրույցին մասնակցած առաջին քարտուղարը, Էրզրումում նախկին հյուպատոս պ. Ֆիցմորիսը (47) և ջանաց հանգստացնել շփոթահար Տեր-Հակոբյանին, հավատացնելով, որ դեսպանի հայացքը չի համապատասխանում անգլիական կառավարության մտադրություններին և քաղաքականությանը, որը խիստ բարյացակամ է տրամադրված հայերի և Հայկական հարցի նկատմամբ:

Հանձնաժողովը որոշեց իրազեկ դառնալ նաև գերմանական տեսակետին Հայկական հարցի վերաբերմամբ և հանձնարարեց Զոհրապին խոսել այդ մասին Կոստանդնուպոլսում գերմանական դեսպանի հետ (48): Հանդիպումը դեռ չէր կայացել, երբ մենք այնտեղ էինք: Հայերի և Հայկական հարցի նկատմամբ Գերմանիայի գրաված դիրքի վերաբերյալ հետաքրքիր տեղեկություններ կային Կիլիկիայից, որ գերմանական հյուպատոսները սեփական նախաձեռնությամբ և պատրաստակամորեն այնտեղ այցելել էին հայ բեմական առաջնորդներին և հարցուփորձ արել հայերի կարիքների ու ցանկությունների մասին, հայտարարելով գերմանական կառավարության պատրաստակամության մասին իրենց աջակցությունը ցույց տալու բարեփոխումների գործում:

Ինչ վերաբերում է Ավստրո-Հունգարիային, ապա արտաքին գործերի նախարար պ. Բերտոլդի հետ բանակցելուն սեփական նախաձեռնությամբ ձեռնամուխ եղան Վիեննայի Մխիթարյանները: Նրանց աբբահայրը (49) հայր Գալեմքեարյանի (50) հետ ներկայացավ հիշյալ բարձրաստիճան անձնավորությանը և այն բանից հետո, երբ միամտորեն նրան պատմեց այն ամենն, ինչ իրեն հայտնի էր ռուսական կառավարության հետ կաբոդիկոսի բանակցությունների մասին, իր կողմից խնդրեց ավստրիական կառավարության աջակցությունը Հայկական հարցին: Նախարարը նրանց հայտարարեց, որ Հայկական հարցը չի մտնում դեսպանների խորհրդաժողովի աշխատանքների ծրագրի մեջ, և եթե, այս կամ այն կերպ, հաջողվի այն մտցնել խորհրդաժողով, ապա այնտեղ մասնակցող տերությունների ներկայացուցիչները պարտավոր կլինեն զեկուցել այդ մասին իրենց կառավարությանը և ստանալ համապատասխան հրահանգներ: Դրանից հետո նախարարը հարցուփորձ արեց Թուրքիայում հայերի իրական դրության վերաբերյալ, շարունակվում են արդյոք սպանությունները ու բռնությունները և որքանով է կյանքն անվտանգ: Հայերը նրան ներկայացրին մի օրինակ Կոստանդնուպոլսի պատրիարքարանի կողմից Ֆրանսերեն լեզվով տպագրված 1908-1912 թթ. հայերի դրության մասին փաստաթղթերի ժողովածուն (Հանձնաժողովը սիրով այդ հրատարակությունից մի քանի օրինակ մեզ տվեց մեր խորհրդակցության անդամների համար. մենք դրանք հանձնեցինք նախագահին): Նախարարը թեև կրկնում է, որ խորհրդաժողովը լիազորված չէ զբաղվելու Հայկական հարցով, բայցևայնպես խորհուրդ է տալիս դիմել տերություններին, քերևս նրանք կցանկանան հարուցել և այդ հարցը:

Հանձնաժողովն իր անդամներից մեկին՝ Գնել վարդապետին (51), ուղարկեց հունգարական նախարար-պրեզիդենտ պ. Լուկաչի (52) մոտ և, ուշադրության առնելով նրա հայկական ծագումը, ուզում էր ավելի շուտ ծանոթանալ նրա հայացքներին և օգտվել նրա խորհուրդներից, քան օգնություն խնդրել: Պ<արոն> Լուկաչը շատ սիրալիր ընդունեց վարդապետին, -շոյված էր պատրիարքի ուշադրությունից, իսկ երբ հայր Գնելը նրան դիմեց հայերեն խոսքով, ապա նա ներողություն խնդրեց, որ թեև ինքը հայ է, բայց հայերեն չգիտի: Պ<արոն> Լուկաչը, լսելով հայր Գնելի հաղորդումը, արտահայտվեց այն իմաստով, որ շատ բան կախված է Անգլիայից և որ հարկավոր է միջնորդել անգլիական կառավարության առաջ:

Հունգարիայի ճանապարհին հայր Գնելը, համաձայն իրեն տրված հանձնարարության, ներկայացավ բուլղարական ցար Ֆերդինանդին (53): Ցարը համարյա մտերմիկ իրադրության մեջ նրա հետ երկար խոսեց, և

հիշելով այն սրտալի վերաբերմունքը, որ դրսևորել էին հայերը աքսորյալ բուլղարների նկատմամբ Փոքր Ասիայի խուլ վայրերում, իրեն և բուլղարներին պարտավոր համարեց որևէ բանով վարձահատույց լինել հայերին: Բայց խոստովանեց, որ ինքն անզոր է Հայկական հարցի գործում, և խորհուրդ տվեց դիմել ռուսաց մեծ ցարին:

Այսպիսին են պաշտոնական բանակցությունններն ու հարաբերությունները, որ վարել է Հանձնաժողովը պատրիարքի անունից եվրոպական տերությունների ներկայացուցիչների հետ:

Հանձնաժողովի գործունեության մեջ ուշադրության են արժանի նաև նրա կողմից հրատարակվող նյութերը հայերեն և ֆրանսերեն լեզուներով: Արժեքավոր են առանձնապես՝ 1) Ֆրանսերեն լեզվով հրատարակվող կարևոր փաստաթղթերը, որոնք բնութագրում են հայկական նահանգների դրությունը (լույս է տեսել երկու պրակ) (54), 2) Տեղեկագրեր հողային զավթումների մասին հայերեն լեզվով (չորս պրակ) (55), որոնք հարուստ փաստական տվյալներ են պարունակում հողային հարցի վերաբերյալ, որ այնքան կենսական է Հայաստանի հայ ազգաբնակչության համար, և որը սուր, պայթունալի բնույթ է ընդունել: Տեղեկագրերի անաչառ տվյալները վառ կերպով պատկերում և վավերագրերով վկայում են թուրքական պետականության չարաբաստիկ սնանկության, անիշխանականության և բռունցքի իրավունքի աղաղակող տիրապետության մասին՝ թուրքական կառավարության անվանական իշխանության ներքո, իսկ հաճախ էլ նրա ուղղակի և ակնհայտ թողտվությամբ: Ապահովության հանձնաժողովը սիրալիր կերպով մեզ հասցրեց այդ տեղեկագրերից մեկ օրինակ, որ այժմ առաջարկվում է Խորհրդակցության ուշադրությանը: Տեղեկագրի լրացումն է կից դրված նաև Մուշի սանջակից օսմանյան պառլամենտի երեսփոխան Գեղամ Կարապետյանի «Հողային հարցը հայերով բնակեցված վիլայեթներում» գրքույկը (56): 3) Հանձնաժողովը կազմել և տպագրել է նաև վեց հայկական վիլայեթների սահմաններում բնակվող ազգաբնակչության վիճակագրական աղյուսակը, որը մենք տեղադրում ենք այստեղ առ ի ուշադրություն Խորհրդակցության (տե՛ս ֆրանսերեն լեզվով թերթիկը):

Գտնվելով Օսմանյան կայսրության մայրաքաղաքում, մշտական հարաբերություններ պահպանելով դեսպանությունների, հատկապես ռուսական դեսպանության հետ, գտնվելով Հայկական հարցի ճակատագիրը տնօրինող միջոցառումների, գործողությունների և կարևոր գործոնների կենտրոնում՝ Ապահովության հանձնաժողովը ենթադրում էր, որ կարողիկոսը և նրա կազմած պատվիրակությունը Պողոս Նուբար փաշայի գլխավորությամբ գործի օգտի համար պետք է նրա հետ կանոնավոր հաղորդակցության

պահպանեին, նրան իրազեկ պահեին գործողությունների և փաստերի մասին, ինչպես նաև հաշվի նստեին իրենց գործունեության մեջ նրա ցուցումների և պլանների հետ: Այդ առումով Հանձնաժողովը զոհ չէր պատվիրակության գործելակերպից և որոշ քայլերից և հույս էր տածում, որ կաթողիկոսը կվերակազմակերպի պատվիրակության ծրագիրը և գործելաեղանակը ի շահ նրա գործունեության նպատակահարմարության և հաջողության: Այդ իմաստով Հանձնաժողովը հանգամանալի նամակով դիմեց ծայրագույն պատրիարք-կաթողիկոսին, իսկ դրանից մի քանի օր առաջ, ի նկատի առնելով պատվիրակության Լոնդոն կատարվելիք ենթադրյալ ուղևորության լուրերի ռուսական դեսպանությունում առաջ բերած հուզմունքը, հեռագրով խնդրել էր կաթողիկոսին հեռագրի միջոցով ետ պահել պատվիրակությանը որևէ քայլից ընդհուպ մինչև պատճառաբանված նամակի ստացումը:

Ինչ վերաբերում է պատվիրակության՝ Թուրքիայի նկատմամբ գրաված դիրքին, պետք է նշել, որ նա ջանում էր հետևել լիակատար օրինապահություն: Ոտք չդնելով անջատողականության ուղին՝ պահանջել և հասնել բարեփոխությունների իրականացման, որոնք ընդունված են իր իսկ՝ Թուրքիայի կողմից - այսպիսին է պատվիրակության դիրքավորումը:

Հայ ազգաբնակչության մեջ Հայաստանում բարեփոխումների պահանջի ուժեղացման, տերությունների և հատկապես Ռուսաստանի կողմից Հայկական հարցի նկատմամբ արթնացած հետաքրքրության ազդեցության ներքո, Քյամիլ փաշայի կաբինետը, թերևս ի նկատի ունենալով իր ձեռքը վերցնել գործի նախաձեռնությունը և ղեկավարությունը, վճռեց անձամբ զբաղվել այդ հարցով, հանձնարարելով ներքին գործերի նախարար Ռեշիդ փաշային պատրաստել բարեփոխումների նախագիծ հայերով բնակեցված վիլայեթների համար: Այդ նախագիծը կատարելապես գոհացուցիչ չէր իր բովանդակությամբ ու բնույթով և տարածքապես ենթադրում էր սահմանափակվել սոսկ կիրառմամբ չորս վիլայեթներում (Վան, Բիթլիս, Խարբերդ և Դիարբեքիր):

Բ. Դուռը հրավիրել էր նախկին պատրիարք Մաղաքիա արքեպիսկոպոսին (Օրմանյան), թուրքական «Սաբահ» թերթի խմբագիր Տ. Քելեկյանին (57), հայտնի բանկիր Գ. Գյուլբենկյանին (58) և դոկտոր Ն. Տաղավարյանին (59) լսելու նրանց եզրակացությունը և կարծիքը այդ նախագծի մասին: Ի նկատի ունենալով հայ հասարակության որոշ շերտերի դժգոհությունն այդ հրավերի առթիվ, օսմանյան կառավարությունը բացատրել էր, որ հիշյալ անձնավորությունները հրավիրվել են ոչ իբրև հայերի պաշտոնական ներկայացուցիչներ, այլ իբրև, իրենց կարծիքով, քննարկման

ներքակա հարցերին իրազեկ անձնավորություններ: Հրավիրյալ անձինք մատնանշույց էին արել շատ էական թերություններ, որոնք կանխավ նախագիծը դարձնում էին մեռելածին. առարկել էին Հայաստանի տարածքի սահմանափակումը չորս վիլայեթներով վեցի փոխարեն և հայտարարել էին, որ հայ ազգաբնակչությունը կորցրել է վստահությունը թուրքական կառավարության նկատմամբ, որը կարող է վերականգնվել միմիայն հայերի դրության բարելավմանն ուղղված վճռական միջոցառումներով: Նախագծի հետագա ճակատագրի մասին ոչինչ հայտնի չի, իսկ Քյամիլ փաշայի կաբինետի անկումը նրան էլ դատապարտեց մահվան:

*
* *

Ծանոթանալով գործի վիճակին հայոց պատրիարքարանում և թուրքական նախարարների կաբինետում, նրա, այսպես ասած, պաշտոնական դրվածքով, մենք մեր պարտքը համարեցինք նաև հետևյալ հարցի վերաբերյալ հայ հասարակական մտքի շարժմանը Կոստանդնուպոլսում՝ պատրիարքարանի շրջանակներից դուրս: Ճիշտ է, Հանձնաժողովի մտադրությունները և որոշումները ինքնըստինքյան հասարակական ձայնի արտահայտությունն էին և նրա մշակմանը մասնակցել էին ոչ միայն Հանձնաժողովի անդամները, բայցևայնպես մենք հարկ համարեցինք տարբեր հասարակական կամ կուսակցական խմբերի առավել ականավոր ներկայացուցիչների շրջայց կատարել, որպեսզի անձամբ համոզվենք, թե որքանով է Հանձնաժողովի գործելակերպը և քաղաքականությունն արտացոլում ընդհանուր ցանկությունները և ինչպես են հիմնավորում այն առանձին գործիչներ:

I. Ամենից առաջ մենք այցելեցինք պատրիարք Հովհաննես եպիսկոպոսին (Արշարունի) և նախկին պատրիարքներ Եղիշե եպիսկոպոսին (Դուրյան) և Մաղաքիա արքեպիսկոպոսին (Օրմանյան): Պատրիարքը և Եղիշե եպիսկոպոսը մտնում էին Հանձնաժողովի կազմի, մեջ, դրա համար էլ մենք ավելորդ համարեցինք անհանգստացնել նրանց նոր հարցուփորձով: Մեր այցելությունը Հովհաննես պատրիարքին նրա մասնավոր բնակարանում, համընկավ նրա անվանակոչության օրվանը և մենք միաժամանակ մեր շնորհավորանքները մատուցեցինք այդ առթիվ: Պատրիարքը թողնում է ավանդական տիպի բարեհոգի ծերունու տպավորություն, օժտված խոնարհ և դյուրահավատ վանականի բարի հատկություններով: Նրա նախորդ Եղիշե եպիսկոպոսը (Դուրյան) նույն գծերը միացնում է արտասովոր գրավչությանն ու կրթվածությանը բարեհոգի վանականի տրամադրվածությամբ:

II. Ինչ վերաբերում է Մաղաքիա արքեպիսկոպոսին (Օրմանյան), ապա նա արտաքինով կտրուկ կերպով տարբերվում է հիշյալ եպիսկոպոսներից: Իր հասակի համեմատ խիստ գեր, իր տարիքին (72 տարեկան) խիստ շարժուն, նա մեծ հաճույքով է խոսում և ընդ որում այնպիսի ուրախ տրամադրությամբ, որը, թվում է, չպետք է ներդաշնակեր շնորհազրկված մարդու դրությանը (60): Դա նրա բնավորությանը յուրահատուկ գիծ է, թե ժամանակավոր դրսևորում վերջերս Ազգային ժողովի նրա մասին հանած արդարացուցիչ դատավճռով ներշնչված, դժվար է որոշել: Մաղաքիա սրբազանը խոսում է ժպիտը դեմքին, հաճախակի ընդհատելով իր խոսքը բուրքական ոճի արտահայտիչ և կտրուկ բացականչություններով, որոնք փոխարինում են «ճիշտ չէ՞» արտահայտությանը: Մենք նրա մոտ եղանք երկու անգամ. առաջին անգամ նրա հետ զրուցեցինք ընտանեկան իրադրության մեջ, նրա քրոջ, զարմուհիների և մոր ազգականների ընկերակցությամբ (61): Հարկ է նկատել, որ Կոստանդնուպոլսում ոչ միայն վարդապետները, այլև եպիսկոպոսները, անգամ պատրիարքները ապրում են քահանաների նման իրենց տանը կամ հարազատների մոտ, հանգամանք, որը շատ անսովոր է մեզ համար և խորթ մեր վանական հոգևորականության բարքերին: Երկրորդ անգամ մենք եկանք նրա մոտ մեզ հետաքրքրող հարցի մասին ասուլիսի համար: Ամենից առաջ Օրմանյանը կանգ առավ Նուբար փաշայի պատվիրակության վրա, որի հետ կապված էր նաև նրա անունը: Նա մեզ պատմեց, որ Նորին Սրբազնություն կաթողիկոսը 1912 թ. նոյեմբերի 10-ի հատուկ կոնդակով Պողոս փաշային նշանակել էր պատվիրակ, որպեսզի նա մյուս հոգևոր և աշխարհիկ անձանց հետ միասին ներկայացնի Հայ դատը դեսպանների խորհրդաժողովին: Ընդ որում Օրմանյանը մեզ ցույց տվեց կոնդակի պատճենը, որտեղից մենք մեր նոթատետրում արտագրեցինք հետևյալ հատվածը՝ «Կարգեմք զՁեր վսեմափայլութիւն ներկայացուցիչ մեր ընդ այլ եւ հոգւորական եւ աշխարհական անձանց եւ խնդրեմք ի Ձէնջ յանձն առնուլ երթալ ի վեհաժողով (կոնֆերենցիա) եւ առաջի առնել պատգամաւորաց եւրոպական պետութեանց զխնդիր հայոց եւ զտեղեկագիր մեր, հայցելով զմիջնորդութիւն նոցա առ ողբալի կացութիւնս» (62):

Պողոս Նուբար փաշան, օգտվելով պատվիրակության կազմակերպման համար կոնդակով նրան վերապահված իրավունքից, նամակով դիմեց Օրմանյանին, հրավիրելով նրան հարել պատվիրակությանը իբրև նրա գլխավոր խորհրդական և աշխատակից: Պողոս փաշայի նամակի իսկական խոսքերը հոչակում են. «Gést pourquoi ma première pensée a été de vous demander votre précieux concours auquél j'a Hache personnellement une gran-

de importance. Je dois du reste vous avouer, que votre nom été suggéré d'Etchmiadzin nême...» (63):

Փաշայի նամակին Օրմանյանը պատասխանել էր, որ քանի դեռ ինքը մեղադրանքի տակ է Ազգային ժողովում, չի կարող համաձայնվել, որքան էլ որ ցանկանա, այդպիսի լուրջ առաքելության, որտեղ ամենից առաջ պահանջվում է ազգի վստահությունը (64): Դրանից հետո շուտով նրա դատավճիռը Ազգային ժողովում ավարտվեց բարեհաջող: Բայց նույն այդ ժամանակ ստացվեց «Մշակ»-ի համարը կաթողիկոսի դիվանի կառավարիչ Բագրատ վարդապետի հայտնի հաղորդագրությամբ այն մասին, որ Օրմանյան արքեպիսկոպոսին Նորին Սրբազնության կողմից ոչ մի հանձնարարություն չի տրված թուրքահայ հարցով: Կաթողիկոսի դիվան նման պաշտոնական հայտարարությունից հետո Օրմանյանը հնարավոր չգտավ ընդունել Պողոս փաշայի առաջարկությունը, որքան էլ որ այն մոտ լիներ իր սրտին: Օրմանյանը կարծում է, որ Բագրատ վարդապետի ելույթը ներշնչված էր պատրիարքարանին մոտ կանգնած Կոստանդնուպոլսի իրեն թշնամական շրջանների կողմից:

- Անցնելով Հայկական հարցին ըստ էության,- ասաց նախկին պատրիարքը,- այն հարցին, որը ձեզ հետաքրքրում է, ես կարծում եմ, որ այն կքննարկվի զարնանից ոչ շուտ: Առայժմ բանակցություններ են գնում հաշտության մասին, որի կնքման համար կպահանջվի և մի քանի շաբաթ: Այնուհետև դաշնակիցների միջև, Ռումինիայի մասնակցությամբ, տեղի կունենա ավարի բաժանման համար պատերազմի հետևանքների վերացումը: Այդ վիճելի հարցերը նույնպես ամիսներ կխլեն: Այդ ամենից հետո վրա կհասնի մեր հերթը, եթե միայն տերությունները լրջորեն մտադիր են որևէ բան անել մեզ համար: Հայկական հարցը, կրկնում եմ, եթե միայն նրան վիճակված է դառնալ դիվանագիտական բանակցությունների առարկա, կքննարկվի, համենայն դեպս, ոչ դեսպանների խորհրդաժողովում: Որքան որ ես խորամուխ եմ լինում Փոքր Ասիայում եվրոպական տերությունների շահագրգռությունների բարդ հանգույցի մեջ, մասնավորապես Եռյակ համաձայնության շահերի ու խնդիրների մեջ, մեր հարցը կարող է լուծել միայն Եռյակ համաձայնությունը: Այդ է պահանջում, ամենից առաջ, ռուսական դիվանագիտությունը: Ռուսները չեն կարող հաշտվել այն բանի հետ, որ Սան-Ստեֆանոյում նրանց ձեռք բերած իրավունքները տերությունները բռնազավթեցին Բեռլինի վեհաժողովում: Եվ շատ բնական է, որպեսզի ռուսական դիվանագիտությունը գործի Սան-Ստեֆանոյի պայմանագրի ոգով, անտեսելով Բեռլինի վեհաժողովի դրույթները, այսինքն՝ ջանա հանել Հայկական հարցը տերությունների անօրինությունից և այն ուղղի բեկուզև

իր և իր դաշնակիցների ազդեցության ոլորտը: Իսկ դա նշանակում է առաջ չքաշել Հայկական հարցը բոլոր տերությունների դեսպանների խորհրդածողովում: Մի խոսքով, եզրափակեց Օրմանյանը, ռուսական դիվանագիտության խնդիրը ես այսպես եմ հասկանում՝ եթե Բեռլինի վեհաժողովը կատարեց Սան-Ստեֆանոյում ստեղծված դրության renversement, ապա ռուսները պետք է ձգտեն re-renversement-ի, այսինքն՝ հակառակ շրջադարձի դեպի Սան-Ստեֆանո: Եթե դա հնարավոր է, ապա թերևս միայն Ռուսաստանին բարեկամ տերություններ Անգլիայի և Ֆրանսիայի աջակցությամբ, իսկ Եռյակ միությունը կարող է միայն խանգարել:

Ինչ վերաբերում է բարեփոխումների էությանը, շարունակեց Օրմանյանը, ապա, իհարկե, լավ կլինեն հայկական վիլայեթներից ստեղծել Լիբանանի պես մի բան (65), եթե դա հաճո կլինի Եռյակ համաձայնությանը: Ի միջի այլոց, դա չէ էականը, Եվրոպայի կամ անգամ Թուրքիայի նախագծած վերափոխումների նախագծումներից ցանկացածը մեր հարցի պատմության մեջ, մեզ կբավարարեր, եթե միայն այն իրականանար: Բայց հենց իրականացումն էլ չի կարելի սպասել Թուրքիայից, այլ անհրաժեշտ է արտաքին ճնշում, գլխավորապես Ռուսաստանի կողմից: Ռուսաստանի միջամտությունը թուրքական Հայաստանի գործերին մեզ ցանկալի է և օգտավետ: Ես չեմ բաժանում որոշ հայկական շրջանների հոռետեսական հայացքները նույնիսկ Ռուսաստանի կողմից հայկական մարզերի օկուպացման կամ բռնակցման դեպքում: Ռուսահայերը, ռուսական քաղաքական կյանքի պայմաններում, հնարավորություն ունեն զարգանալու և՛ մշակութային, և՛ տնտեսական, և՛ ազգային առումներով: Իմ համոզմունքն է, որ Թուրքիան, թողնված ինքն իրեն, ի վիճակի չէ մեզ որևէ իրական օգնություն ցույց տալու բարեփոխումների անցկացման իմաստով, որոնք այնքան անհրաժեշտ են մեր կյանքի կանոնավոր զարգացման համար Թուրքիայում: Թուրքական կառավարությունների գործողություններն այդ առումով միշտ այնքան էլ հուսալի չեն և անարդյունավետ են: Հայերը վերջնականապես հուսախաբ են եղել ամեն մի թուրքական կառավարությունից, և ես այդ մասին ուղղակի հայտարարեցի մինիստրությունում, երբ 4-ի թվում (66) հրավիրվել էի խորհրդակցության հայկական վիլայեթների համար կառավարության կողմից նախագծվող բարեփոխումների կապակցությամբ: Ոչ այդ, և ոչ էլ մյուս նախագծերից ոչինչ չի ստացվի, եթե չլինեն սպառնալիքներ և պահանջներ, հատկապես Ռուսաստանի կողմից:

III. Իմանալով, որ Օրմանյանը մոտիկ է արտաքին գործերի նախարար Գաբրիել էֆենդի Նորատունկյանի (67) հետ, մենք խնդրեցինք նրան նախարարի հետ հանդիպում կազմակերպել այնպես, որպեսզի նա մեզ հետ

զրուցեր ոչ թե պաշտոնապես և դիվանագիտորեն, այլ ավելի վստահաբար և բացսիրտ: Երկու օր անց Օրմանյանը մեզ տեղեկացրեց, որ հանդիպել է Նորատունկյանի հետ և մեզ ժամադրություն է նշանակված հունվարի 1-ին առավոտյան: Նշանակված ժամին մենք Գարրիել էֆենդու հյուրասենյակում էինք, նրա սեփական տանը: Մի քանի րոպե անց նա ինքը ներս եկավ և մեզ տարավ իր առանձնասենյակը: Հենց սկզբից նախարարը, իր ձեռքը վերցնելով մեր զրույցի թելը, ինքը ձեռնամուխ եղավ հարցուփորձի և հաղորդումների: Ավելի երկար, քան անհրաժեշտ էր, Նորատունկյանը հարցեր էր տալիս մեր մասին, հետո կարծես թե հիշելով, որ մի քանի տարի առաջ Սանասարյան վարժարանի (68) հոգաբարձությունը (որի անդամներից մեկն է Նորատունկյանը) առաջարկել էր մեզանից մեկին այդ դպրոցի տեսուչի պաշտոնը, նա սկսեց մանրամասն պատմել այն մասին, թե ինչպես և ինչու էր հոգաբարձությունը ստիպված փոխադրել վարժարանը Էրզրումից Սվազ: Մեր այն նկատողությանը, թե ռուսահայերն ամենևին հավանություն չեն տալիս դրան, Նորատունկյանը մատնանշեց, որ դեռևս վարժարանի հիմնադիրը (Եզյանը և մյուսները) (69) ամենևին չէր կարծում, որ այն անպայման և բացառապես Էրզրումում պիտի լինի, և սկսեց մանրամասն բացատրել վարժարանի Սվազում գտնվելու առավելությունները և հարմարությունները: Ամբողջ այդ ժամանակ նախարարին մշտապես ծրարներ և թղթեր, այցեքարտեր էին բերում, զեկուցում էին այս կամ այն անձնավորության գալու մասին: Վերջապես մենք շրջեցինք խոսակցությունը և բացատրեցինք մեր Կոստանդնուպոլիս գալու և, մասնավորապես, նրան այցելելու նպատակը: Թերևս անհարմար և անփափկանկատ է, վերապահություն արեցինք մենք, Հայկական հարցով դիմելը Թուրքիայի արտաքին քաղաքականության ղեկավարին և նախարարների կաբինետի անդամին: Բայց մեզ, հայերիս համար, էլ ավելի աններելի կլիներ, եթե մի այդպիսի պատմական պահի մենք անտեսեինք նրան, արհամարհեինք նրա խորհուրդներն ամբողջ հայության համար այդքան կենսական մի հարցում, որում նա առավել իրազեկ, թերևս միակ բանիմաց հայն է: Ահա թե ինչու ոչ միայն Պետերբուրգի հայերը, այլ ընդհանրապես հայկական շրջաններն ամենուր իրենց պարտքն են համարում իմանալ նրա կարծիքներն ու հայացքները մեզ հուզող հարցի վերաբերյալ և նրա նկատառումները դրա հնարավոր ելքի մասին: Նորատունկյանը պատասխանեց, որ ուրախ է և պատրաստ լինովին բացահայտ արտահայտվել տվյալ հարցի մասին, քանզի ցանկություն չունի և հարկ չի համարում թաքցնել իր հայացքները: Նա լիովին ազատ արտահայտում է դրանք նաև նախարարների խորհրդում, որտեղ նրա գործընկերներն ըստ կաբինետի

լիովին բարյացակամ են տրամադրված հայերի կարիքների հանդեպ: Կարվե՞ն արդյոք բարեփոխումներ հայերին: Նորատունկյանի կարծիքով, դա կախված է այն բանից, թե կբարեփոխվի՞ Թուրքիան ընդհանրապես: Եթե Թուրքիայում հաստատվեն ավելի լավ կարգեր, ապա հայերը, իբրև առավել կուլտուրական, աշխատանքի ընդունակ տարր, մյուսներից առավել և մյուսներից վաղ կօգտագործեն իրերի այդ բարելավված դրությունը: Բայց նախարարը պատասխան չտվեց, թե կա՞ն արդյոք Թուրքիայում կարգերի բարելավման, ներկա կառավարության կայունության և նրա բարի ցանկությունների հաստատունության երաշխիքներ: Հայկական վիլայեթների բարեփոխումների վերաբերյալ Նորատունկյանը հաղորդեց, որ բարեփոխվելիք տարածքի մեջ այժմ մտցվում են վեց (և ոչ թե չորս) վիլայեթներ, որոնք բաժանվում են երկու գոտիների, որոնք տարբեր աստիճանի են ենթակա բարեփոխման (այդպիսով, թուրքական կառավարությունն ինքը հրաժարվեց իր կողմից նախապես ենթադրվող Հայաստանի տարածքի սահմանափակումից): Մանրամասները նա մեզ առաջարկեց իմանալ Օրմանյանից: Այդ ժամանակ զեկուցեցին իտալական դեսպանի գալուստի մասին: Մենք ոտքի ելանք և հրաժեշտ տվեցինք: Մեր հանդիպումը տևեց ոչ պակաս, քան 40 րոպե, բայց մենք մնացինք չբավարարված: Կարելի՞ է արդյոք հուսալ, որ թուրքական կառավարությունն իր նախաձեռնությամբ, հասկանալով իր պետության իրական կարիքներն ու օգուտները, Հայաստանին կտա անհրաժեշտ բարեփոխումները: Ուղղակի պատասխան մենք Նորատունկյանից չստացանք, բայց անուղղակի պատասխանը ժխտական էր: Հայերի հույսերը նա կապում էր ոչ թե Հայաստանի տեղական վերակազմակերպմանը, այլ, միշտ էլ կասկածելի, ամբողջ Թուրքիայի բարեփոխմանը: Իսկ Հայաստանի բարեփոխման մասին նա մեզ առաջարկեց հարցնել Օրմանյանին, որը կարականապես հայտարարել էր մեզ, որ այդ բարեփոխումը կարող է լինել արդյունք միայն արտաքին ճնշման և ոչ թե Թուրքիայի կամավոր նախաձեռնություն:

IV. Պետրոս Հալաճյան (70), նախկին նախարար Սայիդ փաշայի երիտթուրքական կաբինետում, դեռևս համեմատաբար երիտասարդ անձնավորություն, որի գեղեցիկ արտաքինին համապատասխանում է, ըստ երևույթին, նաև բնավորության մեղմությունը: Խոսում է նա արտակարգ կերպով հաճելի, նրբաճաշակ երանգով, որը երևան է հանում նրա ծագումը մայրաքաղաքի հայկական արիստոկրատական շրջաններից: Պ. Հալաճյանը դեռ այժմ հաշվվում է «Միություն և առաջադիմություն» կուսակցության շարքերում: Բայց նա իրազեկ չէ կուսակցական գործերին, իր իսկ սեփական խոստովանությամբ, մասամբ այն պատճառով, որ հիվանդու-

թյան հետևանքով վերջին ժամանակներս զրկված է եղել իր քաղաքական համախոհների հետ հանդիպելու հնարավորությունից, մասամբ էլ ուրիշ պատճառներով: Դրա համար էլ այն հարցերը, որոնք մեզ հետաքրքրում էին և որոնց մասին մենք հույս ունեինք նրանից պատասխան ստանալ, հարկ եղած չափով չլուսաբանվեցին: Մեր հանդիպումը օգտակար էր այն առումով, որ նա մեզ շատ արժեքավոր տեղեկություններ հաղորդեց քրդական ինքնավարության մասին լրագրեր ներթափանցած լուրերի մասին, որոնք իբրև թե ծագում էին հայերի նկատմամբ առանձնապես թշնամաբար տրամադրված թուրքական շրջաններից: Պ. Հալաճյանը հավատացնում էր, որ թուրքերը, և հատկապես երիտթուրքերը ոչ մի դեպքում չեն համաձայնվի քրդերի ինքնավարությանը: Ապակենտրոնացման սկզբունքների և ոչ թուրք ազգությունների ինքնակառավարման հայտնի իրավունքների ճանաչման գործում երիտթուրքերը, իբրև կենտրոնացման և թուրքիզմի համոզված կողմնակիցներ առանձնապես անքան էլ զիջող չեն և անհաշտ են մահմեդական, բայց ոչ թուրքական ժողովուրդների նկատմամբ, օրինակ, ալբանացիների, արաբների, քրդերի: Չզգտելով թվապես ուժեղ և համախումբ-միավորված մահմեդական կորիզի ստեղծմանը պետության մեջ՝ թուրքական ըստ տրամադրության և ինքնագիտակցության, երիտթուրքերը հույս ունեն բոլոր ոչ թուրք մահմեդականներին վերածել թուրքերի առանց հատուկ ջանքերի, շնորհիվ դավանական մերձավորության: Եվ դրա համար էլ նրանց կողմից որևէ ինքնանկախության և ինքնորոշման ճանաչում, որն ուղղակի հակառակ է գնում նրանց հետապնդած թուրքացման խնդրին, երիտթուրքերի կողմից մերժվում է հետևողական և անշեղ համառությամբ: Դրա համար էլ, պ. Հալաճյանի կարծիքով, երիտթուրքերն ավելի շուտ հայերին կտան ինքնավարություն, քան թե քրդերին: Իսկ քրդերի մեկուսացմանը երբեք չեն համաձայնվի, թեև իհարկե, ամեն կերպ կգրավեն և երես կտան, դեպի իրենց կքաշեն նրանց: Պ. Հալաճյանը չմտածված է համարում երիտթուրքերի ձգտումը վերացնելու միջազգային վերահսկողությունը թուրքական տարածքի առանձին մասերի վրա: Այդ վերահսկողությունը լավագույն միջազգային երաշխիքն է պահպանելու այդ մարզերը Թուրքիայի ձեռքին: Ահա վերացրեցին այդ վերահսկողությունը Մակեդոնիայի վրայից, Թուրքիային թողեցին անձամբ և միայն իր ուժերով պահել նրան իր ինքնիշխան տիրապետության տակ, և Թուրքիան ուժ չունեցավ այդ անել: Ո՞վ գիտե, կլիներ արդյոք Բալկանյան պատերազմը, կկարողանային Բալկանյան դաշնակից պետություններն այդպես լայնորեն խլել Թուրքիայից եվրոպական վիլայեթների տարածքը, եթե նրա վրա լիներ եվրոպական վերահսկողության իշխանությունը: Կրետեի այժմյան կա-

ցությունը, Ալբանիայի պաշտպանության հարցը՝ Սերբիայի, Չեռնոգորիայի և Հունաստանի ենթակայության տակ ընկնելուց, այդ մտքի լավագույն ու պատկերավոր ապացույցն են: Այդ իմաստով Հայաստանի վրա եվրոպական հովանավորության հաստատումը, Թուրքիայի գերակայության պահպանմամբ, երաշխիք կլիներ այդ մարզի անանջատելիության Օսմանյան կայսրությունից:

V. Գրիգոր Զոհրապը, փաստաբան ըստ մասնագիտության, գրող, հասարակական գործիչ և թուրքական պառլամենտի երեսփոխան՝ մայրաքաղաքի հայ ազգաբնակչության կողմից, իրենից ներկայացնում է խոշոր դեմք, որն իր վրա է դարձնում ոչ միայն հայկական ոլորտների ուշադրությունը: Այս բարձր կրթության տեր անձնավորությունը, մեծ և հստակ խելքով, խելք, որին ենթարկվում է ճկուն և պերճախոս լեզուն, խոսում է մեծ խանդավառությամբ, գրեթե պատանեկան ավյունով: Ի տես նրա դյուրաշարժության չի կարելի մտածել, որ նա արդեն հիսունն անց է և ունի հասուն, ամուսնացած որդի (71): Նրա պերճախոսությունը փոքր-ինչ փաստաբանական է, ինչպես և խոսելու ձևը, ջերմանում է անբռնազբոսիկ հումորով և հեշտությամբ է հրապուրում լսողին իր եռանդից: Ի միջի այլոց, նրա խոսքի եղանակի համոզվածությունը հնչում է ավելի շատ իբրև վստահություն լսողի նրա հետ համերաշխության, քան թե սեփական հայացքների ճշմարտացիության:

Իմանալով մեր առաքելության և մեր այցելության նպատակի մասին, նա իսկույն ևեթ գործի ձեռնարկեց, ինքն էր դնում հարցերը և ինքն էլ պատասխանում:

- Կդրվի՞ արդյոք Հայկական հարցը դեսպանների խորհրդաժողովում և ցանկալի՞ է արդյոք մեր շահերի տեսանկյունից հասնել այդ բանին:

- Իմ կարծիքով,- հայտարարեց պ. Զոհրապը,- որն արդարացվում է նաև իմ ունեցած պաշտոնական բնույթի տեղեկություններով, խորհրդաժողովը Հայկական հարցը չի շոշափի, որի ծրագիրը խստորեն որոշված է: Ռուսաստանի համար գերադասելի է, որպեսզի Հայկական հարցը դրվի և լուծվի ոչ թե դեսպանների խորհրդաժողովում, այլ Եռյակ համաձայնության խմբակցության մեջ: Այդ մասին վշտանալու և ափսոսալու մենք հազիվ թե հիմք ունենք, եթե ուշադրության առնենք, որ մեր հարցը գերազանցապես կախված է Եռյակ համաձայնության տերություններից, որոնք հավակնում են բացառիկ ազդեցության Թուրքիայի արևելյան երկրամասերում (Հայաստան, Սիրիա և Միջագետք): Ցանկալի բարեփոխումների էությունը կայանում է գերագույն կոմիսարի (կամ, ինչպես ես եմ մտածում անվանել, «վալիազամի») նշանակման մեջ տերությունների հովանավորության ներքո:

Մնացյալ բոլորը էական նշանակություն չունի և կարելի է հաշտվել Թուրքիայում առկա հաստատությունների հետ. կարելի է թողնել նաև այժմ գոյություն ունեցող վարչական բաժանումը: Մի խոսքով, այն ամենը, ինչ փոփոխության դեպքում պետք է անցնի օրենսդրական հիմնարկություններով, հարկ է թողնել նախկինի պես բարդացումներից խուսափելու համար: Հայկական մարզերի վերափոխումը իրավաբանորեն պետք է այնպես կարգավորել, որպեսզի այն որքան հնարավոր է չշոշափի գործող կայսերական օրենքներն ու կանոնադրությունները և իրագործման մեջ կախված լինի, գլխավորապես, գերագույն իշխանությունից, սահմանելով ի վնաս կամ ի հաշիվ սուլթանի գերագահ իրավունքների, որն ինքն այս կամ այն ձևով կամ չափով ընձեռում է կոմիսարին:

Մեր գլխավոր հենարանը Հայկական հարցում՝ Ռուսաստանն է, դրացիության իրավունքով և շահագրգռվածության աստիճանով: Ռուսաստանին անհրաժեշտ է ապահովել իր ազդեցությունը նրա սահմաններին հարող թուրքական նահանգներում: Նրան անհրաժեշտ է նույնիսկ հաստատվել այնտեղ, որպես կարևոր փուլ՝ իր աստիճանական շարժման մեջ դեպի հարավային բաց ծով: Այդ ճանապարհին նրա միակ բարեկամները, առավել հուսալի հենարանը՝ հայերն են, և դա առավել ևս անվիճելի է, որ այդ են պահանջում, ամենից առաջ և ամեն ինչից զատ, երկու կողմերի իրական շահերը: Հայերը, նշանակալի ուժ ներկայացնելով տեղում, իրենց աջակցությամբ կարող են ապահովել Ռուսաստանին Հայաստան խաղաղ ներթափանցման հնարավորություն: Ռուսաստանն իր կողմից պետք է նրանց համար ապահովի խաղաղ մշակութային, ազգային զարգացման հնարավորություն: Ռուսական դեսպանական անձանց հետ զրույցներում ես մշտապես զարգացնում և պաշտպանում եմ այդ տեսակետը, առաջ եմ քաշում փոխադարձ ծառայությունների սկզբունքն ըստ donant, donant բանաձևի (72), ընդհանուր շահերի հիմքի վրա: Ռուսները շատ են հետաքրքրվում հայերի թվաքանակով թուրքական Հայաստանում, համենայն դեպս առաջին քարգման պ. Մանդելշտամը հաճախ է ինձ հարց տալիս հայերի թվաքանակի և նրանց գրաված տարածքի չափերի մասին: Դրան վերաբերող տեղեկությունները, որ նրան հայտնեցին հայոց պատրիարքարանից, չբավարարեցին նրան (73): Դեռևս վերջերս պ. Մանդելշտամը եկավ ինձ մոտ և կասկած հայտնեց, արդյոք պատրիարքարանը չի մեծացնում հայերի թվաքանակը և արդյոք չափից դուրս հեռու չէ հասցված հայկական տարածքի սահմանը մինչև Սվազ: Ես նրան հանգստացրի, ճանաչելով, որ Թուրքիայի ազգաբնակչության վերաբերյալ եղած բոլոր վիճակագրական տվյալները վստահության արժանի չեն, քանզի թուր-

քական կառավարությանը դեռևս խորք է վիճակագրությունը բառիս բուն իմաստով: Բայց բանն ամենևին էլ դրանում չէ, եթե նույնիսկ հայերը իրականում փոքրամասնություն կազմեին թվաքանակով, բայցևայնպես չպետք է մոռանալ, որ որակական առումով նրանք անվիճելի գերակշռություն ունեն, հանդիսանալով տնտեսական, մտավորական ուժ, և ներկայացնելով իրենցից համախումբ զանգված բոլոր տվյալներով, որոնք բնութագրում են ազգությունը բառիս եվրոպական իմաստով: Իսկ ինչ վերաբերում է նրան, որ հայերի նախագծով Սվազն էլ է ներառվում բարեփոխման ենթակա հայկական տարածքի սահմաններում, ապա այդ դեպքում մենք առաջնորդվում ենք նաև Ռուսաստանի շահերով, և մենք նույնիսկ կարծում ենք, որ Սվազի ներգրավումն ավելի շատ ռուսական դիտավորություններին է համապատասխանում, քան հայերի:

Երկյուղ կրել ռուսական իշխանության ճնշումից և նկատի առնելով այդ երկյուղները Հայաստանի համար, գերադասել ազատությունը Ռուսաստանի ազդեցությունից պ. Զոհրապի կարծիքով հիմնավոր չէ: Ինչ էլ որ լինի, անգամ ճնշման վարչակարգի դեպքում, մենք բայցևայնպես չենք զրկվի ռուսական քաղաքական իշխանության պայմաններում զարգանալու հնարավորությունից: Բացի այդ, Ռուսաստանը երիտասարդ երկիր է, ապագայի պետություն, և այն ճնշումը, որի մասին այսքան շատ են խոսում, միշտ չէ տիրապետելու Ռուսաստանում: Հույս դնելով Ռուսաստանի օգնության և աջակցության վրա, հայերը պետք է խելամտորեն ձեռնպահ մնան պահանջներ ներկայացնելուց, որոնք չափազանց կամ անթույլատրելի կթվան Ռուսաստանի տեսակետից, որպեսզի կարողանան սկզբնապես իրենց համար ապահովել թեկուզ և այն քչի իրագործումը, որը պարունակվում է Ռուսաստանի հավանությանն արժանացած բարեփոխումների չափավոր նախագծում. մնացյալը կլրացնի և կանի ապագան: Քրդական հարցի վերաբերյալ ռուսական դեսպանությունում Զոհրապին բացատրել են, որ Ռուսաստանը դեմ չէ նախապատրաստել և օգտագործել քրդերին, բայց բնավ երբեք չի օգտագործի նրանց կամ աջակցի ընդդեմ հայերի:

VI. Թուրքական կառավարության օրգան (պաշտոնաթերթ) «Սաբահի» խմբագիր [Տիրան] Քելեկյանը միջազգային իրավունք է դասավանդում Կոստանդնուպոլսի թուրքական համալսարանում. ազատ մուտք ունի բարձրագույն կառավարական անձանց մոտ ընդհուպ մինչև սադրազամը (74): Մեր այցելության նախօրյակին ընդունվել էր սուլթանի (75) կողմից ունկնդրության, որը մանրամասն նկարագրվեց թերթում, լուրեր էին պտտվում, որ ենթադրվում է նրա նշանակումը ծերակուտական (76): Նա ինքն իրեն անվանեց կիսով չափ հայ, հայտարարեց, որ ապրում է ծա-

ռայելով Թուրքիային և թուրքական կառավարությանը, իսկ իր հայկական ծագումը և հայկական գործունեությունը իրեն օգուտ ու շահ բերել չեն կարող: Ճիշտ է, նա հեռաքրքրվում է այն ամենով, ինչ վերաբերում է հայերին, հետևում է գրականությանն ու մամուլին, բայց միայն պարապ ժամերին և անձնական բավականության համար, քանզի ինքը հայ է, դաստիարակված է հայկական ոգով, նախկինում աշխատել է հայկական մամուլում և այդ ամենից հրաժարվել չի կարող: Թուրքական կառավարական շրջաններում Քելեկյանը, ըստ նրա խոսքերի, որը հաստատում են նաև ուրիշները, օգտվում է անպայման վստահությամբ և ընդունվում է իբրև յուրային. օգտվում է որոշ ազդեցությամբ և հնարավորություն ունի միշտ իրազեկ լինելու կառավարության մտադրություններից ու գործողություններից, քանզի ամեն օր, իբրև պաշտոնաթերթի խմբագիր, այցելում է նախարարներին և նախարարություններ տեղեկատվության և հրահանգներ ստանալու նպատակով: Ներկա պահին Հայկական հարց գոյություն չունի, հայտարարեց Քելեկյանը, այսինքն՝ բացատրեց նա, Հայկական հարց գոյություն ունի, ինչպես որ գոյություն ունի օրինակ, լեհական, ֆինլանդական հարց, բայց գոյություն չունի հարցի այն իմաստով, որ հարուցված չէ միջազգային ատյանի առջև և դրված լուծման համար: Ի միջի այլոց դա սոսկ ժամանակի հարց է: Հայկական հարցը վաղ, թե ուշ կհանգեցվի լուծման, և, Քելեկյանի կարծիքով, Հայաստանը անխուսափելիորեն պետք է բաժին ընկնի այս կամ այն պայմանով Ռուսաստանին, որի շարժումը դեպի հարավ անկասելի է: Քելեկյանը հաստատապես համոզված է Թուրքիայի և թուրքերի սնանկության մեջ, որոնք առհասարակ ընդունակ չեն քաղաքական ստեղծագործ գործունեության: Առանց խորտակիչ հետևանքների չեն մնա նաև Թուրքիայի և թուրքերի գործած հանցագործությունները: Հայերը և Հայաստանը Թուրքիայից և թուրքական կառավարություններից բարեփոխումների սպասելիք չպետք է ունենան՝ Թուրքիան ընդունակ չէ, ասենք հակված էլ չի իր նախաձեռնությամբ տալ այդ բարեփոխումները: Հայաստանի ինքնավարությունը կփրկեր այդ մարզի անջատումը Թուրքիայից և Ռուսաստանի իշխանության տակ անցնելը, բայց թուրքերը չեն կարողանում դա հասկանալ. ասենք, եթե հասկանային էլ, նրանց մոտ հայրենասիրություն չկա: Նրանց իսկական հայրենիքն և հայրենիքը Միջին Ասիայի խորքերում է: Իսկ Փոքր Ասիան, առավել ևս Բալկանյան թերակղզին, նրա համար եղել և մնացել են խորթ երկիր, սոսկ շահագործման առարկա: Այդ երկրները նրանց համար սոսկ հարկատուներ են և ոչ հայրենիք, որի հետ նրանք կապված լինեին բարոյական կապերով, որի համար զոհաբերեին իրենց շահերը: Քելեկյանը

մեզ հաղորդեց, որ ինքն ամենևին չքաշվելով արտահայտություններում, հանդես է եկել այն խորհրդակցությունում, որին նա հրավիրվել էր նախարարության կողմից 4 հայերի թվում՝ քննարկելու համար Հայաստանի բարեփոխումների կառավարական նախագիծը, և որ նույնիսկ Քյամիլ փաշան, նիստից հետո, վստահված անձի միջոցով խնդրել է նրան չվախենալ և շարունակել արտահայտվել նույնպիսի ուղղամտությամբ և բացարտությամբ: Բարեփոխումները կարող են իրագործվել սոսկ տերությունների կողմից դրանց հարկադրական մտցման դեպքում: Իսկ ավելի շուտ կկատարվի այն, որ Ռուսաստանը միանձնաբար կմիջամտի: Ռուսաստանի իշխանությունը, Քելեկյանի կարծիքով, ունի իր դրական կողմերը, բայց ունի նաև բացասական, մեզ՝ հայերիս համար անօգտավետ կողմեր: Հատկապես ցանկալի կլինեի երկարաձգել Հայաստանի՝ Ռուսաստանին ենթարկելու ժամանակը, հնարավորություն տալ հայ ազգաբնակչությանն ավելի ամրապնդվելու և ուժեղանալու թվապես և տնտեսապես, որպեսզի կարելի լինեի ավելի հաջող կերպով դիմադարձել ռուսական կառավարության հնարավոր ճնշումը: Ցավոք սրտի, այդ հարցում մենք՝ հայերս, չենք վճռողը, այլ ուժեղ տերությունների կամքը, և Հայկական հարցի լուծումը կհետևի այն ժամանակ և այնպես, երբ և ինչպես կկամենան տերությունները: Հայկական լայն հասարակության մեջ Քելեկյանը բարի համբավ չի վայելում՝ նրան համարում են «ժուռնալչի», ի միջի այլոց այդ մակդիրը շատերին են կպցնում: Նա եղել է Ազգային վարչության քարտուղարը Իզմիրլյանի (77) օրոք, այդ ժամանակ էլ լուրեր էին պտտվում, որ նա ամեն ինչ մատնում է թուրքական կառավարությանը: Քելեկյանն իր հերթին անբարենպաստ կարծիք ունի այժմյան հայ գործիչների, Ազգային ժողովի և նրա մարմինների առկա կազմի մասին: «Ես նրանց բոլորին կկախեի,- արտահայտվեց նա չարացած մարդու կտրուկ շեշտով,- նրանք ոչինչ չեն անում, միայն շաղակրատում են, աղմկում և ազգին վնաս հասցնում: Ես դեմ չեմ ժողովրդական ինքնավարությանը, այլ դեմ եմ նման ձևերի և նման անձանց»:

VII. Բյուզանդ Քեչյան՝ «Բյուզանդիոն» լրագրի խմբագիր, խոշոր հրատարակիչ և հրապարակախոս (78): Աշխուժորեն հետաքրքրվում էր, հարցուփորձ անում Ռուսաստանի քաղաքական դրության, Պետական դումայի, կուսակցությունների մասին: Պատմեց, թե ինչպես Գուչկովը (79), ժամանելով Կոստանդնուպոլիս, զրուցել էր հայկական ընկերությունում և դեմ արտահայտվել Հայաստանի ինքնավարությանը, իբրև Ռուսաստանի համար անշահավետ և թե ինչպես էին իրենք ջանացել համոզել նրան, որ հայերը ինքնավարության չեն ձգտում, և որ հայերի շահերը և պահանջները

համընկնում են Ռուսաստանի շահերին: Քեչյանը կողմ էր արտահայտվում Ռուսաստանի հովանավորությանը Հայաստանի վրա, ասելով, որ Թուրքիայի վրա հույս չկա և չի կարելի դնել: Ճիշտ է, ռուսական կառավարությունն էլ ունի թերություններ, որոնք վայել չեն խոշոր, ուժեղ և քաղաքակիրթ պետությանը, օրինակ, Կովկասում ազատ պետական հողերը չեն տալիս կարիքավոր հայ երկրագործներին. դա մանրություն է, որը ո՛չ արդարացում և ո՛չ էլ բավարար հիմքեր ունի ռուսական հողային չափերի պայմաններում: Բայց պետք է հուսալ, որ առաջընթացի հետ այդ թերությունները կվերացվեն: Թուրքական կառավարությունից կարելի կլիներ բարիք սպասել, եթե նա ազնվորեն խոստովաներ ապակենտրոնացման համակարգի անցնելու անհրաժեշտությունը և եվրոպացիներին հանձնարարեր կառավարման և դատարանի բոլոր կարևորագույն պաշտոնների տնօրինությունը: Սակայն, այդ հնարավորության վրա Քեչյանը ծայր աստիճան թերահավատորեն է նայում:

VII. [Նազարեթ] Տաղավարյանը առաջին գումարման օսմանյան պառլամենտի անդամ, ծագումով Սվազից, կայսրության գավառական կյանքի քաջագիտակ, դեռևս անցյալ ամառ ճանապարհորդություն էր ձեռնարկել Հայաստանում և շրջել բոլոր հայկական վիլայեթները՝ երկրի տնտեսական կյանքին և ազգաբնակչության կազմին ծանոթանալու հատուկ նպատակով: Նրա դիտարկումները ցույց են տալիս, որ կան մահմեդականացած հայերի ամբողջ շրջաններ: Նշանակալի մահմեդական գոտին Էրզրումի և Երզնկայի շուրջը, եթե ոչ համատարած, ապա էական մասով, անկասկած, հայկական ծագում ունի: Բասենի, Թորթումի, Բայբուրդի շատ վայրերում և Երզնկայի շրջակայքում բնակիչները թեև իրենց մահմեդական են անվանում և խոսում են թուրքերեն, բայց նրանց տիպը, կենցաղի շատ առանձնահատկություններ, որոշ սովորույթներ, ծեսեր մատնում են նրանց քրիստոնեական ծագումը: Մի շարք շրջաններում, օրինակ, Թորթումում նույնիսկ ավանդություն է պահպանվել քրիստոնեական բնակչության իսլամն ընդունելու ժամանակի և պայմանների մասին:

Ինչպես վերը թվարկված անձնավորությունները, որոնց մենք այցելեցինք նրանց կարծիքը հարցնելու հատուկ նպատակով, այնպես էլ գրական, քաղաքական, հասարակական մի շարք անձնավորություններ և գործիչներ, որոնց մենք հանդիպում էինք բավականին հաճախ և երկար զրուցում Կոստանդնուպոլսում մեր գտնված օրերին, ըստ էության ներծծված էին գրեթե միևնույն քաղաքական ծրագրով: Լիակատար հուսահատություն թուրքական պետականության բարեփոխվելու և որևէ բան բարեփոխելու ընդունակության վերաբերմամբ, հենարանի և հիմքի փնտրտուք

հայկական անհրաժեշտ բարեփոխումների առնչությամբ եվրոպական տերությունների կողմից Թուրքիայի վրա հարկադրական ճնշում գործադրելու և, առանձնապես, Ռուսաստանի միջամտության մեջ՝ այդպիսին են հիշյալ ծրագրերի հիմնական սկզբունքները: Ռուսասիրական միտումը՝ այնպես ավանդական կերպով ուժեղ թուրքական Հայաստանի ազգաբնակչության մեջ և նախկին ժամանակներում Կոստանդնուպոլսում հեղինակությունից զուրկ, այժմ տիրապետող տրամադրությունն է ամբողջ հայ հասարակության մեջ:

Ձայները, որոնք մատնանշում են ռուսական վարչակարգի բացասական և վտանգավոր կողմերը՝ վտանգավոր հայերի ազգային-ինքնանկախ զարգացման համար, Հայաստանի՝ Ռուսաստանի իշխանության տակ ընկնելու դեպքում, մնում են միայնության մեջ: Հավասարապես համակրանք չեն գտնում նաև որոշ շրջանների հոռետեսական հայացքները, որոնք ենթադրում են, որ ռուսական ղեկավար ոլորտներում գոյություն ունեցող, թեկուզ և ճակատագրական թյուրիմացությամբ, անբարյացակամ վերաբերմունքը հայերի նկատմամբ, հազիվ թե կարելի է ապավինել նրանց, և երկյուղ են կրում, թե չլինի հանկարծ չափն անցած հրապուրանքը ռուսական անունով առանց ծանրակշիռ երաշխիքի ռուսական կառավարության կողմից տանեն նոր աղետների, նոր արյունով ներկեն լքված երկիրը... Բայցևայնպես այդ ձայները, կրկնում ենք, աններդաշնակ չեն հնչում դեպի ռուսներին ձգտման ընդհանուր խմբերգում և ազդեցություն են թողնում հասարակական մտքի ընթացքի վրա: Ռուսասիրական քաղաքականությունն այժմ ժողովրդական քաղաքականություն է թուրքահայերի մեջ և հենց այդ պարագան են վկայակոչում և նրանում հենարան ու մխիթարանք փնտրում հայ քաղաքական գործիչները մտորումների ու կասկածների պահին: «Ներկա ժամանակներում մենք,- ասում էր մեզ դողացող ձայնով Ազգային վարչության ծերունի նախագահը (80), որ վարում ենք հայ ժողովրդի քաղաքականությունը, չափից դուրս պատասխանատու պահ ենք ապրում: Արդյո՞ք ճիշտ ճանապարհ ենք ընտրում մենք, արդյո՞ք քաղաքական սխալ չենք գործում, հետևելով այդ և ոչ թե ուրիշ գծի: Այդ հարցերին կպատասխանի ապագան... Իսկ մենք, պատասխանատու գործիչներս, կարող ենք միայն ասել, որ մեր ընտրած ուղին մատնացույց է արվել ոչ միայն սոսկ մեր սեփական նկատառումներով և իրերի դրության ըմբռնումով, այլ ամբողջ ազգային տրամադրությամբ, և եթե մենք սխալվել ենք, ապա սխալվել ենք ամբողջ հայ ազգի հետ միասին...»:

*Հունվար, 1913 թ.*
*Ս. Պետերբուրգ*

*Հավելված*

***Արևմտյան Անատոլիայի հայկական նահանգները 1912 թվականին***

| № | Ժողովուրդներ և ցեղեր | Էրզրում (Կարին) | Վան | Բիթլիս | Խարբերդ | Դիարբեքիր | Սվազ | Ընդամենը | № | № |
|---|---|---|---|---|---|---|---|---|---|---|
| 1. | Թուրքիա | 240.000 | 47.000 | 40.000 | 102.000 | 45.000 | 192.000 | 666.000 | 25,4 | 25,4 |
| 2. | Չերքեզներ | 7.000 | - | 10.000 | - | - | 45.000 | 62.000 | | |
| 3. | Պարսիկներ | 13.000 | - | - | - | - | - | 13.000 | 3,4 | 3,4 |
| 4. | Լազեր | 10.000 | - | - | - | - | - | 10.000 | | |
| 5. | Գնչուներ | - | 3.000 | - | - | - | - | 3.000 | | |
| 6. | Քրդեր (նստակյաց) | 35.000 | 32.000 | 35.000 | 75.000 | 30.000 | 35.000 | 242.000 | 9,2 | 16,3 |
| 7. | Քրդեր (քոչվոր) | 40.000 | 40.000 | 42.000 | 20.000 | 25.000 | 15.000 | 182.000 | 7,1 | |
| 8. | Ղզլբաշներ | 25.000 | | - | 8.000 | 80.000 | 27.000 | 140.000 | 5,3 | |
| 9. | Զազա-Սմրլի-Չարիկլր | 30.000 | - | 47.000 | - | - | - | 77.000 | 2,9 | 9,6 |
| 10. | Եզդիներ | 3.000 | 25.000 | 5.000 | - | 4.000 | - | 37.000 | 1,4 | |
| 11. | Հայեր | 215.000 | 185.000 | 180.000 | 168.000 | 105.000 | 165.000 | 1.018.000 | 38,9 | |
| 12. | Նեստորականներ, Հակոբիկյաններ, Խալդեր | - | 18.000 | 15.000 | 5.000 | 60.000 | 25.000 | 123.000 | 4,7 | 45,2 |
| 13. | Հույներ և այլ քրիստոնյաներ | 12.000 | - | - | - | - | 30.000 | 42.000 | 1,6 | |
| | | 630.000 | 350.000 | 382.000 | 450.000 | 296.000 | 507.000 | 2.615.000 | 100 | |

**Մահմեդականներ**
Թուրքեր ....666.000
Քրդեր........424.000 45,1%
Այլ մահմեդականներ..88.000
**Ընդամենը** ...........1.178.000

**Այլ կրոններ**
Ղզլբաշներ...............140.000
Զազա-Սմրլի-Չարիկլր..77.000
Եզդիներ....................37.000
**Ընդամենը**..................254.000

**Քրիստոնյաներ**
Հայեր.....................1.018.000
Նեստորականներ....123.000
Հույներ և այլք ...........42.000
**Ընդամենը** ................1.183.000

**Ընդհանուր թվաքանակը**
Քրիստոնյաներ ....1.183.000 = 45,2%
Մահմեդականներ...1.178.000 = 45,1%
Այլ կրոններ ............254.000 = 9,6%
**Ընդամենը** ............2.615.000

* Վիճակագրությունում տեղ չեն գտել նահանգների տարածքների այն մասերը, որտեղ հայերը կազմում են աննշան քանակություն. վիճակագրությունում:

Տեղ չեն գտել
Հաքքյարը Վանի վիլայեթից:
Բիշերեկը՝ Դիարբեքիրի վիլայեթից:

Բիթլիսի վիլայեթից հարավային շրջանները:
Մալաթիայից հարավ՝ Խարբերդի

Սվազի վիլայեթից հյուսիս-արևելյան շրջանները:

Միակը Էրզրումի վիլայեթն է, որի տարածքն ամբողջությամբ ընդգրկված է

## ԿՈՎԿԱՍԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՇՐՋԱՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Ընտրությունների մասին ընդհանուր դրույթները, որոնք մշակված և ընդունված էին Հատուկ խորհրդակցության (1) կողմից, կիրառելի են ամբողջ Կովկասյան երկրամասի նկատմամբ և դրանցից որևիցե բացառություն կամ շեղում՝ ամբողջ Կովկասի կամ դրա առանձին մասերի նկատմամբ, խոսելու որևիցե առիթ չկա: Ընտրությունների համամասնական համակարգն ապահովում է բոլոր խմբերի շահերն ու ներկայացվածությունը: Հանձնաժողովն ընդունել է, որ ընտրաշրջանները կարող են ընդունել գոյություն ունեցող վարչական բաժանումները՝ նահանգներ, մարզեր, այնպես, սակայն, որ զուտ պատգամավորներ ամեն շրջանում լինեն յոթից ոչ պակաս, այլ կերպ ասած՝ յուրաքանչյուր ընտրաշրջան պիտի ունենա առնվազն 1.400.000 բնակիչ՝ մեկ պատգամավոր 200.000 բնակչին, և ուրեմն, այն պարագային, երբ նահանգը կամ մարզը բնակչության թվով չի համապատասխանում պահանջին՝ հարկ է միացնել մեկ կամ ավելի վարչական միավոր մեկ ընտրաշրջանում:

Կովկասյան երկրամասի վարչական բաժանումը, ի բացառյալ Կուբանի և Թիֆլիսի նահանգները, բնակչության թվով չեն կարող համապատասխանել նշված պահանջներին: Ըստ այսմ անհրաժեշտ է դրանց միավորումը ընտրաշրջան կազմելու համար: Իսկ եթե Ընդհանուր ժողովում անցնի որոշ անդամների առաջարկությունն առ այն, որ պատգամավորական տեղերի թիվն ամեն շրջանում լինի հինգից ոչ պակաս, և ոչ թե յոթից, ինչպես ընդունել է Հանձնաժողովը, ապա այդ պարագային ևս նահանգների ու մարզերի միավորումը շատ ցանկալի է, նկատի ունենալով, որ երկրամասի ազգաբնակչությունը տարբեր ազգային տարրերից է կազմված, որ հաճախ ապրում են խառն՝ միևնույն տարածքում, և ընտրաշրջանը որքան մեծ լինի, այնքան ավելի ապահովված կլինի բոլոր խմբերի ներկայացվածությունը: այս տեսակետից կարող է առաջարկվել երկու նախագիծ Կովկասյան երկրամասն ընտրաշրջանների բաժանելու հարցում (2):

I. Առաջին նախագիծն ավելի պարզ է, այն՝ որ ամբողջ Կովկասյան երկրամասը բաժանվի երկու ընտրաշրջանի,

II. Երկրորդ նախագիծը... (անընթեռնելի, ջնջված է):

**I. Առաջին շրջանը կազմված կլիներ հետևյալ մարզերից.**

1) Կուբանի մարզ. 83.284 քառ. վերստ – 3.059.459 բնակիչ

2) Թերեքի մարզ. 63.655 քառ. վերստ – 1.275.697 բնակիչ
3) Դաղստանի մարզ. 26.105 քառ. վերստ - 702.237 բնակիչ

Ընդամենը՝ 173.044 քառ. վերստ – 5.037.383 բնակիչ:

**II. Երկրորդ շրջանը՝ Անդրկովկասի նահանգներն ու մարզերը.**

1) Բաքվի նահանգ 34.276 քառ. վերստ – 1.181.907 բնակիչ
2) Ելիզավետպոլի նահանգ 38.922 քառ. վերստ - 1.165.836 բնակիչ
3) Երևանի նահանգ 23.194 քառ. վերստ – 1.044.097 բնակիչ
4) Թիֆլիսի նահանգ 35.904 քառ. վերստ – 1.410.056 բնակիչ
5) Քութայիսի նահանգ 18.535 քառ. վերստ – 1.037.934 բնակիչ
6) Կարսի մարզ 16.466 քառ. վերստ – 391.213 բնակիչ
7) Բաթումի մարզ 6.129 քառ. վերստ – 191.138 բնակիչ
8) Սուխումի մարզ 5.791 քառ. վերստ – 189.907 բնակիչ
9) Զաքաթալայի մարզ 3.502 քառ. վերստ – 84.667 բնակիչ
10) Սևծովյան նահանգ 5.865 քառ. վերստ – 194.463 բնակիչ

Ընդամենը՝ 188.588 քառ. վերստ – 6.891.463 բնակիչ:

Այս տվյալներով առաջին շրջանին կհասնի 26 պատգամավոր, իսկ երկրորդին՝ 36. ընդամենը 61 պատգամավոր:

Եթե պարզվի, որ այդպես բաժանելիս կստացվեն չափազանց մեծ շրջաններ՝ համեմատած Ռուսաստանի կենտրոնական շրջանների հետ, ապա ղեկավարվելով նույն նկատառումներով՝ հիմնված պատգամավորական տեղերի՝ տարբեր ազգությունների միջև հնարավորին չափ արդարացի տեղաբաշխման հետ, կարելի կլիներ հետևյալ ընտրաշրջանների հետևյալ բաժանման.

| | | |
|---|---|---|
| I. Կուբանի մարզ | 83.284 քառ. վերստ | 3.059.459 բնակիչ |
| II. Թերեքի մարզ | 63.655 քառ. վերստ | 1.275.697 բնակիչ |
| III. 1) Դաղստանի մարզ | 26.105 քառ. վերստ | 702.237 բնակիչ |
| 2) Բաքվի նահանգ | 34.276 քառ. վերստ | 1.081.907 բնակիչ |
| 3) Զաքաթալայի մարզ (շրջան) | 3.502 քառ. վերստ | 84.657 բնակիչ |
| 4) Նուխիի և Արեշի գավառներ Ելիզավետպոլի նահանգից | 2.318 վերստ$^2$ / 3.685 վերստ$^2$ = 6.003 վերստ$^2$ | 85.684 / 167.358 = 253.222 բնակիչ |
| **Ընդամենը՝** | **69.876 քառ. վերստ** | **2.241.023 բնակիչ** |

| | | | |
|---|---|---|---|
| IV. 1) Ելիզավետպոլի նահանգ (առանց Նուխիի և Արեշի գավառների) | 32.809 քառ. վերստ | | 912.614 բնակիչ |
| 2) Երևանի նահանգ | 23.194 քառ. վերստ | | 1.044.097 բնակիչ |
| 3) Ախալքալակի և | 2.407 վերստ$^2$ | | |
| | | = 8444 վերստ$^2$ | |
| Բորչալուի գավառներ Թիֆլիսի նահանգից | 6.037 վերստ$^2$ | | 278.000 բնակիչ |
| 4) Կարսի և | 5.038 վերստ$^2$ | | |
| | | = 8.841 վերստ$^2$ | |
| Կաղզվանի շրջաններ Կարսի մարզից | 3.843 քառ. վերստ | | 256.000 բնակիչ |
| **Ընդամենը 73.325 քառ. վերստ** | | | **2.540.000 բնակիչ** |

| | | | |
|---|---|---|---|
| IV. 1) Թիֆլիսի նահանգ (առանց Ախալքալակի և Բորչալուի գավառների) | 27.861 քառ. վերստ | | 1.130.000 բնակիչ |
| 2) Քութայիսի նահանգ | 18.535 քառ. վերստ | | 1.037.934 բնակիչ |
| 3) Բաթումի մարզ | 6.129 քառ. վերստ | | 191.138 բնակիչ |
| 4) Սուխումի շրջան | 5.791. քառ. վերստ | | 189.907 բնակիչ |
| 5) Օլթիի և | 4.917 վերստ$^2$ | | |
| | | = 7538 վերստ$^2$ | 144.107 բնակիչ |
| Արդահանի շրջաններ Կարսի մարզից | 2.621 վերստ$^2$ | | |
| 6) Սևծովյան նահանգ | 5.865 քառ. վերստ | | 194.463 բնակիչ |
| Առանց Սևծովյան նահանգի | | | |
| **Ընդամենը՝** | **71.683 քառ վերստ** | | **2.692.128 բնակիչ** |
| | Սևծովյան նահանգով հանդերձ 77.748 քառ. վերստ | | 2.887.591 բնակիչ |

## ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՐՑԸ ԵՎ ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԾՐԱԳՐԵՐԸ

Գերմանիայի հետ հաշտության պայմանագրի վավերացմամբ (1) Հայկական հարցը կարծես թե դուրս է սպրդում Ռուսաստանի ձեռքից: Բայց սխալ կլիներ կարծել, թե այն հանվում է օրակարգից. այն նոր փուլ է մտնում:

Ռուսաստանը, անդամալուծված ակտիվ գործունեության համար, թեկուզև ժամանակավորապես, իջնում է համաշխարհային քաղաքականության թատերաբեմից, իջնում է պատմության ամենաասուր և պատասխանատու պահին, դրանով իսկ նա հեռանում է Առաջավոր Ասիայի հարցերով տերությունների կոնցերտից, որտեղ դեռևս ոչ վաղ նրա ձայնը հնչում էր այնքան ազդեցիկ:

Ռուսաստանի համար Հայկական հարցն այն լծակն էր, որի վրա հենվելով նա կարող էր իր համար հարմար պահին միջամտել Թուրքիայի շուրջ շահերի և մրցակցության մեծ տերությունների խաղին: Հետապնդելով իր նպատակները, Ռուսաստանն անընդհատ դուրս եկավ մշակելու և յուրացնելու որոշակի փոքրիշատե կայուն հայեցակետ պատմության կողմից նրան վստահված հարցի վերաբերյալ, ընդ որում այնպիսի հայեցակետ, որը զուգակցեր կայսրության շահերը հայ ժողովրդի բաղձանքների հետ, դրանով իսկ նախապատրաստելով հարցի լուծումը նրա զարգացման պատմական հունի մեջ: Մինչդեռ բոլսեական հովերը, արտաքին քաղաքականության ղեկավարների տրամադրությունները ու անձնական հայացքները վճռական նշանակություն էին ունենում մի հարցում, որն իր նշանակությամբ պահանջում էր լայն մտահորիզոն՝ կայուն հիմքի վրա դրվելու և լուծվելու համար: Նման պայմաններում Ռուսաստանից դժվար էր սպասել Հայկական դատի հայցած լուծումը: Հայկական հարցի ռուսական ըմբռնողության և մեկնաբանության մեջ բացակայում էր ամենաէականը, այն է՝ նրա կարևորության գիտակցությունը. և դրա համար էլ հասկանալի է, որ հարկ եղած պահին նա կարող էր նաև հրաժարվել դրանից: Եվ այդպես էլ պատահեց, ճիշտ է, Ռուսաստանի ապրած ողբերգական ճգնաժամի կապակցությամբ, բայց, ըստ էության, դա կարող էր պատահել և անկախ տվյալ իրադրությունից:

Ռուսաստանը բարեփոխումներ վերապահեց Հայաստանի համար 1878 թ., բայց չպնդեց դրանց անցկացման վրա (2): Բեռլինյան հոդվածները (3) հայերի ենթադրյալ պաշտպան Ռուսաստանի անտարբերության հետևանքով վերածվեցին նոր աղետների աղբյուրի: Թուրքերը, հիրավի ծաղրելով Եվրոպայի ձեռնարկը, յուրովի բարեփոխումներ մուծեցին՝ նրանք բարեփոխում էին ավարառություններն ու վայրագությունները. կազմեցին քրդական գնդեր (4) ու տեղակայեցին դրանք հայկական կենտրոններում՝ հայերի կյանքի ու ունեցվածքի պահպանության համար... Ռուսները չէին բողոքում: Զինվորական գործակալները շատ ուղերձներ նվիրեցին թուրքական այդ «կազակությանը» և հանդարտվեցին, երբ համոզվեցին, որ այն, իբրև մարտական ուժ, վտանգավոր չէ Ռուսաստանի համար:

Բայց որ հայկական արյունը հեղվում էր անչափ ու անդադար, և ժամանակ առ ժամանակ բոցավառվում էին արյունալի հրդեհներ, ինչպես 1894 թ., այդ մասին նույն գործակալները քիչ էին հոգ տանում:

Արաքսի այն կողմում գտնվող իրենց ազգակիցներին օգնելու ռուսահայերի փորձերը ոչ միայն համակրանք չէին գտնում ռուսական կառավարության կողմից, այլև ճնշվում էին անհասկանալի դաժանությամբ: Թուրքիայում տեղի ունեցող հայկական ելույթներում ռուսները տեսնում էին, ամենից առաջ, հեղափոխական գործողություններ և իրենց պարտքն էին համարում ճնշել դրանք: Վերջին քառասուն տարիների ընթացքում ձգվում էր հայ գաղթականների անվերջ շարանը, որոնք լքում են իրենց հայրենի օջախները, որպեսզի փրկություն գտնեն օտար երկինքների տակ: Նրանց հողերը, տները և ամբողջ ունեցվածքը թուրքական իշխանությունների աջակցությամբ, բաժին էին ընկնում քրդերին ու թուրքերին, որոնք հայերի տեղահանումը և արտաքսումը դիտում էին իբրև արմատական միջոց աստիճանաբար վերածելու Հայաստանը Քրդստանի և այդպիսով ձերբազատվելու Հայկական հարցից:

Ռուսական հյուպատոսներն ու զինվորական գործակալները, խաղաղ դիտորդների դերում, լռում էին և իրենց գաղտնի ուղերձներում արձանագրում Հայաստանը Քրդստանի վերածման, հայերի համար այնքան ողբալի, գործընթացը՝ օբյեկտիվությամբ, որն արժանի էր ավելի լավ կիրառման: Իսկ երբ առաջ էր քաշվում հայկական բարեփոխումների հարցը, նրանք պատրաստ էին հավաստելու թուրքական իշխանությունների հայտարարությունը, որ հայկական վիլայեթներում հայերը կազմում են բնակչության աննշան տոկոսը:

Պատերազմի նախօրյակին ռուսական դիվանագիտությունը քավեց իր նախկին մեղքերը, առաջին անգամ հանդես գալով Հայկական հարցում

անսասան, առանց ավանդական երերումների ու տատանումների և խոսեց այնպիսի՝ ձայնով, որ արժանի էր մի ազգի, որը պաշտպանում էր ինքնամոռաց կերպով իրեն նվիրված ժողովրդի իրավունքները:

Ճայթեց համաշխարհային պատերազմը: Հայերը դարձյալ՝ կարծես կախարդող եղան դեպի Ռուսաստանն իրենց ձգտման ու համակրանքի համար: Պատերազմի մեջ ներքաշված Թուրքիան, ի հատուցումն Հայկական հարցում ռուսական դիվանագիտության հաջողությունների, որն արտահայտվեց 1914 թ. հունվարի 26-ին ազգությունների համաձայնությամբ Հայաստանում տեսուչների նշանակմամբ (5), այնպիսի հալածանք սկսեց հայերի դեմ, որ ստիպեց մոռանալ նախկինում դարերով նրանց բաժին ընկած սարսափները: Հայ ազգաբնակչությունը հայկական նահանգների սահմաններում և ամբողջ Փոքր Ասիայում մասամբ կոտորվեց, մասամբ էլ բռնի տեղահանվեց և քշվեց Սիրիայի ու Միջագետքի անապատները՝ քողնված բախտի քմահաճույքին, որտեղ նա այսօր էլ տանջվում է ֆիզիկական զրկանքներից և բարոյական տառապանքներից:

Ռուսական զորքերն, անկասկած, կկարողանային նվազեցնել ժողովրդի աղետները, բայց ցավոք սրտի, զենքի հաջողությունը զուգընթաց փոխվում էր ռուսական իշխանությունների վերաբերմունքը հայերի ու Հայաստանի նկատմամբ: Դանդաղ առաջխաղացումներով և արագ նահանջներով (6) նրանք սոսկ ծայրահեղության հասցրին երկրի ավերածությունը: Իսկ երբ, վերջապես, պետք եղավ առանց մեծ ջանքերի գրավել Հայաստանի նշանակալի մասը, ապա ռուսական իշխանությունները հայության ներկայացուցիչների նկատմամբ սկսեցին այնպիսի քաղաքականություն վարել, որը ոչ միայն չէր համապատասխանում հայ ժողովրդի դարավոր բաղձանքներին, այլև ոչնչով չէր տարբերվում թուրքական վարչակարգից և թուրքական իրավարարությունից: Հայ գյուղացիությունը ազատված էր մնացել «քրիստոնեական մեծ ցարի» մարմինների գործողություններից, որի համար դարեր շարունակ աղոթել էր (7): Բայց չէ՞ որ դժվար չէր հասկանալ, որ մի երկիր, որը ենթարկվել է պատերազմի սարսափներին ավելի մեծ չափով, քան Սերբիան ու Բելգիան, արժանի էր այլ բախտի, այլ վերաբերմունքի:

Ռուսաստանը ուշքի եկավ, վերջապես, բայց, ավա՜ղ, ապաժամ՝ ուշքի եկավ սոսկ իր մեծ ազգության կյանքի վերջալույսի ժամին: Հայերը լսեցին երկար սպասված ձայնը, որը պետք է հնչեր Թուրքիայի սահմանի վրա քնդանոթների որոտմունքի հետ միաժամանակ:

Խորհրդային իշխանության հռովարտակը հայերի ինքնորոշման մասին (8) կարող էր հայերի մոտ միայն թեթևացման հառաչանք առաջ բերել, քանզի նրանց կարծիքով այն բացառապես բարոյական կարգի ակտ էր,

զրկված ամեն մի քաղաքական նշանակությունից: Հայերի ճակատագրի հրովարտակային որոշման սահմանման առթիվ նրանց սրտերում խան-[illegible]
լավ գիտեին, քան հրովարտակների հեղինակները, որ ներկա իրադրության մեջ քաղաքական հարցերը լուծվում են ոչ թե բարի, բայց անզոր կամեցողությամբ, այլ միայն մարտադաշտում երկաթյա ձեռքի ճնշմամբ: Հրատարակել հրովարտակ և միևնույն ժամանակ ետ կանչել զորքերը ռազմաճակատից, նշանակում է մի ձեռքով տալ, մյուսով՝ խլել ետ: Հրովարտակը - դա վերջին և խղճուկ ողորմությունն է աղքատին, որպեսզի օձիքն ազատես նրանից:

Եվ ահա միայնակ, առանց որևէ տեղից օգնության, իր մեծ հովանավորից ստացած թղթի պատառիկը ձեռքներին, հայերը ծանր մտածմունքի մեջ կանգնած են թշնամու իրենց գլխին ահեղաբար բարձրացված սրի տակ: Իսկ ո՞ւր ուղղել քայլերն իրենց շրջապատող անհույս խավարում:

Զուր անցան դարավոր ճիգերը, հզոր հարևանի վրա դրված հույսերը: Հայկական հարցը վերստին վերադառնում է նախասկզբնական վիճակին, հայերը վերստին կոտրած տաշտակի առջև են: Փաղիշահի կայսրությունը, որը դեռևս երեկ դողում էր ահեղ ցարի առջև, իր ննխած դիակի մեջ ներշնչելով փոխառած ոգի, ծաղր ու ծանակի է ենթարկում նոր Ռուսաստանը և նրա ազատագրական պոռթկումները:

Այն ժամանակ, երբ համաշխարհային դեմոկրատիան պետական գործիչների ճառերում և սոցիալիստական կազմակերպությունների բանաձևերում պահանջում է Թուրքիայի հրաժարումը Հայաստանից (9), Թուրքիան ոչ միայն մտադիր չէ հրաժարվել իր ձեռքից զենքի ուժով խլված Հայաստանից, այլև դեռ հավակնում է մարզերի բռնակցման, որոնք վաղուց են նրանից պոկվել՝ Կարսի, Արդահանի, Բաթումի: Մի պետություն, որը հազիվ է շնչում փլուզման շեմին և կանգուն է մնում միայն շնորհիվ տերությունների մրցակցության, այլև անշունչ մարմինը հանկարծ խղճուկ օբյեկտից դառնում է զավթողական քաղաքականության հավակնող սուբյեկտ:

Թուրքիայի նոր կեցվածքը չի կարող արդարացվել նրա ֆիզիկական ուժով, քանզի այն ջախջախված է բոլոր ռազմաճակատներում, ոչ էլ բուրքական մշակույթի առավելությունների մասին կշռադատումներով, որն ամբողջ աշխարհին է հայտնի: Նրան թևավորում են բացառապես հաղթական զինակցի զենքը, Գերմանիայի վրա դրված հաշվարկները: Դա երևում է այն փաստարկումից, որով փորձում են հիմնավորել հիշյալ օկրուգների գչլումը, փաստարկումից, որն ուսանելի է տվյալ պահի համար և, առանձնապես, ռուսական գործիչների համար:

Մեզ ասում են, որ «Կոստանդնուպոլսից և այլ մարզերից Բեռլին են քափանցել տեղական մահմեդական ազգաբնակչության օգնության համար աղերսալի խնդրանքներ՝ ընդդեմ ներկա գործողությունների, որին նա ենթարկվել է ռուսական կամ իրենց այդպիսին ներկայացնող զինվորական մասերի կողմից: Այդ բնակչությունը հաստատակամորեն խնդրել է թուրքական և Բեռլինի կառավարություններից, որպեսզի նրան հնարավորություն ընձեռվի նորից միանալու Թուրքիային» (10): Եվ ահա, ի կատարումն բնակչության կամքի, անհրաժեշտ է համարվում, որպեսզի «հիշյալ օկրուգները մաքրվեն ռուսական զորքերից և բնակչությանը հնարավորություն ընձեռվի, համաձայն ռուսական կառավարության կողմից հայտարարված ինքնորոշման սկզբունքի, անձամբ արտահայտվել իր ապագա ճակատագրի կապակցությամբ», ընդ որում համաձայնությամբ հարևան պետությունների (*), «մանավանդ Թուրքիայի հետ» (11):

Դիմումը ինքնորոշման իրավունքին խրատական է, կրկնում ենք, իբրև վառ օրինակ այն բանի, թե ինչպիսի չարիք կարելի է գործել ամենաազնիվ սկզբունքներից:

Բանը, իհարկե, նրանում չէ, որ հիշյալ օկրուգների մահմեդականների զանգատները ավելի շուտ հորինված են Կոստանդնուպոլսում, քանզի ո՞ւմ հայտնի չէ, որ ռուսական իշխանությանը ամեն ինչում կարելի է կասկածել, միայն թե ոչ մահմեդականների նկատմամբ վատ վերաբերմունքի մեջ, ոչ միայն ռուսահպատակ, այլև թուրքահպատակ: Կովկասյան ռազմաճակատի ռուս գեներալների վերջերս հղած կոչերը գրավված մարզերից հեռացող թուրքերին, անմեղ հայերի ցուցադրական զնդակահարությունները ի հեճուկս թուրքերի ինքնըստինքյան բավարար են այն բանի համար, որպեսզի այդ առումով համոզվեն անգամ Կոստանդնուպոլսում և Բեռլինում:

Մենք մի կողմ ենք թողնում նաև այն հարցը, որ խլվող օկրուգներում թուրքերն ամենևին էլ չեն կազմում քանակապես այնպիսի ուժեղ տարր, որպեսզի ինքնորոշման արդյունքները հօգուտ Թուրքիայի համարվեն նախապես լուծված, ինչպես որ ենթադրում են թուրքական դիվանագետները: Ըստ 1897 թ. ընդհանուր մարդահամարի՝ միակ հուսալի վիճակագրության, Կարսի օկրուգում բնակչությունը կազմում է 134.142 մարդ, որոնցից 20.376 ռուսներ, 14.805 հույներ, 46.715 հայեր, 46.870 մահմեդականներ (մեծ մասամբ քրդեր) (12): Նշանակում է, մահմեդականները կազմում են սոսկ բնակչության մեկ երրորդը: Բաթումի մարզում բնակչության գլխավոր խավը՝ հարյուր հազար աջարացիներ են, նրանք, ճիշտ է, կրոնով մահմեդականներ են, բայց լեզվով ու ծագմամբ՝ վրացիներ: Հազիվ թե հիմք կա նրանց վզին թուրքական կողմնորոշում փաթաթելու:

Բայց այդ ամենը կարևոր չէ: Մենք սկզբունքորեն պատրաստ ենք ողջունելու ինքնորոշման իրավունքի կիրառումը նույնիսկ այդ մարզերում, կիրառում, իհարկե, ոչ «Թուրքիայի հետ համաձայնեցված», այլ առանց որևէ արտաքին ճնշման: Բայց ինչո՞ւ նրանք, ովքեր մտահոգում են Բաթումի ջրերին և Կարսի ամրություններին ինքնորոշման սկզբունքով, մոռանում են այդ ազնիվ զենքը Վանի, Էրզրումի արյունոտված պատերի վերաբերմամբ, Հայաստանի այն մարզերի վերաբերմամբ, որոնք թուրքերը դիվանագիտական լեզվով անվանում են «արևելաանատոլիական» և որոնց մաքրումը պահանջվում է ռուսական իշխանություններից:

Թվում է, դա պարապ հարց չէ: Երբ Բաթումի մահմեդականների աղերսանքները միայն հիմա են թափանցում Բեռլին, ապա թուրքական իրավազրկությունից հայերի ողբն ու հեծեծանքը հնչել և հնչում են ոչ միայն Բեռլինում, այլ ամբողջ աշխարհով մեկ: Երբ խոսքը, հիրավի, սկզբունքների մասին է գնում, ապա ինչպե՞ս Բեռլինն այնքան զգայուն դուրս եկավ մի բուռ մահմեդականների րոպեական ցանցառների նկատմամբ, որոնք Ռուսաստանում առավել բարեկեցիկ են, քան նրանց ազգակիցները Թուրքիայում, և միևնույն ժամանակ խուլ է մնում դարավոր դատով մի ամբողջ ժողովրդի հոգեվարքի նկատմամբ, դատ, որի արդարացիությունը շատ ուրիշ երկրների թվում ճանաչվել է և Գերմանիայի կողմից:

Գերմանական կանցլեր կոմս Հերթլինգը (13) փետրվարի 25-ին ռայխստագում արտասանած ճառում պնդում էր, որ Գերմանիան ընդունում է Համաձայնության տերությունների կողմից վեհացված սկզբունքը, որ «բոլոր հստակ արտահայտված ազգային հավակնությունները պետք է ստանան հնարավորին չափ լիակատար բավարարում, առանց ստեղծելու թշնամության նոր տարրեր»:

Այդ հայտարարությունը չի համապատասխանում գերմանական քաղաքականությանը կովկասյան ռազմաճակատում: Թվում է, որ հայ ժողովրդի հավակնություններն արտահայտված են առավել քան հստակ, արտահայտված են ոչ այսօր և ոչ երեկ: Դարեր շարունակ հայերը կոչ են անում քաղաքակիրթ աշխարհին, դարեր շարունակ գոչում են Թուրքիայում իրենց կեցության բանտային պայմանների մասին: Բոլոր ժողովուրդները, ովքեր մինչև թուրքերի տիրակալությունն ապրել էին այլ և սեփական մշակույթի առավել իրավական իրադրության մեջ, վաղուց դուրս են պրծել թուրքական դժոխքից: Սոսկ հայ ժողովուրդը, չնայած այն բանին, որ նա բոլորից վաղ արտնջյուն բարձրացրեց, շարունակում է մինչև հիմա հալումաշ լինել անտանելի ճնշման ծանրության տակ:

Ոչ մի պատմական հիմնահարց այնքան ողբերգական ճակատագիր չի ունեցել, որքան Հայկական հարցը: Տերությունները, պատելով Թուրքիային, ինչպես ագռավների երամը քայքայվող դիակի շուրջը, ծարավի գավթումների, յուրովի էին հաշվի նստում հայկական վշտի հետ: Նրանք բոլորը՝ Ֆրանսիան, Անգլիան, Ռուսաստանը, Գերմանիան, և յուրաքանչյուրն իր հերթին, հայտնվում էին հայկական երկնակամարում ինչ-որ չար ոգու տխուր ստվերի պես, որը խոստումներով հրապուրում էր հայերին համարձակ հույսերի քաղձունքները նրա համար, որպեսզի հետո նրանց այնտեղից զահավիժեցնի հուսահատության ու կործանման հորձանուտը: Այդ տերություններից յուրաքանչյուրը պաշտպան էր կանգնում հայերին, երբեմն նաև անկեղծորեն, բայց արդյունքում յուրաքանչյուրն ակամա արցունքների հերթական բաժինն էր քամում նրանց աչքերից, բաց էր թողնում արյան հերթական շիթը...

Ֆրանսիան, նոր ժամանակների ազատության մայրը, իր հզորության դարաշրջանում իրեն այնպես էր պահում Թուրքիայում, որ հայերը երբեմն ստիպված էին պաշտպանվել նրանից: 1878 թ. Հայաստանը կազատագրվեր, եթե չլիներ Անգլիայի հոգատարությունը Օսմանյան կայսրության ամբողջականության մասին: 1894 թ. իր քաղաքականությամբ հայկական գործը կործանեց ռուսը՝ իշխան Լոբանով-Ռոստովսկին (14):

Վերջապես, այժմ, երբ համաշխարհային գոտեմարտի հողմի մեջ ծնունդ են առել ճնշված ժողովուրդների ճակատագրի կառուցման նոր սկզբունքներ, ինքնորոշման սկզբունքը, որը հնարավորություն կընձեռեր հայերին դուրս գալ իր գոյության լաբիրինթոսից անկաշկանդ ձեռքերով դասավորելու սեփական ճակատագիրը, այդ ժամանակ այդ լաբիրինթոսի մուտքի մոտ մենք գտնում ենք Գերմանիային:

Մի՞թե Հայկական հարցին բախտ է վիճակվել վերստին լովել, մնալ հերթական թրի վրա, այս անգամ՝ Գերմանիայի թրի: Իսկ ո՞ւր է արդարությունը, որի մասին գերմանական կանցլերն ասում էր որպես համաշխարհային կարգի պատշաճ հիմքի: Ինչո՞ւ են հայերին մերժում ինքնորոշման իրավունքը, որը ճանաչվում է, համենայն դեպս խոսքով, նույն կանցլերի կողմից իբրև ազգամիջյան հարաբերությունների նոր կարգավորիչ:

Հայերի ինքնորոշումը, որքանով որ այն վերաբերում է Թուրքիայի հետ համակեցության անհնարինությանը, վաղուց է կատարվել: Դրա վկան են արյունաշաղ Հայաստանը՝ կանանց ու երեխաների համատարած դիակներով, կենդանի մնացածների փախստականական շարանը, Միջագետքի ավազուտներում կործանվողների հառաչանքները և նահատակվածների

ուրվականները, որոնք աղաղակում են առ երկինք, դիմում մարդկության խղճին: Եվ այդպես, հանուն ինչի՞ է Գերմանիան սպառնում հայերին նորից քշել լաբիրինթոս, մի նոր մեխ գամելու նրանց դագաղին:

Գերմանիայի առջև համաեվրոպական դիվանագիտական սեղանի վրա դրված է հայկական ազատության վաղեմությունից խունացած խարտիան: Այդ խարտիայի տակ կա նաև Գերմանիայի ստորագրությունը: Խարտիան իր մեջ այլ բան չի պարունակում, քան առնվազն արքուն խղճի պատվիրաններ: Հանուն այդ պատվիրանների Գերմանիան, մեծ մշակույթի ստեղծողը, պետք է սանձահարի կապը կտրած իր դաշնակցին, պետք է պաշտպան կանգնի արդարությանը: Կռվում Թուրքիայի կորցրած հայկական նահանգները՝ հարյուր հազարավոր զոհերի գնով, նրան վերադարձնելու պահանջը և նոր հողեր բռնի պոկելու ծարավը, որպեսզի ընդլայնի կամայականության ու իրավազրկության տարածքը, իբրև մարտահրավեր և անարգ ծաղր ամեն կողմից քափվող հայկական արցունքներին, պետք է մերժվեն:

Պատմության իսկությունը, որը պետք է երբևէ վրա հասնի, չի կարողանա ներել Գերմանական կայսրությանը, որ նա տարավ թուրքական հրոսակները անպաշտպան երկրի վրա, որը դեռևս ծխում է նահատակների արյամբ:

Գերմանիայի բոլոր հաղթանակների վիճակը՝ անարգանք է, եթե նա կանգնի մի փոքր ժողովրդից վրիժառու լինելու ուղու վրա այն բանի համար, որ իր գոյության համար մղած պայքարում նա հայտնվեց նրա հակառակորդների ճամբարում: Համաշխարհային չափանիշի վիթխարի նվաճումների համար կոալիցիաների մրցակցության մեջ պատասխանատվության և հաշվեհարդարի կանչելու մի փոքր ժողովրդի՝ նշանակում է կատարել մեծագույն հանցագործություն: Եվ եթե պատասխանելու համար բա՞ն լինեն: Պատերազմի հորձանուտի մեջ ներքաշված բոլոր ժողովուրդներից միմիայն հայ ժողովուրդն է մարտնչում հանուն այն բանի, ինչը որ մարդու տարրական իրավունքն է՝ բառիս տառացի իմաստով հանուն ֆիզիկական գոյության: Եվ մարտնչում է նա, ունենալով դրա համար բոլոր հիմքերը: Թուրքիայի իշխանության ներքո գտնված ժողովուրդներից և ոչ մեկը չի ծախսել այնքան ուժ, որքան հայերը, չի տվել այնքան զոհեր, որքան հայերը՝ ձգտելով ստեղծել փոքրիշատե տանելի modus vivendi (15), գտնելու Թուրքիայի հետ խաղաղ համակեցության ընդունելի հիմք:

Բոլոր միջոցները սպառված են: Ե՛վ արմատական բարեփոխումներով ամբողջ պետական մեխանիզմն առողջացնելու ուղին, և՛ հայկական վիլայեթների մասնակի վերափոխումը՝ ամեն ինչ անհաջող դուրս եկավ:

Մնում է միայն հեռանալ թուրքական լճափոսից ինքնորոշման ցանկացած ձևով:

Ճիշտ հասկացված Հայկական հարցը ոչ ոքի և ոչնչով խոչընդոտ չէ: Հայերի իսկ տված հարցադրումով, այն զուգակցվում է մրցակցող տերությունների ցանկացածի շահերի հետ, որքանով որ այդ շահերն ամենից առաջ պահանջում են Հայաստանում ներածել իրավական կարգ՝ ամեն մի հասարակական կյանքի հիմքը:

Այս կամ այն կողմ շեղումով քաղաքական վերնաշենքը հերքական հարց չէ, որ կարող է տագնապեցնել հայերին: Նրանք իրենց հայացքը հառել էին Ռուսաստանի վրա, ոչ թե հանդեպ հյուսիսի իրենց ճակատագրական հակման կամ հոգիների միստիկական ազգակցության պատճառով: Ռուսական լույսը եղել և մնում է միակ կանթեղը, որը միայնակ կայծկլտում է հայերին շրջապատող մահմեդական գիշերվա մեջ: Եթե վրա հասնի մի երջանիկ օր, երբ մի նոր լույս բացվի եվրոպական մշակույթի հաղթական երթով հարավից, Սիրիայի և Միջագետքի կողմից, ի դեմս արևմտյան պետություններին, ապա Հայաստանը, բնական է, կդադարի շուրջբոլորը նայել օգնության աղերսանքով, այլ իր ամբողջ եռանդը կկենտրոնացնի իր վրա, իր վերքերի բուժման վրա, իր ավերակների վերականգնման վրա:

Աղքատ ու խավար Հայաստանի համար մեծ պերճանք կլիներ վիճաբանությունը եվրոպական մշակույթների համեմատական առավելությունների մասին: Նրա համար, որ թփրտում է ջղաձգությունների մեջ, միանման փրկարար է ցանկացած մշակութային խնամք, որը կպահովի հաստատուն կարգ ու կանոն՝ ռուսական կլինի, անգլիական, ֆրանսիական, թե գերմանական:

Պատմականորեն դասավորված և դրա համար էլ շատ ճիշտ ռուսական կողմնորոշումը չհանգեցրեց Հայկական հարցի լուծմանը: Գերմանական հաղթանակները ստիպեցին Ռուսաստանին հրաժարվել Հայաստանից և սպառնում է շուտ տալ ավանդական հեռանկարները ոչ միայն Հայաստանի, այլև ամբողջ Անդրկովկասի ճակատագրի նկատմամբ:

Հայերի համար օրվա տագնապն է՝ ի՞նչ է խոստանում Հայաստանի վրա շողացող նոր թուրը:

Գերմանիան, ինչպես և Թուրքիայով շահագրգռված մյուս եվրոպական տերությունները, դիտում էին Հայաստանը և Հայկական հարցը ինչպես մի ավելորդ կշռաքար ռուսական կշեռքի թաթի վրա: Այստեղից էլ բխում էին անտարբերությունը և հակազդեցությունը հայկական բարենորոգումների գործի նկատմամբ, թեկուզև կրավորական, որն առանձնապես դրսևորվեց վերջերս 1914 թ. հունվարի 26-ի համաձայնագրի կապակցությամբ:

Եվրոպացիների կասկածը հայերի անշեղ ռուսասիրական միտումների վերաբերյալ՝ լիակատար հիմք ունի: Իբրև քաղաքական երևույթ, հայերի հակումը հանդեպ Ռուսաստանի՝ փաստ է, որը կասկածի ենթակա չէ: Բայց այստեղից ամենևին էլ չի հետևում, որ այդ հակումը կարող է դրվել Հայաստանի զարգացման հիմքում, կամ որ այն կարող է ճանաչվել իբրև գործոն, որը կանխորոշում է Հայաստանի մշտական պտույտը ռուսական ազդեցության ուղեծրում: Հայաստանի զարգացման ուղիներն ամենից ավելի քիչ են կախված հայերի կամքից, որքան էլ որ ուժեղ կաշկանդված լինի այն: Յուրաքանչյուր երկիր իր հետագա զարգացման թելերն ամենից առաջ իր մեջ է պարունակում՝ իր ի բնե տրված կառուցվածքի մեջ, աշխարհագրական միջավայրի օբյեկտիվ պայմաններում:

Հայաստանն իր բնական կառուցվածքով շրջված է դեպի հարավ, լեռնագրական առումով՝ դեպի հարավ թեքված լեռնային տանիք է, ուր կոհակում են նրա ջրերը՝ երկրի կենսատու նյարդերը: Որ Հայկական լեռնաշխարհը հակվում է դեպի հարավ, դեպի Միջերկրական ծով՝ փաստ է, ապացուցված պատմության կողմից, որը կերտեց Հայկական Կիլիկիան:

Ինչպես էլ որ դասավորվի Հայաստանի ճակատագիրը, անկասկած է, որ վերջին հաշվով նա կդառնա այն պետական ազդեցության ստացվածքը, որը նրան կընդգրկի հարավից: Ռուս հայրենասերը, կամենալով պահպանել Հայաստանը ռուսական պետականության ազդեցության ոլորտում, լիովին իրավացիորեն պետք է պայքարի հանուն նրա մեկուսացման Միջերկրական ծովի ափերից, հայրենական ազդեցությունն այդքան հեռու տարածելու անհնարինության պայմաններում, առանց Ալեքսանդրետի մոտ մրցակիցների հետ բախվելու վտանգի:

Կյանքի և զարգացման կանոնավոր պայմանների մեջ դրված ազատ Հայաստանը կհակվի իր քաղաքական և այլ ձգտումներով դեպի այն կողմ, ուր կտանի նրան երկրի տնտեսական ձգտումը՝ երկրի ֆիզիկական, հայերի կամքից կախում չունեցող, իջվածքով դեպի հարավ: Բաղդադի ճանապարհի (16) ճյուղավորումով դեպի Հայկական բարձրավանդակի կողմը, երկրի ճակատագիրը բոլոր առումներով ու դրսևորումներով կկարգավորվի այդ ուղու հետ կապված ու նրանից անմիջականորեն կախված ուղին, որը պարտավոր է դառնալ ամբողջ Առաջավոր Ասիայի տնտեսական կյանքի գլխավոր զարկերակը:

Թե ում բաժին կընկնի Թուրքիայի անծայրածիր հարավը Միջերկրական ծովից մինչև Պարսից ծոց՝ դրա պատասխանը կտա հավակնորդների նման չունեցող մրցակցության ելքը: Իսկ առայժմ Գերմանիան է հիմնավորվում թուրքական տիրույթներում, Բոսֆորից մինչև Անդրկովկաս, տան-

տիրոջ լիակատար իրավունքով: Նման շահավետ դրության մեջ դեռ չի գտնվել ոչ մի տերություն նրանց թվից, որոնք ընդունում էին օսմաններ պետական ապարատի արմատական վերափոխման անհրաժեշտությունը: Ի՞նչ ծրագրեր է թաքցնում իր մեջ գերմանական քաղաքականությունն իր այդքան հարուստ ավարի վերաբերմամբ: Դրանից է կախված Հայաստանի ճակատագիրը:

Օդեսայի գրավմամբ (17) և Ռոստովի ուղղությամբ հետագա առաջխաղացման փորձերի առումով, Բաթումի օտարման պահանջը նոր լույսի տակ է ներկայանում, որը վկայում է դրա և ավելի շատ գերմանական, քան թուրքական ծագման մասին: Գերմանիան առայժմ ջանում է ավարտել Ռուսաստանի մեկուսացումը ծովերից, տվյալ դեպքում, Սև ծովից: Գերմանիայի լայնորեն մտածված նվաճողական մտադրությունները չեն կարող կանգ առնել ստեղծելու իր տեսակի մեջ երկրորդ Բաղդադի երկաթուղի, բացել նրան զուգահեռ հաղորդակցության ուղի Բեռլինից Օդեսա, Բաթում, Բաքու և ավելի հեռու... Հնդկաստանի նկատմամբ սպառնալիքով: Այդ ծրագիրն առավել ևս հավանական է նրանով, որ նոր գիծը կարող կլիներ փոխարինել Բաղդադի գիծը այն դեպքում, եթե Անգլիայի և Ֆրանսիայի հաստատվելով Թուրքիայի Սիրիա-միջագետքյան հարավում փլուզվեն Բաղդադի երկաթուղու գերմանական հաշվարկները:

Ըրջահայաց Գերմանիան, անկասկած, ունի ոչ միայն Հայաստանի, այլև Հայաստանի հետ նրա ձեռքն ընկնող, նրա տնօրինության տակ անցնող բոլոր տարածքների կազմակերպման պատրաստի նախագիծ:

Թե ո՞րն է այդ նախագծի էությունը, գերմանական դիվանագիտությունը առայժմ չի հաղորդում: Նրա էության մասին որոշ պատկերացում կարելի է կազմել ըստ հետևյալ գրքույկի, որը լույս է տեսել Ցյուրիխում 1916 թ. գերմանական պրոպագանդի, այսպես կոչված «Orient Publishing Company»-ի հրատարակությունների մատենաշարով:

Գրքույկը վերնագրված է «Վրաստանը և պատերազմը» (Georgia and War, by* *): Հեղինակը հանդես է գալիս իբրև վրացի, եթե դա միայն նա կեղծ դեմք չէ, ապա, հավանաբար, պատկանում է նրանց թվին, ովքեր դեռևս չեն հասունացել մինչև բարիդրացիական հարաբերությունների հիմքերի ըմբռնման ու հարգանքի և քաղաքական մտքի հայտնի ազնվության:

Այդ երկասիրության (18) մեջ կանխագործված է Կարսի բռնի անջատումը, մի պարագա, որը մատնանշում է գերմանական սաղրանքը, իբրև աղբյուր: Դրա հետևանքով գրքույկը ձեռք է բերում որոշ քաղաքական նշանակություն, որն արժանի է ուշադրության հենց հիմա, երբ խաղաքարտի վրա է դրված Կովկասի ճակատագիրը:

Հեղինակի դատողությունների ելակետ է ծառայում Վրաստանի դրությունը ռուսական տիրապետության ներքո: Վրաց ժողովուրդը խաբված է և ճզմված ռուսական կառավարության կողմից: 1783 թ. համաձայնագիրը (19) վրացիների հիշողության մեջ է: Իրադարձությունները, որոնք հանգեցրին Վրաստանի ազատագրությանը մահմեդական լծից, որքանով որ նրանում մեղավոր են վրացիներն իրենք, հեղինակը պատրաստ է մոռացության տալ՝ իր նախնիների քաղաքական սխալի գիտակցումով: Վրաց ժողովուրդը մնացել է հինը, և այն ոչ մի դեպքում չի կարող խոչընդոտ դառնալ պարսիկների և թուրքերի հետ բարեկամության կնքման հանուն ընդհանուր բարիքի ձեռքբերման: Հեղինակը ուզում է վստահ լինել նրանում, որ իր պարսիկ ու թուրք բարեկամները կհասկանան իրեն, քանզի ինքը պատրաստվում է նրանց հետ խոսել անկեղծորեն, ըստ հին վրացական ասացվածքի. «Մարդ ճշմարտությունը բարեկամների դեմքին է ասում, թշնամիների՝ տեսից»: Այսպիսի արիությամբ հեղինակը ձեռնամուխ է լինում իր քաղաքական հավատամքի շարադրանքին:

Համաշխարհային պատերազմը քաղաքական ազատագրություն է խոստանում բոլոր փոքր ժողովուրդներին: Մասնավորապես, ռուս-թուրքական պատերազմը հարմար պահ է Վրաստանի համար՝ թոթափելու ռուսական իշխանությունը և իրեն վերադարձնելու հարյուր տարի առաջ կորցրած անկախությունը: Վրացիները հասկանում են պահի ամբողջ կարևորությունը և ձեռք են մեկնում Թուրքիային ու նրա հզոր դաշնակիցներին՝ Գերմանիային և Ավստրո-Հունգարիային, որպեսզի տապալվի Ռուսաստանը, այդ սոսկալի ուժը, որը ստրկության մեջ է պահում ոչ միայն նվաճված ժողովուրդներին, այլև բուն ռուսներին: Հեղինակը հավատում է, որ Կովկասի բոլոր ժողովուրդները կհամախմբվեն վտարելու համար ռուսներին:

Սակայն, նրա համար, որպեսզի թուրքերը չկրկնեն ռուսների սխալները և, ետ նվաճելով Կովկասը, չընդգրկեն այն օսմանյան նահանգների թվի մեջ, անհրաժեշտ է նախօրոք պայմանավորվել կովկասյան տարածքների ապագա կարգավիճակի մասին:

Հասկանալի է, չի կարելի մերժել ինչ-որ բան վերցնելու Թուրքիայի ցանկությունը, և հեղինակը նրան թույլ է տալիս հարակից հողերի մասնակի բռնակցում ի հատուցումն նրա մղած պատերազմի: Բայց կովկասյան տարածաշրջանի մնացյալ և մեծ մասը պետք է կազմի ազատ դաշնություն՝ կովկասյան հիմնախնդրի միակ հնարավոր լուծումը:

Դաշնության մեջ մտնող ժողովուրդները հանգեցվում են չորս խմբի՝ վրացիներ, լեռնցիներ, թաթարներ և հայեր: Հեղինակը կանգ է առնում այդ խմբերից յուրաքանչյուրի բնութագրության վրա, ընդ որում փայլում է այն-

պիսի անխորախորհուրդ սանձարձակությամբ, որը յուրահատուկ է միայն անպատասխանատու անանուն հեղինակներին:

Ուրվագծելով, այնուհետև, Կովկասի քաղաքական դրությունը, հեղինակը համոզվածություն է հայտնում, որ թուրքերի համար շատ հեշտ է Կովկասը ետ նվաճելը, քանի որ գլխավոր ժողովուրդները՝ վրացիները և թաթարները, կանցնեն նրանց կողմը: Ռուսական տիրակալությունը չի կարող դիմանալ, եթե այդ ժողովուրդները ապստամբություն բարձրացնեն: Թուրքիան, քաղելով պատրաստի պտուղները, պետք չէ, որ հրապուրվի ռուսական վարչության օրինակով: Թուրքիայի տիրապետության կայունությունը կարող է համարվել ապահովված սոսկ քաղաքական դաշնության հիմքի վրա Կովկասի ինքնավարության պայմանով:

Հեղինակը ջանք է թափում ուրվագծելու Կովկասյան երկրամասի ապագա կարգի պատկերը: Պատերազմի հաղթական ավարտի դեպքում.

1.Կարսի մարզի և Երևանի նահանգի առանձին մասեր անցնում են Թուրքիային, իբրև թուրքերով բնակեցված տարածքներ:

2. Անդրկովկասը ստանում է պետական ինքնավարություն, Շվեյցարիայի նման, ընդ որում, նրա անձեռնմխելիությունը մշտնջենապես երաշխավորվում է տերությունների կողմից:

3. Վրաստանը հարություն է առնում, իբրև պետություն, իր պատմական սահմաններում Աբխազիայից մինչև Տրապիզոն, իսկ արևելքից՝ Զաքաթալայի օկրուգը ներառյալ: Վրաստանում մնալ ցանկացող հայերը, իբրև քաղաքացիներ, կապահովվեն եկեղեցու, լեզվի և մշակույթի վերաբերյալ իրենց իրավունքներում:

4. Թաթարներին և հայերին իրավունք է տրվում կազմակերպելու խառն կանտոններ՝ հարևաններից կամ եվրոպացիներից միջնորդների աջակցությամբ.

5. Լեռնականները նույնպես ստանում են ինքնավար կարգ՝ կենտրոն ունենալով Դաղստանը:

Կովկասյան երկրամասի քաղաքական վերածնության պատկերը հեղինակը հոգատարաբար պատկերազարդել է գրքին կցված հատուկ քարտեզում:

Նման նախագծով գրքույկի երևան գալը համաշխարհային պատերազմի ամենատեռուն շրջանում խիստ հատկանշական է, և հատկանշական է ոչ վրաց ժողովրդի մտայնության առումով: Ինչ էլ որ մտածեն վրացիները իրենց ապագայի մասին, նրանք շատ հեռու են՝ Թուրքիայի ձեռքից ազատություն ստանալու մտքից: Միգուցե գրքույկում ինչ որ չափով արտացոլվել է վրացական հասարակության որոշ խավերի տրամադրությունը, համե-

նայն դեպս, աննշան խավերի, ովքեր ծվարում են վատ համբավի թերթերի ընդհատակում, և ոչ թե համարձակ քաղաքական գործունեության բաց թատերաբեմում, որտեղ գործում են Վրաստանի լավագույն զավակները, ովքեր տքնում են երկրի պատվի համար, թուրքական հրոսակների ներխուժումից նրա պաշտպանության համար:

Նախագիծը ցուցանշական է ուրիշ առումով: Այն մեծ հետաքրքրություն է ներկայացնում, երբ դիտվի իբրև գերմանական ներշնչման արդյունք: Հազիվ թե կարելի է կասկածել, որ այստեղ մենք գործ ունենք գերմանական ծրագրերի հետ: Պատերազմի հենց սկզբից գերմանական իշխանությունները ամբողջ աշխարհով մեկ լայն քարոզչություն են վարում Համաձայնության տերությունների ճամբարում հնարավորին չափ ավելի շատ ընդդիմադիր ուժեր ոտքի հանելու: Զարմանալի կլիներ, եթե ամենահաս գերմանական ձեռքը չփորձեր հրդեհ բորբոքել կովկասյան ժողովուրդների մեջ, որտեղ այնքան դյուրավառ նյութ է կուտակվել: Հասկանալի է նաև, թե ինչու գերմանական միտքն արտահայտելու համար ընտրված են վրացու շուրթերը՝ իրական կամ երևակայական, անշահախնդիր կամ վարձու: Վերջին տարիներիս վրացիների թաքարների հետ բարեկամություն անելու համբավը այնպես անլռելի էր ունճացվում Կովկասի բարեկամների ու թշնամիների կողմից, որ գերմանացիները գերմանացի չէին լինի, եթե չօգտվեին և այդ հաղթաքողից: Հենց նոր շարադրված նախագծին, անկասկած, հաղորդակից է գերմանական ոգին:

Բավական է Գերմանիայի վրա փոխադրել այն ամենը, ինչ ասվում է նախագծում Թուրքիայի մասին, որպես կովկասյան ժողովուրդների ազատարարի, այնժամ [illegible], որը կատիպի մտորել:

Արդյո՞ք դա նախասկզբնական ուրվագիծ չէ, գերմանական Weltpolitike-ի (20) գաղտնարաններում հասունացող վիթխարի ծրագրի կոպիտ, դեռևս չմշակված ուրվապատկերը: Միգուցե իսկապես Գերմանիային խորթ չէ Թուրքիայի և Ռուսաստանի սահմանին մի շարք մանր պետություններ ստեղծելու գաղափարը, նման այն բանին, ինչ ենթադրվում է անել Գերմանիայի և Ռուսաստանի միջև ընկած սահմանային գոտում:

Պատերազմի պատճառների և նպատակների բարդ ցանցում միահյուսված մի ամբողջ շարք վիճելի հիմնահարցեր կարելի կլիներ լուծել պատերազմի բուն ընթացքում, չսպասելով նրա վերջին: Այդպիսով կհաջողվեր աստիճանաբար նեղացնել ընդհանուր արյունահեղության տարածքային սահմանները, սահմանափակել վիճելի հարցերի ոլորտը մասնակիորեն

լուծելու ուղիով և դրանով իսկ դյուրացնել և արագացնել նրա վերացումը: Եթե տերությունների համաձայնությունը կողմ է արտահայտվում Պաղեստինի, Սիրիայի, Միջագետքի, Հայաստանի ինքնավար կառուցվածքին, և Ռուսաստանն արդեն զիջել է Կովկասին ինքնորոշման իրավունք, ապա Գերմանիային, թվում է, հարկ էր վարվել նույն ոգով և տարածել ինքնավարության սկզբունքը ոչ միայն Կարսի ու Բաքումի, այլև տերությունների կողմից վիճարկվող թուրքական ծայրամասի ամբողջ տարածքի վրա՝ Հայկական բարձրավանդակից մինչև Բոգդանովյան տափաստանները: «Հարևան պետությունների» տակ, որոնց համաձայնությունը պահանջում է խլվող օկրուգների ինքնորոշման ժամանակ, պե՞տք է արդյոք հասկանալ, պետություններից նրանց մերձավորները, որոնք դեռևս պետք է առաջանան Գերմանիայի օրհնությամբ:

Երկրների, որոնք բնակեցված են ոչ թուրքերով, այլ ծագումով ու պատմական պատգամներով նրանց խորթ ժողովուրդներով, հին մշակութային ավանդների կրողներով, ճակատագրի այդպիսի լուծումը կհամապատասխաներ որոշ ազգությունների ձգտումներին և մյուսների արթնացող ինքնագիտակցությանը և միաժամանակ կբավարարեր շահագրգիռ տերությունների հավակնություններին, նրանց քաղաքական կամ տնտեսական ազդեցության ոլորտի սահմանազծման, վաղթաքաղաքացի դեպքում նաև Թուրքիայի, պայմանով: Աշխարհը կողջուներ պատերազմի նման արդյունքը, իբրև հարկ եղած հատուցում թափված արյան: Եվ ծովից ծով լայնածավալ երկրներ, հին մշակույթների կենտրոններ կվերածնվեին իրենց անցյալին արժանի կյանքի համար, և արևմտյան քաղաքացիականության ճառագայթների ներքո կաճեցնեին նոր պտուղներ:

Բայց արդյո՞ք այդպես են մտածում մրցակից տերությունները, թե՞ պետք է խոստովանել, որ, երբ նրանք ասում են միևնույն բանը, ապա դա չի նշանակում միևնույն բանը: Միգուցե խոսքը գնում է հին վեճի մասին, թե ո՞ւմ սուրը պետք է կախվի այդ երկրների վրա: Ամեն ինչ անորոշ է, ամեն ինչ ծածկված է մառախուղով: Այդ մառախուղի մեջ Հայաստանը տեսնում է միայն գերմանական Յանուսի (21) հստակ ուրվագծված կերպարը՝ մեկ դեմքը շշնջում է ճնշված ժողովուրդների ազատագրում, իսկ մյուսը՝ հանգիստ դիտում է թուրքական ջարդարարների իր իսկ ղեկավարած ներխուժումը որբերի ու փախստականների ճզմված ու ստորացված երկիրը: Հայ ժողովուրդը համբացել է անսպասելիություններից, ճակատագրի քմա-

հաճույքներից: Ռուսաստանը, ուղեցույց աստղը, անհետացել է հորիզոնից, խաբելով բոլոր հույսերը, լքելով հայերին «խարույկի վրա, ինչպես խոտ կամ չոր թփուտ», իսկ Գերմանիան, արդյո՞ք սպառնում է նա «Աստծո տաճարները խորտակելով, բարձրացնել լուսնի խորհրդանշանը», ինչպես որ հուսահատության մեջ արտամում է հայ բանաստեղծը XIII դարի խորքերից (22):

## ՀԵՌԱԳԻՐ ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆԸ

**Գերմանիայի արտաքին գործոց նախարարության հեռագիրը Կ. Պոլսում դեսպանին**

*Բեռլին, 14 ապրիլ, 1918 թ.*

Մոսկվայից (1) ստացվել է հետևյալ ռադիոհաղորդագրությունը. «Ելնելով ստեղծված դժոխային ու անտանելի վիճակից՝ Հայոց ազգային խորհուրդը (2), որպես հայ ժողովրդի կամքի դրսևորման բարձրագույն մարմին, դիմում է Ձեզ:

Հայաստանը, որն արնաշաղախ հազիվ էր ազատվել դարավոր ճնշման վիճակից, դարձյալ նետվեց նոր տառապանքների գիրկը: Օգտվելով ռուսական բանակի նահանջից՝ թուրքական զորքերն անմիջապես ներխուժեցին անպաշտպան երկիրը, ընդ որում, նրանք բնաջնջեցին ոչ միայն թուրքահայերին, այլև բոլոր ռուսահայերին: Հակադրվելով խաղաղության պայմաններին, որոնցով ճանաչվում էր ամբողջ Կովկասի ինքնորոշման իրավունքը, թուրքական զորքը շարժվեց դեպի Կարս ու Արդահան ամայացնելով երկիրը և ոչնչացնելով քրիստոնյա բնակչությանը (3):

Հայերի հետագա ճակատագրի ամբողջ պատասխանատվությունն ընկնում է Գերմանիայի վրա, քանզի նրա պնդելով էր, որ ռուսական զորքերը դուրս բերվեցին հայկական տարածաշրջաններից: Այժմս էլ Գերմանիայից է կախված թուրքական զորքերին հերթական անկարգություններից հետ պահելը, որոնց հիմքում ընկած են վրեժն ու կատաղությունը:

Դժվար է հաշտվել այն մտքի հետ, որ մի այնպիսի քաղաքակիրթ պետություն, ինչպիսին Գերմանիան է, որը հնարավորություն ունի ազդելու իր դաշնակից Թուրքիայի վրա, թույլ կտա, որ Բրեստի հաշտության պայմանագիրը հայ ժողովրդի համար, որը հակառակ իր կամքի էր ներգրավվել համաշխարհային այս պատերազմի մեջ, ծառայի անհիվ տառապանքների աղբյուր: Այդ պատճառով ազգային խորհուրդը հավատացած է, որ Դուք անհրաժեշտ և Ձեզ տրված հնարավոր բոլոր միջոցները ձեռք կառնեք թուրքական իշխանությունների վրա ազդելու, հայ ժողովրդին նոր սարսափներից պաշտպանելու համար:

*Որպես Ազգային խորհրդի լիազոր՝*
***Նիկոլայ Աղբեց** (Պետրոգրադի համալսարանի պրոֆեսոր)*
***Հովհաննես Զավրիև** (4) (նրդվյալ հավատարմատար) (5)*

## ԹՈՒՐՔԱԿԱՆ ՀԱՅՏԱԳԻՐԸ ԵՎ ԹՈՒՐՔԱՀԱՅԱՍՏԱՆԸ

Աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը՝ Խորհրդային հանրապետությունը, հանձնեց ամենաժողովրդավարական, առաջադիմական պրոլետարական, դարերով շահագործված, ֆիզիկապես սարկացված ժողովրդին աշխարհում ամենաքռնապետական պետության՝ թուրքական բռնակալության ճզմվքին ու անարգանքին:

Ցուցադրական և, ինչպես կարծում են, «գեղեցիկ» ժեստով ստորագրելով Բրեստի հաշտությունը, սոցիալիստական իշխանությունը հայ ժողովրդի համար ստեղծեց մղձավանջային դրամա, որն այժմ խաղացվում է թուրքական և ռուսական Հայաստանի լայն բեմահարթակում գործողություն գործողության ետևից. դրամա, որի գլխավոր դերակատարներն են թուրքական զորքերը, թուրքական դիվանագետներն ու ագիտատորները և տեղական թաթարական հրոսակները:

Թե ինչ է կատարվում այժմ Անդրկովկասում թուրքերի ու թաթարների միաբան զոհի ներքո, պարզ է բոլոր նրանց համար, ովքեր հետևում են իրադարձություններին թեկուզև ըստ թերթերի կցկտուր հաղորդումների:

Խորհրդային «Известия ЦИК» պաշտոնաթերթում (№ 97) Ազգությունների գործերի ժողովրդական կոմիսար Ստալինը իր վրա համարձակություն է վերցնում «հայտարարել ի լուր ամենքի, որ մուսուլմաններն ընդունում են Բաքվում կազմակերպված խորհրդային իշխանությունը, որ մուսուլմանների և բոլշևիկների միջև ոչ մի պայքար չի եղել» (1):

Ընկեր Ստալինը, անվիճելիորեն, քնատ մոլորության մեջ է: Այդ մոլորությունը հասկանալի կլիներ և, թերևս, ներելի, եթե նա ծնված լիներ ոչ թե Կուրի ափին, այլ Վոլգայի կամ էլ ավելի հեռու: Իբրև Անդրկովկասի քնիկ նա պետք է, նա պարտավոր է իմանալ, թե ինչ արժեք կարող են ունենալ թաթարական զանգվածի համար ներկա քաղաքական խմորումների պայմաններում սոցիալիստական և, մասնավորապես, բոլշևիկյան կարգախոսները: Եթե Ազգությունների գործերով ժողովրդական կոմիսարի պաշտոնական ելույթների կարիքը կա, ապա նա պետք է քաջություն ունենա ճշմարտացիորեն հայտարարել, թե ֆրականում ուր են սևեռված թաթարական հայացքները, ուր են մղվում թաթարական համակրանքները, նա պետք է խոստովանի, որ Բաքվի մահմեդականների համար, հիմա ան-

գորական այծերի հասարակ կաքը ավելի քանկ է, բոլշևիկների նրանց մառուցած բոլոր սոցիալիստական խորտիկներից...

Ժողովրդական Կոմիսարների խորհրդին հարկ է լիովին հստակ պատկերացում ունենալ Կովկասում գործերի դրության մասին, այնտեղ ներքուստ և արտաքուստ գործող ուժերի միտումների մասին: Կովկասում ռուսական պետական իշխանությունը կոչված է ծառայելու, իբրև կարգավորիչ, տարբեր ազգությունների խաչաձևող շահերի, լինել անաչառ դատավոր տեղական քաղաքական նշանակություն ունեցող բացահայտ ու խուլ դատավեճերում:

Ներկայումս, լավ է, թե վատ, բայց ռուսական պետական իշխանության կրողը Կովկասում բոլշևիզմն է, որքանով որ այն տիրապետում է բուն Ռուսաստանում: Ոչ միայն նրա կովկասյան, այլև կենտրոնական մարմնին անհրաժեշտ է ամենից առաջ իմացություն և ունակություն գլուխ հանելու մարտնչող ուժերի ըմբռնողության համար ամենևին էլ ոչ բարդ հնարքներից, եթե ցանկալի է մնալ պետական կոչման բարձրության վրա, թեկուզև Կովկասի հանդեպ: Ժողովրդական կոմիսարները պետք է իրենց հաշիվ տան, թե կովկասյան ազգային ծիերի եռյակում կամ քառյակում ով է քեռածին (2) երկրի քաղաքական և հասարակական կյանքում, և ով կողածին (3), որը մղվում է դեպի Ռուսաստանի թշնամական ճամբարը:

Ի միջի այլոց, իմ խոսքը կովկասյան գործերի մասին չէ, նույնիսկ ոչ Ռուսական Հայաստանի:

Այժմ բարձրացել է թուրքական դիվանագետի ձեռքը, որպեսզի հասցնի վերջին և վերջնական հարվածը Թուրքական Հայաստանին: Ճիշտ է, հիմա դժվար է սահման անցկացնել թուրքական և Ռուսական Հայաստանի միջև. մեզանից շրջված ճակատագրի չար խաղով Ռուսական Հայաստանը չէ, որ ընդարձակվում է թուրքականի հաշվին, նա չէ, որ դեպի իրեն, իր խաղաղ աշխատանքին է ձգում թուրքական մասը, որը ծարավի է անդորրի. այլ ընդհակառակը, նրանից են մաս առ մաս բռնի կերպով խլում, որպեսզի հարակցեն Թուրքական Հայաստանի ավերակներին:

Թուրքական դիվանագետը Մոսկվայում (4), ինչպես հաղորդում են լրագրերը, երեկ (5) արտաքին գործերի կոմիսար Չիչերինին (6) հանձնել է ուսանելի հայտագիր, որը հռչակում է. «Հիմնվելով Բրեստ-Լիտովսկում ստորագրված լրացուցիչ հաշտության պայմանագրի հոդվածի վրա, ռուսահպատակ որոշ մուսուլմաններ դիմել են Մոսկվայում օսմանյան կայսերական միահյին Թուրքիա տարագրվելու իրենց իրավունքն իրագործելու նպատակով» (7):

Թուրքական դեսպանորդի հայտարարությունն այնուհետև ամփոփվում է «հույսով, որ արտաքին գործերի ժողովրդական կոմիսարը, ի կատարումն վերոհիշյալ պայմանագրի որոշման, կբարեհաճի իր կողմից ձեռնարկել անհրաժեշտ քայլեր այն իմաստով, որպեսզի վերոհիշյալ մուսուլմանները ապահովեն արտոնություններով նրանց ունեցվածքի վերացման պահին, և որպեսզի նրանց իրավունքները պահպանվեն»:

Ռուսական հասարակությունը, հավանաբար, հարկ եղած ուշադրությունը չի դարձնի թուրքական հայտագրին: Ես համոզված եմ, որ թուրքական հայտագրի իմաստը հասկանալի չէ ոչ միայն սովորական ընթերցողին, այլև Չիչերինին՝ իրեն: «Ինչ-որ մուսուլմաններ ուզում են գնալ Թուրքիա, բարի ճանապարհ»,- կասի հասարակ ընթերցողը, որը իմաստնացած չէ հայ-թուրքական գործերում: Բայց մեր արտաքին քաղաքականության ղեկավարը, նախքան հայտագրին պատասխանելը, պետք է խորանա գործի էության մեջ, հայտագրի թաքուն միտման մեջ: Ինչո՞ւ նման շտապողականություն Թուրքիայի կողմից՝ հերթի դնել տարագրության բարդ հարցը, երբ նա դեռ ի վիճակի չէ կարգավորելու գերիների փոխանակության համեմատաբար հասարակ գործը:

Մարդիկ, ովքեր սովոր են գործադրել լայն խնդիրներ, չեն կարող հասկանալ, որ Թուրքիայի համար, թուրքական կարճատես քաղաքագետների համար որպես «casus belli» ծառայել է, գլխավորապես, Հայկական հարցը՝ Թուրքական Հայաստանը կորցնելու վախը: Չնայած այն բանին, որ հաշտություն է կնքվել պայմաններով, որոնք ավելի շուտ երազ են հիշեցնում, քան թե լուրջ քաղաքական ակտ, թուրք հաղթողները բայցևայնպես վստահ չեն իրենց հաղթանակին: Անվստահությունը վաղվա օրվա հանդեպ, օրինական երկյուղը թեթևսոլիկ ճակատագրից, որը պատրաստ է խորտակելու Թուրքիայի պատրանքները՝ պատերազմի վերջնական արդյունքը ոչ հօգուտ նրա երջանիկ զինակցի և հովանավորի (8) լուծվելու դեպքում, դրդում է շրջահայաց թուրք դիվանագետներին միջոցներ ձեռք առնելու՝ վերացնելու Հայկական հարցը անկախ պատերազմի ելքից:

Թուրքական կառավարությունը Բրեստի պայմանագրի մեջ մտցրեց կետ այն մասին, որ մահմեդական դավանանքի ռուսահպատակները իրավունք ունեն տարագրվելու Թուրքիա: Մուհաջիրների հարցին ծանոթ մարդիկ պետք է իմանան, որ այդ կետն իր սուր սայրով ուղղված է Հայաստանի դեմ: Թուրքական քաղաքագետները ցանկանում են, օգտվելով պատերազմական խառնաշփոթությունից, իրագործել այն հրեշավոր ծրագիրը, որը ժամանակին սուր հակահարված ստացավ տերությունների և, ամենից առաջ, Ռուսաստանի կողմից (9): Թուրքիան ձգտում է մահմեդականներով

բնակեցնել հայկական մարզերը, որոնք այժմ թափուր են բնակչությունից, և դրանով պատերազմից հետո Եվրոպան դնել քրիստոնեական Հայաստանի մահմեդական երկրի փոխակերպման կատարված փաստի առջև:

Թուրքական քաղաքականությունը Հայկական հարցում միշտ էլ աչքի է ընկել առավել մեծ հետևողականությամբ, քան եվրոպական դիվանագիտությունը: Տերությունների մե՛րթ Հայկական հարցի կողմ, մե՛րթ դեմ անվստահ, անկայուն ելույթների փոխարեն, թուրքերը տարել և տանում են բուն «Հայաստանի» հարցը օրակարգից հանելու անշեղ գիծ:

Այն պահից, երբ Հայկական հարցը դրվեց Բ. Դռան առջև իբրև միջազգային պարտավորության ակտ, օսմանյան պատասխանողներն ամեն կերպ խուսափում էին «Հայաստան» բառից և, փակելով մտքի աչքերը, հայտարարում էին, որ այդպիսի երկիր չկա, որ այն վաղուց է անհետացել, կլանվելով քրդերի կողմից:

Այդ քաջ նվաճողները, իբրև թե, հնազանդեցրել էին Հայաստանը և այն վերածել Քրդստանի: Թուրքերը ջանում էին Հայաստան երկրանունը հանել անգամ միջազգային շրջանառությունից: Եվ դա նրանց հաջողվեց: Եվրոպայի լուսավորյալ տերությունները հաճույքով տգետ էին ձևանում այդ դեպքում, ավելի շուտ վստահելով թուրքական մամուլի կիսապաշտոնական օրգաններին, քան իրենց գիտնականներին, ովքեր զբաղվում էին Հայաստանով, իբրև հայերի և հայկական մշակույթի երկիր: Անգլիական դիվանագիտությունը առաջինը հավանության արժանացրեց Հայաստանի թուրքերին հաճելի վերանվանումը և Էրզրումի իր հյուպատոսին այլ կերպ չէր անվանում, եթե ոչ Քրդստանի հյուպատոս:

Կոստանդնուպոլսի Հայոց պատրիարք Ներսես [Վարժապետյանը] ստիպված էր դեռևս 1879 թ. անգլիական դեսպան Լայարդին (10) ուղղված նամակով բողոքել մեծ տերության նման վերաբերմունքի դեմ հանդեպ երկրի, որի շահերը նա կոչված էր պաշտպանել: Դրանից հետո օսմանյան կառավարողները, ինչպես հայտնի է պաշտոնական փաստաթղթերում սկսեցին Հայաստանն անվանել Արևելաանատոլիական մարզեր: Եվ այդ ոչ ճիշտ ու միտումնավոր տերմինաբանությունը, համոզ Եվրոպայի, ընդունելություն գտավ նաև տերությունների միջազգային ակտերում:

Քչերին է հայտնի, թե ինչպես էին ջանում թուրքերը դուրս մղել հինավուրց աշխարհագրական անվանումները, փոխարինելով դրանք թուրքականով կամ աղավաղելով թուրքավարի, որոնք հեռավոր ժամանակների ժառանգություն են, հաճախ միակ վկան կործանված պաշտամունքի՝ գիտական հետազոտությունների առարկայի:

Բանը, հասկանալի է, միայն անվանակարգության մեջ չէ: Թուրքական կառավարության ձեռներեցությունը չէր սահմանափակվում միայն երկրի արտաքին, անվանակարգային կերպարի թուրքացման մեջ: Միաժամանակ ընթանում էր եռանդուն և ծրագրավորված աշխատանք, որպեսզի Հայաստանի նոր անվանման տակ դրվի համապատասխան էթնիկական շերտ, կամ ուժեղացնել առկա օտար տարրը: Դրան հասնում էին փորձված միջոցառումներով՝ բնիկ հայ ազգաբնակչության կոտորածով, նրա արտաքսմամբ, հողերի բռնի զավթումով և նրանց հայրենի օջախներում քրդերի և ուրիշ ցեղերի բնակեցմամբ, որոնք հաճախ բերվում էին հեռավոր վայրերից:

Ռուս-թուրքական պատերազմները, հակառակ տարածում գտած պատկերացումների, միշտ էլ ամենածանր հետևանքներ էին ունենում հայերի համար և հանգեցնում էին հայկական տարրի թուլացմանը և Հայաստանի մահմեդականացմանը: Այս պատերազմում Հայաստանի ավերածության հրեշավոր պատկերը տեղի է ունեցել և նախորդ պատերազմների ժամանակ՝ քիչ ավելի փոքր չափերով և փոքր տևողությամբ: 1878 թ. ևս, ինչպես 1829 թ., սահմանամերձ վայրերի հայ ազգաբնակչությունը քշվեց երկրի խորքերը և դատապարտվեց կործանման սովից ու ճակատագրի քմահաճույքից: 1878 թ. մի քանի ամսվա ընթացքում բանակը հինգ անգամ անցավ Ալաշկերտի, Բայազետի և Բասենի մերձավոր շրջաններով: Կողոպտում և ամայացնում էին ոչ միայն թուրքական, այլ նաև ռուսական զորքերը: Զորքերի նահանջներին ու հարձակումներին հետևում էին քրդական հրոսակախմբերը, ինչպես քաղցած ու կատաղած շնագայլեր՝ կողոպուտներով ու գռփումներով կերակուր հայթայթելով իրենց: Մահմեդականների կատաղությունից ու վրիժառությունից հայ ազգաբնակչությունը հարկադրված էր փրկություն փնտրել ռուսական սահմաններում, փոխելով Բասենի և Ալաշկերտի հացառատ հովիտները Ռուսական Հայաստանի լեռնային անպտուղ գահավանդակներով: Հայերի լքած վայրերը հանձնվում էին քրդերին ու մյուս մահմեդական ցեղերին, որոնց հրավիրում էր թուրքական կառավարությունն այլ վայրերից:

Տրապիզոնում բրիտանական փոխհյուպատոս Մարենգոն զեկուցում էր 1879 թ., որ թուրքական նավերը Սև ծովի ափերի տարբեր կետերում ափ են հանում մահմեդական գաղթականների հոծ զանգվածների: Հաջորդ տարում նրանց հոսքն էլ ավելի ուժեղացավ:

1880 թ. մայոր Թրոտերը (11) Վանի ճանապարհին հանդիպեց նոր վերաբնակների մի երկար կարավանի: Այդ նույն թվականին լեյտենանտ Չերմսայդը հազարավոր սայլեր տեսավ Սվազից Երզնկա տանող ճանապարհին, որոնք հիշեցնում էին ժողովուրդների գաղթի դարաշրջանը: Անգ-

լիակալ հյուպատոսի հարցին, թե ինչու են թողել նրանք իրենց բնակավայրերը, ստացվել էր լակոնական պատասխան «մեզ կանչել են կառավարական գործակալները»:

Բրիտանական հյուպատոսը նկատում է, որ այդ բոլորն արվում է մահմեդական բնակչությունը ստվարացնելու նպատակով, ընդ որում կառավարությունը ոչ մի միջոց ձեռք չի առնում գաղթականների ճիշտ տեղաբաշխման և գոյության պահպանման համար: Ընդհակառակը, նրանց այն միտքն են ներշնչում, որ պետք է իրենց կերակուր հայթայթեն սրով, որի համար էլ նրանց զինում են մինչև ատամները և նետում անզեն ազգաբնակչության վրա: Նոր ժամանածներին գանձարանից ապրուստի ոչ մի միջոց չէր տրամադրվում և նրանց խրախուսում էին կողոպուտներ կատարելու, որպեսզի վերջնականապես քայքայեն ու կործանեն քրիստոնյա ազգաբնակչությանը:

Այդ թռուցիկ օրինակները, որոնք վերցված են բրիտանական գործակալների պաշտոնական զեկուցագրերից, ովքեր այն ժամանակ ամենևին էլ թշնամական չէին թուրքական կառավարության նկատմամբ, բավական են, որպեսզի բացահայտեն թուրքական հայտագրի իսկական իմաստը ոչ վաղ անցյալի լույսի ներքո:

Պարզ է, որ երիտթուրքերի գծված սահմանադրականները շարունակում են հետևել նախորդ բացարձակապետական վարչակարգի ներգաղթի քաղաքականությանը: Նրանք ցանկանում էին հայ նահատակների և փախստականների ծխացող օջախները ողողել մահմեդական եկվորների ալիքով:

Հայաստանի հանդեպ Ռուսաստանի պարտքի գիտակցությամբ կոմիսար Չիչերինը պետք է հարկ եղած հակահարվածը տա թուրքական դիտավորություններին, քանզի դրանք վերաբերում են Հայաստանին: Երբ Բալկանյան պատերազմից հետո թուրքական կառավարությունը ցանկանում է արտագաղթող մահմեդականներին, այսպես կոչված մուհաջիրներին, Բալկաններից ուղարկել հայկական մարզերը, այնժամ ժամանակի [Ռուսաստանի արտաքին գործոց] նախարար Սազոնովը պնդում էր և ջանում համոզել այն բանին, որպեսզի թուրքական կառավարությունը «ճիշտ ժամանակին համապատասխան միջոցներ ձեռք առնի ուղղելու գաղթականական հոսանքը քրիստոնեական բնակավայրերից հեռու վայրեր, օրինակ, Միջագետք, որտեղ շատ ազատ հողեր կան, որոնք կարող են օգտագործվել այդ նպատակով» (12):

Չիչերինի՝ նախարար-սոցիալիստի, պատասխան հայտագիրը չի կարող և չպետք է ավելի թույլ լինի ինքնակալության նախարարի պատասխանից հայերի համար այնքան կենսական հարցում:

Հայկական հարց Թուրքիայում եղել և առ այսօր էլ մնում է միջազգային պարտավորության առարկա: Բրեստի հաշտությունն անզոր է և իրավազոր չէ վերացնելու միջազգային ակտը՝ այն հարվածում է միայն Հայաստանի ինքնորոշման մասին խորհրդային հրովարտակին:

Եթե խորհրդային դիվանագետը հարկ չհամարեց հաշտության մասին բանակցությունները վարելիս մի խոսք ասել ի պաշտպանություն սեփական հրովարտակի և նույնքան հեշտությամբ պատռեց, ինչպես որ տվել էր, իհարկե, դա խորհրդային կառավարության գործն է: Բայց նա, խորհրդային կառավարությունը, իրավունք չունի ոչնչացնելու այն, ինչ ձեռք են բերել հայերն իրենց արյամբ՝ Հայկական հարցի միջազգային դրվածքը, հայերի միջազգային հովանավորությունը: Հայերի ճակատագրի համար պատասխանատու եվրոպական տերություններից և ոչ մեկն այժմ ի վիճակի չէ օգնություն ցույց տալու, բացի Գերմանիայից: Հայերը հնարավորություն չունեն խոսելու գերմանական դիվանագետների հետ: Իսկ արտաքին գործերի կոմիսարն ամենաաշխույժ հարաբերության մեջ է բարեկամական կայսրության հետ: Նա պարտավոր է հասնել գերմանական աջակցությանը, որպեսզի, համենայն դեպս, այդ դառը թասը բաժին չընկնի Հայաստանին: Բավական չէ Պիղատոսի (13) դերում լվալ ձեռքերը թանաքով: Անհրաժեշտ է ձեռնարկել իրական քայլեր:

Սոցիալիստական պետությունը իրավունք չունի աչք փակել հարյուր հազարավոր հայ տարագիրների տառապանքների հանդեպ, որոնք փրկվել են ապաստանելով ռուսաց Հայաստան և բազում հարյուր հազարներ, որոնք տառապում են Միջագետքի տափաստաններում: Եթե հաշտությունն իսկապես կայացել է, ապա այն պետք է վերադարձնի նրանց իրենց ավերված օջախները, և այդ մասին պետք է հոգ տանեն ամենից առաջ նրանք, ովքեր պայքարել և իրագործել են այդ հաշտությունը: Խաղաղասեր և ազատ չէ նա, ով մտածում է խաղաղության և ազատության մասին միայն իր համար: Ոչ մի ժողովուրդ այնքան կարիք չունի խաղաղության, ինչպես հայ ժողովուրդը. նրան պետք է անդորր արյունից, անդորր տառապանքներից: Ժողովուրդ, որը, ճիշտ է, փոքր է, բայց մեծ է հերոսական սխրանքներով, որոնք նա կատարել է, բարձրանալով մարդկային ոգու անհասանելի բարձունքի, որն արհամարհում է բռնակալությունը, տառապանքներն ու մահը...

Այդ բարձունքի վրա նա արժանի է ամբողջ մտածող մարդկության, բոլոր կառավարությունների համակրանքին ու օգնությանը, ծանր և դաժան է մտածել, որ աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը դուրս եկավ մի մուրճ, որն անսպասելի հարվածով կռեց Հայաստանի սարկության արդեն ընկնող շղթաները:

## ԱՌԱՋԱՎՈՐ ԱՍԻԱՅԻ ՀԻՄՆԱՀԱՐՑԻ ԼՈՒԾՄԱՆ ՇՈՒՐՋ

Քաղաքական հորիզոնում (1) կախված վիճելի հարցերի մեջ, որոնք իրենց լուծմանն են սպասում, Առաջավոր Ասիայի հիմնահարցն իր նշանակությամբ ու բարդությամբ գրավում է բացառիկ տեղ (2): Առաջավոր Ասիայի մայրցամաքը մեծ պետությունների հետապնդած համաշխարհային շահերի հանգուցակետն է: Որպես այդպիսին այն, անկասկած, կենտրոնական օղակն է համաշխարհային գերիշխանության համար մղվող կոալիցիաների մենամարտի օբյեկտների շղթայում:

Մրցակիցների ագահ հայացքը վաղուց է բևեռված անհույս «հիվանդ մարդու» հարուստ ժառանգության վրա: Սեկ ամբողջ հարյուրամյակ Թուրքիան շրջապատված է, անտիկ Պենելոպեի նման (3), հավակնորդներով, որոնք տենչում են նրա լքված հրապույրներին: Օժտված չլինելով վերջինիս առաքինություններով ու զսպվածությամբ, նա հաճույքով գրկից գիրկ է նետվում, որպեսզի փրկի իր գոյությունը:

Հանրահայտ է, որ եվրոպական մրցակիցներն արհեստականորեն պահպանում էին Թուրքիայի կյանքը և ապահովում նրա ամբողջականությունը ոչ այն պատճառով, որ այդ կենդանի մեռյալն արժանի էր նման հոգատարության, այլ սոսկ նկատառումներով, որոնք բխում էին քաղաքական հավասարակշռության տխրահռչակ սկզբունքից: Հասարակ լեզվով դա նշանակում է, որ Omnibus ligantibus-ի (4) պայմաններում վեճի առարկան հայտնվել է երրորդ կրավորական դեմքի դրության մեջ, որը թույլ է տալիս նրան երկարաձգելու անփառունակ գոյությունը:

Այժմ, երբ համընդհանուր պատերազմը հարց է հարուցում վերացնելու միջազգային քաղաքականության բոլոր հին շարժառիթները, Թուրքիան չի կարող խուսափել նրա համար պատմության նախապատրաստած ճակատագրից: Թող երիտթուրքերից նոր երազողները, հենվելով իրենց զինակիցների հաղթական սվիններ վրա, հույսեր փայփայեն իր երբեմնի փառքում Թուրքիան վերածնելու մասին. շուտով իրականությունը կհիասթափեցնի նրանց: Նրանք կհամոզվեն, որ գերմանական նավը, որին նրանք հանձնել են իրենց բեռը, և որն առայժմ սահուն նավարկում է քաղաքական անակնկալներով հղի փոթորկոտ ծովում, առաջին իսկ անհաջողության, առաջին իսկ ալեբախման դեպքում այդ նավը չի հապաղի ծովը նետել թուրքական բալաստը, որպեսզի հանգրվանի հաշտության խաղաղ նավահանգստում:

Հաշտություն գտնել Թուրքիայի հաշվին, բերևս նույնիսկ նրա բնական անդամահատման գնով, կդառնա նույնպիսի Kriegsuberraschung (5), ինչպիսին հանդիսանում է Թուրքիայի այժմյան հաղթանակը, որն անցել է ամենահամարձակ ֆանտազիայի սահմանը: Պատմության Նեմեսիսը (6) քմահաճ է ու անողոք հատկապես նրանց հանդեպ, ովքեր ոտնակոխ են անում նրա օրենքները ընդդեմ բանականության և խղճի: Եվ հաճախ, նախքան իր դատավճիռն արձակելը, նա մեկ անգամ և վերջին անգամ լուսողողում է իր զոհին հույսի անսպասելի ճառագայթներով, որպեսզի առավել տառապալի լինի նրա կործանումը:

Թուրքիայի ապագա ճակատագիրը, որը բացառում է լավատեսական հեռանկարների հնարավորությունը, նա ինքն է նախապատրաստել: Այն պայմանավորված է երկու գլխավոր գործոնների կործանարար ներգործությամբ, որպիսին ընդունված է համարել ներքին քայքայումը և արտաքին ճնշումը: Այս գործոնների անհաջողությունների միջև Թուրքիան զգալարվում է անօգնական, անզոր կասեցնելու նրանց քայքայիչ գործունեությունը:

Այս զույգ գործոնները, ինչպես հայտնի է, կապվում են Թուրքիայի քրիստոնյա հպատակների ճակատագրի հետ: Այն պահից, ինչ Բալկանները դուրս եկան թուրք-քրիստոնեական բախումներից, նշված գործոնների քայքայիչ ազդեցությունը, կարծում են, կենտրոնացել են հանդեպ Թուրքիայի՝ ռուս-հայկական հարաբերություններում: Ռուսաստանը պատկերացվում է իբրև այն ծանրությունը, որը հայկական լծակով ճնշում է գործադրում Թուրքիայի վրա:

Այդպիսին է այն շրջանների կարծիքը, որոնք արտաքին վտանգի ներքո հասկանում են միայն տարածքային կորուստների հնարավորություն, իսկ ներքին քայքայման հասկացության ներքո դնում են ամեն մի ազգային խնդիր: Այդպես են մտածում ամենից առաջ թուրքական ուղեղները՝ հոգևոր և աշխարհիկ, հին, թե նոր կոփվածքի: Դարեր շարունակ ռուսական վտանգը շեղել է Թուրքիայի ուժերը և կասեցրել նրա զարգացումը. հայկական հուզումները նպաստում են այն բանին, որպեսզի ավելի լայնանա ռուսական որովայնը՝ կլանելու Թուրքիայի արևելյան մարզերը, այն մասերը, որոնց կորուստով խախտվում է Առաջավոր Ասիայում Թուրքական կայսրության տարածքային հենակետի աշխարհագրական ամբողջականությունը:

Այդ տեսակետն ընդունված է նաև Եվրոպայում և, իսկն ասած, ձևավորվել է եվրոպական քաղաքական աշխարհի ազդեցության ներքո, որ գաղտնի կամ բացահայտ համակրում է թուրքերին: Թե որքան էր այն ժողովրդական արևմուտքում, կարելի է դատել այն փաստից, որ նույնիսկ

Ռուսաստանին բարեկամական Ֆրանսիան չի արհամարհում այն, չասած արդեն թուրքական գործերում Ռուսաստանի պատմական հակառակորդների մասին:

Պատերազմի եռուն պահին միջազգային քաղաքականության և համաշխարհային մշակույթի հարցերին նվիրված ֆրանսիական մի ամսագիր հնարավոր գտավ իր էջերում այնպիսի մտքեր զարգացնել մեզ հետաքրքրող Թուրքիայի նկատմամբ ռուսական և հայկական հարաբերությունների թեմայի մասին, որոնք ոգով ու ձևով կարող են շարժել թերևս միայն ամենավատթար տեսակի թուրքական կամ գերմանական մամուլի նախանձը:

Այդ ամսագիրն է «La Revue politique internationale», որը հրատարակվում է Փարիզում 1914 թվականից: 1917 թ. մարտ-ապրիլ ամիսների համարում տպագրված է «La tsarisme en Asie-Mineura. Les origins du problèma arménien» խորագրով հոդվածը: Հեղինակի ստորագրությունը M. Edgar Granville իճն անձամբ ոչինչ չի ասում, բայց ամենևին չի սքողում հոդվածի հետաքրքրականությունը, որը շատ առումներով ուսանելի է (7):

Հոդվածի բովանդակությունը հանգում է հետևյալին: Մարդկության ներկա միջոցին ապրած մեծ դրամայում ռուսական ցարիզմին է պատկանում ամենատխուր դերը: Այժմ, երբ Ռուսաստանի բուն դաշնակիցների համար հնարավորություն է ստեղծվել ազատ քննադատելու տապալված վարչակարգը, որը երեք դար շարունակ թունավորում էր Եվրոպայի մթնոլորտը, թույլատրելի է կանգ առնել ցարիզմի արտաքին քաղաքականության մեկ գլխի վրա, որի հիմնական զսպանակները հեռու են բավարար չափով հայտնի լինելուց, չնայած մեծ շռինդին, որով մեծահոգի, բայց ոչ անհրաժեշտ չափի իրազեկ մտքերը զբաղվել են նրանով: Խոսքը Հայկական հիմնահարցի մասին է: Համաշխարհային դրամայի նախապատրաստական պահերի մեջ, որոնք ստիպեցին մեծ տերություններին կովի բռնվել, Հայկական հարցը եղել է ամենակարևորներից մեկը, չափից դուրս բարդ մի հարց, որի հիմնական նշանակությունը թերևս նկատելի էր արևելյան գործերին քաջածանոթ որոշ դիտորդների: Նրանք էլ հենց երկյուղելով էին հետևում Հայկական հարցին Բալկանյան տագնապի և Համաշխարհային պատերազմի միջև ընկած կարճ ժամանակահատվածում, կանխազգալով նրանում ամբողջ Եվրոպայի համար հասունացող վտանգը: Նման գիտակների թվին է դասում հեղինակը, իհարկե, բացի իրենից, նաև մի քանի անգլիացի պառլամենտականների, ովքեր 1913 և 1914 թթ. Համայնքների պալատում իրենց իսկ կատարած հարցապնդման առթիվ կայացած վիճաբանություններում՝ ռուս-հայկական հարաբերությունների վերաբերյալ,

ճանաճաչել էին, որ ցարիզմի զաղտնի գործունեությունը Փոքր Ասիայում ամբողջ Արևելյան ճգնաժամի շարժիչն է, պատրաստ պոռթկալու համաշխարհային աղետի:

Հեղինակը վկայակոչում է այս վկայությունները, որովհետև «մամուլի կողմից մոլորության մեջ գցված հասարակական կարծիքը արևելյան գործերի մասին սովորաբար կազմում է խիստ գրավիչ, բայց չափից դուրս ճանկամիտ կարծիք. նա հավատ է ընծայում զայլի և գառան մասին առակին, մոլեռանդ և վայրագ մահմեդականի, որն իր ժամանակը անցկացնում է հալածելով անմեղ և հրեշտականման արևելյան քրիստոնյաներին: Եվրոպական առասպելը այլ մեղավոր չի ճանաչում, բացի մեկից՝ իսլամից: Ի դեմս Արևելքի քրիստոնյաների նա տեսնում է անբիծ զոհերի, ի դեմս ուղղափառների հովանավոր Ռուսաստանի՝ Արևելքի բոլոր ճնշված ազգությունների զորովազութ մոր: Հենց այդ դարավոր առասպելի շնորհիվ են հայերը կարողացել ձեռք բերել քաղաքակիրթ աշխարհի բարոյական հովանավորությունը և քչերն են հետաքրքրվել իմանալու, թե արդյո՞ք Արևելքի խառնակություններում չի եղել metteur en scène (8), որ աշխատել է երկարաձգել անիշխանությունն այդ երկրներում, որպեսզի հարմար պահին օգտագործի դրանք: Բոլոր սխալները, ամբողջ պատասխանատվությունը իսլամի վրա բարդելը, թվում է, հարմար էր նրանց, ովքեր ամենուր բավարարվում էին ընդհանուր կարծիքներով և ովքեր ներություն չէին քաշում խորանալ հիմնահարցի էության մեջ, որպեսզի ըմբռնեն նրանց իսկական նշանակությունը: Մարդիկ հազվադեպ էին ուզում հասկանալ, որ Արևելքի բույնը, որն անդամալուծում է իսլամական վերածննդին և թուրք-քրիստոնեական հարաբերությունների բարելավմանն ուղղված ջանքերը, նույնական էր այն բույնի հետ, որով ցարիզմը բունավորում էր Ռուսաստանը, բարոյապես պատնեշում նրան ամբողջ Արևմտյան Եվրոպայից: Ավելի քան մեկ դար Օսմանյան կայսրության քաղաքական բժիշկները հավատում էին իրենց խնամարկյալի անբուժելի հիվանդությանը, որին նրանք քանիցս կանխազուշակում էին անխուսափելի մահ, զլխի չընկնելով, որ առավել հասարակ և առավել արդյունավետ բուժման մեթոդը՝ օրգանիզմից օտար խարդավանքի բույնի հեռացումն է, անսրացնելով այն ռուսական քաղաքականությանը տարբեր ոգով»:

Այսպիսին են ֆրանսիական ամսագրի մտքերը, որոնք լիովին բնութագրում են որոշակի դիրքավորում Թուրքական և, կամ ինչպես անվանում են, Արևելյան հարցում: Չարիքի արմատը, հետևաբար, օտարերկրյա և գերազանցապես ռուսական խարդավանքների մեջ է: Չլինեին դրանք, Թուրքիան, իրր թե, վաղուց փետրավորված կլիներ, վաղուց ծածկված կլիներ

եվրոպական մշակույթի ներքափեռուրներով: Դրա երաշխիքն են՝ իսլամի դեմոկրատական ոգին և անատոլիական հեզ թուրք գեղջուկի դյուրաթեքությունը դեպի մշակույթը. «Բոլոր կշիռ ունեցող արևելագետներն Անգլիայում, ինչպես և մյուս երկրներում, համաձայն են այն բանում,- հայտարարում է հոդվածի հեղինակը,- որ Ղուրանը ամենևին էլ չի արգելում իսլամի քաղաքական հաստատությունների վերակազմակերպումը, որի ըստ էության դեմոկրատական ոգին գնում է ամենաառաջադիմական բարեփոխումների, եթե նրանք, այդ բարեփոխումները, զգեստավորված են մահմեդական ձևով, բխում են մահմեդական անկախ կառավարությունից, որը զերծ է արտաքին ամեն մի ճնշումից: Անատոլիական գյուղացին, որի գովքը երգեցին բոլոր այն անգլիացիները, ովքեր նրանց հետ շփման մեջ էին մտել այս պատերազմի ընթացքում, բացառում է կտրուկ միջոցների անհրաժեշտությունը, որին պետք է ենթարկվեին ուրիշ ժողովուրդներ նախքան բարենորոգումների ուղին ոտք դնելը: Նրա առասպելական հնազանդությունը թույլ է տալիս ենթադրել, որ նա առանց դիմադրության կընդունի ամենախոր փոփոխությունները, միայն թե նրան սովորեցնեն այն բանին, ինչի պակասը նա ունի ամենից առաջ՝ գյուղատնտեսական տարրական գիտելիքներ, որոնք նրա բարեկեցության անհրաժեշտ պայմանն են»:

«Եթե ես պնդում եմ այդ կետի վրա,- շարունակում է հեղինակը,- ապա ի նկատի առնելով այն, որ Հայկական հարցը Եվրոպայում միշտ ներկայացվել է իբրև դարավոր բախում «մահմեդական մոլեռանդության», որը քաղաքակրթությանը չի ենթարկվում, և հայկական ոգու միջև, որը մերձեցնում է փնտրում Արևմուտքի հետ դեռ այն ժամանակներից, ինչ գոյություն ունեն հայերը Փոքր Ասիայում: Հակամարտությունը այլ բան չէ, քան օտարերկրյա խարդավանքների ոչ վաղ ժամանակների արհեստական պտուղ, քանզի մի պարզ հայացքը անցյալի թուրք-հայկական հարաբերությունների վրա մեզ ցույց է տալիս, որ երկու ժողովուրդներն էլ ապրել են բարի համամտությամբ առանց որևէ բախման, որը կարող էր նրանց խորթացնել միմյանցից»:

Ես վկայակոչեցի գրքեր in extenso (9) գլխավոր դրույթները, որոնք զարգացվում են ֆրանսիական ամսագրի հոդվածում և կազմում են Թուրքական հարցի վերաբերյալ նրա հեղինակի աշխարհայացքի հիմքը: Նրա ելակետները կանխորոշում են ռուս-հայկական և թուրք-հայկական հարաբերությունների վերաբերյալ հետագա դատողություններն ու լուսաբանումը: Ռուսաստանի ռազմատենչ քաղաքականությունը, ռուսական դիվանագիտության խարդավանքները և դրանով պայմանավորված Եվրոպայի միջամտությունը թուրքական գործերին, հեղինակի պատ-

կերացմամբ հանդիսանում են Թուրքիայի բոլոր աղետների միակ պատճառը, Արևելյան և նրա հոգեզավակ Հայկական հարցերի հիմնական զսպանակը:

Հոդվածի հեղինակից, հոդված, որն իր եղանակով շատ է դուրս գալիս նրա իմացության սահմաններից, կարելի կլիներ սպասել ավելի թարմ մտքեր: Նրա հավակնությունները չեն համապատասխանում նրա մակերեսային և թեթևամիտ վերաբերմունքին հայկական վշտի հանդեպ, վերաբերմունք, որը բխում է արևելյան գործերում նույնքան խղճուկ, որքան և հնացած աշխարհըմբռնման: Աղմկալի ելույթն ընդդեմ գայլի և գառան մասին դարավոր առակի թույլ էր տալիս հուսալ, որ մեզ ցույց կտրվի այն կանաչ արոտավայրը, որտեղ գառը արածում է խաղաղորեն գայլի կողքին: Դա անհամեմատ ավելի դժվարին խնդիր է, քան հին երգը նորից ու նորից երգելը, ինչը հեղինակը գերադասել է անել՝ հասցնելով այն ճղճղան ակորդների:

Նրան չի հաջողվել մեկնաբանվող հարցի դիվանագիտական մակերևույթից իջնել պատմական հիմնախնդրի խորքը, որպեսզի ըմբռնի նրա ծագումնաբանությունը այնպիսի լրջախոհությամբ, որին այն արժանի է: Եվ դա չէր կարելի սպասել մի մարդուց, որը թույլատրելի է համարում խարդավանքների վրա հիմնավորել պատմական բարդ երևույթի հիմքն ու բարձրակետը, որը մեկ դար չէ, որ զբաղեցրել քաղաքակիրթ աշխարհը:

Պատմական կոնցեպցիայի բացակայությունն առավել ևս ուժեղ է անդրադարձել հայ-թուրքական հարաբերությունների մեկնաբանության վրա: Նրա հայացքը հազիվ է հասնում մինչև XIX դարի կեսերը, իսկ թափանցել ավելի հեռուն, հաղթահարել անցյալ երկարուձիգ դարերի խավարը այն ի զորու չէ: Դրա համար էլ Հայկական հարցի արմատները փնտրելիս նրա մտքերը խրվում են «ռուսական խարդավանքի» մակարդակի վրա և չեն կարողանում բարձրանալ տանելի պատմական հորիզոնի վրա, որպեսզի ընդգրկեն այն կյանքի ողբերգությունը, որ ստեղծեց Հայկական հարցը Թուրքիայում: Միայն այն ժամանակ կարելի կլիներ դիվանագիտական խոհիվի տակ տեսնել գերանը, որի վրա հանգչում են և՛ հայկական վիշտը և՛ Թուրքական հիմնահարցը:

Եթե մենք կանգ առանք մեզ հետաքրքրող հարցերի մակերեսային մեկնաբանության վրա, ապա այն պատճառով, որ դա այն ստորագրող հեղինակի անհատական ստեղծագործությունը չէ: Նրա արտահայտած հայացքները, հակառակ հեղինակի հավակնությանը, ավելի քան ծեծված են, քան այն դրույթները որոնց դեմ զինվում է հեղինակը: Նրան պատկանում են թերևս միայն շարադրանքի գունեղությունն իր բացահայտ թուրքասի-

րությամբ՝ հնամաշ տեսակետները մատուցվում են իբրև սառած ճաշ՝ տաքացված դեպի բուրքերը տածած քնքույշ ջերմությամբ. ակամայից հարց է ծագում, արդյո՞ք երիտթուրքական ֆես չի զարդարում այդ ֆրանկ հեղինակի գլուխը: Դատապաշտպանի դերը ես ամենևին էլ իբրև կշտամբանք չեմ ներկայացնում ֆեսին. ես ինքս եմ պատրաստվում քննարկել նրանց ընտրած հարցերը հենց օսմանաշինական պետական շահերի տեսանկյունից՝ կանգնելով պատմական ըմբռնողության հիմքի վրա և ոչ թե դեգերելով դիվանագիտական խորամանկությունների կիրճերում:

Արտաքին ճնշումը Թուրքիայի վրա, որից տառապում է օսմանյան հայրենասերը, ամենևին էլ Թուրքիայի քայքայման պատճառը չէ, այլ միայն նրա վերասերման ցուցանիշը: Տերությունների միջամտությունը պայմանավորված է հենց Թուրքիայի հիվանդագին դրությամբ և նրանց դիվանագիտությունը ջանում է կարգավորել միջամտությունը, բայց աղետների պատճառը դա չէ:

Քաղաքակիրթ երկրների արտադրողական ուժերի չտեսնված աճն իր հարվածն ուղղում է Թուրքիայի վրա, հետևելով ուժերի բաշխման բնական օրենքին: Ինչպես որ լեցուն ջրավազանի ջուրը ճնշումով թափվելու է հարևան դատարկ փոսը, այնպես էլ հագեցած եվրոպական միջավայրը պարզվում է ցածր արտադրողականության երկրների ուղղությամբ: Այդ առումով սուլթանի կայսրությունը, փա՛ռք Ալլահին, դատարկ սակառ է: Թուրքերը պետք է անսահման երախտապարտ լինեն հենց եվրոպական դիվանագիտությանն այն բանի համար, որ այն կասեցնում էր արտաքին գրոհը, և մի ամբողջ հարյուրամյակով հետաձգեց Թուրքիայի փլուզումը. շնորհիվ նրա առաջ քաշած օսմանյան տիրույթների տարածքային անձեռնմխելիության կարգախոսի: Այդ կարգախոսը, սակայն, իբրև միջազգային քաղաքականության պարտադիր փաստարկ, այժմ սպառել է իր հրամայական եղանակը: Ռուսաստանի ներկա դրության պայմաններում, որի դեմ էլ այն հիմն ասած ուղղված էր իր սուր սայրով, կորցրել է իր պատմական հիմքը: Այսուհետև Թուրքիայի status quo-ն պահպանելու մասին հոգատարությունը պետք է մի կողմ նետվի և հիվանդ մարդու ճակատագիրը, վերջապես, կգտնի իր լուծումը:

Թուրքիայով շահագրգռված տերությունների քաղաքականությունը, որը գերազանցապես հենվում է տնտեսական շահերի վրա, իր նոր փուլում պահանջում է ամենից առաջ հայտնի պետական իրավակարգ: Քանի դեռ Թուրքիայի վրա նայում էին սոսկ իբրև շուկայի՝ իրացնելու էժան ապրանք, կարող էին և չափսոսալ և փաստորեն քիչ էին հոգ տանում Թուրքիայի ներքին կացությանը: Բայց այսուհետև սուլթանական տիրույթները պետք

են ոչ միայն որպես շուկա, այլև օգտագործելու համար զուր տեղն ընկած բնական հարստությունները, առեղծագործ աշխատանքի և կապիտալի ներդրման ասպարեզ. նրանց ներքին դրությունը չի կարող անտարբեր համարվել: Թուրքիայում պետք է հայտնի իրավական կարգ հաստատվի իբրև անհրաժեշտ պայման ցանկացած ձեռնարկության համար:

Թուրքիան այնքան հեռու է ժամանակակից պետություն հասկացությունից, որ նրա համագոյակցությունը քաղաքակիրթ աշխարհի հետ չի կարելի անոմալիա չհամարել: Նա քիչ ընդհանուր բան ունի եվրոպական պետականության հզոր կառույցի հետ: Թուրքիան եղել է և մնում է զինվորական վրան, որը պահվում է բռնության և բռնակալության ցցերով: Թուրքերն իրենք անկեղծության պահին օսմանյան կարգը բնութագրում են իբրև «Նիզամ ալքընդա հայդուգ» (10). այսինքն՝ կազմակերպված կողոպուտ, սահմանում, որը հենց վերջերս սատարվում էր նաև նրանց գերմանացի բարեկամների կողմից[1]:

«Սահմանադրությունը» մազաչափ իսկ չի փոխում վարչակարգի էությունը, ինչպես որ եվրոպական գլխարկը թուրքի գլխին չի փոխվի վերջինիս առֆտայի իմաստությամբ լցված գլուխը: Եվրոպացին և կուլտուրական շնորհներով օժտված ամեն մի մասնագետ չի կարող ապրել թուրքական ճնշման մթնոլորտում: Երբ Եվրոպան ցանկանում է օգտագործել թուրքական տիրույթները, պետք է ձգտի Թուրքիայի վերափոխմանը, այնտեղ կարգուկանոնի հաստատմանը, որոնք կերաշխավորեն լայն արտադրողականության հնարավորություն և ազատություն: Բարեփոխումները պետք է նախորդեն կամ նրանք պետք է ուղեկցեն եվրոպական աշխատանքի և կապիտալի երթը Թուրքիայում: Բայց արդյո՞ք հնարավոր է թուրքական կարգի բարեփոխումն այն ձևով, ինչ որ մինչև հիմա ենթադրում էր եվրոպական դիվանագիտությունը:

Թուրքիան ճանաչողները վաղուց այն համեմատում էին կիսախարխուլ տան հետ, որն ամեն վայրկյան պատրաստ է փլուզվել և ճզմել ոչ միայն բնակիչներին, այլև անցորդներին: Փլուզումը կարելի էր կանխել, ինչպես որ սովորաբար արվում է, ժամանակին վերանորոգումով. սակայն Թուրքիայի վերանորոգման բոլոր ժամկետները բաց են թողնվել: Այժմ բարենորոգումների մուրճի փոքր իսկ հարվածից Թուրքական կայսրության ամբողջ շինությունը կխորտակվի: Միակ միջոցը, որ մնում է, հիմնիվեր քանդել ամբողջ շինությունը և բեկորներից կառուցել նորը: Թուրքերն իրենք հիանալի հասկանում են այդ պարզագան, բնազդաբար դիմադրում են բարեփոխումների

---

[1] Das Turkische Reich, von Molbeck, Chesney und Michelsoen, S. 281.

փորձերին՝ բխելու լինեն դրանք ներքին, թե արտաքին ճնշումից: Ուղղափառ օսմանցու ըմբռնմամբ բարեփոխումը Թուրքիայի համար հավասարազոր է վիրաբույժի դանակին անատոմիական սրահում: Տխրահռչակ թանզիմաթներով (11) բարեփոխումների պատմությունը համոզիչ կերպով ապացուցում է Թուրքիայում կառուցողական ջանքերի ամբողջ ապարդյունությունը: Լայնածավալ բարեփոխումների մեծադղորդ հռչակմանը, եվրոպական պետականության սկզբունքների ընդունմանը, անկախ անկեղծության աստիճանից, սկզբից ևեթ ուղեկցում էր լիակատար անզորությունը՝ անցնելու խոսքից գործի և գործուն արմատականության:

Թանզիմաթի հեղինակներ սուլթան Աբդուլ Մեջիդը (12) և Ռեշիդ փաշան (13) կամ նշանավոր Միդհատ փաշան (14)՝ սահմանադրական կարգի կողմնակիցը, անկասկած, լի էին բարի մտադրություններով՝ իրենց հայրենիքը դուրս բերելու զարգացման նոր ուղի: Բայց նրանց ջանքերը խորտակվեցին՝ բախվելով թուրքական քարացածության ժայռերին. նորամուծությունների փորձերը դիտվում էին իբրև հայրենի պետականության հիմքերի դեմ ուղղված ոտնձգություն:

Ինչով էլ որ բացատրելու լինենք թուրքական անշարժությունը, փաստը մնում է ակնհայտ: Անարդարացի կլիներ Թուրքական կայսրության հետամնացության համար մեղքը բարդել, ինչպես որ դա հաճախ է արվում, քաղաքականապես տիրապետող թուրք ժողովրդի մտավոր պակասության վրա: Թուրքական ռասայի բնութագրությունը միշտ չէ որ կիրառելի է ժամանակակից օսմանցիների նկատմամբ: Պատմության մեջ թուրքական ցեղերը ներկայացվում են իբրև անսովոր զորության ավերասփյուռ և խորտակիչ մի տարերք: Մոնղոլիայի տափաստաններից մինչև Ադրիատիկի ափերը սլանում էին պատմության այդ տխրահռչակ բռնաքարիչները մրրիկի նման, իրենց ահեղ ու հաղթական երթով ավերելով քաղաքակիրթ երկրների ու ժողովուրդների դարավոր նվաճումները, չթողնելով ոչինչ, բացի անծայրածիր ավերակներից՝ ծածկված մոխիրներով և հեղված արյամբ: Հենց նրանց մասին կարելի է ասել, որ մռայլ ամբոխով նրանք անցան երկրիս վրայով, «դարերին չնետելով ո՛չ բարեբեր միտք, ո՛չ հանճարի սկսած գործ»:

Այդ իսկական վանդալիզմը յուրահատուկ էր և օղուզների թյուրքական այն ցեղին, որին բախտ վիճակվեց ընդունելու Բյուզանդիայի մեծ ժառանգությունը: Այժմյան օսմանները, ռասայական գծերի բոլոր կայունությամբ հանդերձ, նշանակալիորեն հեռացել են իրենց նախնիներից, առ այսօր էլ շարունակվող միաձուլման գործընթացում ամենատարբեր ծագման ռեր էթնիկական զանգվածի հետ, որով այնքան հարուստ է եղել Առաջավոր

Ասիան և որը ամենևին էլ չի սպառվում առկա ժողովուրդներով, որոնք առ այսօր էլ պահպանել են իրենց ազգային դիմագիծը: Ժամանակակից թուրքը յուրատեսակ էթնիկական բազմախառնուրդ է, որի մեջ օղուզական արյան տոկոսը նույնքան է, որքան ժամանակակից հունգարացիների մեջ՝ հարավռուսական տափաստաններում երբեմն թափառող ուգրերի արյունը: Օսմանյան և ընդհանրապես թուրքի առաջավորասիական տիպը, որքան էլ որ այն տարբեր լինի զանազան վայրերում՝ կախված նրանց ներծծած հին կուլտուրայի արյունից, բայց շատ հեռու է իսկական թուրքական նախատիպից: Նա բավականաչափ փոխվել է, բավականաչափ ազնվացել է ֆիզիկապես իր նախնիների համեմատությամբ, որոնց մոնղոլական անձոռնի դիմագծերը սարսափելի տպավորություն էին գործում (15): Այդ նկատառումներով էլ Թուրքիայի ժամանակակից կացությունը բացատրելիս թուրքի բնական անընդդունակությունը վկայակոչելը չի կարող լուրջ փաստարկ ծառայել:

Նույնքան անարդարացի է նրանց դավանած իսլամը վկայակոչելն իբրև առաջընթացին թշնամական ուսմունք: Սահմեդական պետական իշխանության արատավորությունն ամբողջովին իսլամին վերագրելը նույնքան անթույլատրելի կլիներ, որքան միջնադարյան պապության մեղքերը Քրիստոսի ուսմունքի վրա բարդելը: Ավտոկրատիան ամենուր միտում է ունեցել հենարան փնտրել կրոնի մեջ, դառնալ թեոկրատիա, նրա հաջողությունը չափվում է տվյալ միջավայրի կրոնական ինքնագիտակցության մակարդակով և մտավոր ընդհանուր զարգացմամբ:

Իսլամը պատասխանատու է Թուրքիայի ճակատագրի համար այնքանով, որ դառնալով մի կույր գործիք պետական իշխանության ձեռքին, ծառայում է իբրև զարգացման արգելակ: Սուլթանական կառավարությունը կառչում էր նրանից և նրա անունով սքողում իր բոլոր արատները: Անսխալականության զուտ կրոնական սկզբունքը և սրբազնությունը կրոնի հետ միաձման չափով դրվում էր նաև պետական ու հասարակական հաստատությունների համար: Դրա համար էլ փոփոխությունները պետական հաստատություններում, կառավարման ձևերում դիտվում են իբրև հակակրոնական ակտ, որը համահավասար է ոտնձգության սրբության դեմ: Բարեփոխիչները և բարեփոխությունների կողմնակիցները դրանով իսկ իրենց նկատմամբ պետք է կասկած հարուցել տային իբրև հակապետական գործիչներ ուղղափառ, իսկ իրականում կրոնական տգիտության մեջ քարացած մահմեդականների աչքում:

Օսմանյան պետական իշխանությունը, հիմնվելով բոլոր տեսակի տգիտություններից վատթարագույնի՝ այն է՝ կրոնական խավարամտության

վրա, որը մոլեռանդություն է ծնում, պահպանում է իր հետամնաց գոյությունն ի վնաս երկրի բնական զարգացման:

Նման մի բան Եվրոպան ապրել է կաթոլիկական միջնադարում: Իր կյանքի այդ փուլից նա դուրս պրծավ ռեֆորմացիայի հենցի միջով, որը մաքրազերծեց կրոնական միտքը նրան խորթ բոլոր շերտավորվածքներից: Արևմուտքում ռեֆորմացիոն շարժմանը նախորդեց Վերածնության դարաշրջանը, որն ազատագրեց մարդկային միտքը կաշկանդող կապանքներից և դրանով իսկ նախապատրաստեց կրոնական մտքի ազատագրումը դարավոր նախապաշարումներից ու սնոտիապաշտությունից: Կրոնական հայացքներն իրենց էությամբ պահպանողական են և այդ հատկանիշը խորապես յուրահատուկ է իսլամին: Նրա ռեֆորմացիան հնարավոր է միայն եվրոպական քաղաքակրթության ազատագրական ոգու ճնշման տակ: Այդպիսով, թուրքական իրականության մեջ իսլամը հետադիմական սկզբունք է, որը կասեցնում է եվրոպականության ներթափանցումը Թուրքիա: Մյուս կողմից, իսլամը կարող է դառնալ առաջընթացի լծակ միայն նրա բարեփոխման պայմանով, որը հնարավոր է բացառապես եվրոպական մշակույթի ազդեցության ներքո:

Այդ կախարդական շրջանակի մեջ անիմաստ քարշ են գալիս մահմեդականությունը և նրա սատարած թուրքական պետությունը: Ինչպե՞ս դուրս պրծնել այդ շրջանակից:

Պատասխանը տալիս է բուն Թուրքիայի պատմությունը: Թուրքական տիրակալները հնարավորություն ունեին բարեփոխումների նպատակի համար օգտագործել այն էթնիկական նյութը, որը կազմում էր թուրքերի նվաճած կայսրության մշակութային և տնտեսական հիմքը, և որը մնացել էր այդպիսին նաև նրանց տիրապետության ժամանակաշրջանում: Խոսքը գնում է Թուրքիայի ոչ մահմեդական ժողովուրդների մասին: Հենց նրանք պետք է ծառայեին իբրև եվրոպականության փոխանցողներ թուրքական իրականություն:

Այստեղ մենք մոտենում ենք «հիվանդ մարդու» հիվանդ տեղին: Ներկա պահին շատ դժվար է հաղթահարել թուրքական պետականության պատմության մեջ քրիստոնյա ժողովուրդների նշանակության մասին նախապաշարյալ և սխալ կազմված պատկերացումը, պատկերացում, որը թուրքերի հետ միասին դժբախտաբար բաժանում է նաև եվրոպական դիվանագիտությունը:

Ըստ տարածում գտած կարծիքի, քրիստոնյա ժողովուրդները դիտվում են իբրև թշնամական ուժ, պայթուցիկ նյութ, որոնք պատրաստ են բռնկվել և ներսից պայթեցնել թուրքական պետությունը: Այդ կարծիքը կազմվել է

վերջին ժամանակների իրադարձությունների ազդեցության ներքո, որոնք հարց բարձրացրեցին բարեփոխումների ուղիով բարելավել քրիստոնյա ժողովուրդների կենցաղը կամ ազատագրել նրանց անտանելի վարչակարգի ճնշումից: Քրիստոնեական շարժումը, որը վաղուց է սկսվել, թուրքական իշխանությունների կողմից նրա հանդեպ ճիշտ վերաբերմունքի դեպքում, պետք է խթան ծառայեր նոր շինարարության համար: Հենվելով քրիստոնեական, նոր հովերի հանդեպ ավելի զգայուն տարրերի վրա, թուրքական գործիչները կկարողանային երկիրը դուրս հանել լճացումից և նոր ոգի ներշնչել նրան:

Մինչդեռ, ճակատագրական թյուրընկալմամբ, թուրքական իշխանությունները գերադասեցին ընթանալ իրենց ավելի մատչելի ուղիով, ջանալով ճնշել շարժումը, նոր կյանքի բնական բաղձանքը, կորցնել քրիստոնեական ժողովուրդների վստահությունը և դրանով իսկ զրկել կայսրությունն իր պատմական հիմքից:

Թուրքական կառավարության գլուխ կանգնած անձինք, իրենց մտավոր ու պետական պատրաստությամբ, ընդունակ չէին հասկանալու, թե որպիսի վիթխարի նշանակություն ունեին քրիստոնյա ժողովուրդները թուրքական պետականության կազմավորման գործում: Դրանք առաջնահերթ կարևորության գործոններ են: Ով իր համար չի պարզել Թուրքական հարցի այդ կողմը, նա բնավ երբեք չի ըմբռնի սուլթանների կայսրության բարձրացման և անկման իսկական պատճառները:

Հայտնի է, որ ամեն մի պետական կառուցվածքի համար, առավել ևս զուտ ռազմական բնույթի պետության համար՝ չտեսնված ռազմական հզորությամբ, որպիսին Թուրքիան էր, ամենից առաջ անհրաժեշտ են նյութական մեծ ռեսուրսներ: Սրանք հնարավոր են սոսկ ընդհանրապես երկրի մշակութային ծաղկման հայտնի զարգացման դեպքում: Արդյո՞ք ի վիճակի էին օսմանցի հովիվները, որոնք իրենց հոտերով դեգերում էին և դեռ այսօր էլ չեն խորթացել վաչկատուն կյանքին, ստեղծել պետության համար նյութական և հոգևոր արժեքներ: Օսմանցիները քաղում էին ուրիշի աշխատանքով ստեղծված պտուղները, նրանք օգտվում էին այն ժողովուրդների դարերով կուտակած թանկարժեք պաշարից, որոնցից ժառանգել էին այն վեհապանծ մշակութային տաճարը, որը Բյուզանդիա էր կոչվում: Թուրքերի ռազմական փառքը և տիրապետությունն անհնարին կլինեին առանց այն կապիտալի և արտադրողական ուժերի, որոնցով այնքան հարուստ էր երկիրը ի դեմս հենց իր բնիկ քրիստոնյա ազգաբնակչության:

Սելիմ Ահեղը (16), Սուլեյման Փառահեղը (17)՝ ռազմական ցոլքի այդ անվիճելի գագաթները, կարող էին հայտնվել, որքան էլ որ բարձր լինեն

թուրքերի ռազմական քաջությունը, սոսկ դարավոր մշակութային աշխատանքով պարարտացված գետնի վրա: Ռազմական գործում թուրքական ցեղերի կազմակերպչական ընդունակությունները չի կարելի ժխտել: Բայց ինչպես որ միայն սերմի լավորակությունը դեռևս չի երաշխավորում լավ ծլարձակում, այլ պահանջվում է նաև հարմար հող, այդպես էլ թուրքական ռազմական տաղանդը անպտուղ կլիներ առանց այն մշակութային և տնտեսական հենքի, որի վրա նա ծավալվեց տարերային ուժով:

Շատ վայրերում և վաղեմի ժամանակներից թուրքական ցեղերը փորձել են հիմնել և հիմնել են պետություններ, բայց նրանք աչքի չէին ընկնում ո՛չ կայունությամբ, ո՛չ էլ ազդեցիկ զորությամբ: Նրանց հաջողվեց կազմավորել համաշխարհային սերկու պետություն սոսկ բյուզանդական մշակութային աշխարհի սահմաններում, և ամենևին էլ ոչ այն պատճառով, որ օսմանցիները առավել շնորհաշատ դուրս եկան իրենց ազգակից ցեղերից:

Հաջողության գաղտնիքը թաքնված էր հենց այս անսպառ հարստության դիզվածքում, ստեղծագործ աշխատանքի այն ավյունի մեջ, որը նրանք գտան բյուզանդական ժողովուրդների մոտ և որը նրանք մսխեցին շռայլորեն ու անհոգ կերպով: «Թուրքերը ոչինչ չեն արտադրում,- ասում է Թուրքիայի պատմաբաններից մեկը,- ոչինչ չեն ստեղծում. դրա համար էլ հարստությունները, որոնք նրանք կուտակված գտան նվաճված ժողովուրդների մոտ, այժմ բոլորն արդեն մսխված է, և նրանք աղքատության գիրկն են ընկել, որը, ըստ երևույթին, դեռևս իր վերջնակետին չի հասել»:

Թուրքական տարրը եղել և մնացել է զինվորական կաստա և պետության ռազմական հզորության հիմք: Իսկ քրիստոնյա ժողովուրդները և ընդհանրապես բնակչության ոչ մահմեդական խավերը կազմել են աշխատավոր զանգված, կայսրության տնտեսական բարեկեցության և ֆինանսական ուժերի գլխավոր աղբյուրը:

Ի միջի այլոց, ռազմական գործի վերաբերյալ պետք է լուրջ վերապահություն անել: Ճիշտ է, օրենքով քրիստոնյաները հեռացված էին զինվորական ծառայությունից, բայց նրանք փաստորեն այն կատարում էին շատ ավելի ծանր ձևով, քան իսլամի հետևորդները: Հայտնի է, որ թուրքերի նվաճողական բանակի ուժը հիմնված էր ենիչերիների գնդերի վրա: Բայց ինչը որ հասարակությանը թերևս հայտնի չէ, դա այն է, որ այդ գնդերը համալրվում էին քրիստոնյա երեխաներից, որոնց բռնի և անմարդկային ձևով խլում էին ծնողներից և դաստիարակում մահմեդական ոգով: Զորահավաքը, որ հատուկ տերմինով անվանվում էր դևշիրմե (18), անցկացվում էր հույների, հայերի, բուլղարների, բոսնիացիների և ալբանացիների մեջ: «Բոլոր ծնվողները ծնվում են իսլամի համար»,- հռչակում է թուրքական ասաց-

վածքը: Եվ խլելով քրիստոնյա դժբախտ տղաներին, նրանց այնպիսի կարգապահական բովով էին անցկացնում, որ «նրանք վերահալված արծաթի նման էին դառնում», ինչպես արտահայտվել է XVII դարի թուրք գրող Խոջաբեյը (19), Թուրքական կայսրության անկման պատճառների մասին աշխատության հեղինակը: Ենիչերական զնդերի կազմակերպումը հառնում է սուլթան Օրխանի՝ հարստության հիմնադիր Օսմանի հաջորդի (20), ժամանակներից: Հետևաբար, ենիչերիները գոյություն ունեն օսմանյան պետականության հենց սկզբից: Նրանք նոր ժամանակների առաջին կանոնավոր հետևազորն էին, որին էլ պարտական էր օսմանյան նվաճողական բանակն իր աննախընթաց հաջողություններով: Ակնհայտ է, որ ռազմական գործում էլ քրիստոնեական նյութը «ռազմատենչ» թուրքերի ուժի գլխավոր աղբյուրն էր:

Եթե քրիստոնյա ժողովուրդները ռազմական առումով «վերահալված արծաթ» էին, ապա պետական տնտեսության ասպարեզում նրանք զուտ ոսկի էին: Այդ դրույթն ապացուցվում է ոչ միայն ընդհանուր պատմական բնույթի նկատառումներով, այլև լիովին օբյեկտիվ տվյալներով, ինչպես կտեսնենք, հիմա: Թվում է, թե դա պետք է ընկներ որոշակի պետական քաղաքականության հիմքում: Քրիստոնյաների հովանավորությունը՝ հավասարազոր պետական գանձարանի պահպանությանը, պետք է դառնար ներքին քաղաքականության հիմնական սկզբունքը: Մինչդեռ օսմանյան կառավարությունը, չհասկանալով այդ հասարակ աքսիոման, դարեր շարունակ հետապնդում էր մի քաղաքականություն, որն այնքան կործանարար էր քրիստոնյաների և հավասարապես սեփական պետության համար: Այդ քաղաքականությունը և նրա հետևանքները լավագույնս լուսաբանվում են ըստ հետևյալ պատմական տեղեկանքի:

Թուրքական տիրույթները Առաջավոր Ասիայում կազմված են Անատոլիա, Հայաստան, Սիրիա, Քրդստան և Արաբական Իրաք նահանգներից: Քրիստոնյա ազգաբնակչությունն այդ երկրներում թուրքերից առաջ և հետո հանգում էր երեք հիմնական խմբերի՝ հույն, հայ և ասորի ազգությունների: Այդ խմբերից յուրաքանչյուրը, ճիշտ է, ուներ իր մայր երկիրը, իր հայրենիքը, սակայն նրանք սփռված էին ամբողջ Առաջավոր Ասիայում՝ Բաղդադից մինչև Կոստանդնուպոլիս: Անիրազեկ անձինք հաճախ պնդում են, որ թուրքերի համեմատությամբ քրիստոնյա ժողովուրդները Փոքր Ասիայում եկվոր տարրեր են: Վիտալ Քինեն, Ասիական Թուրքիայի վերաբերյալ ծավալուն, բայց, ցավոք սրտի, շատ պակասավոր աշխատության հեղինակը (21), գովասանքի արժանի եռանդով, հաճախ կատարում է պատմական բնույթի էքսկուրսներ: Անատոլիական գավառների հայերի

անճչությամբ պնդում է, որ նրանք այստեղ են գաղթել առաջին Սեֆյանների, առավելապես շահ Աբբաս I-ի օրոք, XVII դարի սկզբին: Նույն տեսակետն է նա պաշտպանում Բուրսայի և Իզմիտի հայերի առնչությամբ:

Մինչդեռ հայտնի է, որ դեռևս XV դարում Կոստանդնուպոլսի գրավման ժամանակ Բրուսայում հայ եպիսկոպոս էր նստում և նա հայտարարվեց Փոքր Ասիայում բնակվող բոլոր հայերի հովվապետ (22): Ծայրագույն կետ Աղրամեդայում (23) խաչակրաց արշավանքների ժամանակ շուրջ 30.000 հայեր հարեցին խաչակիրներին: Մենք կարող ենք հավատացնել Քինեին և նրա նման մտածողներին, որ ամբողջ փոքրասիական թերակղզու տարածքում չկա մի կետ, որտեղ հայերը չլինեին բնիկ բնակիչներ, հաստատված այնտեղ թուրքերի հայտնվելուց շատ առաջ:

Քինեի խոսքերը կարող են ընդունելի լինել միայն այն իմաստով, որ հայ բնակչությունը Փոքր Ասիայում մշտապես քարմանում էր Հայաստանի բուն նահանգներից ելածների նոր մակընթացությամբ, ընդ որում մեծ մասամբ թուրքական սուլթաններն իրենք էին բռնի արմատախիլ անում իրենց օջախներից և վերաբնակեցնում Անատոլիայի խորքերում՝ ի շահ տնտեսական կյանքի բարգավաճման:

Քրիստոնեական, ավելի ճիշտ, ոչ մահմեդական ժողովուրդների տարաբնակեցումը Անատոլիայում հառնում է մինչև բյուզանդական ժամանակները: Նշված երեք խմբերը կազմում էին Բյուզանդական կայսրության գերակշռող էթնիկական հիմքը: Բյուզանդիայի պատմական վաստակներից մեկն էլ այն է, որ նա առաջինը օրինակ ծառայեց ամենատարբեր ծագման տեր ժողովուրդների բարեկամական համագործակցության՝ բարձրացնելու միասնական պետական կառույցը: Մուտք գործելով այս վեհապանծ կառույցը, թուրքերը ոչ միայն անընդունակ դուրս եկան շարունակելու իրենց նախորդների մշակութային-պետական աշխատանքը, այլև, ընդհակառակը, նմանվելով առակի իմաստուն կենդանուն, սկսեցին կտրատել այն ծառաքները, որոնց վրա հանգչում էր նրանց գոյությունը և բարեկեցությունը: Կրոնական տարբերությունների սկզբունքի վրա հիմնված քաղաքականության հետևանքով ամբողջ երկիրը բաժանվեց միմյանց խորթ երկու ճամբարի՝ մահմեդականների և ոչ մահմեդականների. արհեստականորեն բորբոքվեց թշնամանքը նրանց միջև: Ճիշտ է, եկվոր քոչվորների և հին մշակույթի նստակյաց խավերի միջև առանձնապես բարյացակամություն չէր կարող լինել: Բայց վարչության խնդիրն այն է, որ ընդհակառակը, հաշտեցներ բնական տարընթացության պայմանները, մեղմացներ հակասությունների սուր եզրերը երկու տարբեր արժեքներ ունեցող ուժերի միջև: Թուրքական տիրակալները ենթադրում էին հիմնել իրենց բարեկեցությունը

հենց բնակչության երկու մասերի երկպառակության վրա: Նրանց խորք էր այն տարրական ըմբռնումը, որը երբեմն մատնանշում էին առավել լուսավորյալ թուրքերը: «Մեր պետական իմաստուններից,- ասում է Սիմեդ Ռասիմ էֆենդին (24),- Այլահը ոչ խելք է տվել, ոչ էլ փորձառություն՝ պատմության ընթերցումը նրանց զբաղմունքը չէ», դրա համար էլ նրանք «համոզված են, որ մահմեդական ժողովրդի առաջին և սրբազնագույն պարտքն է աշխարհի երեսից բնաջինջ անել բոլոր անհավատներին»[1]:

Քրիստոնյաների՝ սեփական հպատակների, հալածանքը նրանց չնորհազրկված դրությունից բխող բոլոր հետևանքներով անցնում են Թուրքիայի ամբողջ պատմության միջով իբրև պետական իշխանության բացահայտ կամ գաղտնի խնդիր, այն իշխանության, որի տարրական բնորոշ հատկանիշը համարվում է միատեսակ վերաբերմունքը բոլոր հպատակների նկատմամբ:

Քրիստոնեական երկրները գտնվում էին հարևան մահմեդական ժողովուրդների մշտական սպառնալիքի տակ: Սիրիայի քրիստոնյաների դեմ կանգնած էր մահմեդական Իրաքը, քրիստոնեական Հայաստանի դեմ՝ մահմեդական Քրդստանը և, վերջապես, Անատոլիայում թուրքերն իրենք, միացած տարբեր ծագում ունեցող ասիմիլացված ցեղերին, ճնշում էին հույն, հայ քրիստոնյաներին և նախաթուրքական ժամանակաշրջանի մյուս «հռոմներին»:

Կառավարական իշխանությունը խրախուսում էր կրոնական հակամարտությունը և այն դիտում իբրև միջոց վախի և հնազանդության մեջ պահելու այն տարրը, որը տեղի չէր տալիս հավատափոխության գայթակղությանը և իր դիմադրությամբ իսլամին հավասարապես համարվում էր պետական կյանքի ու ասավածպետական կարգի թշնամի: Կրոնական աշխարհների հակամարտության մեջ կառավարությանը պատկանում էր ոչ թե հաշտարարի, այլ գլխավոր հրահրողի դեր: Դրա հետևանքով երկու ճամբարները դարեր շարունակ կանգնած էին միմյանց դեմ իբրև հակամարտներ՝ ուղղափառներ և գյավուրներ, կառավարողներ և կառավարվողներ, զինվածներ և անզեններ, տերեր և ռայա, շահագործողներ և շահագործվողներ, առանց աշխատելու վայելողներ և աշխատողներ առանց վայելելու, ավերողներ և կերտողներ: Առաջինները համարվում էին հայրենիքի հարազատ զավակներ, վերջինները՝ խորթ զավակներ: Մահմեդականները կոչված են զենք

---

[1] В. Д. Смирнов, Кучибей Гёмурджинский и другие османские писатели XVII века о причинах упадки Турции, С. Петербург, 1873, стр. 31.

շաչեցնելու համնում իսլամի, իսկ քրիստոնյաները սոսկ աշխատավոր խավ են ի փառս իսլամի, փադիշահի ոտքի տակի «փափուկ կարպետ»:

Թե քաղաքական ստորացման և տնտեսական շահագործման ինչպիսի ծանր պայմաններում էր անցնում քրիստոնեական զանգվածների կյանքը Թուրքիայում, կարելի է դատել ֆեոդալական զինվորականության համատարությամբ, որը բացահայտում է խիստ տխուր տեսարան հատկապես քրիստոնյա ազգաբնակչության համար:

Թուրքիայի առաջավորասիական տիրույթները բաժանված էին մի երկու տասնյակ լայնածավալ մարզերի, որոնց գլուխ կանգնած էին ավատատերերը, որոնք կոչվում էին բեյլերբեյներ, այսինքն՝ բեյերի բեյեր: Յուրաքանչյուր մարզ կամ բեյլերբեյություն ենթաբաժանվում էր սանջակների, որոնք կառավարում էին սանջակբեյերը: Սանջակներն իրենց հերթին կտորակվում էին հարյուրավոր և հազարավոր մանր ավատական վիճակների, այսպես կոչված քըլըչի («սուր») (25), որոնք կոչվում էին զեամեթ կամ թիմար, նայած վիճակ-քըլըչի մեծությանը կամ եկամտաբերությանը: Թիմարը վիճակ էր, որը տալիս էր մինչև 20.000 դուրուշի (ասպրի) եկամուտ (26), իսկ զեամեթը՝ ավելին: Մանր վիճակների տերերը ենթարկվում էին սանջակբեյին, իսկ սրանք՝ բեյլերբեյին (27):

Սուլթանները հողեր էին բաշխում իրենց մերձավորներին ի լիակատար տնօրինություն՝ զինվորական ծառայություն կատարելու և ըստ սահմանված պաշտոնական ցուցակի որպես օգնություն՝ հեծյալ զինվորներ տրամադրելու պարտավորությամբ: Հիմա մեզ այդ հատատառությունը հետաքրքրում է ոչ ըստ էության, այլ քրիստոնյա բնակչության նկատմամբ նրա առնչությամբ: Խիստ ցուցանշական է երկրի էթնիկական և քաղաքական ուժերի բաշխումը տվյալ կարգի շրջանակներում: Ամենից առաջ քննարկենք ավատական տիրույթների քանակական հարաբերակցությունը կայսրության մեջ հետաքրքրող մասի տարբեր մարզերում:

1. Անատոլիա բեյլերբեյությունը, որն ընդգրկում էր այժմյան չորս վիլայեթներ՝ Բուրսան կամ Խուդավենդիգյարը, Կաստամունին, Այդինը և Անգորան, բաժանված էր 14 սանջակների և 7311 քըլըչների, զեամեթների և թիմարների:

2. Կարամանիա բեյլերբեյությունը՝ այժմյան Իկոնիա վիլայեթի, Անգորայի վիլայեթի Կեսարիա սանջակի և Ադանայի վիլայեթի Իչիլ սանջակի սահմաններում: Փոքր Ասիայի այդ մասը այդպես կոչվել է Նուրի-Սոֆիի որդի Կարամանի անունով, ծագումով հայ, որն ընդունել է իսլամը և ինքնուրույն իշխանություն հիմնել 1220 թվականին: Այն նվաճվել էր օսմանցիների

կողմից սռսկ 1472 թ. և վերածվել բեյլերբեյության: Կարամանիան հաշվում էր 7 սանջակ և 1620 քըլըչ:

3. Տրապիզոնի բեյլերբեյությունը՝ մոտավորապես այժմյան վիլայեթը Բաթում քաղաքով, ուներ 554 քըլըչ:

4. Ռում կամ Սվազ, համարյա այժմյան վիլայեթը: Այստեղ նույնպես հայ իշխաններից մեկը, որը խլամ էր ընդունել, 1097 թ. Դանիշմանդյանների հարստության հիմքը դրեց (28), որ 1165 թ. տեղի էր տվել սելջուկյանների մի ճյուղին: Այդ բեյլերբեյությունը հաշվում էր 7 սանջակ և 3130 քըլըչ:

5. Էրզրում, այժմյան վիլայեթը Բիթլիսի վիլայեթի Մանազկերտի հետ, կազմված էր 12 սանջակից և 5279 քըլըչից:

6. Կարս, այժմյան Կարսի մարզի Կարսի և Կաղզվանի օկրուգները, ներառյալ Էրզրումի վիլայեթից Բասենը՝ 6 սանջակ և 1206 քըլըչ:

7. Չըլդըր, Կարսի մարզի Օլթիի և Արդահանի օկրուգները, ինչպես նաև Ախալցխայի և Ալեքսանդրապոլի գավառների մի մասը՝ 13 սանջակ և 656 քըլըչ:

8. Վան, այժմյան Վանի և Մուշի սանջակները՝ 13 սանջակ և 1115 քըլըչ:

9. Դիարբեքիր, այժմյան վիլայեթը, Խարբերդի (Մամուրեթ-ուլ-Ազիզ) վիլայեթի Խարբերդ և Դերսիմ սանջակներով, ինչպես նաև Բիթլիսի վիլայեթից Սղերդը (Սեերտ), 19 սանջակ և 730 քըլըչ. այստեղ էին մտնում նաև 5 ինքնավար իշխանությունները:

10. Մարաշ կամ Զուլքադրիա, այժմյան Մարաշ (Հալեպի վիլայեթից), Կոզան (Ադանայից) և Մալաթիա (Խարբերդից) սանջակները՝ 5 սանջակ և 2169 քըլըչ:

11. Հալեպ, այժմյան Հալեպ (Հալեպի վիլայեթից), Ադանա և Ջեբել-բեռեքեթ (Ադանայի վիլայեթից) սանջակները՝ 9 սանջակ և 903 քըլըչ:

12. Շամ, այժմյան Սիրիան, Երուսաղեմը և Լիբանանը՝ 10 սանջակ, 996 քըլըչ:

13. Ռաքքա, այժմյան Ուրֆա սանջակ (Հալեպի վիլայեթից) և Զոր մութեսարիֆությունը՝ 7 սանջակ և 274 քըլըչ:

14. Մոսուլ, այժմյան Մոսուլ սանջակը՝ 6 սանջակ և 274 քըլըչ:

15. Շահրիզոր, ներկայիս Մոսուլի վիլայեթի նույնանուն սանջակը, նաև Վանի վիլայեթի Հաքքյարի սանջակը, մոտավորապես 400 քուրդ ցեղապետներ:

16. Բաղդադ, ներկա Բաղդադ և Բասրա վիլայեթները՝ 18 սանջակ, որոնցից 7-ը ունեին մի քանի քըլըչներ:

Մարզերի առաջին խումբը՝ Անատոլիան և Կարամանիան, որը գրավում է համարյա ամբողջ Փոքրասիական թերակղզին, գերազանցապես մահմեդական բնակչությամբ, հաշվում էր 21 սանջակ և 8931 քըլըչ:

Հողերի երկրորդ խումբը, գերազանցապես հայկական, ուներ 80 սանջակ (ներառյալ նաև հինգ իշխանությունները) և 14.285 քըլըչ:

Երրորդ խումբը, գերազանցապես սիրիական ու քրիստոնեական, ուներ 26 սանջակ և 2552 քըլըչ:

Ի վերջո, չորրորդ խումբը, քրդական և արաբական ցեղերով բնակեցված Միջագետքի տափաստանները, հազիվ էր ճանաչում օսմանյան իշխանությանը. սովորական տիպի բեյլերբեյություններ կային միայն մի քանի խոշոր կենտրոններում, մյուս վայրերը մեծ մասամբ գտնվում էին որևէ վարչակարգի չենթարկվող ցեղապետների տնօրինության ներքո:

Հազիվ թե հարկ կա հիշեցնելու, որ քըլըչների բոլոր տերերը, բոլոր թիմարատերերը, զաիմները, սանջակբեկերը և բեյլերբեյները, թուրքական տարբերակի բոլոր այդ մանր ու խոշոր ավատատերերը բացառապես, իհարկե, մահմեդականներ էին: Այդ յուրատեսակ մանր արքայիկները լիիշխան տնօրինում էին ռայաթի ճակատագիրը: Որքան շատ էին նման տերերը, բնականաբար, այնքան ավելի ծանր էր նրանց տնօրինության ներքո ճնշվող երկրի դրությունը: Որպեսզի հասկանալի լինի քըլըչային կալվածների այդքան անհավասար բաշխման նշանակությունն ու հետևանքները, օգտակար կլինի կանգ առնել բերված տարածքային միավորներից յուրաքանչյուրի եկամուտների պահպանված ցուցակների վրա, որը մեծապես ապացուցական է մեր հիմնական դրույթի համար:

Հօգուտ ավատատերերի Անատոլիայի եկամուտներն ամբողջապես կամ մասամբ կազմում էին մինչև 3.7318.730 դուրուշ, իսկ Կարամանիայինը՝ 10.800.175 հետևաբար, երկու մարզերը տալիս էին 48.110.905 դուրուշ:

Մարզերի հայկական խումբը տալիս էր ընդհանուր առմամբ 83.683.676 դուրուշի գումարը: Ուշադրության արժանի է, որ միայն Վանը տարեկան վճարում էր 25.079.000 դուրուշ, Սվազը՝ 13.187.327, Դիարբեքիրը՝ 11.400.000, Էրզրումը՝ 5.906.920, Կարսը՝ 9.004.119, Չըլդըրը՝ 9.686.000, Մարաշը՝ 9.420.310:

Հողերի սիրիական խումբը մուծում էր մինչև 14.271.721 դուրուշ ընդ որում Շամը՝ 6.558.000, Հալեպը՝ 7.713.121:

Մարզերի չորրորդ կամ Միջագետքյան արաբա-քրդական խմբից Մոսուլը վճարում էր 2.240.000 դուրուշ, իսկ Շահրիզորի ու Բաղդադի եկամուտները գտնվում էին պետական վերահսկողությունից դուրս և գնում էին նստակյաց ու վաչկատուն ցեղերի անհնազանդ պարագլուխների օգտին:

Իսկ ի՞նչ են ցույց տալիս այդ թվերը: Նրանք աղաղակում են մարզերի անհավասար ծանրաբեռնման դեմ, ամբողջ ծանրությունը քրիստոնեական հողերի վրա բարդելու դեմ: Իսկապես, հայկական և սիրիական մարզերը միասին վերցրած իրենց տարածքով հազիվ էին կազմում թուրքական առաջավորասիական տիրույթների մեկ երրորդը, նրանց տարածքը հավասար է հարևան մահմեդական խմբերից յուրաքանչյուրին, մի կողմից Անատոլիայից և Կարամանիայից, իսկ մյուս կողմից՝ Միջագետքի հողերին: Իսկ հարկման չափով հայկական-սիրիական հողերը նշանակալիորեն գերազանցում են մահմեդականներին, առաջիններից գանձվող եկամուտները հասնում էին մինչև 100 միլիոն դուրուշի, իսկ վերջիններից՝ հազիվ էր հասնում այդ գումարի կեսին: Միայն հայկական մարզերը վճարում էին մինչև 84 միլիոն, որից 25 միլիոնն ընկած էր Վանի և Մուշի, այսինքն՝ զուտ հայկական շրջանների վրա: Մի խոսքով, քրիստոնեական հողերը գրավում էին եռակի փոքր տարածք, քան մահմեդականներինը, բայց վճարում էին կրկնակի ավելի:

Այս պարագան ամենևին չի կարող բացատրվել և արդարացվել հողերի մեկը մյուսի նկատմամբ ունեցած առավել բերրիությամբ կամ հողի գնվիտների, ընդհանուր առմամբ պիտանի չէ բարձրարժեք ցանքսերի համար և այդ առումով զիջում է ոչ միայն Միջագետի բերրի տարածքներին, այլ նույնիսկ Անատոլիական սարահարթի շատ շրջանների: Ծանր հարկազանձումը բացատրություն է գտնում միայն հողերի էթնիկական առանձնահատկություններով՝ մեկը բնակեցված է քրիստոնյա ժողովուրդներով, մյուսը՝ մահմեդականներով: Առաջինները դատապարտված են շահագործման ավելի մեծ չափով, քան վերջինները:

Հատկապես ծանր էր հայկական հողերի շահագործումը: Մինչև 80 խոշոր և շուրջ 14.000 մանր ավատատերեր ազրուկի պես մխրճվել էին հայկական մարմնի մեջ, ընդ որում խրախուսված պետական իշխանության կողմից: Երկրի համար ուժերից վեր այդ բեռը պետք է տաներ նրան աղքատացման, հյուծման և դարերի ընթացքում աշխատանքով կարգի բերված տնտեսության վերջնական քայքայման:

Այդ առավել ևս անխուսափելի էր, քանզի ավատատերերի դերում առաջ էին քաշվում այնպիսի տարրեր, որոնք շատ և շատ ավելի ցածր էին կանգնած երկրի մշակութային-տնտեսական մակարդակից և ունակ չէին ոչ միայն բարձրացնելու տնտեսական կյանքը, այլ նույնիսկ պահպանելու այն առկա դրության մեջ:

Օսմանյան սուլթանները Հայաստանում կալվածներ բաշխում էին գրեթե բացառապես քուրդ ցեղապետներին, հաճախ ժառանգական տիրակալման իրավունքով: Ցեղապետների ետևից ձգվում էին քոչվոր ցեղերն իրենց հոտերով: Սուլթանների կամքով երկրագործական երկիրը կանգնում էր հետընթացի և նախնադարյան կացության՝ քոչվորական հովվական կյանքի վերադարձի, ուղու վրա, որն անխուսափելիորեն իր հետ բերելու էր երկրի մշակութային և տնտեսական կյանքի քայքայում:

Բարեբախտաբար, քրդերը Հայաստանում ապրում են ամենևին էլ ոչ անհիշելի ժամանակներից, ինչպես որ սովորաբար պնդում են քիչ իրազեկ անձինք, երկրամասի պատահական այցելուները, մեծ մասամբ զանազան տերությունների քաղաքական գործակալները: Հայ-քրդական հարաբերություններին մենք կանդրադառնանք ստորև (29): Այստեղ բավարարվենք մատնանշելով, որ քրդերի Հայաստան գաղթելու սկիզբը, իսկն ասած, հասնում է Սելիմ I-ի ժամանակները, երբ Չալդրանի ճակատամարտից հետո (1514 թ.) սուլթանը տիրացավ Հայաստանի մեծ մասին և կառավարիչ նշանակեց քուրդ Իդրիսին (30): Այդ քրդի ազդեցության ներքո հիմք դրվեց քրդերի հովանավորության քաղաքականությանը՝ նրանց տրամադրելով ավատատիրական իրավունքներ մասամբ նրանց կողմից զավթված, մասամբ էլ սուլթանների կողմից զիջված հողերի վրա: XVI դարի սկզբից թուրքական իշխանությունների աջակցությամբ ուժեղանում է քրդական ցեղերի ներթափանցումը Հայաստան:

Առաջ մղելով քրդական տարրը Հայաստանում, արաբականը՝ Սիրիայում և թուրքականը՝ Անատոլիայի մարզերում, օսմանյան կառավարությունը գիտակցաբար հետամուտ էր մահմեդականների տիրապետության հաստատմանը քրիստոնյա ռայաների վրա: Եթե ոչ բուն սկզբունքում, ապա անվիճելիորեն նրա կիրառման մեջ էլ արմատացած է այն չարիքը, որից կործանվում է Թուրքիան: Ճիշտ հասկացված պետական շահերը չեն կարող հաշտվել այն անհեթեթ դրության հետ, որի դեպքում անքաղաքակիրթ ցեղերը, որոնք լճացել են հովվական կենցաղի փուլում, գրավեն պետական շինության վերին հարկերը, իսկ քաղաքակիրթ երկրագործական և արդյունաբերական ազգաբնակչությունը քշվի նկուղները:

Այդպիսի կարգը դատապարտված է տապալման: Եվ կամ էլ կարող է դիմանալ՝ քաղաքակիրթ խավերի աստիճանական վայրենացման և մինչև վայրագ վերևների մակարդակը իջնելու դեպքում: Օսմանյան քաղաքականությունը գերադասում էր այս վերջին հնարավորությունը և իր առջև խնդիր էր դնում հետևողականորեն բուլացնել և անզորացնել քրիստոնյա բնակչությանը: Այդ քաղաքականության ոգեշնչողները՝ պետական մտածողու-

թյունից զուրկ մարդիկ, իրենց հաշիվ չէին տալիս, որ հետապնդելով քրիստոնյաներին քաղաքականապես և տնտեսապես, իրենք խարխլում են պետական կեցության տնտեսական հիմքերը, բնաջնջելով նրանց՝ ոչնչացնում ժողովրդի հարստության աղբյուրը: Ոչ թե քրիստոնեական ժողովուրդները, ինչպես պնդում են թուրքերը և նրանց նմանները, այլ իրենց՝ թուրքերի հակաքրիստոնեական գաղափարախոսությունը Թուրքիան տարել է և տանում է դեպի կործանում:

Քրիստոնյաների նշանակությունը Թուրքիայում հաշվի չի առնված դեռ էլի մեկ ուրիշ առումով, այն է՝ իբրև եվրոպական քաղաքակրթությունը Թուրքիա փոխադրելու լավագույն հիմնակետի: Որքան էլ որ երկար շարունակվելու լինի «հիվանդ մարդու» հոգեվարքը, հայտնի է, որ նրա հետագա գոյության հարցը շատ սուր է դրված՝ պատմական պահը հրամայականորեն պահանջում է կամ կանգնել քաղաքակիրթ պետությունների շարքը արմատական վերափոխումների միջոցով, կամ իջնել տերությունների թատերաբեմից: Թուրքիայի բոլոր փորձերը՝ դեն նետելու իր կեցության հնամաշ ձևերը, մինչև հիմա անհաջող ավարտ են ունեցել: Թուրքիայի վերակառուցումը հնարավոր և արդյունավետ է թվում միայն այն դեպքում, երբ այդ գործի մեջ ներգրավվեն քրիստոնյա ժողովուրդների կուլտուրական տարրերը, որոնք մինչև հիմա հեռու են վանվել: Նրանց միջոցով էլ հնարավոր է Թուրքիայի եվրոպականացումը: Չէ՞ որ Թուրքիայի քրիստոնյաները նախկին բյուզանդացիներ են, մեծագույն մշակույթի, ժամանակակից քաղաքակրթության հիմքի կերտողներ: Եվրոպական քաղաքացիականությունը նրանց հարազատ է նույնքան, որքան այն խորթ է թուրքերին: Կյանքի նոր ձևերի ընկալման աստիճանը յուրաքանչյուր ժողովրդի համար կանխորոշվում է նրա պատմական ուղեբեռով: Թուրք-թաթարները, որոնց պատմական բեռը կազմված է յաթաղանից և հովվի փոկավոր տոպրակից, չեն կարող հարազատանալ արևմտյան քաղաքացիականությանը այնպիսի հեշտությամբ, ինչպես որ այն յուրահատուկ է նրանց հարևան քրիստոնյաներին: Քրիստոնեական աշխարհներից յուրաքանչյուրը՝ հունականը, հայկականը, ասորա-արաբականն ունի իր մշակութային հնությունը հոգևոր արժեքներով, որոնց մնացուկները նրանք դուրս են բերել թուրք-թաթարական տիրակալության հրի ու արյան ծովից և նրանով դատապարտել ու պահպանել իրենց ոգու մշակութային տարրողունակությունը: Շնորհիվ այդ առանձնահատկությունների, քրիստոնեական ժողովուրդները պատրաստի մարմիններ էին ներընկալելու համար այն եվրոպական էլիքսիրը, որով պետք էր առողջացնել թուրքական զառամյալ պետականությունը: Հիրավի, պետք է զարմանալ Թուրքիայում քրիստոնյա ազգությունների կենսունա-

կության վրա, որոնք չնայած թուրքական վարչակարգի դժնիությանը, ամեն տեսակի հալածանքներին, բոլոր մշակութային նախաձեռնումներում և նվաճումներում մահմեդական զանգվածի առջևից էին ընթանում:

Երկրի վերածնությունը կատարվում է ո՛չ սովորական կարգախոսների հռչակումով, ո՛չ աղմկալի ճառամարտություններով: Բարենորոգիչների ջանասիրությունը, եթե այն անկեղծ էր, պետք է ուղեկցվեր թեկուզև քրիստոնյա ժողովուրդների մոտ սկսված բնական շարժմանը նպաստելու պատրաստակամությամբ: Թվում է, թե վերանորոգչի խնդիրը պետք է այն լիներ, որպեսզի խրախուսեր քրիստոնյաների եռանդը, դուրս բերեր նրանց ազգային կյանքի շրջանակներից պետական թափի գործունեության ասպարեզ:

Օսմանյան իմաստունները, սակայն, հակառակ քաղաքականություն էին վարում. քրիստոնյաների զարգացման մեջ նրանք վտանգ էին տեսնում պետության համար, և նրանց դեմ ուղղված միջոցառումները դառնում էին կառավարության ծրագրային խնդիրը: Որ քրիստոնեական ժողովուրդները Թուրքիայում նոր հովերի առաջամարտիկներ էին, դրանում դժվար չէ համոզվել թեկուզև հայերի մեջ մտավոր շարժման պատմությամբ: Ժամանակակից առաջընթացի մեծագույն լծակները՝ գրատպությունը, մամուլը, նոր դպրոցը և կրթությունը թուրքական քրիստոնյաների սեփականությունը դարձան շատ ավելի վաղ, քան դրանց կարևորությունը հասավ բուն թուրքերի գիտակցությանը:

Ինչպես հայտնի է, մահմեդական տպարան ստեղծելու առաջին փորձերը վերաբերում են XVIII դարի սկզբին և այդտեղ էլ նախաձեռնողը թուրք չէր: 1727 թ. մի հունգարացի հավատափոխ, ընդունելով իսլամ և զարդարելով իրեն Իբրահիմ անունով, համոզեց թուրքական կառավարությանը տպագրական արվեստի օգտակարության մեջ և Ստամբուլում առաջին տպարանի հիմքը դրեց: Ուլեմաները, իհարկե, ընդվզեցին դիվային նորամուծության դեմ, և կառավարությունը մեծ ջանքեր թափեց զսպելու իսլամի ազետ սպասավորների ըմբոստությունը և պահանջվեց շեյխ-ուլ-իսլամի եւույթը հատուկ ֆեթվայով, որպեսզի ուղղափառ մահմեդականները հաշտվեին նոր ժամանակների մեծագույն գյուտերից մեկի անվնասության հետ:

Իբրահիմի մահվամբ տպարանը փակվեց՝ լույս ընծայելով ընդամենը 18 գիրք: Կեսդարյա ընդմիջումից հետո այն նորից բացվեց 1783 թ. և մինչև XIX դարի կեսերը նրա աշխատանքը սահմանափակվեց ոչ ավելի 90 հրատարակություններով (31):

Եթե այժմ անցնենք քրիստոնյաներին, ապա մեր առջև այլ պատկեր կբացվի: Մի կողմ թողնենք հույներին և մյուս քրիստոնյաներին և կանգ առնենք հայերի վրա: Տպագրական դազգահը հայերի մոտ բուն Կոստանդ-

նուպոլսում աշխատում էր դեռևս 1567 թվականից (32), Զմյուռնիայում՝ 1759 թվականից, իսկ Թուրքիայի սահմաններից դուրս հայկական տպարանները բազմաթիվ էին և կային համարյա բոլոր եվրոպական մշակութային կենտրոններում:

1512 թ., այսինքն՝ գրատպության գյուտից մի քանի տասնամյակ անց, Վենետիկում լույս աշխարհ եկավ առաջին հայկական տպագիր գիրքը: Այդ պահից սկսած սկսեցին տպարաններ հիմնադրվել նաև մյուս կենտրոններում, որի հետևանքով խիստ հազեցած հոգևոր կյանքը ստացավ վիթխարի զարգացման հեռանկարներ: XVII դարում հայկական տպագրությունը գործում էր Լվովում՝ 1616 թ., Հռոմում՝ 1623 թ. (33), Միլանում՝ 1624 թ., Լիվոռնոյում՝ 1643 թ., Պադուայում՝ 1690 թ., Ամստերդամում՝ 1660 թ., Մարսելում՝ 1673 թ., վերջապես Պարսկաստանում՝ Սպահանի մոտ ստեղծված հայկական Ջուղա կենտրոնում 1640 թ.: Հաջորդ XVIII դարում տպարաններ հայտնվեցին Լոնդոնում՝ 1736 թ., Մադրասում՝ 1772 թ., Տրիեստում՝ 1778 թ., Պետերբուրգում՝ 1783 թ., Դոնի Նախիջևանում՝1791 թ., Աստրախանում՝ 1796 թվականին (34):

Հայկական պարբերական մամուլը ևս ավելի հին է, քան թուրքականը: Սկսած 1795 թ. (35) այն գոյություն ուներ տասնյակ տարիներ, երբ 1832 թ. Կոստանդնուպոլսում սկսեց լույս տեսնել առաջին թուրքական լրագիրը՝ «Թագվիմը վագայի»-ն, հայերեն լեզվով զուգահեռ հրատարակությամբ (36): Ներկայումս, չնայած գրաքննչական ծանր պայմաններին, հայկական մամուլը և՛ քանակապես, և՛ որակապես հաջողությամբ մրցակցում է թուրքականի հետ, թեև վերջինիս մեծ մասամբ նպաստավորվում է կառավարական վարկերով:

Ժողովրդական կրթությունը երբեք չի եղել թուրքական կառավարության հոգատարության առարկան. այն թողնված է ազգերի հոգևորականությանը: Միայն 1845 թ. կառավարությունը փորձեց վերափոխել դպրոցական գործը սեկուլյարիզացիայի ոգով և եվրոպական մանկավարժության հիմունքներով: Սուլթանի ֆերմանով կազմվեց հանձնախումբ՝ նոր դպրոցի կանոններ մշակելու համար: Որքան էլ տարօրինակ է, հանձնախմբի գլուխ դրվեց շեյխ-ուլ-իսլամը: Պարզ է, որ նման պայմաններում խելքը գլխին ոչինչ չէր կարելի սպասել հանձնախմբից: Փաստ է, որ առ այսօր էլ թուրքերը չեն կարող պարծենալ եվրոպական տիպի դպրոցներով:

Մինչդեռ 1845 թվականից էլ շատ առաջ հայերն ունեին օրինակելի ուսումնական հաստատություններ ոչ միայն Թուրքիայից դուրս՝ Վենետիկում, Փարիզում, Մոսկվայում, Կալկաթայում, Մադրասում, այլև հենց Կոստանդնուպոլսում և Զմյուռնիայում: Արտասահմանյան հայկական դպրոց-

ներում մեծ մասամբ ուսանում էին թուրքահայեր, որոնք, տարիներ անց, հարուստ գիտելիքներով վերադառնում էին հայրենիք՝ պատրաստ գործելու հասարակական և պետական կյանքի ցանկացած ասպարեզում: Հասկանալի է, թե ինչու բժշկական, իրավաբանական, փաստաբանական, գրական, հրապարակախոսական ազատ պրոֆեսիաները գտնվում էին հայերի և հույների ձեռքին: Զարմանալի չի նաև, որ գիտելիքներ պահանջող ատիճանավորական պաշտոնները հարկադրաբար տրամադրվում էին և հայերին: Չենք ասում թուրքական թատրոնի մասին, որը հիմա էլ պահպանվում է հայերի և ընդհանրապես քրիստոնյա ուժերի շնորհիվ (37):

Թուրքական և հայկական հաջողությունների նման հարաբերակցություն նկատելի է նաև մյուս բնագավառներում: Առևտրի և արդյունաբերության մեջ, բանկային գործառնություններում, արհեստներում գլխավոր դեմքերը քրիստոնյաներն էին ընդհանրապես և հայերը մասնավորապես ինչպես անցյալում, այնպես էլ նոր ժամանակներում: Հաղորդակցությունը Եվրոպայի հետ նրանց հնարավորություն էր ընձեռում արագորեն հարմարեցնել հին ապարատները նոր պայմաններին: Այսպես կոչված սառաֆները՝ լումայափոխները, ովքեր ունեին կորպորատիվ կազմակերպություն, ինչպես հայտնի է, ժամանակին սպասարկում էին դրամական շուկայի բոլոր կարիքները և նոր իրադրության մեջ վերածվեցին բանկիրական հաստատությունների: Մինչև օսմանյան պետական բանկի («Բանկ Օտտոման») հիմնումը անցյալ դարի կեսերին (38), Թուրքիան այլ բանկային հիմնարկություններ չգիտեր, բացի հայ և հույն սառաֆներից. հենց նրանք էին շրջանառու միջոցներով մատակարարում առևտրա-արդյունաբերական ձեռնարկությունները, նրանք էին վարկ տրամադրում կառավարությանը և նրա գերտեսչություններին, հաճախ տարբեր նահանգների պետական եկամուտների գրավականի դիմաց, իսկ քանի որ վերջիններս սովորաբար վճարվում էին բնամթերքով, ապա նրանք ստիպված էին լինում զբաղվել նաև ապրանքափոխանակությամբ, ներմուծումով և արտահանումով:

Արդյունաբերության շատ ճյուղեր, ինչպես օրինակ մահուդի, մետաղագործական, բոժոժից թել քաշելու, իրենց զարգացմամբ պարտական էին բացառապես հայերին, նրանց նախաձեռնող ոգուն: Այսպես կոչված Բուրսայի մետաքսե ասեղնագործվածքները, որոնք մեծ հաջողություն ունեին եվրոպական շուկաներում, արտադրվում էին հայկական ֆաբրիկաներում: Զարմանալի չէ, որ նույնիսկ դրամահատարանը, ինչպես և վառոդի գործարանները գտնվում էին երկու հայկական ընտանիքների ժառանգական տնօրինության ներքո (39): Նրանցից մեկը, Տատյանները, ովքեր առաջինը հիմնեցին վառոդի գործարան Կոստանդնուպոլսում սուլթան Սելիմի

օրոք (40), հետագայում սև երախտամոռության զոհ դարձան պալատական խարդավանքների հետևանքով (41):

Առավել ևս նկատելի էր հայկական ձեռքը արհեստագործության մեջ: Սառաֆների կողքին Կոստանդնուպոլսում գոյություն ունեին էսնաֆներ՝ արհեստավորական համքարություններ: Նրանց մեջ հայկական կազմակերպությունները նկատելի էին և՛ իրենց անդամների թվով, և՛ մասնագիտությունների որակով: Անցյալ դարի կեսերին հաշվում էր մինչև 70 արհեստավորական մասնագիտություն, որոնցով զբաղվում էին հայկական կորպորացիաները և նրանցից շատերը կազմում էին բացառապես հայերի մասնագիտությունը: Հայերի տեխնիկական ուժերը ամբողջ Առաջավոր Ասիայում հայտնի են և վկայված շատ ճանապարհորդների կողմից:

Ինչ վերաբերում է արվեստներին, ապա այդ ասպարեզում ստեղծագործում էին դարձյալ գերազանցապես քրիստոնյա ժողովուրդների ներկայացուցիչները: Հայերի ներդրումը շատ էական է: Բավական է մատնանշել, որ շինարարական արվեստի լավագույն հուշարձանները Ստամբուլում՝ Բեյլերբեյի, Չրաղանի, Դոլմաբախչեի պալատները, Բոսֆորի այդ գեղակերտները կառուցել են հայ ճարտարապետները (42): Նրանց են պատկանում նաև շատ պալատների ներքազեղ զարդանկարները: Անգամ Թոփհանեի մզկիթը գյավուր հայի ստեղծագործություն է (43):

Թուրքիայի մտավոր շարժման մեջ իրենց առաջատար երթով հայերը պարտական էին գերազանցապես իրենց գաղութային ուժերին: Այդ դրսից գործող ուժերը, դույզն իսկ ասած, այն հայկական պոտենցիալն էր, որն անբարենպաստ ժամանակներում, անտանելի սուր պահերին դուրս էր քափվել Թուրքիայի սահմաններից: Այն պահից ի վեր, ինչ Հայաստանը դարձավ թուրք-թաթարական հորդաների սանձարձակության թատերաբեմ, կյանքի պայմաններն առավել նպաստում էին ավազակային կրքերի ծաղկմանը, քան խաղաղ աշխատանքին: Ունևոր դասակարգերը, քաղաքային բնակչությունը, ովքեր առավել էին ենթակա բռնության ու կողոպուտի, հարկադրված էին փրկել իրենց և իրենց խնայողությունները օտար երկնքի տակ: Բնական է, որ նրանք ամենից առաջ գաղթեցին այն վայրերը, որոնք նրանց հայտնի էին նախկին և ժամանակակից առևտրական հարաբերություններից: Կիլիկյան թագավորության անկումից հետո հայկական կապիտալը ուղղվում է Ջենովա, Վենետիկ, Դրիմ, իսկ հաջորդ դարերում այն հաղորդակցվում է առևտրաարդյունաբերական աշխարհի բոլոր խոշոր շուկաներին, առաջ են գալիս մի շարք ոչ մեծ, բայց ծաղկուն գաղութներ, Արևմուտքի և Արևելքի միջազգային հաղորդակցության կենտրոններում:

Հայկական գործունեության այս կողմը սերտորեն կապված է համաշխարհային ընդգրկում և նշանակություն ունեցող խնդիրների հետ: Հայերի հանդես գալը համաշխարհային շուկաներում՝ նոր ոգու այդ հալոցներում, որոնք ժամանակակից քաղաքակրթության հիմքը դրեցին, ամրապնդում է հայերի նշանակությունը որպես գործոնի, որը մասնակցել է նոր աշխարհի ծննդյան երկունքին, որքանով որ նրա վրա արտացոլվել է Արևմուտքի և Արևելքի փոխհարաբերությունը:

Եվրոպայի հետ ասիական առևտրի պատմության մեջ անաչառ հետազոտողը պարտավոր կլինի խիստ պատվավոր տեղ հատկացնելու հայերին և գնահատելու նրանց կուլտուրաբեր նշանակությունը նրանց առևտրական հանճարի հարկ եղած ըմբռնումով, առանց որևէ նախապաշարմունքի, որը յուրահատուկ է մարդկային առաքինության այն փարիսեցիներին, ովքեր շինծու ծամածռությամբ շրջվում են «վաճառական» հայերից, հաճախ իրենք լինելով նրանց անցանկալի մրցակիցները նույն ասպարեզում: Հարևանցիորեն նշենք, որ XVI-XVII դարերում հայկական գաղութները և նրանց առևտրական գրասենյակները ցանցի պես սփռված էին բոլոր կարևորագույն շուկաներում, սկսած Ճավայից և Սումատրայից և անգամ Ֆիլիպինյան կղզիներից մինչև Մարսել, Ամստերդամ և Մանչեսթր: Այդ ցանցի թելերը միանում էին Հայաստանում, մասնավորապես Արաքսի ափին գտնվող Ջուղա փոքրիկ քաղաքում: Այդ վայրի այժմյան անմխիթար տեսքը (Երևանի երկաթուղու ամենավերջին կայարանը) կարծել չի տալիս, որ ժամանակին այն եղել է համաշխարհային առևտրի հանգուցակետ (44): Նրա երբեմնի վեհության մասին վկայում է սոսկ լայնածավալ ու լռռումունջ գերեզմանատունը: Ծաղկուն քաղաքը, պարսից շահերի նախանձի առարկան, XVII դարի սկզբին, ինչպես արմատախիլ արված ծառ, փոխադրվեց Պարսկաստան: Նոր Ջուղան, շահերի մայրաքաղաք Սպահանի մոտ, ծաղկեց նոր և առավել փարթամ ծաղկի պես, վայելելով շահ Աբբասի հովանավորությունը, որը, ասես կամենալով քավել իր անլուր չարագործությունները հայերի և Հայաստանի նկատմամբ, ուշադրություն էր դարձնում և սատարում նրանց ձեռնարկումներին: Ավելի ճիշտ, ազահամոլ շահին առաջնորդում էին սեփական պետության շահերը, որում նա կարող էր համոզվել շուտով տեսնելով ոսկու առատ հոսքը դեպի շահական գանձարանը. «Մեկ հայը ինձ ավելի շատ հարկ է վճարում, քան տասը մահմեդականը»[1]:

---

[1] I. Th. Krusinski, Prodromus ad Tragicam vertentis belli Persici historiam, Deopoli, 1740, p. 80.

Ասիական առևտրի շուկաներին տիրանալու իրենց ձգտման մեջ հոլանդացի և անգլիացի գործարար վաճառականները դիմում էին հայերի աջակցությանը և ամեն կերպ հրապուրում նրանց իրենց նոր տիրույթները: Արտակարգ բնութագրական է Արևելահնդկական ընկերության տնօրենի 1691 թ. պատվերը, որով հանձնարարում է Հնդկաստանում ընկերության կառավարիչներին «ներգրավել հայերին, փորձված վաճառականներին, ովքեր այնքան շատ են նպաստել առևտրի զարգացմանը Հնդկաստանում, Պարսկաստանում և ամբողջ Ասիայում: Նրանց հատուկ թաղամաս տրամադրել Մադրասում, որտեղ նրանք կկարողանային ապրել ըստ իրենց սովորույթների և կառուցել եկեղեցի: Այդ արվարձանը կարելի կլիներ անվանել Ջուղա` շահ Աբբասի օրինակով, որը նրանց գաղթեցրել էր իրենց հայրենիքից Սպահան: Այդ հայերը հարուստ ժողովուրդ են և ամենափորձված վաճառականներն աշխարհում: Նրանց վստահություն ներշնչելու համար անհրաժեշտության դեպքում կարելի է նրանց իրավունք տրամադրել մասնակցելու քաղաքի կառավարմանը: Այսուհետև միայն անգլիացիներին չէ, որ իրավունք է տրվում ընտրյալ լինելու քաղաքային գործերի քննարկման ժամանակ, այլ նաև հայերին և մյուս օտարերկրացիներին: Աշխատասեր հայ ժողովուրդը վաղուց և մեծապես իր վրա է հրավիրել Լոնդոնի հասարակության ուշադրությունը: Հայտնի է, որ նրանք առևտուր անում են սեփական միջոցներով, գործում են Հնդկաստանի բոլոր գլխավոր շուկաներում, որտեղից արտահանում են ամենաթանկ արտադրանքներ»[1]:

Այդ խոսքերը լավագույն գնահատանքն են հայերի առևտրական գործունեության: Նրանց անբասիր ազնվությունը և բարձր վարկը ընդգծված է XVII-XVIII դարերի շատ ճանապարհորդների կողմից: Նրանցից մեկը, ծագումով անգլիացի, հայ վաճառականին տված փայլուն գնահատականի մեջ (45) նրան անվանում է «ջենթլմեն բոլոր առումներով»[2]:

Ահա այդ «առևտրական ջենթլմենները»` նետված օտար երկրներ, ստիպված էին այնտեղ ստեղծել մշակութային արժեքներ: Նրանք էլ դարձան հայերի վերածննդի նախակարապետները: Օտարության մեջ նրանք չէին կորցնում հոգևոր կապերը իրենց հայրենիքի հետ: Նրանց հիմնադրած գաղութներն իրենցից ներկայացնում էին յուրահատուկ լուսարձակ փարոսներ, որոնք հեռվից լուսավորեցին իրենց մայր-երկիրը` խավարի մեջ թաղված Հայաստանը: Առևտրական կարավանների բացած ուղիներով երկիր

[1] John Bruse, Annals of the honourable East-India Company. III, 111, and II, 617, London, 1810.

[2] R. Ker Porter, Travels in Gergia, Persia, Armenia, Ancient Babylonia, during the years 1817 to 1820, London, v. 1, 1821, p. 424.

էին ներթափանցում նոր հովեր և նոր գաղափարներ: Արթնանում էր ազգային ինքնագիտակցությունը, որը և մղում էր համապատասխան մշակութային ձեռնարկումների: Դրա հետևանքով հայերը ոչ միայն Թուրքիայից դուրս, այլև այնտեղ ընթանում էին թուրքերի առջևից՝ առաջընթացի և ժամանակակից քաղաքակրթության պտուղները յուրացնելու ուղիով: Այդ նույն ժամանակ, երբ ուղղափառ մահմեդականն անհոգ ննջում էր մինարեթից եկող դայլայլների հնչյունների ներքո, հայերի տագնապալից ձայնը հեռավոր երկրներից շաչում էր իբրև կոչնակ կոչելով հայրենակիցներին դեպի նոր լույս, նոր կառուցումներ:

Փոքրիկ ժողովրդի հերոսական մաքառումը չբերեց նրա նվիրական նպատակների իրականացմանը. թուրքական բանտը զրկում էր նրան Աստծո լույսից, նրա գլխին կախված թուրքական յաթաղանը նրան ընդարմացման մեջ էր պահում: Այժմ Հայաստանն ամբողջովին արյունաշաղախ իր զավակների արյունով, դատ ու դատաստան է պահանջում հանդեպ իր դարավոր դահիճների, իրավունք է պահանջում իր երջանկության դարրինը լինելու համար...

# ԹՈՒՐՔԻԱՅԻ ԱՆԴԱՄԱՀԱՏՈՒՄԸ

Կարգախոսներից մեկը (1), որի ներքո ընթանում է Համաշխարհային պատերազմը, փոքր ժողովուրդների ազատագրումն է ինքնորոշման սկզբունքի հիման վրա: Հայտնի է, որ ոչ մի պետության մեջ չկան այնքան ճնշված ժողովուրդներ, որքան Թուրքիայում և ոչ մի տեղ նրանց ճնշումը չի հասցված այնպիսի սարկացման, որքան սուլթանի իշխանության տակ: Հասկանալի է նաև, որ պատերազմի արդյունքները ամենից առաջ իրենց պետք է զգացնեն տաճ Թուրքիայում. նրա նկատմամբ պետք է կիրառվի ինքնորոշման ազատագրական իրավունքը:

Ականավոր պետական գործիչները, հենց նրանք, ում ձեռքին է այժմ գտնվում պատերազմական աշխարհի ճակատագիրը, արդեն հռչակել են իրենց դատավճիռը սուլթանի տիրույթների նկատմամբ: Անցյալ 1917 թ. դեկտեմբերի 23-ին իր կառավարության անունից Լլոյդ Ջորջը կարևոր հայտարարություն արեց պատերազմի նպատակների մասին: Թուրքիայի առնչությամբ այդ հաղորդագրության մեջ ասված է. «Մենք չենք վիճարկում Թուրքական կայսրության պահպանումը թուրքերով բնակեցված երկրներում Կոստանդնուպոլիս մայրաքաղաքով. «նեղուցները պետք է չեզոքացվեն և միջազգայնացվեն», բայցևայնպես մենք գտնում ենք, որ պետք է ճանաչվի Արաբիայի, Հայաստանի և Միջագետքի ազգային անկախությունը» (2):

Դրանից հետո շուտով, ընթացիկ 1918 թ. հունվարի 8-ին ԱՄՆ-ի կոնգրեսում հանդես եկավ նախագահ Վիլսոնը պատերազմի նպատակների մասին իր հիշարժան ճառով, ընդ որում իր ծրագիրը բանաձևելով 14 կետերում: 12-րդ կետը վերաբերում է Թուրքիային և հռչակում է. «Այժմյան Օսմանյան կայսրության թուրքական մասերին պետք է տրվի լիակատար ինքնիշխանություն, իսկ ներկայումս թուրքական տիրապետության տակ, գտնվող մնացյալ ժողովուրդների համար պետք է երաշխավորվի կյանքի անպայման ապահովություն և բացարձակ խաղաղ ինքնավար ինքնազարգացում: Դարդանելը պետք է ընդմիշտ բաց լինի բոլոր ժողովուրդների նավերի ազատ նավարկման և առևտրի համար՝ միջազգային երաշխիքով» (3): Եվ այդպես, հարյուրամյա տատանումներից հետո քաղաքակիրթ աշխարհն ի վերջո բացել է թուրքական բանտի դռները և ազատել տառապած ու տանջված ժողովրդական զանգվածներին: Օ՜,

որքան ժողովրդական կենդանի օրգանիզմներ են թարշամում գերեզմանային խավարում՝ լույսի կենսաբեր ճառագայթների սպասումով, որոնց արժանի են նրանք իրենց կենսական տոկունությամբ: Նրանց համբերատարությունը կարող է փոխհատուցվել թերևս միայն այնպես, որ նրանց ճակատագրերի գորդյան հանգույցը չկտրվի բռնության կոպիտ սրով, այլ լուծվի ինքնորոշման արդարացի սկզբունքի, cuique suum հիման վրա (4):

Ինքնորոշման իրավունքի իրականացման արդյունքները դժվար չէ կռահել: Եթե այդ դեպքում Թուրքիայի ամբողջականությունը փլուզվի և սուլթանների կայսրությունը տրոհվի առանձին էթնիկական մասերի, որոնք չեն կամենա որևէ ընդհանուր բան ունենալ Ստամբուլի հետ, դա կլինի միանգամայն հասկանալի:

Թուրքերն անընդունակ եղան պետական կառավարման ղեկը շրջելու ժամանակակից քաղաքակրթության հունը: Անգամ մակերեսային, զուտ երևութական փոփոխությունները տրտունջ էին առաջացնում: Սուլթան Մահմուդը (5) դժվարությամբ չալման ու խալաթը փոխարինեց ֆեսով ու վերարկուով և այդ «նորամուծության» համար սուլթանը վաստակեց «գյավուր սուլթան» մականունը: Թուրքերը չէին կարող ներել Աբդուլ Մեջիդին (6), որ հանդգնել էր պատվիրել իր դիմանկարը իբր թե հակառակ Ղուրանի պատվիրանների:

Բոլոր բարենորոգչական նախագծերից հաջողվեց անցկացնել միայն մեկը՝ բանակի վերակազմակերպումը եվրոպական եղանակով: Եվ այստեղ էլ արտացոլվեց ժողովրդի ոգին, որը «պետություն էր ստեղծել սրով և կամենում էր այն պահպանել սրով»:

Մյուս առումներով որևէ լուրջ շեղում եվրոպականության կողմը դիտվում էր իբրև մահիկի նվաստացում խաչի առաջ: Հասկանալի է, թե ինչու դարավոր շփումը Եվրոպայի հետ Թուրքիային էական օգուտ չբերեց:

Մինչդեռ կայսրության առանձին մասեր, հենց որ ազատվում էին թուրքական վարչակարգից, իսկույն ևեթ կանգնում էին եվրոպական զարգացման ուղու վրա և կարճ ժամանակ անց քաղաքակիրթ երկրի կերպարանք ընդունում: Բալկանյան պետությունները կամ Եգիպտոսը պերճախոս վկաներ են: Բավական էր մի քանի տասնյակ տարվա ինքնուրույն կյանք, որպեսզի Բուլղարիան քաղաքակրթությամբ վեր բարձրանար իր նախկին գերազանցից:

Այս երկու նախապայմանները կանխորոշում են Թուրքիայի հետագա ճակատագիրը և արդարացնում նրա անդամահատումը: Պետական անձանց վերը բերված հայտարարություններում մատնանշված են Թուրքական կայսրության այն բաղկացուցիչ մասերը, որոնք պետք է հայտա-

բարվեն անկախ քաղաքական միավորներ: Թուրքական իրավունքները ճանաչվում են միայն թուրքերով բնակեցված սահմաններում, մնացյալ հողերը, որոնք բնակեցված են այլ ժողովուրդներով, դուրս են բերվում թուրքական իշխանության տակից:

Թուրքիայի անդամահատումը ըստ ազգային հատկանիշի համընկնում է պատմական բաժանմանը Փոքր Ասիայի կամ Թուրքական Անատոլիայի (հայկական հողեր, սիրիական հողեր), Միջագետքի (կամ Քրդստան և Արաբստան) պատմական բաժանմանը: Չնայած մշտական տեղափոխումներին և տեղաշարժերին, հակառակ թուրքական կառավարության բոլոր ջանքերին դիմազրկելու էթնիկական այլազանությունը և ստեղծելու միատարր մահմեդական զանգված, այն թուրքացնելու վերջնանպատակով, հիշյալ երկրներն առ այսօր էլ չեն կորցրել իրենց ազգային դիմագիծը: Համաձուլման քաղաքականության այդ նույն պատճառներով, ճիշտ է, այժմ դժվար է սահմանազատել ճշգրտորեն ազգային տարածքները, բայց անկասկած է մի բան, որ նոր պայմաններում հարազատ գոտուց դուրս հանված էթնիկական ալիքները ետ կդառնան հայրենի ափերը և տարագրվածներն ավելի հեշտ և ավելի կարճ ժամկետներում կվերադառնան իրենց օջախները, քան երբ նրանք հարկադրված լքում էին իրենց հայրենի տները: Հիշյալ երկրներից իր էթնիկական բնույթով առավել վիճարկելին, համենայն դեպս թուրքական դիվանագիտության մեջ, Հայաստանն է: Մենք կանգ ենք առնում նրա վրա ոչ միայն այն պատճառով, որ նա մեր անմիջական հետաքրքրության առարկան է, այլ նաև այն նկատառումներով, որ հայկական տարածքի սահմանների գծումով որոշվում են նաև մնացյալ ազգային երկրների սահմանները, քանզի Հայաստանն ընկած է Անատոլիայի, Սիրիայի և Միջագետքի հանդիպման անկյունում:

*
* *

Հայաստանը, թվում է, թե լիովին որոշակի հասկացություն է: Դա հնագույն ժամանակներից հայտնի երկիր է, որի սահմաններում ծավալվել է հայերի բազմադարյան պատմությունը և այժմ խաղացվում է նրանց կյանքի եղերերգությունը սեփական մշակութային արժեքների ավերակների մեջ: Ամենևին էլ ոչ անհայտ երկիրը, տարօրինակ ճակատագրով, դարձել է անորոշ չափման հասկացություն, հենց որ նրան մոտենում էին թուրքական դպրոցի քաղաքագետները և դիվանագետները, որոնք կոչված են լուծելու նրա արյունանալի դատը, որոշելու նրա հետագա կացության պայմանները: Կա՞ արդյոք հայկական հող, Թուրքիայում գոյություն ունե՞ն «հայերով

բնակեցված մարզեր»,- տրվում էր այս տարակուսական հարցն ամեն անգամ, երբ ներքական արյունոտ հրդեհն էր բռնկվում այս դժբախտ երկրում՝ նրա վրա ուղղելով քաղաքակիրթ աշխարհի հայացքը: Զարմանալին, խիարկե, այն չէ, որ օսմանյան իշխանությունները ջանում էին ժխտել Հայաստանի գոյությունը, այլ այն, որ նրանց խրախուսում էին մեծ տերությունների ներկայացուցիչները նույնիսկ այն բանից հետո, երբ նրանք պարտավորություններ էին ստորագրել «հայերով բնակեցված մարզերի» նկատմամբ (7):

Այս կամ այն ազգությանը պատկանող տարածքի հարցը և ընդհանրապես տարածքների վիճարկումը թուրքական իշխանությունների կողմից, բարձրացվում էր մշտապես, երբ հարուցվում էր ներքական ազգային հարցը, երբ խոսք էր գնում տվյալ ժողովրդին Թուրքիայի ճնշումից ազատագրելու մասին: Այդ հարցից չեն խուսափել ո՛չ Հունաստանը, ո՛չ Սերբիան, ո՛չ Բուլղարիան, ո՛չ Ռումելիան, այն այժմ կանգնած է Հայաստանի և Մակեդոնիայի առջև, որպես թուրքական մտածողության և մարտավարության մեջ անխուսափելի քայլ ձգձգումների, դիվանագիտական առևտրի համար:

Հայտնի է, որ աղետաբեր հեղաշրջումներն Առաջավոր Ասիայի քաղաքական ճակատագրում, որոնք ուղեկցվել են էթնիկական խոշոր տեղաշարժերով, մեկ անգամ չէ, որ փոխել են նրա ազգագրական քարտեզը: Հայտնի է նաև, որ Հայաստանը, գտնվելով այդ շարժերի հորձանուտում, կրել է ամեն կողմից հորդացող ժողովուրդների հոսանքների ավերիչ գործողությունների բոլոր հարվածները: Նրանց ճնշման ներքո հայերը քշվում էին բնական կերպով, բայց էլ ավելի հաճախ բռնի, իրենց օջախներից մե՛րթ դեպի արևելք մինչև Սպահան, մե՛րթ հարավ մինչև Բաղդադ, մե՛րթ արևմուտք մինչև Կոստանդնուպոլիս և ավելի հեռուն, և վերջապես, վերջին դարերում հյուսիս՝ Ռուսաստան: Չնայած այս բոլոր ճակատագրական փորձություններին, կոտորածներին, հալածանքներին, տեղահանումներին, Հայաստանը պահպանեց իր բնական էթնիկական բնույթը համեմատաբար ավելի լավ, քան հարևան, նրա դժբախտությունների բախտակից երկրները: Այն նույնպիսի իրավունքով և նույն չափով կարող է համարվել հայկական հող, որքան Քրդստանը՝ քրդական, կամ Սիրիան՝ սիրիական, և անգամ Անատոլիան ավելի իրավունք չունի անվանվելու օսմանյան երկիր:

Բարձր լեռնաշխարհը, որը հառնում է Միջագետքի հարթավայրի վրա և սահմանագծվում է հյուսիսից և արևմուտքից Եփրատ գետի հովտով, հնուց ի վեր կազմում է հայերի բնակության տարածքը, հայտնի Մեծ Հայք անունով: Էրզրումը (հին Կարինը), Եդիզավետպոլը (հին Գանձակը, Գյան-

ջա), Սուֆարկինը (հին Մարտիրուպոլիսը) և Խարբերդը, այժմ Խարպուտ թուրքի բերանով ասած, Մեծ Հայքի եզրային գոտիների գլխավոր կետերն են: Եփրատից արևմուտք ընկած հողերը Մալաթիայի, հին Մելիտինե, և Սվազի, հին Սեբաստիայի, սահմաններում գրավում էր Փոքր Հայքը: Բյուզանդական ժամանակաշրջանում Փոքր Հայքի հողերը ընդլայնվեցին սկզբում հյուսիս-արևմտյան, իսկ հետո հարավային ուղղությամբ, որպես բնական ձգտման արդյունք դուրս գալու Հայկական լեռնաշխարհի անձուկ կիրճերից դեպի Սև կամ Միջերկրական ծով: Առաջին ուղղությամբ հայերի գրոհը հանգեցրեց ընդարձակածավալ մի մարզի, այսպես կոչված Արմենիակների բանակաթեմի կազմավորմանը (8), իսկ երկրորդ ուղղությամբ՝ նրանց հերոսական մաքառումը պսակվեց Կիլիկիայի բարձունքներում հաղթական դրոշի բարձրացմամբ: Հայկական Ռուբինյան հարստության ստեղծած ամբողջ այդ երկիրը միջնադարյան եվրոպական ճանապարհորդները և նրանցից հետո էլ թուրքական աշխարհագրագետներն հաճախ անվանել են նաև Փոքր Հայաստան:

Օսմանյան կառավարությունը, ինչպես քաջ հայտնի է, երկար հակաճառություններից հետո, Եվրոպայի ճնշման ներքո ստիպված եղավ ճանաչել «հայերով բնակեցված մարզերը»: Սկզբում որպես այդպիսին այն ճանաչեց միայն Մեծ Հայքի սահմաններում ընկած մարզը, այն է՝ Էրզրում, Վան, Բիթլիս, Խարբերդ և Դիարբեքիր վիլայեթները, ապա նրանց թվին ավելացրեց նաև Փոքր Հայքը՝ Սվազի վիլայեթով: Ադանայի և Հալեպի վիլայեթների միջև բաժանված Հայկական Կիլիկիայի մասին ապարդյուն կարպով հիշեցնում էր հայոց պատրիարքարանը: Թուրքերն անտեսում էին Հայկական Կիլիկիան, իսկ եվրոպական տերությունները չէին հակադրվում: Ընդլայնել հայկական տարածքը, նշանակում էր ընդլայնել այն պետության ազդեցության գոտին, որն այն ժամանակ առկա պայմաններում առավել մեծ հնարավորություն ուներ հաստատվելու Հայաստանում, իսկ Կիլիկիան ծովեզրքին Ռուսաստանի համար հենակետ նախապատրաստելը շահագրգիռ տերությունների հաշիվների մեջ չէր մտնում: Բայց օսմանցիները, իհարկե, քաջ գիտեին, որ վաղ, թե ուշ Զեյթունի հայերի արծվաբույնը պետք է մտցվի հայկական մարզերի թվի մեջ, գիտեին, որ պահանջվող բարենորոգումները պետք է տարածվեին նաև այդ շրջանի վրա: Ադանայի կոտորածը, երիտթուրքերի տխուր սխրագործություններից մեկը, ցույց տվեց, որ օսմանյան կառավարությունը զուր էր անհանգստանում Հայկական հարցի Կիլիկյան կողմով: Հանցավոր միջոցը, որին դիմեց նա, խայտառակելով սահմանադրական Թուրքիան, աշխարհին ցույց տվեց, որ կա ևս մեկ հայկական մարզ, որը պաշտոնապես չի մտցված Հայկական

հարցի վերաբերյալ դիվանագիտական փաստաթղթերում: Հայերով բնակեցված մարզերի սահմանման առավել ճշգրիտ նշանակը կոտորածներն են, որոնք սաղրում էր օսմանյան կառավարությունը իրեն արժանի ձևով, նշանակ, որն ավելի պերճախոս է, քան թե նույն այդ կառավարության բոլոր վիճակագրական տվյալները: Եթե եվրոպական տերությունների ներկայացուցիչներն ավելի լուրջ վերաբերվեին հայերի ճակատագրին, նրանք Կոստանդնուպոլսում նստած այդքան ժամանակ չէին ծախսի հայկական հողերի սահմանների վերաբերյալ թուրքերի հետ վիճաբանությունների վրա: Նրանք կարող կլինեին ճիշտ որոշել հայկական հողերն այն արյունալի հրդեհների հրացոլքով, որոնք Հայկական հարցի ծագման ժամանակներից բռնկում էին նրանց աչքերի առաջ հայերով տարաբնակեցված շրջաններում: Բայց եվրոպական դեսպանները համառորեն հետամուտ էին թուրքական կառավարությունից ստանալու թվական տվյալներ, ճշգրիտ վիճակագրություն. իսկ թուրքական բացահայտորեն անբարեխիղճ թվերի առջև նրանք նույնքան անօգնական էին դառնում, որքան և անտարբեր հայերի բախտի նկատմամբ: Նրանց հայտնի էր, որ թուրքական կառավարությունն ամենից առաջ չուներ վիճակագրություն վարելու համար անհրաժեշտ աշխատակազմ: Եթե անգամ թուրքերը հնարավորություն ունենային խոսելու թվերի օբյեկտիվ լեզվով, ապա ոչ ոքի համար գաղտնիք չէ, որ այդ դեպքում էլ թուրքական քաղաքագետները կօգտագործեին այդ լեզուն հակառակ նպատակով, աղոտելու ճշմարտությունը թվային տվյալներն աղավաղելու միջոցով:

Թուրքական վիճակագրությունը գլխովին մատնում է ինքն իրեն. դրանում դժվար չէ համոզվել, եթե որոշ քննադատական վերաբերմունք դրսևորվի այն միտումնավոր հաշվարկների նկատմամբ, որոնք Հայկական հարցի սուր պահերին թուրքական կառավարությունը դնում էր միջազգային դիվանագիտության սեղանին: Բայց նախապես կցանկանայինք կանգ առնել վիճակագրության հետ կապված հարցերի վրա սկզբունքային տեսակետից:

Հիրավի անհրաժե՞շտ էին թվային հաշվարկումները լուծելու Հայկական հարցն այն պարզ դրվածքով, որով հոլովվում էր իր ծագման ժամանակից, այն է՝ հայերի կյանքի բարելավում պահանջվող բարենորոգումների ճանապարհով: Ենթադրենք, թե այն վիլայեթներում, որտեղ բնակվում էր հայերի գլխավոր զանգվածը, նրանք մեծամասնություն չէին կազմում: Մի՞թե այդ պարագան կխախտի իրենց կյանքի պայմանները բարելավելու պահանջի իրավունքը: Եթե թուրքական իշխանություններն անընդունակ են համապատական ծավալներով բարենորոգումներ անցկացնել, որում հայերը շահագրգռված են թուրքերից ոչ պակաս, թվում է, թե նրանք չպետք է դեմ

լինեին, եթե հնարավորություն էր ընձեռվում եվրոպական տերությունների համագործակցությամբ վերափոխել թեկուզև առանձին մարզեր, տվյալ դեպքում հայկական վիլայեթները ոչ միայն հայերի, այլև բնակչության մյուս խավերի բարօրության համար:

Թուրքերն, իրենց կասկածամտությամբ, առանձին մարզերի վերափոխումները համարում էին իբրև ինքնավարության նախաշեմ: Հայկական բարենորոգումներին նրանք այնպես էին վերաբերվում, ասես խոսքը գնում էր Հայաստանից ինքնավար միավոր ստեղծելու մասին: Նրանց վիճակագրական փաստարկումները նպատակ ունեին ապացուցել, որ հայկական ինքնավարության գաղափարը համապատասխան էթնիկական հիմք չունի, քանի որ հայերն ամենուրեք փոքրամասնություն են կազմում: Ընդունելով երբեմն նրանց արհեստական հաշվարկումները, կարելի է առաջ քաշել մի խիստ էական առարկություն ad hoc (9) թուրքական կառավարողների այն հիմնական դրույթի դեմ, ըստ որի ժողովուրդների թվական հարաբերակցությանը վճռական նշանակություն է տրվում ինքնավարության և քաղաքական տիրապետության հարցերում: Այդ պահանջով թուրքերը կտրում են այն ճյուղը, որից կախված է թուրքական պետական իշխանությունը: Եթե քանակական գերակշռությունը համարվում է ինքնավար գոյության համար անհրաժեշտ նախապայման, ապա ինչպե՞ս են մի քանի միլիոն թուրքեր իշխում բազմամիլիոն ժողովուրդների վրա Ստամբուլից մինչև Մեքքա: Ոչ միայն Արաբիայում, այլև Միջագետքի լայնածավալ տափաստաններում, Սիրիայում, Հայաստանում և Անատոլիայի որոշ շրջաններում թուրքերը կազմում են բնակչության աննշան տոկոս: Ինչ իրավունքով են օսմանցիները շղթաների մեջ պահում այդ երկրները, ինչի վրա է հիմնված նրանց տիրապետությունը, որը էթնիկապես կարող է արդարացվել, ինչպես կտեսնենք, միայն Անատոլիայի վիլայեթներում: Ավելին, Թուրքիայի բուն մայրաքաղաքում՝ Ստամբուլում, թուրքերը մեծամասնություն չեն կազմում: Ըստ 1885 թ. պաշտոնական մարդահամարի, սուլթանի մայրաքաղաքն 873.565 բնակիչ ուներ, որոնցից օսմանցիներ, ավելի ճիշտ մահմեդականներ էին միայն 384.910 հոգի, իսկ 488.655-ը պատկանում էին ուրիշ ազգությունների (հայեր՝ 156.851 հոգի, հույներ՝ 152.741, հրեաներ՝ 44.361, բուլղարներ՝ 4.377 և օտարերկրացիներ՝ 129.243)[1]: Եթե Հայկական հարցում թուրքերի որդեգրած տեսակետը՝ որպես փաստարկ հայերի պահանջի դեմ մատնացույց անելն էր, նրանց

[1] Հմմտ. 1844 թ. մարդահամարը. մայրաքաղաքի ամբողջ բնակչությունը՝ 891.000 էր, որից մահմեդականներ՝ 475.000, հայեր՝ 222.000, հույներ՝ 132.000, հրեաներ՝ 37.000, օտարերկրացիներ՝ 25.000:

փոքրամասնություն կազմելը, կիրառենք hենց թուրքերի նկատմամբ, ապա նրանք ստիպված կլինեն հրաժարվել ոչ միայն վերը թվարկված երկրներից, այլև սեփական մայրաքաղաքից:

Թուրքերի դիրքավորումը Հայկական հարցում անտրամաբանական, անհետևողական և նույնիսկ անբարոյական է, քանզի նրանք հայերից պահանջում էին այն, ինչ որ իրենք չունեին, նրանք պահանջում էին հայերից թվական գերակշռություն՝ բարենորոգումների իրավունքի համար, մինչդեռ իրենք, լինելով անվիճելի փոքրամասնություն, դարեր շարունակ տիրակալել էին լայնածավալ կայսրությունում:

Եվրոպական տերությունները չէին բարձրացնում այդ նրբանկատ հարցերը. նրանք ավելի ներողամիտ գտնվեցին թուրքերի հանդեպ Թուրքական հարցում, քան թուրքերը հայերի նկատմամբ Հայկական հարցում: Համաշխարհային պատերազմի հետևանքով, որն առաջ քաշեց ժողովուրդների ճակատագրերի կերտման նոր սկզբունքներ, Թուրքական և Հայկական հարցերը կքննարկվեն նույն տեսանկյունից. նրանք կգտնեն իրենց արդարացի լուծումը ինքնորոշման հիման վրա՝ համապատասխան էթնիկական տեղաբաշխման և համապատասխան պատմամշակութային արժեքների սահմաններում:

Դժվար չէ նշել այն հիմնական մասնաբաժինները, որոնք կգոյանան Թուրքիայի առաջավորասիական տիրույթներից: Թուրքական հավակնությունները չեն կարող անցնել Տրապիզոն-Ադանա գծից այն կողմ, այլ կերպ ասած, Թուրքիային, բառիս նեղ իմաստով, կանցնի համարյա ամբողջ Անատոլիան, այսինքն՝ երկու մութեսարիֆլիքներ՝ Իզմիտը և Բիգան, հինգ վիլայեթներ՝ Բուրսան, Զմյուռնիան, Կաստամունին, Անգորան և Կոնիան, բացի այդ, Թուրքիային է զիջվելու Տրապիզոնի վիլայեթից Սամսունի սանջակը, Սվազի վիլայեթից երկու սանջակ՝ Թոքաթը և Ամասիան, իսկ Ադանայի վիլայեթից Իչիլ սանջակը:

Տրապիզոն-Սվազ-Ադանա գծից այն կողմ տարածվում են հայկական հողերը՝ Փոքր Հայքը Հայկական Կիլիկիայով և Մեծ Հայքը: Հարավային սահմանը, որը բաժանում է նրանց Միջագետքից և Սիրիայից, գծված է Հայկական լեռնաշխարհի վրա իջնող գծով և անցնում է Տիգրիսի երկու գետաբազուկներով՝ Բոհտանով և Արևմտյան Տիգրիսով ու Դիարբեքիրի կողքով, Սևերեկի վրայով իջնում է մինչև Եփրատ և նրա հոսանքով Այնթափի կողքով հասնում Ալեքսանդրետի ծովածոց: Այդ սահմաններում Հայաստանը կընդգրկի Տրապիզոնի սանջակի արևելյան կեսը, սկսած Կերասունից, Գյումուշխանեի սանջակը, Սվազ և Գարահիսար սանջակները, Ադանա, Կոզան և Ջեբել-Բերեքեթ սանջակները, Մարաշի սանջակը. Էրզ-

ռում, Բիթլիս, Խարբերդ վիլայեթները, Վանի սանջակը Աղբակով և Դիարբեքիրի վիլայեթից Արղանա սանջակը և Դիարբեքիրի սանջակի մի մասը: Հետևաբար, դիվանագիտության նախատեսած վեց վիլայեթներից դուրս են մնում Սվազ վիլայեթի երկու սանջակները, Վանից՝ Հաքյարի սանջակը և Դիարբեքիրից՝ Մարդինի սանջակը, իսկ միացվում են Հայկական Կիլիկիան և Տրապիզոնի ծովափը:

Եթե Արևելյան և Արևմտյան Տիգրիսների բազուկների միախառնման վայրից, մոտավորապես Էրգ-Ջեզաիրից ուղիղ գիծ անցկացվի մինչև Դամասկոս, ապա այդ գծից արևմուտք կմնան Սիրիական հողերը՝ գերազանցապես քրիստոնեական, իսկ արևելք՝ Միջագետքի հարթավայրերից և Զագրոսի լեռնային մասից կազմված ընդարձակ տարածքը, բնակեցված քրդական և արաբական ցեղերով, ընդ որում հարթավայրերը գերազանցապես զբաղեցնում են արաբները, իսկ լեռները՝ քրդերը:

Այդպիսով, Սիրիային կանցնեն Հալեպի վիլայեթը առանց սանջակի, Դիարբեքիրի սանջակի մի մասը, Մարդինի սանջակը, Դամասկոս կամ Շամ, Բեյրութի և Լիբանանի վիլայեթները, Զոր մութեսարիֆության մի մասը: Եփրատի և Տիգրիսի միջև ընկած տարածքը, այսինքն՝ Զոր մյութեսարիֆլիքի մի մասը: Մոսուլի վիլայեթը և Բաղդադ ու Բասրա վիլայեթները կկազմեն Արաբստանը, իսկ Տիգրիսից արևելք ընկած ամբողջ բարձրավանդակը, այսինքն՝ Հաքյարի սանջակը, Մոսուլի վիլայեթը (առանց Մոսուլի սանջակի մի մասի) պարսկական հողերով հանդերձ, որոնք Ուրմիա լճից մինչև Լուրիստան բնակեցված են քրդական ցեղերով, կկազմեն Քրդստանը: Սրա մեջ կմտնեն Սրուճբուլաղի մարզը, Արդելանը և Դիզֆուլ գետի ավազանը մինչև Պարսկական Արաբստան:

Նշված տարածքային միավորներից յուրաքանչյուրը պահանջում է հատուկ մեկնաբանություն: Մեր անցկացրած սահմանազատող գծերը, իհարկե, մանրամասնացման կարիք ունեն, բայց մեր գծած ընդհանուր ուղղությունները չեն կարող վիճարկվել: Թուրքիայի դարավոր տիրապետությունը այնպիսի ավերիչ ներգործություն է ունեցել ազգային խմբերի վրա, որ այժմ դժվար է մտածել էթնիկապես միատարր տարածքային միավորներ ստեղծելու հնարավորության մասին. ասենք դրա կարիքն էլ չկա: Առայժմ բավական կլինի նշել ազգային կենտրոնները, որոնց շուրջը կհամախմբվեին համապատասխան ազգային տարրերը: Այդ կենտրոնները մենք մատնանշեցինք, ինչպես և մոտավորապես նրանց սահմանազատման տարածքային ոլորտները, ընդ որում, մենք առաջնորդվեցինք ոչ միայն տվյալ տարածքային միավորումում տիրապետող էթնիկական բնույթով, այլև նրա պատմամշակութային էությամբ և տնտեսական ամբողջականությամբ: Այս

երեք սկզբունքները պետք է իբրև առաջնորդող դրույթ ծառայեն Թուրքիայի ժառանգությունը նրա տառապյալ հպատակների միջև բաժանելիս: Նրանք պետք է դրվեն Առաջավոր Ասիայում նոր կյանքի կերտման հիմքում, որն ամենից առաջ պահանջում է ազգային հիմնահարցի լուծում: Առանց բավարարելու ազգային բաղձանքները, գոնե այն բաղձանքները, որոնք դրսևորվել են բավականին ցցուն ձևով, անհնարին է կարգադրել ժողովուրդների ճակատագիրը նրանց խաղաղ համակեցության գետնի վրա: Այդ խնդիրը այնքան դժվար չէ, որքան բարդ է և, անկասկած, չի կարելի այն իսկույն ևեթ լուծել բոլոր ժողովուրդների համար ընդունելի ձևով: Նշել կամ նախագծել խնդրի լուծման ուղին, ահա թե որն է պահի անհետաձգելի պահանջը:

Ազգամիջյան հարաբերությունների հարթեցման միակ և ընդ որում ամենաճիշտ միջոցը, որը թելադրվում է խնդրի բուն բնույթով, այն է, որպեսզի ազգային շարժումները տեղայնացվեն թեկուզև en gras գծված տարածքային միավորների սահմաններում, որն օժտված է տվյալ ժողովրդի կամ ժողովուրդների խմբի համար հարազատ օջախների հրապուրիչ ուժով: Դրանով սկիզբ կդրվի անսովոր կերպով խառնակված էթնիկական զանգվածի բնական տարբերակմանը, և պատմական փոթորկից ժողովուրդների հողմացրիվ եղած բեկորները նորից կձգվեն դեպի հայրենի օջախները և ինքնաբավ ամբողջություն կկազմեն սեփական հողում:

Թուրքական Անատոլիայի կամ Թուրքիայի, Հայաստանի, Սիրիայի, Քրդստանի և Արաբստանի անդամահատման վերն առաջարկված նախագիծը կլուծի ազգային հիմնահարցը մեր դրվածքով: Այդ երկրներից յուրաքանչյուրը լիովին բավարարում է էթնիկական, պատմամշակութային և տնտեսական բնույթի առաջադրված պահանջները:

Մեր նշած սահմաններում Անատոլիան կազմում է 400.000-450.000 քառ. կմ. 7 մլն. բնակչությամբ, որից մոտավորապես 2 մլն. քրիստոնյաներ են, գերազանցապես հույներ և հայեր, իսկ 5 մլն. թուրքեր կամ արտաքուստ թուրքացած կամ բոլորովին այլ ժողովուրդներ: Այդ երկիրն իրավացիորեն կարող է անվանվել Թուրքիա, քանզի էթնիկապես այն գլխավորապես թուրքական հող է, պատմամշակութային առումով դա այն տարածքն է, որտեղ ձևավորվել և զարգացել է թուրքական պետականությունը, և վերջապես, երեք կողմերից շրջապատված լինելով ծովերով՝ իրենից ներկայացնում է աշխարհագրական ամբողջություն, որն ապահովում է նրա տնտեսական զարգացումը:

Սիրիան, նշված հողերի կազմով, ունի շուրջ 200-250 հազար քառակուսի կիլոմետր տարածք, մինչև 2,5 մլն. բնակչությամբ, որի շուրջ մեկ միլիոնը

քրիստոնյաներ են, մնացյալները մահմեդականներ, չհաշված մանր աղանդավորական խմբերը: Բայց քրիստոնյաների գերակշռող մասը մահմեդական բնակչության հետ նույն ծագումն ունեն, այնպես որ էթնիկական առումով երկիրը գերազանցապես սեմական է և կազմված է սարիներից ու արաբներից: Երկիրն առավելապես ծովեզրյա է: Սիրիան բոլոր տվյալներն ունի տնտեսական լայն զարգացման համար:

Նույնպիսի շահավետ դրության մեջ է Արաբստանը, որը գրավում է Եփրատ և Տիգրիս նավարկելի գետերի ավազանը և ելք ունի դեպի օվկիանոս:

Ինչ վերաբերում է Քրդստանին, ապա այն ընդգրկում է, ինչպես նշվեց վերևում, Զագրոսի երկար լեռնաշղթայի լայնածավալ բարձրավանդակը՝ Ուրմիա լճից և Բոհտան գետից համարյա մինչև Լուրիստանի տափաբակները և երկու կողմից նրան հարող արևմուտքից Տիգրիսի և արևելքից Դիզֆուլի գետահովիտները: Այդ սահմաններում են պարփակվում քրդերով, նրանց ազգակից լեռնական ցեղերով, որոնք գերազանցապես իրանական ծագում ունեն, բնակեցված հողերը: Աշխարհագրական առումով ամբողջական այդ տարածքը լիովին համապատասխանում է նրա բնակիչների հովվական-քոչվորական կենսաձևին: Զագրոսյան Ալպերն իրենց գեղատեսիլ գահավանդակներով, որոնք ցածրանում են դեպի հիշյալ գետերի հովիտները, հնագույն ժամանակներից իրանական հովվական ցեղերի բնակավայր էին: Սրանցից այն ցեղերը, որոնք նստակեցության են անցել և զբաղվում են երկրագործությամբ, իրենց աշխատանքի կիրառումը գտնում են մի կողմից Մոսուլի և Շահրիզորի, մյուս կողմից Արդելանի և հարակից մարզերի հացառատ դաշտերում: Երկրի հետագա զարգացման և արդյունաբերության ու առևտրի հաջողությունների պայմաններում Արաբստանին համահավասար այն կարող է հենվել Պարսից ծոցի վրա:

Սակայն շատերին հաճելի է փոխադրել Քրդական հարցը Հայկական սարահարթ և այստեղ փնտրել նրա լուծումը: Որոշ շրջանակներում կարծիք գոյություն ունի՝ այժմ շատ տարածված, ըստ որի Քրդական հարցը համարվում է անխզելիորեն կապված Հայկական դատին. ավելին, ոմանք ամփոփ են նրան գերակշիռ նշանակություն տալ հայոց հայրենիքում: Հայաստանը Քրդստանի վերածելու տխուր ջանքերում մտերմացել են հայության թշնամիներն ու բարեկամները: Եթե թուրքական քաղաքագետները դարեր շարունակ ջանում էին, ինչպես կտեսնեք այժմ, լցնել Հայաստանը քրդերով, և վերածել Էրմենիստանը Քրդստանի, ապա դա դեռ հասկանալի է. բայց որ հայկական հողերի նման փոխակերպմանը գաղտնի կամ բացահայտ համակիր լինեին եվրոպական տերություններից նրանք, որոնք կոչված էին պաշտպանել հայերին թուրքական բռնության դեմ, դա պետք է

սրտխառնուք առաջացնի իր անբարոյականությամբ: Խիստ (10) ցավալի փաստ է, որ Անգլիան ու Ռուսաստանը, այդ երկու մրցակիցները Հայկական բարձրավանդակում ներողամտություն են ցուցաբերում թուրքական քրդասիրական քաղաքականության հանդեպ, մեկը թյուրըմբռնումից, իսկ մյուսը՝ անխելամտությունից: Հայտնի է, որ հայերը ձգտում էին դեպի Ռուսաստան և փրկություն որոնում թուրքական շղթաներից: Հայերի այս ռուսասիրական միտումը, որ կազմավորվել էր դարերի ընթացքում և ոչ առանց արևմտյան տերությունների ուղղակի ներշնչման, Անգլիային անհամատեղելի էր թվում Առաջավոր Ասիայում ունեցած իր շահախնդրությունների տեսանկյունից: Այն պահից ի վեր, ինչ Անգլիան համոզվեց, որ հայերի ռուսական կողմնորոշումը անդառնալի է, նա սկսեց առաջ մղել քրդերին ի հակակշիռ հայերի, որպես ռուսական ազդեցության տարածողների և Անդրկովկասի կողմից Ռուսաստանի առաջխաղացման սատարողների: Ռուսաստանի դեմ պատնեշ ստեղծելու նպատակով Քրդստանը քաղաքական միավոր դարձնելու գաղափարը պատկանում է հյուպատոս Փալգրեյվին: Ճիշտ է, նրա հաջորդ հյուպատոս Թեյլորը (11) իր 1869 թ. մարտի 18-ի զեկուցագրում Փալգրեյվի առաջարկությունը համարում է անիրագործելի նկատի առնելով նաև քրդերի համակրանքը առ Ռուսաստան: Բայց, թվում է, անգլիական գործակալները դեռ էլի շարունակում էին քրդասիրական քաղաքականություն վարել: Բավական է նշել, որ Էրզրումի հյուպատոսին տիտղոսավորում էին ոչ այլ կերպ, քան Քրդստանի՛ հյուպատոս: Թուրքերը վաղուց էին ջանում աշխարհագրական քարտեզի վրայից ջնջել Էրմենիստան անվանումը և փոխարինել այն Քրդստանով: Հայերը ապշած մնացին, տեսնելով, որ թուրքական վերաբերմունքը Հայաստանի նկատմամբ հավանություն է գտել անգլիացիների կողմից և ստիպված էին ի դեմս իրենց պատրիարքի (12) վրդովմունքի ձայն բարձրացնել, բողոքելով համաշխարհային տերության կողմից նման անխոհեմ քայլի դեմ, տերություն, որը ոչ մի առնչություն չէր կարող ունենալ փոքր ժողովուրդների և ճնշված երկրների ճակատագրերի թուրքական ըմբռնման հետ:

Բայց առավել ևս զարմանալի է այն, որ Ռուսաստանը, որի պատճառով էլ Անգլիան մեջքով էր շրջվում դեպի հայերը, փոխանակ ամրապնդելու իր հայկական դիրքավորումը, ընդհակառակը, արհամարհելով այն, սկսեց նմանվել իր մրցակցին և նույնպես զարգացնել քրդասիրական քաղաքականություն: Ակնհայտորեն ռուսական քաղաքագետները հույս ունեին քրդական ցեղերի համակրանքը վաստակելով, Անգլիայից խլել այդ հենարանը: Հայրենի քաղաքականության հանձնարարությանը համապա-

տասխան, ռուսական գործակալները, ռազմական թեմաներով գրողները, ճանապարհորդներն (13) իրենց առջև խնդիր էին դնում նվազեցնել հայերի նշանակությունը՝ քրդական ցեղերի թվական և որակական գերազանցության մասին ազգագրական ճղճղոցով: Նրանց գրչի տակ դադարեց գոյություն ունենալ Հայաստանը, իբրև հայերի երկիր, այսուհետև այն փոխարինում էին Քրդստանով, ընդ որում Էրզրումի գոտին անվանում էին Հյուսիսային Քրդստան, իսկ Բիթլիս-Վանը՝ Հարավային: Ոմանք, խելքից դուրս ջանալով, այնքան հեռուն գնացին, որ չէին քաշվում պնդել, որ քրդերը Հայաստանում բնիկներ են, և որ այսպես կոչված Հայաստանը հնուց ի վեր քրդերի բնակեցման երկիր է եղել: Այդ առումով ի միջի այլոց, ազնվությամբ գերազանցեց Վանում ֆրանսիական նախկին հյուպատոս ոմն Ս. Զարզեցկին, որը, չգիտես ինչու, կամեցավ ցուցադրել իր պատմական աղքատիկ գիտելիքները Հայ-քրդական հարցի վերաբերյալ ֆրանսիական «Revue de Paris» ամսագրի 1914 թ. ապրիլի 15-ի համարում (14): Մի քանի տարի ապրելով Վանում Ս. Զարզեցկին երևակայում է, որ ըմբռնել է շրջապատող միջավայրի ազգագրական և լեզվագրական հարաբերակցության գաղտնիքը և այդ բարդ հիմնահարցը լուծում է անսովոր թեթևամտությամբ: Նրա կարծիքով, հայ ժողովուրդը կազմավորվել է երկու տարրերի միաձուլումից՝ Միջագետքից բարձրացած սեմական ցեղերի և արիացիների, որոնք եկել են Պամիրից: Հայերի արիական շերտը նրանց կապում է քրդերի հետ. այդ իմաստով քրդերի եղբայրներն են նրանց թվից, որոնք մնացել են լեռներում և չեն կարողացել զարգանալ: Ֆրանսիական հյուպատոսը գտնում է, որ հայերեն և քրդերեն լեզուները շատ մոտ են և իր անհրազեկությունը փաթաթում է լեզվաբանների վզին, որոնք իբր թե քրդերեն լեզուն վերագրում են արիական լեզուների հայկական խմբին: Եթե ֆրանսիական հյուպատոսը նեղություն կրեր աչքի անցկացնել հայրենի մասնագետների աշխատությունները իր մեկնաբանած հարցի վերաբերյալ, ապա նա ձեռնպահ կմնար այդքան համարձակ ելույթներից իրեն խորք բնազդավառում: Երբ մտածում ես, որ այդ բոլորը արվում է միայն այն բանի համար, որպեսզի հիմնավորի քրդերի իրավունքը Հայկական լեռնաշխարհի վրա հայերի հետ համահավասար, նման դատողությունները պարսավելի են դառնում: Հայտնի է, որ Անգլիայի վերաբերմունքը Ռուսաստանի նկատմամբ Առաջավոր Ասիայի հարցերում, հետևաբար և հայերի նկատմամբ, բաժանում է նաև Ֆրանսիան, ինչպես որ դա երևում է թեկուզ և Լյուդովիկոս Կոնտանսոնի երկա-

սիրությունից[1], մի անձնավորություն, որը լինվին իրազեկ է Արևելյան հարցին (15):

Հայաստանը որոշակի մշակույթի երկիր է, ամենևին էլ ոչ աղքատիկ համապատասխան պատմական գրականությամբ: Միգուցե պահպանված աղբյուրները բավարար չեն նրա անցյալի հարկ եղած լուսաբանության համար, ցանկալի լրիվությամբ վերականգնելու նրա տարաբախտ ապրումների ամբողջ բարդ պատկերը, բայց, համենայն դեպս, այնպիսի հարցերի վերաբերյալ, ինչպիսին է հայ-քրդականը, մենք ունենք բավարար պատմական նյութ, որպեսզի գործի էության վերաբերյալ չվիճաբանենք հյուպատոսական ատիճանավորների հետ :

Քրդական ցեղերի առնչությունը Հայաստանին այնպիսին չէ պատմության լույսի ներքո, ինչպես որ կուզենային նրանք, ովքեր հարցին մոտենում են քաղաքական միտումնավորությամբ: Քրդերը Հայաստանում անհիշելի ժամանակներից չեն ապրում. պատմությունը լավ է հիշում Հայկական լեռնաշխարհում նրանց հայտնվելու ժամանակը՝ այն թվագրվում է վերջին երեք հարյուրամյակներով, և ինչպես հիմա, այնպես էլ հնում նրանց այնտեղ էին քշում թուրքական իշխանություններն և նրանց կարգերը:

Ինչպես վերը հիշատակվեց, թուրքերը տիրացան Հայաստանին 1514 թ. Չալդրանի ճակատամարտից հետո, որտեղ նրանք պարտության մատնեցին պարսից շահ Իսմայիլի զորքերին (16). առաջին անգամ օգտվելով հրետանուց: Դրանից հետո երկու կողմերը շատ անգամներ մաքառեցին Հայաստանի համար, բայց արդյունքում սահմանները մնացին նույնը, որոնք գոյություն ունեն առ այսօր: Սուլթան Սելիմի ռազմական գործողություններին գործուն մասնակցություն ունեցավ մոլլա Իդրիսը, բիթլիսցի մի քուրդ (17), որը տեղաբնիկ լինելով քաջածանոթ էր տեղական պայմաններին: Սուլթանը նրան հանձնարարեց իշխանության կազմակերպումը նորանվաճ տարածքներում: Դրանից առաջ նա ծառայել էր Ակ-կոյունլու թուրքմենների գլխավորի մոտ, որը տիրում էր Հայաստանի արևմտյան մասին Եփրատի երկայնքով և Տիգրիսի ակունքներում (18), հենց այն մասին, որը ենթակա էր վերակազմակերպման: Նա կատարում էր պետական քարտուղարի պարտականությունը և, հետևաբար, երկրամասը կառավարելու փորձ ուներ և կարող էր գլուխ հանել իր վրա դրված առաքելությունը: Իր քաղաքականության հիմքում, ինչպես և պետք էր սպասել, մոլլա Իդրիսը դրեց քրդական մանր ցեղապետների շահերի պաշտ-

---

[1] Ludoviq de Contenson, Chrétiens et musulmans, Paris, 1901.

պանությունը, որոնք ձգտում էին ավատատիրական իրավունքներ ձեռք բերել հիշյալ մարզերում:

Հայկական հողերի համար մղվող պայքարում պարսից շահերը, հաջողության դեպքում քշում էին քրդական բեյերին նրանց գրաված հողերից և նշանակում էին իրենց պաշտոնյաներին: Իսկ թուրքական սուլթանները հակառակ քաղաքականություն էին վարում և հողային զիջումներ կատարելով քրդական պարագլուխներին, ջանում էին նրանցից պարսիկների համար թշնամի ուժ ստեղծել: Այս քաղաքականության ոգեշնչողը, անվիճելիորեն, նույն Իդրիսն էր և որը այն անցկացնում էր հիմնավորապես: Մծբնից մինչև Դերսիմ ընկած ամբողջ լայնածավալ երկրամասը Իդրիսը միավորեց Դիարբեքիրի նահանգ անվան տակ և դրանք բաժանեց 19 սանջակների (= դրոշների), այսինքն՝ ռազմաավատատիրական միավորների: Դրանցից 8 սանջակ նա տվեց քրդական բեյերին ի ժառանգական տիրույթ: Բացի այդ, նա քուրդ ցեղապետներին տրամադրեց 5 ոչ մեծ շրջաններ Տիգրիսի ակունքներում մասնավոր սեփականության իրավունքով, որպես «hakymat» (հաքյումաթ): Նա սուլթանից խնդրանքով ստացավ 25.000 դուկատ, 400 պատվավոր կապա (=խալաթ), 70 դրոշ և բաժանեց քրդական պարագլուխներին: Չբավարարվելով դրանով, նա որոշ քրդական ցեղեր վերաբնակեցրեց Էրզրումի շրջան և դրանով հիմք դրեց քրդական էթնոսին հայկական հողերում: Այդ միջոցառումների մասին մենք իմանում ենք Իդրիսի՝ և նրա որդի Արուլֆազլի բերանից. այդ երկուսն էլ գրիչ բռնել գիտեին և պատմական աշխատություններ են թողել:

Նույն XVI դարի վերջին, այն է՝ 1597 թ. Բիթլիսի քուրդ իշխողներից մեկը՝ Շարաֆեդդինը կազմեց քրդական հարստությունների պատմությունը: Նրա աշխատությունը «Շարաֆ-Նամե» խորագրով, հրատարակվել է Ս. Պետերբուրգում 1860 թ. ակադեմիկոս Վ. Վելիամինով-Զեռնովի կողմից, իսկ 1868 թ. Շարմուայի թարգմանությամբ այն լույս տեսավ ֆրանսերեն: Քուրդ պատմիչի աշխատությունը տառապում է բոլոր այն թերություններով, որոնք հատուկ են ազգային պատմագրության բոլոր առաջին փորձերին: Եթե նա սահմանափակվեր իրեն ժամանակակից քրդական ծագում ունեցող իշխող տների տեսությամբ, նրա աշխատությունը տեղեկատուի նշանակություն կունենար, որը օգտակար կլիներ պատմաբանին: Բայց Շարաֆեդդինը ձեռնարկել էր իր ուժերից վեր խնդիր՝ շարադրել այդ հարստությունների պատմությունը, ավելի ճիշտ, ծագումը: Պատմական նյութի պակասը նա լրացնում է ծագումնաբանական կապերի անհեթեթ մոգոնվածքով: Որպեսզի փնտրի և գտնի այս կամ այն հարստության սկիզբը, քուրդ պատմիչը երևակայության թևերով թռչում է

եա, հեռավոր դարերի խորքը և մեկ անգամ չէ, որ խղճուկ քրդական ցեղերի ցեղապետներին արյունով կապում հայտնի պատմական դեմքերի հետ, չնայելով դարաշրջանին: Որոշ ցեղեր հասցնում է մինչև առաջին խալիֆների ժամանակները և ազգակցական կապերի մեջ դնում նրանց հետ: Որպես ապացույց իր ենթադրությունների, Շարաֆեդդինը համախակի վկայակոչում է իբր թե պահպանված ավանդությունները: Բայց մերձավոր ծանոթությունը դրանց հետ պարզում է, որ բոլոր այդ ընտանեկան ավանդությունները հիմնված են ցեղերի անվանումների ժողովրդական-ստուգաբանական մեկնությունների վրա, զուգեն հեղինակի երևակայությանը պատկանող: Չափից դուրս միամիտ կլիներ արժեք ընծայել նման պատմվածքներին և առավել ևս միամտություն՝ ուշադրություն դարձնելու այն արհեստական ծագումնաբանական աղյուսակներին, որոնցով այնպես չարաշահում է հեղինակը, ցանկանալով ավելի իրազեկ թվալ, քան այդ պահանջվում էր զլխովին անգրագետ, կիսաքոչվոր և ավազակային, ամեն գրական պաշարից զուրկ ցեղերի պատմիչից: Հենց որ պատմիչը անցնում է կեղծ ծագումնաբանությունից և նրանց հետ կապված դատարկ դատողություններից փաստական տվյալների, իսկույն իջնում է անցյալ դարերի բարձունքից Սելիմի և Իդրիսի ժամանակները և միայն այդտեղ է, որ մենք ինչ-որ նյութ ենք գտնում քրդական բեյերի ճակատագրի մասին: Բացառությամբ Վանի և Բիթլիսի իշխող տների, որոնք գալիս են Թամուրի ժամանակներից, մնացյալ քրդական տիրույթները Հայաստանի նշված շրջաններում՝ Եփրատի երկայնքով և Տիգրիսի ակունքներում, առաջացել են թուրք-պարսկական պատերազմների ժամանակ՝ XV և XVI դարերի սահմանագծին: Վանի և Բիթլիսի իշխանական հարստությունների քրդական ծագումը, ընկատենք հպանցիկորեն, կարող է վիճարկվել և պատմիչ Շարաֆեդդինը ավելի իրավացի կլիներ, եթե իր նախնիների փնտրտուքի մեջ որոներ հայկական, այլ ոչ թե արաբական կամ քրդական արյուն. դա հատուկ հարց է և այստեղ չենք կարող կանգ չառնել դրա վրա: Դերսիմի քրդերի, այսպես կոչված դուժիկների ծագումը նույնպես խիստ վիճելի է, համենայն դեպս, անգամ այն անձինք, ովքեր ամենուր քուրդ են տեսնում, չեն համարձակվում դասել նրանց զտարյուն քրդերի շարքը:

Դերսիմից մինչև Դիարբեքիր նոր ստեղծված սանջակները Իդրիսը հանձնեց քրդական բեյերին իբրև ժառանգական տիրույթ և դրանով իսկ նրանց համար ստեղծեց իշխանական տների դրություն: Թվարկելով այդ տները, քրդական պատմիչները, սակայն, ոչինչ չեն ասում նրանց ենթակա սանջակների բնակչության կազմի մասին: Սխալ կլիներ կարծել, թե քանի որ տերերը քուրդ բեկեր էին, ապա բնակչությունն էլ կազմված էր քրդերից,

ինչպես որ դա կարող էր թվալ քրդական պատմիչի նկատմամբ ոչ քննադատական վերաբերմունքի դեպքում: Քրդական սանջակ բեկերի նախորդները նրանց գրաված մարզերում, ինչպես և Հայաստանի մյուս վայրերում նախորդ դարում թուրքմենական իշխաններն էին, մեծ մասամբ այն ժամանակ տիրապետող սպիտակ ոչխարի և սև ոչխարի (Ակ-կոյունլու և Կարա-կոյունլու) թուրքմենական շահերի մերձավոր ազգականները: Նրանք իրենց հերթին հայ ավատական իշխանների հաջորդներն էին, որոնք գրավում էին այդ վայրերը մինչև մոնղոլների դարաշրջանը, իսկ նրանցից ոմանք էլ դիմացան մինչև Թամուրի արշավանքը:

Սելջուկյան հորդաների հայտնվելու ժամանակներից բյուզանդական պետական իմաստությունն այլ միջոց չգտավ իր սահմանները ահեղ թշնամուց պաշտպանելու, քան Հայաստանի թագավորական և իշխանական հարստություններն իրենց դիրքերից հանելը և Եփրատից այն կողմ՝ Փոքր Հայք փոխադրելը, որպեսզի այստեղ Եփրատի երկայնքով նոր ճակատ ստեղծի: Սվազից մինչև Ադանա մի կողմից, Դերսիմից մինչև Եդեսիա մյուս կողմից երկու շարքով անցնում էր հայկական ավատական տիրույթներից կազմված պատնեշը: Վանի Արծրունիները որպես վիճակ ստացան Սվազը մինչև Եփրատ. Անիի Բագրատունիները հաստատվեցին Լիկանդայում, ներկայիս Մարաշի սանջակի սահմաններում. Կարսի Բագրատունիները գրավեցին Ծամնդավի հովիտը Կիլիկիայում, Կոզան սանջակում, իսկ Արծրունիների Թոռնավանյան ճյուղը հիմնվեց Տարսոնում, ներկայիս Տարսուսում, Ադանայի և Մերսինայի միջև: Պահլավունիների մի ճյուղը հաստատվեց Քեսունում, Մալաթիայի սանջակի հարավային մասում, մյուս ճյուղը տիրակալում էր Միջագետքում. Եդեսիան գտնվում էր հայ իշխանների ձեռքին: Մամիկոնյան տոհմը, ապաստանելով Սասունի լեռներում, իր ձեռքին էր պահում Մուշը և Խարբերդը: Ավելի հեռու, Դերսիմի ուղղությամբ, տնօրինում էին հայկական պավլիկյան այն իշխանների սերունդները, որոնց դեմ IX դարում պատերազմում էին բյուզանդական կայսրերը:

Բոլոր այդ մանր հարստությունները հողմացրիվ եղան մոնղոլների արշավանքի մրրիկում: Նրանց բերդերն ու ամրոցները անցան մոնղոլական ռազմական իշխանությունների ձեռքը: Թամուրի կայծակնային ռազմարշավը, վերջ տալով մոնղոլական ժառանգությանը, հող նախապատրաստեց թուրքմենական ռազմաշունչ ցեղերի համար: Սպիտակ ոչխարի և սև ոչխարի թուրքմենների առաջնորդները XV դարի ընթացքում տեր և տնօրինություն էին անում Հայաստանում իրենց ռասային հատուկ սանձարձակությամբ: Կարևորագույն կետերը, ամրոցներն ու քաղաքները գրավված էին նրանց ազգականների կողմից: Պարսից Սեֆյանների երևան գալով (19) և

թուրքական սուլթանների դեմ սկսված պայքարով Հայաստանին տիրանելու համար, թուրքմենական ավատատերերի տիրապետությանը վերջ տրվեց: Հայաստանի այն մասում, որն ընկավ Թուրքիայի ձեռքը, Իդրիսի նախաձեռնությամբ թուրքմեն իշխողները փոխարինվեցին քրդական բեյերով: Քուրդ կառավարողի ծրագիրը ընդունելի էր Թուրքիայի համար այն իմաստով, որ քրդական տիրույթները կարող էին նրա համար ծառայել այնպիսի պաշտպանություն, ինչպես երբեմնի ծառայում էին հայկական տիրույթները Բյուզանդիայի համար:

Հայոց աշխարհի մակերևույթի ավատատիրական այդ զարդանկարի փոփոխությունները արդյո՞ք փոփոխում էին համապատասխան ձևով նաև նրա էթնիկական հիմնաներկը: Վերնաշերտերի փոփոխությունը արտացոլվո՞ւմ էր արդյոք նաև ստորին խավերի կազմի վրա: Ինչպես որ մոնղոլների տեր ու տնօրինության օրոք երկիրը չմոնղոլացավ, ինչպես թուրքմենների օրոք այն չթուրքմենացավ, այնպես էլ իշխանությունը քրդական ցեղապետների ձեռքն անցնելով հայկական երկիրը քրդական չդարձավ: Նստակյաց, աշխատավոր բնակչության հիմնական կորիզը ինչպես որ եղել էր, այնպես էլ մնաց հայկական: Իհարկե, յուրաքանչյուր տիրապետություն ժառանգություն էր թողնում առանձին էթնիկական խմբերի ձևով, որոնք անցնում էին նստակյաց երկրագործական կյանքի: Իսկ քոչվոր տարրերը, իրենց պարագլուխների անկումից հետո, հեռանում էին տվյալ վայրից և երջանկություն էին փնտրում այնտեղ, ուր քշում էր նրանց ճակատագիրը: Փաստ է, որ թուրքմենական հզոր ցեղերից, որոնք մի ամբողջ ցանցի պես սփռվեցին Հայաստանով մեկ Դիարբեքիրից մինչև Էրզրում և մինչև Արաքսի հովիտը, ներկայումս մնացել են մի քանի տասնյակ հազար Կարսի մարզում:

Նույն բախտը կվիճակվեր Հայաստանում բնակեցված քրդական ցեղերին, և Թուրքիայում ավատատիրական վարչակարգի ոչնչացմամբ քրդական աշիրեթներն իրենց բեյերի հետ միասին, զրկված պետական առանձնաշնորհումներից, ետ կհորդեին Հայկական լեռնաշխարհից:

Ավատատիրական կարգի վերացումը և նոր վարչական բաժանումների՝ էյալեթների ստեղծումը հետևեց 1836 թ. սուլթան Մահմուդի հռչակած բարեփոխումներին, իհարկե ոչ առանց եվրոպական տերությունների ճնշման: Ցավոք սրտի, թուրքական կառավարությունը ոչ միայն չօգտագործեց այդ բարենպաստ ակտը կենսագործելու քաղաքացիական իրավահավասարության և հպատակների նկատմամբ միատեսակ վերաբերմունքի սկզբունքը, այլև դրա հռչակման պայմաններում նորանոր առիթներ էր փնտրում

ուժեղացնելու թշնամական վերաբերմունքը քրիստոնյա ժողովուրդների հանդեպ:

Ի միջի այլոց, հակաքրիստոնեական քաղաքականությունը Հայաստանում արտահայտվեց նաև այն բանում, որ խիստ արհեստական միջոցներով թուրքական իշխանությունները աջակցում էին քրդական տարրի տիրապետությանը, ամրապնդելով և ուժեղացնելով նրանց դիրքերը նոր ցեղերի բնակեցմամբ: XIX դարի ռուս-թուրքական պատերազմները նպաստավոր պայմաններ էին ստեղծում Հայաստանում թուրքական ծրագրերի համար: Հարկ է խոստովանել, որ այդ պատերազմները, ինչ էլ որ լինեին դրանց շարժառիթները, ինչ հույսեր էլ որ չծնեին, արդյունքում դրանք անչափ կործանարար էին լինում ամենից առաջ հայ ժողովրդի համար: Բացի երկրի տնտեսական քայքայումից, բացի բոլոր աղետներից, որոնք անբաժան են ռազմական գործողությունների թատերաբեմից, հայությունը տառապում էր նաև այն բանից, որ պատերազմը սկսվելուց առաջ թուրքական իշխանությունները բռնի տեղահան էին անում հայերին սահմանամերձ մարզերից և քշում երկրի խորքերը՝ նրանց թողնելով ճակատագրի քմահաճույքին, իսկ պատերազմից հետո ամբողջ շրջանների բնակչությունը, խորտակված հույսերով, ստիպված էր լինում լքել հայրենի օջախները և ապաստան փնտրել Ռուսաստանի սահմաններում: Գազանությունները, որ այս վերջին պատերազմի ժամանակ (20) կատարում էին թուրքական իշխանությունները հայերի նկատմամբ, այնքան անմարդկային չափերով, ավելի փոքր չափերով տեղի էին ունեցել նաև նախորդ պատերազմների ընթացքում:

Հայերից ազատված վայրերը թուրքական կառավարությունը բնակեցնում էր քրդերով և այլ մահմեդական գաղթականներով: Հայահալած քաղաքականությունը, որը մոլեգնում էր վերջին կես դարի ընթացքում, Հայաստանն ավելի շատ ավերեց, քան նույնիսկ [illegible] տիրապետությունը: Այդ քաղաքականությունն իր էությամբ և չափերով, որով իրագործվում էր, բացահայտ հանցագործ բնույթ էր կրում: Այն կրկնակի հանցագործ կլինի, եթե նրանք, ումից կախված է Հայաստանի ապագան, հաշտվեն թուրքական չարագործությունների արդյունքների հետ, և ինքնորոշման իրավունքը իրագործելիս ելնեին ավերված երկրի, արյունաքամ ժողովրդի ներկա կացությունից: Հայաստանի ճակատագիրը լուծելիս ծայրահեղ դեպքում պետք է ելնել միջազգային դիվանագիտության առջև Հայկական հարցի պաշտոնական բարձրացումից առաջ երկրում գոյություն ունեցած դրությունից: Հայերի պարբերաբար, պետականորեն կազմակերպված հալածանքները՝ բացահայտ ու գաղտնի միջոցներով,

տեղահանությամբ, կոտորածներով սկիզբ առավ այն ժամանակից՝ բարձրացվելով պետական քաղաքականության սկզբունքի:

Բռնությունները, որ գործում էին ոչ քաղաքակիրթ տարրերը, աղետները, որ պատճառվում էին խաղաղ բնակչությանը վայրի ցեղերի կողմից, ավերիչ գործողությունների բնույթ չէին ընդունի, եթե դրանց չմասնակցեին պետական իշխանությունները: Նրանք ոչ միայն չէին զսպում սանձարձակ կրքերի խրախճանքը, այլև ընդհակառակը, կազմակերպում և ուղղություն էին տալիս դրանց: Բավական է հիշատակել տխրահռչակ համիդիե զնդերը՝ ձևավորված քրդական ցեղերից և տեղակայված հայկական կենտրոններում:

Երբ Թուրքիայի հետ հաշիվները մաքրելու պահը գա և դրվի Հայաստանի ազատագրության հարցը, ապա արդարության պարտքն է՝ վերապահել հայերին տնօրինել իրենք իրենց և իրենց երկիրը, շրջանցելով թուրքական չարամիտ քաղաքականության բոլոր նվաճումները երկիր էթնիկական հենքը փոփոխելու գործում:

Ինչի՞ հասավ թուրքական քաղաքականությունը: Ինչո՞ւմն է երկրի էթնիկական փոփոխությունը: Հայաստանի արևմտյան մարզերը, ոչ միայն Սվազի և Մալաթիայի շրջանները, այլև Եփրատի հովտով Էրզրումից մինչև Խարբերդ և Դիարբեքիր ավելի ապազգայնացված դուրս եկան, քան մյուս շրջանները: Ապազգայնացում ավելի շուտ կրոնական, քան էթնիկական հիմքի վրա: Բանն այն է, որ Հայաստանի նշված մասը տարբերվում է նրանով, որ նրա նշանակալի շրջաններ դավանաբանական առումով ազգային եկեղեցական կազմակերպությանը չէին պատկանում: Եփրատի աջ ափը հարում էր կայսերական եկեղեցուն. դրանք հայ քաղկեդոնականներն էին, որոնք հասարակ ժողովրդին հայտնի էին հայ-հոռոմ կամ հոռոմեական-բյուզանդական հայեր անունով: Նրանց մնացուկները պահպանվել են Ակն (Էգին) և Արաբկիր քաղաքների շրջանում: Թուրքական պաշտոնական վիճակագրությունը այս հայ-հոռոմների մասին լռում է կամ մատուցում է նրանց իբրև հույներ:

Ինչ վերաբերում է Եփրատի ձախ ափին, ապա այստեղ Սամախաբունից մինչև Բալու գերազանցապես ապրում էին հայ աղանդավորներ: Նրանց հասարակությանը, ասենք նաև շատ մասնագետների հայտնի չէ, որ ոչ մի տեղ աղանդավորական շարժումը այնքան ուժեղ չի եղել, որքան Հայաստանում: Հայկական եկեղեցու ծոցում են ծնունդ առել կրոնական մտքի այն հզոր հոսանքները, որոնք դուրս հորդեցին Հայաստանի սահմաններից և ժամանակ առ ժամանակ ընդգրկեցին կայսրության ամբողջ կյանքը: Պավլիկյանությունը, թոնդրակյան, թուլաիյան հեղձվածները սոսկ

տարբեր անվանումներ են ազգակից մտահայեցություններին, որոնք իրենց բանականական հիմքով սպառնում էին պայթեցնել ոչ միայն հայկական եկեղեցական կարգը, այլև քայքայել կայսերական եկեղեցական աշխարհի միասնությունը: Դերսիմի բարձունքները հարակից վայրերով աղանդավորների հենակետ էին: Հայտնի է կայսրերի, հատկապես Բարսեղ I-ի պայքարը պավլիկյանների դեմ Դիվրիգում (21):

Չնայած բոլոր խիստ միջոցառումներին՝ արմատախիլ անելու այդ շարժումը, այն չմարեց և դիմացավ մինչև ամենաուշ ժամանակներս: Զրկված հայկական եկեղեցու հովանուց, որը հետագայում դարձավ հայության միակ ապաստանը, աղանդավորական զանգվածը և նրա հավատալիքները ապազգայնացան մահմեդական թեոկրատական միջավայրում: Ի՞նչ են իրենցից ներկայացնում բոլոր այդ ժողովրդական ու կրոնական խմբերը, որոնք տարբեր անուններ են կրում՝ դուժիկներ, ղզլբաշներ, ալիիլլահիներ, Չըրագ-Սոնդրան (այսինքն՝ լույս մարողներ), ավաքախբաշիներ և այլն: Ինչո՞ւ է Հայաստանում քուրդ բնակչության ամենահին շերտը անվանվում զազա: Հարցը տերմինների մեջ չէ, որոնք կարող են հեշտությամբ բացատրվել, այլ նրանց ինքնապարփակվածության: Թուրքական իշխանությունները նրանց մահմեդական են համարում: Իրականում բոլոր այդ հավատալիքները երևան են հանում մահմեդական և քրիստոնեական տարրերի մի արտասովոր խառնուրդ: Հատկանշական չէ՞ արդյոք, որ բոլոր այդ խորհրդավոր հավատալիքները տարածված են հատկապես Խարբերդի և Սվազի վիլայեթներում, այսինքն՝ հայ աղանդավորների նախկին սահմաններում: Շատ հատկանշական է, որ այդ տարածքի ծայրամասերում, Մալաթիայի սանջակի հարավում և Սվազի սանջակի շրջանում դեռ այժմ էլ հանդիպում են քրիստոնեական-մահմեդական հավատքի հասարակական խմբեր: Հարավում նրանք կրում են բնորոշ կեսկես տերմինը, որը հայերեն է, քանզի պահպանելով մայրենի լեզուն, զաղտնի դավանում են քրիստոնեություն և ցուցադրաբար կատարում մահմեդական ծեսեր: Հյուսիսում նման համայնքները կրում են հեմիստավրիտաե հունարեն անվանումը, այսինքն՝ կես-խաչ, որը իմաստով համընկնում է հայկական կեսկեսին: Լեզվի հնարավոր կորստի դեպքում, իհարկե, թուրքական վիճակագրությունն այդ համայնքներն էլ կդասի քուրդերի շարքը: Որքան նման համայնքներ, երբեմն հայկական բնակչությամբ ամբողջ շրջաններ, որոնք ստիպողաբար իսլամ են ընդունել, որպեսզի փրկվեն սրից, այժմ հաշվվում են քուրդերի թվում: Վերջին դարերի պատմությունը արձանագրել է կրոնական բռնության առանձին դեպքեր ամբողջ շրջանների նկատմամբ:

Այդ ամենը ցույց է տալիս, թե որքան համաձույլ են ազգագրական հարցերը Հայաստանում, հարցեր, որոնց լուծումը պահանջում է նախնական և ավելի լուրջ հետազոտություններ, քան կարծում են երկրամասի թռուցիկ այցելուները: Բնակչության թուրքական բաժանումը մահմեդականների և քրիստոնյաների ազգագրական արժեք չունի: Շատ դեպքերում ո՛չ հավատը, ո՛չ լեզուն ազգագրական չափման վճռական չափանիշ չեն: Կասկածի ենթակա չէ, որ կրոնական հավատալիքները, որոնք խոտորվում են իսլամից, հավասարապես և քրիստոնեությունից, ինչ ծագում էլ որ նրանք ունենան, եթե անգամ օտարերկրյա ծաղիկներ են, բայց աճեցվել են պատմական աղանդավորության տեղական գետնի վրա: Նստակյաց երկրագործ մահմեդական գյուղացիության նշանակալի մասը, որը բնավորությամբ ու կերպարով տարբերվում են զտարյուն թուրքերից, զտարյուն քրդերից, երակներում հոսում է կրոնական մոլեռանդության զոհ դարձած տեղաբնիկների արյունը:

Հայաստանի արևելյան մասում քուրդ պատմիչ Շարաֆեդդինի ժամանակներում ապրում էր Պազուկի եզդիական ցեղը: Հետագայում այն դուրս մղվեց Դիարբեքիրի կողմից Հայաստան շարժվող քրդական ցեղերի կողմից: Նրանք ընդհանուր անունով կոչվում էին սիլվանցիներ: Երբեմն և վայրերը, որ նրանք զբաղվում էին Պատնոցից մինչև Ալաշկերտ անվանվում էր Սիլվան: Ինչպես հայտնի է, Սիլվանը Դիարբեքիրի սանջակի կազաններից մեկի անունն է, նույն անունը կրող մի փոքրիկ քաղաքով Դիարբեքիր քաղաքից հյուսիս: Հայկական սիլվանները՝ գաղթածներ էին այդ շրջանից և պահպանել էին իրենց նախկին նստավայրի անունը: Դեռևս XIX դարի սկզբին սիլվան տերմինը կենդանի էր ցեղային և աշխարհագրական նշանակությամբ: Այժմ այն դուրս է եկել օգտագործումից, քանզի բուն սիլվանցիների ցեղն անհետացել է թատերաբեմից: Որոշակի մասն անցավ աշխատանքային նստակյաց կյանքի, իսկ գլխավոր զանգվածը դուրս մղվեց Հայդերանցի և Մուքրի առավել ռազմաշունչ ցեղերի կողմից: Հայդերանցիները պատկանում են Հաքքյարիի քրդերի խմբին, իսկ Մուքրին՝ պարսկական: Քրդերը Հայաստան էին շարժվում երեք կետերից, Դիարբեքիրի կողմից, Մոսուլից Հաքքյարիի վրայով և Պարսկաստանից՝ Սուճբուլաղի շրջակայքից: Դեռ ներկա ժամանակներում էլ քոչվոր քրդերը, այսպես կոչված քոչերները, ամառներն այդ վայրերից բարձրանում են հայկական լեռները, իսկ ձմռան գալով իջնում են Միջագետքի ցածրավայրերը:

Անպատիժ տեր ու տնօրինության թատերաբեմի վրա մեկ ցեղի մյուսով ախուր հերթափոխությունը երկրում երբեմն թեթևանում էր առավել խաղաղ

տրամադրված տարրերի կողմից, որոնք նստակեցության անցնելով յուրացնում էին տեղական բնակչության ապրելակերպը: Իսկ ավազակային զանգվածները գալիս ու գնում էին, ժամանակավորապես մնալով կյանքի մակերևույթին, նման ալիքների կողմից քշվող տաշեղների: Եվ այժմ էլ, երկրի կերտման ընթացքում պետք է հաշվի նստել միայն նստակյաց աշխատավոր գյուղացիության հետ, իսկ սանձարձակ ցեղերն իրենց ցեղապետների հետ պետք է սրբվեն երկաթյա ձեռքով:

Երբ հարց տրվի, թե արդյո՞ք ժողովրդական զանգվածների այս անդադար մակընթացությունն ու տեղատվությունը, թուրքական, թուրքմենական, քրդական հորդաների այս տարօրինակ կարավանները որևէ էական փոփոխություն մտցրել են երկրի պատմամշակութային կերպարի մեջ, պատասխանը միայն բացասական կարող է լինել: Քաղաքական աշխարհում կշիռ ունեցող երկիրը չի կազմված միայն լեռներից, հովիտներից և հոսող ջրերից: Յուրաքանչյուր երկիր, իր ֆիզիկական մակերևույթից զատ, ունի նաև հոգևոր կերպար, որն առանձնացնում է նրան մյուս երկրներից: Ինչը իսկապես նշանակություն ունի՝ կույր բնության մեռյալ նստվածքները չեն, այլ մարդկային հանճարի հավերժ կենդանի ստեղծագործությունները, որոնցով ծածկված է երկիրը: Բանական աշխատանքի այդ կերտվածքներն էլ ստեղծում են երկրի մշակութային ոգին: Ո՞ւմ է պատկանում այդ ոգին, կամ դադարո՞ւմ է նա երբևէ պատկանել նրան, ով ստեղծել է այն, ում ստացվածքն է այն: Հայաստանն իբրև մարդկային աշխատանքի փորձակայան, եղել է և մնացել է հայկական: Այն վերածվել է մարդու կացարանի հայկական ձեռքերով: Մնացյալ բոլորի համար այն եղել է հյուրատուն. բոլորն օգտվել են նրա օթևանից, մխել շռայլորեն նրա մշակութային գանձերը, ոմանք իբրև ժամանակավոր հյուրեր, ուրիշներն իբրև բախտից հալածված ճամփորդներ, մինչդեռ ոմանք էլ անսանձ կերպով տնօրինել են այն, ավերել ու քանդել: Նրանցից ոչ որ հոգևոր ժառանգություն, մշակույթի որևէ հիշողություն չի թողել, թուրքմենի կամ քրդի ձեռքը ոչ մի աղյուս չի դրել երկրի շինարարական արվեստի գանձարանում: Ճարտարապետության վաղեմի կոթողները՝ պալատները, ամրոցները, եկեղեցիներն ու վանքերը վեհապանծորեն բազմած լեռնագահերին մշակութային զգեստավորմամբ, այժմ փոշուն հավասարեցված, բայց նրանց մեջ դեռ ապրում է ոգին, նրա ավերակների մեջ դեռ դեգերում են անցյալի ստվերները, ստվերներ, որոնք պատրաստ են մարմնավորվելու նոր կյանքի համար: Զուր չէ հայկական ժողովրդական երևակայությունը Հայաստանը պատկերացնում երիտասարդ կույսի կերպարով՝ շրջապատված ավերակներով: Նույնիսկ ոգու շինարարության ավերակներ՝ մի՞թե դրանք ավելի

արժեքավոր չեն երկրի համար, քան քուրդ հովիվների խաշները: Եվ եթե լավագույն հայկական եկեղեցիները համարյա բոլոր քաղաքներում, լինի դա Հայաստանում, թե նրանից դուրս, վերածվել են մզկիթների, մի՞թե դրանով նրանք դադարել են հայկական լինելուց:

Հայաստանը, ինչպես ամեն մի պատմամշակութային երկիր, յուրատեսակ մարմին է. նրանում ավելի ուժեղ բաբախում է հայկական զարկերակը, նրանում ավելի խոր է հայկական շունչն է: Իբրև կենդանի մարմին, Հայաստանը չի կարող հրաժարվել ո՛չ իր անցյալից, ո՛չ իր ապագայից: Թող նա վիրավոր է, արյունաքամ է լինում, բայց նա մեռած չէ: Քաղաքական բժիշկների պարտքն այն է, որ բուժեն նրա վերքերը, բուժեն նրա ցավերը և նրան հնարավորություն տան հառնելու նոր կյանքի համար: Նրանք հանցագործություն կկատարեին, եթե Հայաստանի ազատության դարավոր բաղձանքների առջև պատնեշ դնեին այն պատրվակով, որ նրա առողջ մարմնի վրա նրան խորթ ինչ-որ էթնիկական պալարներ են հայտնվել: Դրանում ամենից ավելի մեղավոր են այն դիվանագետները, ովքեր ձգձգելով Հայկական հարցի լուծումը կես դար շարունակ, հնարավորություն տվեցին արյունոտ վարչակարգին ուժեղացնելու հայկական մարմնի մեջ թշնամական տարրերի ներածումն այնքան ավելի եռանդով, որքան անտարբեր էր Եվրոպան հայերի ճակատագրի նկատմամբ:

Ի միջի այլոց, հայերի տեսակետով այդ չարիքն այնքան մեծ չէ, որ խանգարի Հայաստանին դեն նետելու դարավոր շղթաները: Հայ ժողովուրդն աչքի է ընկնում անսովոր համբերատարությամբ ուրիշ ժողովուրդների նկատմամբ, քիչ գնահատված մի հատկանիշ, որը զարգացել է նրա մեջ աշխարհաքաղաքացիության մտայնությանը զուգահեռ: Հայաստանի դարավոր տերերը չկարողացան ուղի հարթել նրա տարածքում հանդիպած բոլոր ժողովուրդների բարեկամական համակեցության համար: Երկրի քաղաքական ճակատագրի համար պատասխանատվությունը հայերին անցնելու հետ միասին գաղափարական համագործակցության փնտրվող ուղին կգտնվի: Դրա երաշխիքն է ոչ միայն հայ գյուղացիության անսովոր անհիշաչարությունը, այլև այն բարձր մշակութային նվաճումները, որոնք կուտակվել են հայերի մոտ քաղաքակիրթ երկրներում և որոնք կլինեն նրանց թանկարժեք ուղեբեռը հայրենիք վերադառնալիս, որն ունակ կլինի բարձրացնելու և առաջնորդելու երկիրը դեպի այսօրվա հասարակական և քաղաքական պահանջների մակարդակ:

Հայկական բնավորության լայնախոհությունը և բազմակողմանիությունը, որոնք վկայված են պատմությամբ, լավագույն երաշխիքն են նման ստեղծագործ գործունեության: Էթնիկական առումով խայտաբղետ միջավայրը գործի ճիշտ ըմբռնման և համապատասխան դրվածքի դեպքում ունի իր առավելությունները: Վտանգը ոչ թե էթնիկական տարրերի բազմազանության մեջ է, այլ իրավական հարաբերությունների տարատեսակության, այնտեղ, որտեղ կպահովվեն աշխատանքի և տաղանդի իրավունքները, ճակատի քրտինքի իրավունքը, կլինեն հավասարության և արդարության միասնական չափանիշներ, այնտեղ էլ էթնիկական տարբերությունները կծառայեն սոսկ ընդհանուր խնդիրների և նվաճումների ծաղկեփնջի հարստացման միասնական մշակութային կյանքի անդաստանում:

## ՆԱՄԱԿ ԼՈՆԴՈՆԻ «ԹԱՅՄՍ» ԹԵՐԹԻ ԽՄԲԱԳՐԻՆ

**Ազնվամեծար խմբագիր.**

Ձեր լրագրի (1) բարյացակամ վերաբերմունքը հանդեպ հայ ժողովրդի և նրա քաղաքական դատի, ինձ հիմք է տալիս կարծելու, որ չեք մերժի մի համեստ անկյուն հատկացնել իմ նոթին (2):

Ձեր երկիրն այժմ տոնում է խաղաղության հանդիսությունը (3), իսկ իմ հայրենիքը շնչահեղձ է լինում արյան մեջ: Ձեր իսկ թղթակցի հաղորդագրության համաձայն թուրքերը, բոլշևիկները, քրդերը, այդ նոր մարգարեները, զառամյալ աշխարհի վերանորոգիչները, գաղափարական միաանությամբ բոլոր կողմերից վրա են տալիս Հայաստանի Հանրապետությանը:

Պատասխանատու տերությունններն անտարբեր դիտում են այդ արյունալի տեսարանը: Նրանց քաղաքագետները զբաղված են պատերազմի դադարի, խաղաղության հաստատման տարելիցի առթիվ հանդիսություններով:

Այո՛, թնդանոթները լռեցին Եվրոպայում, բայց նրանք դեռ թնդում են հայկական բարձունքներում, այնտեղ հեղվում է և՛ զինվորների, և՛ անզեն մարդկանց, կանանց ու երեխաների արյունը: Գլխավոր գազանը (4) սանձված է, բայց նրա ձագուկները դեռ շարունակում են վայրագությունները, անատամ զայրույթը թափելով մի փոքրիկ ժողովրդի վրա, որի մեղքն այն է համարվում, որ նա այնքան նվիրված է դաշնակիցներին: Բայց դաշնակիցներն ընդունո՞ւմ են արդյոք, որ հայերն այժմ, հիրավի, տառապում են նրանց համար: Հարստագույն Թիֆլիս քաղաքը, ամբողջ երկրամասի բուրժուազիայի կենտրոնը, որ համեղ պատառ է բոլշևիկյան ախորժակի համար, դուրս է մնում կոմունիստների զայրույթի սահմաններից (5): Հենց միայն այդ պարագան բավական է, որպեսզի կույրերը տեսնեն, թե ում անտեսանելի ձեռքն է կուլիսների հետևում ուղղություն տալիս թուրք-թաթարական և բոլշևիկյան հրոսակների շարժմանը:

Հայ ժողովուրդը վստահել է իր ճակատագիրը դաշնակիցներին՝ նա հանձնել է իր նավակը նրանց հզոր նավերին: Հավատալով նրանց խոստումներին, նա զոհաբերեց մարդկային բյուրավոր կյանքեր: Եվ առ այսօր էլ զուր սպասում է փոխհատուցման:

Դաշնակիցների խոսքերը, հավաստիացումները, խոստումները հավաստարազոր են համաձայնագրի այն պտին, որի սրբության մասին անդադրում պնդում էին նրանք և վստահեցնում, որ իրանք զենք են վերցրել հանուն այդ սրբության, և որ իբր դրա խախտումն է առաջ բերել մեծ արյունահեղությունը:

Քաղաքակիրթ աշխարհն իրավունք ունի սպասելու, որպեսզի դաշնակիցները կատարեն իրենց հանձնառությունը հայ ժողովրդի հանդեպ: Տխուր է գիտակցել, որ երկամյա զինադադարի ընթացքում նրանք չեն կատարել և ոչ մի հաստատուն քայլ այդ ոգով: Այն, ինչ այժմ վերապրում է Հայաստանը, տրամաբանական արդյունքն է այն քաղաքականության, որին հետապնդում էին դաշնակիցները զինադադարը կնքելիս և նրանից հետո: Հայաստանը պարզապես մոռացվեց և թողնվեց ճակատագրի քմահաճույքին: Դաշնակիցներն իրենց զորաբանակները թողեցին Միջագետքում և Սիրիայում, իսկ Հայաստանում թողնվեց թուրքականը: Նրանք ծպտուն իսկ չհանեցին Հայաստանից թուրքական բանակը դուրս բերելու կամ զինաթափելու մասին, որպեսզի դրանով հնարավորություն ընձեռեն դժբախտ փախստականններին վերադառնալու իրենց հայրենի օջախները: Սա արդեն յոթերորդ տարին է, ինչ վտարված իրենց բնակավայրերից, նրանք թափառում են և մի հանգիստ անկյուն չեն գտնում այս ստոր աշխարհում:

Դաշնակցային նախարարների սպառնալիքները հայկական կոտորածների և տեղահանության մեղավորների հասցեին, որոնք այնպես իշխանաբար հնչում էին պատերազմի ժամանակ, մնացին դատարկ խոսքեր: Մեծազգույն եղեռնագործները և հանցագործները ման են գալիս ազատության մեջ, և խրախուսված անպատժելիությունից հանդգնում են ոգեշնչել և կազմակերպել նոր եղույթներ ընդդեմ հայերի (6): Վերջապես, երկու տարվա հոգնեցուցիչ սպասումներից հետո դաշնակցային դիվանագիտությունը Սևրում հայերին մատուցեց ինչ-որ անորոշ մի բան, կարծես թե ճիշտ այն բանի համար, որպեսզի առաջ բերի թուրքերի կատաղությունը: Մի խոսքով, հաշտության սկզբից իսկ դաշնակիցներն այնպիսի վարքագիծ էին որդեգրել, որ միայն մեկ բան կարող էր ներշնչել թուրքերին՝ վերաբերմունքը Հայկական հարցի նկատմամբ լուրջ չէ և անկախ Հայաստան ստեղծելու գաղափարը մտացածին բան է:

Ամոթ է նշել, որ որոշ...* անտարբերությունը տվեց բացահայտ անբարյացակամություն:

---

* Ռուսերեն բնագրում մեկ բառ անընթեռնելի է (Պ. Հ.):

Դեռևս երեկ Ֆրանսիան, հեղձախեղդ լինելով քնղանոքների ծխի մեջ, դիմում էր մարդկային լավագույն զգացմունքներին, իսկ այժմ նրա խրոխտ գեներալները հատպտում են, սեթևեթում թուրքական ավազակների հետ Կիլիկիայում ապաստանած մի բուռ հայերի դիակների վրա (7):

Իտալիան, հակառակ բանականությանը, մարդկային ըմբռնողությանը անհասկանալի դրդապատճառներով, այդ նույն թուրք ավազակներին զենք է մատակարարում:

Անգլիան, առավել պատասխանատուն, լուռ ու մունջ դիրքով, ինչպես միշտ, սպասում է իրադարձությունների զարգացմանը:

Հայաստանն իրենց պաշտպանության տակ վերցրած դաշնակից տերությունների հոգսը չէ, թե պատերազմի ժամանակի ամայացումից փրկված նրա տարածքի մի ծվենը այժմ վերջնականապես կհոշոտվի, բնակչության վերապրուկը կկործանվի միմյանց արժանի զինակիցների՝ թուրք-թաթարների և բոլշևիկների գազանությունից:

Մի քանի հարյուր անգլիացի գերիների պատճառով Անգլիան հնարավոր համարեց իջնել իր բարձրությունից անարժան մարդկանց հետ բանակցությունների, որոնց մասին նա որոշակի կարծիք ուներ: Մեծ տերությունը, մեծ ժողովուրդը դադարում է այդպիսին լինելուց, երբ նա քանի գնահատելով իր մարդկանց կյանքը, անտարբեր դիտում է օտարների անմեղ թափվող արյունը:

Հայկական արյունը իրավունք ունի Անգլիայի ուշադրությանը, առավել ևս որ Հայաստանն էլ հնարավորություն ուներ դեռ երկու տարի առաջ ընդունել նոր Ռուսաստանի տիրակալների խաղաղ առաջարկությունը և ապահովագրել իրեն ներկայիս դժբախտություններից: Բայց նա արիաբար դիմադրեց գայթակղությանը, ցանկանալով հավատարիմ մնալ իր դաշնակցային պարտավորություններին, և այդ բուռն ձգտման մեջ խրախուսվեց դաշնակիցներից:

Հայկական հարցը ծանր քարի պես ընկած է տերությունների խղճի վրա: Կես դար է հայերը պարտասում են կեղծիքի ու դավաճանության ճնշման տակ: Այժմ, երբ կատարվել է գրեթե անհնարինը և նրանց մեջքին է իջել ռուսական կոմունիզմը, այս անգամ արդեն թուրքական բարբարոսության հետ, այդ ամենը դաշնակիցների պատճառով է: Այս ճակատագրական պահին հայերը դաշնակիցներից սպասում են բաց սիրտ և վճռական խոսք, որպեսզի, վերջապես, դուրս գան մոլորությունների լաբիրինթոսից: Թող այնժամ նրանք մեկընդմիշտ կշրջվեն Եվրոպայից տառապալից համոզմամբ, որ մարդկային արժանիքներից լավագույնը՝ խիղճը, այնտեղ անհույս խլացել է:

## ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՐՑԸ ՍԵՎՐՈՒՄ

**Դաշնակիցների վերաբերմունքը դեպի հայերը զինադադարից հետո: Հայկական հարցի կիսատ-պռատ լուծումը: Հայաստանի ենթադրվող սահմանների քննարկումը: Հայաստանի իրական սահմանները: Սահմանները հաստատելու դրույթներն իբրև բուն Հայաստանի գոյության պայման: Տարածքը և բնակչությունը: Իրավարարության նշանակությունը:**

Թուրքիայի ճակատագիրը վճռված է:

Սևրի պայմանագրի ստորագրման լուրը քաղաքակիրթ աշխարհն ընդունեց թեթևության հոգոցով, լուր, որին նա սպասել էր դարեր շարունակ:

Հիվանդ պետականության համար այլ միջոց չգտնվեց, քան նրա ամբողջ մասերն անդամահատելը: Թուրքիան անդամահատված է՝ բոլոր ազգային տարածքներն առանձնացված են ինքնուրույն միավորների: Նրան թողել են միայն Թուրքական Անատոլիան և այն էլ բաժանված օտարերկրյա ազդեցության գոտիների, ընդ որում, այդ տիրապետությունը կաշկանդված է տնտեսական, ֆինանսական և քաղաքական բնույթի այնպիսի շղթաներով, որ Թուրքիան այսուհետև, թուրքերի իսկ արտահայտությամբ, իրենից ներկայացնում է «մի կույր, խուլ, համր մարմին, առանց ոտքերի ու ձեռքերի»...

Օսմանների կայսրությունը հիրավի ջախջախված է: Այն կրեց պատիժ, որին լիովին արժանի էր: Եվրոպան վերջապես քաջություն ունեցավ եթե ոչ ամբողջովին ճզմելու, ապա քաշելու թունավոր օձի ատամը, որին դարեր շարունակ նա ինքն էր տաքացրել սեփական քաղաքակրթության կրծքին :

Դաշնակից տերությունները, անշուշտ, չեն կարող այս անգամ կասկածվել Թուրքիայի հանդեպ սովորական կողմնապահության մեջ: Նրանից վրեժխնդիր եղան և՛ ապերախտության, և՛ դարավոր հովանավորների նկատմամբ դավաճանության և՛ եղեռնագործությունների համար:

Ես կցանկանայի անդրադառնալ այն հարցին, թե ինչպես արտացոլվեց տերությունների այդ պահեղ ու անողոք տրամադրությունը հայկական գործերում, որ մեր համառ հետաքրքրության առարկան է: Չի կարելի ժխտել, որ այն ամենը, ինչ ծառայում է և կարող է ծառայել իբրև բարոյական հիմք Թուրքիայի նկատմամբ նման անողոք հաշվեհարդարի համար, նշա-

նակալի չափով վերցված է հայկական կյանքի տխուր տարեգրությունից: Ինչպե՞ս վերաբերվեցին դաշնակիցները հայերին՝ իրենց կրտսեր եղբոր նկատմամբ: Արդյո՞ք վճռականություն ցուցաբերեցին պատժելու թուրքերին նրանց անլուր հանցանքների համար, որ գործել էին հայերի նկատմամբ թեկուզև պատերազմի ընթացքում:

Այդ հարցը թախծալի մտորումների տեղիք է տալիս: Երկու տարի է անցել այն պահից, ինչ ամբարտավան թշնամին, զենքը վայր դնելով, գինադադար աղերսեց դաշնակիցներից (1): Այս ամբողջ ժամանակի ընթացքում, հայտնի է, որ տերությունները ոչինչ չարեցին, ոչ մի միջոց ձեռք չառան, որպեսզի հրից ու սրից ցանուցիր եղած հայերը կարողանային վերադառնալ իրենց դեռ մինչև այժմ էլ ծխացող տների մոխրակույտերը: Ամայացած ու պատերազմի սարսափներից քայքայված Հայաստանը դեռ հիմա էլ ներկայացնում է մի իսկական անապատ, որտեղ խլացել է աշխատանքային կյանքը և ավերակներում ավազակների հրոսակներ են թափառում:

Թուրքական բնաջնջումից Անդրկովկաս՝ իր ազգակիցների մոտ փախուստ տված ողջ մնացած հայ ազգաբնակչությունն այնտեղ էլ հանգիստ չգտավ: Ռուսական հեղափոխության հետևանքով սեփական ուժերին ապավինած, հայերը պետք է նախ դիմագրավեին թուրքերի արշավանքին, այնուհետև էլ դաշնակիցների աջակցության շնորհիվ կյանքի կոչված տխրահռչակ Անդրկովկասյան Հանրապետության թաթարների գրոհներին: Եվ այժմ նրանք արյուն են թափում բոլոր կողմերից նրանց պաշարած թուրք-թաթարական հրոսակների դեմ մղվող հերոսական պայքարում:

Արդեն հինգերորդ տարին է, ինչ թուրքական մարզերի հայ ազգաբնակչությունը, կտրված իր օջախներից, թափառում է օտար երկինքների տակ: Դրա կործանարար հետևանքները անչափելի են: Ազգաբնակչության համար հայրենիքը սոսկական հողային տարածություն չէ: Ժողովրդի գիտակցության մեջ երկիրը բարձրանում է հայրենիքի հասկացության շնորհիվ այն ամենի, ինչ կապում է, հոգեպես հարազատացնում է ժողովրդին նրա հետ: Որոշակի տեղավայրի պայմաններում և նրա բնության հետ հաղորդակցությամբ կազմավորվում են ասքերը, հեքիաթները, սովորույթները, բարքերը, լեզվական առանձնահատկությունները, ներաշխարհի բոլոր դրսևորումները: Օտարության մեջ այդ ամենը մոռացվում է, աղավաղվում է և կործանվում: Աղոտանում են երկրի հետ կապված պատմական հիշողությունները: Մի խոսքով, այն ամենը, ինչ կազմում է երկրի ու ժողովրդի հոգևոր կերպարը, ինչ նրանց դարձնում է մշակութային մեծություն, օտար իրադրության մեջ ենթարկվում է վտանգի: Դա ժողովրդի հոգևոր

ջախջախումն է, առավել ծանր մի կորուստ, քան բոլոր նյութական ավերածությունները:

Ոչ որ նրանց օգնության ձեռք չմեկնեց այդ սարսափի գիտակցման մեջ, ոչ որ հոգ չտարավ ժամանակին նրանց հայրենիք վերադարձնելու մասին:

Թուրքական տեղահանության զոհերի չարաբախտ մնացորդներին հնարավորություն չի ընձեռված իրենց տները վերադառնալու: Փրկվելով հրաշքով, անմարդկային ջանքերով, նրանք իրենց ապաստանը չեն գտնում. նրանց բեռների նման նետում են մի վայրից մի ուրիշ վայր, հաճախ անօգուտ: Ամեն օր լսվում են նրանց՝ որբացածների, աղաղակները, որոնք զուր փնտրում են իրենց հարազատներին...

Բայց չէ՞ որ զինադադարը կնքելիս մեկ զորեղ խոսքը, մեկ ազդեցիկ պահանջը բավական կլինեի բոլոր այդ ավազակային տարրերին վտարելու Հայաստանից և փախստականներին տունդարձի ճամփա բռնելու:

Դաշնակցային զորաբանակները դեռ այժմ էլ տեղակայված են Միջագետքում և Սիրիայում: Ֆրանսիական գեներալները Կիլիկիայում հայ բնակչության թիկունքին թեթևսոլիկ կերպով մարտավարում են թուրք ազգայնականների հետ... Բայցևայնպես շարունակում են պնդել, թե իբր դաշնակիցները հնարավորություն չունեն մաքրելու Հայաստանը այնտեղ թափառող սովալլուկ արկածախնդիրների հրոսակախմբերից:

Բարեբախտաբար հայ ժողովրդի համբերությունը վերջ չունի: Նա հեզորեն տարավ զինադադարի այս երկու տարին էլ (2), բոլոր չարակրությունները, բոլոր փորձությունները, իր հույսը դնելով հաշտության կնքման պահի վրա, երբ, վերջապես, ենթադրվում էր, թե ամեն ինչ կստանա ըստ արժանյաց:

Սպասեցին մինչև Սևրի պայմանագիրը: 88-րդ հոդվածով Հայաստանը ճանաչվում էր ազատ և անկախ պետություն (3): Այդ հայտարարությունը միայն, որը նշանավորում է հայկական բաղձանքների հաղթանակը, բավարար կլիներ հանդարտեցնելու մտքերը, հատկապես, եթե այն ազդված լիներ առավել իրական, առավել հզատար պայմաններով, որոնք թույլ կտային նրա անհապաղ իրականացումն ամբողջությամբ վերցրած: Արդեն այն պարագան, որ Հայաստանի սահմանների արմատական հարցը համարյա թե բաց մնաց, նշանակալիորեն նվազեցնում է հռչակված անվիճելիորեն մեծ կարևորություն ունեցող ակտի տպավորությունը: Ռուսական սահմանը պետք է որոշվի Հայաստանի և նրան հարևան Վրաստանի և Ադրբեջանի հետ փոխադարձ համաձայնությամբ, պետությունների, որոնք իրավական առումով դեռ ճանաչված չեն: Ի միջի այլոց վերապահված է և շատ ճիշտ, որ համաձայնություն չկայանալու դեպքում վեճը կլուծվի

գլխավոր դաշնակցային տերությունների կողմից: Որոշված չէ նաև Հայաստանի սահմանը Թուրքիայի կողմից՝ այդ խնդիրը դրված է Միացյալ Նահանգների նախագահի վրա, սահմանափակելով նրա լիազորությունները չորս վիլայեթների սահմաններում:

Իհարկե, գերադասելի կլիներ փոքր-ինչ այլ խմբագրում, որտեղ պարզորոշ տեսանելի կլիներ, որ Թուրքիային կոչ է արվում ճանաչել, ամենից առաջ, նրանից տվյալ հայկական վիլայեթների անջատումը: Այնժամ օսմանյան կառավարությունը ձեռնպահ կմնար այն անհարկի դիտողությունից, որը նա քույլ տվեց իրեն Սևրի պայմանագրի դեմ իրենց առարկության մեջ, թե կարիք չկա Հայաստանը տարածել նախկին ռուս-թուրքական սահմանից այն կողմ: Նա միամիտ չէր ձևանա մտածելու, որ կարծես թե իրենից պահանջվում է ճանաչել ռուսական հեղափոխության թոհուբոհում ծնված Հայկական Հանրապետությունը, մի հարց, որն ամենևին էլ նրան չի վերաբերում: Եթե պայմանագրի 89-րդ հոդվածը ընդունում է չորս վիլայեթների՝ ամբողջությամբ Հայաստանին անցնելու հնարավորությունը, ապա ցանկալի կլիներ ավելի դրական խմբագրություն, հենց այդ ոգով, նախագահին թողնելով ճշգրտումներ կատարելու իրավունք (4):

Ի միջի այլոց, այդ ամենն այնքան էլ կարևոր չէ. ավելի կարևոր է այն, որ Հայկական հարցի լուծումը Թուրքիայում փաստորեն հետաձգված է: Իսկ Հայկական հարցի պատմությունը ցույց է տալիս, որ ամեն մի անորոշություն, ամեն մի ձգձգում կործանարար անդրադարձ է ունենում հայերի ճակատագրի վրա:

Սևրի դիվանագիտությունը խիստ վճռական գտնվեց Թուրքիայի ուրիշ, շատ ավելի ընդարձակածավալ մասեր անջատելիս: Նա համարձակորեն թոքափել տվեց թուրքերի լուծը Միջագետքից, Սիրիայից, Արաբիայից, Հունական Անատոլիայից և ժամանակ ու ցանկություն գտավ գծելու նրանց սահմանները: Վճռականությունը, սակայն, լքեց դաշնակիցներին, երբ գործը հասավ փոքրիկ Հայաստանին: Ազատագրված են երկրներ և ժողովուրդներ, որոնց համար թուրքական տիրակալության ճնշումը այնքան էլ զգալի չէր: Իսկ Հայաստանը, մի երկիր, որը կաթսայի պես եռում էր թուրքական կրակի վրա, զոհաբերելով բոլոր կենդանի ուժերը, դատապարտված է նոր սպասումների: Հայերի հուսահատական ճիչերը պատել են ամբողջ աշխարհը: Նրանց արյամբ թաթախված են սիրիական տափաստանները, նրանց դիակները սփռված են Միջագետքի ավազուտներում:

Սիրիան և Միջագետքը կյանքի են կոչվում մեծ մշակույթի տեր տերությունների հովանու ներքո, իսկ Հայաստանը դեռ շվարած սպասում է իր ճակատագրին:

Իսկ ի՞նչը ստիպեց Սևրի բարձր արեոպագոսին կնճռոտվել Հայաստանի տարածքի չափերի հարցի առջև: Ի՞նչը դժվարացրեց նրան Հայաստանին վերապահել անգամ երեք-չորս վիլայեթ, ինչի՞ համար պետք եղավ դիմել Վիլսոնի միջնորդությանը:

Երբ հարցը համարվում է վիճելի, ապա վիճելի հարցերի լուծման լավագույն բանալին տալիս է նրանց իսկ պատմությունը: Հայոց դատը դաշնակիցներին նվազ հայտնի չէ, քան Վիլսոնին: Կես դար է, որ այն քաշքշվում է միջազգային դիվանագիտության մեջ: Հայկական վիլայեթները մեկ անգամ չէ, որ նշվել են հական-հանվանե և դրոշմվել միջազգային ակտերում սկսած 1878 թվականից: Դեռևս պատերազմի նախօրեին բարեփոխումներ անցկացնելիս նրանք բաժանվեցին երկու սեկտորի: Այդ ամենը աշխարհը հիշում է:

Թվում է, թե հարկ էր այդ վիլայեթների սահմաններում էլ փնտրել իսկական Հայաստանը և նման դրվածքով դատը հանձնել Վիլսոնի իրավարարությանը, եթե դա համարվում էր անհրաժեշտ: Չկային արտաքին ուժեր, որոնք խանգարեին դաշնակիցներին դրսևորելու բարի կամք: Թուրքիան ընկած է դիտապաստ, հավասարապես նաև Գերմանիան ու Ավստրիան. Ռուսաստանը, համրացած, դեն է նետված դիվանագիտական սեղանից: Բոլոր թշնամական կամ այդպիսին համարվող ազդեցությունները ջլատված են: Լիակատար հնարավորություն կա Թուրքիային թելադրելու ցանկացած պայմանները: Բայցևայնպես դաշնակիցները միայն կիսով չափ բավարարեցին հայերին: Վեց վիլայեթներից երեքը ճանաչվեցին Հայաստանին, իսկ երեքը դուրս նետվեցին նրա տարածքից (5): Մերժված վիլայեթների մի մասը մնաց Թուրքիային, իսկ մյուս մասը՝ Եփրատից արևելք, ամրակցվեց Քրդստանին:

Վերջին ակտն արդեն բացահայտ քայլ էր, ուղղված Հայաստանի կենսական շահերի դեմ: Իհարկե, հայերը դաշնակիցներից պակաս շահագրգռված չեն անկախ Քրդստանի ստեղծմամբ: Այդ ուղիով անգիտակից քուրդ ցեղապետները կդադարեն, վերջապես թուրքական քաղաքագետների ձեռքին չար գործիք լինելուց: Բայց բանն այն է, որ Քրդստանը այնտեղ չեն ստեղծում, որտեղ պետք էր ստեղծել: Օտար հողում նման արհեստական կառույցի գաղափարը ավելի շատ կվայելեր ծեր մոլլա Իդրիսին կամ թուրքական կառավարությունից նրան ընդօրինակողներին, ովքեր երազում են հայկական շրջանների քրդացման մասին: Բայց որ եվրոպական դիվանագետները ընկալեին և սրբագործեին հայկական կոտորածների ոգեշնչողների սառը քաղաքականությունը, ապշեցուցիչ ու անսպասելի բան էր:

Այդ ակտի քաղաքական սատարը, ըստ երևույթին, այլ է և կարելի է հասկանալ, եթե հիշենք 1916 թ. Ֆրանսիայի և Ռուսաստանի միջև կայացած գաղտնի համաձայնությունը Հայաստանի բաժանման մասին ճիշտ և ճիշտ Խարբերդի գծով (6):

Քրդստանին հատկացվող Դերսիմի և Խարբերդի սանջակները էթնիկական և աշխարհագրական առումով կազմում են Հայկական բարձրավանդակի անբաժանելի մասը: Մինչև պատերազմն այստեղ հաշվվում էր կլոր թվով մինչև 100 հազար հայ (ըստ Լինչի՝ 85 հազար, ըստ Cuinet-ի՝ 70 հազար) և նույնքան կամ փոքր-ինչ ավելի մի այլ ազգություն, որին սխալմամբ քրդական են համարում: Թուրքերը նրանց ղզլբաշներ են անվանում, իսկ հայերը՝ դուժիկներ: Վերջին անվանումը նրանք ավելի հաճախ տալիս են Դերսիմի բնակիչներին: Արևելքում, մահմեդական վարչակարգի երկրներում, լեզուն համարյա դադարել է ազգության նշան լինելուց, գլխավոր գործոնի նշանակությունը զիջելով կրոնին: Ղզլբաշները և դերսիմցիները դավանում են մի կրոն, որ առանձնացնում է նրանց մահմեդականներից և քրիստոնյաներից: Նրանց հավատալիքները իրենց հիմքում կազմում են քրիստոնեական և մանիքեական ըմբռնումների մի խառնուրդ, սքողված շիիզմի արտաքին ձևերով: Պատմական լեզվով դա նշանակում է, որ նրանք աղանդավորներ են, հայկական պավլիկյանության հետևորդների թվից: Շիիզմի նշանների պատճառով, սուննիները նրանց անվանում են ղզլբաշներ, այսինքն՝ նույնացնում են պարսիկների հետ: Իսկ հետո հայկական դուժիկ անվանումը նշանակում է աղանդավոր. ամենից ավելի հավանական է, որ այդ բառին հառնում է նաև Դերսիմ անվանումը, և նշանակում է աղանդավորների երկիր (Դուժ՝ հին Դուրժից, այստեղից Դուրյժանենա, արաբականացված ձևով Դուրսիմ կամ Դերսիմ):

Պավլիկյան աղանդավորները գրավել էին հենց այդ վայրերը, Դերսիմի բարձունքներից մինչև Խարբերդ, ինչպես որ բացատրում ենք մենք հաջորդ հոդվածում (7): X դարում նրանց գլուխ կանգնած էր մի անձնավորություն, որը կրում էր հայկական Տիրան անունը: Բյուզանդիայի ճնշման ներքո նրանց մի մասը հարեց կայսերական եկեղեցուն, որոնց մնացորդները մինչև հիմա էլ պահպանվել են Ակնի (Էգին) շրջանում հայ-հոռոմներ անվանումով, այսինքն՝ քաղկեդոնական հայեր:

Մյուս մասը տեղի տվեց իսլամի ազդեցությանը և այն ընդունեց առեղծվածային տեսք, որն առ այսօր էլ շփոթեցնում է բոլոր անհրազեկ մարդկանց: Իրենց մոլեռանդության մեջ պավլիկյաններն այնպես էին ատում բյուզանդական եկեղեցին, որ գերադասում էին նույնիսկ իսլամը, ինչպես երևում է արաբների հետ նրանց հարաբերություններից:

Չնայած քրդերի ողջ ներողամտությանը, ղզլբաշները և դերսիմցիները այժմ էլ շարունակում են նրանց վերաբերել ավելի թշնամաբար, քան թե քրիստոնյաներին (8): Կենցաղային առանձնահատկությունները և ավանդույթները նրանց ավելի շատ կապում են վերջիններիս: Ղզլբաշները զբաղվում են երկրագործությամբ, գերազանց այգեգործների և ունակ առևտրականների համբավ ունեն: Էթնիկական առանձնահատկություններով և, ամենից առաջ, իրենց խաղաղասեր բնավորությամբ նրանք տարբերվում են քրդերից: Ոչ մի հիմք չկա այդ կիսաքրիստոնյա տարրերին դասել քրդերի շարքը. ոչ նվազ իրավունքով նրանք կարող են վերագրվել երկրի գլխավոր քրիստոնյա ազգաբնակչությանը:

Նույն կշռադատումներով էլ անաչառ քրդական են համարում Դիարբեքիրի վիլայեթի հայկական շրջանները՝ Արղանա սանջակը և Դիարբեքիրի սանջակի հյուսիսային անկյունը:

Պատմական Դիարբեքիրը գերազանցապես ասորի-քաղդեացիների երկրամաս էր, ավելի ճիշտ, երբեմնի հզոր նեստորական եկեղեցու և հակոբիկականության հետևորդների երկրամաս: Այդ եկեղեցու հետևորդները այսօր էլ ապրում են այնտեղ: Քրիստոնեական դոգմաների մահմեդական ըմբռնումների հետ խառնակումից նրանց միջավայրում էլ առաջ եկան հավատալիքներ՝ ստեղծելով անորոշ կամ չտարբերակվող ազգության կրոնական համայնքներ: Եվ սրանց էլ թյուրիմացաբար քուրդ են համարում:

Իրենց բնական սահմաններում Դերսիմ, Խարբերդ, Արղանա սանջակները մտնում են Հայկական լեռնաշխարհի մեջ: Պետության աշխարհագրական ամբողջականությունը անհրաժեշտ է թեկուզև ռազմավարական բնույթի նկատառումներով, երկրի պաշտպանության տեսանկյունից:

Հայկական բարձրավանդակը որոշակի մեծություն է, որը ոչ մի տարանջատում թույլ չի տալիս: Ըստ Լինչի պատկերավոր արտահայտության, դա լեռնային տանիք է, որը հյուսիսում թեքվում է դեպի Սև ծովի ափերը, հարավում՝ Տիգրիսի երկու վտակների հովիտները, իսկ արևմուտքում հատվում է Եփրատի ջրերով:

Այդ սահմաններում Հայկական լեռնաշխարհը ներկայացնում է մի ինչոր ամբողջություն աշխարհագրական, մշակութա-պատմական, հավասարապես և՛ տնտեսական և՛ ընդհանուր առմամբ ազգագրական իմաստով:

Այստեղ կազմավորվող պետությունը չի կարող համարվել կայուն, եթե այն չի գրավում այդ լեռնային տանիքն ամբողջությամբ իր բնական թեքվածներով:

Հնում Հայաստանի պաշտպանության ռազմավարական գիծն անցնում էր Սղերդից Դիարբեքիրի վերևով մինչև Մալաթիա՝ ամրությունների կա-

ռույցների մի ամբողջ շարքով: Արձնը (այժմ ավերակ, Սղերդից արևմուտք), Մարտիրոպոլիսը (այժմյան Սուֆարկինը), Անգղը (հայտնի ամրոց, որտեղ պահվում էին հայ Արշակունիների գանձերը, այժմ Դիարբեքիրից հյուսիս գտնվող Էգիլ գյուղը) գլխավոր ամրացված կետերն էին այդ գծի վրա: Այստեղ էր գտնվում նաև նշանավոր Տիգրանակերտ քաղաքը:

Մալաթիայից մինչև Սատաղ (այժմ՝ Սադաղ) Կելկիտ գետի ակունքները, Եփրատի աջ ափի երկայնքով անցնում էր ամրոցների արևմտյան գիծը, որի վրա դեռ այսօր էլ կանգուն են Արաբկիրը, Արգովան, Էգինը, Դիվրիգը, Չիմարը և Կամախը: Այս գիծը եզերում էր Հայաստանի ռազմավարական ամբողջականությունը, որը համընկնում էր բնականին:

Հայկական պետության սահմանների հարցը վիճաբանություն չէ հողերի մեծ կամ փոքր տարածության մասին, ինչպես որ կարող է թվալ շատերին: Դա պետության գոյության բուն պայմանների և նրա մշակութային ու քաղաքական կայունության հարցն է:

Պատմությունն ընդհանուր առմամբ մերժել է հայերին իրենց սեփական լեռնաշխարհին ամբողջությամբ քաղաքականապես տիրապետելու առավելությունը: Բայց դրանում նա հավասարապես մերժել է և այն արտաքին ուժերին, որոնք, թուլացնելով հայերին, իրենք են ձգտել հաստատվել նրա բարձունքներին: Մեծ հակառակորդները՝ Հռոմը և Պարսկաստանը, Բյուզանդիան և Արաբական խալիֆաթը, Թուրքիան և Իրանը հաջորդաբար մրցակցեցին նրան տիրանալու համար և, չցանկանալով միմյանց զիջել այդ բնական միջնաբերդը, վերջիվերջո համաձայնության էին գալիս կիսելու այն: Մասնատված ազգային օրգանիզմը կիսով չափ կորցնում է կենսունակությունը:

Դրանում է Հայաստանի պատմության տխուր կողմերից մեկը:

Այժմ Հայաստանի վրա կախված է նրան երկատող և դրանով իսկ ժողովրդի ուժերը կոտորակող նույն պատմական սուրը: Հայաստանի քաղաքական վերածնության անհրաժեշտ նախապայմանն է՝ միասնական իշխանություն, մեկ տեր նրա ամբողջ տարածքի վրա:

Եղել են ժամանակներ, երբ Հայկական բարձրավանդակում կողք-կողքի գոյակցել են, թեև ոչ երկար ժամանակ, հայկական, իսկ ավելի ուշ մահմեդական ծագում ունեցող մանր քաղաքական օրգանիզմներ: Իրերի նման դրությունն հնարավոր էր և հանդուրժելի այն ժամանակների պայմաններում, երբ Հայաստանում, ինչպես և ամենուր, տիրապետում էր ժողովրդական տնտեսության փոխանակային ձևը, պարփակված լեռնային կապանքներում: Յուրաքանչյուր հովիտ բավարարվում է իր բարիքով, յուրաքանչյուր լեռ՝ սեփական հոտերով ու նախիրներով:

Իսկ մեր ժամանակներում, ինչպես հայտնի է, ոչ մի տերություն չի կարող մեկուսացված գոյություն ունենալ: Պետության ունևորությունն այժմ որոշվում է նրա տնօրինության տակ եղած հարմարություններով՝ հաղորդակցվելու արտաքին աշխարհի հետ, ավելին, համաշխարհային տնտեսության հործանուտի մեջ ներգրավվելու հնարավորությամբ: Դրանից է կախված պետությունների կենսունակությունը, դրանով է պայմանավորված նրանց քաղաքական և մշակութային արժեքը:

Դրա համար էլ եթե ժողովուրդների ինքնորոշման սկզբունքը հպանցիկ հրավառություն չէ ազգային ինքնասիրության ժամանակավոր բավարարման համար, ապա այն պետք է այնպիսի ձևերով մարմնավորվի, որոնք հնարավոր կդարձնեին ինքնուրույն պետական գոյությունը:

Այն պահից, ինչ ծագեց Հայկական հարցը, Հայաստանը Եվրոպայի աչքին պատկերվեց իբրև մուրացկան, որն աղերսում է իր ֆիզիկական գոյության փրկության համար: Թերևս այդ պատճառով էլ եվրոպական դիվանագետները մտածում են, որ մուրացկան ժողովրդին ամեն մի նվիրատվություն, թեկուզ երկու-երեք վիլայեթ, բարիք է:

Ընդ որում մոռանում են, որ բռնի կերպով իրենց հայրենիքից վտարված հայերը, իրենց տաղանդն ու աշխատասիրությունը տարան ամենուր, որտեղ միայն կարող էին գտնել աշխատանքի անվտանգություն և ծավալվեցին գործունեության եվրոպական չափանիշներով: Ոչ բոլորն են հստակորեն հաշվի առնում, թե հոգևոր ու նյութական գանձերի ինչպիսի պաշար են կուտակել նրանք ոչ միայն իրենց երկրի ծայրամասերում Թիֆլիսում, Բաքվում, այլև հեռու Ռուսաստանում, Ամերիկայում և եվրոպական կենտրոններում:

Այն բանի համար, որպեսզի ամենուր սփռված հայերի ստեղծագործական ուժերը ուղղվեն Հայաստան, կենտրոնացվեն այնտեղ, անհրաժեշտ է հայկական պետությունն ապահովել այնպիսի պայմաններով, որպեսզի երաշխավորվի այդ ուժերի ազատ ներհոսքը, որպեսզի նրանք այնտեղ իրենց թափին համապատասխան կիրառում գտնեն: Հայկական նավի համար պետք է ապահովել, այսպես ասած, համապատասխան նավարկում:

Հայաստանը կարիք ունի ոչ միայն աշխարհագրականորեն կլորացված սահմանների. նրան հարկավոր է նաև մշակութային դրացիություն: Նրա համար առավել կարևոր է այն սահմանը, որը նրան լեռնային կիրճերից կհաներ մշակութային աշխարհ:

Այս հարցը մեկ անգամ արդեն դրվել է հայերի պատմության առջև և լուծվել փայլուն կերպով: Հայերը միջանցք բացեցին դեպի Միջերկրական ծով և այնտեղ հաստատեցին իրենց տիրապետությունը (9):

Օգտվելով իրենց անցյալի դասից, նրանք ձգտում էին հասնել Հայկական Կիլիկիայի միացմանը Հայաստանին:

Հայերի ցանկությունը, սակայն, հակահարվածի հանդիպեց մեծ տերություններից մեկի կողմից (10): Նա իր ակնկալիքները ուներ Կիլիկիայից: Հեշտ կլիներ հաշտվել Կիլիկիայի կորստի հետ, եթե միայն Ֆրանսիան տիրանալով նրան, կամ ներքաշելով իր ազդեցության ոլորտը, ընդհուպ մոտենար հայկական սահմաններին: Կորուստը կարելի կլիներ համարել փոխհատուցված քաղաքակիրթ պետության հետ արժեքավոր հարևանության առավելություններով:

Բայց դժբախտությունն այն է, որ մեծ պետությունը գործում էր ասես ոչ քաղաքանակությամբ, այլ ջղագրգռության եռուն պահին՝ ուղղված ընդդեմ փոքր, անօգնական մրցակցի: Նա Կիլիկիայից իր համար պոկեց այնքան, որքան ուզում էր, և հենց նաև այն մասը, որ պետք էր Հայաստանին միջանցքի համար: Ավելին, նա պատնեշեց իրեն Հայաստանից կամ ավելի ճիշտ, որպեսզի պատնեշվի նրանից, հնարավոր համարեց բարձրացնել մի արհեստական արգելափակոց Քրդստանի տեսքով, ընդ որում ձևելով այն Հայաստանից խլված հողերի հաշվին:

Երիտասարդ Հայաստանի ծնունդը ուղեկցվում էր այնպիսի մղձավանջային տառապանքներով, որ մենք կորցրեցինք նորածնի քաղցրության զգալու ունակությունը: Ծանր վշտի մեջ հայերը կարող էին անշուշտ մխիթարանք գտնել նրանում, որ վերջապես հարավից Հայաստանին մոտեցավ վաղուց ի վեր սպասված եվրոպական քաղաքակրթությունը ի դեմ Ֆրանսիայի Սիրիայում և Անգլիայի՝ Միջագետքում:

Ինչպիսի սահմաններ էլ որ թելադրեին Հայաստանին հարավից, ամեն ինչ ընդունելի կլիներ միայն մեկ պայմանով, որպեսզի նրա սահմանային գիծը հարեր անմիջականորեն Ֆրանսիայի և Անգլիայի նոր տիրույթներին: Դա կլիներ լավագույն օգնությունը, որ դաշնակիցները կկարողանային ցույց տալ Հայաստանին՝ նեցուկ հանդիսանալով նրան հարավից իրենց մշակութային հզորությամբ: Ավելի լավը, քան Հայաստանի այն մանդատը, որի, երկրի համար չափազանց ստորացուցիչ փնտրտուքին նրանց ձեռնամուխ եղան:

Սակայն, դաշնակիցների դիվանագիտությունն այլ կերպ վարվեց և Հայաստանի համար սոսկալի իրադրություն ստեղծեց:

Հայաստանը հայտնվեց անկուլտուրական մահմեդական պետություններ օղակում: Քիչ էր Թուրքիայի հարևանությունը արևմուտքից և Պարսկաստանինը՝ արևելքից, ստեղծեցին թաթարական Ադրբեջանը հյուսիսում և Քրդստանը՝ հարավում:

Բոլորին հայտնի է, որ Քրդստանը ընկած է ոչ թե Եփրատից արևելք, այլ Տիգրիսից և տարածվում է մինչև Զագրոսի լեռները և այնտեղից էլ մինչև պարսկական Արդելան նահանգը: Եփրատից արևելք ֆրանսիական սահմանագծով, որն անցնում է Ուրֆայով և Մարդինով, Քրդստանը չէ: Դա հին Օսրոենեն է, Աբգարյան թագավորների (11) երկիրը Ուրֆա կամ Եդեսիա մայրաքաղաքով: Նրան պատվավոր տեղ է պատկանում վաղ քրիստոնեության պատմության մեջ: Եվ անգամ հիմա էլ իր խայտաբղետ ազգաբնակչությամբ այն չի կարող դրվել Քրդստան հասկացության տակ:

Թուրքիայի անդամահատման իր նախագծում ֆրանսիական լրագրող Լյուդովիկոս դը Կոնտանսոնը (12) մերձեփրատյան այս մասը հանձնում էր Հայաստանին: Հավանաբար, նա հստակ չէր պատկերացնում իր հայրենակիցների ախորժակը հաջողության պայմաններում:

Հայերն իրենց կողմից դրանով էլ կգոհանային, եթե ֆրանսիական սահմանագիծը Սիրիայում բարձրացվեր մինչև Հայաստանի սահմաններին հանդիպելը, որտեղ էլ որ այն լիներ: Այդ դեպքում Սիրիայի և Հայաստանի համար երաշխավորված կլինեին և՛ աշխարհագրական, և՛ մշակութային սահմաններ:

Հայաստանի արևմտյան սահմանում, Սևրի պայմանագիրը (89-րդ հոդ.) Թուրքիայի կողմից նախատեսում է ապառազմականացված գոտի Հայաստանի և Թուրքիայի միջև: Քանի որ Քրդստանը խցկված է մինչև Դերսիմ, ապա դրանով իսկ հիշյալ միջոցառումը պետք է սահմանափակվի ոչ մեծ սահմանային շերտով Հայաստանի հյուսիս-արևմուտքում:

Հայկական պետության տարածքը ճիշտ սահմանազատելու դեպքում նրա սահմանը արևմուտքից պետք է անցնի, ինչպես բացատրեցինք վերը, Եփրատի աջ ափով Մալաթիայից Արաբկիրի, Դիվրիգի, Գարահիսարի վրայով մինչև Սև ծով՝ մոտավորապես Կերասունի մոտ:

Այդ կետերով է անցնում հյուսիսի և հարավի միջև գրեթե միակ հաղորդակցության գիծը: Եփրատի ձախ ափը ըստ բնական պայմանների հարմար չէ հաղորդակցության ուղիների համար: Ռազմավարական նշանակությունից զատ, հիշյալ գիծը խաղացել և այժմ էլ կարևոր դեր է խաղում երկրի տնտեսական կյանքում իբրև միակ գլխավոր ճանապարհը, որը միացնում է Հայաստանի վերին մարզերը հարավայինի հետ: Այդ նույն գծով է անցնելու, հավանաբար, նաև ապագա երկաթուղին Սև ծովի ափերից և հավասարապես Էրզրումից դեպի հարավ՝ Ներքին Հայաստան և Միջերկրական ծով: Այն դառնալու է Հայաստանի տնտեսական և առևտրական կյանքի գլխավոր զարկերակը, որը լայն հորիզոններ կբացի նրա համար դեպի Սև և Միջերկրական ծովերը:

Այդ գիծը պետք է ապահովվի Հայաստանի համար: Նման դեպքում ապառազմականացման են ենթակա նաև Փոքր Հայքի հողերը Եփրատի աջ ափին՝ Սվազի սանջակի սահմաններում, որը Խարբերդի և Դիարբեքիրի հետ միասին մերժել են հանձնել Հայաստանին:

Դրված հարցերի լուծումը կախված է մեծ իրավարարից՝ Միացյալ Նահանգների նախագահից: Ինչպե՞ս է նա ընկալում իր խնդիրը, կարո՞ղ է նա շրջանցել Սևրի պայմանագրով իրեն տրամադրված լիազորությունները և ի՞նչ չափով՝ միայն նրան է հայտնի: Վստահությունը, որ տրված է իրեն նա պետք է օգտագործի ոչ թե ձևականորեն, այլ վեճի իսկական և արդարացի լուծման համար:

Համենայն դեպս, ոչ ոք չի մերժի նրան սահմաններն ուղղելու իրավունքի մեջ, թեկուզև տարածքների փոխանակության ուղիով: Ըստ պայմանագրի 90-րդ հոդվածի, նախագահը լիիշխան է չորս վիլայեթներն ամբողջությամբ Հայաստանին վերապահելու: Կարծում ենք, նա իրավունք ունի պահանջելու Հայաստանին միացնել նաև Հայկական լեռնաշխարհի նշված մասերը ծայրամասային Սամսուն և Հաքքյարի սանջակների հաշվին:

Խարբերդի սանջակը ընդգրկում է 10 հազ. քառ. կմ, նույնքան էլ՝ Դերսիմի սանջակը: Արղանայի սանջակը հաշվվում է 8 հազ. քառ. կմ, նույնքան էլ Դիարբեքիրի սանջակի հյուսիսային անկյունը: Հետևաբար, Հայաստանի հավակնած հողաբաժինները կազմում են ընդամենը 30-ից մինչև 36 հազար. քառ. կմ: Տրապիզոնի վիլայեթի արևմտյան կեսն ընդգրկում է 15.000 քառ. կմ ոչ պակաս, իսկ Հաքքյարիի հարավային մասը՝ 17 հազ. քառ. կմ ոչ պակաս (ամբողջ սանջակը 25.700 քառ. կմ է):

Այսպիսով, փոխանակության համար առաջարկվող տարածքները հավասար չափերի են: Հետևաբար, չեն կարող կասկածներ լինել, որ Հայաստանը տարածքային ընդարձակման է ձգտում:

Հայաստանի սեփական բնական և պատմական սահմանների պահանջը հաճախ ծամածռանք է առաջ բերում որոշ քաղաքական ու հասարակական շրջաններում, կասկած հայտնելով, որ հայ ժողովուրդն ի վիճակի չէ գլուխ հանել այդքան մեծ տարածքից:

Հայկական բարձրավանդակը մեր կողմից առաջարկված սահմաններում գրավում է շուրջ 200 հազ. քառ. կմ տարածք, ներառյալ ոչ միայն թուրքական այլև ռուսական Հայաստանը:

Ներկայումս Անդրկովկասում հաշվվում է, ներառյալ Թուրքիայից տարագրվածները, ոչ պակաս, քան 2,5 մլն հայ: Եթե ոչ հայ ազգաբնակչությանը հաշվենք մոտ մեկ միլիոն, ապա հայկական պետության բնակչությունը կհաշվվի 3,5 միլիոն:

Կոստանդնուպոլսում և նրա շրջակայքում այժմ կուտակված է ավելի քան 200 հազ. հայ: Հարյուր հազարից ոչ պակաս կան Կիլիկիայում և Սիրիայում: Հայ գաղթականների թիվն Ամերիկայում վաղուց անցել է հարյուր հազարը: Մի կողմ թողնենք Բուլղարիայի, Եգիպտոսի և աշխարհի մյուս մասերի գաղթավայրերը: Գաղթահայերի նշանակալի մասը, դուրս նետված հայրենիքի սահմաններից, դեռևս չի կորցրել կապը նրա հետ և, անկասկած, ետ կվերադառնա:

Եթե նույնիսկ սահմանափակվենք 3,5 միլիոնով, ապա բնակչությունը հավասարաչափ բաշխվելու դեպքում, մեկ քառակուսի կիլոմետրին կընկնի ոչ պակաս, քան 17 հոգի: Երկրի բնակչության ճիշտ տեղաբաշխումը պետք է լինի նոր պետության առաջնահերթ խնդիրներից մեկը:

Վաղուց ի վեր Անդրկովկասի հայ գյուղացիությունը տառապում է սակավահողությունից և հարկադրաբար գաղթում է Թուրքեստան, Սիբիր, անգամ Ամերիկա կամ տարագնացիկ աշխատանք է փնտրում խոշոր քաղաքներում, ամենից առաջ Բաքվում:

Այսուհետև նրա շարժումը պետք է ուղղվի հարավ՝ Հայաստան, առավել ևս, որ հայ գյուղացիության ոչ փոքր մասը դուրս է եկել Թուրքական Հայաստանից 1829 և 1878 թվականներին: Ախալցխայի, Ախալքալակի գավառների և Ալեքսանդրապոլի գավառի մեծ մասը բնակեցված են այն գաղթականներով, որոնք թողել են Էրզրումի վիլայեթը 1829 թվականին:

Նոր Բայազետի գավառն իր անունը պարտական է Հին Բայազետին, որովհետև նրա բնակչությունը ծագում է Բայազետի ու Ալաշկերտի շրջաններից:

Բնակչության ավելցուկը պետք է վերաբնակեցվի Թուրքաց Հայաստանի իր բնօրրանում: Ճիշտ տարաբնակեցումը, կրկնում ենք, կապահովի մեկ քառակուսի կիլոմետրին 17 մարդ: Որպեսզի հասկանանք այդ թվի իմաստը, պետք է պատկերացում ունենանք ընդհանրապես Թուրքիայում բնակչության խտության մասին: Այստեղ մեկ քառակուսի կմ սովորաբար ընկնում է 10-15 մարդ: Այսպես, կենտրոնական Անգորա վիլայեթում հաշվվում է 862.901 բնակիչ 83.000 քառ. կմ վրա, այսինքն՝ շուրջ 10 մարդ մեկ քառ. կմ-ին: Իկոնիայում՝ 91.600 քառ. կմ 1.086.000 բնակչությամբ, այսինքն՝ մեկ քառ. կմ-ին նույնպես գրեթե 10 մարդ: Առավել խիտ բնակեցված Զմյուռնիայի վիլայեթը 53.000 քառ. կմ տարածությամբ, ունի 1.300.000 բնակչություն, այսինքն՝ մեկ քառ. կմ-ին հազիվ 20 մարդ է և այլն:

Եվ չպետք է մոռանալ, որ Հայաստանը Սիրիա կամ Միջագետք չէ, որտեղ յուրաքանչյուր թիզ հողը պիտանի է ամենաթանկարժեք կուլտուրաների համար: Հայաստանի ճիշտ կեսը լեռներ են, որոնք պիտանի չեն նույն-

իսկ անասնապահության համար: Անքաղաքակիրթ ժողովուրդների դարավոր տեր ու անօրինությունը հանգեցրել է այն բանին, որ երբեմնի բուսականությամբ ծածկված լեռներն այժմ լերկացած են հեղեղներից և անասունների կճղակներից: Երկրիս ներկա կացության մեջ մեկ քառ. կմ-ին 10-12 մարդը պետք է ավելի քան սովորական համարվի: Նա չի կարող ավելի շատ ժողովուրդ կերակրել, մինչև որ չկանգնի արդյունաբերական զարգացման ուղու վրա:

Ինչպիսին են նրա հեռանկարները, ինչի վրա կարելի է հույս դնել այդ առումով, դեռևս պարզ չէ: Երկրաբանների կարծիքները Հայաստանի ընդերքի մասին չեն համընկնում: Ստորգետնյա հարստություններ առայժմ հայտնաբերվել են Հայկական բարձրավանդակի ծայրամասերում, որտեղ հողաշերտերը, բարակելով դեպի շրջակա ցածրավայրերը իջնելիս, բացել են հանքային երակներ: Արղանայի հանքերը Հայկական լեռնաշխարհի հարավային լանջերին, Գյումուշխանեինը՝ հյուսիսայինում, Կապանի հանքավայրերն արևելքում՝ Բազարչայ կամ հայկական Որոտան գետի հովտում և, վերջապես, Ալավերդու հանքերը Դեբեդ գետի հովտում: Մետաղների այդ չորս հանքավայրերը Հայաստանի չորս լեռնարդյունաբերական բազաներն են: Առանց սրանց երկրի տնտեսական կյանքի զարգացումն անհնարին է:

Այսպիսին են Սևրի պայմանագրի առաջ բերած խոհերն ու առարկությունները: Կան կասկածամիտներ և թերահավատներ, ովքեր կասկածի տակ են առնում ծնունդ առած մանր պետությունների հարատևությունը: Հայաստանը չի կարող դասվել նրանց շարքը. դրանք ծնվել են օտար արյան մեջ, Հայաստանը՝ սեփական:

Դաշնակցային դիվանագիտությունը պետք է ազնիվ լինի հանդեպ մի ժողովրդի, որը վաղուց է որդեգրել այն սկզբունքը, որ քաղաքականություններից լավագույնը՝ ազնիվ քաղաքականությունն է: Նա բացորոշ վստահել է իր ճակատագիրը դաշնակիցներին: Հարկ չկա թաքցնելու, որ կնքված պայմանագրի անբավարար լինելը, տարածքային սահմանազծումների պակասավորությունը վերջին հաշվով բացատրվում են այն անվստահությամբ կամ կասկածամտությամբ, որով տերությունները վերաբերվում են հայերին, իբրև ռուսական կողմնորոշման տեր ժողովրդի: Թվում է, թե ռուսական պետականության հանդեպ հայերի թուլությունը նախախնամության կողմից չէ դրոշմված հայոց ճակատին: Ժողովրդի տրամադրությունը ստեղծվում է կյանքի իրական պայմաններից և ոչ ընդհակառակը: Այդ թուլությունը կարելի է հաղթահարել, եթե փոխվեն ժողովրդի քաղաքական պայմանները: Շրջել հայերին և Հայաստանը դեմքով դեպի հարավ՝ դա

ամբողջովին կախված է դաշնակցային դիվանագիտությունից: Մինչդեռ Անդրկովկասում դաշնակիցների ներկայացուցիչների կասկածելի քաղաքականությունը վերջին երկու տարում ամեն ինչ արեց, որպեսզի համոզի հայերին ճիշտ հակառակը՝ ռուսական ազդեցության անխուսափելիությունը:

Սևրի սրահներում էլ դաշնակիցները հնարավորություն ունեին մեկընդմիշտ վերջ տալու հայի ձգտմանը դեպի հյուսիս, խարխլելով դրա պատմական հիմքերը: Բայց նրանք ավելի լավ բան չմտածեցին, քան Հայաստանը խցկելը մահմեդական պետությունների շղթայի մեջ, վանելով նրան իրենցից հարավում, կտրելով նրան Ռուսաստանից հյուսիսում: Հայերը ջանում էին ձեռք բերել ազատ անկախ հայրենիք, բայց ոչ լույսից կտրված բանտ, որը պահպանում են թուրքերը, թաթարները, քրդերը և նրանց նմանները... (13):

Ստորև (14) տպագրվող հոդվածները գրված են Պետրոգրադում դեռևս 1918 թ., դաշնակցային զենքի հաղթանակից մի քանի ամիս առաջ: Ինձանից անկախ պատճառներով նրանք հայտնվում են մամուլում միայն հիմա (15), երբ, միգուցե, նրանք հնացել են գործնական հետաքրքրության առումով: Դրանից հետո տեղի ունեցավ մեծ կարևորություն ունեցող իրադարձություն՝ իմ կողմից քննարկված հարցերը իրենց քաղաքական լուծումը ստացան Սևրում:

Բայցևայնպես, ես վճռեցի տպագրել այդ հոդվածներն առանց փոփոխության, այն տեսքով, ինչպես որ նրանք գրվել էին այնքան մոտ անցյալի պայմաններում: Համարձակվում եմ մտածել, որ նրանց, եթե ոչ գործնական, ապա համենայն դեպս տեսական հետաքրքրությունը ուժի մեջ է մնում:

Դրանք էքսկուրսներ են, հիմնված պատմական ըմբռնողության անաչառության վրա: Այստեղ առաջարկվող հարցերի լուսաբանումը, այդ իսկ պատճառով, միայն ինձ չէ պատկանում: Վաղուց այն պետք է դառնար սեփականությունը նաև նրանց, ովքեր կոչված են քակելու Արևելյան հարցի հանգույցը:

Եվ այժմ, կատարված փաստից հետո, իմ կողմից զարգացվող դրույթները կարող են իբրև հիմք ծառայել Սևրի պայմանագրին հարկ եղած գնահատականը տալու համար: Նկատառումները, որոնք առաջ են գալիս Սևրում Հայկական հարցի դրվածքով, շարադրված են հատուկ հոդվածում, որը նախակցված է հիշյալ էքսկուրսներին:

*Լոնդոն, սույն թվականի 20 նոյեմբերի*

## ՔՐԴԵՐԻ ՆԵՐԹԱՓԱՆՑՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆ

Ցավալի փաստ է, որ Անգլիան և Ռուսաստանը՝ այդ երկու մրցակիցները Հայկական լեռնաշխարհում, բարյացակամությամբ են վերաբերվել թուրքերի քրդամետ քաղաքականությանը: Հայերը միշտ ձգտում են ունեցել դեպի Ռուսաստանը, հույս ունենալով, որ այն կօգնի իրենց՝ թոթափելու թուրքերի բռնակալ լուծը: Հայերի այս ռուսասիրությունը, որն աճել ու զարգացել է դարերի ընթացքում, Անգլիային թվում էր անհամատեղելի՝ Ասիայում ունեցած իր շահերի հետ: Հենց որ նա վերջնականապես համոզվեց, որ հայերի ռուսական կողմնորոշումն անխուսափելի է, իր օգնությունն ու համակրանքն ուղղեց դեպի քրդերը՝ ի հակադրություն հայերի, որոնց դիտում էր որպես Ռուսաստանի դաշնակիցներ և համախոհներ (1):

Ռուսաստանի դեմ պատվար ստեղծելու նպատակով Քրդստանը քաղաքական օրգանիզմ դարձնելու գաղափարը պատկանում է անգլիական հյուպատոս Փալգրեյվին: Ճիշտ է, նրա հետնորդը՝ հյուպատոս Թեյլորը, 1869 թ. մարտի 18-ի իր զեկուցագրում անընդունելի և անիրականանալի է համարում Փալգրեյվի առաջարկը, քանի որ քրդերն իրենք էլ համակրում էին Ռուսաստանին (2): Այնուհանդերձ, անգլիական գործակալները Հայաստանում շարունակում էին իրենց քրդասեր քաղաքականությունը: Բավական է, որ Էրզրումի հյուպատոսին նրանք կոչում էին «Քրդստանի հյուպատոս»: Թուրքերն էլ իրենց հերթին ջանում էին ջնջել քարտեզներից Էրմենիստան անունը՝ փոխարինելով այն Քրդստանով: Հայերի համար զարմանալի էր տեսնել, թե ինչպես թուրքական հայեցակետը Հայաստանի նկատմամբ հավանություն էր գտնում անգլիացիների շրջանում (3): Նրանք ստիպված եղան իրենց պատրիարքի միջոցով բարձրաձայն բողոքել այդպիսի անբարյացակամ քայլի դեմ:

Ռուսաստանի դիրքորոշումը, որն ինքն էր Հայաստանի նկատմամբ Անգլիայի կասկածամտության պատճառը, առավել անհասկանալի է: Հայաստանում իր դիրքերն ամրապնդելու փոխարեն նա հանդես էր գալիս որպես Անգլիայի մրցակից՝ քրդասեր քաղաքականության մեջ: Ռուս քաղաքական գործիչները ակնհայտորեն հույսը դրել էին Անգլիային քրդերի աջակցությունից զրկելու վրա: Ռուս գործակալները, զինվորական գրողները և ճանապարհորդները ձգտում էին արհամարհել հայերի նշանա-

կությունը՝ խոսելով քրդերի թվական գերակշռության մասին: Նրանց գրքերում և հոդվածներում Հայաստանը դադարել էր հայերի երկիր կոչվելուց. այն անվանվում էր Քրդստան: Էրզրումի շրջանը կոչվում էր Հյուսիսային, իսկ Բիթլիսը (Վանը)՝ Հարավային Քրդստան (4): Նրանցից մի քանիսն այնքան հեռու էին գնացել, որ անգամ պնդում էին, թե քրդերն են Հայաստանի իսկական բնիկները, և որ Հայաստանը միշտ էլ եղել է քրդերի երկիրը:

Քրդերը չեն ապրել Հայաստանում անհիշելի ժամանակներից, այլ տեղափոխվել են այստեղ թուրքական կառավարող շրջանների կողմից (5): Թուրքերը գրավեցին Հայաստանը 1514 թ. Չալդրանի ճակատամարտից հետո, երբ նրանք պարտության մատնեցին Պարսկաստանի տիրակալ շահ Իսմայիլի զորքերին՝ շնորհիվ իրենց հրետանու, որն այդ ժամանակ առաջին անգամ էին կիրառվում նրանց կողմից: Պարսիկների և թուրքերի միջև վեճերը Հայաստանի համար դրանից հետո էլ շարունակվեցին, սակայն մինչև օրս էլ սահմանները նույնն են մնացել: Մոլլա Իդրիսը՝ բիթլիսցի մի քուրդ (6), որը տեղի բնակիչ էր և լավ ծանոթ էր տեղական պայմաններին, գործուն մասնակցություն բերեց սուլթան Սելիմի ռազմական գործողություններին: Ինչպես կարելի էր սպասել, մոլլա Իդրիսը պաշտպանում էր քրդական մանր ցեղապետների շահերը:

Պարսիկները Հայաստանի համար իրենց պայքարում հաջողության հասնելով, հեռացնում էին քուրդ բեյերին: Թուրք սուլթանները, սակայն, վարում էին հակառակ քաղաքականություն. նրանք հողեր էին տրամադրում քուրդ առաջնորդներին՝ պարսիկների դեմ պատվար ստեղծելու նպատակով: Մոլլա Իդրիսն իր իշխանության տակ միավորեց մի մեծ նահանգ՝ Սծրինից մինչև Դերսիմ, անվանեց այն Դիարբեքիր և բաժանեց 19 սանջակների («դրոշների») կամ ռազմաֆեոդալական միավորների: Այս սանջակներից ուրը ժառանգելու իրավունքով տրվեց քուրդ բեյերին: Այս քուրդ առաջնորդները որոշ հողատարածություններ ստացան նաև Տիգրիսի ակունքներում՝ որպես մասնավոր սեփականություն կամ **հյուրյումեթ**: Մոլլա Իդրիսը ցեղապետներին որպես սուլթանի նվեր բաժանեց 25.000 դուկատ, 70 պատվո «**կաֆտան**» (խալաթ) և 70 դրոշ: Նա նաև որոշ քրդական ցեղեր տեղափոխեց Էրզրումի նահանգ՝ դրանով հիմք դնելով Հայաստանի այդ մասում քրդական էթնիկական տարրի հաստատմանը (7): Ինչպես Իդրիսը, այնպես էլ նրա որդի Աբուլֆազիլը ընդունակ էին գրիչ բռնելու, և հենց նրանց սեփական գրվածքներից է, որ մենք իմանում ենք այդ միջոցառումների մասին (8):

1597 թ. Բիթլիսի կառավարիչներից մեկը՝ Շարաֆեդդինը (9), գրեց քրդական հարստությունների պատմությունը (10): Նրա գիրքը հրատարակեց ակադեմիկոս Վ. Վելիամինով-Զերնովը 1860-1862 թթ. Ս. Պետերբուրգում, «Շարաֆ-Նամե» վերնագրով: 1873-1875 թթ. հայտնվեց սույն գրքի ֆրանսերեն թարգմանությունը (11): Քուրդ պատմիչի այս երկն ունի բոլոր այն թերությունները, որոնք հատուկ են ազգային պատմագրության առաջին փորձերին: Պատմական նյութի պակասն ազատորեն լրացվում է երևակայական ծագումնաբանությամբ: Այս կամ այն տոհմի ծագումը բացահայտելու նպատակով Շարաֆեդդինը ճախրում է երևակայության թևերով դեպի ամենահեռավոր անցյալը՝ առանց ժամանակը կամ գոնե դարաշրջանը նշելու. մտացածին արյունակցական կապեր է հայտնաբերում խեղճ ու կրակ քրդական ցեղերի նախնիների և հայտնի պատմական դեմքերի միջև: Ցեղերից մի քանիսը համարվում են առաջին խալիֆների հետնորդներ (12): Իր պնդումների ճշմարտացիությունը հաստատելու համար Շարաֆեդդինը հաճախ դիմում է հին տոհմական լեգենդներին: Բայց այդ լեգենդների մանրակրկիտ ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ դրանք հիմնված են որոշ ցեղանունների ժողովրդական ստուգաբանության վրա, և մեծ հաջողությամբ կարող էին հորինվել հենց հեղինակի կողմից: Երբ մերօրյա պատմաբանը փորձում է կեղծ ծագումնաբանությունից և դատարկ ենթադրություններից անցնել քուրդ բեյերին վերաբերող կոնկրետ փաստերին, նա անմիջապես ստիպված է լինում անցյալ դարերի բարձունքներից իջնել մինչև Սելիմի և Իդրիսի դարաշրջանը:

Բացառությամբ Թամուրից սերող Վանի և Բիթլիսի իշխող տների, մնացած բոլոր քրդական ցեղերը, որոնք գտնվում են Եփրատի վերոհիշյալ շրջանում և Տիգրիսի ակունքներում, իրենց ծագումը կապում են XV դարի վերջի XVI դարի սկզբի թուրք-պարսկական պատերազմների ժամանակաշրջանի հետ: Ինչ վերաբերում է Վանի և Բիթլիսի իշխող տոհմերին, պետք է նշել, որ նրանց քրդական ծագումը վիճելի է, և Շարաֆեդդին պատմիչն ավելի շատ հիմքեր ուներ հայկական, քան արաբական կամ քրդական արյուն փնտրելու իր նախնիների երակներում: Դերսիմի քրդերի՝ այսպես կոչված դուժիկների, ծագման խնդիրը նույնպես ենթակա է քննարկման: Նույնիսկ նրանք, ովքեր ամենուր քրդեր են տեսնում, չեն համարում նրանց մաքուր քրդեր (13):

Տալով այս բոլոր իշխող տների անունները, քրդերի պատմիչը մի խոսք անգամ չի ասում Դերսիմից մինչև Դիարբեքիր ընկած նորակազմ սանջակների բնակչության մասին: Սխալ կլիներ կարծել, որ եթե նրանց դեկավար-

ները քուրդ բեյեր էին, սանջակների բնակչությունը պետք է նույնպես քուրդ դարձած լիներ:

Սանջակների բեյերի նախորդները գրավված նահանգներում, ինչպես և Հայաստանի մյուս մասերում, XV դարում թուրքական իշխաններ էին՝ մեծ մասամբ «Սպիտակ ոչխար» և «Սև ոչխար» (Ակ-կոյունլու և Կարա-կոյունլու) թուրքմեն շահերի մերձավոր ազգականները: Սրանք իրենց հերթին հայ այն իշխանների հետնորդներն էին, որոնք կառավարել էին այս նահանգները մոնղոլների գալուց առաջ, և որոնց մի մասը պահպանվել էր մինչև Թեմուրի ներխուժելը:

Երբ սելջուկ հորդաները ներխուժեցին այս երկիրը, Բյուզանդական կայսրությունն իր սահմանը ահարկու թշնամուց պաշտպանելու ավելի հարմար ձև չգտավ, քան Հայաստանի թագավորական և իշխանական տոհմերի տեղահանությունը և նրանց Եփրատի մյուս կողմ՝ դեպի Փոքր Հայք տեղափոխելը՝ Եփրատի երկայնքով մի նոր ճակատ ստեղծելու նպատակով: Մի կողմից Սվազից մինչև Ադանա, իսկ մյուս կողմից, Դերսիմից մինչև Եդեսիա էին ձգվում հայկական իշխանական կալվածքներից բաղկացած պատնեշների զույգ գծերը: Վանի Արծրունիները ստացան որպես վիճակ Սվազից մինչև Եփրատ ընկած տարածքը: Անիի Բագրատունիները հիմնավորվեցին Լիկանդոսում՝ ներկայիս Մարաշ սանջակի սահմաններում: Կարսի Բագրատունիները զբաղեցրին Կիլիկիայի Ծամնդավի հովիտը՝ Կոզան սանջակում: Արծրունիների Թոռնավանի ճյուղը հաստնվեց Տարսոնում՝ Ադանայի և Մերսինի միջև: Պահլավունիների մի թևը տեղավորվեց Քեսունում՝ Մալաթիա սանջակի հարավային մասում. մի այլ ճյուղ իշխում էր Միջագետքում: Եդեսիան հայ իշխանների ձեռքում էր (14): Մամիկոնյանների հռչակավոր տոհմը, օթևանելով Սասունի լեռներում, զբաղեցրել էր Մուշը և Խարբերդը: Այնուհետև, Դերսիմի ուղղությամբ, իշխում էին այն պավլիկյանների ժառանգները, որոնց դեմ IX դարում պայքար էին մղել բյուզանդական կայսրերը:

Այս բոլոր փոքր տոհմերն անէացան մոնղոլների հարձակումների հողմապտույտում: Թամուրի կայծակնային արշավը, որը վերջ տվեց մոնղոլական ժառանգությանը, ճանապարհ բացեց թուրքմեն ռազմատենչ ցեղերի համար: Ակ-կոյունլու և Կարա-կոյունլու թուրքմեն ցեղապետները XV դարի ընթացքում իշխում էին Հայաստանում՝ իրենց ազգին բնորոշ կամայականությամբ և անօրինականությամբ:

Արդյո՞ք հայկական տարածքներում տեղի ունեցող ավատատիրական կաղապարի այս փոփոխությունը համապատասխան որևէ ազդեցություն թողեց էթնիկական հիմքերի վրա: Արդյո՞ք վերին շերտի այս տեղաշարժերը

ներգործություն ունեցան ներքևի շերտի վրա: Այն մոնղոլական չէր դարձել մոնղոլների տիրապետության ընթացքում, և ոչ էլ թուրքմենական՝ թուրքմեն տիրակալների օրոք: Արդ, երբ իշխանությունն անցավ քրդերի ձեռքը, Հայաստանը քրդական էլ չդարձավ: Նստակյաց աշխատող ժողովրդի հիմնական կորիզը կազմում էին, ինչպես միշտ, հայերը:

Քաղաքական աշխարհում որևիցե կշիռ ունեցող ոչ մի երկիր բաղկացած չէ միայն լեռներից, հովիտներից և հոսող ջրերից: Յուրաքանչյուր երկիր, բացի տարածքից, ունի նաև հզոր հատկանիշներ, որոնք այն տարբերում են մյուսներից: Իրականում դրանք կույր բնության մեռած թափոնները չեն, այլ երկրով մեկ սփռված մարդկային հանճարի հավերժական ստեղծագործությունները: Հենց այս մտավոր աշխատանքի կերտվածքներն են, որ հանդիսանում են նրա մշակույթի ոգին: Ո՞ւմ է պատկանում այդ ոգին, կամ երբևիցե դաղարե՞լ է պատկանել նրանց, ովքեր ստեղծել են այն, և որոնց ժառանգությունն էինքը:

Հայաստանը որպես մարդկային աշխատանքի փորձակայան միշտ էլ եղել և մնում է հայկական: Այն մարդու համար բնակարաններ է ստեղծել հայի ձեռքերով: Մյուս բոլոր անցնող-դարձողների համար նա լոկ հյուրանոց է եղել: Նրանք բոլորը լոկ օթևան են փնտրել այդ երկրում, քամուն են տվել նրա մշակույթի գանձերը՝ ոմանք որպես անցորդ հյուրեր, մյուսները՝ որպես ճակատագրի բերումով հայտնված ռազմիկ տարրեր, որոշներն էլ՝ տիրանալով նրան, առանց որևէ ձևականության կողոպտել ու ավերել են այն: Նրանցից ոչ մեկը չթողեց որևէ հզոր ժառանգություն, որևէ մշակութային հիշողություն: Ոչ մի թուրքմենի կամ քրդի ձեռք թեկուզ մի աղյուս չավելացրեց այս երկրի շինարարական արվեստի գանձերին:

Ճարտարապետության հիասքանչ հուշարձանները՝ պալատներ, ամրոցներ, տաճարներ և վանքեր, որոնք վեհաշուք բազմած են իրենց լեռնային գահերին ամբողջ իրենց մշակութային շրջապատով, այսօր թաղված են փոշու մեջ: Սակայն նրանցում ապրում է ոգին, ավերակների մեջ դեռևս դեգերում են անցյալի ստվերները, ստվերներ, որոնք պատրաստ են մարմնավորվելու մի նոր կյանքի մեջ: Զուր չէ հայկական ժողովրդական երևակայությունը պատկերացնում Հայաստանը որպես մի երիտասարդ կին՝ շրջապատված ավերակներով: Ոգու աշխատանքի թեկուզև ավերակներ... մի՞թե նրանք ավելի վայել չեն այս երկրին, քան քուրդ հովիվների նախիրները: Հայկական եկեղեցիները համարյա բոլոր քաղաքներում՝ լինի դա Հայաստանում, թե նրանից դուրս, վերածվել են մզկիթների, սակայն մի՞թե դրանք դադարել են հայկական լինելուց:

Հայաստանը, ինչպես ցանկացած քաղաքակիրթ երկիր, մի միասնական օրգանիզմ է: Նրա սրտի ամենաուժգին տրոփյունները և ամենալսելի շնչառությունը հայկական են: Որպես կենդանի մի օրգանիզմ Հայաստանը չի կարող հրաժարվել իր անցյալից կամ իր ապագայից: Նա կարող է վիրավորվել և արյունաքամ լինել, սակայն նա սպանված չէ: Նրա քաղաքական բժիշկների պարտքն է բուժել նրա վերքերը, ամոքել նրա ցավերը և ուժ տալ նրան՝ մոխրից հառնելու դեպի նոր կյանք:

Նրանց կողմից հանցագործություն կլիներ պատնեշ դնել ազատության նրա դարավոր ձգտման առջև լոկ այն պատրվակով, որ նրա առողջ մարմնի վրա կա ինչ-որ էթնիկական մակաբույծ ուռուցք: Դրա համար պետք է մեղադրել այն դիվանագետներին, որոնք ձգձգեցին Հայկական հարցի լուծումը կես դար և թույլ տվեցին, որպեսզի արյունարբու մի վարչակարգ սատկացնի օտար և թշնամական տարրերի թափանցումը հայկական մարմնի մեջ:

## ՀՈՂԱՅԻՆ ԶԻՋՈՒՄՆԵՐ ԹՈՒՐՔԻԱՅԻՆ

Ի՞նչ բնույթ պիտի ունենա հողային զիջումը, կպարզվի միմիայն կոնֆերանսում (1): Վիլսոնյան սահմանները (2) ընդարձակ համարողները, անշուշտ, ազդված են թուրք ազգայնական շրջանակներից, և ի նկատի ունեն հակառակ առաջարկներ, որ ծանր լինելու կերպարանք ունեն: Զիջումն արվելու է միայն մի պայմանով, որ թուրքերն անմիջապես պարպեն մեզ մնալու հողերը:

Ո՞ր կողմերից են սեղմվելու սահմանները: Ի դեպ հարկ է, այս է խնդրի կարևոր մասը, պատրաստ պատասխան ունենանք առաջուց: Ընտրությունը պիտի լինի երկու խոշոր հատվածների միջև՝ հյուսիսային - Էրզրում և Տրապիզոն, և հարավային – Վան և Բիթլիս: Ո՞ր հատվածն է մեզ համար ավելի կարևոր ամենայն նկատառումներով, հետևաբար այն խնայելու է կրճատել որևէ չափով, եթե պահանջվի:

Երկու հատվածները տարբեր արժեքներ ունեն և միևնույն չափով կշռել դժվարին է: Տնտեսական տեսակետից հյուսիսը այն գերազանցությունն ունի, որ հենվում է արձակ ծովին: Իսկ հարավում ազգայնական նկատառումներն են, որ վճռական նշանակություն են ունենալու: Նախ բնակչության տեսակետից՝ պատերազմից առաջ միակ հայաշատ շրջանները Վանն ու Բիթլիսն էին (3) և այժմ էլ նույնը պիտի լինի, քանի որ ժողովուրդը Ռուսահայք ապաստանելով՝ փրկված է և պատեհ օրին հոժարությամբ դառնալու է իր տեղը: Այնուհետև ազգային ոգին, այն որ ժողովրդական ամբոխից կերտում է ազգություն, կենդանի է դարձյալ հարավում ավելի մեծ չափերով, քան հյուսիսում: Պատմական հիշատակարաններն ու հիշողությունները, անգիր բանահյուսությունը՝ աշխարհագրական նկարագրի հետ կապված, մնացել են դարձյալ հարավում: Էրզրումի, ինչպես և Տրապիզոնի նահանգի, հայությունը բնաջինջ է եղած գրեթե և այնտեղ նորեն նոր հայ բնակչություն ստեղծել դյուրին գործ չէ: Կարծել, որ Բիթլիսի և Վանի ժողովուրդը կարելի է տեղափոխել Էրզրումի և ծովափնյա հողամասերը, հեշտ չէ: Մարդիկ իրենց ծննդավայրերը դառնում են հոժար սրտով և ամենայն սիրով, որովհետև նրա հետ կապված են տեսակ-տեսակ հիշողություններով: Իսկ բոնի տեղահան անել դեպի անծանոթ վայրերը, դժվար է առանց կազմակերպչական մեծ գործունեության և խոշոր նյութական միջոցների: Ո՞ր հատվածն ավելի ապահովություն կտա հայ ժողովրդին: Այս հարցը շա-

տերին է հետաքրքրում և զանազան հայացքներ կան այս մասին: Ինձ թվում է, որ բոլոր հեռանկարներն ունայն և անհիմն են: Հայոց պատմությունն ինքն արդեն լուծել է այս պրոբլեմը: Որտեղ ավելի հայություն է մնացել, պարզ է, որ այդ շրջաններն էլ նկատվել են ավելի ապահով հայրենիք: Ժամանակին Էրզրումի շրջանը նույնպես հայաշատ էր, ինչպես և հարավը: Բայց այժմ և նույնիսկ պատերազմից առաջ, հայ բնակչությունն այնտեղ քիչ էր (4): Հայտնի է, որ Հայաստանում և Հայաստանի համար մղված կռիվների մեծագույն մասը տեղի են ունեցել Էրզրումի (հինավուրց Կարինի, միջին դարերի Թեոդոսուպոլսի ու մուսուլման Էրզրումի) շուրջը: Նույնն էլ լինելու է ապագայում: Ապահովության տեսակետից հյուսիսը ոչ մի առավելություն չունի: Միակ դրական կողմը ծովն է, որը տնտեսականի համար ահագին նշանակություն ունի: Եթե սրա համար հրաժարվելու լինենք հարավից, այսու պիտի կորցնենք նաև Ռուսահայքի արևելյան գավառները՝ Ղարաբաղը, թերևս և Նախիջևանը: Երզնկայից մինչև Շուշի մոտ 600 կմ է, այսպիսի երկարաձիգ պետություն, որը համապատասխան լայնություն չունի՝ դժվար է պաշտպանել և հայրենիք դարձնել:

Երկար խորհելուց հետո կարելի է հանգել ավելի շուտով զիջումներ անելու հյուսիսից: Զիջման առաջին զոհը պիտի լինի.

1. Խարշուղ գետի (5) հովիտը՝ Կերասունից մինչև Տրապիզոն ծովափով, թերևս մինչև Սյուրմինե:

2. Երկրորդ հերթին թողնվելու է Երզնկան. սահմանն՝ անցնելու է Բաղեր լեռներից (6)՝ կտրելով Եփրատը, դեմ հանդիման Մայրերտ լեռնաշղթայի և նրա վրայով վիլայեթի սահմանագծով իջնելու է ծովափ՝ Սյուրմենեի մոտերքը:

3. Ի դեպ, հարավից կարելի է զոհել (7) նաև Մոկաց աշխարհի մի մասը, սահմանագիծը հարավից մոտեցնելով Վանի ջրաբաշխը գատող լեռներին: Եթե թուրքերը պնդեն նաև Էրզրումի զիջման վրա, այն ատեն առարկելու է և պարզելու, որ այդու ոչ միայն Հայաստանը կտրվում է ծովափից, ուրեմն և արտաքին աշխարհից. այլև հենց այդ հետևանքով Հայաստանը դրվում է Ռուսաստանից տնտեսապես կախյալ վիճակի մեջ, որի արդյունքը հասկանալի կլինի և ոչ ցանկալի դաշնակից պետություններին:

## ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻՆ ՏՐՎԵԼԻՔ ՀԻՇԱՏԱԿԱԳՐԻ ՆԱԽԱԳԻԾ

Սևրի դաշնագրով երկարամյա անորոշությունից հազիվ դուրս ելավ Հայ հարցը, երբ նոր հանգամանքներ եկան մթագնելու հորիզոնը (1): Կես դար է, որ Հայ դատը դիվանագիտության սեղանի վրա է, կես դար է, որ հայ կյանքի ողբերգություն<ը> քաղաքակիրթ աշխարհի առջև <է> և ամեն անգամ, երբ հույս թեթև նշույլ է փայլում, այն իսկույն մարում է քաղաքական մեծ հովերից: Լինելով մի փոքր ավելի մարդասիրական, քան քաղաքական հարց, Հայ դատը տարօրինակ բախտով և միանգամ<այն> անիրավացի տրորվել է մեծ պետությունների Արևելյան քաղաքականության ընդհարումների մեջ, զոհ եղել նրանց հակամարտին: Մեծ պատերազմի ավանդներից մին այն պիտի լիներ, որ տերությանց հինավուրց մրցությունը Արևելքում պիտի խնայեր ճնշված ազգությունների շահերը և ի թիվս այլոց վերջ պիտի դներ հայ ազգության դարավոր հարցին: Եվ իրոք, Սիրիայի, Միջագետքի ժողովուրդները, որոնց համար Թուրքիայի լուծը զուցե և այնքան ծանր չէր, այսօր ազատված են, իսկ Հայաստանը, որի տանջանքի աղաղակները աշխարհը խլացրել են, դեռևս հեծում է բռնակալության շղթաներում:

Հայ ժողովուրդն իրավունք ուներ հուսալու, որ խառնելով իր արյունը դաշնակիցների զոհերի հեղեղին, պիտի բաժին ունենար հաղթական կողմի առավելություններից: Այնինչ, հայ հայրենիքը տակավին ասպարեզ է թուրքերի զինական արկածների, և փոխանակ պարպելու հայ վիլայեթները, նրանք դեռ խիզախում են ասպատակել և գրավել իրենց սահմաններից դուրս հայկական այլ վայրեր, հաղթողի դիրք բռնելով արյունաքամ եղած հայ հակառակորդի հանդեպ: Դժվար է համոզել հայ ժողովրդին, որ գերմանական ահեղ բանակը փշրողները ուժ չունին թուրք բախտախնդիր հրոսակներին խելքի բերելու: Եթե պետությանց մի ազդու խոսքը բավական էր, որ ռուսական բանակը 1878 թվականին քաշվի Էրզրումից, ապա ոչինչ արժե արդեն պարտված և ջախջախված թուրքերին հեռացնել որտեղ և կկամենան պետությունները:

Փոխանակ ազդու խոսքի, թուրքերն ավելի ևս խրախուսվում են կնքյալ դաշնագրի վերաքննության կարելիությամբ (2): Ինչ և լինեն այն շարժառիթները, որ ստիպում են դաշնակիցներին դիվանագիտության մեջ չտեսնված

շնորհ անել թուրքերին՝ վերստին քննելով կնքյալ դաշնագիրն, և որպիսի զիջումներ և անելու լինեն նրանց, համենայն դեպս այդ ներողամտությունը պիտի չտարածվի, պիտի չշոշափի Հայ հարցը:

1. Այս ծանր պահին Հայկական պատվիրակությունը (3) պարտք ունի հայտնելու Գերագույն խորհրդին՝ խռովված և հուսահատ հայության խնդիրն ու բաղձանքը, որ դաշնագրի վերաքննվելու դեպքում Հայաստանին վերաբերյալ հոդվածները պահվին և կամ վերախմբագրվեին այն տրամադրությամբ, որով կազմվել են սկզբում նույն հոդվածները: Վերախմբագրել սահմանների խնդիրը, որ լուծված է միջնորդ դատավորի վճռով և որը մտնելու է Դաշնագրի մեջ որոշակի: Նորա մասին կան հոռետես հայացքներ, որոնք պղտորել կուզեն եվրոպական հասարակաց մտքերը՝ թե դատավորի գծած սահմանները խիստ ընդարձակ են և կամ պետություն կազմելու ուժերը պակասում են մեզ: Այս տեսակ կարծիքների անհիմն լինելը [մեր կողմից] բացատրված է առանձին Հիշատակագրով (4), որ կառաջարկենք Խորհրդին բարձր ուշադրության: Սահմանները որևէ փոփոխության ենթարկելու ո՛չ իրական և ո՛չ էլ իրավական հիմք չկա: Ամեն մի ձգտում որևէ կերպ հեղեղել սահմանները, պիտի արժե նոր ձգտումներ և նոր դառնություններ հայ ժողովրդյան: Հայաստանի արևմտյան սահմանը, ուրեմն, լինելու և ընդունելու է Վիլսոնյան գիծը: Ինչ կվերաբերի արևելյան սահմանին, Պատվիրակությունս կխնդրե, որ Սևրի 92–րդ հոդվածը (5) վերախմբագրվի միայն այն թեքև ուղղումով, որ փոխանակ Ադրբեջան և Վրաստան կողմերի, դրվի Ռուսիա և Հայաստանին թողնվի սահմանների ճշտումը՝ անմիջապես բանակցելով Ռուսիո հետ: Ինչ կվերաբերի Դաշնակիցների աջակցության, որ նախատեսված է նույն 92-րդ հոդվածում, փափագելի է թողնել, եթե Դաշնակիցներն իրենք ընդդեմ չեն: Մենք ամեն հույս և իրավունք ունինք սպասելու, որ Նոր Ռուսիա պիտի ողջունե Թուրքիայից ազատագրված Հայաստանի անկախությունը, և իր կողմից արգելք չպիտի լինի ամբողջական հայ հայրենիքի գործին:

2. Հայ ժողովրդի ողբերգական կացությունը պարտավորեցնում է հայ<կական> պատվիրակության խնդրել, որ այժմեն իսկ առանց հապաղելու հնարավորություն տրվեր տարագիր ամբոխին դառնալ իրենց տեղերը: Նրանցից մի խոշոր բազմություն, մոտ 300.000 հոգի ահա քանի տարի է ծանրացած արևելահայ գյուղացիության վրա, որն ինքն ներկայումս տնտեսական ճգնաժամի մեջ է, և փախստականների դարձով նրանց վիճակը ևս կբարվոքի որոշ չափով: Այս և մյուս երկրներ ապաստանած փախստականների դարձը հնարավոր է միմիայն ապահովության հուսալի երաշխիքով: Այդպիսի մի երաշխիք կնկատենք Գերագույն խորհրդի կողմից

նշանակված մի բարձր կառավարչի կամ կոմիսարի ներկայությունը Հայաստանում: Նրան առընթեր և օգնական կազմվելու է մի քանի մասնագիտ<ական> խորհուրդներ, որոնց վրա հենվելով բարձր կոմիսարը պիտի սկիզբ դնե երկրի վերաշինության, ժողովրդի վերաբնակության գործին և պիտի անե փոխանցման շրջանի այն բոլոր աշխատանքները և նախապատրաստությունները, որոնք տանում են դեպի ինքնուրույն անտեսական կյանքի:

Բարձր կոմիսարին տրամադրելի անհրաժեշտ ֆինանսական միջոցները կարելի <է> ապահովել միայն փոխառությամբ, որը հայ ժողովուրդը <ետ> պիտի դարձնի ամենայն փութով և շնորհակալությամբ:

Հայ ժողովրդյան աշխատասիրությունը և՛ բարոյական, և՛ ֆիզիկական տոկունությունը, ինչպես և՛ նրա աշխարհահռչակ ձեռներեցությունը արդյունաբերական և առևտրական գործերում ընդունակություններ, որոնք հնարավորություն են տվել նրան հիմնել օտար վայրերում շեն և ծաղկյալ գաղութներ, անվիճելի գրավականներ են, որ նա պիտի կարենա կրկնապատկել և եռապատկել իր ջանքերն ու բնատուր կարողություններն իր հայրենի երկիրն ավերակներից կանգնեցնել և դնել նրան պետական կյանքով ապրելու շավղի վրա: Թուրքիա<յից> ազատված բոլոր փոքր ազգությունների հանդեպ հայերն այն առավելությունն ունեն, որ ծաղկուն և բազմաթիվ գաղութների տեր են, գաղութներ, որոնք մտավոր և նյութական ուժերի կատարյալ շտեմարաններ են, և նրանց աջակցությամբ է, որ պիտի վերածնվի Հայրենիքը: Բուլղարիան 1897 թ. նույն պայմանների մեջ էր, ինչ և Հայաստանն այժմ թե՛ մեծությամբ և <թե> բնակչությամբ: Նա ևս ուներ 99.000 քառ. կմ 1.130.000 բնակչով (6): Ներկայումս այն 4 միլիոն ժողովրդյան ակնածելի հայրենիքն է քաղաքականապես և կարող պետություն*:

Վիճակագրական տեղեկությունները վերցրած ենք Վ. Քինեի հայտնի գրքից («Լա Թյուրքիէ դ'Ազիե», 4-րդ հատոր) (7): Հեղինակն աշխատել է իր գրքի վրա 12 տարի և օգտվել է և թուրք<ական> աղբյուրներից, նրանց սալնամեներից և տեղն ու տեղը ևս հավաքել է տեղեկություններ: Նրա աշխատության մասերը համահավասար արժեք չունեն, կան թույլ և անճիշտ մասեր և ավելի ստույգ էջեր (8): Հայկական վիլայեթների տվյալները հիմնված են մեծ մասամբ սալնամեների վրա: Բոլոր մասնագետների, ինչպես նաև ուղեգրողների կարծիքով, Քինեի աշխատությունը շատ կող-

---

* Այստեղ պետք է տրվեին վիճակագրական տվյալներ Արևմտյան Հայաստանի վերաբերյալ, որոնք, սակայն, բնագրում բացակայում են (Պ. Հ.):

մերով ավելի ընդունելի է, քան մյուս, և մանավանդ թուրք<ական> վիճակագրությունները, որոնք լույս են տեսել քաղաքական դիտումներով (9):

Թուրք կառավարությունը սովորություն է արել Հայկական հարցի սուր րոպեներին վիճակագրական տախտակներ կազմել և հրատարակել ի ցույց եվրոպական պետության, որ հայերը ոչինչ տոկոս են կազմում Հայաստանում: Հարկավոր է միայն կողք կողքի դնել այդ տախտակները, որպեսզի ակներև լինի, որ դրանք դիվանագիտական շարադրություններ են և ոչ թե իսկ թվահամար: Դեռ 1879 թ. հրատարակված պաշտոնական մարդահամարով իբրև թե հինգ հայ<կական> վիլայեթ<ներում> կար 1.030.000 հոգի:

Հետևյալ՝ 1880 թ., դարձյալ պաշտոնական թվահամարով՝ 2.054.200

| | | | | |
|---|---|---|---|---|
| 1890 թ. | » | » | » | 1.934.447 |
| 1895 թ. | » | » | » | 2.505.904 |

և վերջապես պատերազմի նախօրեին՝ 1914 թ. մայիսին, հրատարակվեց նոր տախտակ, որով նույն 5 վիլայեթներում հաշվում է 2.670.104 մարդ (10):

Այսպիսի թվական թռիչքներ ոչ մի վիճակագրական գիտության հայտնի չեն: Շատ տարօրինակ կերտված ունի վերջին՝ 1914 թ. տախտակը, բավական է համեմատել Քինեի հետ, որպեսզի կասկած չմնա, որ հայոց թվերը գրեթե թողված են անփոփոխ, իսկ մուսուլմանների թիվն ավելացած է ըստ տեղին և ըստ քմահաճության մի քանի հարյուր հազարներ…

Վիճակագրությունը Թուրքիայի մոլորեցուցիչ ախտերից մեկն է: Եվ նրա ստուգման միակ ուղեցուցիչ սկզբունքը համարվելու <է> հողի և մարդու հարաբերության աստիճանը: Մի նահանգների համար 20-25, առավելն 30 մարդ է հաշվելու քառակուսի կիլոմետրին, մյուս նահանգներին 9-12, առավելն 15 <մարդ>: Միայն այս կերպ <է> կարելի գաղափար կազմել Թուրքիո մարդաբնակության վրա:

Հայ<կական> վիլայեթների մի քառակուսի կիլոմետրի վրա 8-10 մարդ հաշվելը հիմն և արդարացում ունի ոչ թե միայն քաղաքական և տնտեսական պայմանների մեջ, այլև նրանով, որ 1844 թ. վիճակագրությամբ հայ<կական> վիլայեթներում քառակուսի կիլոմետր<ին> գալիս էր 4-5 մարդ, ժամանակակից ճանապարհորդներից մեկ<ի> ասելով՝ 5,4 մարդ: 50-60 տարվա մեջ մարդաբնակության կրկնապատկվելը ընդունված է քաղաքակիրթ պետության համար, և Թուրքիայի (Հայ<կական>) վիլայեթների նկատմամբ այդ գերագույն չափն է:

**1890-1895 թվականների վիճակագրական տախտակներ**

| Վիլայեթներ | 1890 | 1895 | Աճում |
|---|---|---|---|
| 1. Էրզրում | 431.671 իսլամ | 545.782 իսլամ | |
| | 113.488 քրիստ. | 123.935 քրիստ. | |
| գումար | 545.159 | 669.717 | 124.588 |
| 2. Վան | 207.028 իսլամ | 282.582 իսլամ | |
| | 101.264 քրիստ. | 135.912 քրիստ. | |
| գումար | 308.292 | 418.494 | 110.202 |
| 3. Բիթլիս | 167.054 իսլամ | 352.713 իսլամ | |
| | 109.944 քրիստ. | 126.874 քրիստ. | |
| գումար | 276.998 | 479.587 | 202.539 |
| 4. Մամուրեթ ուլ Ազիզ | 300.194 իսլամ | 494.881 իսլամ | |
| | 81.158 քրիստ. | 91.422 քրիստ. | |
| գումար | 381.352 | 586.303 | 204.951 |
| 5. Դիարբեքիր | 240.574 իսլամ | 378.253 իսլամ | |
| | 71.870 քրիստ. | 83.752 քրիստ. | |
| գումար | 312.444 | 462.005 | 149.561 |
| Հինգ վիլայեթների ընդհանուր գումարը | 1.934.447 | 2.505.904 | 571.457 |

Այսպես ահա, 5 տարվա մեջ չտեսնված բան է վիճակագրական գիտության մեջ:

1879 թ. հայ<կական> վիլայեթների վիճակագրական տախտակը տպված է Կ. Պոլսի թրքական «Վակտ» թերթում՝ նույն տարվա նոյեմբեր և դեկտեմբեր <ամիսների> համարներում: Արտատպված է այնտեղ<ից> գերմանական գիտական հանդեսում «Zeitschrift der geselschaft für Erdmund» 1880 թ.: Այս տախտակով գումարն է 1.030.028 հոգի:

Հետևյալ՝ 1880 թ. թուրք<ական> կառավարության դեսպաններին տրված պաշտոնական տախտակը տպված է ռուսերեն «Հայկական հարցը Թուրքիայում» գրքում (11) (հավանորեն և «Կապույտ գրքից»), որտեղ գումարն է 2.054.200 (12):

1890 թ. թվահամարը տպված է «Կապույտ գրքում», ինչպես և 1895 թ. թվահամարը, որը հանձնված է եվրոպական պետությանց կողմից Հայաստան ղրկված հանձնաժողովին (Իզմիրլյան պատրիարքի ժամանակ) նույնպես տպված է «Կապույտ գրքում» (կարծյոք սորա 1896 թ. կամ 1898 թ. հատորում):

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԻ ԽՆԴԻՐԸ

Հայաստանի սահմանների խնդիրը միջնորդ դատի հանձնվելուց հետո սպառված է համարվելու և միջնորդ իրավախորհրդի վճիռն ընդունվելու է անվերապահորեն: Ինչ էլ լինեն այն քաղաքական հանգամանքները, որ ստիպում են վերանայել Սևրի դաշնագիրը (1), նրանք բնավ ազդեցություն ունենալու չեն Հայաստանի սահմանների խնդրի վրա, իբրև մի վեճի, որ լուծված է ուրույն ճանապարհով, arbitrag-ի (2) անբռնաբարելի ինստիտուտի միջոցով:

Նախագահ Վիլսոնի գծած սահմաններով տրվում է Հայաստանի հողային և հողի լծորդ աշխարհագրական, հաղորդակցական և տնտեսական պայմանների այն minimum-ը, որն անհրաժեշտ է ամեն մի պետության, մանավանդ նոր և ավերակների վրա կանգնելի հայ պետության, անհրաժեշտ՝ նրա գոյությունը և բարգավաճումը բարվոք հիմքերի վրա դնելու:

Հակադաշնակից թուրքերը (3) հայկական լուծված խնդիրը նորեն բարդացնելու աղագավ, գրավեցին Արևելյան Հայքի մի մասը, նեցուկ ունենալով ռուս բոլշևիկներին, որոնք ամեն դյուրություն ընձեռեցին թուրքերին միմիայն նրա համար, որպեսզի նաև Հայաստանի նկատմամբ վարկաբեկ անեն դաշնակիցների քաղաքականությունն արևելյան ժողովուրդների աչքում: Քեմալիստների այս քաղաքական խաղը, ինչպես նրանց կատարած սովորական բարբարոսությունները Կարսի և Ալեքսանդրապոլի շրջաններում, ընդհականակն, միանգամայն ևս պիտի համոզեն դաշնակից պետության, որ հայ ժողովուրդն ու հայ երկիրը թրքական արյունոտ արկածներից ազատելը հրամայական պահանջ է: Հայ դատը միայն հայ և թուրք հարց չէ, այլ թուրք-եվրոպական և ուրեմն Թուրքիան, իբր մեծ պատերազմում պարտված կողմն, իր հետևյալ զինվորական շահատակություններով, անզոր և անիրավ պիտի համարվի Հայ հարցի վրա նոր կնճիռ ավելացնելու:

Նմանապես անարդար պիտի դատվին մոլոր այն կարծիքները, որոնք անգետ շրջաններից, թե անձերից կգան պղտորելու հազիվ պարզած մթնոլորտը, կարծիքներ այն մասին, թե վիլսոնյան սահմաններն իբրև թե խիստ ընդարձակ են հայերիս համար: Այս հանգամանքը կրկա, թե ազդում է նաև բարյացակամ մտքերի վրա և պետք ունի բացատրության:

Սերի դաշնագիրը կես դար դիվանագիտության առարկա եղած հայ վիլայեթներից միմիայն երեքի վրա կանգ առավ, կցելով նաև Տրապիզոնը և այս չորսի ամբողջովին և թե մասամբ Հայաստանին անցնելը բողեց նախագահ Վիլսոնի հայեցողության: Չորս վիլայեթները՝ Վան, Բիթլիս, Էրզրում և Տրապիզոն միասին կազմում են մոտ 170 (թրքական հաշվով 185) հազար քառակուսի կիլոմետր: Այս տարածությունից Վիլսոնը ձգած է Հայաստանին զրեթե կեսը՝ Վան, Բիթլիս և Տրապիզոն կիսած է, կեսը տված թուրքերին և կեսը՝ հայերին, իսկ Էրզրումի նահանգից նս թուրքերին տված է մի զգալի հատված: Այսպիսով հայերին հատկացրած հողամասերի ընդհանուր ծավալը հասնում է մոտ 90-95 հազար կմ$^2$ և ոչ ավելի:

Արդ այս տարածությունը պետություն կազմելու համար (ուրույն, թե նույնիսկ Ռուսահայքի մի քանի տասնյակ հազար կմ$^2$ հետ) ինքնըստինքյան մեծ բան չէ. և վերի նյութն էլ այս չէ, այլ այն, թե արդյո՞ք հայերը համապատասխան քանակով ժողովուրդ ունեն երկիր շենացնելու:

Պատասխանը դյուրին է և դրական, եթե միայն հարցը դատենք և կշռենք ինչ որ արդարությունը կպահանջի - այն չափերով, ինչ որ տալիս է Թուրքիայի իրականությունը, նրա մյուս վիլայեթները հողի և մարդու փոխադարձ հարաբերության խնդրում:

Թուրքիո վիլայեթները բնակչության խտության և նոսրության տեսակետից բաժանվում են երկու կարգի: Ծովափնյա վիլայեթներն ավելի խտաբնակ են և ունեն մի քառակուսի կիլոմետրի վրա միջին թվով 20-25 մարդ: Այսպես՝

Զմյուռնիայի վիլ. 53.000 կմ$^2$ ունի 1.395.000 հոգի, այն է՝ մի կմ$^2$ 25 մարդ.
Կաստամունի վիլ. 60.000 -»-»- 1.019.000 -»-» մի կմ$^2$ 19 մարդ.
Բուրսա վիլ. 68.400 կմ$^2$ ունի 1.626.000 հոգի, այն է մի կմ$^2$ 24 մարդ:

Երկրորդ կարգի են ներքին և լեռնային վիլայեթները, որ ավելի նոսրաբնակ են, ունենալով մի կմ$^2$ վրա միջին թվով 10-11 մարդ: Այսպես՝

Անկյուրե, թուրքերի նոր home-ը (4), ունի 83.000 կմ$^2$ 893.000 բնակչով, ասել է թե մի կմ$^2$ մոտ 10 մարդ.

Կոնիա՝ 91.000 կմ$^2$ և 1.088.000 հոգի, զրեթե դարձյալ 10 մարդ մի կմ$^2$.

Սիվաս՝ 83.700 կմ$^2$ և 1.086.000 - » - մոտ 11 մարդ մի կմ$^2$:

Այս համեմատությունը ստույգ է նաև Սիրիայի նկատմամբ. այսպես Բեյրութի վիլ. ունի 30.500 կմ$^2$ 515.000 մարդով, այն ինչ Դամասկոսը՝ 62.200 կմ$^2$ և միայն 604.000 մարդ.

Մի կողմ են թողնում Միջագետքի նահանգները, որոնք երրորդ կարգի են և ունեն մի կմ$^2$ հազիվ 5-6 հոգի:

Երկրորդ կարգին են պատկանում թուրքական վիճակագրությամբ և հայ վիլայեթները: Այսպես՝

| | | |
|---|---|---|
| Էրզրում | 76.720 կմ$^2$ (*) | 645.000 մարդ, ուրեմն մոտ 8 հոգի |
| Վան | 47.7000 -»- | 430.000 -»-»- 10 |
| Դիարբեքիր | 46.800 -»- | 471.000 -»-»- 10 |
| Բիթլիս | 29.850 -»- | 398.000 (*) -»- »- 13 (*) |
| Խարբերդ | 37.800 -»- | 575.000 (*) -»-»- 14 (*): |

Մարդահամարի թվերը ստուգությունից հեռու են (5): Հայտնի է թուրքական վիճակագրության տխուր հռչակը մանավանդ Հայաստանի վերաբերյալ: Թուրք կառավարությունը սովորություն է արել Հայկական հարցի սուր րոպեներին նոր վիճակագրական տախտակներ հրատարակել կամ հանձնել եվրոպական պետության: Հարկավոր է միայն համեմատել միմյանց հետ տախտակները, որպեսզի ակնհայտնի երևա նրանց կեղծ և անարժեք լինելը: Հայ<կական> հինգ վիլայեթներում 1879 թ. մարդահամարով կար 1.030.028 հոգի:

1880 թ. -»- 2.054.200 -»- 1890 թ. -»- 1.934.447 -»- 1895 թ. -»- 2.505.904 -»- 1914 թ. -»- 2.670.104 -»- (6):

Թվերի այսօրինակ հետուառաջ թռիչքները հայտնի չեն և ոչ մի վիճակագրության: Հայաստանի բնությունն իսկ բողոքում է այս թվերի դեմ: Սա մի լեռնային երկիր է, Փոքր Ասիայի ամենաբարձր սարահարթը, ուր վիթխարի նիստով և բարձրությամբ լեռնաշղթաների ամեհի կուտակներն այստեղ-այնտեղ դիզվելով և կամ ցանցի պես կտրտվելով կկազմեն խորխոր ձորեր և հովիտներ: Դաշտերը 3000-5000 ոտնաչափ բարձրության վրա են, իսկ լեռների խոշոր մասը կանաչազուրկ ապառաժուտներ են, անհարմար նույնիսկ խաշնարածության: Այս երկիրը, բնական է, որ թրքական ներկա տնտեսական և քաղաքական կարգերի տակ, իր տնտեսության հինավուրց ձևերով և արդյունաբերության զրեթե լիովին բացակայությամբ, անկարող է նույնչափ մարդ կերակրել, որքան խորին Անատոլիայի ավելի հանգիստ և ավելի պարարտ նահանգները, մանավանդ, որ բնակչության քրդական մասը, որ աննշան չէ, պարապում է միայն խաշնարածությամբ, որ ավելի հողային տարածություն է պահանջում, քան երկրագործությունը: Հետևապես, եթե արևմուտքում ներքին վիլայեթներում քառակուսի կիլոմետրին ընկնում է, ինչպես տեսանք, 10-11 մարդ, ապա հայ<կական> վիլայեթներում հաշվելու է ոչ ավելի, քան 8-9 մարդ: Սակայն հարցը բարդացնել չուզելով, ենթադրենք, որ Հայաստանում ևս մի քառակուսու վրա ընկնում 10 մարդ, նման արևմտյան վիլայեթների: Այս հաշվով վիլսոնյան սահ-

մանձերում, մոտ 90 հազար կմ² տարածության վրա, ունենալու է 900-հազարի չափ բնակչություն:

Արդ, ո՞րտեղից է առնվելու այսքանակ ժողովուրդը, և թուրքե՞րն են, թե՞ հայերը, որ պիտի տան այս բազմությունը:

Վիլսոնի Հայաստանը ճիշտ այն հողամասերն են, որ մեծ պատերազմի ժամանակ կռիվների թատր էր և կրեց պատերազմական ընդհարումներին հատուկ բոլոր սարսափները և ավերածությունը: Տեղական ժողովուրդը թուրք և հայ մեծամեծ կորուստներ ունեցան. հայերի մի խոշոր մասը ապաստանեց Ռուսահայք, իսկ թուրք և քուրդ բնակչությունը գլխովին ոչնչացավ ռուսական զորքի առաջխաղացումով՝ առաջինը Էրզրումի և Երզնկայի շրջանում և երկրորդ, Մուշի և Վանի ճակատներում: Երկիրն այժմ գրեթե ամայի է և ավերակների մեջ աստանդական կյանք են վարում հազիվ մի քանի տասնյակ հազար շրջիկ ցեղեր:

Անցյալ [1922 թ.] հուլիս 24 համարում թուրք ազգայնական օրգան «Իլերի» թերթը հայտարարել էր, որ Էրզրումի վիլայեթում ներկայումս ապրում է 215.266 հոգի, Բիթլիս՝ 108.484 և Վան՝ 100.000: Մինչդեռ թուրքական պաշտոնական հրատարակության համաձայն, որ լույս տեսավ պատերազմի նախօրեին, 1914 թ. մայիսի 1-ին Էրզրում վիլայեթը, առանց հաշվելու քրիստոնյաներին և քրդական վաչկատուն ցեղերին, ուներ 673.297 միմիայն մուսուլմանական բնակիչ, Բիթլիսը՝ 309.999 և Վանը՝ 179.380, ինչպես թուրքական վիճակագիրն է հաղորդում: Երկու դեպքում էլ, թե՛ այժմյան և թե՛ նախապատերազմյան թվերը, իբր ապացույց, որ մուսուլման ժողովուրդը երեք վիլայեթներում կորցրել է երկու երրորդ մասը, այս հարաբերական կորուստը, անկախ թվերի քանակից, իրականությանը շատ մոտ է: Ի նկատի առնելու է, որ Վան և Բիթլիս մնացած ժողովրդի բազմությունն ընկնում է գլխավորապես Հաքքյարի և Սղերդի, այն է պատերազմական ճակատից դուրս վայրերի վրա, ուրեմն և դուրս վիլսոնյան սահմաններից: Եթե աչքաթող անենք այս և ընդունենք իսկ, որ թուրք թերթի ցույց տված 200 հազար բնակչությունը հավասարապես է բաշխված Վանի և Բիթլիսի վիլայեթներում, ապա Հայաստանին բաժին է ընկնում այս թվի միայն կեսը, որն է 100 հազար, որովհետև նույն վիլայեթների կեսն է մտնում վիլսոնյան սահմանների մեջ: Ասել է թե, Էրզրումի նահանգի 200 հազար բնակչության հետ կունենանք 300 հազար մարդ: Իրական թիվը, մեր գիտությամբ, շատ ավելի սակավ է, բայց ընդունենք, որ ստույգ է: Այստեղից հետևում է, որ զինադադարից հետո երեք տարվա ընթացքում թուրք<ական> կառավարությունը հազիվ կարողացել է երեք հարյուր հազար մարդ բնակեցնել հայկական վիլայեթներում: Կարծել,

որ նոր գաղթականություն կարելի է հանել ներքին նահանգներից, անհնմն է: Հայտնի է, որ Թուրքիան մարդկային ահագին զոհեր է ունեցել. ահա 14 տարի է անընդհատ պատերազմական դրության մեջ լինելով (7), և Անատոլիայի վիլայեթներից նոր մարդ հանել Հայաստանը բնակեցնելու, նշանակում է հայ<կական> վիլայեթների նման նոսրացնել տեղական բնակությունը: Ակնհայտ է, հետևապես, որ եթե Հայաստանը մնա թուրքերի ձեռքին, ապա հայերը հետ դառնալու ո՛չ հնարավորություն և ո՛չ ցանկություն պիտի ունենան և ուրեմն երկիրը պիտի մնա կիսաբնակ: Թուրքերը Հայաստանի համար ավելորդ ժողովուրդ չունեն:

Մինչդեռ հակառակ դեպքում է, որ երկիրը պիտի շենանա բնակչությամբ, այսինքն՝ երբ Հայաստանը ազատագրվի թուրքական լծից: Այս պարագային, երկիր է վերադառնալու անմիջապես տեղացի բնիկ հայ բնակչությունը, որ պատերազմի հետևանքով ապաստանած է ռուսահայ արյունակիցների մոտ և ակնկառույց սպասում է ազատության կոչին, որ վերաբնակվի և վերականգնի հայրենի ավերակները: Այդ փախստականների թիվը հասնում է մինչև 300 հազար համաձայն ստույգ ցուցակագրության, որով անհատական պարեն էր բաշխվում ռուսական գանձարանից: Նախորդ ռուս-թուրքական պատերազմների և մեծ կոտորածների [illegible] գաղթած ժողովրդյան մի մասը ևս դառնալու էր նախկին վայրերը: Էրզրումի, Բասենի և Ճորոխի 80 հազար հայեր բնակեցրած են Ախալքալաքի և Ախալցխայի շուրջը, որի պատճառով մեր դարավոր հաշտ հարևանությունը դրացի Վրաստանի հետ մշտապես վտանգված է: Հիսուն-վաթսուն տարվա ընթացքում այդ գաղթականությունն ավելի քան քառապատկվել է և հողի պակասության հետևանքով հեռանում են օտար երկրներ, հավանական է, որ նրա որոշ մասը դառնալու է իր նախկին տեղն Էրզրումի վիլայեթում: Իսկ որքա՞ն հայություն է խմբված զանազան երկրներում, հալածական թուրքական ռեժիմի վերջին տասնյակ տարիների սարսափներից. խոշոր գաղութներ են կազմված Ամերիկա (մոտ 150 հազար հոգի), Եգիպտոս՝ 30 հազար, Բալկաններ՝ 50 հազար, Կ. Պոլիս իր շրջակայքով 150.000, Զմյուռնիա և շրջակայքը 50.000, և հազարներով և հարյուրներով ցիրուցան են եղած երկրագնդի ամենահեռավոր վայրերը: Թուրքական բռնությունից փախած այս հոծ բազմությունը մեծ մասամբ դեռ չէ կտրած կապը իր մայրենի հողի հետ և ի դեպ նրա քաղաքական ազատության՝ տալու հայրենիքին 2-3 հարյուր հազար թարմ և կիրթ բնակչություն: Վերջին տեղահանության բեկորները, որոնց մի մասը վերաբնակած է Անատոլիա իր տները, իսկ մյուս մասը հածում է առանց կարենալու հանգրվան գտնել՝ նրանք ևս մասամբ գերադասելու են հաս-

տառվել ազատ հայրենիքում: Այսօրվա հայ ազգն իր պատմական հայրենիքը շենացնելու համար հարկավոր մարդահամարի պակասություն չի զգում և անհամեմատ չափն առած, տալու է նրան 600 հազարից ոչ նվազ բնակչություն, որ տեղում մնացած արդի մուսուլմանների, այլև մյուս տարրերի՝ ասորիների, եզդիների և հույների հետ կազմվելու հիշածս 900 հազար բնակչությունը, առանց հաշվելու նույնիսկ Տրապիզոնի ժողովուրդը: Այս հնարավոր է միայն, կրկնում ենք, Հայաստանի անկախության դեպքում, այլապես երկիրը մնալու է կիսամայի և կիսավեր: Եվ վերջապես մոռանալու չէ ևս այն, որ ժողովրդյան սակավությունն արգելք պիտի չնկատվի նրա քաղաքական դատի լուծման: Հայրենիքը մի սերունդի համար չէ. նա մի գաղափար է, որ ամփոփում է անցյալ սերունդների հիշատակը և ապագայի հույսերը: Այսօր քիչ ենք, որովհետև անթիվ անհամար զոհեր ենք տվել մեր դատի համար և նրա անունով, և ոչ միայն հալածանքի և դառնության սպանդանոցում, այլև կռվի դաշտում. վաղը ազատության շինարար և անվրդով պայմաններում կլինենք բազմաթիվ: Ապացույց, Արևելյան Հայաստանը, ուր ռուսների տիրապետությունից առաջ քառակուսի կիլոմետրին գալիս էր հազիվ 4-5 մարդ, այժմ 50-60 մարդ է հաշվվում:

Այն էլ ասենք, որ Անատոլիայի ամբողջ տարածության վրա մեկ միլիոն հայ ժողովուրդը՝ տարագրության ատեն խողխողած, բողել է թուրքերին տասնյակ հազար քառակուսի կմ հողային ժառանգություն և արդարություն չէ՞, որ ի տրիտուր այդ կորուստների մի քանի թիզ հող ավելի ստանա իր հայրենի երկրից:

Թվում է թե, որ Վիլսոնի սահմանները ընդարձակ կարծողները ավելի կակնարկեն Տրապիզոնի վիլայեթի վրա, մեծ կգտնեն այստեղից Հայաստանին հանած բաժինը, որ գրեթե վիլայեթի կեսն է: Ամբողջ վիլայեթը 31.300 կմ$^2$ և Հայաստանի ձգած մասը մերձ 15-16 կմ$^2$ իբր հողամաս, մեծ հարստություն չէ, ոչ միայն Թուրքիո համար, որ 600 հազար քառակուսի կիլոմետր տարածք ունի, այլև նույնիսկ փոքր Հայաստանի համար: Եվ մենք հողային ինչք ձեռք բերելու ագահությունից չէ, որ ուզում ենք տիրանալ ծովափին: Հայաստանի լեռնային կղզուց իջնելու, նրա ձորերից ելնելու և արտաքին աշխարհի հետ կապ ունենալու միակ դուռն է սույն ծովեզրը. և սրանից է կախված հայ երկրի տնտեսական կյանքը, որ հիմն է պետության գոյության և բարգավաճման: Սահմանագծի ընդլայնումը արևմուտքից և մինչև Կերասուն տանելը ընդառաջում է այն կարևոր հանգամանքին, որ ապագա երկաթուղու գծի միակ հարմար և արժան ուղին անցնելու է Խարշուտ գետի հովտով: Եթե մասնագետ տեքնիկները ցույց

տալ կարենային մի այլ նույն հարմարություն ունեցող ուղղություն, սահմանի սեղմումը դժվար թե առարկության հանդիպեր: Սույն վիլայեթի արևելյան մասը, որ թողված է Հայաստանին, ազգագրական տեսակետից և ոչ մի կապ չունի թուրքերի հետ. այստեղ ապրում են լազեր, հայեր (համշենցի մուսուլման, բայց հայախոս), հույներ և հայտնի է Լազիստան անվամբ: Տրապիզոնի նշանակությունը, իբր ելման դուռ Հայաստանի համար, հայտնի էր և հին բյուզանդացիներին, որոնք երբեմն այն կցում էին Հայաստանին (8):

Հայ ժողովուրդը, ծարավ հաշտության և խաղաղության, ուրերորդ տարին է, որ դեգերում է օտարության մեջ զրկանքների և այլասերման մահացու ճանապարհների վրա, ակնակառույց իր բաղդի վճռին: Եվ այս կամ այն հողակտորի զիջումը չէ, որ պիտի կասեցներ նրան: Սակայն նա փափագում է ստեղծել մի հայրենիք ազատ դռներով և ոչ թե պարփակ մի բանտ:

Հյուսիսում հրաժարվել որևէ հողակտորից, նշանակում է խափանել հաղորդակցության միջոցները և հարվածել երկրի տնտեսությանը: Հարավից զիջելը նշանակում է կորցնել հնուց ի վեր հայաշատ գավառներ և վնասել Արևելյան Հայաստանի (Ռուսահայքի) հետ մի ամբողջություն կազմելու գործին (9): Այսպիսով, վիլսոնյան սահմանները որևէ կողմ սեղմելը հնարավոր չենք տեսնում և այն առարկությունները, որ կարվի նույն սահմանների մեծության նկատմամբ, հերքված կհամարենք սույն բացատրություններով, որոնց ամփոփումը հանգում է հետևյալ կետերի.

1. Վիլսոնյան սահմաններով Հայաստանին տրվում է այն չորս վիլայեթները, որ Սևրի տրամադրությամբ կարող էին և ամբողջովին անցնել հայերին, միմիայն կեսը և կամ քիչ ավելի՝ ընդամենը 90 հազար քառակուսի կիլոմետր տարածություն:

2. Այդ տարածքը պատերազմի թատր լինելու հետևանքով, բնակչությունը մեծապես վնասված է և երկիրը այժմ գրեթե ամայի է. այն վերստին շենացնելու համար հարկավոր է մոտ 900 հազար բնակիչ, հաշվելով առ առավելն 10 մարդ մի քառակուսի կիլոմետրի վրա, ինչ որ սովորական խտության չափն է Անատոլիայի ներքին վիլայեթներում:

3. Զինադադարից հետո թուրքերը երեք տարվա ընթացքում հազիվ կարողացել են այստեղ հավաքել, իրենց վկայությամբ, մոտ 300 հազար բնակիչ, ավելին տալ անկարող են, և եթե քաղաքական միտումներով նոր բնակչություն բերեն, ստիպված պիտի լինեն դատարկել կամ նույն չափով նոսրացնել ներքին նահանգները: Ուրեմն թուրքերի տիրապետության տակ երկիրը մնում է կիսավեր և կիսաբնակ:

4. Այդ հողերի ազատագրության դեպքում հայերն ավելի մարդ կունենան երկիրը շենացնելու. այսպես՝

ա) 300 հազար փախստականներ, որ պատերազմի ժամանակ ապաստանել են Արևելյան Հայաստան և մեծ մասամբ Ալաշկերտի, Մուշի, Բիթլիսի և Վանի շրջաններից են.

բ) Նախորդ պատերազմների ժամանակ գաղթած 80.000 ժողովրդյան քառապատկված սերնդի մի մասը Ախալցխայի և Ախալքալաքի շրջաններից դառնալու են իրենց վայրերը, Էրզրում, Բասեն, Ճորոխի հովիտ:

գ) Այլուրեք գաղութները՝ Ամերիկա, Եգիպտոս, Բալկանները և մյուս ցիրուցան գաղութները կարող են տալ ոչ պակաս, քան 300 հազար:

դ) Հաշվել տեղահանության բեկորները կառչած այս և այնտեղ ժամանակավորապես: Ամենահամեստ չափով 5-6 հարյուր հազար հայ դառնալու էին հայրենիք, որ երկրում մնացած այլևայլ տարրերի հետ պիտի տան ցանկալի քանակը:

ե) Սև ծովի ափերը կենսական նշանակություն ունեն Հայաստանի տնտեսության համար, իբր միակ դուռը դեպի արտաքին աշխարհ:

զ) Վիլսոնյան սահմաններն աշխարհագրական, տնտեսական հաղորդակցության և ազգային տեսակետներով կազմում են մի ամբողջություն, որից այս կամ այն մասը հանել հյուսիսից և կամ հարավից նշանակում է հարվածել տնտեսական և ազգային շահերը և կտրել հաղորդակցության միջոցները Արևելյան Հայաստանի հետ և այդու վնասել ամբողջացյալ հայրենիքի գործը:

Ահա այս նկատառումներով է, որ հայ ժողովուրդը ցանկանում է տիրանալ իրեն բաժին հանած հողերի ամբողջության: Այդ հողերը նրա հայրենիքն են, նրա 3 հազարամյա փոթորկալից կյանքի օրրանը, լի նախնիքները շինարարության հիշատակներով: Քաղաքական ազատությունը նրա համար երևակայության խաղ չէ, այլ իրական ձգտում, բխած նրա գիտակից հասուն էությունից: Դրա իրավունքը ձեռք է բերված հերոսական մաքառումներով և միլիոնավոր զավակների մարտիրոսական արյունով:

Հայ արյունոտ դատը միայն քաղաքական հարց չէ, նա ժամանակակից մարդկության խղճի հարցն է:

## ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՐՑԻ ՆԵՐՔԻՆ ԿՈՂՄԵՐԻՑ ՄԵԿԸ

Հայկական հարցը իբրև քաղաքական դատ երկու կողմ ունի, երկու ազդակ՝ ներքին և արտաքին: Ներքին եմ անվանում այն ամենը, ինչ-որ բխում է հայերից, այն ջանքերը, որ անում ենք մենք՝ հայերս, գործի հաջողության համար, և արտաքին՝ շահագրգռված պետությունների և կամ նրանց դիվանագետների դիրքն ու տրամադրությունները:

Մեր ազգային պարտքը կատարած կլինենք և ապագա պատասխանատվությունից ազատ միայն այն դեպքում, եթե կարողանանք ասել, որ մենք՝ հայերս, մեր կողմից աշխատեցինք և արինք այն, ինչ որ պահանջում էր րոպեն և սպառեցինք բոլոր հնարավոր միջոցները: Մեզ թվում է, թե որքան էլ շատ բան արած լինենք, տակավին անելիք ունենք և մեծ անելիք: Մեր դատը բարդ է և պահանջվում է տեսակ-տեսակ փաստարկություններ: Մի կարգի պատճառաբանություն, այն, որ մինչև այժմ հիմն է եղել և կա Հայ դատի պաշտպանության, ստացած է իր լիակատար ամբողջությունը: Նշանակեց անգամ չի կարելի ավելացնել, առանց տարտամ կրկնաբանության երկյուղի, եթե գործը կմնա, իհարկե, նույն ձեռքերում, որ մինչև այժմ վարել և վարում են:

Այն անձինք և հաստատությունները, որոնք կոչված են պաշտպանելու Հայ դատն ի պաշտոնե և կամ անպաշտոն, որոշ կուսակցական և հասարակական խավերի ներկայացուցիչներ են: Ինչպես և կոչվեն այն կուսակցությունները, որ այսօր հրապարակի վրա գործուն դեր են կատարում, ինչ էլ լինեն նրանց ծրագրային և էական տարբերությունները, նրքա բոլորքյան հասարակական տեսակետից միևնույնն են, քանի որ բոլորն էլ միևնույն միջին դասակարգի կամ քաղքենիության և նրա համապատասխան մտավորականության հայտարարներն են, որոնց մտայնությունը կարելի է բնորոշել ընդհանուր առմամբ վարժապետություն բառով: Գործ եմ ածում այդ բառը ոչ հեգնական, այլ վեհ իմաստով: Դրա ներկայացուցիչներն են հայ մտքի և լեզվի, հայ մտավոր անդաստանի սպասավորները, որ այսօր կանգնած եվրոպական պետության առաջ պաշտպանում են Հայ դատը:

Որքան էլ կարող, որքան էլ հմուտ և անձնվեր լինեն իրենց կոչման մեջ, բնական է, որ իրենց իսկ մտայնությամբ, ի վիճակի պիտի չլինեն զրկել դա-

տի պահանջած փաստարկության ամբողջությունը, նրանց պաշտպանությունը լինելու է միշտ միակողմանի:

Ամեն պետության, ամեն ազգի մեջ գործում դեր է խաղում բարձր՝ նյութական և մտավորական իմաստներով հառաջացած դասակարգը: Արդի ժամանակները բուրժուական հասարակության գերիշխանության դար է, և այս հիմունքով արտաքին քաղաքականությունն իսկ ոչ այլ ինչ է, եթե ոչ տնտեսական շահերի մրցման արտահայտություն: Բնական է, որ այսօրինակ քաղաքականության հիմնաքիծը և նրա բեկվածները ըմբռնել և շահավետել կարող են ավելի շուտով բուրժուական մտայնության ունակները, քան մի ուրիշ:

Տխուր փաստ է, որ հայի նյութական և մտավոր հարստությունը, այլ խոսքով նրա բուրժուական դասը հայրենիքից դուրս է, սփռված ամենուրեք օտար աշխարհներում: Հայ ազգ և հայ հայրենիք՝ հավասար գաղափարներ չեն: Մեր հայրենիքն ավելի հետամնաց է, քան ազգը: Մեր երկիրը հազիվ հասած է զարգացման քաղքենիության աստիճանին: Մինչդեռ հայրենի հողից դուրս ունենք խոշոր բուրժուազիա, բառի բուն իմաստով, մի բուրժուազիա, որ երբեմնակի տալիս է եվրոպական մեծության ներկայացուցիչներ: Հայերը հայտնի են առևտրի և արդյունաբերության աշխարհում: Քաղաքական պայմանների պատճառով վտարվելով հայրենիքից՝ հայ հանճարը հարկադրված թառել է օտար շահաստաններում և համաշխարհային հոչակ է վաստակել: Այդ հոչակը նոր չէ: Տակավին դարեր առաջ հայը պատվավոր տեղ է գրավել այն ժամանակվա առևտրական ծաղկյալ կենտրոններում և բացառիկ օղակ է եղել Արևելքի և Արևմուտքի առևտրական և մինչև իսկ քաղաքական հարաբերությանց: Միայն բարքերի փարիսեցիներին է հատուկ խեթ աչքով նայել հայի վաճառականական ձիրքերի վրա: Ժամանակակից քաղաքակրթության ազդակներից մինն է վաճառականությունը, և հայի դերը եվրոպական վաճառականության պատմության մեջ դեռ սպասում է իր առանձին պատմաբանին (1): Արդի ժամանակներում ևս ականատես ենք հայի շինարար գործունեության հայրենիքից դուրս տարբեր վայրերում, ուր նա հիմնել է փարթամ գաղութներ, նյութական և մտավոր հարստությանց կատարյալ շտեմարաններ: Պետք չէ մոռանալ, որ Թիֆլիսն ու Բաքուն և կամ Կ. Պոլիսը ևս գաղթավայրեր են: Եթե աչք ածենք արտասահմանի հայության՝ հին և նոր աշխարհների կենտրոններում խմբված մեր ուժերին, կարող ենք պնդել, որ եթե հայ հայրենիքը աղքատ է, սակայն այդպես չէ հայ ազգը: Հայ հայրենիքը՝ տգետ և հետամնաց, բայց այդպես չէ հայ ազգը ընդհանրապես: Ինչպես որ Անգլիայի ուժը միայն Բրիտանական կղզու վրա չէ, այնպես և հայի կարողությունները միայն

Երևան, Վան և Բիթլիս որոնելու չէ, այլևս հեռավոր չեն զաղութներում: Եվ ով է, որ պիտի երևան հանի այս հանգամանքը և ի սպաս դնի հայ դատին, եթե ոչ ինքը՝ հայ բուրժուազիան կանոնավոր կազմակերպության միջոցով: Այսպիսով է, որ պիտի հրապարակ հանվի, որ հայ հայրենիքի քաղաքական բախտը սահմանելիս ի նկատի ունենալու է նաև նրա վտարանդի որդիների ուժն ու կարողությունները, նրանց ամբարած մտավոր և նյութական հարստությունները, որ գլխավոր հենարաններն են լինելու մեր հայրենիքի վերականգնման և տնտեսական բարգավաճման:

Այլևս նույն արտասահմանյան կազմակերպյալ հայ առևտուրն ու արդյունաբերությունն են, որ կարող են իրենց ծանրության քարը նետել տնտեսական և առևտրական այն հաշվեկշռի մեջ, որ ստեղծում է եվրոպական դիվանագիտության մեջ այս կամ այն տրամադրություններում Հայկական հարցի հանդեպ: Հայտնի է, որ միջին դարերից ի վեր Արևելքի և մասնավորապես Առաջավոր Ասիայի ազնվագույն ապրանքները, ինչպես մետաքս, բամբակ, բուրդ, գոհարեղեն, կերպասներ, ծխախոտ, մրգեղեն հայ վաճառականության միջոցով է արտահայտվել եվրոպական շուկաները, այժմս էլ չնայելով բոլոր քաղաքական և այլ աննպաստ պայմաններին, հայերի մասնակցությունը այդ մթերքների առևտրի մեջ աննշանակ չէ: Եթե հաշվելու լինենք նավթի, պղնձի և մարզանեցի արդյունաբերությունն ևս, կարող ենք վստահել, որ հայի նշանակությունը պետք է ավելի բարձր գնահատել: Արդ՝ հայն իբր սոսկ առևտրական միջնորդ եվրոպացիների համար, կարո՞ղ է այս կամ այն չափով ազդեցություն ունենալ համապատասխան պետությանց տնտեսական քաղաքականության վրա Արևելքում: Որքան էլ համեստ լինենք մեր հիշած ուժերի նկատմամբ, նրանք համենայն դեպս ավելի արժեքավոր են, քան այն տնտեսական վեճերը, որ տեղի են ունենում օրինակ Հայաստանի շուրջը և հայ առևտրականության ձայնը անհետևանք չպիտի անցնի եվրոպական դիվանագիտության մեջ: (Բերենք մի օրինակ. Մանչեստրի և Լոնդոնի 150-ի չափ հայ առևտրական տների լուման անգլիական մահուդեղենի արդյունաբերության գործում խիստ արժեքավոր է, քանի որ նրանք մեծամասամբ բամբակի առևտրով են զբաղվում, և նրանց միասնական դիմումն անգլիական կառավարության, թե իբր Կիլիկիայի հարցի այս կամ այն վճիռը պիտի որոշ ազդեցություն ունենա իրենց առևտրի վրա, կրկնում եմ, այսպիսի դիմումն ավելի նշանակություն պիտի ունենար անգլիական դիվանագիտության համար, քան մեր աղերսագրերը և մարդասիրական կոչերը և պատմական իրավունքները):

Կես դար է (2), որ մեր արդար դատը միայն արյուն է բերում մեզ, կես դար է, որ մեր բոլոր գործուն ուժերը, կենսունակ և անձնվեր երիտասարդությունը, ամբողջ ժողովուրդը ողջակեզ եղավ մեր դատին, և ոչնչի հանգեցանք: Դարձյալ մտամոլոր և հուսաբեկ կանգնած ենք նույն պրոբլեմի առաջ: Գործունեության եղանակը փոխել կամ նույնը ճոխացնել նոր գործելակերպով՝ անժխտելի անհրաժեշտություն է: Նոր գործելակերպը պիտի ծագե մինչև այժմ մեկուսացված, մեզ համար ամուլ, բայց ինքնըստինքյան զորեղ դասակարգից: Նրա լծակը լինելու է մեր առևտրի և արդյունաբերության ներկայացուցիչների կուռ շաղկապը:

Անհիմն հոռետեսությունը նույնչափ արատավոր է, որչափ և ավելորդ շատախոսությունը: Միշտ դնելու է ամեն գործունեության սկզբում, որ առողջ հիմքերի վրա դրված գործը երբեք անպտուղ չի անցնում, եթե նույնիսկ բոլոր ակնկալիքները չի արդարացնում: Մեր առջև ունենք կենդանի օրինակ, որ կարող է մեզ խրախուսել և ոգի տալ: Գաղտնիք չէ, որ հրեական կապիտալը ոչնչից ստեղծեց Պաղեստինը (3): Հայ կապիտալը պիտի գլխավոր նեցուկը լինի Նոր Հայաստանի: Հարկավ, տարբեր են մեր և նրանց կապիտալների արժեքը, բայց տարբեր է նաև Հայաստան և Պաղեստին ստեղծելու գործը: Մեկն արդեն գոյություն ունի, կենդանի մարմին է, իսկ մյուսը ստեղծվելու է զրեթե ոչնչից: Մեր հարցը դյուրին է նույնչափ, որչափ թույլ՝ մեր կապիտալը:

Մոռանալու չէ նաև այն, որ ինչ և լինի առաջարկածս կազմակերպության ազդեցությունը Հայկական հարցի վերաբերմամբ, սրանով չէ, որ պիտի սահմանափակվի նրա գործունեությունը և արդարացվի նրա գոյությունը: Հայ արդյունաբերողների և առևտրականների միությունը համահավասար է հայ գաղութների միության գաղափարին: Հայ գաղթավայրերի նյութական և բարոյական ուժերի շաղկապումը և նրանց միասնական գործունեությունը ինքնըստինքյան մի մեծ ձեռնարկ է, որ խոստանում է նոր զարկ տալ մեր կյանքին և այլ չափեր մտցնել մեր մտավոր և կուլտուրական անդաստանի մեջ:

Գործի նախաձեռնությունն առնելու են իրենց վրա Լոնդոնի և Փարիզի մեծատունները: Բավական է, որ մի քանի հայտնի և ազդեցիկ մարդիկ առևտրի և արդյունաբերության աշխարհից հրապարակ նետվեն և կազմեն ծրագրյալ կազմակերպության կորիզը: Կարճ ժամանակամիջոցում նրանց շուրջը կբոլորեն ուրիշները՝ արձագանք տալով մոտիկ և հեռու վայրերից: «Հայ առևտրականների և արդյունաբերողների միության կենտրոնական կոմիտե» անվամբ անմիջապես քայլեր կարելի կլինի անել Հայկական հարցի

նկատմամբ, որի էության մասին խոսվելու է, երբ գործի ձարմնալու նշանները հրապարակ կգան:

**«ՀԱՅ ԱՌԵՎՏՐԱԿԱՆՆԵՐԻ ԵՎ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՂՆԵՐԻ ՄԻՈՒԹՅՈՒՆ»**

***Կազմակերպչական***

1. Հաստատված է «Հայ առևտրականների և արդյունաբերողների միության» կենտրոնական կամ կազմիչ մարմին (անդամների թիվը և ընտրության եղանակը որոշելու է կամ Փարիզ և Լոնդոն գտնվող առևտրականների ընդհանուր ժողով գումարելով, և կամ նախաձեռնողների ուրույն հայտարարությամբ):

2. Կենտրոնական մարմինը կոչ է անում ամենուրեք անդամագրվել և կամ հիմնադիր դառնալ զանազան գաղթավայրերում:

3. Անդամների նկատմամբ «Միությունը» ունենալու է Առևտրական պալատի նշանակություն և կատարելու է իրեն հատուկ գործեր՝ տալով դյուրություններ, ստուգելով և հետևելով հայ առևտրի և արդյունաբերության զարգացմանը և թերևս նպաստելով դրան: Ինչպես նաև հավաքելով բոլոր այն տեղեկությունները, որոնք կարող են նյութ լինել նրա պատմությանը:

4. «Միության» գլխավոր նպատակն է լինելու զարկ տալ հանրօգուտ գործունեությանը՝ հայ կյանքի բոլոր ճյուղերում:

5. «Միության» միջոցները գումարվելու են զանազան աղբյուրներից՝ ա) անդամավճար, բ) պարտավորյալ և հոժարակամ տուրք առևտրական շրջանառությունից, գ) նվիրատվություն, դ) կտակներ և այլն:

«Հայ առևտրական և արդյունաբերական միության» կենտրոնական կոմիտեի կամ մարմնի առաջին գործը լինելու է իր նպաստը բերել Հայկական դատին, ներկայացնելով լուրջ հիշատակագիր Գերագույն խորհրդին (4), մի հիշատակագիր, որ լրիվ պատասխան է տալու հարցի շուրջը ծագած դժվարություններին:

***Հիշատակագրի էական կետերն են լինելու՝***

1. Հայաստանն անջատվելու է Թուրքիայից նույն նկատումով, ինչ որ եղել է Միջագետքի (5) և Սիրիայի անջատման ժամանակ: Ինչպես որ սրանք թուրքական բնակչություն չունեն, այնպես և Հայաստանը, որի ժողովուրդը հայ և քուրդ տարրերից է բաղկացած: Հիմնապես թուրքական լուծն այստեղ պահելը անպատեհություն է այս տեսակետից:

2. Հայաստանի սահմանների և փախստական բնակչության դարձի շուրջը եղած վեճերի սպառիչ բացատրություն: Նույնիսկ վիլսոնյան սահմաններում կարող ենք տալ բնակչության այնպիսի խտություն (6), որպիսին տեղի ունի Անատոլիայի ներքին վիլայեթներում (7): Ավելին պահանջել Հայաստանից անարդարություն է:

3. Հայ<կական> պետության անկենսունակության վերաբերյալ կասկածները անհեթեթություն են, որքան և անկենսունակ, այն ավելի գոհացուցիչ պիտի լինի, քան թուրքական ռեժիմի ստեղծած կացությունը: Խնդրին պետք է մոտենալ ոչ թե եվրոպական չափանիշով, այլ թուրքական:

4. Հարկավոր ժանդարմների (մոտ 4000-5000 հոգի) և նրանց պահպանության ծախսը իր վրա է առնում Միությունը:

5. Ֆինանսական դժվարությունները հաղթելու համար Միությունը կարող է երաշխավորել պետք եղած փոխառություն պետությունների կողմից:

6. Հայ<կական> պետության պաշտոնեության կազմակերպության գործում ևս Միությունը բերում է իր նպաստը:

## ՄԵԾ ԵՂԵՌՆԻ ՏԱՐԵԼԻՑԻՆ

Կան աղետներ, որ չեն մոռացվում և որքան հնանում, այնքան դառնանում են: Հրեշավոր ոճիրը, որին ճարակ եղանք ազգովին, անօրինակ է մարդկության տարեգրության մեջ և՛ տեսակով և՛ ծավալով:

Ապրել դարեր լավագույն օրերի հույսով, ապրել սոսկալի զոհողությամբ՝ հլության շղթաները կրծելով, բախտի ոտերի տակ քարշ գալով, ելնել ժամանակի խորխորատներից, գալ հասնել քսաներորդ դարը և նրա գրկում, նրա լույսի տակ, մորթվել, բնաջինջ լինել, ի տես համայն աշխարհի – մի երևույթ, որի հետ չի կարելի հաշտվել, առանց ատելու մարդկությունն իր բոլոր քաղաքակրթությամբ:

Մեր անմռունչ նահատակների ոսկորները մնացին անապատներում անթաղ, երկնքից լույս չիջավ նրանց վրա, երկնքի սուրը, արդարության սուրը, չշողշողաց սուրբ արյան հատուցման պահանջով...

Սև գիշերը փռվեց մեր խղճերի և հայրենիքի վրա, անլույս, անհույս գիշեր: Երազների բոցավառ խարույկից մնաց միայն մի աղոտ ճրագ (1), որ առկայծում է Արագածի ստորոտին, ավաղ, այնքա՛ն թույլ, որ նրա շողերը հազիվ են հասնում մինչև Արաքսի ջրերը և անզոր են լուսավորելու Մասիսի մռայլ ճակատը, անուժ ճեղքելու այն կողմը տիրող որբ և ամայի մթությունը...

Ճիշտ այն պահին, երբ ակնդիվեր սպասում էինք թափած արյան գնին, մեր մարտիրոսության և մարդկային իրավունքների հաղթանակին, շրջմոլիկ բախտը մի անգամ ևս երեսը շրջեց մեզնից:

Եվ ահա հալածական թափառում ենք անհայտության մեջ, անտուն, անտեր: Իսկ այնտեղ մեր տունն ու տեղը, քրտնաթոր աշխատանքը՝ «լքյալ գույքերը» (2) լափում են գերփիչները (կողոպտիչները – Պ. Հ.): Այնտեղ մեր սրբազան հայրենիքը, շինարարության վկայարանը (3), ընկած է որպես դիակ գիշակերների առաջ ավեր և խոպան: Նորեն հին վերքերը, նորեն հին մրմունջը՝

*Եվ թույն այիք մշտափրփուր*
*Վանայ ծովուն ծիածաւալ*
*Հառաչանօք լի են տխուր... (4)*

Մոռացությունը չէ, որ հանգիստ պիտի բերե մեր բեկված և կողոպտված հոգուն:

Ինչ էլ լինեն մեզ վիճակված դառնության բազմիցս բարդ պատճառները, անուրանալի է գործուն սերնդի պատասխանատվությունը:

Առաջին անգամ չէ, որ արյունը ողողում է մեր երկիրը, ոչ հին, այլ նոր ժամանակները: Անցյալ դարի բոլոր պատերազմների ընթացքին (5), որոնց ռազմադաշտը մեր հայրենիքն է եղել, մեզ վիճակվել են նույն սարսափները՝ տեղահանություն, կոտորած և փախուստ հարևան երկրները:

Երբ դժբախտության ալիքը բախում է մեր ճակատին, մի վայրկյան կարծես սթափվում ենք անցած և դեռ հնարավոր արհավիրքների գիտակցությամբ: Բայց շուտով ամեն ինչ մոռացվում է, և մնում ենք նորեն մերկապարանոց գալոց օրերի հորձանուտ խաղերի հանդեպ:

Պատճառն այն է, որ ավանդություն չենք սիրում. հայրերի խրատը հարգ չունի որդիների աչքում: Ամեն սերունդ իջնում է գործունեության ասպարեզ առաքելական հավակնությամբ, վստահ, որ մութ երկնակամարում նոր աստղեր է գտնելու և անանց հորիզոններում նոր դռներ բանալու:

Ապրած սարսուռները մնում են անկշիռ և հին սայթաքումները կրկնվում են ավելի ծանր հետևանքներով: Որով հայ կյանքը նմանում է սահանուտ գետի՝ անակնկալ ջրվեժներով: Եվ ահա այսօր մեր դրությունը՝ կանգնած ենք մտամոլոր սեփական դիակների առաջ, «տեսանենք կենդանեաւ զդիականսն անձանց մերոց», ինչպես ասում է հեռավոր նախնիքներից մինը (6):

Ահավոր թշվառության առջև կծկված է ինքը՝ հայ միտքը, անքև, անճարակ: Ո՞ւր է մեր լուսաստղը, ո՞ւր է միահամուռ գործունեության ուղեցույցը:

Կան ինքնակոծներ, որոնց կարծիքով հայի ճակատագրական հատկանիշն է սայթաքել մշտապես քաղաքական ուղիների վրա:

Կան պիղատոսներ, որ հայտարարում են, թե իրենք անպարտ են բոլոր փլուզումների հանդիման և գոհ են, որ մեղավորներն ուրիշներն են: Այսօրինակ վերաբերումով չենք կարող ամոքել մեր ցավը: Քննադատությունը հասարակական առաջադիմության հիմն է և մեր սուրբ իրավունքը, բայց ոչ թե դատական վճիռներ արձակելու համար, այլ որպեսզի ըմբռնենք անցյալի խոտորումներն իրենց ծագումով և նորապես դարմանել աշխատենք:

*
* *

Ասում են, որ պատճառը բոլոր այն չարիքների, որ անցան-դարձան մեր գլխից, որևէ մասնավոր երևույթ չէ, այլ մի քաղաքական գիծ, որ հիմնովին սխալ է և կործանարար: Արևելցի լինելով, փարում ենք Եվրոպային.

փոխանակ խորհելու բարի հարևանության, խաղաղ կենակցության մասին մեր պատմական և աշխարհագրական միջավայրում, աչք ենք ածում հեռուները և օրորվում խաբուսիկ հույսերով: Օտարի ցանկությունը, ասում են, մեզ օգնելու՝ շատ կասկածելի է: Նա իր քաղաքական և տնտեսական շահերն ունի, որոնց համար մեր չարատանջ հարցը լոկ բարոյական վարագույր է: Խրոխտ սպառնալիքից հետո, ճայթած իբրև թե մեր լուծը դյուրացնելու նպատակով, ահա երկու կողմերը ողջագուրվում են հաշտության ժպիտով, հետ են կանգնում և մեզ ձգում մեր չար բախտին: Լավ կլիներ, եզրակացնում են, որ հանդարտ կենայինք, համակերպման ճանապարհը բռնեինք, և ոչ թե սին աղմուկով և գանգատներով դրսի աշխարհը քնդացնեինք և ակամա պատճառ դառնայինք զորացնելու այն ճիրանները, որ սեղմում են մեզ անգթաբար:

Այս մի հայացք է, որ սակայն որոշ չափի մեջ է պահելու, որպեսզի չկորցնի իր արժեքը: Հասարակական խնդիրներում հայացքները նման են թելի, որ շատ ձգելու չէ:

Նախ նկատենք անցողակի, որ առավելապես մեր դրացիներն են, որ սիրում են կրկնել այս միտքը, անխնեմ համարելով հայերիս բողոքը Եվրոպա՝ ընդդեմ տաճկական բռնության:

Սակայն, զարմանալի է, որ նույն վրացի և թուրք հարևանները խոհեմության դասերը ավելորդ համարեցին իրենց համար Ռուսիայի նկատմամբ և առաջին առիթով չվարանեցին Եվրոպա վազելու և իրենց հարցը օտար անիվների կապելու:

Թուրքիային ևս վայել չէ նախատելու հայի արևմտասիրությունը, ինքն իր գոյությունը պարտական լինելով Եվրոպայի զորավորներին: Կարլովիցի դաշնագրից հետո (7) ահա երկու դար է, որ Օսմանյան պետությունը գլորվում է անկման սանդուղով և եթե ցայժմ չէ ջախջախվել և կործանվել, միմիայն շնորհիվ եվրոպական հովանավոր բազկի: Ներելի չէ «հիվանդ մարդ»-ուն արգելել ուրիշներին դիմել այն բժիշկներին, որոնցից օգտվում է ինքը:

Պակաս չեն նաև մեզանում այսպես մտածողները: Սրանց թվին ավելացան վերջերս հայ համայնականները (բոլշևիկները), որ խստիվ քարկոծում են այն գործիչներին և դատափետում, որոնք դիմում են եվրոպական պետություններին: Հարկավ, սրանց տեսակետն իր երանգն ունի, որով խորշելի է համարվում ոչ Եվրոպան ընդհանրապես, այլ իշխող դասակարգը և օգնություն են սպասում Եվրոպայի համայնական աշխատավորությունից:

Այս էլ մի ուրիշ ինքնախաբեություն է, որ տանում է դեպի հուսախաբություն: Հայությունը հիմք չունի վարդեր սպասելու և այս կողմից, մանավանդ այն օրից, երբ տեսավ, որ կարմիր Ռուսիան ուրիշ արժանավոր դաշնակից չգտավ, քան կարմիր սուլթանի գահի ժառանգորդները, որ ուրից ցգլուխ շաղախված են հայ ժողովրդյան արյունով և շատ հեռու են համայնավար մտայնությունից (8):

Անցնենք սակայն բուն խնդրին, հայի արևմտասիրության առարկությունները կարող են երբեմն արդար լինել, եթե անգամ արտահայտված լինեն անարդար բերաններով:

*
* *

Հայության արևմտահայաց հակումները քաղաքակրթական երևույթ են ամենից առաջ և նրանից ծնած է քաղաքականը: Նա հայ պատմության խթան է, որի դեմ դժվար է աքացել:

Հայաստանը երեսը դարձրեց դեպի արևմուտք այն օրից, երբ քրիստոնեացավ: Պարսիկ ազգայնությունը նոր թափ առավ Սասանյան հարստության հարությունով. նա տապալեց պարթև տիրապետությունը, կենդանացրեց և պետական կրոն հռչակեց զրվանականությունը և նրա շնչով սրբագործեց մեծ աշխարհակալ ձգտումներ (9):

Չուլման և կորստյան վտանգը կախված էր Հայաստանի վրա: Ուրիշ հնար չկար փրկության, քան ապավինել քրիստոնեության: Ահա մի մեծ խորամատ, որ գալիս էր խզելու հայերի դարավոր կապը արևելյան ցեղակիցների հետ և թեքելու նրանց դեպի Արևմուտք: Սիրո խնդիրը չէր բնավ այս թեքումը, այլ սեփական գոյությունը պահպանելու հրամայական պահանջ: Այս է հայոց դարձի պատմական խորհուրդը, այստեղ է երկու անուններ՝ Տրդատի և Գրիգորի պատմական լուսապսակը:

Կրոնը թեքեց և մեր քաղաքականության սլաքը: Եթե գաղափարներն իրոք դեր ունեն պատմության մեջ, ամենազորեղ դերը զիջանելու է կրոնական ըմբռնումներին գոնե պատմության հին շրջաններում: Եկեղեցու նշանակությունը գուցե քիչ չափազանցրած է նախարարական շրջանի նկատմամբ, բայց արևմտասիրության խնդրում նրա կշիռն անուրանալի է:

Դեռ կենդանի էին վերջին Արշակունիները, երբ երկրի առաջնորդ ուժերը զգալով մոտալուտ վտանգը մտահոգ էին ապագա քաղաքական վարվելակերպի մասին, խորհուրդ արին և եկան այն եզրակացության, թե «առ-

ժան է զէք զմի որ թիկունս առնել եւ խորհեցան խորհուրդ եւ կամեցան թիկունս առնել զարքայն յունաց» (10):

Այնուհետև հաճախ տեղի ունեցան նման խորհուրդներ. ընդհանուր տրամադրությունը քրիստոնյա Արևմուտքի կողմն էր:

Մի բան կարող էր փոխել հայ քաղաքական կողմնացույցը՝ քրիստոնեության տարածումը Պարսկաստանում: Արդարև, Զրադաշտի ուսմունքը (11) ի վիճակի չէր մրցելու Ավետարանի հետ և կամաց-կամաց տեղի էր տալիս նրա ձայնին: Տիզբոնի եկեղեցին արդեն գրավել էր գրեթե բոլոր կարևոր կենտրոնները իրանական Արևելքում (12): Խոսրովների արքունիքն (13) անգամ ազատ չէր մնացել նրա ազդեցությունից: Քրիստոնեությունը հավանորեն պիտի հաղթանակեր, եթե մի նոր հանգամանք՝ արաբական արշավանքը, չհեղափոխեր, տակն ու վրա անելով ամբողջ Արևելքը:

Իսլամը շեղեց պատմության ղեկը: Նա հնձեց Իրանում այն սերմերը, որ ցանել էր քրիստոնեությունը և մի զորեղ խարոց (անջրպետ – Պ. Հ.) եղավ արևելքի և արևմուտքի մեջ: Հայերը իրենց բույլ դրացիներով մնացին կղզիացած մահմեդականության մեջ, երեսները հառած դարձյալ արևմուտքին:

Արևմուտքն էր տվել հայերին գիր և գրականություն, և ստեղծել հոծ մտավորություն ազգային ինքնագիտակցությամբ: Նրա համակրությունը փարում էր քրիստոնեական լուսավորության կենտրոնին, հրաշափառ Բյուզանդիոնին: Եկեղեցականությունն էր այս հոսանքի ոգին իր երբեմնական տատանումներով հանդերձ:

Հայ նախարարական դասը, կապված Արևելքին արտոնություններով, սովորություններով և ընդհանրապես հասարակական հիմերով, տարված չէր Արևմուտքով և մի տեսակ հակակշիռ էր եկեղեցական տրամադրության: Սակայն նոր տիրապետողները ոչնչացնելով հայ ազատանին, թուլացրին նրա կազմը և ազդեցությունը, նպաստելով այդ կերպ հակաարաբական հոսանքի զորացման: Եկեղեցական մտավորությունը որքան և խրտշեր (խրտներ – Պ. Հ.) Արևմուտքի դավանաբանական բռնություններից, չէր կարող վարանել քրիստոնյա և մուսուլման հովանավորության ընտրության մեջ: «Խարդախ» Բյուզանդիոնը գերադասելի էր «անօրեն» արաբից:

Երբ Արևմտյան կայսրությունն ընկավ (14) և Ս. Սոֆիայի խաչը տեղի տվավ մահիկին, հայի համար Արևմուտքը հեռացավ Վոսփորից Հռենոսի ափերը, որպեսզի վերջը այնտեղից անցնե Նևայի սառն ջրերը:

Այսպես, որքան մոտեցավ մեզ մռնդոլ-թաքար-թյուրք բափառաշրջիկների Արևելքը, այնքան հեռացավ մեզնից Արևմուտքը, քարշելով իր հետ մեր բաղձանքն ու ակնկալությունները:

Ծանր մքնոլորտ: Հայ երկիրն իր զավակների համար բանտ և գերեզման: Ավերիչ հրոսակների անվերջ կարավաններ: «**Սմբակք երիվարաց մաշեցին զըլուրս և զլերինս մեր**»,- աղաղակում է հայի hուսահատ ձայնը հեռավոր դարերի խորքից (15): «**Ցանտառաբոյծ խոզից և յանցաւորաց ճանապարհի կոխեցաք իբրև զկաւ զոհհաց եւ ի գլուխս մեր կուտեցան քարինք**»,- hառաչում է մյուսը՝ տասներորդ դարից, ալևոր Հովհաննես Կաթողիկոսը և պատմագիրը (16), առանց երազելու, որ պիտի գան ժամանակներ, երբ իր զավակները՝ իսկական խոզերի և ավազակների ճիրաններում, երջանկության դար պիտի համարեն՝ նրա կրած տառապանքի օրերը:

Արևելքն այն օրեն, երբ մուսուլմանացավ, կորցրեց իր պատմական և քաղաքական հրապույրն ու հռչակը: Հային վիճակվեց ստրկության շղթան, խաչն ուսին և տրտունջը բերանին: Ելնել խավարամած արգելանոցից լույս աշխարհ, թոթափել խեղդող անուրը մարդու բնական ձգտումն է և առաջադիմության խթանը: Քաղաքական ասպարեզում ևս տենչանքը, երբ հազուրդ չի ստանում, ավելի սաստկանում է: Արդար պահանջը բախելով ձախողանքի չի թուլանում բնավ, այլ լարվում է և ստանում կրոնական հավատի հաստատություն: Բաղձանքն ու երազները՝ կոքնած արդարության, դառնում են անդրդվելի հավատ:

Հայ դատը հայի համար հավատ է, անընկճելի հավատ: Որի և hեծեծանքի մեջ և նրանց հետ պահվել է և մեզ ավանդվել մի անշեջ հույս, որ վերջապես արդարության դռները պիտի բացվեն և հայ հայրենիքի վրա:

Հույսը վատաբախտի համար կրկնակի ուժ է, մեզ համար այն հսկայական կանթեղը, որ տեսնում էին մեր երազում հայրերը՝ երկնքից կախ հայրենի բարձունքների վրա:

Այդ կանթեղից hրաժարվել չենք կարող: Ազգերը մեռնում-անհետանում են այն օրից, երբ կորցնում են զգացումը արդարի և հավատը նրա հաղթանակի: Մարդկությունն ընթանում է դեպի մարդկայնություն: Եվրոպական մարդկայնությունը շփոթելու չէ անցավոր քաղաքագետների բարոյական կամ մտավոր շեշտվածքի հետ: Հայի դատը ծանրանում է ընդհանրության խղճի վրա որպես չվճարված պարտամուրհակ:

Ժամանակով կար մի սուրբ ծերունի, որ ուզում էր բարձրանալ Արարատի գլուխը, կարոտելով Նոյյան տապանին: Դժվար էր ծերունուն կտրել անցնել այդ ամեհի կոթողի մեջքը, հասնել ամպերի մեջ թաղված գագաթին: Չկարողացավ: Բայց երկինքը գնահատեց նրա կարոտակեզ վերելքը, և հրեշտակը բերեց անձկալի նշխարը (17):

Հայությունը նման է այս երազագետ ծերունուն և հույս ունի, որ անվկանդ (անվեհեր – Պ. Հ.) մի օր պիտի հասնի իր ձգտած նշխարին՝ իր

արքազան իրավունքների վերականգնման: Ո՞վ կարող է ճախատել մեզ այս հույսի համար:

Հայությունն իրավունք ունի հավատալու նաև հրեշտակային միջամտության և օգնության: Ո՞վ կարող է քամահրել այս հավատը:

Հավատ առ մարդկություն մի գաղափարական լար է գործունեության, ձգված անցյալի և ապագայի վրա: Նրանից հրաժարվելու պետք չկա և ոչ կարելիություն: Նա չէ մեր դժբախտության պատճառը:

*
* *

Արտաքին ակնկալությունները կազմում են կշռի մի թաքը և արժեք ունեն միայն այն դեպքում, երբ համապատասխան ծանրություն կա մյուս թաքում – պատշաճավոր ներքին գործունեություն, սեփական ճիգերի դաշնավոր լարում:

Երկու ուղի կա գործունեության, երկու սիստեմ: Մեկ, երբ նպատակը դառնում է մի տեսակ փարոս, մի աստղ հեռու հորիզոնում: Մարդ տեսնում է լույսը և գլխիվայր վազում է դեպի նա, առանց նայելու ոտքերի տակ, ուշ չդնելով, որ կարող են անհաղթելի լեռներ, անանց ձորեր, անզամ ծովեր լինել ճանապարհին և չթողնել մոտենալ փարոսին:

Մյուս ուղին: Զգույշ և զգաստ՝ մարդ առնում է իր հետ մի ճրագ, մի լամպար և ուղղում է իր քայլերը նրա լույսով, ճանապարհ է հարթում, փշերը քաղելով, քարերը հեռացնելով. եթե անանց արգելք կա, պատ է տալիս, եթե ծով է հանդիպում, նավակ է նստում և այսպես գուցե համբաքայլ, գուցե խեցբեկ պտույտներով, բայց անվրեպ մոտենում է նպատակակետ փարոսին: Հայ գործիչները հետևեցին առաջին ուղիին, նետվեցին առաջ, որպես փութկոտ այծյամ, միտ չդնելով, որ ճանապարհը որոգայթալիր է և բռնված չար որսկաններով:

Եղել են երջանիկ ազգեր, որ նույն ճանապարհը ընտրելով, հասել են իրենց նպատակին, կարելի է ասել, բախտի թևերի վրա: Մեզ համար նա օրհասական եղավ: Ի՞նչ էր պատճառը, որ ալևոր ժողովուրդը, ինչպես հայը, կյանքի բոլոր դառնությունները ճաշակած, ընտրեց օրհասական ուղին:

*
* *

Հայությունը որպես ազգ միաձույլ զանգված չէ, և հասարակական տեսակետից միօրինակ շենք չէ: Հարկեր ունի՝ ռուսահայ, թրքահայ, գաղթահայ, տարբեր երանգներով: Թրքահայ սաստիկ ևս ցրիվ հասկացողություն է.

այլ է Վան և Մուշ, այլ՝ Պոլիս և Զմյուռնիա: Ողբերգությունը սկսվում է այն օրեն, երբ հայկական վիլայեթների համար քաղաքական ծրագիրներ են մշակում այսպես ասած, դրսեցի հայերը (18):

Ազատագրական կոչը դրսեցի էր հղացումով և գործադրությամբ (19): Ճշմարիտ դարման էր, եթե կուզեք, որոշ հիվանդության դեմ ընդհանրապես, բայց ոչ ներկայացյալ հիվանդի համար: Գաղափարը նման է բույսի և ծաղկում է իրեն հողում: Եթե ազատագրության ծառը ներածո չլիներ, այլ տեղական տունկ, տեղի սերմերից ծլած, Հայաստանը սպանդանոց չէր դառնա այնպիսի տկարությամբ:

Պատերազմի ժամանակ բացվեցին մեր երկրի դռները և տեսան, ով չէր տեսել, հողն ու ժողովուրդը: Հուսահատական տեսարան էր: Ծանր էր հաշտվել իրականության հետ, ծանր էր մտածել, որ սերունդների երազը փարած է եղել այս ուրվականներին, որ շատ հեռու էին քաղաքական ատաղձ լինելու ունակությունից: Ահա՛ խեղճ քահանան, վարժապետը, գյուղի ռեսը և համայն ժողովուրդը ցնցոտիների մեջ մարմնով և մտքով: Ոչ, այս փշատտանում վարդեր չէին կարող բուսնել:

Քաղաքական շարժումը բնական ծագումով ենթադրում է նյութական և հոգեկան հայտնի մակարդակ: Անտարակույս շարժման ծրագրողներն ունեին պահանջած մակարդակը, բայց նույնչափ անտարակույս է, որ այն ժողովուրդը և հողը, որի համար ծրագրված էր շարժումը, չուներ նույն պատրաստականությունը:

Այսպիսի պայմաններում մարտական բողոքը կարող էր տալ լավագույն դեպքում առանձնակի և դիպվածական պայթոցներ, բայց ոչ երբեք ընդհանուր ժայթքում, գիտակցական և կազմ խոյանք:

Կան գլուխներ, որ մտածում են, և լեզուներ, որ ասում են, թե հայ ժողովուրդն ընտրեց ըմբոստ ուղին հենց այն պատճառով, որ չէր կարող նվիրվել խաղաղ աշխատանքի: Արկածավոր միտք է: Նա, որ չէ կարող որևէ պատճառով մի համեստ խրճիթ շինել, հասկանալի է, որ նրա ուժերից վեր է ձեռնարկել քաղաքական մեծ շենքի:

Վաղաժամ էին և՛ Հնչակների ղողանջը, և՛ Դրոշակների ծածանումը (20): Չեմ կարծում, որ այս հասարակ ճշմարտությունը հայտնի չլիներ նրանց ղեկավարներին: Բայցևայնպես, ուխտն արված էր: Ինչո՞ւ: Որովհետև ուղեցույց էին ընտրել հեռավոր փարոսը, որի լույսն այնքան թովիչ էր, որ օր առաջ ուզում էին փարել նրան, համոզված, որ դժվար չէր փարել... բավական էր աղաղակել դարավոր բանտերից, շարժել անարգ շղթաները և օգնության կհասնեն մեզ ժամանակակից մարդկությունը... Հազարավոր թարմ ուժեր, գործուն ձեռքեր գնացին նրանց ետևից, զրկեցին արյունոտ

ուղին և մարտիրոսացան: Արտաքին ակնկալությունները հիմնովին չկշռադատած, շտապեցինք նետվել մրրկահույզ ծովը, բացինք առագաստները մեր թեթև նավակի մի այսպիսի ժամանակ, երբ ոռնում էին չարաշուք հողմեր:

Ուրիշ հնար չկար, ասում են նրանք, որոնք կարծում են, որ պատմությունը մի բռնակալ է, որ հարկադրում է բոլորին անցնել ընդ նեղ դուռն: Եթե կյանքը ճակատագրական պատգամներ ունենար, ապա ավելորդ էր անհատների և խմբերի ճիգերը, կուսակցական շփումներն ու մրցումները՝ քարշելու հասարակությունն այս կամ այն ուղիով:

Ոչ, կյանքը կարծածից ավելի ազատամիտ է, որովհետև նա ամենից առաջ գիտակցություն է, որի էական տարրն է ընտրողությունը: Ընտրել այն, ինչ որ թելադրում են իր շահերը՝ բանական էակի իրավունքն է: Արտասահմանյան հայության և կամ նրա առաջնորդ մտավորության հարազատ էր այսպես կոչված հեղափոխական մտայնությունը, որպես ծնունդ իր միջավայրի և կյանքի ազատ պայմանների: Այլ է տեղացի հայի հոգեբանությունը, որի վրա ծանրանում էր կորացած մեջքի, կաշկանդված մտքի կարևեր ապրումները: Նրա աչքը հեռուն չէր կտրում: Խավարի մեջ նստած ժողովուրդը լույս էր ուզում, ո՛չ մութ հորիզոններում փայլփլող փարոս, այլ ապահով ջահ, որ լուսավորեր նրա առտնին քայլերը անվտանգ շավիղներով:

Այս պետքն ու պահանջը ունեցան իրենց մատակարարները, պատրաստ լինել ցանկացած ջահակիրները: Ուրանալ նրանց արժեքը, անարդարություն կլիներ, թեև նրանց ձայնը անլուր մնաց ընդհանուր աղմուկի մեջ:

XVIII դարի վերջերն էր, երբ հնչեց անդրանիկ հեղափոխության ղողանջը հեռավոր Հնդկաստանից (21): Սիմեոն [Ա Երևանցի] կաթողիկոսը, որ սրաթև աչքով տեսնում էր հեռուները, չվարանեց թղթով անիծել, հանդիմանել, ըմբոստ կոչի հեղինակին, համարելով նրա ծրագրերը չափազանց վտանգավոր հայ ժողովրդի համար (22): Խոսողը Էջմիածնի գահակալն էր, և նրա բերանով խոսում էր Հայ եկեղեցին՝ հայ ժողովրդի ուխտյալ մայրն այն սև օրերին, երբ նա որբ, անհայր, քողնված էր իր բախտին: Հիրավի, թե որքան խակ պտուղ էր Հնդկաստանի հայի, ղարաբաղցի Մովսեսի հղացումը, երևում է նրանից, որ ամբողջ դար էր հարկավոր, որ հասունանար՝ հետևորդներ գտնելու XIX դարի վերջին:

Թողնենք, սակայն, հինը: Մեր նպատակը չէ պատմական հաշվետվություն: Խոհերիս նյութն այն շրջանն է, որի պատասխանատվությունն ընկնում է ընթացիկ սերնդի, մեզ բոլորիս վրա: Ինչ ներելի էր նախքան Բեռլինի

վեհաժողովը, թերևս, անհնարելի էր նրանից հետո: Այդ ժողովը փորձության հնոց էր հայ հասարակական մտքի համար: Հայ գործը փեղկվեց, ընտրելով տարբեր ուղիներ, փոքորկի և աշխատանքի ուղիներ:

Երկու հայ վարդապետների (23) ձեռնարկները Վան և Մուշ, [Բեռլինի] վեհաժողովից առաջ և հետո, հայտնի են իրենց բացառիկ վեհությամբ և անձնվիրությամբ: Նրանցից առաջ, տակավին վաքսունական թվականներին Ակնեցի մի խումբ երիտասարդներ որոճում էին ավելի լայն ծրագրեր: Նրանց գլուխն էր Միսաք Թիմուրյան, անունը՝ համեստ, գաղափարը՝ մեծ և այսօր գնե արժանի երախտագետ հիշողության:

Միսաք Թիմուրյանը հասարակագիտական հայացքով գաղափարակից էր ռուսահայ Միքայել Նալբանդյանին: Այն, ինչ որ քարոզում էր վերջինս իր «Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ» գրքույկով (24), մոտ էր Թիմուրյանի սրտին:

Հավաքաբար գործելու նպատակով Թիմուրյանը հիմնեց Ակնում մի ընկերություն **«Նախապետական»** անունով: Ի՞նչ էր նրա միտքը և հասարակական ծրագիրը: Այս առթիվ նա հրատարակեց մի տետր, ուր պարզում է իր հայացքը անպաճույճ հստակությամբ և պարզությամբ (25):

Թիմուրյան Ակնցի էր, բայց նրա երազները գետի այն կողմն էին (26): Ակնում «բավական հող չգտնուելուն համար» նա առաջարկում էր հող գնել Մուշ և հիմնել մի նոր գյուղ, անունը **Նոր Հայ**, որ նմուշ ծառայե նման շինարարության: «Քանի մը տուն այս կողմի խեղճերէն տանելով և քանի մը տուն հայազգի մշակներ ի գիւղ բերել բնակեցնելու, մեր դրամը և քաղաքականութիւնը անոնց աշխատութեանը խառնելով, բնական ընթացքով մեր **ատաի կենաց պիտոյքը** հոգալով և բարոյականութեամբ ալ մեր **հոգւոյն պէտքերը** պատրաստելով, տանելով հետերնիս մաքրակենցաղ **քահանայ** մը և աստուածային երկիւղով զարգացած, **իմաստուն վարժապետ մը**… աւելորդ սեպելով **անօգուտ ուսումները**, որ մեր **ընթացքին** և պարզ վարուցը չեն վերաբերիր» (27):

Հեղինակը շարունակելով իր միտքը, գտնում է, որ առօրյա կյանքում պետք է բավականանալ նրանով, ինչ որ տալիս է մեր երկիրը. «բաւական են բրդէ և բամպակէ զգեստները», «հերիք մեր աշխատանքով մեր հողէն ելած բերքերը՝ ոչխարին կաթը, մեղուին մեղրը, ցորենին պարզ հացը, ծառի պտուղները, ծովի ձուկը և օղին թռչունները…»: Այս բոլորը բավական համարենք և «յօտարութիւն չգնանք»:

«Գիւղական գործերը», Թիմուրյանի ծրագրով, պիտի վարե տեսչական ժողովը չորս հոգուց բաղկացած և այնպես պիտի կառավարե ժողովուրդը, «որ ո՛չ վէճի պատճառ ըլլայ եւ ո՛չ տարաձայնութեան…»: «Արքունական

տուրքերը առանց ուշացնելու վճարել... Ասով իրենց **հաւատարմութիւնը տէ-րութեան** իրրեւ մշտավառ ճրագ մը փայլեցնեն եւ **դրացի** գիւղերուն հետ ալ իմաստութեամբ եւ սիրով վարուելու միջոցներ ձեռք բերելու են, որպէս զի երբ **դուրսէն անծանօթ թշնամի** մը պատահելու ըլլայ, ստիպուին դրացի գիւղացիք ալ պաշտպանելու զմեր գիւղերը: Կը պարտաւորիմք նաեւ դրացի գիւղացւոց մարդասիրութեամբ խնամք տանել, եւ անոնց մտաւորական եւ նիւթական պիտոյքներ ընծայել: Ասանկ կացութեամբ **թշնամի** բնաւ չենք ունենար եւ մէկը մեզի հակառակ չի կենար» (28):

Որքան պարզ և վեհ է Նոր հայը իր ձգտումներով և որքան նման է հին հային: Խորիմաստ միտք, շրջանկատ մտածություն: Հող և ջուր, վարժապետ, քահանա, հաշտ կյանք, պետական հավատարմություն, համերաշխ դրացիություն՝ հայության ծանոթ, հարազատ խոսեր են, քաղած հայ լեռներից և դաշտերից: Այս ծրագիրը թելադրանք է հայ պատմական և այժմեական կյանքի: Սերձավոր նպատակը՝ պատնեշ դնել պանդխտության շարժման դեմ, որ արդեն սկսել էր ծայրը և ամենակործանարար երևույթն էր:

Թիմուրյանը չբավականացավ խոսքով, գործի մտավ: Մուշի դաշտում, Ս. Կարապետից ոչ հեռու գնեց Շկավդիան գյուղը հարյուր ոսկով (29): Ընկերները վատամարդ՝ լքեցին նրան: Ինքը մենակ տեղափոխվեց Ակնից Մուշ..., բայց իբրև գաղափարակիր մենակ չէր:

*
* *

Մի քանի տարուց հետո նույն շավղի վրա ենք գտնում Գ. Սրվանձտյանցին: [Խրիմյան] Հայրիկի աշակերտը խոսում է Բեռլինի հուսախաբությունից հետո: «Փափաքելի է որ մեր դրամատէրները իրենց ուշը դարձնէին Հայաստանի մէջ հողեր գնելու... մեծ ազդեցութիւն պիտի ունենային տեղական կառավարիչներուն, թուրք եւ քիւրդ պէյերուն վրայ իբրեւ օրէնսգէտ եւ քաղաքագէտ անձինք... Թող չսարսափին այնչափ Հայաստանէն հասած չարիքներէն, միթէ պակաս են նոյն իսկ Եւրոպիոյ եւ մայրաքաղաքիս մէջ աւելի չարաչար չարիք...

Հայաստանի ամենամեծ չարիքը իր կարող որդոց հեռի մնալն է եւ զանի աղքատ եւ անպաշտպան ձգելը: Պէտք է հողեր գնել, պէտք է տեղ տեղ փոքրիկ պանք հաստատել, որոնք զնէ հայը **պանդխտութեան դիմելէ ետ** կը կեցնեն, պէտք է օրէնսգէտներ եւ բժիշկներ երթան հոն, այս երկու դասուն ալ մեծ ասպարէզ կայ Հայաստանի մէջ, որոնցմով կը պաշտպանուին զոյից եւ կենաց զոհեր: **Հայաստանի մէջն է բուն հայկական խնդիրն, եւ մեր Պերլինի մէջ կորսնենք զայն...»** (30):

Բեռլինի սառն ջուրը սթափեցրել էր շատերին: Քաղաքական տրտունջները դրական արդյունք չտվին, և պատճառ եղան մեծ չարիքի, գաղթականության զորեղացման: «Ողբալ, անիծել եւ գաղթելու նպատակ ունենալ, այս է զաւառացւոց վիճակը»,- շարունակում է նույն Սրվանձտյանցը: Երբ սոսլ-քնակցական կուսակցությունը աշխատում էին խաղաղացնելու ժողովրդյան հուզված ալիքները, «օտար պետության մարդիկներէն կային, որ կը մնային կամ կը շրջէին միշտ յուզելու եւ խռովելու հայ ժողովուրդը ընդդէմ հայութեան»: Դժգոհ ցույց տալու «Հայն ընդդէմ տիրող կառավարութեան, բողոքել եւ կռուել տալ հայն ընդդէմ թիւրք եւ քուրդ բնակչութեան, եւ դժբախտաբար մեր զանազան դասերէն ալ շատերը անգիտօրէն կը զանուէին՝ ջանքեր եւ ցոյցեր նիրելու այդ օտարին շահ առիթող եւ մեզ կործանումն բերող մեքենայութեանց. անշուշտ խաբուած էին ոչինչ բաներով կամ սուտ խոստմամբ…

Ո՛չ, եղբարք,- հառաչում է հուսահատ հայրենասերը,- այս չէր մեր ընթիքը, այդ ճանապարհը դէպի բաղձալին չէր հաներ: Այդ կեղծ բարեբարները ո՛չ հայուն հօրեղբայրն էին եւ ո՛չ հայուն քեռին, այլ աւելի ճարպիկ որսորդներ եւ մսագործներ, որ զմեզ էրէ վայրի, պատրաստ ոչխարներու եւ պարարակ կովերու տեղ դնելով, մեր փարախէն կուզէին խրտչնել, հեռացնել ու իրենց ձեռքը ձգելով ի սպանդ մատուցանել» (31) …

Ուշադիր լինինք ակնածորեն ասված այս խոսքերին: Մարգարեական շունչ կա դրանց մեջ: Սրվանձտյանցը շարել է այս գոհարները այն ժամանակ, երբ տակավին հեղափոխական շարժում չկար: Հայրենասիրությունը ճշմարիտ հայրենասիրության հատուկ զգայարաններ ունի և զգում, տեսնում է առաջիմաց ունակությամբ այն խմորումները, որ սպառնում են փոքրիկներ ծնել: Գ. Սրվանձտյանցի խրատները սուր փշերի նման ծակում են այսօր մեր մերկացած հոգիները…:

Արդ այս երկու պանծալի օրինակները ցույց են տալիս, որ մեր առաջ բաց էր մի ուրիշ ուղի, ուրիշ գործելակերպ, որ աչքաթող արինք. այն՝ մեր հայրենի ավանդական ուղին էր, մեր անցյալից բխած և համապատասխան ներկա իրերի դրության: Հիշածս երկու անձերը, թողնենք ուրիշներին, նրանց գաղափարակից, առաջարկում էին մեզ նախնի ճրագը, որպես ուղեցույց, այն ճրագը, որ պահել է և կպահեր, մեզ հայրենի անդաստանի ակոսների մեջ, կառաջնորդեր քաշել կյանքի ծանր լուծը, նման այն երկայնամիտ եզին, որ անուրը վզին ձգում է խոփը անմռունչ, պահելով իր ներսը կանաչ մարգագետնի կարոտը, ձգում է, որոճալով, ո՜վ գիտե, որպիսի խորհրդավոր մտորմունքներ, իրեն միայն հայտնի, և պատրաստ ժայթքելու իր ներքին թափից և դիպող ժամին…

Այսօր մենք մենակ ենք մեր դիակների հետ: Սգավոր ենք, Մեծ եղեռնը մեր պարանոցին, մեղապարտ ենք բոլորս, ամեն ոք իր չափով, որը՝ գործով, որը՝ անգործությամբ: Այս գիտակցության վրա պիտի հիմնենք նոր գործունեությունը:

Այս հավետ սև օրին մոռանալու չենք, որ կյանքը դրած և սերտած օրենքներ չունի, այլ քմահաճորեն թավալում է անակնկալ ալիքներ, երբ, ուր և որպես ուզում է: Վա՜յ մեզ, եթե նորեն համառության մեխը զարկած մեր ճակատին, կուզենք սանձել գոռ ալիքներն այս կամ այն վարդապետության, որևէ տեսության, երազանակով:

Պետք չկա հրաժարվելու բարձրափայլ փարոսից, բայց թող նա նստի մեր խորաթափանց աչերի մեջ և ոչ անհայտ հորիզոններում: Գրկենք մանավանդ կյանքի աղոտ ճրագը, զույգ բազուկներով, և ընթանանք համրաքայլ, առանց բռնազբոսելու մեր ուղին, լուռ, առանց աղմկարար փող ու թմբուկի: Աղաղակը անախորժ է սգավորին: Լռե՛նք. կա վսեմ լռություն, որի աղաղակները լսելի են ամենուրեք, և կան աղաղակներ, որ կորչում են ընդհանուր լռության մեջ:

## ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՐՑԸ ԱՄԵՐԻԿՅԱՆ ՍԵՆԱՏՈՒՄ

Լոզանի պայմանագրից հետո Հայկական հարցը մոռացվել է: Ոչ միայն պաշտոնական շրջանները, այլև մամուլն էլ դադարել է նրա մասին խոսելուց: Կարծում ենք, որ լռությունը տվյալ դեպքում առանձնահատուկ իմաստություն է: Հավասարապես լռություն է պահպանում նաև Ազգերի Լիգան, այն հաստատությունը, որը կոչված է իրագործելու բարձրագույն քաղաքական արդարադատությունը:

Միակ երկիրը, որտեղ արդարության զգացումն իրեն զգացնել է տալիս՝ Ամերիկան է: Անցյալ տարի (1) ամերիկյան մամուլը աղմուկ բարձրացրեց կառավարության կողմից թուրքական դիվանագիտական ներկայացուցչի ընդունելության կապակցությամբ: Հասարակական կարծիքը վրդովված էր, որ կառավարությունը հնարավոր էր համարել, թեև կիսապաշտոնական, թույլատրել երկիր մուտք գործելու Թուրքիայի ներկայացուցչին, այն բանից հետո, երբ սենատը մերժել էր Լոզանի պայմանագիրը (2) և անհրաժեշտ էր գտել անջատ համաձայնություն կնքել Թուրքիայի հետ:

Այս տարի, մայիս ամսին, Հայկական հարցի վերաբերյալ սենատում մեծ ճառով հանդես եկավ սենատոր Քինգը: Ընթացիկ տարվա հուլիսի 28-ին լրացավ Լոզանի պայմանագրի ժամկետը: Քինգը ենթադրում էր, որ այն վերանայելիս հնարավոր կլինի առաջ քաշել Հայկական հարցը՝ Լոզանում թույլ տրված սխալի ուղղման նպատակով: Եվրոպական մամուլը, ինչպես և հարկ էր սպասել, սենատորի ելույթը լռությամբ շրջանցեց: Մինչդեռ նրա ճառը նշանակալի հետաքրքրություն է ներկայացնում:

Քինգը Հայկական հարցը դիտարկում է ո՛չ նրա միջազգային ծավալով. նա հարցին մոտենում է բացառապես նրա նկատմամբ Ամերիկայի վերաբերմունքի տեսանկյունից (3): Միացյալ Նահանգների կառավարությունը, հետևողի կտրուկ արտահայտությամբ, Հայկական հարցում իրեն պահել ոչ միայն շնականորեն, այլև դավաճանաբար: Այսքան ծանր մեղադրանքը Քինգը լուսաբանում է մի շարք փաստերով:

1919 թ. փետրվարին, Քեմալի ելույթից շատ առաջ, դաշնակիցները պատրաստ էին լուծել Հայկական հարցը բարյացակամորեն, երբ հանկարծ Միացյալ Նահանգների կառավարությունը հայտարարեց հարցի լուծմանը մասնակցություն ունենալու իր ցանկության մասին և խոստացավ վերջնա-

կան պատասխանը (4) ներկայացնել նույն թվականի օգոստոսին կամ սեպտեմբերին:

Ելնելով Նահանգների նկատմամբ տածած հարգանքից, դաշնակիցները, հասկանալիորեն, հետաձգեցին հարցի քննարկումը մինչև խոստացած պատասխանի ստացումը (5):

Այդ միջոցին Ամերիկայում բորբոքվեցին կրքերը Վերսալի պայմանագրի շուրջ: Կառավարությունը չկարողացավ խոստացած ժամկետին տալ պատասխան: Այդ պարագան մխուր անդրադարձ ունեցավ Հայաստանի երիտասարդ Հանրապետության ճակատագրի վրա, որն այդ ժամանակ գտնվում էր բոլշևիկների և թուրքերի սպառնալիքի տակ: Սկսվեց Քեմալի ազգայնական շարժումը: Դաշնակիցները որոշեցին Հայաստան ուղարկել զորքեր, զենք և զինամթերք: Այդ մասին նրանք հաղորդեցին Միացյալ Նահանգների պետական քարտուղարին (6) 1919 թ. սեպտեմբերի 5-ի նամակով: Սենատորներ Լոջը և Ուիլյամսը շտապեցին նույն ամսի 8-ին առաջարկ մտցնել սենատ այն մասին, որպեսզի Միացյալ Նահանգներն իր վրա վերցնի այն օգնությունը հայերին, որը ծրագրել էին դաշնակիցները: Գործը հանձնվեց սենատական հանձնաժողովին, որի ղեկավարն այն ժամանակ Հարդինգն էր՝ երկրի ապագա նախագահը (7): Հանձնաժողովը գումարվեց հոկտեմբեր ամսին և խոստացավ իր եզրակացությունը տալ նոյեմբերին: Բայց զեկույցը սենատ ընկավ միայն 1920 թ. մայիսի 14-ին (8): Ուշ էր արդեն: Հայկական Հանրապետությունն ընկավ Խորհրդային Ռուսաստանի և Քեմալական Թուրքիայի կրկնակի հարվածների տակ (9):

Առավել ևս ամոթալի է, ինչպես պնդում է Քինգը, ամերիկյան պատվիրակության վարքագիծը Լոզանի 1923 թ. խորհրդաժողովում: Դաշնակից տերությունները, նախապես համաձայնության գալով իրար հետ, խորհրդաժողովի քննարկմանը հանձնեցին թուրքական Հայաստանի հողերում, ռուսական Հայաստանից առանձին, որն այդ ժամանակ ընկել էր խորհուրդների իշխանության տակ, ինքնուրույն Հայաստան ստեղծելու մասին հարցը: Որքան էլ տարօրինակ է, բայց փաստ է, որ ամերիկյան պատվիրակությունը չպնդեց այդ նախագծի վրա: Պատվիրակության վարքագծի դրդապատճառները մինչև այժմ չեն պարզվել: Տհաճ լուրեր են պտտվում այն մասին, որ ամերիկյան պատվիրակությունը գաղտնի հարաբերությունների մեջ էր եղել Թուրքիայի ներկայացուցիչների հետ, ըստ որում թուրքերը խոստացել էին շահագրգիռ ամերիկյան խմբերին նավթահանքերի մենաշնորհային իրավունքներ տրամադրել, պայմանով, որ պատվիրակությունը հրաժարվի Հայաստանը պաշտպանելուց:

Համենայն դեպս, ստուգապես հայտնի է, որ ամերիկյան պատվիրակությունը հակառակում էր Մոսուլի նավթի նկատմամբ անգլիական հավակնություններին և բաժին պահանջեց ամերիկյան նավթային տրեստների համար: Հայտնի է նաև, որ թուրքերը պաշտպանում էին ամերիկյան պատվիրակության պահանջները:

Խորհրդաժողովին մասնակցած անձանց հավաստիացումները կասկած չէին թողնում այն մասին, որ Հայկական հարցն առևտուրի առարկա էր դարձել, և որ ամերիկյան նավթային տրեստները, շնորհիվ իրենց պատվիրակության ջանքերի, անգլիական ընկերությունից ստացան Մոսուլի նավթի մի մասը: Այդ պարագայի վրա սենատի ուշադրությունն էր հրավիրել նույն Քինգը 1928 թ. մարտի 4-ի նամակով, կցելով հանգամանալից զեկուցագիր, որի պատճենները ուղարկվել էին սենատի բոլոր անդամներին:

Հայկական հարցում անորոշ քաղաքականությունը տխուր դեր խաղաց հետագայում ևս: 1927 թ. նոյեմբերի 19-ին, հենց այն օրը, երբ Քեմալի ներկայացուցիչը թողնում էր Անկարան՝ ուղևորվելու Ամերիկա, պետական դեպարտամենտը հարկ համարեց հանդես գալու տարօրինակ հայտարարությամբ այն մասին, որ Հայաստանի Հանրապետությունը բաժանված է Թուրքիայի և Ռուսաստանի միջև, և որ այն այլևս գոյություն չունի: Այստեղ ևս դեր խաղաց նավթը: Ըստ Ստանդարտ Օյլի տրամադրության ներքո եղած տվյալների, Հայաստանը, հանգուցյալ պրեզիդենտ Վիլսոնի գծած սահմաններում, ունի նավթահանքեր, որոնք չեն զիջում Մոսուլի շրջանին: Ստանդարտ Օյլը և Գոլֆ Ռայֆայնինգը ժամանակին հայտ էին ներկայացրել այդ նավթահանքերի համար: Նրանց թվում էր, որ դրանց մշակումն ավելի դյուրին ու հասարակ է ստանալ Թուրքիայից, քան Հայաստանից: Դրա համար էլ նրանք ստիպել էին պետական քարտուղարին դիմելու հիշյալ քայլին:

Այնուհետև Քինգը թվարկում է հայերի ռազմական վաստակը և ընդգծում է այն պարագան, որ Կովկասյան ռազմաճակատի քայքայումից հետո հայկական երկրապահ զորամասը համարձակություն և արիություն ունեցավ 8 ամիս շարունակ դիմակայել թուրքական զորքերին, և այդ այն ժամանակ, երբ Արևելքում դիմակայության ամեն մի օրը այնքան թանկ էր արևմտյան ռազմաճակատում:

Փոխանակ հայերին տալու այն, ինչ նրանք վաստակել էին, դաշնակիցները դավաճանեցին նրանց, իսկ ամերիկյան պատվիրակությունը Լոզանում այնպես պահեց իրեն, ինչը վայել չէ մեծ հանրապետության արժանապատվությանը: 1924 թ. ապրիլի 3-ին Քինգն առաջարկեց սենատին հետաքննություն սկսել այդ գործով: Բայց դրան խանգարեց պետական

քարտուղարը (10): 1928 թ. ապրիլի 16-ին Քինգը կրկնեց իր առաջարկը: Սենատն ընդունեց այն և հանձնեց արտաքին գործերի հանձնաժողովի եզրակացությանը: Մեկ ամիս անց Կոստանդնուպոլսում նախկին դեսպան Ջեյմս Ջերարդը դիմեց հանրապետության նախագահին (11)՝ հույս ունենալով, որ սենատոր Քինգի առաջարկը խոչընդոտների չի հանդիպի պետական քարտուղարի կողմից:

Որպես եզրափակում իր ճառի, Քինգը ցավ է հայտնում, որ կառավարության քաղաքականությունը Հայկական հարցում հակառակ է ընթացել դաշնակիցների խոստումներին և չի համապատասխանում միջազգային պարտավորության ըմբռնումներին:

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԵՎ ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՂԹՕՋԱԽՆԵՐԸ

Հայաստանը պատմական առումով բավական ընդարձակ երկիր է, փռված այն սարահարթի վրա, որ բարձրանում է Սև ու Կասպից ծովերի և Միջագետքի տափաստանների միջև, Եփրատ գետի երկու ճյուղերի և Արաքսի ջրաբաշխներում: Չիգ դարերի ընթացքին երկիրը կարողացել էր պահել մերձավոր հարազատությամբ իր ազգային նկարագիրը՝ մինչև վերջին մեծ պատերազմը: Հայերն իրենց համեստ նպաստը բերին դաշնակից պետությունների դատին և հույս ունեին, որ իրենց երկիրը վերջապես պիտի վերակենդանանար, հաղթական պետությունների խոստումների համաձայն, ինքնուրույն քաղաքական կյանքով ապրելու համար: Սակայն հանգամանքներն այնպես բերին, որ հայ հույսերն ի դերև անցան, և՛ հայության, և՛ հայ երկրին հասցրած մահացու վերքերը մնացին անբուժելի:

Մեծ պատերազմի ժամանակ Թուրքական Հայաստանի հայ ազգաբնակչությունը բնաջինջ եղավ բռնի տարագրության մութ ճանապարհների վրա: Ռուսական կայսրության անկումով թուրք զորքերը խուժեցին Ռուսական Հայաստան և մեծ խժդժություններ կատարեցին նաև այնտեղ, և թեև Թուրքիան չկարողացավ անել այն, ինչ իր հողում, բայց ազդեցություն գործեց կովկասյան ազգամիջյան քաղաքականության վրա ի վնաս հայերի: Այս պարագաների շնորհիվ Հայաստանի անունը մնաց այսօր կառչած նախկին մեծ տարածության մի աննշան մասի վրա, այն, որ ներկայումս կոչվում է Խորհրդային Հայաստան և մտնում է Ռուսական Խորհրդային Միության կազմի մեջ:

## 1. ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ

Շատերը կարծում են, որ Խորհրդային կոչված Հայաստանը նույնն է, ինչ նախկին, այսինքն՝ նախապատերազմյան Ռուսահայաստանը: Մինչդեռ իրականում Խորհրդային Հայաստանը նախկին Ռուսահայաստանի հազիվ կեսն է կազմում միայն: Մյուս կեսը գրավել են իր հարևանները՝ Թուրքիան և սրա օժանդակությամբ՝ Ադրբեջանը և Վրաստանը:

Պետք է գիտենալ, որ երբ 1917 թ. բոլշևիկները իշխանության գլուխ անցան անդրկովկասյան ժողովուրդները՝ հայերը, վրացիները և ադրբեջանցիք, չուզենալով հպատակվել նրանց, մի քանի ամիս չանցած՝ 1918 թ. ապրիլ 22-ին հայտարարեցին, որ Անդրկովկասն անջատվում է Ռուսաս-

տանից և կազմում անկախ պետություն: Ճիշտ այդ ժամանակ, երբ ռուսական բանակը թողնելով ճակատը, քաշվում էր դեպի Ռուսաստան՝ մասնակցելու հողերի բաժանմանը, տաճիկ զորքերը սպառնում էին անցնել հարձակման: Վրացիք և ադրբեջանցիք, տաճիկների ճնշմամբ, զուցեև չկամենալով պատերազմել տաճիկների դեմ, հայտարարեցին, որ իրենք դուրս են գալիս Անդրկովկասյան դաշնակցությունից և կազմում ինքնուրույն Վրաստան և ինքնուրույն Ադրբեջան: Սրանով հայերը մնացին մեն-մենակ տաճիկ զորքերի դեմ: Երկու հարևանները՝ վրացիք և ադրբեջանցիք ոչ միայն չօգնեցին հայերին, այլև օգտվեցին նրանց ծանր դրությունից և տիրացան սահմանակից հողերին, որոնք աշխարհագրապես և ազգագրապես պատկանում էին Հայաստանի բարձրավանդակին: Վրացիք գրավեցին հայաբնակ Ախալքալաքի գավառը և Բորչալուի հայկական մասը, ադրբեջանցիք՝ Լեռնային Ղարաբաղը և Գանձակի հայաբնակ մասը: Տաճիկ զորքերը հանդիպեցին կատաղի դիմադրության: Երկու մեծ ճակատամարտեր (Սարդարապատ և Ղարաքիլիսա) տաճիկների առաջխաղացումը կասեցրին: Նրանք ստիպված բավականացան կորզելով այն հողերը, որ Բրեստ-Լիտովսկի դաշնագրով Ռուսիո նոր տերերը՝ բոլշևիկները, զիջել էին Թուրքիային՝ Կարսի ամբողջ շրջանը և Երևանի նահանգից էլ՝ Երասխի ափերը:

Դաշնակից պետությունների հաղթությամբ տաճիկները ստիպված եղան պարպել բռնագրավված հողերը, իսկ Հայաստանի և Ադրբեջանի կողմից սահմանները մնացին անորոշ և վիճելի: Շուտով [Թուրքիայում] սկսվեց միլլի ազգայնական շարժումը (1), և տաճիկները նորեն հարձակվեցին Հայաստանի վրա: Նրանք օգտվելով դաշնակից պետությունների անտարբերությունից՝ բռնի տիրացան առաջներում գրավված հողերին, այսինքն՝ Կարսի շրջանը և Երևանի նահանգի հողային շերտերը Երասխի երկարությամբ: Միևնույն ժամանակ արշավեցին և բոլշևիկները Բաքվից ու տիրացան Հայաստանին, խոստանալով վերականգնել Հայաստանի սահմանները, բայց չկատարեցին իրենց խոստումը և գրավված հողամասերը թողեցին տաճիկներին, ինչպես և Վրաստանի և Ադրբեջանի հետ վիճելի սահմանային խնդիրները չվերաքննեցին:

Անդրկովկասը հաշվվում է 195 հազար քառ. կմ: Նրանից 67 հազար քառ. կմ կազմում է Հայաստանը՝ իր բնական սահմաններով առնված. ուրեմն մոտավորապես 1/3 մասը, բայց շնորհիվ բացատրածս պարագաների, Հայաստանը ներկայումս տեր է միայն 28 հազար քառ. կմ, պակաս, քան կեսը իրեն պատկանելի երկրամասերի (2): Ըստ 1925 թ. բոլշևիկյան մարդահամարի, այս տարածության վրա ապրում է մոտ 867 հազար մարդ, որից 748 հազարը՝ հայ: Վրաստանին անցած հայկական հողամասերի վրա

ապրում են 110 հազար, Ադրբեջանին անցածում՝ 200 հազար: Ուրեմն, հայ հողի վրա կենտրոնացված են 1 միլիոնից ավելի հայ: Վրաստանի մյուս մասերում հաշվվում են մոտ 200 հազար հայ, իսկ Ադրբեջանում՝ 100 հազար: Այսպիսով՝ Անդրկովկասում ապրում է մոտ 1.300.000 հայ:

Այս պատերազմից առաջ հայերի թիվն Անդրկովկասում 1.786.000 էր, որով հայերը կորցրել են, եթե միայն ճշմարիտ է բոլշևիկյան մարդահամարը, մոտ 400 հազար մարդ: Պետք է ասել, որ մյուս ազգերը ևս նվազել են թվով, ընդհանուր թիվը, որ պատերազմի նախօրեին հասնում էր 7 միլիոնի, այժմ հաշվվում է 5,5 միլիոն: Ուրեմն, 1,5 միլիոն կորած է: Վրացիները կորցրել են միայն 80 հազար մարդ, առաջ նույնչափ էին, որքան հայերը՝ 1.784.000, այժմ հաշվվում են 1.703.000: Մեծ է նաև ադրբեջանցիների կորուստը՝ մոտ 1 միլիոն, եթե վստահելի են բոլշևիկյան թվերը. թուրքերը պատերազմից առաջ 2.300.000 էին, այժմ 1.300.000:

Այսպիսով, հայերին բաժին ընկավ Անդրկովկասում մի անճշան հողամաս՝ մոտ 28 հազար քառ. կմ տարածություն, և պակասեց 900 հազար ազգաբնակչություն: Հայերը զրկվեցին դարավոր աշխատանքի արդյունքներից: Մի ամբողջ դար Կովկասը խաղաղ կյանք վարեց ռուսական հովանու ներքո և մեծ առաջադիմություն ապրեց թե՛ մտավոր, թե՛ նյութական տեսակետից: Երկրի կարողությունները դիզված էին երկու խոշոր կենտրոններում՝ Թիֆլիս և Բաքու: Մեկը փոխարքայության մայրաքաղաքն էր, ուր կենտրոնացված էին վարչական, կրթական, դատական և զինվորական հաստատությունները, մյուսը՝ նավթի արդյունաբերության քաղաք էր համաշխարհային չափով: Երկուսում էլ հայերը թե՛ թվով, թե՛ նշանակությամբ առաջին տեղն էին գրավում: Երբ կայսրությունը քայքայվեց և Անդրկովկասը զատվեց ու հետո բաժանվեց երեք ազգային միությունների, Թիֆլիսն իր վիթխարի հարստությամբ ընկավ վրացիների ձեռքը, որպես իրենց պատմական մայրաքաղաք: Բաքուն անցավ ադրբեջանցիներին: Հայերը ստիպված տեղի տվին և քաշվեցին Երևան, թողնելով այն բոլոր մտավոր և նյութական գանձերը, որ դիզել էր հայ բուրժուազիան: Երկու հիշյալ քաղաքները նշանավոր էին ոչ միայն կովկասյան, այլև համառուսական չափանիշներով և այդ զարգացմանը հասել էին շնորհիվ հայ բուրժուազիայի տոկուն և աշխատասեր ոգուն և ձեռներեցության:

Արդ, այս բոլորը թողնելով, հայերը քաշվեցին Երևան՝ մի գավառական անճշան քաղաք, հազիվ 30 հազար բնակչությամբ: Մինչդեռ Թիֆլիսի բնակչությունը պատերազմի օրերին հասել էր մոտ 300 հազարի, որից 200 հազարը հայեր էին: Երևանը միակ քաղաքն էր մնացել, մյուս հայ քաղաքները ավերել էին տաճիկները՝ Կարսը ավերել և գրավել, Ալեքսանդրապոլը

կողոպտել ու քարուքանդ արել և Շուշին կործանել: Հայ մանուկ կառավարությունը պետք է աշխատեր նախ մայրաքաղաք ստեղծել՝ փոքրիշատե հարմարավետ շենքեր կառուցանելու պետության տարրական կարիքների համար կամ եղածը հարմարեցնել կրթական, դատական, վարչական հաստատության՝ շենքեր, միջնակարգ դպրոցներ, համալսարան, թատրոն, գրադարաններ և այլն:

Հայաստանի նոր խորհրդային կառավարությունը կլանված է նման շինարարական աշխատությամբ: Տիրող կարգերի հետևանքով, անհատական գործունեության ասպարեզ չկա, որով և երկրի բարգավաճումը դժվարանում է կամ շատ դանդաղ է քայլում: Երևանի նահանգը պատերազմական բեմ էր եղել, և տաճիկների արշավանքի շնորհիվ երկրի տնտեսությունը բոլորովին խախտվել է ու ընկել: Անհագին աշխատանք է հարկավոր վերականգնելու ավերված և կողոպտված երկիրը:

Հայաստանում, ինչպես և Խորհրդային Ռուսիայի մյուս երկրներում, տիրում են նույն քաղաքական և հասարակական կարգերը, ինչ որ Ռուսիայում: Սակայն մարտական կոմունիզմը (3), մտնելով Հայաստան, պետք է հիասթափվեր՝ տեսնելով, որ կոմունիստ մշակների համար ոչ մի հունձ չկա: Ուրիշ խոսքով, Հայաստանում բուրժուական դաս չկար և ընդհանրապես հարստություն չկար. ո՛չ գործարաններ, ո՛չ բանկեր, ո՛չ այն հոյակապ պալատանման տները, որ կային Թիֆլիս ու Բաքու, և որոնց շնորհիվ հայ բուրժուազիան դեռ կայսրության ժամանակ նախանձ էր հարուցանում զանազան կառավարչական և հասարակական շրջանակներում: Կողոպտելու և կամ համայնացնելու գույք չկար: Հազիվ մի քանի գործարաններ, որոնցից ամենանշանավորը կոնյակի և գինիների գործարանն էր (4): Հայաստանում բացակայում էր նաև բանվոր դասակարգը, որի անունից կարելի լիներ խոսել և գործել, ինչպես ընդունված է կոմունիստ բոլշևիկների մոտ:

Այս է պատճառը, որ բոլշևիզմի առաջին շրջանում, երբ Թիֆլիսի և Բաքվի բուրժուազիան սոսկալի հալածանքների ու կողոպուտի էր ենթարկված տեղական կոմունիստ կառավարողների կողմից, Հայաստանում կյանքը համեմատաբար հանգիստ էր: Պատճառը հայ կոմունիստների մեղմությունը չէր, այլ այն, որ, ինչպես ասացինք, կողոպտելի դասակարգ չկար, ո՛չ գնդակահարվելու չափ հարուստ մարդ և ո՛չ աքսորվելու արժանի անձ: Հայ մտավորականները ևս համեմատաբար հանգիստ վիճակի մեջ էին, որովհետև բուրժուական խոշոր դեմքերը Թիֆլիս և Բաքու էին: Հայաստանում ապաստանել էր առավելապես միջին ու ստորին դասի մտավորականությունը՝ ուսուցիչներ, գրողներ, գիտնականներ, որոնք սհարկու չէին ո՛չ իրենց աշխարհայացքով և ո՛չ նյութական դրությամբ:

Բոլշևիզմի երկրորդ շրջանը (5) ահավոր եղավ և շարունակում է լինել նաև Հայաստանի համար: Բուրժուազիային տապալելուց հետո բոլշևիկ կառավարությունը հայտնի է, որ սկսեց հետապնդել գյուղացիությանը՝ կոլեկտիվ տնտեսություն ստեղծելու ձգտումներով: Հնգամյա կոչված ծրագրի մասին է խոսքս: Բռնի միջոցներով ստիպել գյուղական սեփականատերերին հրաժարվել իրենց գույքից՝ հանուն համայնական տնտեսության, հակառակ է մարդկային բնավորության: Ուստի և մեծամեծ աղետներ հասցվեց ամենուրեք գյուղացիությանը: Հայաստանը, որպես հողագործ երկիր, նույն փորձանքին ենթարկվեց, և նրա տնտեսությունը հիմնովին քայքայվեց: Պետք է գիտենալ, որ Հայաստանի հողային պայմանները այլ են, քան Ռուսիայում: Գուցեև հնարավոր է լայնարձակ տնտեսություններ ստեղծել ռուսական միանման տափաստաններում՝ բաժանելով դրանք մինչև իսկ հավասար հողաբաժինների, հավաքաբար կամ համայնավար մշակելու համար: Այդ անհնարին է Հայաստանում: Այն բարձրաբերձ լեռնաշղթաներով և խոր-խոր ձորերով կտրտված երկիր է, ուր ամեն մի անկյուն իր հողային առանձնահատկությունն ունի և կլիմայական տարբերությունը: Երկրի մոտ 30 տոկոսը պիտանի չէ որևէ մշակույթի համար՝ բաղկացած լինելով մերկ լեռներից, սեպաձև ժայռերից, լճերից, և շոռերից (= աղի հողեր), 10 տոկոսը անտառներ և մացառներ են, 40 տոկոսը՝ արոտատեղիներ են ալպյան բարձրության: Հազիվ 20 տոկոսը պիտանի է մշակույթի: Կլիմայական տեսակետից Հայաստանը ներկայացնում է երեք շրջան կամ շերտ. առաջինն ունի 500-1000 մ բարձրություն, երկրորդը՝ 1000-2000 և երրորդը՝ 2000-4000 (Արարատը 5,100 մ է) (6): Առաջին շերտը բռնում է Արաքսի հովիտը. այստեղ մշակվում են բամբակ, բրինձ, խաղողի այգի և ուրիշ պտուղներ, բանջարանոցներ: Երկրորդ շերտը հատկացված է հացահատիկներին և երրորդը՝ անասնապահության:

Հայաստանի տարածությունը ներկա սահմաններում 28.000 քառակուսի կիլոմետր է, 20 տոկոսն անում է 5000 քառ. կմ կամ 560.000 հեկտար: Սրա կեսը հատկացված է ցորենի և տալիս է տարին ոչ ավելի, քան 230.000 տոննա հատիկ: 50.000 հեկտար տրվում է բամբակի մշակույթի և տալիս է 28.000 տոննա բամբակ, խաղողի այգիները տալիս են մոտ 53.000 տոննա. պատերազմից առաջ Երևանի նահանգը (ուրեմն՝ Նախիջևանի և Սուրմալուի գավառները հաշված) տալիս էր 90.000 տոննա: Արդի կառավարությունը ծրագրել է մշակույթը հասցնել՝ ցորեն մինչև 340.000 տոննա, բամբակը՝ 28.000, խաղողը՝ 76.000: Ծխախոտի մշակույթը նոր է սկսված, շնորհիվ քուրքահայ գաղթականների, այն տվել է 342 տ ծխախոտ, ծրագրված է

հասցնել մինչև 1625 տ: Բրնձի մշակումը ներկայումս չի խրախուսվում, նախքան պատերազմը տալիս էր մոտ 1000 տ:

Երկրի բերքի ընդհանուր արժեքը, հաշվելով նաև պանրագործությունը, համարում են 71 մլն ռուբլի, ծրագրված է հասցնել 105 միլիոնի: Չմոռանանք հիշել, որ Հայաստանը հարուստ է հանքերով, որոնց մեջ վաղուց հայտնի են և մշակվում են Ալավերդու և Կապանի պղնձի հանքերը, որ արտադրում են տարեկան 5000-6000 տոննա զտված պղինձ: Սակայն Հայաստանի պղինձը, ինչպես մի քանի ուրիշ արտադրություն, գտնվում է կենտրոնական իշխանության տրամադրության տակ, այսինքն՝ Համախորհրդային գանձարանն է մտնում, որի փոխարեն Մոսկվան լրացնում է Հայաստանի տարեկան բյուջեի մասը: Հայաստանի բյուջեն հաշվվում է ընդամենը 16 մլն ռուբլի:

Այսպես, Հայաստանի տնտեսական դրությունը նախանձելի չէ: Ռուսական կայսրության ժամանակ Կովկասի արդյունաբերական երակը զարկում էր Թիֆլիսում և Բաքվում: Երևանի նահանգը, այժմյան Հայաստանը, հետամնաց անկյուններից էր, ուր չէր խրախուսվում և արդարանում որևէ արդյունաբերական ձեռնարկ: Առանց տեղական արդյունաբերության, առանց գործարանային կյանքի, երկիրն անկարող էր լոկ իր բերքերով բավարարել բնակչության պետքերը: Հացն անգամ բավական չէր, և պակասը ստացվում էր Հյուսիսային Կովկասից: Ժողովուրդը հարկադրված դուրս էր գալիս աշխատանք որոնելու մեծ կենտրոններում՝ մասնավորապես Բաքվում և անդրկասպյան երկրներում: Ներկայումս այդ հնարավորությունը ևս չունի ժողովուրդը և տառապում է աղքատության մեջ, մանավանդ որ երկրի նոր տերերը կտրել են անհատական ձեռներեցության թևերը:

Հայ կոմունիստական կառավարությունն աշխատում է բարձրացնել տնտեսական կյանքը, բայց ցայժմ զգալի արդյունք չեն տվել նրա ջանքերը: Պատճառը, անշուշտ, ընդհանուր կացության մեջ պետք է որոնել: Բոլշևիկ աշխարհայեցողությունը և պետական հասկացությունը, որքան նպաստավոր, նույնքան և առավել մեծ չափով արգելիչ են իսկական շինարարության: Բոլշևիկ ղեկավարները ինչպես ամեն տեղ, այնպես էլ Հայաստանում, առանձին ուշադրություն են դարձնում ժողովրդական կրթության վրա, արթնացնելով նրա մեջ ինքնագիտակցության զգացումը գրագիտության և բանավոր քարոզչության միջոցներով: Այս ջանքերը, անշուշտ, արժանի կլինեին ամեն գովասանքի, եթե չկրեին ներկուսակցական, սոցիալիստական ոգի: Հայաստանը ևս ողողված է մարքսիստական գրականությամբ, անթիվ և անհամար բրոշյուրներով և հաստափոր հատորներով, որ

սակայն մնում են մասնավոր շրջանների հետաքրքրության նյութ և չեն յուրացվում ժողովրդական լայն խավերի մեջ:

Ազգային մշակույթի հաստատությունները ևս պակաս չեն Հայաստանում: Երևանում կա այսօր համալսարան, անասնաբուժական ինստիտուտ, Արվեստի և գիտության ինստիտուտ, կոնսերվատորիա, թատրոն և բազմաթիվ դպրոցներ: Համալսարանն ունի հետևյալ յոթ ֆակուլտետները՝ տնտեսական, տեխնիկական, բժշկական, մանկավարժական (պատմաբանասիրական), բնախոսական, բնագիտական-մաթեմատիկական, հասարակական գիտությունների (7): Ուսանողների թիվն առաջին տարիներին հաշվվում էր մոտ 900, այժմ ավելի քիչ է: Ուշադրության արժանի է թատրոնի նոր շենքը (8):

Կրթական ասպարեզում շատ ավելի առաջադիմած կլիներ Հայաստանը, եթե բոլշևիկյան նեղ ու հատվածական հայացքը չտիրեր կրթության և գիտության վերաբերյալ: Շնորհիվ ազգայնության ոգու, որ զարթնել է Ռուսաստանի բոլոր ծայրերում և խրախուսվում է կենտրոնի կողմից, ցրված հայ մտավորականությունըստիպված եկել-ապաստանել է հայրենիք, և այժմ Երևանն ունի կրթված և մասնագետ ու գիտուն անձերի մի մեծ բանակ: Երկրի մտավոր կյանքը մեծ թռիչք կստանար շնորհիվ այս ամբարված ուժերի, եթե տիրող կարգերը արգելք չլինեին նրանց անկաշկանդ գործունեության: Հուսով եմ, որ այս հակիրճ տեսությամբ որոշ գաղափար կարելի է կազմել ներկա Խորհրդային Հայաստանի դրության մասին, առանց մանրամասնությանց մեջ մտնելու: Կուզեմ անցնել այժմ հայ գաղութներին:

## 2. ՀԱՅ ԳԱՂՈՒԹՆԵՐԸ

Հայ գաղութները բաղկացած են գրեթե բացառապես Թուրքիայի հայերից և հետևանք են ոչ թե երկրի բնական աճման, այլ բուրք բշնամի քաղաքականության: Վերջին հիսուն տարվա ընթացքում հայերը շատ և շատ հալածանքներ կրեցին Թուրքիայում: Եվրոպան հայի տառապանքի մասին անհամեմատ ավելի շատ գիտե, քան նրա որևէ ուրիշ հատկության: Կարիք չկա կանգ առնել այս տխուր իրողության վրա: Վերջին մեծ պատերազմն այնպիսի արհավիրք բերեց հայերին, որ մոռանալ տվեց նախկին բոլոր աղետները:

Թուրքական Հայաստանի վերանորոգումների խնդիրը, որ ծագել էր և միջազգային սեղանի վրա էր 1878 թվից, երկար քաշքշվելով մեծամեծ փորձանքների պատճառ դարձավ և, փոխանակ բարվոքելու, առավել ևս լարեց հայ-թուրքական հարաբերությունները: Վերջապես 1914 թվին եվ-

բոպական պետությունները համաձայնության եկան, և խնդիրը լուծվեց: 1914 թվի փետրվարի 8-ի ծրագրով հայկական վիլայեթները բաժանվեցին երկու հատվածների (սեկտոր), մեկը ընդգրկում է Սվազ, Տրապիզոն, Էրզրում, մյուսը՝ Խարբերդ, Դիարբեքիր, Բիթլիս և Վան: Մինչև անգամ նշանակվեցին վերահսկիչներ նորվեգացի Hoff և հոլանդացի Westenenk: Թվում է, թե սրանով նոր և խաղաղ կյանքի շրջան էր բացվում վերջապես հայերի համար Թուրքիայում՝ համերաշխ գործակցության գետնի վրա: Սակայն թուրք կառավարությունը չուզեց հաշտվել վերանորոգության ծրագրի հետ, վերահաս պատերազմը պատեհ առիթ համարեց հրաժարվել ծրագրից և վերջ տալ Հայկական խնդրին, միանգամ ընդմիշտ բնաջինջ անելով ամբողջ հայ ազգաբնակչությունը: Նպատակ չունենք ծանրանալու անցյալ այս ցավագին էջերի վրա, որ տակավին թարմ են բոլորիս հիշողության մեջ: Վերհիշենք միայն այսքանը, որ ոչ միայն վերանորոգության ենթակա երկու սեկտորներից, այլև Թուրքիայի մյուս նահանգներից, բռնությամբ տեղահան արեցին ամբողջ հայությանը և վարեցին դեպի Միջագետքի անապատները: Միջագետքը շենացնելու համար չէր, այլ տարագրության մութ ճանապարհների վրա ժողովուրդը բնաջնջելու նպատակով: Ահա այս սոսկալի օրերին հայ ազգաբնակչության 2/3 մասը ոչնչացավ, ազատվեց միայն 1/3-ը:

Հայ ազգաբնակչության թիվը Թուրքիայում հաշվվում էր մոտ 1.800.000՝ ըստ հայոց պատրիարքարանի սառույց ավյալների: Թուրք կառավարությունն ավելի քիչ էր ցույց տալիս: Պատերազմի ժամանակ երևաց, որ հայկական նահանգներում, մանավանդ Էրզրում, Բիթլիս և Վան, թուրքերը բնավ այն քանակությունը չունեին, ինչ որ կառավարությունը ձգտել էր ցույց տալ:

Երբ ռուսական բանակը մտավ Թուրքիա և գրավեց մերձակա հողերը մինչև Վան, մոտ 250.000 հայ ապաստանեց Ռուսահայաստանում, ռուս զորքերի նահանջի առեն: Սրանցից գրեթե 50.000-ը զոհ գնացին սովի և խոլերայի համաճարակին: Կ. Պոլսի հայությունը՝ թվով 150.000, ևս փրկվեց, իսկ Միջագետք վտարվածներից հրաշքով կենդանի մնացին մոտ 300.000-ը: Այսպիսով, 1.800.000 հայությունից ողջ մնաց մոտ 650.000-ը:

Պատերազմից հետո խաղաղության դաշինքներ կնքելիս, դաշնակից պետությունները ուշադրության առան Հայոց հարցը: Սևրի դաշնագրությունում առանձին հոդված նվիրեցին Հայկական խնդրին, որով ընդունում էին Ռուսահայաստանը որպես անկախ հանրապետություն, որին պետք էր կցել Թուրքիայից՝ Տրապիզոնի, Էրզրումի, Բիթլիսի և Վանի վիլայեթները ամբողջապես կամ մի մասը, համաձայն Ամերիկայի նախագահ Վիլսոնի

որոշման, որին քաղնված էր միջնորդ դատավորի դերը: Սևրի դաշնագիրը կնքվեց 1920 թվի օգոստոսի 10-ին: Նույն տարին՝ նոյեմբերի 22-ին, Վիլսոնը կատարեց իրեն տրված հանձնարարությունը, հատկացնելով Հայաստանին հիշյալ նահանգների մի մասը՝ 90.000 քառ. կմ տարածություն:

Սակայն այս որոշումը մնաց անիրագործելի: Մի ամիս չանցած Վիլսոնի որոշումից, քեմալական Թուրքիան հարձակվեց Հայաստանի Հանրապետության վրա, որպեսզի ստիպի նրան հրաժարվել Սևրի դաշնագրից: Հեշտությամբ քողեց Սիրիայի և Միջագետքի 1/2 մլն քառ. կմ-ից ավելի տարածություն և ընդդիմացավ հայերին տալ 90.000 քառ. կմ: Մոսկվայի բոլշևիկ կառավարությունը ևս եկավ պաշարելու Հայաստանը: Երևում է, որ գաղտնի համաձայնություն կար երկու հարձակվող պետությանց մեջ: Այդ համաձայնության հետևանքն այն եղավ, որ հայկական հողերը նորեն բաժանվեցին Ռուսիայի և Թուրքիայի միջև. նախկին Ռուսահայաստանը անցավ բոլշևիկ Ռուսիային՝ առանց Կարսի նահանգի, Սուրմալուի և Նախիջևանի գավառների, որոնց տիրացավ Թուրքիան՝ պահելով իրեն և Վիլսոնյան Հայաստանը: Նախիջևանի գավառը, որ Երևանի նահանգի ամենապտղաբեր մասն է, անջատվեց Հայաստանից՝ կազմելով ինքնավար մարմին Ադրբեջանի հոգատարության ներքո: Ռուս-թուրք դաշինքը կնքվեց 1921 թ. հոկտեմբերի 13-ին (9): Մի շաբաթ հետո, այն է՝ հոկտեմբերի 20-ին տեղի ունեցավ Անգորայի համաձայնությունը Ֆրանսիայի և Թուրքիայի միջև, որով ֆրանսիացիք թուրքերին զիջեցին նորագրավ Կիլիկիան: Պատերազմից հետո հայ բնկորները հավաքվել էին Կիլիկիա՝ հուսալով, որ երկիրը կմնա Ֆրանսիայի հոգատարության տակ: Այժմ հարկադրված էին նորեն պանդխտանալ: Մի քանի օրվա մեջ 200 հազարանոց բազմությունը լքեց Կիլիկիան և ցրվեց աշխարհի ամեն կողմը, գլխավորապես հարևան Սիրիա: Մի տարի չանցավ, և Զմյուռնիայի ահավոր աղետը պատահեց, որով հայ բնակչության մեծագույն մասը կոտորվեց, մի աննշան մասը կարողացավ փրկվել՝ փախչելով օտարություն: Թուրքական այս հաջողությունները նվիրագործեցին մեծ պետությունները Լոզանի դաշնագրով, իսկ Հայոց հարցը հանձնեցին Ազգերի դաշնակցության, կարծես թե ի պահեստ ցնոր տնօրինության:

Այսպես մի շարք ձախորդ հանգամանքների բերումով հայերի քաղաքական ազատագրումը մնաց առկախ, և նրանց դրությունը շատ ավելի վատթարացավ պատերազմից հետո, քան առաջ էր: Այսօր հայկական վիլայեթները դատարկ են հայությունից: Ամբողջ Փոքր Ասիայում հաշվվում են միայն 50.000 ցանուցրիվ հայություն՝ առանց հաշվի առնելու մահմեդականացած և գերի ընկած հայերը: Կ. Պոլսում կա 88.000 հայ՝ ըստ թուրքական

վիճակագրության: Ուրեմն, ամբողջ Թուրքիայում՝ 138.000 հայ, այնինչ պատերազմի նախօրյակին հաշվվում էր 1.800.000, առանց համիդյան շրջանի զաղթականության, որ հաշվվում էր 200.000:

Հայ գաղթականությունը բռնեց այն ուղիները, որ հորդել էր նախապատերազմյան շրջանի պանդխտությունը՝ համիդյան օրերից սկսած: Ամենից հյուրընկալը եղավ հարևան Սիրիան, ուր թափվեցավ Կիլիկիայի հայությունից մոտ 150.000, այժմ մնում է մոտ 100.000, մի մասը տեղափոխված լինելով ուրիշ երկրներ: Պաղեստին՝ 4000, Իրաք՝ 80.000, Եգիպտոս՝ 25.000, Բալկաններ՝ 110.000 (Հունաստան՝ 50.000, Բուլղարիա՝ 30.000 և Ռումինիա՝ նույնչափ), Ֆրանսիա՝ 60.000, Անգլիա և Բելգիա՝ 5000, Հյուսիսային Ամերիկա՝ 140.000, Հարավային Ամերիկա՝ 25.000, ընդամենը՝ հաշված Թուրքիայում մնացածները, 690.000 հայ:

Երբ թողնենք Արևմուտքը և առնենք միմիայն Մերձավոր Արևելքը, ուրեմն, Թուրքիա՝ 140.000, Սիրիա՝ 100.000, Իրաք և Պաղեստին՝ 85.000, Բալկաններ՝ 110.000 – կստանանք կլոր թվով 450.000 հայ: Սրա վրա ավելացնելով նաև Պարսկաստանի հայությանը, ոչ պակաս, քան 70.000, կստանանք 520.000 հայ, որի խոշորագույն մասը գաղթական վիճակի մեջ է:

Հին գաղթականները, որոնք հեռացել էին համիդյան շրջանում, արդեն տուն-տեղ են դրել, և շատերը տեղական քաղաքացիներ գրվել: Նրանց նյութական դրությունը, որ ապահով է, առաջացել են կյանքի բոլոր ասպարեզներում՝ բանվորությունից մինչև ազատ փեշակներ (բժշկություն, փաստաբանություն, գրականություն և գիտություն): Մի ստվար մասը վաճառականներ են, երբեմն՝ խոշոր:

Ինչ վերաբերում է նոր գաղթականության, ապա սրա վիճակը հեռու է տակավին բավարար լինելուց: Մի կարևոր մասը բաղկացած է գյուղացիությունից, որ կարող է պարապել միայն երկրագործությամբ, բայց հող չունի: Այսպես, Սիրիայում մոտ 30.000 երկրագործ ժողովուրդ կա, տակավին անհաստատ վիճակի մեջ, ինչպես և 10.000 արհեստավորներ անգործ են: Մնացածները մի կերպ տեղավորվել են:

Մեծ երախտագիտությամբ հիշատակելու է, որ եվրոպական գրեթե բոլոր պետությունների մեջ, ինչպես մանավանդ Հյուսիսային Ամերիկայում, գտնվեցին շատ անհատներ և հասարակական կազմակերպություններ, որոնք իրենց մարդասիրական նպաստը բերեցին հալածական հայ ժողովրդին: Կուզեի կանգ առնել հայկական կազմակերպությունների վրա, որ դեռ շարունակում են իրենց նյութական և բարոյական խնամքը կարոտացյալ հայրենակիցներին: Պետք է ասել, որ նոր գաղթականական հոսանքները ընթացան իրենց նախորդների ուղիներով և կանգ առան այնտեղ, ուր

արդեն հին գաղթականներ կային: Վերջիններս, որ կենտրոնացած էին մանավանդ Հյուսիսային Ամերիկայում և համեմատաբար ավելի բարվոք դրության մեջ էին, չխնայեցին իրենց օգնությունը: Այստեղ կային հայրենակցական միություններ ըստ քաղաքների կամ գավառների [Այնթապի, Սվազի, Մալաթիայի, Բարձր Հայքի (= Էրզրում), Վասպուրականի (= Վան), Եոզգաթի և այլն], որոնց նպատակն էր ինքնօգնությունը: Սրանք մեծ օգնություն հասցրին և շարունակում են հասցնել համապատասխան հատվածներին: Ամերիկյան մի վիճակագրության համաձայն օտարաքնակները ամեն տարի իրենց հայրենիքին են ուղարկում մոտ 250 մլն դոլլար: Այսպես, ամերիկաբնակ իտալացիները, որ թվով 4 մլն են, ուղարկում են մոտ 46 մլն դոլլար, ուրեմն մարդագլուխ՝ 11: Հույները, որ 1/2 մլն են, փոխադրել են 26 մլն դոլլար, այսինքն՝ մարդագլուխ 52 դոլլար: Հայերի մասին առանձին հաշիվ չկա, բայց տեղյակ անձիք վկայում են, որ նրանք հույների չափ դրամ են փոխադրում իրենց մերձավորներին: Այս հաշվով Ամերիկայի 140 հազար հայությունը պետք է մոտ 7 մլն դոլլար փոխադրած լինի ի նպաստ իր հայրենակիցների:

Նոր գաղթականությունը ևս կազմել է հայրենակցական միությունների մի ամբողջ ցանց և կամ մտել արդեն գոյություն ունեցող կազմակերպությունները: Վերջերս այս միությունները ձեռնարկել են քաղաքներ հիմնել Խորհրդային Հայաստանում իրենց ծննդավայրերի անունով, ինչպես՝ Նոր Խարբերդ, Նոր Արաբկիր, Նոր Եվդոկիա, Նոր Մալաթիա և այլն: Հայրենակցական միությունների ծրագրի մեջ է մտնում նաև պահել-պահպանել իրենց տեղական ավանդությունները, և՛ սովորույթները, և՛ ընդհանրապես առանձնահատկությունները:

Հայկական գաղութների նկատմամբ ևս ազգային մեծ կազմակերպությունը հանդիսանում է Հայոց եկեղեցին: Բարոյական և հոգևոր մեծագույն օղակն է, որ միմյանց է կապում հայության ցրիվ բեկորները և վառ պահում ազգային ինքնագիտակցությունը՝ հնուց ժառանգած սրբազան ավանդներով: Սիրիա և Պաղեստին Հայոց եկեղեցին երկու հին ներկայացուցչություն ունի՝ Կիլիկիո կաթողիկոսը և Երուսաղեմի պատրիարքը: Առաջինը, որ նախապես նստում էր Սիսում, իր հոտի հետ նեն այժմ փոխադրվել է Սիրիա և հաստատվել Անթիլիաս: Երբ Բագրատունյաց թագավորությունն ընկավ XI դարի կեսերին, նրանց մերձավոր ազգականները քաղաքական ազատության դրոշը պարզեցին Կիլիկիայում: Կաթողիկոսությունը ևս Անի քաղաքից փոխադրվեց Կիլիկիա և հաստատվեց ի վերջո Սիսում: 1441 թ. Ազգային մեծ ժողովը որոշեց կաթողիկոսական Աթոռը տեղափոխել Ս. Էջմիածին, որ հաստատել էր ինքը՝ Գրիգոր Լուսավորիչը, Հայ եկեղեցու

հիմնադիրը: Միսում մնաց, եկեղեցականների մի մասի ցանկությամբ, տեղական կաթողիկոսը, որպես հովիվ Կիլիկիո, որը վերջին աղետների հետևանքով անցավ Սիրիա: Երուսաղեմում հայերն ունեն պատրիարքություն, որը հովվում է Պաղեստինի 5000 հայությունը: Երուսաղեմի վանքը հայտնի է իր հայկական ձեռագրերի ճոխ հավաքածուով: Նորերս մեռավ պատրիարք Եղիշե Դուրյան արքեպիսկոպոսը՝ նշանավոր հայ եկեղեցականը, որի քահանայության 50-ամյակը տոնեցին մեռնելուց քիչ առաջ: Այդ առթիվ կատարված մեծ նվիրատվությունները հանգուցյալը հատկացրել է հին մատենագիրների հրատարակությանը: Հորեյանի առթիվ էր նաև, որ պ. Գ. Գյուլբենկյանը հանձն առավ կառուցել Երուսաղեմում վանական մատենադարանի համար նոր շենք:

Մյուս գաղթավայրերը՝ Եգիպտոսը, Հունաստանը, Բուլղարիան, Ռումինիան, Եվրոպան, Ամերիկան կազմում են առանձին եկեղեցական թեմեր՝ առաջնորդների իշխանության ներքո: Թեմերն ունեն իրենց ստորադաս-առաջնորդ նշանակված հոգևոր պատիճանավորների: Թեմակալ առաջնորդները ընտրվում են թեմական ժողովի կողմից և հաստատվում Էջմիածնի հայրապետի և կամ Կ. Պոլսի պատրիարքի կողմից: Եկեղեցական կազմակերպությունները աշխատում են դպրոցներ, եկեղեցիներ կառուցել, կիրթ քահանաներ պատրաստել, հոգևոր մխիթարություն տալ ժողովրդին, հորդորել պահելու ազգային ավանդույթները և սերը դեպի հայրենի եկեղեցին: Հետամուտ է նաև բանալու վարժարաններ, խնամել կարոտյալներին աղքատախնամ ընկերությունների միջոցով:

Աշխարհիկ հաստատություններից մեծագույնը Ընդհանուր հայոց բարեգործական միությունն է, որի հիմնադիրն է նորերս մահացած Նուբար փաշան: Միությունը հիմնված է Կահիրեում 1908 թ. (10) և վերջերս կենտրոնական վարչությունը փոխադրվել է Փարիզ: Բազմաթիվ մասնաճյուղեր ունի (մոտ 150) սփռված բոլոր հայ գաղթավայրերում՝ Կալկաթայից մինչև Կալիֆորնիա: Միության տարեկան բյուջեն հասնում է մինչև 70 հազար անգլիական ոսկու, որի մի խոշոր մասը վերաբերում է զանազան կտակների և պահ տրված գումարների, նվիրատվությունների նախորոշ գործածության: Միությունը մեծ օգնություն է արել մանավանդ թուրքահայ որբերին և դեռ շարունակում է՝ պահելով աշխատանոցներ, դարմանատներ, նպաստում է նմանապես վարժարաններին: Բարեգործականին հանձնված կտակներից ամենից խոշորը և կարևորն է Մելքոնյան[ների]ի կտակը (11), որի եկամտով պահվում է նրա[նց] անունով Կիպրոսի Նիկոզիա քաղաքում հիմնված միջնակարգ դպրոցը: Հիշելու արժանի են նաև թոշակները հանձնված Բրյուսելի համալսարանին Նուբար փաշայի կողմից՝ նպատակ

ունենալով հայ բոշակավորներ պահել տեղի բարձրագույն և մասնագիտական դպրոցներում: Նույն Նուբար փաշայի ծախսով կառուցվել է Ազգային մատենադարան՝ բարեգործականի հսկողության ներքո (12) և Փարիզում հայկական հատուկ տուն 50 ուսանողի համար (13): Բարեգործական միության 25-ամյա գործունեության տարեդարձի առթիվ որոշված է հավերժացնել Նուբար փաշայի հիշատակը՝ հիմնելով Հայաստանում, Երևանից ոչ հեռու, մի նոր քաղաք՝ Նուբարաշեն անունով: Այս որոշումն արդեն իրագործվելու ուղու վրա է: Բարեգործականը այն հաստատությունն է, որի միջոցով արտասահմանի հայ ունևոր դասն իր օժանդակությունն է բերում հայ ժողովրդին՝ կտակների և թե նվերների ձևով, և որի շուրջը խմբված են նույնպես բուրժուական այն ուժերը, որ տակավին չեն կտրված ազգային միջավայրից, նրա հոգսերից և բաղձանքներից:

Հայ դեմոկրատիկ ուժերը ընդգրկված են քաղաքական գույն ունեցող կուսակցական կազմակերպությունների մեջ: Դրանք են ազգային կազմակերպությունները, և դրանց մեջ առաջին տեղն է բռնում Դաշնակցություն կուսակցությունն իր մեծ ժողովրդականությամբ: Այս կազմակերպությունը հազարավոր ճյուղեր ունի գաղութներում: Հայ բոլշևիկ կառավարությունը և հայ կոմունիստները երկրում թե գաղութներում մաքառում են բացառապես Դաշնակցության դեմ, աշխատելով փշրել այս կազմակերպությունն ամեն միջոցներով, որպես միակ լուրջ և կազմակերպված հակառակորդ ուժ: Գաղթականության մեջ եթե խռովություններ են տեղի ունենում, ապա տեղի են ունենում միմիայն այս հողի վրա, այլապես հայ գաղթականների կյանքը խաղաղ է: Դաշնակցության վարկը և հմայքը բացատրվում է իր քաղաքական դրոշակով: Կենդանի պահել հայ քաղաքական դատը և ամեն ջանք թափել իրագործելու միացյալ Հայաստանի գաղափարը, այսինքն՝ Ռուսաստանից և Թուրքական Հայաստանից այն սահմանով, որ գծել է Վիլսոնը, կազմել միաձույլ անկախ պետություն համաձայն Սևրի դաշնագրի: Ահա քաղաքական այս դատն է որին նվիրված է ամբողջովին Դաշնակցություն կուսակցությունը:

Հայության քաղաքական և ազգային գիտակցությունը արթուն պահելու լավագույն միջոցներն են կրթությունն ու մամուլը: Բոլոր կազմակերպությունները իրենց նպաստն են բերում հիմնելու դպրոցներ, մանկապարտեզներ: Հարուստ անձինք ևս օժանդակում են իրենց դրամական օգնությամբ: Հայերը հայտնի են ուսման ծարավով: Միայն Հալեպում հաշվվում է 5000-ի չափ աշակերտություն և մի շարք դպրոցներ: Միջնակարգ վարժարաններից նշանավոր են Մխիթարյան միաբանության ջանքերով վերջերս Փարիզի մոտ՝ Սևրում բացված Մուրատյան կոլեջը, այլև

հնուց գոյություն ունեցող Ռափայելյան դպրոցը Վենետիկում. երկուսն էլ պահվում են հնդկաստանցի երկու հարուստ հայերի կտակած գումարներով՝ անցյալ դարասկզբից (14): Նշանավոր են նաև արդեն հիշված Մելքոնյան վարժարանը՝ Նիկոզիայում, հայկական նորաբաց ճեմարանը Բեյրութում, կաթոլիկոսական վարժարանը Անթիլիասում, Նուբարյան դպրոցը Ալեքսանդրիայում, Պողոս Գյուլբենկյան դպրոցը Հալեպում և ուրիշ նման վարժարաններ Սոֆիայում, Աթենքում, Սալոնիկում, Կաիրեում և այլուր: Մոռանալու չէ նաև boy-skout-ների կազմակերպությունն այնքան կանոնավոր, որ վերջին 2 տարիներին մասնակցեցին jawboru-ին (15), գումարված Անգլիայում:

Դպրոցական կրթության նպատակն է պահել ազգային ոգին և լեզուն: Նույն նպատակին է ծառայում հայ մամուլը, որ հարուստ է պարբերական օրգաններով: Արտասահմանյան հայությունն ունի մոտ 100 պարբերական՝ օրաթերթ, ամսաթերթ, շաբաթաթերթ կամ տարեգրքեր: Մի քանի տասնյակը պատկառելի հրատարակություններ են համազգային, համագաղութային բնավորությամբ: Մի քանիսն էլ փոքր թերթեր են, որ գոհացնում են տեղական պահանջները:

Արտասահմանի ընդարձակ այս գաղթականության ընդհանուր մոտիվը հայ քաղաքական դատն է, հայրենիք դառնալու ցավոտ հարցն է, որի շուրջը գալարվում են մտքերը և հույզերը: Ի բացառյալ հայ գաղթականության մի աննշան և ունևոր մասի, որ շատոնց ապրելով հայրենիքից դուրս, օտար քաղաքացիություն է ընդունել և չի նայում ետ դեպի հայրենիք, մնացած հոծ մեծամասնությունն ապրում է միայն հայրենիք դառնալու հույսով: Ժամանակավոր է համարում իր գաղութային վիճակը և անհարթելի հավատ ունի, որ իր իղձերը իրականանալու են: Եթե քաղաքական հանգամանքները դասավորվեն ի նպաստ Հայ դատին, գաղթականության մեծամասնությունն անմիջապես կվերադառնա հայրենիք: Մեծ պատերազմի ժամանակ, երբ հայությունը մեծամեծ հույսեր էր տածում, հազարավոր մարդիկ լքեցին իրենց տասնյակ տարիների ընթացքում կերտած ապահով դրությունն օտարության մեջ և գնացին միանալու դաշնակից պետությունների բանակին որպես կամավոր զինվորներ: Հայը սերտորեն կապված է իր հողին և դարավոր ճեղությունները ու անլուր տառապանքները տարել է համբերությամբ, միայն թե մնա իր նախնիների հիշատակների մեջ: Եվ այսօր կարոտով ու կսկիծով է նայում իր ամայացած հայրենիքի վրա: Օտարների կողմից տարածված մոլորություն է, որպես թե հայերը սիրում են պանդխտանալ, քաշվել օտարություն բախտ որոնելու համար: Հայերի մշտական տրտունջը, որ ծանր է ապրել մուսուլման պետության կեղեքիչ

պայմաններում, այն տպավորությունն է թողել պատահական ճանապարհորդների վրա, որ հայը պատրաստ է թողնել իր հողը և հեռանալ ապրելու ավելի բարվոք և ապահով վիճակում: Իրողությունն է, որ հայերը երբեք հոժարակամ չեն լքել իրենց հայրենի հողը: Մինչև անգամ հայ վաճառականները, որ հաճախում էին արևմտյան շուկաները՝ Վենետիկ, Մարսել, Ամստերդամ XVI-XVII դարերում, գերադասում էին ի վերջո վերադառնալ, հանգչել իրենց հայրենի տանը: Հավաքական, զանգվածային արտագաղթը միշտ էլ բռնությամբ է եղել: Հայաստանը անդադար պատերազմների բեմ է եղել դարերի ընթացքում: Թողնենք հին դարերը, վերցնենք միայն XVII-XIX դարերը: Ամեն անգամ, երբ պատերազմ է ծագել թուրք և պարսիկ, և կամ սրանց և ռուս պետության մեջ, բռնի տեղահանություններ են տեղի ունեցել այս կամ այն չափով, այս կամ այն նպատակով և՛ թուրքերի, և՛ պարսիկների, և՛ անգամ ռուսների կողմից: Վերջին տեղահանությունը մեծ պատերազմի ժամանակ պատմության մեջ եզակի օրինակ է իր սարսափներով:

Թե որքան է հայը կապված է իր պատմական հողին և ինչ մեծ արժեք է տալիս այդ կապին, այդ արտահայտված է ուժգին կերպով մի սքանչելի պատմության մեջ, որ թող ներվի ինձ հիշել այստեղ: Պատմությունն այնքան գեղեցիկ է և ինքնօրինակ, որ գրավել է մինչև իսկ բյուզանդական մի պատմագրի, որ փոխառելով մի հայ մատենագրից (16), երկրորդել է իր երկում: Խոսքս Պրոկոպիոս Կեսարացու մասին է, որ գրել է VI դարում հույն-պարսիկ պատերազմների պատմությունը (17), և որի անգլերեն թարգմանությունը տրամադրելի է Loeb Classical Library շարքի մեջ:

Ահա թե ինչ է պատմում բյուզանդացի Պրոկոպիոսը (18).

«Պարսիկների և հայերի միջև պարսից Պակուր արքայի (19) և հայոց Արշակ Արշակունու ժամանակ երեսուներկու տարի չհայտարարված պատերազմ էր գնում: Այս պատերազմի երկարատևության պատճառով երկու կողմերն էլ անչափ վնաս կրեցին, մասնավորապես հայերը: Երկուսի միջև անվստահությունն այնքան խորացավ, որ ոչ ոք չէր կարողանում բանակցությունների մեջ մտնել մյուս կողմի հետ: Այդ միջոցին պատերազմ ծագեց պարսիկների և հայերից ոչ հեռու բնակվող այլ բարբարոսների միջև: Հայերը, ցանկանալով պարսիկներին ցույց տալ դեպի նրանց ունեցած իրենց բարյացակամությունը և հաշտություն կնքելու պատրաստակամությունը, անսպասելիորեն հարձակվեցին այդ բարբարոսների երկրի վրա (նախօրոք տեղյակ պահելով պարսիկների) և թշնամիների գրեթե բոլոր աղամարդկանց կոտորեցին: Պակուրը կատարվածից անչափ գոհ մնալով, Արշակի մոտ ուղարկեց մեծամեծներից ոմանց, հավատարմության նշա-

ճակներ ավեց և հրավիրեց իր մոտ: Երբ վերջինս հասավ [Պակուրի] մոտ, արքան նրան հյուրընկալեց և եղբոր նման հավասար համարեց: Այնտեղ երկուսն էլ մեծ երդում ավեցին, որ պարսիկները և հայերը միմյանց բարեկամ են և դաշնակից, որից հետո Պակուրը թողեց, որ Արշակը գնա իր հայրենիքը: Քիչ ժամանակ անց, ոմանք զրպարտեցին Արշակին, իբր նա ուզում է ապստամբություն բարձրացնել: Այդ բանին Պակուրը հավատաց և անմիջապես Արշակին իր մոտ կանչեց ասելով, որ լավ կլինի բոլոր հարցերի շուրջը նրա հետ խորհրդակցել: [Արշակն] իսկույն գնաց նրա մոտ՝ իր հետ տանելով ամենաազնվական հայերից ոմանց, ինչպես նաև Վասիկիոսին (20), որը նրա զորավարն էր և խորհրդականը՝ շատ քաջ և խելացի:

Պակուրը և՛ Արշակին, և՛ Վասիկիոսին սկսեց բացեիբաց պախարակել և ամբաստանել, որ նրանք դրժել են երդումը և ուզում են շուտով ապստամբություն բարձրացնել, մի բան, որ նրանք մերժեցին, անվերջ երդվելով, որ իրենք երբեք նման մտադրություն չեն ունեցել: Պակուրը սկզբում նրանց կալանավորեց, ապա հարցրեց մոգերին՝ ինչպես վարվել նրանց հետ: Մոգերը արդար չէին համարում դատապարտել, քանի որ նրանք չէին ընդունում մեղադրանքը և բացեիբաց չէին խոստովանում և խորհուրդ ավեցին այնպես անել, որ Արշակը ստիպվի ինքն իրեն մեղադրել: Մոգերը առաջարկեցին արքայական վրանի հատակը ծածկել գոմաղբով՝ կեսը Պարսից երկրի, իսկ մյուս կեսը՝ Հայոց: Արքան այդպես էլ արեց: Այն ժամանակ մոգերը վրանի շուրջը մոգություններ կատարելուց հետո առաջարկեցին արքային, որ նա Արշակի հետ պտույտ կատարի և մեղադրի Արշակին դաշինքը խախտելու և երդմնազանցության մեջ: Մոգերը ևս պետք է ներկա լինեին այդ խոսակցությանը՝ որպես զրույցի վկաներ: Պակուրը հրավիրեց Արշակին, նրա հետ շրջեց վրանում, ուր ներկա էին մոգերը, և հարցրեց՝ թե ինչու է նա, դրժելով երդումը, պատճառ դառնում պարսիկների և հայերի մեծ դժբախտության: Քանի դեռ խոսակցությունը տեղի էր ունենում այն մասում, ուր պարսկական հողն էր փռված, Արշակը չէր ընդունում մեղադրանքը, ամենասարսափելի երդումներով հաստատում էր և վստահեցնում, որ ինքը Պակուրի հավատարիմ ծառան է: Բայց երբ խոսակցության ընթացքում հասնում էին վրանի կենտրոնը, ապա անցնում Հայոց երկրի գոմաղբով ծածկված վայրը, ահա այստեղ Արշակն անսպասելի կերպով, չգիտեմ ինչից դրդված, ոչ միայն փոխում էր խոսակցության շեշտը դեպի ավելի հանդուգնը՝ սպառնալով Պակուրին և պարսիկներին, այլև հայտարարում էր, որ վրեժ կլուծի նման անպատվության համար, երբ ինքը շուտով իր անձի տերը դառնա: Համարձակությամբ այդ ասելով նա ճեմում էր, մինչև որ շրջվելով հասավ Պարսից երկրի գոմաղբը: Այստեղ նա նորից

նույն երգն էր երգում, որ ինքը Պակուրի ծառան է և այլ ողորմագին խոսքեր ասում: Երբ նորից հասավ Հայոց հողի վրա, նա անցավ սպառնալիքներին: Եվ այսպես բազմիցս մի հողի վրայից մյուսն անցնելով, ոչ մի զաղտնի բան չթողեց: Սա դրանից հետո մոգերը մեղադրեցին նրան դաշինքը խախտելու և երդմնազանցության մեջ: Պակուրը Վասիկիոսին մորթազերծ արեց, մորթին լցրեց ծղոտով և կախեց շատ բարձր ծառից: Իսկ Արշակին (քանի որ չէր կարող սպանել արքայական արյուն ունեցող մարդուն) բանտարկեց Անհուշ բերդում» (21):

Մայրենի հողի զաղտնի, խորհրդավոր ուժը հրաշալի կերպով է պատկերված այս սիրուն զրույցի մեջ: Արշակ թագավորի պես է մտածում և այժմ հայ պանդուխտ ժողովուրդը, որը լարում է իր բոլոր ուժերը՝ չկորցնելու իր ազգային նկարագիրը օտար մթնոլորտի մեջ, հայրենիք վերադառնալու անշեջ հույսով: Արշակ թագավորը, ինչպես ասում է նույն զրույցը, Անհուշ բանտի մեջ վշտից իր կյանքին վերջ դրավ, չկարողանալով տանել արգելարանի կապանքները: Հայ ժողովուրդը ներկայումս գտնվում է մի տեսակ Անհուշ բերդի մեջ, քաղաքակիրթ աշխարհի մոռացության բերդի մեջ: Քրիստոնեությունը հայի մեջ հույսի և հավատի խորունկ արմատներ է ձգել, և այժմ նա քարշ է տալիս իր գոյությունը օտարության մեջ մինչև որ հայրենիքի դռները բացվեն: Անվհատ հույս ունի, որ նա չի մեռնի ինքնասպանությամբ իր դժբախտության պատասխանատու մեծ պետությունների մոռացության բերդի մեջ:

# ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԽՈՐԵՆ Ա-Ի ՀԻՇԱՏԱԿԻՆ

***Մեծահարգ հայրենակիցներ,***

Այսօրվա մեր հավաքույթը նպատակ ունի կատարելու մի տխուր, սրբազան պարտք: Հայտնի է մեզ հեռագրի գույժը՝ թե Նորին Վեհափառություն Ամենայն Հայոց կաթողիկոս Խորեն Ա վախճանյալ է անցյալ ամսի 1-ին(1): Ձեր կազմակերպությունն (2) իր վրա է առել, նախաձեռնող է եղել հրավիրելու, կազմակերպելու այս [սգո] երեկույթը: Ահա գումարված է դա՝ հարգելու հանգուցյալի հիշատակը, հայտնելու մեր անհուն ցավն ու կսկիծն այդ դառը կորստի առթիվ: Մեր եկեղեցին մեզ համար այն չէ, ինչ ուրիշների եկեղեցին իրենց համար: Հայոց եկեղեցին և ժողովուրդը անջատ գաղափարներ չեն, այլ մի մարմին, միևնույն: Հայոց եկեղեցին մեր գոյության խարիսխն է եղել անցյալում և այժմ էլ հիմք է մնում նույն ներկա դժնդակ պայմաններում. մի օղակ և կապ, ցան և ցրիվ հայության:

Հանգուցյալ կաթողիկոսը շատ դժվար պայմաններում հավատարիմ մնաց դարեր ի վեր մշտակա Հայ եկեղեցու ոգուն:

Նորոգ հանգուցյալ Հայրապետը ընտրվեց ծանր պայմաններում, ապրեց հեղձուցիչ մթնոլորտում և անէացավ քայքայված հոգեպես և մարմնապես, հեռացավ թողնելով Մայր Աթոռը անորոշ ապագայի առաջ: Պետք է հիշել, թե որքան անխոհեմ էին այն բերանները, որ փորձեցին սավեր ձգել հանգուցյալի ընտրության վրա, կարծելով որ ավելի արժանավորները կային: Կատարյալ մոլորություն: Կան տագնապալից օրեր, երբ գիտություն, բարձր խոհականություն, շեշտակի կամք և անշեղ բնավորություն, զեղուն զգացմունքներ, բաբախուն ազնիվ սրտեր՝ մարդու այս վսեմ հատկություններն անզոր և անպետք են և անզամ վնասակար, ինչպես անփառունակ գործ է պողպատե սրասայր սուրը զարկել պատռելու որձաքարը: Այսպիսի պարագաներում այլ բան է հարկավոր, այն որ ուներ Տ. Տ. Խորեն Ա՝ խաղաղ կեցվածք, հեզ և անվրդով խոսակցություն, ամեն ինչ ունկնդրելու համբերություն և վերջապես զայլերի հետ խոսակցելու կարողություն, հատկություններ, որոնց գումարը սահծում է այն, ինչ որ արտահայտվում է հայ սքանչելի և անթարգմանելի բառով՝ անուշություն:

Հայ եկեղեցու մեծ առաքյալի (3) կյանքը, Հայ եկեղեցու ապագա կյանքի մարգարեաշունչ պատկերը՝ Վիրապի մեջ, օձերի և թունավոր զեռունների շրջապատում ապրել, շնչել, մինչև որ փրկարար ժամը կհնչեր, [օրինակ է սերունդներին]: Առաջին անգամ չէ, որ Մայր Աթոռը տառապում է իրավազրկության և բռնության լծի տակ: Շատ անգամ են փչել չարաշուք հողմեր, բայց եկել անցել են կայծակի հարվածով. և՛ օտար բռնավորներ են եղել, և՛ արկածախնդիր բարբարոսներ: Բայց տեսնված չէ, որ իր իսկ հոգևոր զավակները խելակորույս մոլության և մոլորության անարգ խաղեր պատեն նրա շուրջը: Հեռու չեն այն ժամանակները, երբ այլակրոն աշխարհակալների հարվածների տակ Էջմիածնի գահակալները հիշատակում էին անբավ թախծով և երազում կարոտով այն օրերը, երբ հայ իշխանությունները ու եկեղեցին փթթում էին իրար և պառ_և մանուշակ_հայոց անդաստաններում: Ո՞վ կարող էր երևակայել, որ դարերով բարձացված հայ իշխանության վարդը կարող էր տատասկ և փուշ դառնալ ու խեղդել եկեղեցու մանուշակը: Այժմ ամայի և անշուք է Էջմիածինը, թափուր իր զարդերից, բայցևայնպես փայլում է նրա Ս. Կաթողիկեի խաչը իր շուրջ ծավալված բարոյական մթության մեջ: Պահում է իր վեհությունը. լուռ է, բայց որքա՜ն հնչեղ է այդ լռությունը, այն իր էությամբ մարդասիրության անսասան վկայություն է, քարից կառուցված մեծ Ավետարան է:

Լավ է, որ տարագրությունը ևս մասնակից է Մայր Աթոռի դժբախտություններին: Հոտի մի մասը կաշկանդված իր պարտականությունների մեջ, մյուսի պարտքն է կրկնակի եռանդով իր պարտքը կատարել, ենցուկ և խրախույս լինել Մայր Աթոռին, ցույց տալով բռնավորներին, որ Մայր Աթոռը այն ծառը չէ, որ կարելի է կտրել, քանզի նրա ճյուղերը տարածված են հեռավոր հայության մեջ: Հայրենակցական ընկերությունները, բարեգործական հաստատությունները խոշոր գումարներ ղրկեցին Հայաստան՝ քաղաքներ շինելու, հիվանդանոցներ հիմնելու, մեքենաներ գնելու: Բայց ոչ ոք չմտածեց, որ ամենից առաջ պետք էր օգնության գալ Մայր Աթոռին, հայության հոգևոր կենտրոնին: Արտասահմանի հայությունը պիտի միջոցներ հայթհայթի Հայրապետությունը և թեմերը պահելու համար, և խնամելու բարվոք վիջակի մեջ այն հոգևոր հայրերին, որոնք հավատարիմ մնալով իրենց ուխտին՝ պահել են իրենց սքեմը, հակառակ բոլոր հալածանքների և զրկանքների, ապաստանելով Մայր Աթոռին:

Ոչ միայն այս չարեցին, այլև զլացան անգամ այն պատկառանքը, հարգանքը, որին արժանի էին ավանդաբար Մայր Աթոռը և իր Հայրապետը: Վատթարագույն ևս. բացեիբաց անարգանք տեղացին ընտրյալ Հայրապետի գլխին՝ անզուսպ, ապերասան թերանով:

Ծանր է վերհիշել, ինչ որ վատ է, չար է: Մոռացության պետք է տալ դրանք: Վատ բանը, չարագործությունը բանձր ամպի նման մթագնում է հորիզոնը, տեսության ոլորտները: Անեծք վատ մարդու վատ արարքին,- պետք է կրկնել բանաստեղծին (4) և անցնել մոտեն: Բայցևայնպես ստիպված եմ հիշել Ամերիկայի հայ խռովությունները, առանց կամենալու Ձեզ անախորժություն պատճառել և մեր սուգը նորանոր հուշերով ծանրացնել: Պետք է հիշել, որպեսզի պարզեմ, թե ինչի՞ց պետք է այսուհետև խուսափել հանդեպ Մայր Աթոռի, հանդեպ Հայ եկեղեցու:

Գիտեք որ եկեղեցու բարձրաստիճան սպասավորը խռխռովեց Ս. Սեղանի առաջ հանդիսավոր ժամին, սրբազան զգեստը հագին (5): Խռխռովեց այն հանցանքի համար, որ չէր հարգել հայ եռագույնը. Craviora sunt remedia periculis (6):

Գովելի է պաշտպանել մի դրոշակ, բայց հանցանք է մի դրոշակի պաշտպանության համար արհամարհել, անարգել մի ուրիշ դրոշակ, որ նույնպես նվիրական է: Մեկը երեկվա, տակավին կանաչ, դեռ հասակ չառած՝ ստիպված է ծալվել փոշիի մեջ՝ սպասելով իր բախումին, բարախումին, ծփումին, իցիվ, թե մոռալուտ, մյուսը՝ հին է և 16 դար ծածանվում է հայ ժողովրդի գլխին և այժմ էլ պահում է իր ուժը:

Խառնակություններ սկսվեցին (7): Հայ հասարակությունը երկու հատվածի բաժանված ճակատեց եկեղեցու գավթում՝ ո՛չ ի փառս եկեղեցու, այլ ի նշավակ: Բարձրագույն [եկեղեցական] իշխանությունը հարկադրվեց միջամտել (8): Հայրապետական կոնդակները հետևանք չունեցան: Հատուկ նվիրակ ղրկվեց, և որպիսի նվիրակ (9), որ տեղնուտեղը գործին ծանոթանա և խաղաղությունը վերականգնի: Այս ևս ապարդյուն: Ոչ ոք անսաց Հայրապետական ձայնին:

Եվ որպեսզի արդարացնեն իրենց վարմունքը, հայտարարեցին, որ Հայ եկեղեցին ժողովրդական է և ժողովուրդն է կառավարում, իսկ Հայրապետին վերապահված է միայն հսկել դավանական և ծիսական խնդիրների վրա, և երկրորդ՝ անշուշտ զգալով, որ թեթևամիտ է առաջին հայտարարությունը, որ Հայրապետը գտնվում է կողմնակի, չեկայի [=ВЧК] թելադրանքի ազդեցության տակ, ազատ չէ գործելու, ուստի և իրավունք կա ուրանալ նրա ձեռնհասությունը: Մին թեթևամիտ, մյուսը՝ անխոհեմ, մեկը՝ ագետ, մյուսը՝ վիրավորական, երկուսն էլ հիմնովին սխալ և վնասակար: Չեմ կարծում՝ երդվյալ փաստաբանի բոնի ճիգեր լինեն, կեղծիք՝ դատ շահելու: Անզիտություն կա:

Կաթողիկոսը եկեղեցու վարչության պատասխանատու պետն է, թե՛ ժողովրդի և թե՛ պետության առաջ: Ուստի և հնուց ի վեր օտար տիրապետ-

տող պետությունների կողմից հաստատված ժողովրդականությունն արտահայտվում է ընտրության իրավունքով: Առաջնորդ ընտրելուց և հաստատելուց հետո եկեղեցին վարչության հսկողության տակ է:

Անջատվել Էջմիածնից, տիասության վկայական է, այն կտանի մինչև մեռք: Եկեղեցու արժեքը, որպես ազգային գործոն, իր վաչական միության մեջ է, այն մի մարմին է: Քակեցեք այդ շաղկապը, կազմակերպության օղակները, թողեք, որ ամեն մի համայնք մի քահանա ընտրի իր համար, առանց որևէ աղերսի ուրիշի հետ՝ հանուն ազատության, և եկեղեցին կդադարի իր դերից:

Եկեղեցու պաշտպանները Ամերիկայում, իրենց աղմուկն էլ, իբրև թե ի շահ եկեղեցու, փաստորեն ավելի մեծ հարված չէին կարող տալ եկեղեցուն:

Անններելի է Դաշնակցություն կազմակերպությանը (10): Հնազանդություն, կարգապահություն, օրինապահություն – հրամայող և տնօրինող և տնօրինյալ: Կազմակերպություն և աշխատանքի բաժանման մասնագիտություն...

Ինչո՞ւ... (11):

## № 1

## ՀԱՅ ՀԱՅՏՆԻ ԱԽՈՅԱՆՆԵՐ ԱՆՑՅԱԼՈՒՄ

Անձնական քաջությունը, ֆիզիկական ուժը, անհամեմատ շատ ավելի մեծ տեղ ունեին կյանքի մեջ հին ժամանակները, քան ներկայումս: Քաջությունը երկնային էր, համարյա աստվածային: Պատմական մեծ անձնավորություններից շատերը պարտական են զոնե առաջին հաջողություններն իրենց բազուկներին, քան գլխին: Ինքնապաշտպանության և կռվի միջոցներն ու գործիքներն էին լայնալիճ կամ հաստաձիգ աղեղ, պարսատիկ, բռնալիր, նիզակ, տապար ու սուսեր: Ծանր սպառազինություն, երկաթապատ զրահ, պահանջում էին այնպիսի մարմնավոր ուժ, հաղթանդամ կազմվածք, որին բնավ պետք չունի ժամանակակից ինքնաշարժ հրացանը, գնդացիրը և մյուս հրեշավոր անոթները: Որքան մարդկությունը հառաջանում է, այնքան նսեմանում է ուժի կարևորությունը, կարիքը: Պատմության ընթացքը կարելի է բնորոշել որպես հարատև փոխանցումը մարմնավոր և ֆիզիկական զորությունից դեպի մտավոր և հոգեկան ուժի: Բազուկները տեղի են տալիս գլխին: Մարմնավոր քաջությունը որքան հնանում է՝ մնում է անցած դարերի զարդ, այնքան մարդն անձնուկով է նայում և կաքառում հին քաջությանը: Հին մարդիկ պատկերվում են որպես տիտաններ, անհաղթելի հսկաներ, անհեթեթ, անձնեղ [= մարմնեղ], մեծանձն, անձնյա, ոչ նման սովորական մարդի:

[Նրանք] պաշտամունքի նյութ են դառնում, համարվում են դյուցազուններ, այսինքն՝ կեսաստվածներ, սերված աստվածներից և մահկանացուներից: Հերակլես դեռ օրորոցում երկու վիշապ խեղդեց, որ Հերան ուղարկել էր նորածին մանկանը սպանելու համար: Անունը կապ ունի հերոս արմատի հետ, լատիններեն՝ սերվ, որ նշանակում է պահել, հսկել, rend-հերոուս-haurna-servare-հսկա: Մեր Վահագն էլ է վիշապաքաղ:

Հին մարդիկ փառաբանում են քաջությունը, նրանք ստեղծում են հերոսների տիպարներ և քաջությունը համարում տուրք աստվածային: Քաջությունը տալիս է նաև անմահություն՝ հերոսները երբեմն երկինք են բարձրանում և որպես աստված միանում մյուս աստվածների խմբին:

Բոլոր հին ազգերը քաջության աստված ունեն և քաջության տիպար հերոսներ: Հունաց՝ Աքիլես, Տրովա՝ Հեկտոր, պարսից՝ Ռոստամ, հայոց՝

Տորք (մեր քաջության ավելի հին աստվածը և մեր բուն նախահայրն է Հայկ):

Մեր նախնիք ևս մեծապես գնահատում էին քաջությունը: Հայկը հայ ազգի նախահայրն է, հայ ազգի մարմնացումն է: Գեղապատշաճ, անձնյա, քաջագանգուր, խայտակն և հաստաբազուկ Հայկը քաջ և երևելի էր հսկաների մեջ: Բելը [Հայկի վրա է արշավում] երկնադեզ հասակով մրցող հսկաներով: Մովսես Խորենացին Հայկի այս պատկերը քաղել է հիմնվելով հայ առաջնորդի ուժի, նրա անձնական քաջության նկարագրի վրա: Մամիկոնյան, Բագրատունի, Սյունյաց, Ամատունյաց և Արծրունյաց իշխանական տներն այնպիսի դեմքեր են տվել, որ իրապես հերոսներ են: Կուզե՛մ ներկայացնել պատմական մի քանի դեմքեր, որոնց քաջությունը միայն մարմնավոր չէր, այլ շաղկապված անվեհերության և գերմարդկային խիզախումի հետ: Մարմնավոր ուժն առանց հոգեկան արիության մեռած ուժ է: Սա է, որ շարժում է մարմնավորը, ոգի տալով՝ կրկնապատկում է այն:

Ստորև հիշելի անձինք պատմության մեծ դեմքեր չեն, [նրանք] փայլուն հետք չեն թողել իրենց հետևից: Բայցևայնպես հերոսության տիպարներ են, որովհետև արհամարհելով մահը առնական արիությամբ, դուրս գալով մենամարտության ասպարեզը՝ նրանք փառքով են պսակել իրենց ծնող, սնող ժողովրդին: Պետք է մի փոխ հարգանքի տուրք տամ նրանց, ովքեր պատիվ են բերել հայությանը որպես մենամարտիկներ: Բյուզանդական առնելի բանակի մեջ հազարավորների, տասնյակ հազարների մեջ հանկարծ մի հայ է նետվում ընդդեմ թշնամու՝ իբրև կարող ընդունելու մենամարտը: Ահա նրանք՝ Արտավան (1), Արտավազդ (2), Անզալաս (3), Հովհաննես Գուզես (4), որ վկայված են օտար պատմիչներից (5):

1. ԱՐՏԱՎԱՆ (548) (6)

2. ՍՄԲԱՏ ԲԱԳՐԱՏՈՒՆԻ, ՈՐԴԻ ՄԱՆՈՒԵԼԻ (590 թ.)

590 [թ.] Մորիկ կայսրը փորձեց հայ նախ[արարներին] Թրակիա ղրկելու: Սակայն հայոց նախարարներն ապստամբեցին և կամեցան «ի բաց կալ ի ծառայութենէն Յունաց թագաւորին և նստուցանել իւրեանց թագաւոր»: Դա արվեց հետևյալ նպատակով. «զի մի և նոցա հասցէ մեռանել ի կողմանս Թրակացւոց, այլ կեալ և մեռանել ի վերայ աշխարհին իւրեանց» (7): Կայսրը արքունական պատվիրակներին հրովարտակով ղրկեց Հայաստան, սակայն Մանուելի որդի Սմբատ Բագրատունին նրանցից մեկին

ապանեց: Բյուզանդ[ացիները] ձերբակալեցին Սմբատին և [ուրիշ] յոթ հոգու հետ տարան մայրաքաղաք: Դատեցին և որոշեցին ձգել կյունիկ (8), այսինքն՝ կրկես: Սմբատ էր «այր անհեդեդ անձամբ և գեղեցիկ տեսլեամբ, և բարձր և լայն հասակաւ, և բուռն և ցամաք մարմնով» (9): Նա «հզաւր և պատերազմող» էր հռչակվել բազում պատերազմներում: [Սմբատն] այնպիսի ուժ ուներ, որ անցնելով «անտառախիտ մայրեաց և զաւրաւոր ծառոց» տակից՝ հաղթանդամ հզոր երիվարին նստած, ձեռքերը բարձրացնում, ծառի ոստից բռնում և իրանքով ու ոտքերով սեղմելով երիվարի մեջքը՝ նրան բարձրացնում էր գետնից վեր: Տեսնողները ահաբեկվում էին ու սաստիկ զարմանում:

Սմբատին մերկացրեցին և թողեցին միայն անդրավարտիքով, այնուհետև նրան ձգեցին կյունիկ, «զի կուր լիցի գազանաց» (10): Սկզբում նրա վրա արձակեցին **արջին** (այս և հետագա բոլոր ընդգծումները հեղինակինն են – Պ. Հ.): Սմբատը գոռաց մեծաձայն և գնաց արջի վրա, զարկեց ճակատին բռունցքով և տեղնուտեղ սատակեց: Երկրորդ անգամ նրա վրա արձակեցին **ցուլ**: Սմբատը բռնեց ցուլի եղջյուրներից, դարձյալ իր աղաղակով ահ ձգեց ցուլի վրա, չարչարեց՝ ոլորելով պարանոցն ու ջարդելով եղջյուրները: Ցուլը թուլացած նահանջեց և փախստական դարձավ: Սմբատը հետևից վազելով «բուռն հարկանէր յագին և ի կճղակն ազդեր միոյ ոտին նորա», ցուլի կճղակը պոկվեց և մնաց Սմբատի ձեռքին: Ցուլը փախավ մի ոտով «բոկ»: (Նման մի քաջություն Խոր[ենացին] վերագրում է Տրդատ [III Մեծին]՝ ասելով, որ հույն մի ըմբիշ հենում «զկճղակ եզին թափեաց», իսկ Տրդատը մի ձեռքով «կալեալ զեղջերէն» երկու վայրի ցուլերի, «թափեաց հանդերձ ընդվզեալ ջախջախմամբ») (11):

Երրորդ անգամ կատաղի **առյուծ** արձակեցին նրա վրա: Երբ առյուծին արձակեցին, Սմբատը ճարպկորեն բռնեց նրա ականջից և նստեց մեջքին: Այնուհետև ձեռքը տարավ խռռչափողը և սեղմելով խեղդեց առյուծին: Ամբոխը ոգևորությամբ ողջույնի աղաղակներ բարձրացնելով գոչեց և դիմեց կայսեր, որ ներե հայ իշխանին: Իսկ Սմբատը հոգնած, հանգիստ էր առնում նստած առյուծի վրա: Կայսրուհին և կայսրը ողորմացին նորան, ներում շնորհեցին և բաղանիս ղրկեցին: Այստեղ Սմբատին լվացին, հանդերձավորեցին և պալատ տարան: Հետագայում Սմբատը զրպարտության զոհ դարձավ և աքսորվեց «ի կղզիս հեռաւորս» (12), ապա կայսրը հրամայեց այնտեղից նրան տեղափոխել Աֆրիկա՝ տալով նորան զինվորական տրիբունի պաշտոն:

### 3. ՍՄԲԱՏ ՎՐԿԱՆԻՑ ԽՈՍՐՈՎ ՇՆՈՒՄ (13) ԲԱԳՐԱՏՈՒՆԻ († 607 թ.)

Քուշանաց թագավոր Հեփթաղաց աշխարհում (Թուրքեստան) մեծ կազմությամբ ճամբարեց Սմբատի դեմ: Հեփթաղը պատգա[մավոր] ղրկեց Սմբատի մոտ.

- Ի՞նչ օգուտ այսպես խառնամբոխ մտնել պատերազմի մեջ և սպառել մեր զորքը: Ինչո՞վ պիտի ճանաչվի իմ և քո քաջությունը: Արի՛, միայն ես և դու մենամարտենք: Ես այստեղից, իսկ դու՝ այդտեղից ել ախոյան, «զի այսաւր ծանիցի քեզ քաջութիւն իմ» (14):

Սմբատը պատասխանում է. «Ահաւասիկ պատրաստ եմ ի մեռանել»: Երկար հարձակվեցին միմյանց դեմ և կռվեցին ի տես երկու բանակների: Սակայն չէին կարողանում միմյանց հաղթանցել, որովհետև հսկայազորք (և ոչ «սակաւազաւրք», ինչպես տպված է. տե՛ս Ք. Պատկանյանի հրատարակությունը, էջ 67) (15) և կուռ սպառազինյալ էին: Վերջապես Սմբատին հաջողվեց ձգել նիզակը, պատռել վերտ և ամուր (ոչ վերտևամուր) (16) և կուռ զրահի ամրությունը և [Քուշանաց թագավորին] գետին տապալել (17): Իսկ Քուշանաց զորքը «իբրև տեսին զարքայն իւրեանց՝ զարհուրեցան և դարձան գնացին փախստական» (18):

### 4. ՎԱՍԻԼ ՄԱԿԵԴՈՆԱՑԻ (շուրջ 820-886 թթ.) (19)

### 5. ԱՇՈՏ ԲԱԳՐԱՏՈՒՆԻ (973 թ.)

Անիի Գագիկ Շահնշահի մահից հետո նորա երկու որդիները՝ Հովհաննես-Սմբատ և Աշոտ գժտվեցին (20): Աշոտը Արծրունյաց թագավոր Սենեքերիմից զորք է ստանում և շարժվում իր եղբոր վրա: Այդ ժամանակ որպես դեսպան Հովհաննես-Սմբատ թագավորի մոտ էր մի վրաց իշխան: Սա պարծենալով խնդրում է, որ Հայոց թագավորն իրեն թույլ տա գնալ և բռնել կենդանվույն Աշոտին և վերջ դնել արյունահեղությանը: Հովհաննես-Սմբատն ասում է. «Այր հզօր է Աշոտ, դու զիա՞րդ կարծես ածել զնա առաջի իմ»: Վրացին պատասխանում է. «Ի ձիոյն առից զնա կենդանի»: Սակայն Հովհաննես-Սմբատ թագավորը զգուշացնում է վրացուն, թե «առյուծի ձագին մի արհամարհիր, մինչև որ տեսնես»: Վրաց իշխանն արծվի նման սլացավ Աշոտի վրա՝ գոռալով. «Ո՞վ է Աշոտը, թող առաջ գա»: Աշոտը զայրացավ ինչպես ինձ և վրացին մինչ ուզում էր նիզակով զարկել, Աշոտը

կայծակի արագությամբ հանեց պողովատիկ սուրը և այնպես հարվածեց սաղավարտին, որ վրացու երկաթապատ մարմինը պատառեց, մինչև ստինքը երկուսի բաժանեց և «հանդերձ միջօքն յերկիր ընկենոյր» (21):

### 6. ՎԱՍԱԿ ՊԱՀԼԱՎՈՒՆԻ, ԲՋՆԻ ԻՇԽԱՆ (1021 թ.)

Թագավորը Դելումաց (դելմիկների – Պ. Հ.) եկավ և ավերեց Նիգ գավառը: Հայոց սպարապետ Վասակն իր որդի Գրիգորի (22) հետ ելավ նրանց դեմ: Վասակը չէր կարող սպասել, որ մինչև զորքը հավաքվի: Նա հինգ հարյուր մարդով առաջ անցավ: Այլազգիների զորքից դուրս եկավ մի ախոյան՝ սև խափշիկ, որ կոչվեր Յոթ գայլն, որ իբրև «սև ամպ որոտալով, բոց արձակելով իր զրահներից» Վասակին կանչեց մենամարտի: Վասակի ընքակաները սարսափած էին, քանզի «նման մի մարդ դեռ երկրի վրա չէր ծնվել»: Վասակը հանգստացրեց նրանց և ասաց. «Ես դուրս կգամ նրա դեմ և նրան կտամ այն նույն պարգևը, ինչ Դավիթը տվեց Գողիաթին»: Խափշիկը գազանաբար վրա հասավ, որ գեղարդի վրա առնի Վասակին: Իսկ Վասակը փութաց և պողովատ թրով այնպես խփեց խափշիկի գլխին, որ նորա սաղավարտը երկուսի բաժանվեց, իսկ «մասունք մարմնոյ յերկիր անկանէին» (23):

### 7. ՀԱՍԱՆ ԵՎ ՃՆՃՂՈՒԿ (1042 թ.)

[Հասանը և Ճնճղուկը] Վասպուրականի Խաչիկ իշխանի որդիներն էին: [Նրանք] նոր էին վերադարձել Թրակիայից, ուր կռվել էին կայսրության թշնամիների դեմ: Իրենց բացակայության ժամանակ Խաչիկ իշխանը և նրա կրտսեր որդին՝ տասնհինգամյա պատանի Իշխանը, զոհ էին գնացել Սալմաստի մուսուլման ցեղերի հարձակումների ժամանակ:

Վրեժ լուծելու համար մի քուրդ են կաշառում և ղրկում Սալմաստ՝ լուր տարածելու, թե Խաչիկ իշխանի կալվածքն անպաշտպան է, «զի՞ կայք պարապ»՝ ոչխարների բազում հոտեր անտերունչ թափառում են: Քուրդն այդպես էլ արեց: Այլազգիները 15 հազարով արշավեցին [Վասպուրական]: Հասան և Ճնճղուկ ունեին 5.000 զինվոր:

Որպես «խոցված գազան» Հասանը հարձակվելով թշնամու բանակի վրա ձայն է տալիս. «Ո՞վ է, ո՞ր է այն մարդը, որ սպանեց հորս՝ Խաչիկին, թո՛ղ առաջ գա»: Եվ ահա դուրս եկավ մի այլազգի սև մարդ և հզոր ձայնեց. «Ես եմ, որ սպանեցի առյուծ Խաչիկին և ահա նրա պատերազմական ձին, զգեստը, նշանակն ու թուրը ձեռքիս է»: Հասան տեսնելով հոր ինչքը սկսեց լալ և թուրը հանելով պատյանից, առյուծի պես ս լացավ նորա վրա և

հարվածելով երկու կտոր արեց, գետին տապալեց և [հոր] ձին ու նշանակը խլեց:

Նման կերպով ձայն տվեց և Ճնճղուկը. «Ո՞վ է սպանել իմ մանուկ եղբորս՝ Իշխանին, թո՛ղ առյան դուրս գա, որ տեսնեմ նորան»: Դուրս եկավ մի քաջ պարսիկ և ասաց. «Ես եմ քո եղբայր Իշխանին սպանել, ահա նորա սպիտակ ձին, վառ նշանակը և թուրը»: [Ճնճղուկը] կայծակի նման վրա հասավ, մի հարվածով սատակեցրեց նորան և առնելով [եղբոր] ձին և նշանակը դարձավ հետ:

Հայոց զորքերը խանդավառված հարձակվեցին թշնամու վրա, «դարձուցին ի փախուստ և կոտորեցին ի նոցանէ արս չորս հազար» (24):

## 8. ԱՐԿՆԻ ԱՄՐՈՑԻ ԻՇԽԱՆ ՀԱՐԵԼԻ ՀԱՐՊԻԿ, ԴԱՎԻԹ, ԼԵՎՈՆ ԵՎ ԿՈՍՏԱՆԴԻՆ ՈՐԴԻՆԵՐԸ (1052 թ.)

Քսու և նենգավոր մարդիկ գնացին [Կոստանդին] Մոնոմախ կայսրի մոտ և ամբաստանեցին Չորրորդ Հայքի Պաղին գավառում բնակվող հայոց իշխաններին, թե նրանք «անհնազանդ կան հրամանաց քոց և կամին ապստամբ լինել ի քէն» (25): Բյուզանդացիները ավերեցին բովանդակ գավառը: Նրանք ցանկացան ձերբակալել նաև Արկնի կոչված մեծ ամրոցի տեր Հարել իշխանի չորս քաջ և հզոր որդիներին՝ Հարպիկին, Դավիթին, Լևոնին և Կոստանդինին: Եղբայրներից ավագը՝ Հարպիկը, նենգությամբ զոհ գնաց, մյուսները գերի տարվեցին մայրաքաղաք:

Կայսրը և բոլոր հույները ապշել էին տեսնելով նրանց ահեղ արտաքինը («սոսկալի տեսիլ կերպարանացն»), քանզի իրենց հաղթանդամությամբ նրանք գերազանցում էին բոլոր հույներին («ահաւոր էին տեսլեամբ և թիկամբքն հանդերձ բարձր էին քան զամենայն տունն Յունաց»): Կայսրը նրանց գեղեցիկ, հաղթանդամ արտաքինը նկատի ունենալով մարմնական ոչ մի պատժի չենթարկեց, այլ հրամայեց քաջ, հզոր և երևելի իշխաններ Դավթին, Լևոնին և Կոստանդինին կղզի աքսորել (26):

## 9. ՍԱԴՈՒՆ ԱՐԾՐՈՒՆԻ (1256 թ.)

[Մոնղոլական] Մանգու Մեծ խանի կողմից Հայաստանի, Վրաստանի, Իրանի և Մերձավոր Արևելքի կառավարիչ Հուլավու խանի մոտ է գալիս «մուղալ ազգաւ» (= մոնղոլ) հույժ ահագին, երկայն հասակով, թիկնեղ, շլինքը «զերդ զգոմիշու», ձեռներն աննռնի իբրև արջի, մի մարդ: Սա ամեն օր ուտում էր մի ոչխար: Նա Մանգու խանից գիր էր բերել և մի անգին կապա: Գրի մեջ ասված էր, թե իմ եղբոր Հուլավու խանի մոտ եթե զանվի մի բավքա

(= ըմբիշ), որ գետնի այս ըմբիշին, թո՛ղ նրան լինի կապան: Իսկ եթե այս բավքան հաղթե, թո՛ղ կապան նրան հազցնեն և մեծ դեսպանությամբ ու պատվով հետ ուղարկեն իր մոտ:

Հուլավուն կանչեց իր զորքերի բոլոր գլխավորներին և հարցրեց, թե գիտեն ո՞րևէ մարդ քաքար, հայ կամ վրացի, որ կարողանա մենամարտել Մանգու խանի բավքայի հետ: Սակայն քաքարների մեջ այդպիսի մեկը չգտան, քանզի «ով տեսանէր զայրն զայն՝ ամենայնն վախէին ահագին հասակէն և ի տեսոյ նորա»: Իսկ հայ և վրացի իշխաններն ասացին, որ միայն մի մարդ կա, որ կարող է ճար լինել, այդ Արծրունյաց Սադունն իշխանն է, բայց այստեղ չէ, «այլ կայ ի տուն իւր»: Սադունը «էր երկայն և վայելուչ հասակաւ, յոյժ ուժեղ ի մանկութենէ» (27) և մենամարտերի մեջ փորձառու ու կիրթ:

Խանը մարդ ղրկեց նորա հետևից: Լսելով հրամանը Սադունը խիստ տրտմեց, որովհետև երբեք չէր մենամարտել խանի առաջ, իսկ հաշվակիցը ահագին էր և ուժով: Սադունը նախ գնաց Գագ՝ «առ ամենահաս Սուրբ Սարգիսն» և ուխտ ու մատաղ արեց, ապա ճանապարհ ընկավ Հուլավուի մոտ: Երբ խանը տեսավ Սադունին, նորա կորովը և երկայն հասակը՝ հույժ ուրախացավ: Նա հրամայեց, որ երկու ըմբիշներն հինը օր միասին կենան, որ օրն ուտեն մի ոչխար և խմեն մի տիկ գինի:

Երբ սահմանված օրերն անցան, [խանը] հրամայեց բոլոր գլխավորներին ժողովել իր առջև և կանչելով երկու ըմբիշներին հրամայեց մենամարտել: Երեք ժամ տևեց մենամարտը՝ ցերեկվա ժամը 3-ից մինչև 6-ը, և ըմբիշները չէին կարողանում միմյանց հաղթել: Սակայն Սադունը ուժգին բախմամբ զգետնեց Մանգու Մեծ խանի ախոյանին և հույժ բարձրացավ Հուլավու խանի աչքին: Խանը յառլիկ («փառլախ») գրեց «և թողուլ նմայ մինչև ի յինն զունահն» (28):

№ 2

# ՑՈՒՑՄՈՒՆՔ «ԴԱՇՆԱԿՑՈՒԹՅԱՆ ԳՈՐԾԻ» ԱՌՆՉՈՒԹՅԱՄԲ

## ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆ

26 հոկտեմբերի 1910 թվական

Սանկտ Պետերբուրգի 12-րդ տեղամասի դատական քննիչը քրեական դատավարության օրենսգրքի 442-րդ հոդվածի պահպանմամբ հաջորդիվ իր աշխատասենյակում որպես վկա հարցաքննեց ներքոանվանյալին և որը երդմամբ տվեց հետևյալ ցուցմունքները:

**Նիկողայոս Գևորգի Աղոնց, 37 տարեկան (1):**
**Սանկտ-Պետերբուրգի համալսարանի պրիվատ-դոցենտ:**
**Բնակվում եմ Սանկտ-Պետերբուրգում՝ Եկատերինյան ջրանցք, տուն 27, բնակարան 14:**
**Հայ Գրիգորյան հավատքի եմ:**
**Դատված չեմ եղել:**

Գործով հայտնում եմ հետևյալը՝ գրելով անձամբ:

1906 թ. հուլիսի 24-ին կայացավ Ս. Պետերբուրգի հայկական եկեղեցիների ծխականների ժողով՝ Նախիջևան քաղաքում առաջիկայում կայանալիք թեմական ժողովին Ս. Պետերբուրգի հայկական եկեղեցիների ներկայացուցչի ընտրության վերաբերյալ: Նախիջևանի ժողովը, որին մասնակցելու էին Ռուսաստանի Հայոց թեմի բոլոր եկեղեցիների ներկայացուցիչները, պետք է ընտրեին Էջմիածին՝ ռուսահայոց առաջին կենտրոնական համագումար (2) ուղարկելու համար պատգամավոր:

Ս. Պետերբուրգի հայկական եկեղեցիների ծխականների ժողովի նախագահը ես էի՝ Նիկողայոս Աղոնցս (3): Համապատասխան թեկնածուների առնչությամբ մտքերի որոշ փոխանակությունից հետո, ժողովը հանգեց Սիմաս Բերբերյանի (4) թեկնածությանը՝ առաջնորդվելով բացառապես այն հանգամանքով, որ վերջինս բնակվում էր Նախիջևանում և պատվիրակի առաքումն ընդհանրապես ծախսեր չէր պահանջի: Ծխականները ցանկություն հայտնեցին, որ ներկայացուցչի ընտրությունն առաջին հերթին

ծախսեր չհարուցի, ուստի սկզբունքորեն որոշվեց [այս մեծագույն պատիվը] փոխանցել Նախիջևանում բնակվողներին, թեպետև եթե մեր ծխականների շարքում չգտնվեր այնպիսի մի անձ, որ ցանկություն կհայտներ Նախիջևան՝ ժողովի մեկնել իր հաշվին: [Մեր ծխականներից] Պողոս Չուբարյանցը (5) հայտնեց, որ ամռանը ինքը հայրենիք է վերադառնալու՝ Նախիջևանի մերձակա գյուղերից մեկը (6): Նա համաձայնեց սատարել Ս. Պետերբուրգի ծխականներին և իբրև Ս. Պետերբուրգի հայկական եկեղեցիների ներկայացուցիչ մասնակցել նախիջևանյան ընտրություններին: Այսպիսով, երկու թեկնածու նախանշվեց՝ Մինաս Բերբերյան և Պողոս Չուբարյանց: Ժողովը կանգ առավ առաջինի թեկնածության վրա՝ ի նկատի ունենալով այն, որ նա համարվում էր «Նոր Դար»-ական և երկար տարիներ աշխատակցել էր Թիֆլիսում հրատարակվող «Նոր Դարին» (7) (ի մասնավորի այս պարբերականը Հայ եկեղեցու հոգևոր շահերի պաշտպանի համարում ուներ), ուստի նա՝ Բերբերյանը, առավել քաջատեղյակ էր Հայ եկեղեցու և նրա իրավասության ներքո գտնվող դպրոցների առօրյա կարիքներին, հենց որոնց կարգավորման համար էլ գումարվում էր Էջմիածնում հրավիրված Ռուսահայոց առաջին կենտրոնական համագումարը: Ճիշտ է, Ս. Պետերբուրգի ժողովին ներկա գտնվող Մինաս Բերբերյանի եղբայրը՝ Նիկողայոս Բերբերյանը, ժողովականներին զգուշացրեց, որ հնարավոր է, որ եղբորը չհաջողվի Նախիջևան մեկնել, բայց քանի որ դրան զուգահեռ կարծիքներ էին հնչում, թե ինչ որ մեկը տեսել և լսել է նրանից, որ ինքը պատրաստվում է Նախիջևան մեկնել, ուստի ժողովն ընտրեց Մինաս Բերբերյանին: Միևնույն ժամանակ Ս. Պետերբուրգի համայնքի մի քանի անդամներ առաջարկեցին ընտրել ևս մեկ ներկայացուցչական թեկնածու այն պարագային, եթե Բերբերյանն իսկապես չկարողանար ներկա գտնվել Նախիջևանի խորհրդակցությանը: Իբրև թեկնածու ընտրվեց Պողոս Չուբարյանցը: Այնպես պատահեց, որ Բերբերյանը իրոք չէր կարող մեկնել Նախիջևան. այդ մասին նա գրեց ինձ և ցավ հայտնեց, որ զրկված է Ս. Պետերբուրգի հայկական համայնքի՝ իրեն տրված պարտականությունը կատարելու հնարավորությունից: Միևնույն ժամանակ Չուբարյանցն արդեն Նախիջևանում էր և, հավանաբար հասկանալով, որ Բերբերյանն այլևս Նախիջևան չի ժամանի, խնդրում է տեղի եկեղեցական պատասխանատուներին իրեն ընդունել իբրև Ս. Պետերբուրգի հայկական եկեղեցիների ներկայացուցիչ: Նախիջևանից Չուբարյանցի վերաբերյալ հեռագրական հարցում եղավ: Այնուհետև, թե ինչ եղավ Նախիջևանում և ինչ կատարվեց համաժողովում՝ ինձ հայտնի չէ: Այն ժամանակ ես ինչ-որ բան կարդացել եմ թերթերում, բայց հիմա նույնիսկ չեմ

էլ հիշում, թե ինչ էր պատահել: Ինչ վերաբերում է մեր ժողովի ընթացքում Չուքարյանցի և Դ. Զավրիևի (8) միջև տեղի ունեցած վիճաբանությանը՝ դեպքերն այսպես են ընթացել:

Ժողովականներից Դ. Զավրիևը առաջադրված երկու թեկնածուներից արտահայտվեց հօգուտ Բերբերյանի, հատկապես նկատի ունենալով նրա վերոբերյալ բնութագիրը: [Նա նաև նշեց], որ հոգևոր անձին, որպիսին է Չուքարյանցը (ըստ աստիճանի սարկավագ), հարմար չի լինի ներկա գտնվել այնպիսի մի համաժողովի [էջմիածնի], որ պետք է զբաղվի ընդհանրապես հոգևոր դասի գործունեության քննությամբ և քննադատությամբ (9), և, բնականաբար, իբրև սարկավագ առանց սեփական արժանապատվությունը վնասելու չէր կարող անկողմնակալ լինել նման գործերում: Չուքարյանցը ոչ միայն առարկում էր, այլ նաև չէր համաձայնում Զավրիևի և ժողովի մյուս մասնակիցների հետ այն հարցում, որ Բերբերյանի թեկնածությունն առավել հարմար է, և որ ինքը հիանալի է ճանաչում Բերբերյանին որպես իր նախկին ուսուցչի և անգամ հրաժարվում է հօգուտ նրա հանել իր թեկնածությունը:

Կուսակցական սպառնալիքների մասին մեր ժողովի ժամանակ խոսք չի եղել և չէր էլ կարող լինել, քանի որ նախագահն ընտրված էր հենց այն բանի համար, որ քննարկումները դուրս չգային ժողովի նախանշված նպատակների շրջանակից: Բացի այդ, ներկաներից ոչ ոք չէր կարծում, թե հավաքին մասնակցում էին կուսակցական անձինք. դա մի ժամանակ էր, երբ յուրաքանչյուր ոք հանդես էր գալիս իբրև այս կամ այն կուսակցության համախոհ կամ առավել ևս առաջնորդ: Պարծենկոտ խոսելաոճով հատկապես աչքի էր ընկնում Չուքարյանցը, որ ներկայանում էր ոչ թե իբրև կուսակցության անդամ, այլ կուսակցական գործերի գիտակ: Կատակով տրված հարցին ի պատասխան, թե [Դաշնակցություն] կուսակցությանն ինչպե՞ս կարող է նման մարդու ընդունել իր շարքերը, նա խոստովանեց, որ իրականում ինքը ոչ մի կազմակերպության չի անդամակցում և չի էլ կարող՝ համաձայն իր հոգևոր կոչումի, իսկ մարդիկ նրան վստահում էին իբրև հոգևորականի (10): Նրա ասածներից շատ բան համապատասխանում էր իրականությանը: Նման խոսակցությունները տեղի են ունեցել ժողովից հետո՝ եկեղեցու բակում, դպրոցական հանձնախմբում: Կրկնում եմ, ժողովի ժամանակ կուսակցական խոսակցություններ չեն եղել, չեն եղել նաև կուսակցական անձինք. հարցը զուտ եկեղեցական էր, և ներկա էին մարդիկ, որ հետաքրքրված էին եկեղեցական գործերով. 21-25 հոգուց ոչ ավել: Ոչ ոք գործին լուրջ նշանակություն չէր տալիս, և բոլորն էլ շտապում էին ավարտել և հեռանալ:

Ժողովն անգամ պատկերացում չուներ այն մասին, թե ում կընտրեն պատգամավոր Նախիջևան գնալու համար: Կարծում էին, թե որոշվում է Նախիջևանի եկեղեցիների ներկայացուցիչների ձայների [հարցը] և այլ քաղաքներից (այդ թվում և Ս. Պետերբուրգից) եկած ներկայացուցիչներն ազդեցություն չեն կարող գործել: Այդ իսկ պատճառով որևէ մանդատ չի տրվել ներկայացուցիչներին: Եվ ես հավաքի ժամանակ ոչ մի արտոնություն չեմ տվել Չուբարյանցին՝ որպես պատգամավոր Էջմիածնի համագումարի ընթացքում արտահայտվելու այս կամ այն պատվիրակի օգտին: Իսկ թե ինչու է Չուբարյանցը ընտրվել, ինձ բացարձակապես հայտնի չէ:

**Նիկոլայ Գևորգի Աղոնց**
**Իսկական է առկա ստորագրություններով**

№ 3

# ՀԱՆՐԱԳԻՏԱՐԱՆԱՅԻՆ ՀՈԴՎԱԾՆԵՐ

## Ա. ՀԱՅԱՍՏԱՆ

**I. ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ.-** Հ[<այաստանը>, այսուհետև՝ Հ.] մինչ հայերը: Ջրաղեցնելով Եփրատի և Տիգրիսի վերին հոսանքները՝ իր դիրքի շնորհիվ Հ. հնուց ի վեր գտնվում էր Հին Արևելքի մշակութային ոլորտում: Ք. ա. 2-րդ հազարամյակի սկզբին առաջին անգամ ոտք դնելով Հ. տարածքը ասորեստանցի քաղավորները այնտեղ հանդիպեցին մանր տոհմային կազմավորումների մի ընդարձակ ցանցի: Երկրի լեռնային բնույթը նպաստում էր մասնատված խմբերի՝ դաշտավայրերում ներամփոփ տոհմային կյանք վարելու հանգամանքին: Արձանագրությունները պահպանել են անվանումները բազմաթիվ շրջանների և դրանց մանր կառավարիչների, որ տարբեր աստիճանի ենթակայության և գերակայության հարաբերություններ մեջ էին: Ըստ ամենայնի, եթե ոչ տոհմային, ապա աշխարհագրական հանգամանքները նրանց բաժանում էին մի քանի նշանակալի խմբերի: Ասորեստանին մերձակա շրջանը՝ Տիգրիսի և Եփրատի վերին հոսանքներից մինչև Ուրմիա, կրում էր Նաիրի ընդհանուր անունը: Ավելի հյուսիս՝ վերին լեռնային գոտում, Արածանիի մոտ, Ուրարտու երկիրն էր, ավելի հեռու՝ Արևմտյան Եփրատի ուղղությամբ Դայանի, իսկ նրա հարևանությամբ՝ Սուխմի երկրներն էին: Ասորեստանցիների արշավանքի պահին այս բոլոր ցեղերը միավորված էին Նաիրիի գլխավորությամբ. նրանց հետ առաջինն առնչված ասորեստանցի թագավորները տեղացիներին անվանում էին Նաիրիի ժողովուրդներ և 23-60 մանր թագավոր կամ ցեղապետ են հաշվում նրանց մեջ: Նաիրին գլխավորում էր Սարդուրի I արքան՝ Լուտիպրիսի որդին: Նաիրիի գերակայությունը շարունակվում է մինչ Ասուրնասիրպալի ժամանակները (885-860 ն. Ք.): Նրա որդի Սալմանասար II-ի օրոք (860-826) գերագույն իշխանությունը Նաիրիից անցնում է Ուրարտուին. իբրև թագավոր հանդես է գալիս Արամեն՝ Արզաշկու մայրաքաղաքում (= հավանական է հայ **Արճք**): Սալմանասար II-ի հաջորդները պատերազմում էին Սարդուր II-ի և նրա **որդի Իսպուինիսի** հետ: Իսպուինիսի որդի Մենուան հաստատվեց Վանում: Նրա ժամանակակիցն էր ասորվոց

Արադնիրարի IV արքան (812-783) : Մենուան վերջինիս հետ փոփոխական հաջողությամբ կատաղի կռիվներ էր մղում: Մենուայի որդին՝ Արգիշտի I-ը (մոտ 778-750), Ասորեստանի հետ պայքարում հաղթանակ տարավ և աշխարհի հպարտ տիրակալ երկրին իջեցրեց հասարակ վասալի աստիճանի: Խալդերի կամ Ուրարտու պետության սահմանները արևմուտքում ընդլայնվեցին մինչև Կիլիկիա: Արգիշտիին է պատկանում Վանի մեծ՝ 400-տողյա արձանագրությունը: Արգիշտի I–ի հիմնադրած տերությունը իր դիրքերը կորցրեց Ռուսա I-ի օրոք, որ Սարգոն II-ից (722-708) պարտություն կրելով՝ 714 թ. հուսահատությամբ անձնասպանություն գործեց: Ուրարտական պետության քաղաքական կյանքը՝ հանուն համաշխարհային տիրապետության անդադար մղվող պայքար էր Ասորեստանի հետ, մինչև VII-VI դարերի սահմանագծին՝ կիմմերական արշավանքների ժամանակ երկու հակառակորդները դուրս մղվեցին պատմության թատերաբեմից (տե՛ս հոդվածի վերջում հիշատակված աշխատությունները՝ (C. F. Lehmann-Haupt, նաև՝ М. Никольский, Матеріалы по Археологій Кавказа, հատ. V, «Клинообразные надписи Закавказья», М., 1896): Նաիրիի և Ուրարտուի բնակչության էթնիկ կազմն ու ծագումը տակավին հայտնել է: Ուրարտուն հորն, եռաշռաղ հիշատակվում է լոկ ասորեստանյան արձանագրություններում. նույն երկիրը Վանի արձանագրություններում կոչվում է Բիայնա կամ գլխավոր Խալդ աստվածության անվամբ Խալդերի երկիր, իսկ ժողովուրդը՝ խալդինի՝ այսինքն՝ խալդյան: Ուրարտուն հայտնի է Հերոդոտոսին որպես մեկը Հ. ազգություններից αλαρόδιοι ձևով, դրանից բխված ձև է համարվում Այրարատը: Խալդերը դասականներին լավ հայտնի Հ. ժողովուրդ են: Նրանց շառավիղները ցայժմ ապրում են Բայբուրդի շրջակայքում, հին հայ հեղինակների խոսքով՝ Խաղտիքում: Ուսումնասիրողների կարծիքով Հ. առաջին բնակիչները այսպես կոչված խեթական ռասայից էին (տե՛ս **Խեթեր**): Եգիպտական հնագույն հուշարձանները վկայում են, որ Ք. ծ. ա. XVI-XII դարերում Առաջավոր Ասիայում ծաղկում էր խաթթի ժողովրդի հիմնած բավական զորեղ պետությունը: Ամբողջ Փոքր Ասիայով սփռված արձանագրությունները ու քանդակազարդ պատկերները խեթական մշակույթի բարձր զարգացման և տարածվածության ապացույցն են: Խեթական ծագման վաղ պետությունների թվին է դասվում նաև Միտաննին, որ Եփրատի [հովտում էր]՝ Հ. անմիջական հարևանությամբ: Ասորեստանցիները Միտաննին Նաիրյան են կոչել, որ նշանակել է Գետերի երկիր: Հետազոտողները այս անվանմանը մոտ են համարում հարավ-հայկական հողերի՝ Նաիրի անվանումը, և հիմնվելով հոգևոր պաշտամունքի և որոշ հատուկ

անունների նույնության վրա, հանգում են Նաիրիի, Միտաննիի ու նրանց միջոցով խեթերի ազգակցության մասին տեսակետին: Հենց Միտաննի պետության անկումը, որ Սալմանասար II-ի օրոք էր, համընկնում է Նաիրիի վերելքի հետ. ըստ երևույթին գլխավոր դերակատարությունն անցավ խալդյան ցեղերի մերձավոր ազգականներին՝ Նաիրի, իսկ հետո նաև Ուրարտու երկրներին: Նույն ժամանակ Միտաննիի հարևան Կապադովկիայի խեթական հողերն անցնում են հյուսիսից ներխուժած մոսխերի և նրանց ազգակից ցեղերի տիրապետության ներքո: Այդ բոլոր ցեղերն ի՞նչ կապ ունեն խեթերի հետ և էթնիկ առումով վերջիններս իրենցից ի՞նչ են ներկայացնում: Այս հարցի լուծումը կապված է մեկ այլ՝ առավել ընդհանրական խնդրի հետ, որ դեռ չի հատել կարծիքների և տեսակետների սահմանը. փոքրասիական տարածքների բնակեցվածությունը մինչ արիաեվրոպացիների ներխուժումը: Առավել հավանականը խեթական տեսությունն է, համաձայն որի հնարավոր է համարվում սեմական և արիաեվրոպական ռասաների հետ մեկտեղ նաև խեթական ժողովրդի մեծ ընտանիքի գոյությունը: Նրանց բողած գրությունները դեռ չի հաջողվում վերծանել, սակայն տվյալներ կան, որ ապացուցում են նրանց մշակույթի յուրօրինակությունն ու մեծ տարածումը: Գիտնականները հակված են խեթական ընտանիքի անդամների թվին դասելու նաև Հ. վաղնջական բնակիչներին: Նրանց ազգակցությունն այնքան անվիճելի է, որ Ֆ. Հոմմելն առաջարկում է բնիկ ռասան անվանել խեթական ալարոդյան («Geographie und Geschichte des Alten Orients», 1904, Մյունխեն): Ավելի զգուշավոր գիտնականները Հ. նախաբնիկներին և մոտակա հարևաններին՝ իբերներին, կոլխերին, մոսխերին, թիբարեններին (թուբալներ), տաոխ կամ տայքներին (սաորեստանցիների՝ հայանի), ծաներին ընդգրկում են միևնույն խմբում չլուծելով նրանց և խեթերի ազգակցության հարցը (Ed. Meyer, Geschichte des Altertums, I., 2-րդ հրատ., 1909): Այս տեսակետն ընդառաջ է գնում հաբեթական տեսությանը, որ նույնպես ազգակցության մերձավոր կապերով է համակցում հիշյալ ցեղերին: Տեսության հեղինակ ակադեմիկոս Ն. Մառի կարծիքը հիմնված է ժամանակակից կենդանի լեզուների՝ վրացերենի, մեգրելերենի, լազերենի, սվաներենի ինչպես և հայերենի ոչ-արիական տարրերի համեմատական վերլուծության վրա: Խեթական աշխարհին մերձ գտնվող այս կոլխյան խմբի լեզուների նմանությունը սեմական լեզուներին աչքի չի ընկնում. այն թաքնված է հնչյունական յուրօրինակ փոփոխությունների շերտի ներքո, որոնք ոչ միայն բաժանում են նշյալ լեզուները սեմականներից, այլև տարանջատում են դրանք միմյանցից: Կոլխյան լեզուների նոր սկզբված հետազոտության միջոցով ձեռք բերված արդյունքները կարող են կամուրջ

հանդիսանալ իրենց նախալեզվի և այլ՝ այժմ մեռած ճյուղերի միջև, որոնք ծաղկել են նախաարիական հնադարում, իսկ սա, իր հերթին, հնարավոր է, մեզ կշնորհի Հ. մեկ սփռված ուրարտական արձանագրությունների լեզվի բացահայտման բանալին: Ուրարտական և խեթական էթնիկ ծագումնաբանական հարցերի լուծումն ապագայի խնդիր է. այն կարևոր նշանակություն ունի Հայոց պատմության համար, ազգի, որ ժառանգել է նրանց մշակույթով պարարտացված հողն՝ իր մեջ ներառելով նրանց բեկորները: Այդ իսկ պատճառով Ուրարտուն Հայոց պատմության նախապատրաստական գլուխն է, ներածությունը:

II. **Հայոց ծագումը**.- Ուրարտական և խեթական պետությունները կործանվեցին կիմմերների արշավանքի արդյունքում, որ ուղեկցվում էր Ք. ծ. ա. VIII-VII դդ. ազգերի մեծ տեղաշարժով: Կիմմերներ են կոչվում արիաեվրոպական ցեղերը, որ բնակվում էին հարավ-ռուսական տափաստաններում Վոլգայից մինչև Դնեպր: VIII դարում Արևելքից իրենց հակազդող սկյութների կամ սակերի ճնշման ներքո կիմմերները շարժվեցին դեպի Արևմուտք՝ դեպի Դանուբ, մտան Թրակիա և իրենց հետ վերցնելով թրակիական ցեղերը (այդ թվում փռյուգիացիներին և հայերին)՝ ուղղվեցին դեպի Փոքր Ասիա և հասան Ալիս գետի ակունքներին: Սկյութների կողմից հետապնդվող կիմմերների մյուս մասը Կովկասյան լեռնաշղթայի վրայով շարժվեց դեպի հարավ՝ ուրարտական տիրույթները, սակայն 720 թվին կանգնեցվեց և ետ շպրտվեց ասորվոց Սարգոն II թագավորի կողմից: Դատելով ըստ նրա, որ հայերը հարևան Կապադովկիան կիմմերական էին կոչում Գամիրք, պետք է կարծել, որ կիմմերները հաստատվել են նաև այնտեղ: Կապադովկիայից նրանք հանկարծակի հարձակումներով անհանգստացնում էին հարևան երկրները՝ Լիդիան, Ուրարտուն և նույնիսկ Ասորեստանը: Նման հարձակումներից մեկի ժամանակ՝ 675 թ. նրանց պարտության մատնեց ուրարտական Ռուսա II թագավորը: Սկյութները կիմմերների հետքերով անցան Կովկասյան լեռները և հեղեղեցին Ուրարտուն և Լիդիան: Իրենց թագավոր Մադեսի օրոք քիչ էր մնում, որ նրանք իրադրության տերը դառնային՝ ջախջախելով Լիդիան, Ասորիքը և կիմմերներին: Սակայն շուտով մեդացվոց առաջնորդ Կիաքսարը սանձեց նրանց՝ խնջույքի ժամանակ սպանելով Մադեսին: Միաժամանակ նաև լիդիացիները ընկճեցին կիմմերների ուժերը: Դեմ առ դեմ մնացին Լիդիան և Մեդիան: 585 թ. Ալիս գետի ճակատամարտը հարցը լուծեց հօգուտ Մեդիայի: Այս շրջանում մահացավ ուրարտական վերջին արքան՝ Ռուսա III-ը: Եվ քանի որ Լիդիայի և Մեդիայի 585 թ. պայմանագրով սահման էր ճանաչվում Ալիս գետը, ուստի ուրարտական տարածքները մտան

Մարականն պետության կազմի մեջ։ Հերոդոտոսը հայերին համարում է Փռյուգիայից արտագաղթած, սա հաստատվում է Եվդոքսիոսի խոսքով, որ «հայերը ծագմամբ Փռյուգիացի են և լեզվով խիստ նման են նրանց»։ Այս վկայություններից ելնելով՝ գիտնականները ընդունում են, որ հայերը պատկանում են փռյուգիական ցեղերին, և նրանք սկզբնապես բնակվել են Թրակիայում։ Համարվում է, որ կիմմերական շարժման ալիքի հոսքով նրանք եկել են Փոքր Ասիա, իսկ հետո, անջատվելով իրենց փռյուգիացի ազգակիցներից, առաջ են ընթացել՝ հաստատվելով Ալիս գետի վերին հոսանքների մերձակայքում՝ Եփրատի աջ ափին։ Բութանիայի և Պափլագոնիայի գլխավոր լեռնաշղթաները (Ὀρμίνιον ὄρος, **Ptol**. V., 1, 10) և Սինոպի նավահանգիստը ՚Αρμένη նշում են այն ճանապարհը, որով անցել են հայերը։ Ստրաբոնի երկում պահպանված ավանդությունը, համաձայն որի հայերը ծագում են Թեսալիայի Արմենիոն քաղաքից, բացատրելի է նրանով, որ հայերի մի մասը Թրակիայից մղվեց Թեսալիա։ Դասական հեղինակների հիշատակություններն արդարացվում են հայերենի քննությամբ, որ իր հիմքով արիաեվրոպական է։ Փռյուգիացի-հայերը գրավեցին այն տարածքները, որ հետագայում կոչվեցին Փոքր Հայք, և Մեծ Հայկական սարահարթի մատույցներում Սկիդեսի (այժմ՝ Կարաբելդաղ) լեռներում, նրանք թագավորություն հիմնեցին. տեղի բնակչությունը նրանք կամ դուրս մղեցին դեպի Սև ծով և կամ իրենց ենթարկեցին։ Այստեղից նրանք զավթողական հարձակումներ էին կազմակերպում Ուրարտու պետության վրա։ Հայերի [հաջող] հարձակումներին զգալի չափով նպաստում էին Մարսատանի արքա Կիաքսարի հաղթանակները, Կիաքսարի, որ ուժասպառ էր արել Ուրարտուն և հասել մինչև Ալիս։ Կարճ ժամանակում հայերին հաջողվեց տիրանալ ուրարտական թագավորների ժառանգությանը և տիրել այն հողերին, որ այդ ժամանակներից սկսեցին անվանել Հ.։ Առաջին անգամ 521 թ. Դարեհի արձանագրության մեջ հանդիպում է Արմինա երկրանունը, իսկ նրա դիմաց բաբելոնյան թարգմանության մեջ Ուրարտու (= ասոր. Ուրաշտու) է՝ իբրև Հ. համարժեք արտահայտություն։ Հայերն առաջին արիաեվրոպացիները չէին ուրարտական տարածքում։ Միտաննիի արքայական տոհմը ևս ուներ արիաեվրոպական ծագում. խոսում են անգամ ուրարտական արքաների նմանատիպ ծագման մասին։ Երկրում առկա արիաեվրոպական տարրերը պետք է դրական դերակատարություն ունենային հայերի՝ Ուրարտուն գրավելու ժամանակ և հանդես գային իբրև շաղախ՝ պարտվածների և հաղթածների ձուլման գործում։ Բնիկների մի մասը, որ չենթարկվեց հաղթողներին, պատսպարվեց անմատչելի լեռներում և երկար ժամանակ

համկարծահաս գրոհներով անհանգստություն էր պատճառում հարթավայրերի հայ բնակչությանը: Նրանց մնացորդները գոյատևեցին հյուսիսում՝ Ճորոխի վերին հոսանքներում, այն տարածքում, որ իրենց անվամբ Խալդիկա էր կոչվում, ինչպես և հարավում՝ Տիգրիսի արևելյան և արևմտյան վտակների խառնման վայրում՝ Խալդի (ներկայումս՝ Խալդի-դաղ) լեռներում: Երկու էթնիկ տարրերի խառնումով ձևավորվեց հայ ազգի հյուլեն, որ գնալով ընդլայնվեց շրջակա երկրներից ներհոսող էթնիկ երակներով: Երկտարր միջուկի հետ է կապվում հայերի երկակի անվանումը՝ haï իրենց միջավայրում և armeni-us (arminiya Դարեհի արձանագրության մեջ) հարևանների կողմից: Սրա համեմատ նաև հին հայկական ավանդությունները, որ պահպանվել են Մովսես Խորենացու երկասիրությունում, հայոց երկու անվանադիր, երկու նահապետ են հիշում Haïk և Armen-ak: Արմենակը Հայկի որդին է, ասես պատմական հաջորդականությանը համապատասխան, երբ հայերը ճայտնվեցին իրենց տեղում: Չնայած անվանադրի հարցը դեռևս վիճելի է: Նույն այդ ավանդություններում հայկական պետության փաստացի հիմնադիր է համարվում Արամը, որ Ուրարտուի համանուն արքայի հետ միևնույն անձն է: Եթե ոչ Ուրարտուի հիմնադիր, ապա գոնե առաջին արքաներից մեկի՝ Արամեի հիշատակի կենսունակությունը խոսում է ուրարտական տարրերի հայոց ազգում վերածնվելու մասին: Հայկյանների՝ հայոց նահապետի առաջին սերունդների տարածման շրջանը, որ սահմանագծում է Մովսես Խորենացին, համընկնում է Ուրարտուի սահմաններին. պատմագրի նշած կենտրոնները՝ Վանը, Արմավիրը, Արարատի ստորոտը, Սևանի ափերը, Մանազկերտը, Արծկեն ցնցող ճշգրտությամբ համընկնում են ուրարտական սեպագրերի տեղադրությանը, այսինքն՝ ուրարտական մշակույթի գլխավոր կենտրոններին: Իբրև ուրարտական ազդեցության վառ ապացույց կարող է ծառայել այն, որ խեթա-ուրարտական աշխարհի գլխավոր աստված Տարկուն անգամ քրիստոնեության շրջանում հայոց մեջ դեռևս գոյատևում էր, ըստ ամենայնի, ահռելի ուժի տեր Տորքի կերպարով: Ուրարտական ավանդությունների միահյուսումը հայկականի հետ հիմնված է երկու ժողովուրդների իրական ազգակցական աղերսակցության վրա: Պատմության քառերաբեմում հայ ազգությունը ձևավորվել է պարսիկների երևան գալու հետ միաժամանակ՝ Ք. ա. VI դարի սկզբներին: Այդ ժամանակից ի վեր Հ. պատմությունը տեղավորվում է Արևելքի պատմության ընդհանուր շրջանակում:

III. **Տիգրանյան շրջան.**- Կյուրոս Մեծի (558-530) օրոք երկու հայ արքայազն է հիշատակվում՝ Տիգրան և Սաբարիս: Պարսից բարձրացումը նշանավորեց առաջատար դերի անցումը սեմականներից արիացիներին: Իբրև

արիացիների մի ճյուղ՝ հայերն անմաս չէին ռասայական հաղթանակին: Վերոհիշյալ թագաժառանգների հայրը Կիաքսարի դաշնակիցն էր, իսկ Տիգրանը Կյուրոսի համակրանքն էր վայելում: Նա եղբոր հետ մեկտեղ մասնակցել է Բաբելոնի պաշարմանն ու առմանը՝ 539 թվականին: Այս մասին է վկայում Երեմիա մարգարեն (ԾԱ, 27)՝ Բաբելոն վրա կոչելով Արարատյան թագավորությունները: Կյուրոսի դաշնակից Տիգրանի մասին տեղյակ են նաև Մովսես Խորենացու գրառած հայկական ավանդություն-ները: Կյուրոսի մահվամբ Պարսկաստանում սկիզբ առած խառնակու-թյուններին, ամենայն հավանականությամբ, ներքաշված են եղել նաև հա-յերը: Դարեh I-ի ժամանակ (522-484) պարսկական զորքերը գործում են Հ. «ապստամբ հայերի դեմ, որ չէին կամենում ճանաչել Դարեհին»: Հայերը հերոսական պայքար էին մղում և հարձակողական մարտերով հասան մինչև Ասորիք: Հինգ կատաղի ճակատամարտից հետո միայն Դարեհին հաջողվեց խաղաղեցնել հայերին: Բաբելոնի արքայական գահին միտված իր արի նկրտումների համար անհաջողություն կրեց հայազգի Արախան և իր կյանքով վճարեց (F. **Weissbach** und W. **Bang**, Die Altpersischen Keilinschriften, Լայպցիգ, 1893): Պարտություն կրած Հ. անցավ Պարսկաս-տանից կախում ունեցող երկրների շարքը: Այստեղ իբրև արքայի տե-ղապահ կարգվում էր սատրապը: 401 թ. երկու սատրապ է հիշատակվում. մեկը նստում էր Արևելյան Հ., մյուսը՝ Արևմտյան: Հայոց կախվածությունն արտահայտվում էր ռազմուժի տրամադրմամբ (20 հազար հետևակ և 4 հազար այրուձի) և հարկ վճարելու հանգամանքով. հայերը բակտրիացվոց հետ մեկտեղ տարեկան 400 տաղանդ արծաթ էին վճարում: Բացի այս, ըստ Ստրաբոնի, հայերը տարեկան 20 հազար նժույգ էին ուղարկում Պարս-կաստան: Երկրի ներքին իրավիճակի մասին կարելի է դատել հայկական գյուղի քսենոփոնյան նկարագրությունից՝ տեղի նահապետական դրվածքով և բավականին զարգացած գյուղատնտեսական մշակույթով: Մինչև Ալեք-սանդր Մակեդոնացու ի հայտ գալն այլևս ոչինչ հայտնի չէ. մենք անգամ չգիտենք, թե արդյոք Հ. վերացվեց արքայական իշխանությունը: Նկատի ունենալով, որ սատրապի իրավասությունները չէին ընդգրկում երկրում ընթացող կյանքի բոլոր կողմերը, շատ հավանական է, որ սատրապներին զուգահեռ կային նաև Տիգրան [Երվանդյանի] շառավիղներից տեղական կառավարիչներ՝ իբրև ներքին կառավարող համակարգ: Հայտնի է Ար-տավազդ (իմա՝ Արդոատես – Պ. Հ.) արքան, որն իր իշխանությունը պաշտպանում էր Ալեքսանդրի զորավար Պերդիկկասից. հիշատակություն կա նաև Փոքր Հ. արքայի մասին: Նրա վերջին արքաներից էր Անտիոքոս Մեծի զարմիկ Միհրդատը: Արքաներ գահակալել են նաև Ծոփքում.

Անտիոքոս Մեծի օրերում հիշատակվում են Արշամը (մոտ 240 թ.) և Քսերքսեսը: Պարսկական ազդեցությունը տարածվեց և ամրացավ ենթակա երկրներում. բոլոր ժողովուրդներն ընդունում էին պարսից բարքերն ու ավանդույթները և անշեղորեն ընթանում լիակատար պարսկականացման ճանապարհով: Աքեմենյան մեծիշխանության անկումից հետո հելլենականության ալիքն անցավ ամբողջ Արևելքով՝ կենդանացնելով նվաճված ժողովուրդների ոգին: Ալեքսանդր Մակեդոնացու ժառանգությունը բաժանելիս արևելյան տարածքները՝ Պարսկաստանը Հ. և Միջագետքով, բաժին ընկավ Սելևկոսին: Մեծ սատրապությունների բաժանումը մանր միավորների (մինչև 72) ճակատագրական եղավ Սելևկյանների կայսրության համար: Սելևկոսի այս բարեփոխումը, որ նպատակ ուներ թուլացնել սատրապների հզորությունը և կանխել նրանց տրոհումը կայսրությունից, վարչական բաժանումները վերածեց էթնիկ-խմբային բաժանումների և հակառակ ազդեցությունն ունեցավ: Սկսվեցին ենթակա ժողովուրդների ապստամբություններ և Սելևկյանների ողջ ներուժը ծախսվեց դրանց ճնշման համար: Առաջինը անջատվեց Պարթևստանը (մոտ 250 թ.): Մագնեսիայի ճակատամարտը (189), որում հռոմեացիները պարտության մատնեցին Անտիոքոսին, վերջնական հարված հասցրեց Սելևկյանների համաշխարհային տիրապետությանը: Դասական հեղինակներն այդ ժամանակաշրջանի հետ են կապում նաև Հ. վերածնունդը: Նրանց պատմության համաձայն Անտիոքոսի երկու ստրատեգոսները՝ Արտաշեսն ու Զարեհը, իրենց անկախ հռչակեցին. առաջինը Արաքսի հովտում, երկրորդը՝ Ծոփքում: Վերածնունդն սկսվեց Նաիրիի (Սոփենե) և Ուրարտուի պատմական տարածքներում, որոնք ինքնուրույն միավորներ էին նաև Աքեմենյանների օրոք և կոչվում էին Արևմտյան և Արևելյան սատրապություններ (ավելի ճիշտ՝ Հարավային և Հյուսիսային): Զարեհը Սոփենեի վերոհիշյալ արքաների՝ Արշամի և Քսերքսեսի ժառանգն էր, իսկ Արտաշեսը, դառնելով իր տոհմում սիրված Տիգրան անվամբ, ծագում էր Տիգրանյաններից: Ի տարբերություն Աքեմենյանների շրջանի Տիգրանյանների՝ Արտաշեսյան հարստությունը կարող է կոչվել Նոր Տիգրանյանների հարստություն: Արտաքսիասն ընդլայնեց Հ. սահմանները՝ գրավելով հարևան տարածքները: Տարացեղ բնակչությունը վերածվեց մեկ միացյալ ազգության, որ խոսում էր մեկ՝ բոլորին հասկանալի լեզվով (**Strab**., XI, 528): Տիգրան Մեծն (94-56 Ք. ծ. ա.) ավարտին հասցրեց իր պապ Արտաշեսի ձեռնարկած գործը՝ միավորեց երկիրը, լուծարեց Ծոփքի թագավորությունը և հայացքը հառեց դեպի հարևան հողերը: Նրան ժամանակակից էին երկու Միհրդատները՝ Պոնտացվոց արքան (123-63) և Պարթևաց թագավորը (124-

87): Առաջինը ձգտում էր Փոքր Ասիայում ստեղծել հզոր պետություն և կասեցնել հռոմեացիների առաջխաղացումը դեպի Արևելք: Երկրորդն իր պետության սահմանները հասցրել էր մինչև Եփրատ: Սահմանակից Կապադովկիան իր ձեռքն առնելու առաջին իսկ փորձի ժամանակ Տիգրանը հանդիպեց Պոնտացվոց արքա Միհրդատին: Վերջինս, նկատի ունենալով Հռոմի դեմ ուղղված իր հեռագնա ծրագրերը, բարեկամական դաշինք առաջարկեց Տիգրանին և նրան կնության տվեց իր դուստր Կլեոպատրային: Դաշնակից բանակների ապագա տարածքային զավթումները պետք է անցնեին Միհրդատին, իսկ ռազմավարը՝ Տիգրանին: Հայոց աջակցությամբ Միհրդատն սկսեց իշխել Կապադովկիայում և հռոմեական հարակից տարածքներում, սակայն հանդիպեց հռոմեացիների դիմադրությանը: Հռոմեական լեգեոններն առաջին անգամ հաղթարշավով հասան մինչև Եփրատ: Երկու տերություն՝ Հռոմն ու Պարթևստանը, որոնցից առաջինին սպառնում էր Միհրդատը, երկրորդին՝ Տիգրանը, միմյանց հետ դաշն կնքեցին (92 թ.): Սակայն շուտով Հռոմում և Պարթևստանում սկիզբ առած խառնակությունները ժամանակավորապես ազատ գործելու հնարավորություն ընձեռեցին Պոնտական և Հայոց թագավորներին: Տիգրանն ստիպեց պարթևներին ետ վերադարձնել այն «Յոթանասուն հովիտները», որ գահ բարձրանալիս ստիպված զիջել էր նրանց: Մարաստանի կողմից Տիգրանի տիրույթների սահմանը տեղափոխվեց մինչև Էկբատան: Հարավում հայերին անցան Կորդվաց աշխարհը, Աղիաբենեն, Օսրոենեն և Կոմմագենեն: Տիգրանի զորքերը ՝գրավեցին Սիրիան, Փյունիկիան, Կիլիկիան և սպառնում էին Պաղեստինին ու Եգիպտոսին: Սելևկյան գահի Անդրեփրատյան հողերից Տիգրանը կազմավորեց հատուկ կուսակալություն և հանձնեց Բագրատունիների ապագա հարստության նախապետ Բագարատ իշխանին: Այս տարածքը նրա իշխանության ներքո տասնյոթ տարի լիակատար խաղաղություն վայելեց: Միջագետքի տիրույթները Մծբին կենտրոնով նմանապես հատուկ կուսակալություն էին կազմում, որ գլխավորում էր արքաեղբայր Գուրասը: Տիգրանի կայսրությունը տարածվեց Կասպիականից մինչև Միջերկրական ծով, Կովկասյան լեռներից՝ մինչև Արաբիա: Պարթև արքան Տիգրանին զիջեց «արքայից արքա» տիտղոսը, որ զարդարում է բազում օրինակներով մեզ հասած տիգրանյան դրամները: Դասական մատենագրական տվյալներն ու հայկական ավանդություններն իրար հետ միաբան են այն հարցում, որ Տիգրանի գործունեությունն ընդգրկում էր ազգային կյանքի գրեթե բոլոր ոլորտները և միտված էր երկիրը հելլենական սկզբունքներով վերակառուցելուն: Նախկին մայրաքաղաք Արտաշատը դադարեց ընդլայնված երկրի մայ-

քաղաքը լինելուց. Տիգրանն իր նստավայրը փոխադրեց Սելևկյանների մայրաքաղաք՝ Անտիոք, բայց հետո նոր քաղաք հիմնեց Տիգրիսի ափին՝ ներկայիս Մուաֆարկինի (կամ Արզնեի) տեղում, անվանելով այն Տիգրանակերտ, այսինքն՝ Տիգրանի քաղաք: Նա այստեղ վերաբնակեցրեց Փոքր Ասիայի և Ասորիքի գրավյալ տարածքների բնակիչներին, քաղաքը զարդարեց հիասքանչ կառույցներով, հրաշագեղ պարտեզներ, թատրոն կառուցեց և ապահովեց ժամանակի քաղաքակրթության կենտրոնին հատուկ անհրաժեշտ բոլոր հնարավորություններով: Իր պալատը նա զարդարեց արևելյան տիրակալներին հատուկ ճոխությամբ ու փայլով: Պլուտարքոսի չափազանցված նկարագրությամբ «Նրա մոտ շատ թագավորներ կային սպասավորի դրությամբ, իսկ նրանցից չորսին նա մշտապես պահում էր իր մոտ, որպես ուղեկից կամ թիկնապահ. երբ նա գնում էր ձիով, նրանք, կարճ խիտոններ հագած, վազում էին իր կողքից, իսկ երբ նստած էր լինում և զբաղվում պաշտոնական գործերով, նրանք կանգնում էին իր շուրջը, ձեռքները կրծքներին»: Ք. ա. 72 թ. Հռոմեական լեգեոնները Լուկուլլոսի առաջնորդությամբ ոտք դրեցին Փոքր Ասիա՝ ուղղվելով Միհրդատի դեմ: Պոնտոսի արքան գլխովին ջախջախվեց և փախուստի դիմեց դեպի Հ.՝ փեսայի մոտ: Միհրդատին հետապնդելով՝ հռոմեացի զորավարը մոտեցավ Հ. սահմաններին և Հայոց արքայից պահանջեց հանձնել Պոնտոսի փախստական տիրակալին (70 թ.): Մերժում ստանալով՝ Լուկուլլոսն անցավ Եփրատ գետն ու Կապադովկիո արքայի օժանդակությամբ շարժվեց դեպի Տիգրանակերտ: Նա կարողացավ ցաք ու ցրիվ անել Տիգրանի՝ հանկարծակիի եկած բանակը և փաստորեն անարյուն հաղթանակ տոնել: Այնուհետև Լուկուլլոսն ընթացավ դեպի Հ. խորքերը, դեպի Արտաշատ, որպեսզի այս «Հայկական Կարթագենի» գրավմամբ վերջ դնի Տիգրանի իշխանությանը: Սակայն ճանապարհի կեսին Լուկուլլոսն ստիպված եղավ ետ շրջվել, իջնել Միջագետք, գրավել Մծբինը և պատրաստվել ձմեռելու (67 թ.): Լուկուլլոսի նահանջը Պլուտարքոսը բացատրում է դաժան ցրտերով, որ անտանելի էին հռոմեացի զինվորների համար: Մեզ չի հասել Միհրդատի և Տիգրանի արքունիքներում ապրած Մետրոդորոս Սկեպսիացու՝ Տիգրանին ձոնված պատմական երկը («τά περὶ Τιγάνην»): Այն ամենն ինչ հաղորդում են հունական աղբյուրները՝ հիմնված է Լուկուլլոսի զեկույցների վրա: Շուտով Տիգրանը անցավ հակահարձակման. հայկական զորքերը ներխուժեցին հռոմեական տարածքներ: Լուկուլլոսը շտապեց այնտեղ, սակայն ինչպես պատմագիրներն են վկայում, զինվորները հրաժարվեցին հետևել նրան, և նա ստիպված վերադարձավ տուն: Տիգրանն ու Միհրդատը ետ նվաճեցին կորսույալ տարածքները: Ութամյա

պատերազմը Հռոմին ոչ մի թիզ հող չավելացրեց. լեգեոնները «66-ի ձմռանը կանգնած էին ճիշտ այն վայրում, ուր 74-ին էին»: Բայց, այնուամենայնիվ, Լուկուլլոսի արշավանքները լուրջ հարված հասցրեցին Տիգրանի հեղինակությանը: Նվաճված ժողովուրդները սկսեցին երազել երբեմնի անկախության մասին, իսկ հռոմեացի գործակալները հրահրում էին նրանց: Լուկուլլոսի աներորդին, որ Տիգրանի մոտ էր ժամանել իբրև դեսպան, նվաճված երկրներին հրահրում էր ընդդեմ Տիգրանի: Անշուշտ, ոչ առանց հռոմեացիների սադրանքի՝ Տիգրանի և Միհրդատի դեմ ապստամբեցին նրանց հարազատ որդիները: Այս ներքին խլրտումները կանխորոշեցին Պոմպեոսի նախաձեռնած ռազմական նոր գործողությունների ելքը: Լիկոսի գետափին Պոմպեոսը վերջին հարվածը հասցրեց Միհրդատին և շարժվեց Տիգրանի վրա ճիշտ այն ժամանակ, երբ ապստամբ որդին՝ Տիգրան Կրտսերը, պարթևական զորքերն առաջնորդում էր հոր դեմ: Հռոմեական և պարթևական զորքերով շրջապատված Տիգրանը անձնատուր եղավ հռոմեացիներին (65 թ.): Տիգրանին մնացին լոկ Հ. և Վերին Միջագետքը. նրա մյուս տիրույթները վերածվեցին հռոմեական պրովինցիաների: Տիգրանին ներգրավեցին «հռոմեական ժողովրդի բարեկամների և դաշնակիցների» շարքում: Տիգրան Կրտսերը զարդարեց Պոմպեոսի հաղթահանդեսը Հռոմում, իսկ Հ. գահն անցավ Տիգրանի մյուս որդուն՝ Արտավազդ II-ին (55-33): Շնորհներով հարուստ և բավականին ուսյալ Արտավազդն աչքի ընկավ և՛ գրական ասպարեզում որպես ողբերգակ, և՛ պատերազմում, և՛ կառավարման գործում: Երբ Մարկոս Անտոնիոսն անհաջողության մատնվեց պարթևների դեմ արշավանքում, ձախողման համար նա մեղադրեց իր դաշնակից Արտավազդին և խաբեությամբ ձերբակալելով նրան և նրա ընտանիքը, Ալեքսանդրիա տարավ՝ որպեսզի Կլեոպատրային ներկայանա հաղթողի փառքով: Հաղթահանդեսի ժամանակ գերյալ արքան և իր մերձավորները պահեցին իրենց ոգու արիությունն ու արժանապատվությունը. նրանք մռայլ ընթացան Կլեոպատրայի մոտով և ոչ միայն գթություն չխնդրեցին, չնայած իրենց պարտադրում էին՝ դրա դիմաց ազատություն խոստանալով, այլև անգամ չխոնարհվեցին նրան: Տիգրանյան հարստությունը վերացավ Քրիստոսի թվականության սկզբներին: Հ. դուրս ցանվող նվաճումներից զրկվելով՝ Տիգրան Մեծի պետությունը կորցրեց իր համաշխարհային նշանակությունը, սակայն պահպանեց իր առաջնությունը ասիական թագավորությունների, ներառյալ նաև Պարթևականը, շարքում: Արքայի հաջորդները շարունակում էին «արքայից արքայ» կոչվել՝ ինչպես երևում է նրանց հատած դրամներից: Նրանց օրոք չխաթարվեց նաև երկրի հետազա

զարգացումն այն ուղով, որ նախանշել էր Տիգրանը: Տիգրանյան շրջանում տոհմային համակարգը վերածվեց խավերի կանոնակարգվածության. Քսենոփոնի ժամանակների կոմարխները բարձրացան մինչև տոհմիկ ազնվականության աստիճանի: Տիգրան Մեծի օրոք ի հայտ եկան առավել երևելի իշխանական տոհմերը՝ Բագրատունիները, Մամիկոնյանները, Արծրունիները և այլն, որոնց արտակարգ դեր էր վիճակված Հ. հետագա պատմության մեջ: Նույն ժամանակ ձևավորվեցին նաև չորս սահմանապահ իշխանատոհմերը՝ այսպես կոչված բդեշխությունները, որոնք եզերում էին Տիգրանի տերության սահմանները, Տիգրանի Հ., որ զարգացել էր Սելևկյանների մշակութային միջավայրում, հավատարիմ մնաց նրա պատվիրաններին՝ հելլենական քաղաքակրթությունը բերելով Արևելք: Նախորդ շրջանի իրականությունն իր տեղը զիջեց արևմտյան ազդեցությանը: Հռոմեական զենքը բուլացրեց Հ. հզոտ պարթևների և զործեց ի շահ Իրանի, որ անհապաղ հաստատվեց Հ. և հարևան երկրներում:

IV. Արշակունիների շրջան.- Տիգրանյաններից հետո անտերունչ մնացած գահը դարձավ հռոմեացիների, պարթևների և նրանց դրածոների համար վեճի առարկա: Կես դար շարունակ իշխանությունը ձեռքից ձեռք էր անցնում, կախված այն բանից, թե ում կողմն էր ուժերի գերակշռությունը: Պարթևները ձգտում էին Հայոց գահին բարձրացնել իրենց ազգականներին: Հռոմն առաջ էր քաշում Կապադովկիայից, Իբերիայից և Ատրպատականից սերող արքայազունների, անգամ պարթևական արքայի մերձավոր հարազատներին, եթե նրանք թշնամաբար էին տրամադրված իրենց թագավորի նկատմամբ: Այս հավակնորդներից հայերի համակրանքն էր վայելում սոսկ Տիգրանյանների հեռավոր ազգական՝ պոնտացի իշխան Զենոնը. Տիբերիոսի օրոք նա Արտաշես III անվամբ կառավարեց ավելի քան 15 տարի: Ծանր հանցագործությունների գնով Հռադամիզդ արքայազնի՝ Հայոց գահը զավթելու կապակցությամբ Տակիտոսը հռոմեացի զորավարի շուրթերով հնչեցնում է այն բառերը, որ հրաշալի բնորոշում են հռոմեական քաղաքականությունը. «Բոլոր արտաքին հանցագործությունները պետք է ուրախությամբ ընդունվեն, նույնիսկ ատելության սերմեր պետք է ցանել, ինչպես հաճախ հռոմեական պրինցեպսները հենց նույն Հայաստանը, առատաձեռնության պատրվակի տակ շնորհել են բարբարոսներին՝ նրանց ոգին խառնակելու նպատակով: Թո՛ղ իշխի Հռադամիզդը հանցանքով ձեռք բերածին, միայն թե լինի ատելի, փառազուրկ, որովհետև այդ ավելի ձեռնտու է, քան թե նա փառքով արտաքսված լիներ» (Tac., Ann., XII, 48): Ք. ք. 50 թվականին պարթևական գահ բարձրացավ Վաղարշ I-ը: Նա որոշեց վերջ դնել Հայկական խնդրին՝ Տիգրանյանների

ժառանգությունը հանձնելով իր կրտսեր եղբայր Տրդատին: Ներոն կայսրը (54-68) Հ. պաշտպանությունը հանձնեց փորձառու զորավար Կորբուլոնին: Հռոմեական զորքերը, Տրդատին վտարելով, գրավեցին Հ. երկու մայրաքաղաքները՝ Արտաշատը և Տիգրանակերտը (60 թ.): Սակայն երբ Կորբուլոնը հեռացավ, հայերի աջակցությամբ Տրդատը ջախջախեց նրա տեղակալ Պետոսին և դարձյալ գրավեց Հ. (62 թ.): Ներոնը համաձայնեց Տրդատին զիջել Հ., պայմանով, որ նա անձամբ պետք է թագն ընդունի իր ձեռքից: Տրդատը ճանապարհ ընկավ դեպի հեռավոր Իտալիա, ուր ընդունվեց ըստ փառքուպատշաճի, և վերադարձավ Հ.: Նրա օրոք ժողովուրդը հանգիստ շունչ քաշեց: Նոր արքան, որ Հռոմից հետը վարպետներ էր բերել, վերականգնեց պատերազմի ժամանակ ավերված Արտաշատ մայրաքաղաքը: Նա կառավարեց խաղաղությամբ. այդ ժամանակ վտանգ կար ալանների կողմից, բայց Տրդատը ետ շպրտեց նրանց հարձակումը (75 թ.): Ազգային ավանդազրույցները Արշակունի առաջին արքային բարեմասնորեն են ներկայացնում. հարստության հիմնադրի հրաշալի կերպարը Մովսես Խորենացու երկասիրությունում արտացոլում է պատմական Տրդատի անձը: Նրան է վերագրվում Հ. ավատատիրական համակարգի (այսպես կոչված նախարարությունների) հիմնումը: Իր ժամանակների հետ է կապվում Հ. բաժանումը 120 ստրատեգությունների, որ հիշատակում է Պլինիոս Ավագը: Սրանով նախապատրաստվեցին ապագա ավատատիրության արտաքին շրջանակները: Տրդատի հաջորդների մասին մենք չնչին տեղեկություններ ունենք: 115 թ. Արևելք կատարած իր արշավանքի ժամանակ Տրայանոսը Հ. հռչակեց հռոմեական նահանգ. մեկ տարի անց Ադրիանոսը վերականգնեց հայոց իրավունքները ու արքա նշանակեց Վաղարշ I-ին (117-140, հայ.՝ Վաղարշակ): Նրանից հետո կառավարեց Սոհեմոսը՝ մինչև 162 թ., երբ պարթևները նրան վտարեցին և գահը հանձնեցին Բակուրին: Հռոմեացիները պաշտպան կանգնեցին իրենց դրածոյին: Մարկոս Ավրելիոսի զորահրամանատարները հասան մինչև Արտաշատ և ավերեցին քաղաքը: Վերստին գահ բարձրացվեց Սոհեմոսը և մայրաքաղաք հայտարարվեց Վաղարշապատը՝ Կայնեպոլիս (հիմա՝ Նոր Քաղաք) հորջորջմամբ: Ինչպես ակներև է Էջմիածնում (Վաղարշապատ) հայտնաբերված լատիներեն արձանագրություններից, ըստ ամենայնի, իրենց կայազորն այնտեղ տեղակայված հռոմեացիների համար քաղաքը ծառայել է իբրև վարչական [կառավարման] կենտրոն: Սեպտիմիոս Սևերոս և Կարակալլա կայսրերի օրոք դարձյալ պատերազմ սանձազերծվեց ընդդեմ պարթևների. հռոմեական տարածքները հասան մինչև Տիգրիս: Կարակալլան խաբեությամբ ձերբակալեց Հայոց Խոսրով

արքային, որ վախճանվեց գերության մեջ: Սակայն Մակրինոս կայսրը գահաժառանգ ճանաչեց նրա որդուն՝ Տրդատ II-ին: Նրա օրոք պարսից Պարթևների հարստությանը փոխարինեցին Սասանյանները: Հայոց արքան հաջողությամբ ետ մղեց Արտաշիր Սասանյանի հարձակումը, սակայն 253-ին Շապուհ I-ը տապալեց նրան, և Տրդատի որդիները գերի հանձնվեցին հաղթողին: Զբաղված լինելով արևմուտքում բռնկված խռովությունները հանդարտեցնելով՝ կայսրությունը լոկ 260-ին՝ Վալերիանոսի օրոք, որոշեց պատասխանել պարսիկներին: Բայց հռոմեացիները ծախողվեցին, և Հ. մնաց պարսից գերակայության ներքո մինչև 283 թ., երբ Հռոմի կայսր Մարկոս Ավրելիոս Կարոսն ու նրա որդի Կարինոս զորավարը պարսիկներին ստիպեցին խաղաղության դաշն կնքել, համաձայն որի Հ. և Միջագետքը դարձյալ անցնում էին կայսրության հովանավորության ներքո: Հայոց գահ բարձրացավ Արշակունյաց տոհմից Տրդատը: Պարսիկների և Դեոկղետիանոսի միջև կնքված պայմանագրով (298 թ.) Հ. Իբերիայի և Միջագետքի հետ միասին դարձյալ ճանաչվում էր կայսերական ազդեցության ոլորտ, որին էին անցնում նաև Տիգրիսի ակունքների մերձակա հայկական հինգ շրջանները: Հայոց թագավորությունում սկսվեց նոր Արշակունիների դարաշրջանը: Նրանց և Իրանի միջև առաջացած դինաստիական ճեղքվածքը Արշակունիներին վերածեց իրավամբ ազգային թագավորատոհմի: Քրիստոնեությունն ավելի հեռացրեց նրանց Իրանից:

**Քրիստոնյա Արշակունիներ.**- Քրիստոնեությունը վաղուց էր հարավից՝ Ասորիքից ճանապարհ հարթում դեպի Հ.: Մոտ 260 թ. արդեն իսկ հիշատակվում է հայ եպիսկոպոս Մերուժանը: Այնուհետև գալիս են Փոքր Հ. և Կապադովկիայի քարոզիչները: Նրանց գլխավորում էր Գրիգորը՝ Արշակունյաց տոհմից, որ Հ. Լուսավորիչը դարձավ: Տրդատի և հայոց դարձը ազգային աղբյուրները դնում են 299 կամ 301 թվականին: 312-ին արդեն՝ իբրև նվիրյալ քրիստոնյա, հայերը պաշտպանվում են Մաքսիմիանոս կայսեր հետապնդումներից (Եվսեբ., IX, 8): Քրիստոնյա Արշակունիների շրջանում Հ. քաղաքական կյանքը կախված էր Պարսկաստանի և Նոր Հռոմի հարաբերություններից: Կոստանդին I-ի մահվանից հետո տիրող խառնաշփոթից օգտվելով՝ պարսից Շապուհ II արքան պատերազմ հայտարարեց, պահանջելով, որ ետ վերադարձվեն մերձտիգրիսյան տարածքները, այսինքն՝ այն շրջանները, որոնք 298 թ. պայմանագրով կայսերական էին ճանաչվել: Մարտական գործողությունները ձգվեցին մինչև 350 թ. և վերսկսվեցին 361-ին: Բանակն անձամբ ղեկավարող Հուլիանոսի մահը փոխեց դեպքերի ընթացքը: Նրան հաջորդած Հովիանոսն ստիպված էր խաղաղության պայմանագիր կնքել, որ պատմագիր Ամմիանոսը ամոթալի է

անվանում: Հռոմեացիները պարսիկներին զիջեցին հինգ շրջան՝ տասնհինգ ամրոցներով, ինչպես և իրենց գլխավոր հենակետը Միջագետքում՝ Մծբինը: Սրա հետ մեկտեղ նաև հրաժարվեցին Հ. հովանավոր լինելու հանգամանքից: Հայկական ավանդազրույցների համաձայն հայ-պարսկական պատերազմն սկսվեց Ատրպատականի առիթով: Պարսիկները կամենում էին այն խլել հայերից, սակայն Տրդատի որդի Խոսրով III-ը դիմադրություն ցույց տվեց: Փորձը կրկնվեց նաև Խոսրովի ժառանգորդ Տիրանի օրոք, և այս անգամ կայսրը միջամտեց: Պարսիկները մեկուսացրեցին Տիրանին և գահ բարձրացրին նրա որդի Արշակ II-ին (մոտ 348 թ.): Բայց հակառակ 298 թ. համաձայնագրի, Արշակը հաշտվեց կայսեր հետ և միացավ Հուլիանոսի արշավանքին ընդդեմ պարսիկների: 363 թ. պայմանագիրը կնքելիս, Ամմիանոսի խոսքով, հռոմեացիներ թույլ տվեցին «ծանր ուխտազանց մի հավելում, ըստ որի, այդ համաձայնությունից հետո, այլևս օգնություն չպիտի տրվեր մեր մշտական և հավատարիմ բարեկամ Արշակին ընդդեմ պարսիկների» (Amm. Marc., XXV, 7): Պարսից արքան, իր համար ապահովելով գործողությունների լիակատար ազատություն, հարձակվեց Արշակի վրա, որը գերեվարվեց և շուտով ինքնասպան եղավ (368 թ.) պարսկական բանտում: Նրա որդին՝ Պապը, զրկվելով Վալենտիանոս կայսեր բարեհաճությունից, դավադրաբար սպանվեց հռոմեացի զորավարի հրամանով (374 թ.): Ինչպես պնդում է Ամմիանոսը, այդ սպանությունը խայտառակություն դրոշմեց հռոմեացի անվան վրա: Հարևան տերությունների քաղաքականությունը և հայոց մեջ նրանց հրահրած միջկուսակցական թշնամանքը, որ ոմանց ուղղում էր պարսիկների, մյուսներին Բյուզանդիայի կողմը, հանգեցրին Արշակունյաց թագի կորստյան: Պապին հաջորդած Արշակ III-ի մահվանից հետո՝ 4-րդ հարյուրամյակի վերջին Հ. փաստացի բաժանվեց: Արևմտյան շրջանները՝ մերձտիգրիսյան ինքնավար սատրապություններով հանդերձ, անցան կայսրությանը, իսկ Արևելյան Հ. մնաց պարսից արքաներին: Այստեղ շարունակում էին թագավորել Արշակի ժառանգները, սակայն 428 թ. նրանցից վերջինը՝ Արտաշեսը, զրկվեց գահից, և նրանով ավարտվեց Արշակունիների հարստությունը: Արշակունիների թագավորության անկումից հետո, ինչպես նշում է Եղիշեն՝ «ի նախարարսն Հայոց անկանէր թագաւորութիւնն. զի թէպէտ եւ զանձն յարքունիս Պարսկաց երթայր, սակայն այրուձին Հայոց բովանդակ ի ձեռն նախարարացն առաջնորդէր ի պատերազմի»: Բոլոր մնացյալ հարցերում հայերը պահպանել էին իրենց ինքնուրույնությունը: Ներքաղաքական կյանքը կառավարում էր ավատատիրական կարգերի գործիք հանդիսացող նախարարությունը: Այն վեր էր ածվել կյանքի հիմնասյան դեռևս

Արշակունիների շրջանում և մնաց որպես այդպիսին ընդհուպ մինչև Բագրատունիների դարաշրջանը:

V. Նախարարական շրջան. - Արշակունիների ժամանակ Հ. իրենից ներկայացնում էր մանր և մեծ նախարարությունների մի ցանց, որ միավորված էր թագավորական անկախ իշխանության ներքո: Նրանց փաստացի կախվածությունը հայ կամ օտար արքայից, տարբեր էր՝ իրենց զորության համապատասխանությամբ: Առավել ինքնուրույնություն ունեին Գուգարքի, Աղձնիքի և Սյունիքի իշխանները: Երկրի կենտրոնում Մամիկոնյանների, Բագրատունյաց ասպետների, Արծրունիների, Կամսարականների, Մաղխազ-Խորխոռունիների իշխանական տիրույթներն էին: V-VII դդ. հայկական պատմագրական հուշարձանները թվարկվում են մինչև 50 իշխանական ավատներ: Իրավական տեսանկյունից այս տարածքները փոքրիկ պետություններ էին, իսկ իշխանները՝ յուրօրինակ մանր արքաներ: Գերագույն իշխանության հանդեպ նրանց գլխավոր պարտավորությունը զինվորական ծառայությունն էր. [ըստ «Զորանամակ» կոչված վավերագրի] նրանք որոշակի թվով հեծյալ մարտիկներ պետք է տրամադրեին: Պահպանված, թերևս ոչ այնքան ստույգ, գրառումների համաձայն, նախարարական զորախմբի կազմը տատանվում էր 50-ից մինչև մի քանի տասնյակ հազար մարտիկի: Հայ ավատատերերը կոչվում էին նախարար և տեր: Ազգատոհմը գլխավորում էր ավագագույն անդամը՝ նահապետը կամ տանուտերը (այսինքն՝ գլուխ ընտանեաց), իսկ մնացյալ բոլոր անդամները սեպուհներ էին: Հայ ավատատիրական եզրաքանությունն իր մեջ ներառում է Հ. ավատատիրության ծագումնաբանության մատնանշումը. տոհմական կենսավարութաձևն ու հողին տիրելու իրավունքն այն արմատներն են, որոնցից ծագեցին նախարարությունները: Երկրի բնական-աշխարհագրական միջավայրի ազդեցությունը կրող տոհմային կազմակերպվածությամբ ազգակցական միավորումը ավատատիրության կազմավորման համար բարենպաստ մի հենք էր: Հողատեր ազնվականությունը ձևավորվեց մատուցված ծառայությունների համար շնորհվող հողատարածքների հատկացման արդյունքում: Գավառների կառավարիչներն իրենց վստահված հողերը սեփականացնելու և լիիրավ կերպով տնօրինելու հնարավորություն ունեին: Կենտրոնական իշխանության թուլացման ժամանակ հողին տիրելու իրավունքը վեր էր ածվում սեփականության իրավունքի, իսկ հողի սեփականատերը՝ ավատատիրոջ: Արևմտաեվրոպական ֆեոդալիզմի լույսի ներքո Հ. կարելի է պատկերել իբրև մեծ սենյորիա, ուր սենյորներն արքաներն են, վասալները՝ նրանցից կախյալ իշխանները, իսկ մնացյալները՝ հասարակ ազգաբնակչությունը: Իշ-

խանական տներից յուրաքանչյուրն իր ներքին կարող է դիտարկվել իբրև սենյորություն: Սենյորը հենց տերն է կամ նախարարը: Հայերեն «տէրութիւն» և «նախարարութիւն» [բառերը] համապատասխանում են Ֆր. seigneurie, անգլ. manor, գերմ. Grundherschaft. Curtis dominialis = հայերեն ոստան, որ նշանակում է մայրաքաղաք, արքունիք: Տիրոջ կամ նախարարի իշխանությունը ժառանգական էր և փոխանցվում էր տոհմի ավագ ներկայացուցչին, որ սեպուհից վեր էր ածվում տանուտիրոջ: Հայ արքաների ունեին գործակալներ, որ իշխանության գործադիր մարմինն էին, համանման միջնադարյան սենյորների officer-ներին: Առանձնակի կարևոր էին համարվում սպարապետի և հազարապետի պաշտոնները, որ լիովին համապատասխանում էին sénéschal-ներին՝ բանակի հրամանատար, և chancelier՝ ֆինանսական կառավարիչ: Հույժ պատվավոր էր թագադիրի պաշտոնը, որ ժառանգական էր Բագրատունիների տոհմում, իսկ սպարապետությունը Մամիկոնյաններինն էր: Ինչպես արևմուտքում վասալն արքայի կամ սենյորի սպասավոր էր կոչվում, այնպես և հայոց մեջ նախարարները թագավորի ծառաներն էին, իսկ նրանց գործը՝ «ծառայութիւն»՝ servitium: Հայկական միջավայրին խորթ չէին hommage-ը և consilium-ը. երդումը մի կողմից պարտավորեցնում էր հովանավոր լինել, իսկ մյուսին հավատարմորեն ծառայել և ենթարկվել: Հայոց մեջ հողատիրությունը ծագմամբ և բնույթով չի նույնանում ֆեոդալականի հետ. տարորոշելի են հայրենական հողատիրույթներն ու պարգևական՝ մատուցված ծառայություններրի համար շնորհվող տարածքները: Հայկական նախարարությունները ֆեոդներ չեն, այլ ավելի շատ համապատասխանում են fiefs-seigneuries-ին: Սուրբնֆեոդացիային համանման մի երևույթ նկատելի է նաև հայոց մեջ, որը զարգացավ մայորատի իրավունքի անկմանը զուգահեռ: Նախապես իշխանությունը ժառանգում էր միայն ավագ սեպուհը և հողն անտրոհելի էր համարվում: Սակայն հետագայում նաև ընտանիքի անդամ մյուս սեպուհներն սկսեցին պահանջել իրենց բաժնեմասը, և հողը բաժանվեց ժառանգ-սեպուհների միջև: Այսպիսով հողատիրության և ազնվականության նոր ձև առաջացավ՝ սեպուհական-սեպհական. հատկանշական է, որ բառն այս ձևոք բերեց «սեփական» իմաստը: Հայտնի է նաև ազատ մարդկանց երրորդ կարգը՝ այսպես կոչված ոստանիկների, այսինքն՝ ոստանարնակների, արքունարնակների (ռուս. ДВОРЯНИН-ի պես). ոստանիկական ազատությունը համարժեք էր ազնվականությանը: Հավանաբար ոստանիկները ծագում էին սպասավորաց դասից, որ աչքի ընկնելով հասել էին ազատի աստիճանի: Ինչպես արևմուտքում, գյուղացիությունը ֆինանսական կախվածության մեջ էր

սինյորից: Հիմնական տուրքերն էին. chevage-ը՝ գլխահարկ, cens-ը՝ հողահարկ, champart-ը՝ բերքից գանձվող հարկ, ինչպես և՝ բահրան corvée: Սրանք տարածված էին Արևելքում և անվանվում էին սակ, բաժ, բահրակ, կոռ-բեկար: Նախարարական կացութաձևի ժամանակ արքան հանդես էր գալիս իբրև առաջինը՝ հավասարների շարքում: Արքաների հարստության անկումը երկրի ճակատագրի վրա զգալի ազդեցություն չէր գործի, եթե անձեռնմխելի մնար առկա իրավական դրությունը: Սակայն արքայական իշխանությունը բազմաբևեռ կառույցը միավորում էր միասնական մի կենսական մարմնի մեջ և դրա կործանմամբ Հայոց թագավորների ինքնիշխանությունը բաժանվեց Պարսկաստանի և Բյուզանդիայի միջև: Երկիրն սկսեց քաղաքականապես տարրալուծվել: Արշակ II-ի գերեվարումից անմիջապես հետո քայքայվեցին սահմանային իշխանությունները, կենտրոնից կապերը խզեցին նաև արևմտյան հինգ սատրապությունները, որ 298 և 363 թթ. պայմանագրերի կնքման ժամանակ առանձին հողվածի առարկա հանդիսացան: Արշակունիների ձեռքում մնացին միայն կենտրոնական գավառները, որոնք շուտով բաժանվեցին մրցակից տերությունների միջև: Թեոդոսուպոլիս (ներկայումս՝ Էրզրում) Մարտիրոպոլիս (այժմ՝ Մայաֆարկին) գծով: Արևմտյան կամ Բյուզանդական կողմը վստահվեց կառավարչին (comes, կոմես): Նրան չէին ենթարկվում միայն ինքնավար սատրապությունները, որ պահեցին իրենց դիրքը մինչև Հուստինիանոս I-ի ժամանակները: Նրա օրոք կայսրությանը ենթակա բոլոր հայկական հողերը, ներառյալ և Փոքր Հայքը, որ Թեոդոսիոսի ժամանակ բաժանված էր I և II Հ., վերաբաժանվեցին և կազմեցին Պոնտական շրջանը՝ դիոցեզը, կոչվելով I. (Թեոդոսուպոլիս), II. (Սեբաստիա), III. (Միլիտենե) և IV. (սատրապիա) Հ.: Արևելյան Հ. կամ Հ. պարսկական մասը հայտնվեց Սասանյան պետության չորս բաժանումներից մեկի կազմում, ի մասնավորի Կովկասյան քուստակում կամ շրջանում, և ի շարս Իբերիայի, Աղվանքի և այլն իրենից հատուկ վարչական միավոր էր ներկայացնում, որ անվանվում էր շահր: Այն գլխավորում էր երկրի պարսկական մասի ներկայացուցիչը՝ մարզպանը: Հուստինիանոսի բարեփոխումը ոչնչացրեց բյուզանդական Հ. նախարարական համակարգը, սակայն պարսկական մասում այն շարունակվեց գոյատևել: Հ. մասնատման միջոցով տարածայնությունների պատճառն արմատապես վերացնելու տերությունների հաշվարկը չիրականացավ: Հ. չդադարեց արյունահեղ պատերազմների թատերաբեմ լինելուց: V դարում երկու կողմերի ուշադրությունը գրավել էին այլ տարածաշրջաններում տեղ գտած իրադարձությունները, բայց, այնուամենայնիվ, երկու ընդհարում եղավ՝ 421-ին և

441-ին: Ներհակությունը նորից բռնկվեց դարավերջին և առիք հանդիսացավ VI և VII դդ. ամբողջ ընթացքում՝ մինչև Սասանյանների անկման օրերը մղված պատերազմների համար: Ընդսմին, չնայած քաղաքական մասնատվածությանը՝ այդ իրադարձություններին Հ. կարևոր դերակատարում ունեցավ: Ռազմական ներուժով օժտված հայ ավատատերերը գործուն մասնակցություն ունեցան տերությունների վեճերում, որոնց դրդողը հաճախ հենց իրենք էին: Երկիրը հավասարապես հեծում էր թե՛ պարսկական, թե՛ բյուզանդական իշխանությունների ներքո և իր դժգոհությունը հաճախ արտահայտում էր ապստամբական ելույթներով: Համազգային դժգոհ ընդվզման վառ օրինակներից մեկը 451 թ. է, երբ հայերին Բյուզանդիայից հեռացնելու նպատակով պարսիկները վճռեցին ոչնչացնել քրիստոնեությունը՝ հայոց և կայսրության բարոյական կապը: Հայերը զենք վերցրին: Ժողովրդական ոգու վերելքից օգտվեցին նրանք, որ երազում էին հայկական պետականության վերականգնման մասին: Սկսվեց մի հզոր շարժում, որ կազմակերպում և ղեկավարում էր երկրի մարզպանը՝ Սյունյաց Վասակ իշխանը: Նախնական պայմանավորվածությամբ Վասակն ապահովել էր Թեոդոսիոս II կայսեր օժանդակությունը: Սակայն կայսեր հանկարծահաս մահը խառնեց բոլոր ծրագրերը. անխուսափելի կոբուստների կանխազգացությամբ Վասակն ապարդյուն փորձում էր կանգնեցնել շարժումը: Ժողովրդական բորբոքված ալիքը Մամիկոնյան իշխան Վարդանի գլխավորությամբ Ավարայրի դաշտում ընդառաջ ելավ պարսկական զորքին (451 թ.): Հայոց զորագունդը ցաք ու ցրիվ արվեց, սակայն պարսիկներն էլ հրաժարվեցին իրենց ծեռնարկից: Եկեղեցին հաղթանակեց. 451-ի ճակատամարտը հայոց համար դարձավ ազգային ոգեշնչման աղբյուր: Բոլոր զոհված քաջամարտիկները դասվեցին սրբոց Վարդանանց կարգը, որոնց հիշատակն ամեն տարի տոնում է Եկեղեցին, և նրանց ոգեկոչման օրը ազգային մեծագույն տոներից մեկն է: 30 տարի անց պարսիկները կրկնեցին փորձը. այդ անգամ ընդվզողների առաջնորդը Վարդանի զարմիկն էր՝ Վահան Մամիկոնյանը: Երկու տարի անընդմեջ նա դիմակայեց պարսից ճնշմանը. վերջապես Վաղարշ արքան ընդունեց հայոց պահանջների արդարացիությունը, հաշտվեց Վահանի հետ և նրան մարզպան կարգեց (484 թ.): Դրանից հետո Բյուզանդիայի և Պարսկաստանի միջև սկսված երկարատև պատերազմներն ավարտվեցին այսպես կոչված «Հավերժական խաղաղության» կնքմամբ (532 թ.): Անմիջապես ընդվզումներ սկսվեցին Հ. բյուզանդական մասում: Հուստինիանոս I-ի վարած քաղաքականությունից դժգոհ հայերը՝ Վասակ Մամիկոնյանի գլխավորությամբ, խռովություն բարձրացրին, սպանեցին կայսերական

կառավարչին և դիմեցին պարսից Խոսրով արքային՝ նրան հրահրելով պատերազմ սկսել Հուստինիանոս I-ի դեմ: Պարսիկները պատերազմ հայտարարեցին, որ տևեց 540-ից մինչև 562 թվականը: Ինչպես առաջին, այնպես և այս պարսկա-բյուզանդական պատերազմում դարձյալ էական դեր խաղացին հայ իշխանները. հատկապես աչքի ընկավ Կամսարական ընտանիքը, որից, հավանաբար, սերում էր նաև Ներսեսը, որ Հուստինիանոս I-ի կայսրության հիմնասյուներից մեկն էր համարվում: 572-ին Հ. դարձյալ ալեկոծված էր. այս անգամ հերոսը Վարդան անունով Մամիկոնյան իշխանն էր, որ սպանել էր պարսից մարզպան Սուրենին և անցել Հուստինիանոս II կայսեր հովանու ներքո: Հայ ապստամբների ընդունումը բյուզանդական արքունիքում պարսից արքան համարեց 562 թ. պայմանագրի խախտում: Սկսվեց երրորդ մեծ պատերազմը, որն ընդմիջումներով շարունակվեց 574-ից մինչև 590 թիվը: Մավրիկիոս կայսեր ձեռնարկած ռազմական գործողությունները պսակվեցին հաջողությամբ: Թագաժառանգ Խոսրովը հաշտություն կնքեց (591 թ.)՝ ըստ որում Պարսկա-Հ. զգալի մասը զիջելով Բյուզանդիային: Տարանջատման գիծը հյուսիսում Թեոդոսուպոլսից հասավ Սևանա լճի ափերին, իսկ հարավում Մարտիրոպոլսից մինչև Արևելյան Տիգրիսի գետաբերան: Տուրուբերանն ամբողջությամբ (Մուշը և Մանազկերտը) և գրեթե ամբողջ Այրարատը միացան կայսերական Հ.: Երբ Փոկասի ձեռքով գահընկեց եղավ Մավրիկիոսը (602 թ.), Խոսրով II Փարվեզը ներխուժեց բյուզանդական տարածքներ և պահանջեց ետ վերադարձնել զիջյալ շրջանները: Պատերազմը շարունակվեց 602-ից մինչև 628 թվականը: Հերակլիոս կայսրն առաջնորդեց բանակը Հ. տարածքով դեպի Պարսկաստան և մի շարք փայլուն հաղթանակներ տարավ: Խոսրովի մահը նպաստեց նրա հաջորդությանը, և խաղաղությունը վերահաստատվեց 591 թ. պայմաններով: Սա երկու դարավոր մրցակիցների վերջին հանդիպումն էր: Պարսիկներից նվաճված Հ. մասում բյուզանդական զորահրամանատարները միաժամանակ նաև այդ հողերի կառավարիչներն էին: Իսկ պարսիկներին պատկանող տարածքներում վաղեմի կարգով նստում էր պարսկական մարզպանը: Արաբական արշավանքների շրջանում Հ. երկու մասերը միավորվեցին Թեոդորոս Ռշտունու իշխանի գլխավորությամբ: Ներհավենդի ճակատամարտով Սասանյան Պարսկաստանը ընկավ արաբների տիրապետության տակ: Խալիֆի զորքերը մտան Հ. և արշավեցին մինչև Դվին մայրաքաղաքը (642 թ.): Նախարարաց դասը դիմադրություն ցույց տվեց, և այս անգամ արաբները չկարողացան հաստատվել Հ.: Երկիրը հույսը դրել էր կայսեր վրա, սակայն վերջինս, զորքով Հ. ժամանելով, մտադրվել էր հայերի ծանր դրությունն

օգտագործել դավանաբանական ճպատակներով և դրանով հայերին վանեց կայսրությունից: Հ. կառավարիչը Թեոդորոս Ռշտունին բանակցություններ սկսեց արաբ զորահրամանատար Մուավիայի հետ և ճանաչեց արաբների նոր իշխանությունը (652 թ.): Երբ հայտնվեց Կոստանդ II կայսրը, հայերի մի մասը խոնարհություն հայտնեց, մյուսը հավատարիմ մնաց խալիֆին, սակայն հեռացավ նրանից 685-ին, երբ եկավ բյուզանդական զորքը, որ ուղարկվել էր, հավանաբար, խազարների առաջխաղացումը կասեցնելու համար: Սակայն 693 թ., երբ Կապադովկիայում արաբները պարտության մատնեցին կայսերական զորքերին, հայերի այդ խումբը դարձյալ անցավ արաբների կողմը: Կեսդարյա պայքարից հետո Բյուզանդիան ստիպված էր հրաժարվել Հ. հօգուտ խալիֆաքի: Արաբական տիրապետությունն էական փոփոխություն չմտցրեց երկրի կառուցվածքում: Ավատատեր-նախարարները պահեցին իրենց իշխանությունը, և սրա արդյունքում արաբական տիրապետության ժամանակը՝ մինչև հայկական թագավորությունների կազմավորումը, պետք է դիտարկել իբրև նոր՝ արաբական շրջափուլ, նախարարական կառավարման ընթացքում: Վարչական առումով Հ. Ատրպատականի ենթակայության ներքո էր՝ ինչպես և պարսկական տիրապետության ժամանակ: Գավառները կառավարում էին ամիրաները՝ խալիֆայի ենթակաները: Նրանք ինքնուրույն կամ խալիֆայի իմացությամբ իրենց ենթակա տարածքներում պաշտոնյաներ էին նշանակում: Հ. ևս այդպիսի պաշտոնյա կար. հայ մատենագիրները նրան հրամանատար կամ ոստիկան են անվանում: Արաբական շրջանի ոստիկանները համապատասխանում են պարսից մարզպաններին: Ատրպատականի էմիրությունը վստահվում էր երևելի անձանց՝ հիմնականում խալիֆայի ընտանիքի անդամներին: Ոստիկանների պարտականություններն էին հարկահավաքությունը և տեղակայված զորքերի հրամանատարությունը: Հայերը պարտավոր էին խալիֆայի տրամադրության տակ պահել այրուձին (15.000 հոգի), որի կարիքները հոգալու համար նրանց միջոցներ էին տրամադրվում: Այրուձին ղեկավարում էին հենց նախարարները: Սկզբում արաբական իշխանությունները փորձում էին ոչնչացնել Հ.՝ իրենց համար խորթ վերնախավը՝ հաճախ դիմելով անգամ խիստ կտրուկ միջոցների (օր.՝ 703 թ. խաբեությամբ եկեղեցում հավաքված իշխանների հրկիզումը): Ավելի ուշ նրանք հաշտվեցին իրավիճակի հետ, նույնիսկ երբեմն հայ նախարարներին էին վստահում երկրի կառավարումը: Նախարարական տներից հատկապես աչքի էին ընկնում և իրար հետ մրցակցում էին երկուսը՝ Բագրատունիներն ու Մամիկոնյանները: Կշռադատ Բագրատունիները նվաճողների հետ ռազմուժով

չափվելն անհնարին էին համարում ու նախընտրում էին «լավ ժամանակների սպասմամբ լռելյայն կրել առեւի անուրը»: Ավատատիրական ազատության քաջարի ասպետ Մամիկոնյաններն այն կարծիքին էին, թե «թշնամու լուծն այնքան անտանելի է, որ եթե անհնար է ուժով ազատվել դրանից, ապա ավելի լավ է հերոսաբար զոհվել հանուն հայրենիքի և ժողովրդի քան գոյություն քարշ տալ և տեսնել հարազատ սրբությունների ոտնահարումը» (Ղևոնդ, գլ. 34): Նրանք ասպետական ոգին կենդանի էին պահում և հաճախակի ապստամբություններով չէին թողնում, որ բնակչությունը վարժվի ստրկությանը: Բագրատունիները ո՛չ ազդեցությամբ, ո՛չ քաջությամբ չէին զիջում Մամիկոնյաններին, սակայն նրանց ինքնատիրապետումը մեկ անգամ չէ, որ հայերին փրկեց աղետից: Արաբական իշխանությունները, բնականաբար, ավելի շատ հակված էին Բագրատունիների կողմը: Մանսուր խալիֆայի օրոք (754-775) արաբական հարկահանների ճնշումներից բորբոքված Մամիկոնյանները՝ Արտավազդ իշխանի գլխավորությամբ, ապստամբության դրոշ բարձրացրին: Ապստամբները հեշտությամբ հաղթահարեցին հակառակորդի զինական ուժերի դիմադրությունը, սակայն երբ հայտնվեցին Բաղդադից եկած զորքերը, ստիպված էին զենքը վայր դնել (մոտ 775 թ.): Այնուամենայնիվ, արաբների անպարտելիության պսակը չքացավ ժողովրդի աչքից: Մութավաքիլի կառավարման շրջանում (847-861) Հ. դարձյալ ապստամբություն բռնկվեց: Դրա համար ազդակ հանդիսացավ հարկահանության ժամանակ արաբ կառավարչի սպանությունը: Ընդվզածներին խոնարհեցնելու համար արշավեցին արաբական զորամիավորումները՝ թյուրք Բուղայի («ցուլ») գլխավորությամբ: Խաբեությամբ վերջ դնելով իշխանների միասնությանը՝ նա հեշտությամբ հաշվեհարդար տեսավ յուրաքանչյուրի հետ առանձին-առանձին. սակայն երկիրը կատարելապես հանդարտեցնելու համար արաբներն ստիպված էին կառավարումը հանձնել հայերին: Աշոտ Բագրատունին նշանակվեց Հ. կառավարիչ և ստացավ «իշխանաց իշխան» կոչումը (861թ.): Նա հետամուտ եղավ, որ խալիֆան իրեն արքայական թագ շնորհի (885 թ.): Այդ պահից Հ. վերացավ խալիֆայական իշխանությունը: Հարկահանության պահպանված գրառումները ցույց են տալիս, որ հարկերն աստիճանաբար նվազում են, իսկ հետո հարկահանությունն ընդհանրապես դադարում է: Հին ցուցակներով (Իբն-Խալդունի պահպանված գրառումների համաձայն՝ VIII դարավերջ) Հ. տարեկան վճարել է 13 միլիոն դիրհեմ (մոտ 7 միլիոն ռուբ.): IX դարի առաջին կեսին (Կոդամի հաղորդած տվյալներով) մուտքերը պակասեցին 3 միլիոն դիրհեմով՝ հասնելով 4 միլիոնի: X դարում երկիրն արդեն տեղական

իշխանների իրավասության ներքո էր. ըստ Իբն-Հաուկալի Բագրատունիները 1 միլիոն դիրհեմ էին վճարում, Արծրունիները՝ 100 հազար, իսկ Խաչենը և Վայոց ձորը 50.000-ական դիրհեմ: Դրանից հետո, ըստ երևույթին, այլևս ոչինչ չէին վճարում խալիֆայական գանձարանին: IX դարի կեսից՝ Աշոտի իշխանությամբ Հ. պատմության նոր դարաշրջանն է սկսվում:

VI. **Հ. Գավառական թագավորությունների շրջան.- Ա. Բագրատունյաց հարստություն:** Հ. քաղաքական վերածնունդն սկսվեց մի քանի կենտրոններում: Բագրատունիներից հետո Արծրունիները հասան ինքնավար իշխանության (874 թ.), և շուտով արքայական թագ ստացան (914 թ.): Նրանց օրինակին հետևեցին Սյունյաց իշխանները: Մամիկոնյանների տոհմային Տարոն գավառը, որն այդ ժամանակ գտնվում էր Բագրատունիների մի ճյուղի ձեռքում և շրջապատված էր մուսուլմանական տարածքներով չկարողացավ ազատություն ձեռք բերել: Ավատատիրական ոգին դեռևս այնքան ուժեղ էր երկրում, որ հնարավոր չեղավ միասնական պետություն ձևավորել: Բագրատունիների գահը դեռ չէր ամրացել, երբ այն ճեղքվեց և բաժանվեց Վանանդի (կամ Կարսի) և Տաշիրի (կամ Լոռվա) ճյուղերի: Մասերի էին բաժանվում նաև Արծրունյաց և Սյունյաց իշխանությունները: Հայկական թագավորությունների շարքում հայտնվեցին մի քանի մուսուլմանական դինաստիաներ, մանր էմիրություններ՝ Վանա լճի հյուսիսային ափերին (Խլաթ, Մանազկերտ) և այլուր: Հ. շրջապատվեց մի կողմից իսլամական, մյուսից՝ քրիստոնեական տիրույթներով (արխազական, վրացական): Դրանց ետևում կանգնած էին Բաղդադի խալիֆը և Բյուզանդական կայսրությունը՝ հայկական հողերի նկատմամբ իրենց հավերժական նկրտումներով: Հարևան կառավարիչներից որևէ մեկի հետ ընդհարումն անմիջապես շարժման մեջ էր դնում մյուսներին: Վեճերը լուծվում էին միայն սրով: Թշնամությունն ու բարեկամությունն իրար էին հաջորդում արագ և անսպասելի: Եթե ընդհարման լուրջ պատճառները բացակայում էին, ապա դրանց փոխարինում էին արաբների արծաթասիրությունը կամ բյուզանդացիների ծարավը ռազմավարի նկատմամբ: Երկրի ներսում իշխում էին ավատատիրական կրքերը: Դրանից օգտվում էին հարևան տերությունները, որպեսզի տեղական իշխանություններին զինեն միմյանց դեմ այդպիսով թուլացնելով հայկական պետականությունը: Բագրատունյաց թագավորության հիմնադրի հետնորդ Սմբատ I-ը (891-914) երկրի սահմաններն ընդլայնեց Կուրի և Արաքսի հոսանքների միջև՝ Կարինից (Էրզրում) մինչև Պարտավ: Դվինի գրավման ժամանակ նա ընդհարվեց Ատրպատականի Սաջյան ամիրաների հետ: Նրանք թշնամաբար վերա-

բերվեցին Բագրատունու այն ցանկությանը, որ կամենում էր իր անմիջական կախվածությունը Սաջյաններից փոխարինել խալիֆի հետ անմիջական կապով: Սմբատը հաջողությամբ պաշտպանվում էր մինչև այն ժամանակը, երբ Յուսուֆ ամիրան նրա դեմ զինեց Սմբատի զարմիկին՝ Վասպուրականի իշխան Գագիկ Արծրունուն՝ արքայական թագով կաշառելով նրան: Պարտություն կրելով՝ Սմբատը Դվինում դաժան մահով լքեց աշխարհն այս (914 թ.): Նրա որդին՝ Աշոտ II Երկաթը, Բյուզանդիայի աջակցությամբ ետ վերցրեց հորենական գահը Սաջյանների դրածոյից և իրեն շահնշահ (արքաների արքա) հայտարարեց: Սաջյաններն ընկան խալիֆի դեմ մղված պայքարում, և Հ. ընթացավ խաղաղ զարգացման ճանապարհով: Աբասի (928-951) և նրա որդի Աշոտ III (951-977) թագավորությունը Բագրատունիների ծաղկման շրջանն է: Մուսուլմանների դեմ արշավանքներում բյուզանդացիներին օժանդակում էին հայ իշխանները: Աշոտն իր արքունիքը Կարսից տեղափոխեց Անի և պարսպապատեց այն. այդ պահից սկսյալ քաղաքն արագորեն աճեց՝ ֆեոդալական ամրոցից վերածվելով ճոխ մայրաքաղաքի: Գագիկ I օրոք (989-1020) Անիի ինչպես և թագավորության փայլը հասավ իր գագաթնակետին: Գագիկից հետո քաղաքացիական պատերազմ սկսվեց նրա որդիների միջև, որը հանգեցրեց թագավորության մասնատմանը. Հովհաննես Սմբատին (1020-1041) բաժին հասավ Շիրակ գավառը Անի մայրաքաղաքով, իսկ Աշոտ IV–ին (1020-1041)՝ մնացած տարածքները: Ներքին խառնակությունները հեղինակազրկեցին Բագրատունիների թագավորությունը և ջլատեցին ուժերը: Կոստանդին Մոնոմախ կայսրը Գագիկ II-ին խաբեությամբ հրավիրեց Կոստանդնուպոլիս և դիմեց մուսուլման կառավարիչներին, որ նրանց աջակցությամբ շրջապատի և գրավի Անին (1045 թ.): Հայ մատենագիրները, որ ամենամիամիտ վանականի վստահությամբ էին վերաբերում կեսարին և քրիստոնեական աշխարհի առաջնորդին, պատրաստ էին պատասխանատվությունը գցել հենց իրենց՝ հայերի վրա, հանուն այդ նպատակի որոնելով նաև մատնիչին՝ աղետի մեղավորին: Իրականում ամբողջ մեղքը Բյուզանդիայինն է: 1001 թ. կայսրությանը միացվեց Տայքի կյուրոպաղատությունը, այնուհետև հաջորդեցին Արծրունյաց և Բագրատունյաց թագավորությունները: Դրանով հեշտացավ սելջուկների առաջխաղացումը: Սելջուկների հորդաները Ալփասլանի առաջնորդությամբ 1064 թ. արդեն Անիի մատույցներում էին: Ջախջախելով կայսերական զորքերին (1071 թ.) և տիրելով հայկական տարածքներին, որոնք քիչ առաջ էին բաժին ընկել կայսրությանը՝ սելջուկները հաստատվեցին Հ.: Բոլոր կիսանկախ դինաստիաները, որ իշխում էին արաբական տիրապետության տիրույթներում,

վերացվեցին: Իսլամական Ասիան նորից միավորվեց մեկ պետության կազմում, որ սակայն շուտով սկսեց քայքայվել: Առըպատականում հաստատվեց բյուրք մամլուկ Ելտկուզը: Հյուսիսային Միջագետքում՝ Դիարբեքիրում, բարձրացավ Արտուխյանների հարստությունը, որ Մայաֆարկինից մինչև Խարբերդ իր իշխանությունը տարածեց հայկական գավառների վրա (1101-1231). սրանց մի ճյուղը գոյատևեց մինչև Լանկ-Թամուրի ժամանակները: Հ. Սրվանյան տարածքներն այսպես կոչված Շահ Արմենների դինաստիայի իշխանության ներքո էին: Այս հարստության (1100-1207) հիմնադիր է համարվում Սուքման-ալ-Կուբբին՝ Ատրպատականում Իսմայիլ իբն-Յակուտի սառրական: Փոքր Ասիայում թյուրք զորահրամանատար Գումիշ-Թեգինը հիմնեց Դանիշմանյանների հարստությունը (1097-1165): Հ. կրկին հայտնվեց իսլամական երկրների շրջափակման մեջ: Միայն հյուսիսից էր Հ. սահմանակից քրիստոնյա Վրաստանին, ուր թագավորում էր Բագրատունիների մի կրտսեր ճյուղը: Հայկական իշխանական տոհմերից շատերը վերացան անդադար պայքարում, մյուսներն ստիպված կամ կամավոր տեղափոխվեցին Եփրատից այն կողմ՝ ներգրավվելով կայսրության կյանքում: Հայոց շարժը դեպի արևմուտք, դեպի կայսրության խորքերը, սկսվել էր դեռևս Հուստինիանոս I-ի ժամանակներում և մշտապես ուժեղանում էր իսլամական տիրապետության անհրապույր պայմանների ազդեցությամբ: Կայսրությունով մեկ ցրված հայ իշխանները կարևոր ծառայություններ մատուցեցին Բյուզանդիայի պետական ու ռազմական գործունեության տարբեր ոլորտներում: Քաջարի մարտիկի և մտավոր բարձր կարողությամբ օժտված պետական գործչի հեղինակությունը նրանց համար բազմիցս ճանապարհ է հարթել դեպի կայսերական գահը: Եթե Իսավրյան հարստության հայկական ծագումը դեռևս կասկած է հարուցում, ապա անվիճելի է, որ այսպես կոչված Մակեդոնական դինաստիայի հիմնադիր Վասիլը հայ էր: Նախնական շրջանում հայերն ուղղվում էին դեպի Սև ծով, այնուհետև սկսեցին ճանապարհներ որոնել դեպի Միջերկրական ծով: Բագրատունյաց և Արծրունյաց վերջին ժառանգների հետ շատ հայեր անցան բյուզանդական տարածք: Նրանք հող նախապատրաստեցին Կիլիկիայում Ռուբինյան հարստության բարձրացման համար: Սելջուկների տիրապետության շրջանում հայոց քաղաքական կյանքը զարգանում էր երկու կենտրոններում. Հ. և Կիլիկիայում:

**Բ. Կիլիկյան թագավորություն** (1080-1375).- Այն ժամանակ, երբ սելջուկները հեղեղել էին Հ., հայ իշխանները նոր պետություն ստեղծեցին Կիլիկիայում: Բագրատունի վերջին արքա Գագիկ II-ի ազգական քաջ Ռու-

թենը տիրեց Կիլիկիային և հիմնեց մի հարստություն, որ կոչվեց Ռուբինյան կամ Կիլիկյան (1080 թ.): Կիլիկիայում հայկական տիրապետությունը համընկավ խաչակրաց արշավանքների հետ: Հյուսիսից հայերի վրա հարձակվում էին Ռումի սելջուկները (1077-1300), Միջագետքի կողմից՝ Զենգյանների մուսուլմանական դինաստիան (1127-1186) և Այուբյանների ժառանգորդները (1186-1260), իսկ նրանցից հետո՝ Եգիպտական մամլուքները (1230-1390): Սիրիական տարածքներում հաստատված խաչակրաց լատինական իշխանությունները հաճախ հայոց դաշնակցից վեր էին ածվում ախոյանի: Երբևէ չէր նիրհում նաև բյուզանդական չարակամությունը: Ռուբեն I-ի հետնորդները ընդլայնեցին իրենց տիրույթները՝ մշտական պայքար մղելով հարևան պետությունների դեմ: 1199 թ. Հայնրիխ VI կայսրը և Սելեստինոս Գ պապը Լևոն II-ին արքայական թագ ուղարկեցին: Նա թագավոր ճանաչվեց նաև Ալեքսիոս III Անգելոսի կողմից: Լևոնն արքունիքը Տարսոնից Սիս տեղափոխեց: Նրանից հետո թագը ժառանգեց միակ դստեր ամուսինը՝ Հեթում I-ը (1226-1270): 1341 թ. Հեթումյանների տոհմն ամլացավ, և գահը ժառանգեց Հեթումյանների ազգական Կիպրոսի Լուսինյանների դինաստիան: Եգիպտական մամլուքները հաճախ էին անհանգստացնում կիլիկյան թագավորներին և հարստահարիչ հարձակումներից մեկի ժամանակ գերեվարեցին Լևոն VI արքային (1375): Եվրոպական տերությունների միջնորդությամբ նա ազատություն ձեռք բերեց և գահն ու իշխանությունը ետ բերելու անպտուղ ջանքերից հետո վախճանվեց Փարիզում (1393 թ.): Պետական կառույցների բնույթով Կիլիկյան պետությունը Արևմտյան Եվրոպայի ավատատիրական պետությունների կարգին է պատկանում: Եվրոպական արտահայտությունները դուրս մղեցին նախաքարական փոխհարաբերություններին հատուկ հայերեն եզրաբառերը. բարոն, ձիավոր = chevalier, բուրջես (bourgeois), պայլ (bajulus), գունդստաբլ (connétable), ջամբրլայն (chambellan), ջանցլեր (chancelier), սենեսկալ (sénéchál) և այլն.- Տե՛ս E. **Dulaurier**, Etude sur l'organisation politique, religieuse et administrative du royaume de la Petite Amenie «Journal Asiat.», t. XVII-XVIII».

**Գ. Զաքարյանների հարստություն (Երկայնաբազուկներ).-** Բուն Հ. կյանքը կենտրոնացած էր Անիում: Սելջուկները Անին վաճառեցին Շադդադյաններին, որ Բագրատունիների հետ խնամիական կապեր ունեին (1072 թ.): Իբրև նրանց մրցակիցներ հանդես եկան վրաց Բագրատունիները, որոնք, բնականաբար, կարող էին համարվել հայ Բագրատունիների բնական ժառանգորդներ: Սահմեդականներից Անին խլելու մի քանի փորձից հետո վրացիները հասան իրենց նպատակին (1174 թ.): Հայերը դրական էին

վերաբերվում վրացական տիրապետությանը: Երկու քրիստոնյա ժողովուրդների դաշնակցությունը հանում Անի քաղաքի հանգեցրեց նրան, որ այն ազատագրվեց մուսուլմանների տիրապետությունից: Վրացական բանակը գլխավորում էին հայ իշխանները՝ Զաքարե և Իվանե Երկայնաբազուկ եղբայրները: Կարճ ժամանակում նրանք ետ գրավեցին հայ Բագրատունիների տիրույթները՝ Էրզրումից մինչև Սյունիք: Վրաց Թամար թագուհին ազատագրված հայկական հողերի կառավարումը հանձնեց Երկայնաբազուկ եղբայրներին (1191 թ.), որոնք փաստացի անկախ էին Վրաստանից: Զաքարեն և իր ժառանգները հաճախ Հ. թագավոր էին կոչվում: Երկայնաբազուկների հետ միաժամանակ առաջխաղացում ապրեցին Օրբելյանները: Սկզբնապես նրանք մրցակցում էին Երկայնաբազուկների հետ՝ հայկական հողերին տիրելու համար, բայց կորցնելով վրացական գահի վստահությունը՝ ստիպված եղան զիջել: Խուսափելով վրաց Բագրատունիների հետապնդումից Էլիկում Օրբելյան իշխանը ապաստանեց Ատրպատականում և հողատարածքներ ստացավ հայկական Սյունիքում (1186 թ.): Հնուց ի վեր Սյունիք գավառը առանձնակի դիրք էր գրավում: Այնտեղ տիրում էին տեղացի իշխանները, որ X հարյուրամյակի վերջին թագավորություն հիմնեցին, որը գոյատևեց մինչև 1166 թվականը: Օրբելյանները ժառանգեցին նրանց տիրույթները՝ հաստատվելով Սյունիքի արևմտյան մասում: Նրանք աստիճանաբար իրենց իշխանությունը տարածեցին Սյունյաց նախկին տարածքների նկատմամբ: Սյունիքի հարևանությամբ Խաչենի իշխանությունն էր: Օրբելյանները և Խաչենի իշխանները վերապրեցին մոնղոլական արշավանքները: Հ. արևելյան գավառների համար նրանք ունեին նույնպիսի նշանակություն ինչ Երկայնաբազուկները՝ Բագրատունյան թագի երբեմնի տարածքների նկատմամբ: Անկախ էին նաև Չորտվանելյաններն ու Խեղենեկյանները. առաջինները համարվում էին Մամիկոնյանների շառավիղ, որ Տարոնի դաշտավայրից դուրս էին մղվել դեպի Սասուն, իսկ երկրորդները ծագում էին Արծրունյաց իշխանական տոհմից և գոյատևել էին Վանա լճի ափին՝ անմատույց Ամյուկ ամրոցում: Երկայնաբազուկների օրոք նոր ամպրոպ որոտաց Հ. երկնքում. մոնղոլական արշավանքը: Փոքրոկի առաջին ավետաբերը Խորեզմշահ Ջալալ ադ-Դինն էր, որին ջախջախել էր Չինգիզ խանը: Սա հարստահարիչ արշավանքով անցավ Ատրպատականով և Հ. դեպի Փոքր Ասիա, սակայն, դիմադրության հանդիպելով, ետ դարձավ և զոհվեց Քուրդիստանի լեռներում (1231 թ.): Նրանից հետո երևացին Չինգիզի հրոսակները: Հ. Պարսկաստանի հետ ընկավ մոնղոլների տիրապետության տակ: Մեծ խաների կայսրությունը բաժանելիս Պարս-

կատաանն ու հարակից երկրները, այդ թվում և Հ., բաժին ընկան Հուլավուին, որի սերունդները իլդան էին կոչվում (1256 թ.): Նրանց իշխանությունն ընկավ XIV դարի երկրորդ քառորդում. պետության տարբեր մասերի կառավարիչներն իրենց անկախ հայտարարեցին: Պարսկաստանում բարձրացավ Ջելաիրյանների դինաստիան (1336-1411), որ իրեն ենթարկեց նաև Հ., սակայն հետո ստիպված եղավ զիջել (1378 թ.) Սև ու Սպիտակ ոչխարների (Կարա-կոյունլու և Ակ-կոյունլու) թուրքմենական ցեղերին: Սկսվեցին Լանկ-Թամուրի հարստահարիչ արշավանքները. նրա ավերածությունները գերազանցեցին մոնղոլների և սելջուկների ջարդարարությանը: Թամուրը Հ. վտարեց Կարա-Յուսուֆին՝ Կարա-կոյունլու թուրքմենների առաջնորդին, սակայն Թամուրի վախճանից հետո նա վերադարձավ և դարձյալ տիրեց Հ. (1405 թ.): Սև ոչխարի ցեղի թուրքմենները Հ. տիրապետեցին մինչև 1469 թ., երբ իշխանությունն անցավ Սպիտակ ոչխարի ցեղին: Շահուրի ճակատամարտում սեֆյան շահ Իսմայիլ I-ը ջախջախեց թուրքմեններին և նվաճեց Հ. (1502 թ.): Մոնղոլական տիրապետության շրջանում հայ իշխաններն օգտվում էին ազատությունից: Անձամբ ներկայանալով մեծ խաներին՝ իշխանները շահել էին ընդհանրապես քրիստոնյա բնակչության հանդեպ նրանց համակրանքը: Մոնղոլական տիրապետության անկմամբ ընկան նաև հայկական իշխանական տոհմերը, որոնք անհետ կորան թամուրական արշավանքների հորձանուտում: Հայոց Բագրատունիների կործանմամբ կյանքն Անիում դեռևս կանգ չառավ. այն շարունակեց զարգանալ նաև Շադդադյանների օրոք, իսկ Զաքարյանների ձեռքն անցնելով՝ Անին վերածվեց Առաջավոր Ասիայի հարստագույն առևտրական կենտրոնի. այդ մասին են վկայում Ախուրյան (Արփա-չայ) գետի ափին հառնող քաղաքի վեհաշուք ավերակները (Н. Марръ, Ани, столица древней Арменіи, նաև՝ «Братская помощъ армянам», Բ. հրատ., 1898): Հիմնական ուժն անցավ քաղաքային բնակչությանը: Անին ուներ կառավարման իր կառույցները, որոնք գլխավորում էին պարոնները, և որոնք Անիի զարգացման վերջին փուլում առավելապես արտահայտում էին առևտրական խավի շահերը: Անիի անկումը պատճառ հանդիսացավ առևտրային հարաբերություններով իր հետ կապված Հ. բոլոր մյուս կենտրոնների անկման համար: Եվ ինչպես նախորդ շրջանում իշխանները հեռանում էին դեպի Բյուզանդիա, այնպես և Անիի անկումից հետո քաղաքային առևտրական բնակչությունն ուղղվեց դեպի հայրենիքից դուրս գտնվող առևտրական կենտրոններ: Երկիրը զրկվեց և՛ տոհմիկ ազնվականությունից, և՛ նոր

ճնավորված միջին խավից: Ազգային կյանքի ղեկավարությունն ստանձնեց Հայոց եկեղեցին՝ ի դեմս Էջմիածնի կաթողիկոսների:

VII. **Էջմիածնյան շրջան.**- Սկզբից ևեթ Հայ եկեղեցին կարևոր գործոն էր: Նրա նշանակությունն առավել ուժեղացավ, երբ Կաթողիկոսական Աթոռը Կիլիկիայից տեղափոխվեց Էջմիածին (1441 թ.): Հայոց կաթողիկոսները ժողովրդի և երկրի միակ ներկայացուցիչներն էին շահերի և սուլթանների հետ հարաբերություններում: Բյուզանդիայի կործանմամբ (1453 թ.) օսմանյան սուլթանները դարձան ամբողջ Առաջավոր Ասիայի տերը և սկսեցին Սեֆյանների հետ վիճարկել հայկական հողերի ճակատագիրը: Աhռելի բանակի գլուխն անցած Սելիմ Ահեղը Հ. արշավեց դեպի Թավրիզ, ջախջախեց շահ Իսմայիլին և տիրացավ Հ. արևմտյան կողմերին՝ hյուսիսում մինչև Էրզրում և հարավում մինչև Ուրմիա (1514 թ.): Շահ Թահմազ I-ը փորձեց ետ բերել կորսված գավառները, սակայն Սուլեյման I-ի օրոք (1533-1555) թուրքերի տարած հաղթանակներն ամրապնդվեցին 1514 թ. պայմանագրի կետերով: Այդուհետ պատերազմները հաճախակի էին կրկնվում, սակայն երբ վերականգնվում էր խաղաղությունը, վերականգնվում էին նաև հին սահմանները: Անդադար և հարստահարիչ պատերազմները և պարբերական սովի տարիները, որ անխուսափելի արդյունքն էին այդ պատերազմների և որոնց ընթացքում կամ չէին մշակվում դաշտերը, կամ ցանքը կողոպտվում էր ու ոտնատակ տրվում, շատերին ստիպում էին փրկությունը որոնել օտարության մեջ: Հ. կենտրոնական գավառը՝ Այրարատը (Երևանի նահանգ), վեր էր ածվում անմարդաբնակ անապատի: 1580 թ. սուլթան Մուրադը Այրարատից մինչև 60 հազ. հայ և մուսուլման բնակչություն վերաբնակեցրեց այլ գավառներում: 1605 թ. շահ Աբբաս I Մեծը Արաքսի հովիտից բռնի կերպով տասնյակ հազարավոր ընտանիքներ գաղթեցրեց և բնակեցրեց Պարսկաստանի տարբեր մասերում: Հայոց կաթողիկոսներն ըստ կարելվույն օգնում էին տառապյալ ժողովրդին՝ հաճախ հույսեր կապելով արտաքին միջամտության հետ: Եվրոպական քրիստոնյա տերությունների միջոցով իսլամական տիրապետությունից հայերին ազատելու գաղափարը Ստեփանոս Ե (1541-1556) կաթողիկոսինն է՝ ույսյալ մի այր, որ երիտասարդության տարիներին եղել էր Եվրոպայում: 1547 թ. նա անձամբ ուղևորվեց արևմուտք և Հռոմի պապի միջոցով փորձում էր եվրոպական արքաների ուշադրությունը սևեռել հայոց ծանր կացության վրա: Նրա հաջորդ Միքայել Ա Սեբաստացին (1556-1570) նույն նպատակով Եվրոպա ուղարկեց հատուկ բանագնացների մի խումբ, որը գլխավորում էր Աբգար Թոխաթեցին, որ հայտնի անուն է հայկական տպագրության պատմության մեջ: Հայ

ամենաերևելի հայրապետներից մեկի՝ Հակոբ Դ Ջուղայեցի կաթողիկոսի օրոք (1655-1680) գաղտնի խորհրդակցություն գումարվեց Էջմիածնում (1678 թ.), ուր ներկա էին 6 եպիսկոպոս և 6 աշխարհիկ անձ: Վճռվեց կաթողիկոսի գլխավորությամբ պատգամավորություն ուղարկել Եվրոպա՝ հայոց ազատագրության հարցերն այստեղ ներկայացնելու համար: Սակայն կաթողիկոսը վախճանվեց Կոստանդնուպոլսում. նրա ուղեկիցները վերադարձան, բացառությամբ Օրի իշխանի, որ շարունակեց իր ճանապարհը դեպի Եվրոպա: Օրին սերում էր ղարաբաղյան մելիքներից (Խաչենի հին իշխանության տարածքում, Հ. Աղվանք ծայրագավառում՝ Ղարաբաղում, հինգ մանր ինքնավար իշխանություններ կային, որոնք տերերին արաբական մելիք եզրաբառով էին անվանում): Նա գնաց Ֆրանսիա և զինվորական ծառայության անցավ: Սա այն ժամանակ էր, երբ պապի հետ մեկտեղ Լյուդովիկոս XIV-ն ընդդեմ Թուրքիայի Սրբազան դաշնության գաղափարն էր փայփայում: Ֆրանսիայից հետո Օրին ծառայության անցավ Հռենոսի պալատին, կուրֆյուրստ Հովհան Վիլհելմի մոտ, որ նրան շահագրգռեց Հայկական հարցում: Հենց նրա առաջարկով Օրին հետամուտ եղավ ռուսական ցարի օգնությանը: Նախքան ցարին դիմելը Օրին վերադարձավ Հ., մելիքների հետ գաղտնի խորհրդակցություններ կազմակերպեց Գանձասարում և Անգեղակոթում և մելիքներից հավաստագրեր վերցնելով՝ իբրև հայոց լիազոր ներկայացուցիչ մեկնեց Ռուսաստան: Իրենց խոշոր վաճառականների շնորհիվ հայերը քաջածանոթ էին ռուսական արքունիքին. դեռևս 1660 թ. Հայկական Առևտրական ընկերությունը ցարին մի գահ էր նվիրաբերել, որ զարդարված էր ալմաստով, հակինթով, մարգարտով, արևելյան փիրուզով և թուրքական արծնապակիով: Իշխան Օրին անձամբ ներկայացավ Պետրոս Մեծին և շարադրեց հետագա գործողությունների իր տեսակետը: Ցարը նրան ջերմորեն ընդունեց և ռուսական ծառայության գնդապետի աստիճան շնորհելով՝ որպես դեսպան ուղարկեց Պարսկաստան: Ետդարձ ճանապարհին՝ Աստրախանում, Օրին վախճանվեց (1711 թ.), որը բացասաբար անդրադարձավ դեպքերի հետագա ընթացքի վրա: 1722-ին Ռուսաստանի Պետրոս ցարն արշավանք սկսեց դեպի Պարսկաստան: Վրաց Վախթանգ թագավորն ու հայ մելիքները, ժողովելով իրենց զորքերը, սպասում էին ռուսական բանակի ժամանմանը: Սակայն Պետրոսը բավարարվեց Դերբենդի գրավմամբ և ետ դարձավ՝ դաշնակիցներին թողնելով հուսահատ դրության մեջ: Մելիքները հերոսական դիմադրություն ցույց տվեցին պարսկական զորքերին: Նրանք Դավիթ Բեկի գլխավորությամբ մի շարք ճակատամարտերում ջախջախեցին շահական գնդերին ու թաթարական ցեղերի բանակներին և

Ղարաբաղն անկախ իշխանություն հայտարարեցին (1722-1728)։ Թահմազ շահն ստիպված էր Դավիթ Բեկին իշխան ճանաչել՝ նրան շնորհելով դրամ հատելու իրավունք։ Սակայն շուտով հայտնվեցին սուլթանի զորքերը. օգտվելով Պարսկաստանում տիրող խառնակ վիճակից՝ թուրքերը զավթեցին հայկական մարզերը և ոչնչացրեցին Դավիթի իշխանությունը։ Հայերին ազատագրելու հարցը դարձյալ ծագեց Եկատերինա II-ի օրոք։ Եվ դարձյալ իբրև նախաձեռնող հանդես էին գալիս Ղարաբաղի մելիքները։ Տեղի խան Իբրահիմը կամենում էր սահմանափակել մելիքների ազատությունը, փորձում էր բշնամանք սերմանել և անգամ Ղարաբաղից երկու մելիքի վտարեց։ Նրանք դիմեցին կայսրուհուն և դարձյալ բարձրացրեցին ծանր անուրից հայերին ազատելու հարցը։ Հ. ազատագրության հարցը հանձնարարվեց Գ. Պոտյոմկինին։ Հայերից նրա մերձավոր խորհրդականներն էին Հովսեփ եպիսկոպոս Արղության-Երկայնաբազուկը, Հ. Լազարյանը և Ստ. Դավիդովը։ Եվ չնայած մելիքներին հայտնել էին նրանց խնդրանքն իրականացնելու հնարավորության մասին, սակայն ռազմական գործողությունները դեռ նոր էին սկսվել, երբ ռուսական զորքերը ետ կանչվեցին։ Երկիրը ենթարկվեց Աղա-Մահմեդ խանի վայրագություններին (1795 թ.), և խանը հասավ մինչև Թիֆլիս՝ մեծ աղետ ու վնասներ հասցնելով ժողովրդին։ Վարանդայի տեր ազդեցիկ մելիք Ջումշուդը Ս. Պետերբուրգ ճանապարհվեց։ Հարցի էությունը շարադրելով Պետրոսի ժամանակներից սկսյալ, նա ասում է. «յուր հետապնդումներում անկուշտ թշնամացյալ ճակատագրից», պաղատագին խնդրում ենք, որ կայսրն ընդունի իրենց հպատակությունը, զորք ուղարկի և ազատագրի իրենց։ Վճռական միջոցառումներ ձեռնարկվեցին միայն Ալեքսանդր I-ի թագավորության ժամանակ։ 1808 թ. Բարձրագույն հրովարտակում առաջին անգամ հնչեցին հետևյալ բառերը. «Քրիստոնեական մարզերն անցնում են Իմ պաշտպանության ներքո և չեն կարող օտարվել հիշյալից»։ Գյուլիստանի պայմանագրով (1813 թ.) Ղարաբաղի (որի կազմում էին նաև մելիքների տիրույթները) և հարակից խանությունները միացվեցին ռուսական տարածքներին։ Խաները հեռացվեցին, և հիմնվեց ռուսական վարչական համակարգ (տե՛ս Г. Эзовъ, Сношения Петра Великого съ армянскимъ народом, СПб., 1898)։ 1826-1828 թթ. ռուս-պարսկական պատերազմն ավարտվեց Թուրքմենչայի հաշտության պայմանագրով (1828 թ.), համաձայն որի Երևանի և Նախիջևանի խանություններն անցան Ռուսաստանին։ Այսպիսով Պարսկաստանին ենթակա հայկական գավառներն ազատվեցին դարավոր տիրապետությունից։ Կարելի էր կարծել, որ 1877-1878 թթ. ռուս-թուրքական պատերազմը նույն ոգով կլուծեր նաև թուր-

քահայության ճակատագիրը, բայց այն հայերին տվեց միայն Սան-Ստեֆանոյի պայմանագրի 16-րդ կետը, ուր ասված էր. «Նկատի առնելով այն, որ ռուսական զորքերի դուրս բերումը նրանց կողմից գրավված Հ.՝ Թուրքիայից վերադարձվելիք վայրերից կարող է այնտեղ առիթ տալ բախումների և բարդությունների, որոնք երկու պետությունների բարի հարաբերությունների վրա կունենան վնասակար ազդեցություն, Բարձր Դուռը պարտավորվում է անհապաղ կենսագործել հայաբնակ մարզերի տեղական կարիքներից հարուցվող բարելավումներ և բարենորոգություններ, և զերծ պահել հայերի անվտանգությունը քրդերից և չերքեզներից»: Բեռլինի կոնգրեսում այս դրույթը փոխարինվեց դաշնագրի § 61-ով. «Բարձր Դուռը պարտավորվում է առանց հետագա հապաղման իրագործել հայաբնակ մարզերում տեղական կարիքներից հարուցված բարելավումներն ու բարենորոգումները և ապահովել հայերի անվտանգությունը չերքեզներից և քրդերից: Բարձր Դուռը տերություններին պարբերաբար կհաղորդի այն միջոցների մասին, որոնք ինքը ձեռք է առել այդ նպատակի համար, իսկ տերությունները կհսկեն դրանց կիրառմանը»: Կոնգրեսը դուրս շպրտեց § 16-ի սկզբնամասը և առաջարկելով ռուսական զորքերի փոխարեն՝ «տերությունները կհսկեն» կապակցությունը, դրանով իսկ կարկվածահար արեց ռուսական կառավարության մարդասիրական ձգտումները: 61-րդ հոդվածը հայերի համար ապահովվեց իսկական ողբերգական իրադրություն: Խոստումներով կապված քրիստոնյա տերություններն ընդհանուր հայտարարի չէին գալիս իրագործվելիք միջոցառումների հարցում, իսկ Բ. Դուռը ձեռնամուխ եղավ հայոց համակարգված ջարդին՝ ոչ միայն զորքերի կիրառմամբ, այլ նաև նոր կազմավորված քրդական համիդիե հեծելազորի, որպեսզի մեկընդմիշտ ջնջի «հայերով բնակեցված մարզեր» հասկացությունը: Անմարդկային հաշվեհարդարը 30 տարվա ընթացքում արյունոտ հետք թողեց հայոց կյանքում (1894-1895 թթ. և հետագա զանգվածային ոչնչացումն ու ջարդերը) և մոռացության մատնեց վերջին դարերի հայոց մարտիրոսությունը: Հայկական կազմակերպությունները, որ ի հայտ էին եկել միջազգային համաձայնագրի միանգամայն իրավական հիմքի վրա և նպատակ ունեին տերությունների ուշադրությունը սևեռել երկրում տիրող իրավիճակին, ապօրինի էին ճանաչվում: Տերությունների աջակցությունը չստանալով՝ հայերը երբեմն ոտք էին դնում հեղափոխական գործողությունների ճանապարհին (տե՛ս **Դաշնակցություն**): Չնայած Աբդուլ Համիդի տապալմանը և սահմանադրություն հռչակելու հանգամանքին, թուրքահայության վիճակը շարունակում է ծայրաստիճան անորոշ մնալ: **Ռուսահայության** վիճակի մասին տե՛ս **Կովկաս**:

**Գրականություն**.- շարադրանքում նշված աշխատություններից բացի տե՛ս C. **Lehmann**, Das Vorarmenische Reich von Wan («Deutsche Rundschau», 1894-1895), իր իսկ՝ «Materialien zur älteren Geschichte Armeniens und Mesopotamiens»՝ «Abh. d. König. Ges. d. Wiss. von Göttingen»-ում, հատ. IX Բեռլին, 1907), իր իսկ՝ «Arménien Einst und jetzt» (1910), իր և W. **Belck**-ի հոդվածները «Verh. d. Berliner Gesell, f. Anthrop.»-ում (1892 թ. և հչ.), «Zeit. f. Ethnologie» (1892 թ. և հչ.), «Zeit. f. Assyrologie» (1892 թ. և հչ.), «Sitzungsber, der K. preuss. Ak. d. Wiss» (1899 թ. և հչ.), «Nachr. d. K. Gess. der. Wiss. zu Gött.» (1899 թ. և հչ.); A. **Sayce**, The cunei form inscriptions of Van («Jour. As. Soc.», հատ. XIV-XXVI, L., 1882), իր իսկ՝ «A forgotten Empire in Asia Minor» (1888); P. **Jensen**, «Hettiter und Armenier» (1897); M. **Streck**, Das Gebiet der heutigen Landschaften Armenien, Kurdistan und Westpersien nach bal ylassyr. Keilinschriften, V. Tomaschek, Die alten Thraker (1893); F. **Justi**, «Geschichte Irans»՝ «Grundriss d. iranische Phil.»-ում (1897); A. **Gutschmidt**, Geschichte Irans und seiner Nachbarländer, (1888); **Th. Reinach**, Mithridate Eupator (1869); Г. **Халатьянцъ**, Очеркъ истории А. Периодъ I. Древняя исторія (մինչև Ք. ծ. III դ.); Հ. **Գարդթհաուն**, Տիեզերական պատմութիւն (մինչև Ք. ծ. V դ.); Ս. **Գաբրազաշեան**, Քննական պատմութիւն Հ. (մինչև Ք. ծ. V դ., Կ. Պոլիս, Թիֆլիս, 1880-1895); A. **Saint-Martin**, Mémoires historiques et géographiques sur l'Arménie (Փ., 1819); **N. Dolens et A. Khatch**, Histoire des ancienc Arméniens (Ժնև, 1907); E. **Babelon**, Les rois de Syrie, d'Arménie et de Commagène; cataloque des monnaies grecques de la bibliothèque nationale (Փարիզ, 1890); **Petrowicz**, Arsacidenmünzen (Վիեննա, 1904); **Th. Nöldecke**, Aufsätze zur pers. Geschichte (Լպց., 1887); իր իսկ՝ «Tabari» (1879); A. **Крымскій**, Исторія Сасанидов и завоевание Ирана арабами (М., 1905); **Н. Адонцъ**, А. въ эпоху Юстиниана: политическое состояніе на основъ нахарарскаго строя (ՍՊբ., 1908); **И. Джаваховъ**, Государственный строй въ древ. Грузіи и древней А. (1905); **K. Gütterbock**, Römisch-Armenien und die römischen Satrapien in VI Jahr. (1900); իր իսկ՝ «Byzanz und Persien» (Բեռլին, 1906); J. **Marquart**, Untersuchungen z. Geschichte von Eran(1905); իր իսկ՝ «Eranschahr» (1901); իր իսկ՝ «Osteuropäische und ostasiatische Streifzuge»; M. **Ghazarian**, Armenienunter der arabischen Herrschaft (Մարբուրգ, 1903); **H. Hübschmann**, Zur Geschichte Armeniens und der ersten Kriege der Araber (Լպց., 1875); A. **Гренъ**, Династия Багратидовъ въ А. (Жур. Мин. Нар. Просв., 1893); A. **Rambaud**, L'Empire grec au X siècle (Փարիզ, 1870); **А. Васильевъ**, Византия и Арабы. Полит. отнош. за время Аморійской династіи (1900); նույնի՝ «Полит. отнош. за время

Македонской династіи» (Ս Պբ., 1902); **H. Gelzer,** Abriss der Byz. Kaisergeschichte (Այունիխեն, 1897, Կ. Կրումբախերի մոտ); **A. von Kremer,** Culturgesebichte des Orients unter den Chalifen (1875); Стэнли Лэнъ-Пуль, Мусульманскія династіи, թարգմ. անգլ. Վ. Բարտոլդի (1899); Н. Марръ, О раскопкахъ и работахъ въ Ани; тексты и расысканія по армяно-груз. фил., գիրք X (ՍՊբ., 1907); M. **Brosset,** Les ruines Ani (1860); **E. Dulaurier,** Le royaume de la Petite-Arménie, «Recueuil des historiens des Croisades. Docuni. arm»-ում (1869), իր իսկ՝ «Recherches sur la Chronologie arménienne» (Ф., 1859); Ղ. Ալիշանի մենագրությունները՝ «Սիսուան», «Այրարատ», «Սիսական», «Շիրակ»; К. Паткановъ, Исторія монголовъ по арм. источникамъ (ՍՊբ.); Г. Линчъ, «А.» (թարգմ. անգլ. Եղիզավետա Ջունկովսկայայի, Թիֆլիս, 1910); Г. Эзовъ, Сношенія Петра Великаго съ армянскимъ народомъ (1898); **И. Шопенъ,** Исторический памятникъ состоянія Армянской области въ эпоху ея присоединенія къ Россійской Имперіи (ՍՊբ., 1852); **Jos. von Hammer,** Geschichte des Osmanischen Reiches.

II. ՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ.- Հայ գրականության հնագույն հուշարձանները Ք. թվականության V դարից են: Այդ ժամանակաշրջանին է պատկանում հայոց գրերի գյուտը, կամ ավելի ճիշտ, դրանց վերջնական մշակումը, որ կապվում է Մեսրոպ Մաշտոց վանականի անվան հետ: Մեսրոպն ու իր ժամանակակից Սահակը, որ Գրիգոր Լուսավորչի տոհմից է, համարվում են հայ դպրության հիմնադիրներ: Հայերը գրեր ունեին դեռ Մեսրոպից առաջ, և դրանք պահվում էին ասորի Դանիել եպիսկոպոսի մոտ: Դրանք, ինչպես ասորականը, 22-ն էին, և քանի որ հայկականում 36 է, ուստի Մաշտոցին է վերագրվում մնացյալ 14 նշանագրերի ստեղծումը: Նրա նպատակն էր հին գրերը լրացնել նոր նշաններով, որ [նախատեսված կլինեին] այն հնչյունների համար, որոնք բնորոշ են բացառապես հայերենին: Դրանց թվին են պատկանում ատամնային ց, ծ, ձ, և առաջնաքմային ջ, չ, ճ հնչյունները: Վիճելի հարց է, թե սրանից բացի ուրիշ ո՞ր հնչյունների ծագումն է տեղային: Դրա լուծումը գուշակվում է համեմատությամբ Հ. այբուբենի և վրացականի, որի ծագումը ևս կապվում է Մեսրոպ Մաշտոցի անվան հետ: Իրար հարազատ այս երկու այբուբենների տարբերությունն արտահայտվում է լոկ տառերի դասավորության հերթականությամբ: Վրացական այբուբենում հունականի և ասորականի հետ համընկնող տառերը դրանց նմանությամբ են իրար հաջորդում, լոկ այն տարբերությամբ, որ հունական քսի (ξ) = ասորական սեմկատի տեղում, վրացականում խոտան է, իսկ այնտեղ, ուր ասորական սադեն է, լատինականում կամ հունարենում θ, վրացականում ժ-ն է: Վերջում ատամնային և քմային պայթաշփականներն են կոկորդայինների հետ մեկտեղ: Պետք է կարծել, որ հենց դրանք են այբուբենի կատարելագործման արդյունքը: Եթե հաշվենք նաև ընդհանուր կարգը մտցված ը-ն և ժ-ն, ինչպես և հայկական կրկնակի p-երի [ր-ռ] և e (կամ э [ե-է]) հանգամանքը, ապա ի հայտ կգան այն տարրերը, որոնցով արտահայտվել է այբուբենի կատարելագործումը: Վրացական այբուբենի վերջում հայտնված տառերը հայկականում ընդհանուր դասավորության մեջ են: Սա ցույց է տալիս, որ հայկական այբուբենը կրկնակի մշակման է ենթարկվել, իսկ վրացականը պահպանել է իր առավել հին ձևը: Ինչ վերաբերում է բուն նշանագրերին, ապա այս դեպքում ևս վրացականն արտահայտում է տառերի ավելի հին և բացահայտորեն սեմական բնույթը: Հին հայկական տառաձևը վրացական այսպես կոչված կրոնականի (խուցուրի) հետ մեկտեղ հառնում են դեպի սեմական նախաձևը, սակայն [հայկականը] վերափոխվել է՝ ոչ առանց հունական գրի ազդեցության: Թե արդյոք դանիելյան գրերով գրչություն եղել է, հայտնի չէ: Ավելի քան հավանական է, որ եղել է: Սակայն մեզ հասել է միայն մես-

րոպյան դպրությունը: Այն սկսվում է Սուրբ Գրքի հայերեն թարգմանությամբ: Թարգմանության պատմությունը, ինչպես փոխանցում են հին հեղինակները, դեռևս քննական վերլուծության չի ենթարկվել: Պատմագիրների խոսքերով նախնական թարգմանությունն արվել է ասորական բնագրից, իսկ հետո ճշտվել հունականով: Ըստ ամենայնի մեկ անգամ չէ, որ ուղղումներ են կատարվել: Էջմիածնի վանքի գրադարանում վերջերս հայտնաբերված և շրջանառության մեջ դրված (պրոֆ. Գր. Խալաթյանցի [աշխատասիրությամբ], Մոսկվա, 1899) ժամանակագրությունների (Паралипоменон-քրոնիկոն) գիրքն էապես տարբերվում է Վուլգատայի բնագրից. սրանից երևում է, որ ոչ միայն թարգմանություններում էին ուղղումներ կատարվում, այլև որոշ գրքեր թարգմանվում էին վերստին (տե՛ս Н. Марръ, Новооткрытый армянскій текстъ Паралипоменон, «Кавказскій вѣстникъ», № 4): Հայ բանասիրության կարևորագույն խնդիրներից է ոչ միայն հայկական Վուլգատայի առնչության պարզումը ասորականի և հունականի հետ, այլև հայկական նախնական տարբերակի, որ ծագում է ասորական բնագրից: Աստվածաշնչի վրացերեն թարգմանությունն այս հարցի լուծման գործում կարևոր դեր ունի. փոխադրված լինելով հայկական թարգմանության նախնական օրինակից՝ այն լույս է սփռում հայերեն սկզբնական տարբերակում կատարված փոփոխությունների բնույթի վրա: Հայ հին դպրությունը, առավելապես հոգևոր, էապես հիմնվում էր Սուրբ Գրոց և ծավալուն աստվածաբանական գրականության վրա: Աստվածաբանության բոլոր ճյուղերը՝ հայրաբանություն, մեկնողական գրականություն, սրբախոսություն, պաշտոներգություն, խրատաուսուցողական բնույթի երկեր, թե՛ թարգմանական, թե՛ ինքնուրույն, մեծ թիվ են կազմում: Տակավին ոչ բոլոր հուշարձաններն են հրատարակվել, շատերը դեռևս անշոշափ դրված են վանքերի ձեռագրատներում, և անգամ ոչ բոլոր հրատարակվածներն են ուսումնասիրվել: Հայ դպրությունը կտրուկ անկումներ է ունեցել: Թագավորական և քաղաքական հեղաշրջումների հետ կապված արտաքին անսպասելի իրադարձությունները մեկ անգամ չէ, որ խաթարել են կյանքի բնականոն ընթացքը. պարթև Արշակունիների, պարսից Սասանյանների, արաբական, բյուզանդական և այլ տիրապետությունները, ամենքը յուրովի էին վնասում, իսկ որոշ անգամներ երկիրն ընդհանրապես կորցնում էր կապն անցյալի հետ, կտրվում նրանից: Արաբական արշավանքն այնպիսի ցնցում էր Հայաստանի համար, որ ութերորդ հարյուրամյակում լոկ մշուշոտ հուշեր էին մնացել Արշակունիների ժամանակաշրջանի մասին: Անցյալի հետ կապը վերականգնելու համար հարկավոր էր զբաղվել գրավոր ժառանգությամբ. մատյանները նոր տես-

անկյունից էին լուսաբանվում, հաճախ փոփոխության ենթարկվելով նոր իրադրության և ժամանակի համապատասխանությամբ: Անցյալի գրական բազում հուշարձանների կապակցությամբ, հատկապես պատմական ուղղվածության, կարող են կասկածներ առաջանալ, թե դրանց ներկայիս բնագիրը որքանով է համապատասխանում սկզբնականին: Այն, որ դրանք հին ծագում ունեն՝ բացահայտ է, բայց կասկածից վեր է նաև, որ դրանց «միջամտել են կողմնակի ձեռքեր»: Ձեռագրերը, որ կարող են դյուրացնել բազում վիճելի հարցերի լուծումը, դեռ սպասում են իրենց հրատարակիչներին և հետազոտողներին: Ցայժմ հիմնական հետաքրքրությունը կենտրոնացված է պատմագիրների երկերի վրա. դրանից շատերը հրատարակվել են մի քանի անգամ և գրեթե բոլորն էլ թարգմանվել են արդի լեզուներով: Մեզ հասած մատյաններում հայ մատենագրությունը ներկայանում է երկու՝ միմյանց հետ մրցակցող հոսանքներով, որոնցից մեկը ձևավորվել է ասորապարսկական մշակութային հենքի, մյուսը՝ հունականի վրա: V դարի վերջերից նկատելի են երկու ուղղությունների հետևորդների միջև հակազդեցություններ: VI դարում եկեղեցական-դավանաբանական վեճերի ծագմանը զուգընթաց այս հակազդեցությունն ուժեղանում է, և այդուհետ գրականությունը դառնում է եկեղեցական կյանքի հոսանքներից կախյալ: VI դարում սկիզբ է առնում հականեստորական շարժումը, որ աննկատ կերպով վեր է ածվում երկաբնակության դեմ պայքարի: Այդ շրջանում էր, որ Մավրիկիոսի և Խոսրով Փարվեզի՝ 591 թ. կնքած պայմանագրով Պարսկահայաստանի զգալի մասն անցնում է Բյուզանդիային: Սա բարենպաստ պայմաններ է ստեղծում քաղկեդոնականության հետևորդների համար: VII դարում, երբ Հերակլիոս կայսեր առաջնորդությամբ բյուզանդական զորքերը գտնվում էին Հայաստանում, քաղկեդոնականները հաղթություն են տանում և իշխող դիրք գրավում մինչև հաջորդ դարասկիզբ: Երբ ի հակակշիռ բյուզանդականի Հայաստանում սկսեց աճել արաբական ազդեցությունը, այն իր հետքն է թողնում նաև եկեղեցական կյանքում. 726 թ. ասորի Հակոբիկյանների մասնակցությամբ հայերը հերքում են քաղկեդոնականությունը: Միաբնակության ողով տոգորված հին դավանանքի վերականգնման ժամանակաշրջանին, որ նաև հայ մատենագրության առաջին շրջափուլի վերջին հանգրվանն էր, հաջորդեց եկեղեցու արմատական վերափոխությունն այն հիմնաքարի վրա, որին խարսխված էր լինելու հետագա դարերում: Այդ շրջանի գրականությունը բնորոշվում է երկու նշյալ ուղղություններով. առաջին կեսում իշխող էր հիմնականում ասորական դպրոցը, երկրորդ կեսին հակառակը՝ գերակա դիրք էին գրավում հունաբանները: VI դարի վերջերից զորանալով՝

առեղծվում է հունական ուղղվածության մի վառ շերտ՝ կոչվելով հունաբանության հետևորդների դարաշրջան: Այդ դպրոցի ծաղկումը VII դարում էր: Հունաբանները ընդլայնեցին մատենագրության շրջանակները, ներմուծեցին նոր մտքեր ու գիտելիքներ: Իմաստասիրություն, ճարտասանական, քերթողական և հաշվողական արվեստներ, քերականություն, ֆիզիկական և պատմական աշխարհագրություն, միով բանիվ՝ ժամանակի բոլոր գիտափիլիսոփայական առարկաները թարգմանական և ինքնուրույն երկերով Հ. մատենագրության անքակտելի մաս դարձան: Այս առարկաներով վարժյալ անձը հայոց մեջ հաճախ քերթող (ի մասնավորի բանաստեղծ) անունն էր ստանում: Հունաբանների դպրոցը կարելի է քերթողների դպրոց կոչել: Հունաբան հեղինակները, ի տարբերություն դյուրահավատորեն պատմագրող հին գրողների, առանձնանում էին ներկայացվող նյութի նկատմամբ քննական վերաբերմունքով: Հունաբան դպրոցի գերակա առանձնահատկությունները ճշգրտությունն ու շարադրանքի պայմանական ընդունված ձևերին հետևելու ձգտումն են: Այս դպրոցի ծնունդը պայմանավորված է դավանաբանական վեճերով: Քաղկեդոնի ժողովում քննարկվող Քրիստոսի բնություններին առնչվող հարցն, ըստ էության, լուծում չէր ստացել: Քաղկեդոնական քրիստոսաբանության իրական առաջընթացը եղավ Հուստինիանոսի ժամանակաշրջանում, երբ Ղևոնդիոս Բյուզանդացի վանականը (մահ. 543 թ.)՝ Արիստոտելի ուսմունքի համաձայն վերլուծելով բնություն և էություն հասկացությունները, դիալեկտիկորեն հիմնավորեց ժողովի որոշումները: Այդուհետ քրիստոսաբանական վեճերը փոխադրվում են հասկացությունների դիտարկման սխոլաստիկ վեճերի բնագավառ: Սկսվում է Արիստոտելի և Պլատոնի համապատասխան երկերի քննությունը եկեղեցական ասպարեզում: Դոգմատիկան և իմաստասիրությունը արտահայտությունների ճշգրտություն էին պահանջում: Սա արտացոլվեց հայկական եկեղեցական կյանքում և մտքերն ուղղեց դեպի հունական գրականություն: Այդ շրջանում ի հայտ եկած թարգմանություններում հունական բնագրին հարազատ լինելու ձգտումն արտահայտվում է ոչ միայն բառաստեղծման, այլև շարադրման եղանակի վրա: Լեզուն հունական կաղապարին հարմարեցնելը արհեստականության էր հասցնում, երբեմն անգամ եղծման: Լեզվի ասպարեզում հունաբանների գործունեության դրական կողմն առաջին հերթին արտահայտվեց հայոց բառանյութի՝ քերականական նոր ձևերով հարստանալու հանգամանքով: Ի նկատի առնելով, որ հիշյալ դպրոցի ծաղկումը համընկնում է Հայաստանում քաղկեդոնական շարժման հետ, հնարավոր է, որ դրա գլխավոր ներկայացուցիչները քաղկեդոնականներ էին: Սակայն սկզբնապես այն ի

հայտ է եկել միաբնակների միջավայրում: Ըստ ժամանակի և հավաստիության մատենագրության մեջ առաջին անգամ հիշատակյալ քերթողը Վրթանեսն է (VI-VII դդ.), որ Հայ եկեղեցու մոլի հակաքաղկեդոնական հայրերից է: Անգամ հիմքեր կան կարծելու, որ հունաբան շարժումը հայերին է անցել ոչ թե հույներից, այլ հարևան միաբնակ ասորիներից: VI դարում Հայ եկեղեցին սերտորեն հաղորդակցվում էր միաբնակների ասորական ճյուղի հետ (տե՛ս E. Ter-Minassiantz, Die armenische in ihren Beziehungen zu d. syrischen Kirche, Լայպցիգ, 1904), որոնց հունական հակումները ուժեղ էին: Միաբնակության մոլի պաշտպան Փիլոքսենոս Մաբբուգացուն են վերագրում Աստվածաշնչի հունարենից ասորերեն բառացի թարգմանությունը (508 թ.)՝ նախատեսված միաբնակ եկեղեցու համար, որ մինչ այդ հունական բնագիրը գերադասում էր Պեշիտայից: Դրանից հետո ևս երկու անգամ միաբնակները բարձրացրել են Աստվածաշնչի [թարգմանության] վերանայման հարցը՝ նպատակ ունենալով այն համաձայնեցնել Յոթանասնիցի հետ. 617 թ. հայտնվեց Յոթանասնիցի մի նոր թարգմանություն, իսկ 705-ին հետևեց առկա թարգմանությունների հիման վրա Պեշիտայի խմբագրման վերջին փորձը (տե՛ս В. Райтъ, Краткій очеркъ исторіи сирійской литературы, 1902, էջ 9-11): Ըստ ամենայնի Աստվածաշնչի խմբագրման հարցը հայոց մեջ ծագել է իրենց հավատակից ասորիների հետ միաժամանակ և լուծվել նույն շրջանում իմա՝ VI, VII և VIII դարերում: Երբ ի նկատ առնենք, որ 7-րդ և 8-րդ հարյուրամյակների, չխոսելով արդեն VI դարի մասին, առաջին տարիները խորհրդանշում են հակաքաղկեդոնականության գերակշռության պահերը, ապա նկատելի կլինի, որ Աստվածաշնչի վերանայման նախաձեռնությունը ծագել է միաբնակ ուղղվածության ճամբարից (լավագույն հրատարակությունը՝ Հովհաննես Զոհրապյան, Վենետիկ, 1805): Այդ շրջանի մի շարք երկերի ի հայտ գալու որոշակի ժամանակն ու հեղինակների ինքնությունը տակավին չի հաջողվել պարզել: Մատենագրության ազգային ավանդությունն այդ շրջանի հեղինակներին երկու մասի է բաժանում՝ ավագ և կրտսեր թարգմանիչներ՝ նկատի ունենալով նրանց մասնակցությունը Սուրբ Գրոց թարգմանության գործին: Երբ այս բաժանումը լուրջ հիմքեր ունի, ապա այս անվանումների ներքո կարելի է նկատի ունենալ ասորական և հունական դպրոցների ներկայացուցիչներին: Նրանց աղերսները կպարզվեն լոկ Աստվածաշնչի թարգմանությանն առնչվող խրթին հարցերի լուծումից հետո: Այս հարցերը չեն դիտարկվել Մեսրոպ (Տեր-Մովսիսյանց) վարդապետի «Исторія перевода Библіи на армянскій языкъ» (ՍՊր., 1902) աշխատության մեջ:

Պահպանողական և հին ավանդույթներին կառչած հեղինակների թվին են սավում մեզ հասած գրեթե բոլոր պատմագիրները՝ Ագաթանգեղոս (հին խմբագրությամբ), Փավստոս, Ղազար [Փարպեցի] և Եղիշե, Սեբեոս, Հովհան Մամիկոնյան և Ղևոնդ, ինչպես և Զենոբ Գլակ և Կորյուն (հին խմբագրությամբ): Բոլորի երկասիրություններն առկա են ֆրանսերեն թարգմանությամբ և զետեղված են «Collection des historiens anciens et modernes de l'Arménie», par Victor Langlois, t. I-II, 1867-1869-ի մեջ: Ղևոնդի և Սեբեոսի թարգմանությունները հրատարակվել են առանձին. առաջինը՝ «Histoire des guerres et des conquettês des arabes en Arménie», 1856, երկրորդը՝ «Historie de l'empereur Héracle»: Ռուսերենով Ք. Պատկանյանի թարգմանությամբ՝ «Исторія императора Иракла» (СПб., 1862), Ղևոնդ վարդապետի՝ «Исторія халифов» (СПб., 1862), Եղիշեինը՝ Պ. Շանշևի թարգմանությամբ: Այս շրջանի հնագույն հեղինակներից է համարվում «Եղծ աղանդոց» աշխատության երկասիրող Եզնիկը, որի մատյանը թարգմանել են ֆրանսերեն՝ «Réfutation des différentes sectes des païens» (II, 1853), ռուսերենով հատվածներ կան Կ. Եզովի գրքում «Объ ученія древнихъ маговъ» (СПб., 1858): Թարգմանական գրականությունից, որի տեսությունը ներկայացված է Գ. Զարբհանալյանի՝ «Մատենադարան հայկական թարգմանութեանց նախնեաց» (Վենետիկ, 1889), Եկեղեցու մի շարք հայրերի երկերից բացի հիշատակելի են Լաբուբնայի՝ «Աբգարի թուղթը» (թարգմանությունը Վ. Լանգլուայի գրքում), Եվսեբիոս Կեսարացու «Քրոնիկոնը» և «Եկեղեցական պատմությունը» (A. Schöne, Eusebii Chronicarum libri duo, Բեռլին, 1866-1875): Հելլենական դպրոցին են պատկանում եկեղեցական երևելի գործիչ Վրթանես Քերթողը, նրա ժամանակակից Գրիգոր Քերթողը, Դավիթ փիլիսոփա Հարքացին, Մամբրե Վերծանողը, Անանիա (Շիրակացի) Մաթեմատիկոսը, Սյունյաց եպիսկոպոս Մովսես Քերթողը, Սյունիքի եպիսկոպոս Մաթուսաղա Մեծը, Թեոդորոս Քռթենավորը, Փիլոն Թիրակացին, Սահակ Ձորոփորեցին և այլք, որ հայտնի են միայն անուններով: Վրթանեսը մոլի հակաքաղկեդոնական է: Ապրել է VI դարում և VII դարի սկզբներին և կարևոր դեր խաղացել հայ-վրացական եկեղեցական բաժանման գործում (այս հարցով նրա նամակագրությունը պահպանվել է՝ «Գիրք թղթոց»-ում, Թիֆլիս, 1901): Ի դեպ նրան է վերագրվում պատկերամարտների դեմ ճառը: Ըստ ամենայնի Վրթանեսի օրոք, եթե ոչ հենց իր կողմից, նախաձեռնվեց Տիմոթեոս Կուզի «Հակաճառութիւն ընդդէմ ժողովոյն Քաղկեդովնի» երկասիրության թարգմանությունը, որ լույս վերջերս հրատարակվեց (Էջմիածին, 1908): Հավանաբար նույն ժամանակին է պատկանում Իրենեոսի «Ընդդէմ հերետիկոսաց» գրքի թարգմանությունը

(հայերեն տարբերակը գերմաներեն թարգմանության հետ տե՛ս «Text und Untersuchungen», Harnak und Smidt, t. XXXV, մասն Բ, Լայպցիգ, 1910): Հելլենական դպրոցի առավել բնորոշ գործերից են փիլիսոփայական տրակտատները, որ վերագրվում են տարբեր հեղինակների: Բոլորից հաճախ հիշատակվում է Դավիթ Անհաղթ փիլիսոփայի անունը: Նրա անվան հետ են կապվում Արիստոտելի մի շարք գործերի թարգմանությունները ու մեկնությունները, Պորփյուրի «Ներածութեան» թարգմանությունն ու «Մեկնութիւնը» ինչպես և «Սահմանք իմաստասիրութեան» երկասիրությունը: Վերջինս ինչպես և Պորփյուրի «Մեկնութիւնը» կան նաև հունարեն՝ Դավթի անվամբ (հրատ. Ad. Busse, Բեռլին, 1904): Կասկածից վեր է, որ հայերն առնվազն երկու իմաստասեր են ունեցել այս անվամբ: Դավիթ Հարքացին, որից որոշ դրվագներ են պահպանվել (հրատ. Միաբան, «Արարատ» ամսագիր, Էջմիածին, 1903), և VII դարի կեսերին ստեղծագործած հանրահայտ երկարնակ Դավիթ Բագավանցին: Նրանցից բացի հիշատակվում են նաև Դավիթ Ներգինացին և Դավիթ Քերթողը: Հայոց Դավիթների ինքնության և բյուզանդացվոց մեջ հիշատակված Դավթի հետ առնչակցության հարցը տակավին լուծման կարոտ է (տե՛ս C. Neumann, Memoire sur la vie et les ouvrages de David, philosophe arménien. «Journal Asiatiqe», III, II, 1829, Conybeare, «Anecdota Oxoniensia», Class. Series, հատ. I, մասն 6, Օքսֆորդ, 1892: «Դավիթ Անհաղթի հարցը նոր լուսաբանմամբ», տե՛ս Հ. Մանանդյան, «Արարատ» ամսագիր, Էջմիածին, 1904): Ճշգրիտ հայտնի չեն քերականության, ճարտասանական ու հաշվողական արվեստների և այլ դասագրքերի թարգմանիչները: Իբրև հեղինակ հիշվում են Դավիթն ու Մովսես Քերթողը: Անանիա Շիրակացուց միայն պատառիկներ են մնացել (հրատ. Միաբան, «Արարատ» ամսագիր, Էջմիածին, 1896): Նրան համարում են «Աշխարհացոյց»-ի հավանական հեղինակ, որ մեզ է հասել Մովսես Խորենացու անունով՝ երկու խմբագրությամբ (համառոտ խմբագրության հետ տե՛ս K. Патканов, Армянская географія VII в., СПб., 1877, ընդարձակ խմբագրությունը՝ հրատ. Ա. Սուքրի, ֆրանսերեն «Géographie de Moïse de Choréne», Վենետիկ, 1881): Փիլոն Թիրակացին հայտնի է Սոկրատ Սխոլաստիկոսի եկեղեցական պատմության VII դարավերջի իր թարգմանությամբ: Ողիմպիանոսի առակաց ժողովածուի և Բարոյախոսի թարգմանությունները ևս վերագրում են հունարաններին (Н. Марр, Сборники притчъ Вардана, СПб., 1899): Հունարաններից ամենակարկառունը Մովսես Խորենացին է՝ «Պատմութիւն Հայոց»-ի հեղինակը (թարգմանվել է եվրոպական բազում լեզուներով: Ռուսերեն թարգմանությունը՝ Մ. Էմինի, Բ, հրատ., Մ., 1893): Այստեղ գործ ունենք հելլենական

կրթությունը պատմագրության ասպարեզում կիրառելու փորձի հետ: Մովսես Խորենացու [գրքում], ասես, իրար են միախառնվել հայ դպրության երկու ուղղությունները: Նրա երկասիրության համար հիմք են հանդիսացել հիմնականում հին դպրոցի աղբյուրներից քաղված նյութերը, իսկ դրանց մշակումն ու շարադրանքի ոճը հունաբան են: Խորենացու աշխատությունը, թերևս, նախընթաց զարգացման արդյունք է, և դրա հետ հարկ է հաշվի նստել անցյալի շատ հուշարձանների դիտարկման ժամանակ: Մինչև Խորենացին եղած գրեթե բոլոր պատմագրական երկերը մեզ են հասել կամ աղճատված, կամ վերամշակված տեսքով. ժամանակակից քննադատությունը կասկածանքով է վերաբերվում դրանց մասին եղած ավանդական պատկերացումներին: Ավանդաբար համարվում է, որ ըստ պարունակած նյութի հնագույն պատմիչ Ագաթանգեղոսը, Հայոց դարձի պատմությունը գրել է Տրդատ III թագավորի հրամանով: Ագաթանգեղոսի երկասիրության առաջին և երրորդ մասերը, ուր խոսվում է Լուսավորչի և Տրդատ արքայի գլխավորությամբ Հայոց դարձի մասին, անկասկած, հին արարից է, սակայն մեզ է հասել ոչ նախնական տեսքով: Երկրորդ մասը, որ ներառում է Լուսավորչի ուսմունքը, չի կարող վավերական ճանաչվել (A. Gutschmidt, Agathangelus, «Zeitscrift der morgenländschen Gesellschaft», 31, Բ. Սարգիսեան, Ագաթանգեղոս և յուր բազմադարյան գաղտնիքը, Վենետիկ, 1890, նաև Մխիթարյան հայր Հ. Տաշեանի ակնարկն Ագաթանգեղոսի մասին, Վիեննա, 1891): Ագաթանգեղոսի երկը վերամշակվել է համաձայն հայոց մեջ եղած դավանաբանական ուղղությունների: Վերջերս հայտնաբերված արաբերեն տարբերակը համարվում է քաղքեդոնականների խմբագրություն (Н. Марръ, Крещеніе армянъ, грузинъ, абхазовъ и алановъ св. Григоріемъ, арабская версия. տե՛ս «Зап. Вост. Отд. Р. Арх. Общ.», XVI, СПб., 1905): Առկա հայերեն բնագիրն ընդհակառակը, հակաքաղկեդոնական խմբագրություն է, որ վերջնական խմբագրությամբ հավանաբար վերագրելի է հակաքաղկեդոնականության հաղթանակին՝ VIII դարի սկզբին: Համեմատաբար լավ, բայց ոչ գոհացուցիչ տեսքով է պահպանվել Փավստոսի (Բուզանդ անվանյալ) երկասիրությունը, որ անդրադառնում է Տրդատ III-ի և Գրիգոր Լուսավորչի հաջորդներին՝ մինչև չորրորդ դարավերջ: Պատմությունն սկսվում է երրորդ դպրությունից՝ առաջին երկուսը կորած են համարվում: Դրանցից մեկը ներառել է Հայոց սկզբնական պատմությունը, որ Խորենացու գիրքն է ներմուծվել Մարաբաս Կատինայի անվամբ: Եղծված է նաև Փավստոսի Պատմության վերջնամասը: Առանձին գլուխների և հատվածների բնագրային հանգամանքները վիճարկելու հիմք կա: Հեղինակի ինքնությունը դեռևս հանելուկային է:

Փավստոսի շարունակությունն են հանդիսանում Ղազար [Փարպեցու] և Եղիշեի երկասիրությունները, որ նվիրված են V դարի հայոց կրոնական պայքարին ընդդեմ պարսիկների: Ղազար [Փարպեցու] Պատմության սկիզբը, ուր անդրադառնում է Ագաթանգեղոսի և Փավստոսի հետ իր երկի ունեցած առնչականությունը, խրթին է և հավանաբար նախնական տարբերակի ձևափոխության արդյունք: Եղիշեի նախնական բնագիրը բաղկացած է ութ եղանակից, չնայած հեղինակը Յառաջաբանութեան մեջ յոթի մասին է խոսում: Եղիշեի գրքում հանդիպող՝ Ղազար [Փարպեցու] հետ համընկնող հատվածների ծագումը բավարար կերպով չի բացատրված: VI դարը չունի իր հատուկ պատմիչը: Գլխավոր դեպքերի համառոտ նկարագրությունը գտնում ենք VII դարի պատմագիր Սեբեոսի գրքում: Սեբեոսին հիմնականում հետազոտել են իր երկի կցուրդ «Հայոց նախնական պատմության» կապակցությամբ: Դրա հարաբերությունը պատմագրական այլ երկերին՝ Փավստոսից մինչև Խորենացի՝ հանելուկային է: Ինչպես հաղորդում է բյուզանդական մատենագիր Պրոկոպիոսը (VI դ.) «Նախնական պատմությունը» մաս է կազմել ἤτων ἀρμενίων ἱστορα–յի, որի ներքո Փավստոսն է նկատի առնվում: Մեզ հասած սեբեոսյան բնագրում այն կապվում է Ագաթանգեղոսի անվան հետ: Այդ բնագրի հեղինակը (Սեբեոսն է, թե այլ ոք՝ վիճելի հարց է) վստահեցնում է, որ ինքն այն ստացել է Մարաբասի աշակերտներից: Նույն պատմությունը պահպանվել է նաև Խորենացու մշակմամբ և նույնպես վերագրվում է Մարաբասին: Ուշ շրջանի հեղինակներից մեկը դրան ծանոթ է եղել իբրև Ղազարի գրքի մաս: Ճշգրիտ է լոկ այն, որ «Նախնական պատմությունը» Փավստոսի կորած գրքերի մի մասն է, ուր հավանորեն ներառված է եղել Գրիգոր Լուսավորչի պատմությունը: Դավանաբանական սկզբունքները և Խորենացու ազդեցությունն այն հիմքն են, որի վրա խոյացել են հին հեղինակների խմբագրական դժվարությունները: Հայ պատմագրությունը և ընդհանրապես գրականությունը Խորենացիով են եզրափակում իրենց զարգացման առաջին փուլը: Խորենացու մասին ծավալուն վերլուծական գրականության մեջ կուտակված տեղեկությունների համաձայն նա ապրել է VII դարավերջից ոչ վաղ. որոշ կարծիքներ սխալմամբ նրան տեղափոխում են IX դարի կեսերը (Г. Халатьянцъ, Армянскій эпосъ въ Исторіи Арменіи М. Хоренскаго, М., 1896. նաև նրա՝ «Армянскіе Аршакиды въ Исторіи М. Хоренскаго», М., 1903): Այդ շրջանին է պատկանում նաև թարգմանական գրականության մեծ մասը. դրանցից շատերը հրատարակված են, բայց դեռևս հետազոտված չեն, և հետագա դարերի թարգմանությունները դրանցից տակավին ճշգրտորեն զատորոշված չեն:

Հրատարակվել են հետևյալ հեղինակների երկերը. Հովհան Ոսկեբերան (1826 և 1862 թթ.), Փիլոն Եբրայեցի (1892), Եփրեմ Ասորի (1836), Բարսեղ Մեծի «Վեցօրեան» (1830), Սևերիանոս Գաբաղացի (լատիներեն թարգմանության հետ), Կեղծ-Կալիսթենեսի «Պատմութիւն Աղեքսանդրի Մակեդոնացւոյ» (1842), Եվագրիոս Պոնտացի (1907), Աթանաս (1899): Սրբախոսական ստեղծագործությունները զետեղված են հետևյալ հրատարակություններում՝ «Վարք հարանց» (1855) և «Վարք եւ վկայաբանութիւնք սրբոց» (1874): VIII դարը Հ. գրականության անցման շրջանն է դեպի երկրորդ փուլ: Կարելի է բեկումնային պահ համարել 726 թ. ժողովը, որ Հայ եկեղեցին դարձյալ շրջեց դեպի հակաքաղկեդոնականություն: Եկեղեցական միջավայրում ծնունդ առնող գրականությունն իր զարգացման ընթացքում հետևել է եկեղեցուն: Եկեղեցական ժողովի հայրերը՝ Հովհան Օձնեցի կաթողիկոսը, Արշարունյաց եպիսկոպոս Գրիգորիսը, գիտնական-վանականներ Խոսրովն ու Սողոմոնը միաժամանակ և՛ եկեղեցական գործիչ են, և՛ մատենագիր: Նրանք մշակեցին եկեղեցու բարեկարգման այն հիմքերը, որ հետագայում ազգային պիտի համարվեին: Հովհանի դավանաբանական երկերը (հրատ. 1833 թ. Վենետիկ, լատ. թարգմանությունը՝ P. Aucher, Domini Jonnis philosophi Oznienzis Opera, Վենետիկ, 1834), ինչպես և Խոսրովիկի (հրատ. Հ. Գարեգին Հովսեփյան, 1903, Էջմիածին) հետագա դարերի վեճերի ժամանակ ծառայում էին իբրև գերակա հիմնայուն: Եկեղեցական ողջ կարգը, որ պահպանվել է ցայսօր, հիմնականում սահմանվել է նրանց կողմից: Այդ ժամանակին է վերաբերում հին Տոնացույցի խմբագրությունը, ուր նշված են միայն Տերունական տոներն ու առաքյալների ու մարգարեների հիշատակները: 747 թ. ստեղծվեց «Տոնականը»՝ Սողոմոն Մաքենացու խմբագրությամբ: Հովհան Օձնեցուն է վերագրվում Կանոնագրքի առաջին խմբագրությունը (լատ. թարգմանությունը A. May, Script. vet. nova collectio): Ստեփանոս եպիսկոպոս Սյունեցին՝ հունարենից արված արժեքավոր գործերի թարգմանիչն է (ի դեպ նաև Նեմեսիոսի «Յաղագս բնութեան մարդոյ», հրատ. Վենետիկ, 1891) և համարվում է եկեղեցու կողմից ընդունված մի շարք հոգևոր երգերի հեղինակ: Նա է սահմանել նաև եկեղեցական երգեցողության 8 ձայներն ու կողմերը: Հոգևոր բանաստեղծության մեջ հայտնի է նաև Հովհան Օձնեցին: Գրականության երկրորդ շրջանը շարունակվեց մինչև XI դարը ներառյալ՝ համընկնելով Բագրատունիների ժամանակաշրջանին: Արաբական հարվածներից տեղական ավատատիրական կարգերը տապալվեցին, շատ ազգատոհմեր կործանվեցին, իսկ գոյատևածները համախմբվեցին առավել ազդեցիկ տների շուրջ և ձևավորեցին մի քանի նշանավոր քաղաքական

միավորներ: Դրանցից առավել ակնառու Բագրատունիների, Մամիկոնեից, Արծրունյաց և Սյունեցիների տոհմական տիրույթներում ձևավորված իշխանություններն էին: Քաղաքական և մշակութային առումներով Բագրատունիների թագավորությունն առաջատար դիրք ձեռք բերեց. հայկական կյանքի այս շրջանն իրավամբ կարելի է համարել Բագրատունիներինը: Գրականությունն այժմ իր ոտքերի տակ [ամուր] հող զգաց, այն բռնեց ինքնուրույն զարգացման ուղին՝ նյութ քաղելով անցյալից: Պատմագրությունը Մովսես Խորենացու հզոր ազդեցության ներքո էր: Այդ շրջանի առաջին պատմագիրը Շապուհ Բագրատունին էր, որի երկը, սակայն, դեռ չի հայտնաբերվել: Նրան շարունակեց Հովհաննես Կաթողիկոսը (մահ. 929 թ.): Հովհաննես Կաթողիկոսի Պատմության ինքնուրույն մասը վերաբերում է IX և X դարասկզբի իրադարձություններին: Առավելապես նա Բագրատունյաց տան պատմիչն է, չնայած ոչ սակավ տեղ է հատկացնում նաև մյուս իշխանական տներին (ֆր. թարգմանությունը՝ «Histoire d'Arménie par le patriarche Jean VI, dit Jean Catholicos», 1841): Նրա ժամանակակից Թովմա Արծրունին հանդես է գալիս որպես Արծրունյաց տան պատմագիր (**Thoma Ardzrouni**, Histoire des Arzrouni. տե՛ս «Collection d'historiens arméniens», ՍՊբ., 1874): X դարից մինչև XI դարի առաջին տարիների դեպքերը շարադրված են Ասողիկ անվանյալ Ստեփանոս Տարոնեցու մատյանում (ռուսերեն թարգմանությունը՝ Մ. Էմինի «Всеобщая исторія Степаноса Таронскаго, Асохика по прозванію», Մ., 1864): Հիշյալ պատմագիրները չեն սահմանափակվում իրենց ժամանակի դեպքերի նկարագրությամբ, այլ շարադրում են Հայոց պատմությունը աշխարհաստեղծումից սկսյալ՝ հիմնվելով Խորենացու և հայազգի այլ հեղինակների վրա: XI դարի իրադարձություններին է նվիրված Արիստակես Լաստիվերտցու Պատմություն երկասիրությունը. գրքի հիմնական բովանդակությունն են կազմում Բագրատունյաց հարստության անկումն ու Անի մայրաքաղաքի գրավումը (1064 թ.) սելջուկների կողմից («Histoire d'Arménie, par Arisdaques de Lastiverd», II, 1864): Բագրատունյաց շրջանին՝ հատկապես X դարին է առնչվում «Պատմութիւն Աղուանից աշխարհի» երկասիրությունը: Որպես հեղինակ հիշատակվում է Մովսես Կաղանկատվացին, իսկ երբեմն Մովսես Դասխուրանցին: Ըստ ամենայնի սրանք տարբեր անձեր են. առաջինին են պատկանում VII դարին վերաբերող հատվածները, իսկ Դասխուրանցունը՝ վերջին գիրքն ու ընդհանրապես նոր խմբագրությունը («Исторія Агванъ» Моисея Каганкатваци, пер. съ армянскаго К. Патканова, ՍՊբ., 1861): X դարին է պատկանում նաև Ուխտանեսի գիրքը, որ նվիրված է հայ-վրացական հարաբերություններին:

Երկրի առավել հետաքրքրական մասը, որ վերաբերում է Ծաղ կոչված ազգի մկրտությանը կորած է համարվում (**Oukthanes d'Ourha**, Histoire en trios parties, ՍՊբ., 1871. **M. Brosset**, Etudes sur l'historien arménien Oukthanés, «Mélanges Asiat.», VI, և «Histoire de la scission religieuse entre les Georgiens et les Arméniens», 1851)։ Եկեղեցական գրականությունն առնչվում է նույն հարցերին։ Դավանաբանական երկերը քաղկեդոնականների՝ կորսված դիրքերը ետ բերելու փորձեր են։ Հակաղիր կողմերի երկու վառ ներկայացուցիչներ՝ քաղկեդոնականության ջատագով Թեոդոր Աբուկուրան՝ Խառանի եպիսկոպոսը, և Սմբատ Հակոբիկյան եկեղեցու ավագ սարկավագ Նանա Ասորին ընդհարվեցին հայկական հողի վրա։ Նրանց վեճը կայացավ Աշոտ Բագրատունու արքունիքում և ավարտվեց քաղկեդոնականի պարտությամբ (Н. Марръ, Аркаунъ, монгольское названіе христіань въ связи съ вопросомъ объ армянахъ-халкедонитахъ, 1905)։ Նմանատիպ փորձ եղավ բյուզանդական եկեղեցու կողմից՝ ի դեմս Փոտ պատրիարքի (857-867 և 877-886)։ Զաքարիա Ա կաթողիկոսին (859-875) և Աշոտ Բագրատունի իշխանին հղված նրա թղթերը, որոնցում նա փորձում էր խարխլել Հայոց հավատքի հիմքերը, հանդիպեցին հայերի դիմադրությանը (թղթերի բնագրերը Ն. Մառի ռուս. թարգմանությամբ հետ տե՛ս «Полестинский сборникъ», XI, 1892)։ Պատասխան նամակը խմբագրել է Ապիկուրեշ կամ Մռոտ մականվանյալ Սահակ եպիսկոպոսը («Գիրք թղթոց»)։ Պահպանվել են նաև Արծրունյաց Գագիկ իշխանի թղթերն ուղղված Ռոմանոս Լեկապենոս կայսերը (920-944) և Թեոփիլակտոս պատրիարքին (933-956), ինչպես և Հայոց Խաչիկ Ա կաթողիկոսի (972-991) թղթերն ուղղված Սեբաստիո (Աստղիկի մոտ) և Մելիտենեի («Գիրք թղթոց»-ի մեջ) մետրոպոլիտներին։ Երբեմն ընդդիմադիր տրամադրություններ էին ի հայտ գալիս նաև երկրի ներսում հատկապես ծայրամասային գավառներում։ Դրանով են պայմանավորված Անանիա Մոկացի կաթողիկոսի (941-965) բանավիճային թղթերը («Արարատ», ամսագիր, 1897)։ Եկեղեցու հայրերն առավել մեծ վտանգ էին տեսնում պավլիկյան հերձվածի մի ճյուղի՝ այսպես կոչված թոնդրակեցիների աղանդավորական շարժման մեջ։ Նրանց ուսմունքի դեմ են ուղղված Անանիա Նարեկացու («Արարատ», 1892), Գրիգոր Նարեկացու («Գիրք թղթոց», 498) Գրիգոր Մագիստրոսի (նրա թղթերը հրատարակել է Կ. Կոստանյանցը, Ալեքսանդրապոլ, 1910. գերմաներեն թարգմանությունը տե՛ս **K. Ter-Mkrttschian**, Die Paulikianner, Լայպցիգ, 1893) և այլոց տարբեր երկերը։ Այդ շրջանին է պատկանում նաև սխալմամբ Սահակ Պարթև կաթողիկոսին վերագրվող ծավալուն թուղթն ընդդեմ երկաբնակների («Գիրք թղթոց», էջ 413)։ Դավանաբա-

նական գրականության մեջ գերակշռում է այն կարծիքը, որ այն ստեղծվել է Տիմոթեոս Կուզի երկասիրության զորեղ ազդեցությամբ: Այն ուղղորդում էր դեպի Հայ եկեղեցու մեկուսացում: Այդ հունով էր զարգանում նաև եկեղեցական-պաշտամունքային գրականությունը: Տոնացույցին զուգահեռ ի հայտ եկավ Հայսմավուրք օրացույցը, այսինքն՝ հայկական կանոնները, որ նվիրված էր բացառապես ազգային սրբերի հիշատակին: Նրանցից շատերը եկեղեցու կողմից սրբացվել էին անհամեմատ ավելի վաղ, սակայն այս տոնացույցի վերջնական խմբագրությունը վերագրվում է IX դարին: Ծրջափուլի ավարտին՝ XI դարի սկզբներին, ի հայտ եկավ երրորդ տոնացույցը՝ Հռոմմաղիրը, այսինքն՝ հռոմեց կանոնով ստեղծվածը, ուր նշված էին համաքրիստոնեական սրբերը. Բագրատունիների անկման և Հայաստանում բյուզանդական ազդեցության ուժեղացման ժամանակաշրջանում սա մի զիջում էր հունական եկեղեցուն: Նոր տոնացույցները, որ ասես յուրօրինակ Յայսմաւուրքներ լինեին, վարքա-վկայաբանական ժողովածուների ստեղծման առիթ հանդիսացան: Պաշտամունքային գրականության մաս են կազմում Խոսրով Անձևացու «Մեկնութիւն ժամանակագրութեան» և «Մեկնութիւն Սրբոյ Պատարագին» գործերը (լատ. թարգմանությունը «Chosroae magni episcope, Explicato Precum Missae», Ֆրեյբուրգ, 1880): Հոգևոր բանաստեղծության ասպարեզում մեծ փառք էր վայելում Նարեկյան դպրոցը՝ ի դեմս Գրիգոր Նարեկացու, որ վերոհիշյալ Խոսրովի որդին էր. նրան են պատկանում մի շարք ներբողներ և գանձեր, սակայն նրա գրական փառքը ծագում է «Նարեկ» անունը կրող աղոթագրքից, որ մեծ ժողովրդականություն է վայելում (Felix Nève, Saint Grègoire de Nareg, notice littéraire et bibliographiqe. տե՛ս «L'Arménie Chrétienne», Լոբեն, 1886): Դիտարկվող ժամանակաշրջանի առավել ուշագրավ գործիչներից է Գրիգոր Մագիստրոս Պահլավունին (մահ. 1058 թ.): Նա միակ հեղինակն է, որ հոգևոր դասից չէ: Քաղաքական մեծ գործիչն իր ժամանակի իրադարձությունների կենտրոնում էր և նամակագրական սերտ կապերի մեջ էր գրական և քաղաքական աշխարհի երևելիների հետ: Նրա թղթերը վերջերս հրատարակեց Կ. Կոստանյանցը (Ալեքսանդրապոլ, 1910): Մագիստրոսը հայտնի է նաև փիլիսոփայական գրականության մեջ՝ իբրև Պլատոնի որոշ երկախոսությունների թարգմանիչ: Գրել է նաև քերականական մի երկ ու հորինել քերթվածներ (V. Langlois, Mémoire sur la vie et les écrits du prince Grégoire Magistros, II, 1869): Նրա որդին՝ Գրիգոր Վկայասեր կաթողիկոսը (մահ. 1105 թ.) ձեռնամուխ եղավ սրբախոսական գրականության զարգացմանը՝ հարստացնելով այն նոր թարգմանություններով:

Հ. գրականության երրորդ շրջափուլը ներառում է հետագա երեք դարերը (XII-XIV): Իրականության մեջ սա Զաքարյանների և Կիլիկիայում Ռուբինյանների պատմաշրջանն էր: Բագրատունիների հարստության անկումից հետո Հայաստանն ընկնում է սելջուկների տիրապետության տակ, և երկիրը սկսում են կառավարել նրանց աթաբեկները: Իբրև այդպիսին Բագրատունիների հողերին տիրեցին Շադդադյանները (1072-1198), որ հաստատվել էին հին Աղվանքի տարածքում: Հայաստանի հարավում տիրում էին Շահ Արմենները (1110-1207), արևելքում՝ Սյունիքում աստիճանաբար զորացավ Օրբելյան տոհմը: Շադդադյանների տիրույթներն անցան Զաքարյանների հարստությանը (1199-1320), որոնք վրաց արքաների հովանավորությունն էին վայելում: Սուսուլման և տեղաբնիկ իշխանությունների մրցակցության այս տագնապալի պահին հայերն իրենց ուժերը միտեցին Հայաստանի սահմանակից Կիլիկիայում քաղաքական կյանքի նոր կենտրոնի ստեղծմանը: Բագրատունիների անկումից հետո Ռուբինյան խիզախ ազգատոհմին հաջողվեց իշխանության հասնել Կիլիկիայում և նոր թագավորություն հիմնել, որ պիտի գոյատևեր երեք դար (1080-1393): Կիլիկիո արքունիքն իրեն ձգեց Հայաստանի մտավոր և ռազմական լավագույն գործիչներին, իսկ երկրում մնացած կարող ուժերը համախմբվեցին Զաքարյան և Օրբելյան իշխանական տոհմերի շուրջ: Հենվելով քրիստոնյա Վրաստանի վրա, որ քաղաքական և մշակութային ուժերի ծաղկում էր ապրում, այդ ծանր ժամանակաշրջանում նրանք կարողացան այնպիսի պայմաններ ստեղծել, որոնց շնորհիվ Բագրատունիների մշակութային ժառանգությունն անհետ չկորավ և անգամ դիմացավ մոնղոլական ավերածություններին: Իբրև դպրության կենտրոններ Զաքարյանների տիրույթում աչքի ընկան Հաղպատ-Սանահինի և Գետիկի, իսկ Օրբելյանների տիրույթում Գլաձորի ու Տաթևի վանքերը: Կիլիկիայում նման նշանակություն ուներ առավելապես Կարմիր վանքը: Ռուբինյան թագավորության սահմաններում գրականության զարգացման համար առավել բարենպաստ միջավայր էր ստեղծված: Թվում է, թե անկախ քաղաքական իշխանության պայմաններում արևմտաեվրոպական քաղաքակրթության հետ հաղորդակցվելը նոր հուսանք պիտի բերեր գրական հետաքրքրությունների մեջ: Սակայն դավանաբանական ծեծված խնդիրը, որ կրկին արդիական էր դարձել, գրական տեսադաշտը պահեց նույն կաղապարում: Արևմտյան հոսանքներին հակազդելու նպատակով երևան եկած հուշարձանների հետազոտությունն այժմեական դարձավ՝ թուլացնելով և հետ մղելով ստեղծագործ ազատությունը: Եղան պահեր, երբ նաև Զաքարյանների Հայաստանում դավանաբանական վեճերը սուր բնույթ կրեցին, բայց այս-

տեղ, այնուամենայնիվ, հայրենի աշխարհի նկատմամբ հետաքրքրությունը լոկ օրվա քաղաքական պահանջներով չէ պայմանավորված, ինչպես որ էր Կիլիկիայում: Թերևս սրանով պետք է բացատրել, որ դիտարկվող շրջանի պատմագրական լավագույն երկերը Զաքարյանների Հայաստանից են, իսկ կիլիկյան գրականությունը հարուստ է ստվածաբանական և ընդհանրապես հոգևոր ուղղվածության ստեղծագործություններով, սակայն համեստ է պատմիչների առումով: Մատթեոս Ուռհայեցուց բացի մնացյալ պատմիչները Զաքարյանների Հայաստանից են: Մատթեոսը նկարագրել է 952-1136 թթ. ընկած դեպքերը, իսկ Գրիգոր Երեցը շարունակել է նրա երկասիրությունը մինչև 1162 թիվը («Chronique de Mathieu d'Edwsse avec la continuation de Gregoire le Prêtre», II, 1858. հանդիպադիր հայերեն բնագրով՝ «Recueil des Historiens des Croisades» («Documents Armeniens»), II, 1869, հմմտ. «L'Histoire des Croisades, d'après les chroniques Armeniens», 1848, Felix Nève, L'Arménie chrétienne et sa littérature, 1886, H. Petermann, Beiträge zu der Geschichte der kreuzzüge aus Quellen): Պատմագրական երկեր են թողել Անվո տաճարի երկու հոգևոր սպասավորներ՝ Սամուել և Մխիթար Անեցիները: Առաջինի ժամանակագրությունն սկսվում է աշխարհի արարումից և ավարտվում 1180 թվականով. անանուն ժամանակագիրները Սամուել Անեցու երկը շարունակել են մինչև 1335 թվականը (բնագիրը թարգմանության հետ մեկտեղ տե'ս «Extrait de la Chronique de Samuel d'Ani. Recueil des Historiens des Croisades. Documents Arméniens»), այնուհետև՝ 1424-ն ու ավելի՝ մինչև 1665 թ. (M. Brosset, Tables Chronologiques de Samuel d'Ani. Collection d'historiens armeniens, հատ. II, ՍՊր., 1876, իր իսկ՝ «Samuel d'Ani. Revue générale de sa chronologie». տե'ս «Mélanges Asiatiques»-ի մեջ՝ VI, 1873): Նրա ժամանակակից Մխիթարի երկը ներառում է Հայաստանի պատմությունն սկզբից մինչև 1193 թ.: Պահպանվել է Պատմության միայն առաջին մասը, որ հայտնի պատմագիրների քաղվածքներից է կազմված. նրա բուն, դեռևս չհայտնաբերված, աշխատանքի Բ և Գ մասերն են, որոնք նվիրված են եղել վերջին Բագրատունիների ժամանակաշրջանից մինչև XII դարավերջն ընկած դեպքերին (հայերեն բնագիրը հրատարակել է Ք. Պատկանյանը՝ Սերեոսի հավելվածում. ՍՊր., 1879): Այս շրջանին է պատկանում նաև Ջեվանշիրի «Համառոտ պատմութիւն Վրաց» գրքի թարգմանությունը (Վենետիկ, 1884, ֆրանս. թարգմանությունը Մ. Բրոսսե, «Chronique arménienne»): Հիշյալ շրջանի առավել տեղեկացված աղբյուրներ են համարվում երևելի գիտնական Հովհաննես Վանականի սաների՝ Կիրակոսի և Վարդանի (XIII դ.) երկասիրությունները: Վանականին է վերագրվում մոնղոլական արշա-

վանքների պատմությունը, որ մեզ չի հասել: Կիրակոսի Պատմությունը բավական հանգամանալից է՝ սկսվում է Գրիգոր Լուսավորչի ժամանակներից և ավարտվում 1267 թվականով (M. Brosset, Deux Hist. arm, I, Kiracos de Gantzac, 1870; К. Паткановъ, Исторія монголовъ по армянскимъ источникамъ, вып. II, извлеченія изъ исторіи Киракоса Гандзакеци, СПб., 1874): Վարդանն (մահ. 1271 թ.) իր Պատմությունը սկսում է աշխարհի արարումից և հասնում մինչև 1265 թ. (Н. Эминъ, Всеобщая исторія Вардана, М., 1861. թնությունը՝ M. Brosset, Mémoires de l'Ac. des Sciences de S. Peter., թղթարկում VII, հատ. VII. № 9): Ըստ ամենայնի Վանականի գրական բույլին է պատկանում նաև Մաղաքիա Աբեղան, որ «Պատմութիւն ազգին նետողաց» վերտառությամբ երկասիրությունում շարադրել է մոնղոլների պատմությունը (ռուսերեն թարգմանությունը՝ К. Паткановъ, Исторія монголовъ Инока Малахіи, СПб., 1871): Մխիթար Այրիվանեցու ժամանակագրությունը ներառում է աշխարհի արարչագործությունից մինչև Հեթում II-ի գահ բարձրանալը՝ 1289 թ. (ռուսերեն թարգմանությունը տե՛ս «Труды Вост. Отд. Русск. Археолог. Общ.»-ում՝ К. Паткановъ, Хронологическая исторія Айриванскаго, հատ. XIV, և M. Brosset, Histoire chronologique par Mkhithar d'Airivank, նաև նրա՝ «Etudes sur l'historien arm. Mkhithar d'Airivank». տե՛ս «Mélanges Asiat.»-ի 1864 թ. մեջ): Սյունյաց իշխանների պատմության վերաբերյալ հույժ արժեքավոր աշխատություն է թողել Ստեփանոս եպիսկոպոս Օրբելյանը (մահ. 1305 թ.) (M. Brosset, Histoire de la Siovnie par Stephanos Orbelian, I, 1864, II, 1866, ՍՊր., իր իսկ՝ «Listes chronologiques des princes et des métropolotes de la Siovnie», «Mél. As.», IV, 1861): Կիլիկյան պատմական գրականության նմուշներն են Սմբատ Գունդստաբլի (մահ. 1276 թ.)՝ Ռուբինյանների տարեգրությունն ու Կղեմես Ե պապի խնդրանոք Հեթում պատմիչի շարադրած «Պատմութիւն թաթարաց»-ը (К. Паткановъ, Исторія монголовъ по армянскимъ источникамъ, вып. I, извлеченіе изъ трудовъ Вардана, Стефана Орбеляна и Коннетабля Смбата, СПб., 1873): Ըստ ամենայնի Հեթումի երկը գրվել է ֆրանսերեն և հենց այդ ժամանակ էլ թարգմանվել լատիներեն (1307 թ., հրատարակվել է մի քանի անգամ): Կան նաև այլ հրատարակություններ ու թարգմանություններ. իտալերեն (1535), հոլանդերեն (1664), անգլերեն և հայերեն (1842):

Եկեղեցական գրականությունը հարուստ է իր նյութով. սրանով նա մասամբ պարտական է այն կուսակցական հակամարտությանն ու ընդհարումներին, որ ընթանում էին հայ դպրության երկու կենտրոնների միջև:

Հույն և լատին եկեղեցիների հետ Հայ եկեղեցու միության հարցն ուներ իր կողմնակիցներն ու թշնամիները Հայաստանի և Կիլիկիայի հոգևորականության շրջանում: Ընդհանուր առմամբ Կիլիկիո հոգևորականությունը առաջին հերթին քաղաքական պայմաններից ելնելով միութենականության նկատմամբ ավելի շեշտված հակվածություն էր հանդես բերում: Աստվածաբանական միտքը երբեք այդպես չի ազդվել քաղաքականությունից, ինչպես այդ շրջանում էր: Բյուզանդիան և Հռոմը Ռուբինյանների միջոցով ճնշում էին գործադրում Հայ եկեղեցու վրա: Նրանք մտադիր էին կրոնական հողի վրա ամրացնել հայերի հետ միությունը, որ խաչակրաց արշավանքի հանգամանքով կարևոր էր իրենց համար: Իսլամական երկրներով շրջապատված Ռուբինյան իշխաններն էլ իրենց հերթին հույս ունեին այդ միության միջոցով ամրապնդելու իրենց քաղաքական դիրքերը և ընդառաջ էին գնում եկեղեցների միությանն ուղղված հոսանքին: Լևոն II իշխանն անգամ պատրաստ էր բռնի միջոցներով միության գնալու, միայն թե արքայական թագ ստանար: Միության գաղափարը եկեղեցու այն ներկայացուցիչների մոտ էր համակրանքի արժանանում, որ կրթվել էին արևմտյան հովերով տարված՝ կիլիկյան նոր միջավայրում: Նրանց գլխավորում էր Լամբրոնի եպիսկոպոս Ներսեսը (մահ. 1198)՝ փայլուն հռետոր և ճարտասան, բազում երկերի հեղինակ: Իր և իր համախոհ Գրիգոր Տղա կաթողիկոսի (մահ. 1193) դեմ ելան Հաղպատ-Սանահինի դպրոցից Գրիգոր Տուտեորդին և Դավիթ Քոբայրեցին: Ուսմունքի հարցում նրանք ծայրահեղ դիրք էին գրավում՝ կիլիկյան հարմարվողականությանը հակադրելով սանահինյան դպրոցի նվիրվածությունը հայրենյաց պատգամներին: Հավասարակշիռ հայացքների և տեսակետի կողմնակից էին Ներսես Շնորհալին (մահ. 1173 թ.), Մխիթար Գոշն (մահ. 1212 թ.) ու Վանական Վարդապետը: Երկու հոսանքների միջև տեղի ունեցող վեճերի երկրորդ ալիքի ժամանակ իբրև միության կողմնակից հանդես եկան Գրիգոր Է Անավարզեցին (մահ. 1306 թ.) և իրեն հաջորդած Կոստանդին Գ (մահ. 1323 թ.) կաթողիկոսները: Նրանք հանդիպեցին Տաթևի դպրոցի խիստ դիմադրությանը, որ գլխավորում էր Ստեփանոս Օրբելյանը (մահ. 1305 թ.): 1363 թ. Սսի ժողովը վերջ դրեց այն հաջողություններին, որոնց հասել էր կիլիկյան հոսանքը 1207 և 1307 թվականներին: Շուտով իր վախճանին հասավ նաև Կիլիկյան թագավորությունը. բոլոր վեճերը տեղափոխվեցին Մեծ Հայք և շարունակում էին ալեկոծել երկիրն ի դեմս այսպես կոչված ունիթորական շարժման (ռուսերեն թարգմանությամբ կա «Синодальное слово Нерсеса Ламбронскаго», տե՛ս Մ. Էմինի մոտ, Մ., 1897, համտ. А. Худобашевъ, Историческіе памятники вѣроученія Армянской Церкви, относя-

щіеся къ XII столѣтію, СПб., 1847, Ներսես Շնորհալու դավանանքի ֆրանսերեն թարգմանությունը՝ Brosset, Deux historiens arméniens, 63, Վարդանի և այլոց դավանանքը ևս անդ՝ հավելվածում): Կիլիկիայում Հայոց եկեղեցին ընկավ հռոմեական և բյուզանդական եկեղեցիների ազդեցության ներքո: Եկեղեցու ներկայիս կարգն ու պաշտամունքը բավական բարդ են, և ողջ պաշտամունքային մասը ձևավորվել է դիտարկվող ժամանակաշրջանում. պաշտամունքի արարողական և արտաքին ձևական կողմն ազդվել է արևմտյան եկեղեցուց: Պաշտամունքը հնարավորինս ճոխ կազմակերպելու ցանկությունը առաջ բերեց համապատասխան գրականություն: Նախ առկա երեք տոնացույցների հիման վրա մշակվեց համադրված տարբերակը, հունական Սինաքսարիի նմանությամբ ստեղծվեցին սրբախոսական համապատասխան ժողովածուները (Յայսմաւուրք): Առաջին խմբագրությունն ըստ Տեր-Իսրայելի է, որ թվագրվում է XIII դարի կեսերով, երկրորդն՝ ըստ Կիրակոսի՝ 1269 թ., երրորդը՝ Գրիգոր Անավարզեցունն է, և վերջապես Գրիգոր Ծերենցինը (մահ. 1425 թ.) (հրատ. 1706 թ.): Հոգևոր բանաստեղծությունը հարստացավ նոր շարականներով. դրանց առավել ակնառու հեղինակներից են ականավոր գիտնական և Հաղպատ-Սանահինյան դպրոցի հիմնադիր Հովհաննես Սարկավագը (մահ. 1129 թ.), Գրիգոր Վկայասերը, Ներսես Շնորհալին, Ներսես Լամբրոնացին, Գրիգոր Սկևռացին, Վարդան Պատմագիրը, Հովհաննես Երզնկացին (մահ. 1326 թ.): Եկեղեցու կողմից ընդունված հոգևոր երգի ժողովածուի (Շարակնոցի) վերջին խմբագրությունը ևս կապվում է այս ժամանակաշրջանի հետ (ռուսերեն թարգմանությունը՝ Н. Эминъ, Шараканъ, Богослужебные каноны и пѣсни, М., 1879): Այս հեղինակները հայտնի են նաև մեկնողական գրականության մեջ՝ իբրև Սուրբ Գրոց այլևայլ հատվածների ինքնուրույն և թարգմանական բացատրությունների հեղինակներ: Հ. գրականության այս առավել հարուստ բաժինն ամենաքիչն է հետազոտվել. բազմաթիվ նյութեր դեռ ձեռագիր վիճակում են: Այս շրջանի հեղինակների մեջ առանձնակի աչքի է ընկնում Ներսես Շնորհալին, որ ամենատարբեր բնույթի և բովանդակության երկեր է թողել (F. Néve, Le Patriarche Nerses IV dit Schnorhali, envisagé comme écrivain, L'Arm. Chrétienne, 1886): Հատուկ ուշադրության են արժանի Ներսեսի երկու ժամանակակիցները. դողէրոցքի մասին բժշկական երկասիրության հեղինակ Մխիթար Հերացին (հայերեն բնագիրը հրատարակվել է՝ Վենետիկ, 1832) և Մխիթար Գոշը, որ առավել հայտնի է իբրև «Դատաստանագրքի» հեղինակ: Երկու գործերը գրվել են 1184 թվականին: Պահպանվել է նաև Գոշի երկասիրության կիլիկյան մշակումը, որ 1265-ին իրականացրել է Սմբատ Գունդստաբլը (բնագիրը գեր-

մաներեն թարգմանությամբ տե՛ս J. Karst, Sempad'scher Codex, նույն գործի խմբագրությունը լեհահայոց համար լատ. թարգմ.՝ 1518 թ., F. Wischoff, Das alte Rechtes, տե՛ս «Zeitschrift für vergleichende Rechtwissenschaft», XIX, II-III, 1906)։ Նույն Սմբատին է պատկանում Անտիոքի դատաստանագրքի թարգմանությունը («Assises d'Antioche de Sempad Le Connétable», Վենետիկ, 1876)։ Իրավաբանական գրականությանն է վերաբերվում նաև 1197 թ. Ներսես Լամբրոնացու թարգմանած ասորահռոմեական օրենքների ժողովածուն («Syrisch-Römisches Rechtsbuch» հրատ. K. Bruns և E. Sachau, Լայպցիգ, 1880)։ Դիտարկվող պատմաշրջանի վերջին հարյուրամյակում առաջ եկան հեղինակներ, որոնց երկերն ուղղված էին կաթոլիկ միսիոներների գործունեության դեմ։ Fratres unitores, ինչպես կոչվում էին սրանք, լուրջ քարոզչություն էին ծավալում միության և հայկական եկեղեցին հռոմեականին ենթարկելու ուղղությամբ։ Նրանց հաջողվեց մի ամբողջ դպրոց ստեղծել, որ կոչվեց ունիթորական։ Իբրև Հայ եկեղեցու պատգամների ջատագովներ հանդես եկան Գլածորի վանահայր Ներսես Մշեցու (մահ. 1284 թ.) աշակերտները, հեղինակներ, որոնցից առավել ակնառու են Եսայի Նչեցին (մահ. 1339 թ.) և Մխիթար Սասնեցին (մահ. 1337 թ.)։ Ունիթորականության դեմ պայքարում առանձնակի առաջացյալ էին Հովհան Որոտնեցին (մահ. 1384 թ.) և նրա սանը՝ Գրիգոր Տաթևացին (մահ. 1411 թ.)։ Տաթևացու լոկ որոշ գործեր են հրատարակված։ Կրթությամբ հիշյալների թվին է պատկանում Թովմա Մեծոփեցին (մահ. 1446 թ.), որի հոգևոր և գրական գործունեությամբ սկսվում է հայ դպրության հաջորդ շրջափուլը։ Նրա երկերն են «Պատմութիւն Լանկ-Թամուրայ և յաջորդաց իւրոց» (հայերեն բնագիրը հրատարակվել է 1860 թ. Փարիզում, «Exposé des guerres de Tamerlan», par F. Néve, Բրյուսել, 1860) և «Յիշատակարանը» (հրատ. 1892, Թիֆլիս)։ Թամուրի արշավանքը, որ համընկավ Ռուբինյանների թագավորության անկմանը Կիլիկիայում, կանգնեցրեց երկրի ստեղծագործ կյանքը։ Թաթարական բանակների ավարն ու ավերը, Սև և Սպիտակ ոչխարի (Կարա-Կոյունլու և Ակ-Կոյունլու) հորդաները, որ իրենց տեր ու տիրակալ էին զգում XV հարյուրամյակի Հայաստանում, ոչնչացրեցին երկրի տոհմիկ և իշխանական տները։ Այդուհետ Հայաստանը պարսից Սեֆյանների և Օսմանյան սուլթանների միջև երկարատև պայքարի թատերաբեմի վերածվեց։ Հարստահարիչ պատերազմներն իրենց բոլոր ծանր հետևանքներով երկրում այնպիսի վիճակ հաստատեցին, որի ժամանակ անհնար էր դառնում մշակութային որևէ գործունեություն։ Գրչությունն ու դպրությունը ծվարել էին մի քանի վանքերում. դրանցում ստիճանաբար առաջնային դիրք գրավեց Ս. Էջմիածինը։ Հույն և

կաթոլիկ եկեղեցիների դեմ մղված դարավոր պայքարը հայոց մեջ այն համոզումն էր ամրացրել, որ հայ ազգային հիմնասյունը խարսխված է Հայ եկեղեցու ինքնազլխության սկզբունքի վրա (αὐτοκεφαλία): Երկրի իշխանական տների ոչնչացումից հետո միակ հաստատությունը եկեղեցին էր, որ հանդես էր գալիս իբրև ազգային ինքնագիտակցության խորհրդանիշ: 1441 թ., երկարատև ջանքերից հետո, վերջապես հաջողվեց կաթողիկոսական աթոռը տեղափոխել Ս. Էջմիածին: Այդ պահից սկսյալ եկեղեցին Հայոց պատմության մեջ կարևորագույն գործոնի նշանակություն է ձեռք բերում:

Հայոց պատմության և գրականության նոր շրջափուլը կարելի է անվանել **Էջմիածնական**: Դպրությունը ծանր վիճակում էր, ծանր էր նաև կյանքը, որովհետև մուսուլման թշնամական իշխանությունների ճիրաններում անկարելի էր բարգավաճել: Գրական գործունեությունը սահմանափակվում էր հին մատենագրական հուշարձանների կրկնօրինակությամբ: Ինքնուրույն ստեղծագործությունների մեջ առավել արժեքավոր են պատմագրական հուշարձանները: Հովհաննեսիկ Ծարեցու (նկարագրել է 1573-ից 1600 թթ. դեպքերը), Առաքել Դավրիժեցու (նրա երկը նվիրված է 1586-1662 թվականների իրադարձություններին), Զաքարիա Սարկավագի (նկարագրել է 1634-1700 թվականները), Աբրահամ Կրետացու (մահ. 1736 թ.) «Պատմագրութիւն անցիցն իւրոց և Նատր-Շահին պարսից» և վերջապես՝ «Դաւիթ Բէկի պատմութիւնը» (1722-1728), որ գրառված է դեպքերի ականատես Վրթանես Շահումյանի (մահ. 1751 թ.) խոսքերից (այս հուշարձանների ֆրանսերեն թարգմանությունը տե՛ս **M. Brosset**, Collection d'historiens arméniens, հատ. I և II, ՍՊբ., 1874-1876): Պատմաշրջանի եկեղեցական գրականության անկումը նշանավորվում է նրանով, որ ժամանակի ոգով առաջին անգամ ի հայտ են գալիս աշխարհիկ բանաստեղծության հուշարձաններ: Դրանցում խոսակցական անպաճույճ լեզվով գովերգվում է այն ամենը, որ սովորաբար քնարերգության բովանդակությունն է կազմել. հիմնականում շոշափվում են սիրո գաղափարները: Այս գրականությունը քիչ է ուսումնասիրված. հականե-հանվանե հայտնի է ավելի քան 20 տաղերգու, որոնցից ամենահինը XVI դարի կեսերին ապրած Սկրտիչ Նաղաշն է (մոտ 1525 թ.), Գրիգորիս Աղթամարցին (մահ. 1569 թ.), Նահապետ Քուչակը (մոտ 1583 թ., հրատարակել է Արշակ Չոպանյանը, Փարիզ, 1902): Դեռ չհրատարակված տաղերգուներից նշանակալի են Նաղաշ Հովնաթանը (մահ. 1722 թ.) ու իր որդի Հակոբը: Աշխարհիկ բանաստեղծության վերջին ներկայացուցիչներից հայտնի են Սայաթ-Նովան (հրատ. Գեորգ Ախվերդյան, Մ., 1852) և Աբազ-Աղամը (մահ. 1846 թ.) (տե՛ս «Poems armeniens et

modernes», թարգմ. Ա. Չոպանյան, իր իսկ՝ «Les trouvères arméniens», «Chnts populares armeniens», II, 1902):

Այս շրջանում լուսավորության ու կրթության գործում մեծ դեր խաղացին հայկական գաղթավայրերը: Բագրատունիների անկումից հետո հայերն սկսել էին գաղթել հարևան երկրներ: Արտագաղթը հատկապես ուժեղացավ մոնղոլա-թաթարական արշավանքների ընթացքում: Այն չդադարեց նաև պարսկական և օսմանյան տիրապետության ժամանակ. [ժողովրդի հոսքը] Փոքր Ասիայից հոսքում էր դեպի Կոստանդնուպոլիս, իսկ այնտեղից եվրոպական երկրներ: Հայերի մի մասն անցավ Ղրիմի թերակղզի, այնտեղից շարժվեց առաջ՝ Լեհաստան և Հարավային Ռուսաստան: XVI հարյուրամյակի սկզբներին հայերին բռնի կերպով Արաքսի դաշտավայրերից տեղահանեցին դեպի Պարսկաստան, իսկ այնտեղից՝ Հնդկաստան: Հայկական մշակույթին մեծ ծառայություններ մատուցեցին եվրոպական կենտրոններում հաստատված հայերը՝ հատկապես Վենետիկի, Մարսելի և Ամստերդամի: Սրանք այն կենտրոններն էին, ուր ժամանում էին Պարսկաստանից, Հնդկաստանից և Փոքր Ասիայից առևտրական գործերով շրջագայող վաճառականները: Այնտեղ հիմնվեցին հայկական առաջին տպագրատներն ու հրատարակվեցին ազգային մատենագրական հուշարձանները: Հայերեն առաջին տպագիր գիրքը լույս տեսավ Վենետիկում 1512 թվականին: Համեմատաբար կանոնավոր տպագրատներն սկսեցին հիմնադրվել 1565-ից, երբ Հայոց կաթողիկոսն Աբգար Թոխաթեցուն արտասահման ուղարկեց տպագրական գործն ուսումնասիրելու: Աբգարը հայկական տառատեսակներ պատվիրեց Վենետիկում և լույս ընծայեց Սաղմոսագիրքն ու մի շարք պաշտամունքային գրքեր: Տպագրական հաստոցներ հայտնվեցին նաև մյուս գաղթավայրերում. 1616 թ. լեհահայոց կենտրոն Լվովում, 1623-ին Հռոմում, Փարիզում, ինչպես և Պարսկաստանում՝ հայկական Ջուղա քաղաքում (1641 թ.): Հատկապես արդյունավետ էր Ամստերդամում 1662-ին Ոսկան Երևանցու տպարանը: 1771-ին, երկարատև ջանքերից հետո, հաջողվեց տպարան բացել Էջմիածնում: Այս տպարանի գործունեությունն արտահայտվեց հիմնականում պաշտամունքային գրքերի հրատարակմամբ. այլ բնույթի հրատարակությունները հատուկենտ բացառություն են կազմում: Հին գրական հուշարձանների հրատարակումն աշխույժ չէր անգամ Մխիթարյան միաբանության հիմնադրումից հետո: Այս միաբանության հիմնադիր Մխիթարը (տե՛ս) գրական բազմակողմանի գործունեություն ծավալեց՝ թողնելով գիտության տարբեր ճյուղերի, և հատկապես հայագիտությանը վերաբերող երկեր: Նրա հաջորդները հիմնականում զբաղված էին հոգևոր գրակա-

նությամբ և հոգևոր ուղղվածության գրքեր էին հրատարակում: Հայ անցյալի հետազոտումը արժանի հիմքերի վրա դրվեց լոկ հ. Միքայել Չամչյանի «Պատմութիւն Հայոց»-ի հրապարակ իջնելով (հատ. 1-3, Վենետիկ, 1784-1786): Չամչյանի աշխատությունը չնայած հնացել է, բայց չի կորցրել իր նշանակությունը որպես գիտության մեջ անփոխարինելի ներդրում: Այն իր մեջ է ներառում համայն հայ պատմագրությունը և որպես այդպիսին եզրափակում է հին շրջանը:

XIX դ. հայ գրականության մասին տե՛ս «Ново-армянская литература»: Հոդվածում հիշվածներից բացի տե՛ս **Г. Зарбаналянъ**, Исторія армянской литературы (ч. 1, IV-XIII стол., 1865; մաս II, XIV-XIX դդ., 1878, Վենետիկ); **S. P. Somal**, Catalogo delle opera classiche dei SS. Padri et di altri scrittori tradotte anticamente in armeno, 1825; «Quadro della storia letteraria d'Armenia», 1829; **Felix Néve**, L'Arménie chrétienne et sa litterature, 1886; **C. F. Neumann**, Versuch zu einer Geschichte der armenischen Litteratur nach den Werken der Mechitharisten, 1836; **K. Patkanian**, Cataloque de la littérature arménienne dépuis le commencement du IV siècle jusque vers le milieu du XVIII, 1860; **G. de Villefroy**, Catalogue des manuscripts arméniens de la Bibliothèque de Roy, dressé en 1735 («Bibliotheca manuscriptorum», հրատ. Montfaucon. II, 1739, հատ. II); **J. P. Migne**, Nouvelle Encyclopaedie théologique. Dictionnaire des manuscrits, հատ. I; Revue de la littérature historique de l'Arménie, 1876; **Karamiantz**, Die Handschriftenverzeichnisse der K. K. Bibliothek zu Berlin, 1813; «Verzeichniss d. armenischen Handschriften», 1886; **G. Kalemkiar**, Catalog d. armen. Handschr. in der K. Hof-and Staatsbibliothek zu München, 1892; **A. Daschian**, Catalog d. armen. Handschr. in der k. k. Hofbibliot. zu Wien, 1891; «Catalog d. armen. Handschr. in der Mechitharisten-Bibl. zu Wien», 1895.

III. ՀԱՅՈՑ ԼԵԶՈՒ.- Արմենիա եզրաբառը պատմության մեջ հանդիպում է Ք. ծ. ա VI դարի սկզբներից. առաջին հիշատակությունը պարսից Դարեհ արքայի սեպագիր արձանագրության մեջ է՝ Ք. ծ. ա. 521 թվականին: Մինչ այդ երկիրը կոչվել է Ուրարտու և իշխող ժողովուրդը ուրարտացիներն էին: Նրանց հիմնած պետությունը, որ գոյատևեց երեք հարյուրամյակ (Ք. ծ. ա. IX-VII դդ.), կործանվեց կիմմերների՝ Առաջավոր Ասիա ներխուժման խառը ժամանակներում: Ուրարտական թագավորության սահմաններում հայ ժողովրդի երևան գալը կապվում է կիմմերական արշավանքների շրջանին, արշավանքներ, որ ուղեկցվում էին ժողովրդական և քաղաքական ուժերի մեծ տեղաշարժով: Հերոդոտոսի վկայությամբ նրանք Փոյուգիայից էին սերում և անջատվելով իրենց ազգակիցներից՝ շարժվեցին դեպի արևելք և նախ գրավեցին մերձեփրատյան հողերը, իսկ հետո՝ Արաքսի հովիտը: Նրանք մտան մի երկիր, որը բնակեցված էր տարբեր ցեղերով: Դասական հեղինակները հիշատակում են 20-ից ավելի ցեղեր, այդ թվում՝ ալարոդներ, որ ուրարտացիների ժառանգորդներն էին, սասպեյրներ, խալդեր, մատիեններ, տաոխներ, փասյաններ և այլն: Երկրի կազմում, որ սկսեցին Արմենիա կոչել, ընդգրկվեց նաև հարևան ժողովուրդների՝ մարերի, իբերների, կատառնների, խալիբների և մոսինյոկոսների տարածքների մի մասը: Այսպիսով, տեղաբնիկները կազմում էին մի խայտաբղետ խճանկար, երբ նրանց մեջ հայտնվեցին նաև եկվոր փոյուգիացիներն ու արմենները, որոնք իրենց ենթարկեցին այս ցեղերին: Այլազան էթնիկ տարրերի աստիճանական միաձուլման գործընթացը շարունակվեց մինչև Ք. ծ. ա. II դարավերջի հայտնի ավարտը: Ստրաբոնի երկում պահպանված տեղեկությունների համաձայն հայոց Զարեհ և Արտաշես (մոտ 190 թ. Ք. ծ. ա.) արքաների օրոք և ջանքերով Հայքի խայտաբղետ բնակչությունն սկսեց խոսել մեկ՝ բոլորին հասկանալի հայերեն լեզվով: Այդ շրջանը հարկ է համարել Հ. լեզվի պատմության կարևորագույն պահերից մեկը: Հենց այդ ժամանակ որոշակիացավ կառուցվածքն այն լեզվի, որ մեզ հայտնի է համեմատաբար ավելի ուշ թվագրվող հուշարձաններից՝ Ք. ծ. V դարից ոչ շուտ: Զարգանալով էթնիկ առումով խայտաբղետ միջավայրում, լեզուն չէր կարող պահպանել իր տեսակի մաքրությունը. և իրոք Հ. լեզուն այնքան բարդ կառույց է իրենից ներկայացնում, որ մինչ օրս հեշտությամբ չի ենթարկվում լեզվաբանական հետազոտության: Հ. լեզվի գիտական քննության առաջին փորձը կատարել է Բեռլինի համալսարանի պրոֆեսոր Հ. Պետերմանը: Ֆ. Բոպպի հանրահայտ աշխատության հայտնվելուց հետո (1833 թ.), որ հեղաշրջում էր լեզվագիտության ասպարեզում, հիշյալ հայագետը հրատարակեց Հ. լեզվի քերականությունը և հիմնվելով հնչյու-

նարանական և շարահյուսական դիտարկումների վրա, կարծիք հայտնեց Հ. և հնդեվրոպական լեզուների հարազատության մասին (H. **Petermann**, Grammatica linguae Armeniacae, 1837): Պետերմանից անկախ այդ հետևությանը հանգեցին նաև Ֆ. Վինդիշմանը (F. **Windischmann**, Die Grundlangen des Armenischen im arischen Spracchstamme. տե՛ս «Abb. d. Bayerischen Akad.» IV, 2, 1848) և Պոլ դը Լագարդ Բյոտտիխերը (P. **Boetticher**, Verleichung der Armenischen Consonanten mit denen des Sanscrit, ZDMG, 4, 1850, իր իսկ՝ «Zur Urgeschichte des Armenier, 1854»): Վիեննայում բնակվող լեզվաբան Ֆ. Մյուլլերը, փորձելով ի մոտո որոշել Հ. լեզվի գրաված դիրքը արիաեվրոպական լեզուների ընտանիքում, ուշադրություն դարձրեց պարսկերենի հետ համընկնող բառերի մեծածավալ խմբին և եզրակացրեց, որ Հ. պատկանում է իրանական լեզվաընտանիքին (Fr. **Müller**, Abhandlungen zur armenischen Grammatik. տե՛ս «Sitzungsberichte der Wiener Akademie der Wiss.»-ում, 1861-1865, իր իսկ՝ «Armeniaca», I, 1865, II, 1870, III, 1871, IV, 1874, V, 1878): Ըստ էության նույն կարծիքին էր նաև Գյոթթինգենի համալսարանի պրոֆեսոր Պ. Լագարդը [Բյոտտիխեր]: Ճիշտ է, նա խոսում էր Հ. լեզվում առկա տարբեր շերտերի՝ Հայկյան, Արշակունի և Սասանյան տարրերի առկայության մասին, սակայն վերջ ի վերջո նույնիսկ Հայկյան տարրը վերագրում էր լեզուների այն ճյուղին, որի հնագույն ներկայացուցիչը զենդերենն է (P. **de Lagarde**, Gesammelte Abhandlungen, 1866, իր իսկ՝ «Beiträge zur bactrischen Lexicographie, 1868»): Հ. լեզվի իրանյան բնույթն ընդունում էր նաև Ք. Պատկանյանը («Изслъдование о составъ А. языка», СПб., 1864): Ընդհանրապես այս տեսակետը գերիշխող էր մասնագետների շրջանում մինչև պրոֆ. Հ. Հյուբշմանի աշխատության երևան գալը. «Üeber die Stellung des Armenischen im Kreise der indogermanischen Sprachen» (1875): Նրա երկասիրությունն էապես առաջ մղեց Հ. լեզվի գիտական մշակումը: Հյուբշմանն ապացուցեց, որ Հ. իրանականին հարազատ դարձնող բոլոր լեզվական տարրերը փոխառության արդյունք են: Հնուց ի վեր հայերն ապրել են Իրանի ազդեցության ոլորտում և ունեցել են ընդհանուր արքայատոհմային և մշակութային ավանդույթներ. բնական է, որ նրանց լեզու են թափանցել այդքան մեծ թվով իրանյան բառեր: Հ. լեզվի՝ ազգակից լեզուների հետ հարաբերությունը որոշելիս իրանական փոխառությունները պետք է բացառվեին քննության շրջանակից, մինչդեռ գիտնականները հենց դրանց վրա էին հիմնում իրենց դիտարկումները, և, բնականաբար, սխալ հետևությունների հանգում: Կենտրոնանալով բուն հայկական բառանյութի վրա, Հ. Հյուբշմանը եզրակացնում էր, որ Հ. լեզուն պատկանում է արիաեվրոպական ընտանիքին, սակայն հնչյունական

համակարգով և քերականական կառուցվածքով ոչ թե իրանյան խմբին, այլ զրավում է ինքնուրույն դիրք իրանյան ճյուղի և սլավո-լիտվականի միջև: Հյուբշմանի դիրքորոշումը հանդիպեց իրանական տեսության կողմնակիցների դիմադրությանը: Ֆ. Մյուլլերը («Üeber die Stellung des Armenischen im Kreise der indo-germanischen Sprachen», տե՛ս «Sitzungsb. d. Wiener Ak. Wiss», 1877) և Պոլ դը Լագարդը փորձում էին պաշտպանել իրենց տեսակետը: Սակայն Հյուբշմանի փաստարկները և իր նոր աշխատությունը («Armenische Studien», Լայպցիգ., 1883) ապացուցեցին նրա հայացքների ճշմարտացիությունը՝ վերածվելով զիտական նվաճման և գլխավոր հիմք հանդիսանալով դրանից հետո հայտնված Հ. լեզվին առնչվող հետազոտությունների համար (**Barthlomae**, Beiträge zur armenischen Lautlehre. տե՛ս «Beiträge zur der indo-germanischen Sprachen»-ում, 10, 1886. **Sophus Bugge**, Beiträge zur etymologischen Erläuterung der armenischen Sprache, Meillet de la Société de Linguistique de Papris, VII և հջ., 1894-1910. **Fr. Müller**, Armeniaca, VII, «Sitzb. d. Wiener Ak. d. Wiss», 1890. **M. Osthoff**, Zur armenischen Laut- und Wortforschung, տե՛ս «Sprachwissenschaftlische Abhandlungen», հատ. II, Բուդապեշտ): Հ. լեզվի արիաեվրոպական ծագման քննությանն ուղղված հետազոտությունների արդյունքները ներկայացված են Հ. Հյուբշմանի «Armenische Grammatik»-ում (1897): Առաջին հատորում ժողովված են իրանյան փոխառությունները, երկրորդում զետեղված են բնիկ հայկական բառերը, քանի որ հաջողվել էր գտնել դրանց արիաեվրոպական ծագումնաբանությունը: Այդ հատորի համար նախաբան էին հանդիսացել ասորական և հունական ծագման փոխառությունները (հմմտ. նույն հեղինակի «Die Semitischen Lehnwörter in Aitarmenischen», ADMG, 46; **Brockelmann**, Die grechischen Fremdwörter im Altarmenischen, ZDMG, 47, 1890; **A. Thumb**, Die grechischen Wörter in Armenischen, տե՛ս «Byzantinische Zeitschrift», IX): Իսկական քերականությունը, որի համար հիմք պիտի հանդիսանան այս նախնական հետազոտությունները, տակավին չկա: Դրան կարող է փոխարինել Ա. Մեյեի աշխատությունը, որ կազմված է Հյուբշմանի և նրա դպրոցի այլ ներկայացուցիչների նյութի հիման վրա (**A. Meillet**, Esquisse d'une Grammaire compareé de l'Arménien classique, Վիեննա, 1903): Արիաեվրոպական փոխառյալ և բուն հայկական բառերի տարանջատումը, ճիշտ է դեռ ավարտին չի հասցվել, սակայն հետազոտությունների ընթացքից նկատելի է, որ կիրառվող չափանիշները չեն կարող սպառ[իչ կերպով տրոհ]ել հայկական բառամթերքի ողջ կազմը: Սա ցույց է տալիս, որ արիաեվրոպական տեսակետն ի զորու չէ միայնակ հանգուցալուծել լեզվաբանական այնպիսի

մի խնդիր, ինչպիսին է Հ. լեզվի հանգամանքը: Առաջ է քաշվում մի տեսություն, որ Հ. լեզում տեղորոշվում է այլ կարգի լեզվաընտանիքում: Հաբեթական կոչվող այս տեսության հեղինակը Ս. Պետերբուրգի համալսարանի պրոֆ. Ն. Յա. Մառն է: Իր տեսության համաձայն Հ. լեզվում հարկ է տարբերակել երկու հատված. բավական որոշ և նկատելի՝ վերին, արիաեվրոպական շերտի ներքո պահվել է ոչ-արիաեվրոպական բառակազմության մի նստվածք: Հիշյալ նստվածքի բնույթն ու էությունն ընկալելը դժվար է նրանով, որ վերին շերտի ազդեցությամբ այն ընդունել է հնչյունական և բառակազմական առումներով առաջինին նմանվող ձև: Արիաեվրոպական շերտերում թաքնված տարրերի բնույթն ու ծագումը հաջողվում է ընկալել լոկ վրացերենի օժանդակությամբ, որ նույնպես դիտարկվում է նոր տեսանկյունից. այն դիտարկվում է իբրև սեմական լեզուներին գենետիկորեն հարազատ և միաժամանակ ընդունվում է դրա տարբերությունն այդ ընտանիքի վերաբերմամբ մեզ հայտնի պատկերացումներից: Վրացերենի և սեմական լեզուների հարազատությունը հիշատակվում է լոկ այն իմաստով, որ դրանք միասնաբար բխում են ընդհանուր սկզբից: Ընդհանուր ծառի մի ճյուղը կազմում է սեմական խումբը՝ արաբերենով, եբրայերենով և ասորերենով, մյուս ճյուղը, կենդանի լեզուներից, ներկայացնում են վրացերենը, մեգրելերենը և դրանց մոտ լեզուները: Հենց այս ճյուղն է անվանվում հաբեթական. անվանումն արդեն իսկ ցույց է տալիս, թե ինչ հարաբերություն և ինչ աստիճանի հարազատություն ունի վերջինս այն լեզվաընտանիքի հետ, որ կրում է Սեմի՝ Հաբեթի հարազատ եղբոր անունը: Հաբեթական լեզուների թվին է դասվում նաև մինչև հայ ազգի կազմավորումը Հայաստանում բնակվածների լեզուն: Երբ Հայաստանում հաստատվեցին արիաեվրոպացիները, տեղաբնակների լեզուն ոչ թե անհետ կորավ, այլ ներթափանցեց եկվոր ռասայի լեզվի մեջ՝ նրան հաղորդելով այն երկակի բնույթը, որով այժմ առանձնանում է ներկայիս Հ. լեզուն. քերականական կառուցվածքը և բառագանձի մի մասն արիաեվրոպական ծագում ունի, բառապաշարի մնացյալ մասը՝ հաբեթական (**Н. Я. Марръ,** Оснавныя таблицы къ граммарикъ древнегрузинскаго языка съ предварительнымъ сообщеніемъ о родствъ грузинскаго языка съ семитическими, СПб., **1908,** իր իսկ՝ «Грамматика древнеармянскаго языка. Этимология», СПб., 1903): Շարադրյալ տեսությունը խիստ արժեքավոր է առաջին հերթին իբրև տեսակետ, որ համապատասխանում է պատմական պայմաններին և այն իրական միջավայրին, որում զարգացել է Հ. լեզուն: Սակայն հարկ է նկատել, որ այս տեսությունը դեռևս չի վերածվել որոշակի դրույթների և անհրաժեշտ

չափով չի ամրապնդվել փաստերով, առաջին հերթին այն պատճառով, որ հարեւթական բանասիրությունը նոր-նոր է ի հայտ գալիս: Մասնավոր նմանություններից անցում կատարել դեպի օրինաչափությունների ընդհանրացում և ճշգրտությամբ որոշել Հ. լեզվի գրաված դիրքը հարեւթականների ընտանիքում դեռ անհնար է:

Մինչև V դարի գրերի գյուտն ընկած շրջանի լեզվի «կյանքի» մասին տվյալներ չեն պահպանվել: Երկրով մեկ ցրված սեպագիր արձանագրությունները տակավին հնչյունական բավարար վերծանության չեն ենթարկվում: Դասական հեղինակների երկերում հանդիպում են հայ թագավորների և անձանց անուններ, սակայն դրանք հիմնականում իրանական ծագում ունեն: Լեզվի փաստացի պատմությունն սկսվում է V դարում գրերի գյուտով, երբ շատ այլ լեզուների նման Հ. ևս իր զարգացման ընթացքում մեծագույն բեկումնային շրջան ապրեց: Հնչյունական և քերականական առումներով այնքան մեծ շրջադարձ էր սա, որ կարելի է համեմատել գրաբարից աշխարհաբարին անցնելու երևույթի հետ: Թե հատկապես, երբ սկսվեց բեկումը՝ դժվար է որոշել. նոր հայկազյան լեզվին բնորոշ մի շարք նախանշաններ նկատելի են արդեն հայ հին մատենագրության վաղ հուշարձաններում: Բոլոր դեպքերում հին լեզուն մեզ ամբողջությամբ հայտնի չէ՝ իր բարբառային բազմազանությամբ. մենք ծանոթ ենք միայն գրական լեզվին: Նոր Հայկազյան լեզուն իր ողջ բազմազանությամբ չի ծագել գրոց լեզվի փլատակներից. այն հառնում է այն նախաձևերից, որ քիչ էին տարբերվում գրական լեզվից: Տարբերությունն ամենից առաջ արտահայտվում էր շարահյուսության մեջ. հին հայերենի արիական ձևերին հակադրվում է նոր հայերենի խոսքային կառուցվածքը, [illegible] հետ, այսինքն՝ հարեւթականության բնույթ է հաղորդում նրան: Մեզ հասած հին լեզուն լոկ մեկն էր ժամանակին առկա բարբառներից, մեկը, որ բարձրացել էր գրական լեզվի մակարդակի: Դրանով հաղորդակցվում էր հիմնականում վերնախավը՝ արքունիքը, ավատատերերն ու քրմականությունը: Հին քերականություններում պահպանված ավանդության համաձայն գրական լեզուն այլ կերպ կոչում էին ոստանիկ, որ նշանակում էր արքունական, մայրաքաղաքային: Իրանյան փոխառությունների մեծ թիվը ցույց է տալիս, որ լեզուն թրծվել է հայ ավատատիրական միջավայրում, որ իրանականի հետ կապված էր ընդհանուր ավանդույթներով, մինչդեռ նոր լեզուն կամ դրա նախատիպն ըստ ամենայնի հասարակ ժողովրդի հաղորդակցության միջոցն էր: Գրական լեզվի հիմքում ընկած է այն բարբառը, որի վերապրուկները պահպանվել են Մուշի ներկայիս խոսվածքում: Նրա մշակմանը մասնակից

է Արշակունի հարստությունը, բայց հին հայերենի փաստացի պատմությունը մեզ է ներկայանում գրերի գյուտից հետո՝ Արշակունիների անկման շրջանից: Հ. լեզվի գանձարանը Սուրբ Գրոց թարգմանությունն է՝ և՛ իր հնությամբ, և՛ լեզվի հարստությամբ մի կարևոր հուշարձան: Հետագայում Աստվածաշունչը կրթության հիմք էր ծառայում. նրա լեզուն ճիշտ և իր պարզ շարադրման եղանակով պերճաշուք օրինակ է համարվում: Բառամթերքի տեսանկյունից Աստվածաշնչի և այլ հուշարձանների լեզուն հիմնականում կազմված է արիաեվրոպական և հարեթական տարրերից, այնուհետև ներմուծված տարրերն են՝ ի դեմս փոխառությունների, որոնցից լեզվի օրգանական մասն են կազմում այն բառերը, որ ներթափանցել են մինչև գրավոր խոսքի ի հայտ գալը: Լեզվում տիրապետող ձևաբանական չափանիշները արիաեվրոպականի հետ նույնանում էին, սակայն գրավոր լեզվի երևան գալուն պես այդ չափանիշները տրոհվեցին: Լեզվի շարահյուսությունը բարդացված է ոճական ձևերով: Այս առումով երկու ուղղություն է նկատվում: Հին, որ կազմավորվել է առավելապես ասորա-պարսկական մշակութային ոլորտում և տարբերվում է լեզվի պարզությամբ ու շարադրման այն առանձնահատկություններով, որ բնորոշում են կենդանի խոսակցական լեզուն: Լեզվի կառուցվածքն ընդհանուր առմամբ պարզ ու ճշգրիտ է: Մյուս ուղղությունը ձևավորվել է հունարենի ազդեցությամբ: Այս ազդեցությունը VII դարում՝ այսպես կոչված հայկական դպրության հելլենական շրջանում, զորանալով հասնում է մինչև սարկորեն նմանակելու աստիճանի: Անբնական և բառերի դասավորությամբ ավելորդ պաճուճավորված ոճը սկսում է հիշացնել հունարենը: Այնուամենայնիվ, այս ուղղությունը լեզուն հարստացրեց քերականական նոր ձևերով և գիտական բնագավառի կապակցություններով: Բազում նորամուծություններ, չնայած համախակի արհեստականությանը, լեզվի անքակտելի մասը կազմեցին: Հելլենական դպրոցի ծաղկման շրջանը, հատկապես VII դարը, համընկնում է այն փուլին, երբ լեզուն դեռ ընթանում էր զարգացման ճանապարհով: Հաջորդ՝ VIII դարն այն սահմանային հանգրվանն է, երբ ավարտվում են Հ. լեզվի աճն ու կյանքի դասական շրջանը: Բագրատունիների շրջանում (IX-XI դդ.) գրական լեզուն արդեն մուտք է գործում իր գոյության սքոլաստիկ փուլ. նրա իմացությունը տրվում էր հին հուշարձանների սերտմամբ: Հեղինակներից հայտնի ջանքերը էին պահանջվում, որ հարազատ մնային լեզվի սահմանված չափանիշներին և չարվեին խոսակցական լեզվի ազդեցությանը: [Այդ շրջանում] լեզուն ընդհանուր առմամբ պահպանեց իր անաղարտությունն ու հմայքը: Հայաստանում Զաքարյանների և Կիլիկիայում Ռուբինյանների կառավարման

շրջանում (XI-XIV դդ.) զգալի է կենդանի խոսքի ճնշումը. գրական լեզուն թեքվում է առօրեական խոսքի կողմը: Անգամ ի հայտ են գալիս լայն շրջանների համար նախատեսված՝ ժողովրդախոսակցականով հորինված ստեղծագործություններ, օրինակ՝ բժշկական, առակք (հանելուկ), երգեր և այլն: Մոնղոլական և թաթարական հրոսակների դեմ պայքարում կործանվեցին ավատատիրության հենասյուները, որոնց վրա հիմնված էր հայոց մշակութային-քաղաքական կյանքը. նրանց հետ անկում ապրեց նաև ավատատիրական մշակույթի արդյունք հանդիսացող հին գրական լեզուն: Դրանից հետո սկիզբ առած հասարակության ժողովրդականացմանը և քաղաքային կյանքի զարգացմանը զուգընթաց աստիճանաբար հաղորդակցության միջոց է դառնում հանրային կենդանի լեզուն: Թամուրի և թուրքմեն հորդաների տիրապետության ծանր ժամանակները կարող էին նպաստել միայն գրական լեզվի և ամենայն հոգևոր կյանքի մահացմանը և ոչ թե նորի ստեղծմանը: Կիլիկիայում, ուր հայերն ապրում էին համեմատաբար լավ պայմաններում, ժողովրդախոսակցականը քիչ էր մնում հասներ գրական լեզվի մակարդակին, սակայն դրան խոչընդոտեցին Կիլիկյան թագավորության անկումը և մշակութային այդ կենտրոնի կործանումը: Հասարակական կյանքում առաջնահերթ դերն անցավ եկեղեցուն, և այդպես շարունակվեց ողջ Էջմիածնական շրջանում (XV-XVIII դդ.): Դպրությունն ու գրական լեզվի իմացությունը մի շատ նեղ շրջանի մենաշնորհը դարձան: Բացարձակապես անկենդան գրական լեզուն մնաց անցյալում և սովորությամբ շարունակում էր կիրառվել գիտնականների կողմից, ինչպես լատիներենը միջին դարերում: Այն ցայսօր կիրառվում է եկեղեցում, որպես դարերով ավանդված սրբազան լեզու, որով կատարվում է եկեղեցական պաշտամունքն ու հոգևոր վերնախավի նամակագրությունը: Այդ շրջանում գրաբարին զուգընթաց գրավոր լեզու է մուտք գործում գրաբարով շաղախված ժողովրդական լեզուն, ինչպես այդ ընդունված էր կիլիկյան գրականության մեջ: Կան ամբողջական ժողովածուներ, այսպես կոչված երգարաններ, որոնք ստեղծված են հենց այդ՝ խառը լեզվով: Լեզվի կենդանի տարրերը նկատվում են առաջին հերթին բանաստեղծության մեջ, ուր հեղինակներն իրենց առջև չունեին գրաբարյան նմուշներ և կաղապարներով կաշկանդված չէին: Սակայն այս լեզուն ի վիճակի չէր խլելու գրաբարի դիրքերը: Հայկական գաղթավայրերը, հատկապես նրանք, որ հաստատվել էին Եվրոպայի լուսավորյալ կենտրոններում, չէին համարձակվում դեմ գնալ եկեղեցու կողմից սրբացված հին լեզվի իրավունքներին: Անգամ XVIII դարի սկզբին Վենետիկում հիմնադրված Մխիթարյանների միաբանությունը տառանվում էր նոր լեզվի

պաշտպանությամբ հանդես գալու հարցում: Միաբանության հիմնադիր Մխիթարին է պատկանում խոսակցական լեզվի քերականության առաջին փորձը, սակայն նոր գրական լեզվի հարցն, այնուամենայնիվ, անպատասխան էր մնում մինչև XIX հարյուրամյակի սկիզբը: Հիշյալ միաբանության ամենաերևելի դեմքերից մեկը՝ պատմաբանասիրական և պատմաաշխարհագրական արժեքավոր երկերի հեղինակ հ[այր] Ղուկաս Ինճիճյանը, Վենետիկում առաջինն սկսեց հրատարակել աշխարհիկ-ռամկական հայերենով պարբերականներ (1799-1802) և (1803-1820): Հետագայում նմանատիպ ձեռնարկումներ եղան և այլ կենտրոններում՝ Կոստանդնուպոլսում, Կալկաթայում, Զմյուռնիայում և այլուր: Նոր լեզվի ամուր հիմքերը դրվեցին լոկ 1840-ականներին, երբ Զմյուռնիայում սկսեց հրատարակվել «Արշալույս Արարատեան»-ը (1840-1886) և Մխիթարյանների պաշտոնական ամսագիրը՝ «Բազմավէպ»-ը (1843): Այս գործում մեծ էր Նոր Նախիջևանի և Բեսարաբիայի ազգային թեմակալ առաջնորդ, հանրահայտ ծովանկարչի եղբայր հ[այր] Գաբրիել Այվազովսկու ներդրումը: Գրեթե միաժամանակ գրական նոր լեզվի մշակումն սկսվեց նաև ռուսահայության շրջանում: Այստեղ առաջնեկը Դորպատի համալսարանի սան Խ. Աբովյանն էր, որը հեղինակել է հայրենանվիրությամբ և մայրենիի հանդեպ սիրով տոգորված և մեծ ժողովրդականություն վայելող «Վերք Հայաստանի» վեպը, որ գրված էր ժողովրդախոսակցական լեզվով (Երևանի գավառաբարբառով): Այնուհետև նույն համալսարանի սան և Լազարյան ճեմարանի պրոֆեսոր Ստ. Նազարյանցը, որը տաղանդավոր բանաստեղծ, քննադատ և հրապարակախոս (Գերցենի և Օգարյովի ընկեր) Մ. Նալբանդյանի աշխատակցությամբ նոր լեզվով սկսեց հրատարակել «Հյուսիսափայլ»-ը (1858-1864): Այսպիսով, ծագեց երկու գրական լեզու. Արևելյան՝ Ռուսաստանում և Պարսկաստանում, և Արևմտյան՝ Թուրքիայում և այնտեղից գաղթած հայության շրջանում: Արևելյանի հիմքում ընկած է Արարատյան դաշտավայրի բարբառը (Երևանի նահանգ), իսկ Արևմտյանը ծագում է Կիլիկյան հայերենից: Կային մարդիկ, որ երազում էին գրաբարի վերածնության մասին. այլք կիսում էին նոր գրական լեզվի մասին խրթին և բյուր կարծիքները: Այս կարգի բոլոր շփոթությունները ու դրանց հետ կապված բանավեճերը դադարեցին, երբ լույս տեսավ Վիեննայի Մխիթարյան հ[այր] Արսեն Այտընյանի հիմնարար աշխատությունը, որ նվիրված էր նոր լեզվի զարգացման պատմությանը՝ սկսյալ հին ժամանակներից մինչև ուսումնասիրության հրատարակման պահը («Քննական քերականութիւն աշխարհաբար կամ արդի հայերէն լեզուի», Վիեննա, 1866): Այդ

ժամանակ լիովին որոշակիացել է նաև լեզվի հետագա զարգացման ընթացքը:

Կենդանի բարբառներում, ներառյալ նաև նրանք, որ ընկած են գրական լեզվի հիմքում, նկատելի են պարսկական, արաբական և թյուրքական ծագման բառեր. որոշ խոսվածքներում բառապաշարի գրեթե կեսն օտար բառեր են: Նոր լեզվի հանդեպ խանդոտ վերաբերմունք դրսևորողների կարծիքով բոլոր օտարամուտ բառերը պետք է փոխարինվեն հարուստ հին հայերենի համարժեքներով: Նման դրվածքի շնորհիվ նոր լեզուն էապես մոտենում է գրաբարին ոչ միայն բառամթերքի, այլ նաև հնչյունական առումներով, որովհետև օտար բառերին փոխարինող համարժեքները պահպանում են իրենց հին ձևերը և չեն հարմարեցվում հնչյունական նոր օրենքներին: Բառերի հետ նոր լեզվին են անցնում նաև [դրանց] ամբողջական կապակցությունները, նախդիրներն ու ածանցները և այլն: Լեզվի հարստացումից բացի, գրաբարյան բառերն այն կարևոր նշանակությունն ունեն, որ ավելի են սերտացնում Արևելյան և Արևմտյան գրական լեզուների կապը: Գրական նոր լեզուն դեռևս ամբողջությամբ չի կազմավորվել, սակայն կարճ միջոցում այնպես է ձևավորվել, որ լիովին բավարարում է ներկայիս կրթության և լուսավորության պահանջները:

**Գրականություն գրաբարի առնչությամբ:** Դիոնիսիոս Թրակացու երկի VII դարի թարգմանությունից մինչև XVII դարը ստեղծված քերականական երկերը քիչ են ուսումնասիրված և գրականության պատմությանն են վերաբերում: Դրանց մասին կարելի է պատկերացում կազմել Սիմեոն Ջուղայեցու (մահ. 1657) 1725 թ. Կոստանդնուպոլսում տպված երկից: Ժամանակային առումով հայոց լեզվի առաջին քերականությունն ու բառարանը պատկանում է Ֆ. Ռիվոլայի գրչին՝ «Grammaticae Armeniae libri quattuor» (Միլան, 1624), իր իսկ հայ-լատին բառարանը՝ 1613 թվական: Երկու երկերն էլ ունեցել են Բ հրատարակություն՝ 1638 թ. Փարիզ: Մինչև Մխիթարյանների «Նոր Բառգիրք Հայկազեան լեզուի» (1836-1837) և Ա. Կ. Բագրատունու «Հայոց լեզուի քերականութեան» (1852) ի հայտ գալը բոլոր հրատարակությունները սոսկ մատենագիտական հետաքրքրություն են ներկայացնում: Հաջորդող գրականությունն ամբողջությամբ հիմնվում է այս երկու կոթողային աշխատությունների վրա: Քերականությունները ստեղծված են կամ Բագրատունու երկի նմանությամբ, կամ նրա հավաքած նյութի հիմամբ: Ռուսերեն առկա է Ն. Մառի «Грамматика древне-армянскаго языка. Этимологія» (ՍՊբ., 1903) աշխատությունը: Այլ լեզուներով՝ **H. Petermann, «Grammatica linguae Armeniacae» (Բեռլին, 1837), իր իսկ՝ «Brevis linguae Armeniacae grammatica. litteratura, chrestomathia, cum glossario». տե՛ս**

«Porta linguarum Orientalium»-ում; **A. Carrière**, Grammaire arménienne par M. Lauer, traduite, revue et augmentée d'une Chrestomathie et d'un Glossaire (II, 1884); **S. Aucher**, A. Grammar Armenian and englisch (Ա հրատ. 1833, վերջինը՝ 1873); **P. Tiroyan**, Grammatica armena della lingua classica della moderna (Վենետիկ, 1902); **А. Худобашевъ**, Армяно-русскій словарь; **Մ. Ջախջախեան**, Dizionaro arm.-italiano (Վենետիկ, 1873); **Մ. Ավգերեան**, Dictionary Armenian-englisch (Վենետիկ, 1825):

**Գրականության աշխարհաբարի առնչությամբ.-** **Հ[այր] Աբ. Այտընեան**, Քննական քերականութիւն աշխարհաբար կամ արդի հայերէն լեզուի (Վիեննա, 1866); **Հ[այր] Ղ. Հովնանեան**, Հետազօտութիւնք նախնեաց, ռամկօրէնի վրայ (մաս 1, տետր 1 և 2, Վիեննա, 1897); **Dr. Josef Karst**, Historische Grammatik des Kilikisch-armenischen (Ստրասբուրգ, 1901); **Rigss**, A grammar of the modern Armenian language as spoken in Constantinople and Asia Minor (Կոստանդնուպոլիս, 1847); **Chahan Cirhied**, Grammaire de la lanque arménienne (Փարիզ, 1823); **Н. Вероевъ**, Краткое начертаніе правилъ гайканскаго простонароднаго языка («Mél. Asiat.», հատ. I, ՍՊբ., 1849 թ.):

**Բարբառագիտության առնչությամբ.-** **Գ. Ախվերդով**, Թիֆլիսու բարբառի մի քանի հատկություններու վրա («Սայաթ Նովա» ժողովածուին կից, Մ., 1852); **H. Petermann**, Üeber den Dialekt der Armenier von Tiflis, 1867, 2 (ըստ Գ. Ախվերդովի); **А. Томсонъ**, Историческая грамматика современнаго армянскаго языка города Тифлиса (ՍՊբ., 1890), իր իսկ՝ «Лингвистическія изслъдованія, Краткій очеркъ фонетики и морфологіи ахалцыхскаго говора» (ՍՊբ., 1887); **Ս. Սարգսեանց**, Ագուլեցոց բարբառը (Թիֆլիս, 1883); **J. Schroeder**, Thesaurus linguae Armeniacae. Synopsis linguae civilis Armenorum (Ամստերդամ, 1711); **К. Паткановъ**, Матеріалы для изученія армянскихъ наръчій, թողարկում I, Говоръ нахичеванскій (ՍՊբ., 1875); թողարկում II, Мушскій діалектъ (ՍՊբ., 1875); **М. Мсерянцъ**, Этюды по армянской діалектологіи. Часть I. Сравнительная фонетика мушскаго діалекта въ связи съ фонетикой грабара (М., 1897); **J. Hanusz**, Beiträge zur armenischen Dialectologie. I. Lautlehre d. Polnisch-armenischen Mundart von Kuty in Galizien (Վիեննա, 1889); **Հ. Գազանճեան**, Եւդոկիոյ հայոց գաւառաբարբառը (Վիեննա, 1899):

№ 4

## ԽՈՍՔ ԱՊՐԻԼԻ 11 (24)-ի ՍԳԱՀԱՆԴԵՍԻՆ

Տասնչորս տարիներու շարքը անզոր էր մոռցնելու անցած օրերու հիշատակը: Համաշխարհային պատերազմի առեն մեծ ու փոքր պետություններն երկու ճակատի բաժնված էին: Մեր արյունալի դատն ալ նժարին մեջ դրված էր:

Մենք ըրինք ամեն ինչ, այդ դատը շահելու համար:

Մեծ դաշնակիցներն ամեն տարի կտոնեն իրենց հաղթանակը, անոնք միշտ ծաղիկներով կզարդարեն իրենց նահատակներու գերեզմանը, իսկ մե՞նք: Մենք ամեն տարի կհավաքվինք ոչ թե մեր հաղթանակը տոնելու, այլ մեր պարտությունը սգալու:

Ես կոգեկոչեմ մեր անթաղ մեռելներու ուրվականները, որպեսզի տեսնեն, թե ինչպես հարգալիր կտոնենք իրենց հիշատակը:

Մեր զոհերը ջարդվեցան անոր համար, որ գերադասեցին ապրել իբրև Հայ և ոչ թե իբրև ստրուկ: Հերոսը այն է, որ կարհամարհի մահը հանուն որևիցե բարձր գաղափարի: Մեր ապրիլյան նահատակները կերթան միանալ Հայոց պատմության մյուս անհամար զոհերուն, որոնք իրենց արյունը տվին՝ պահպանելու համար հայությունը և անոր քաղաքակրթությունը: Գաղութներու մեջ մեր պարտականությունն է պահպանել մեր գոյությունը: Չկա հաղթանակ առանց պարտության: Երբ ծառի մը ճյուղերը կտրեն, անիկա բարմ ծիլերը կարձակե: Չեզմե յուրաքանչյուրը պետք է կատարե իր պարտականությունը՝ հանուն ազատագրության:

№ 5

## ԿԱՐԱՊԵՏ [ՀԱՐՈՒԹՅՈՒՆԻ] ԵԶՈՎ (ԵԶՅԱՆՑ)

Կ. Հ. Եզովը (1) ծնվել է 1834 թ. սեպտեմբերի 5-ին Մոսկվայում: 1852 թ. ոսկե մեդալով ավարտել է Արևելյան լեզուների Լազարյան ճեմարանը (Մոսկվա) և երկու տարի անց՝ Սանկտ-Պետերբուրգի համալսարանի արևելյան լեզուների ֆակուլտետը և արժանացել հայերենագիտության ամբիոնի մագիստրոսի գիտական կոչման (2): Նրա հայրը Մոսկվայում մանր առևտրական էր, որն ամուսնացած էր Նոր Նախիջևանցի մի հայուհու՝ Կիստովայի հետ:

Կարապետ Եզովն ուներ երկու քույր՝ Մարիա և Աննա, և եղբայր՝ Իվան (Հովհաննես): Մարիան ամուսնացած էր իրենց հեռավոր ազգական Բ. Վ. Բողդանովի հետ: Նրանց երեխաներին Եզովը վերաբերվում էր իբրև իր սեփական երեխաների և մեծապես աջակցում նրանց ուսումնառությանը (3): Նրա ջանքերի շնորհիվ այս ընտանիքի անդամները, չնայած ապրում էին Ս. Պետերբուրգում և կրթություն էին ստացել ռուսական ուսումնական հաստատություններում, սահուն խոսում էին հայերեն: Աննան մշտապես ապրում էր Կարապետ Եզովի հետ և վարում էր նրա տնտեսությունը: Նրանց եղբայրը՝ Հովհաննեսը՝, նույնպես ավարտել էր Արևելյան լեզուների Լազարյան ճեմարանը, որից հետո ընդունվել Ս. Պետերբուրգի Ռազմաբժշկական ակադեմիան: Հովհաննեսի՝ ակադեմիան ավարտելուց հետո, չնայած նյութական միջոցների սղության, Կ. Եզովը նրան ուղարկել է արտասահման մասնագիտության մեջ կատարելագործվելու: Արտասահմանից վերադառնալով Ս. Պետերբուրգ՝ Հովհաննես Եզովն իր ոլորտում մեծ համբավ և հեղինակություն է ձեռք բերել, այնպես որ Պետերբուրգյան հայտնի բժիշկների կողմից հաճախ հրավիրվում էր խորհրդատվության: Որպես հատկանշական երևույթ կարելի է նշել այն, որ նա հայերին բուժում էր անվճար:

1854 թ. նոյեմբերին Կ. Եզովը պետական ծառայության է ընդունվում Ս. Պետերբուրգի նահանգային վարչությունում, որտեղից շուտով տեղափոխվում է Ներքին գործոց նախարարության հոգևոր գործերի և օտար դավանությունների դեպարտամենտ: Այստեղ նա հասել է բաժնի պետի աստիճանի: 1888 թ. նշանակվել է Ժողովրդական կրթության նախարարության

դեպարտամենտի փոխտնօրեն, իսկ 1891 թ.՝ Ժողովրդական կրթության Գլխավոր կոմիտեի և Գիտական խորհրդի անդամ: Զբաղեցրած պաշտոնների բերումով նա մշտապես հրավիրվել է Գիտությունների ակադեմիայի նիստերին, ուստի և անդամակցում էր բազմաթիվ գիտական ընկերությունների (4), այդ թվում՝ «Հին հուշարձանների ուսումնասիրության» հանձնաժողովին, որի նախագահն էր կոմս Ա. Դ. Շերեմետևը: Պետական անբասիր ծառայության համար պարգևատրվել է բազմաթիվ շքանշաններով, այդ թվում բարձրագույններից՝ «Սպիտակ արծվի Աստղ»-ով և հասել Պետական իսկական զաղտնի խորհրդականի ամենաբարձր կոչմանը: 1904 թ. Ժողովրդական կրթության նախարարության անդամները նշեցին նրա պետական ծառայության հիսունամյա հոբելյանը: Առաջին օրը Եզովը պաշտոնական շնորհավորանքներ էր ընդունում մի շարք բարձր աստիճանավորներից և զանազան կառավարական հաստատությունների պաշտոնյաներից: Հանդիսավոր շքահամազգեստով նրան շնորհավորելու եկան կոմս Վ. Ն. Կոկովցևը (այդ ժամանակ ֆինանսների նախարար, հետագայում՝ վարչապետ), Ժողովրդական կրթության նախարար գեներալ-համհարզ Գլազովը, Արդարադատության փոխնախարար Շմեմանը, ծերակուտականներ Անիչկովը, Մամոնտովը և այլք, ինչպես և Ժողովրդական կրթության նախարարության ավագ պաշտոնյաներն ամբողջ կազմով: Հոբելյանի երկրորդ օրը հատկացված էր Ս. Պետերբուրգի հայ համայնքի, բարեկամների և համակիրների շնորհավորանքներին: Դրանք սկսվեցին նրանից, որ Ստեփան Մամիկոնյանը (5) հանդիսավորությամբ ընթերցեց Ամենայն Հայոց կաթողիկոս Մկրտիչ Ա Խրիմյան Հայրիկի կոնդակը, որում Եզովը նմանեցվում էր արծվի (6): Այնուհետև ընթերցվեցին մի շարք ուղերձներ տարբեր հայաբնակ քաղաքների, ինչպես նաև շատ ջերմ և սրտառուչ Մոսկվայի՝ հայկական համայնքներից:

Ավարտելով Կ. Եզովի պաշտոնական գործունեության վերաբերյալ սույն համառոտ ակնարկը, փորձենք ներկայացնել նաև նրա հասարակական և անձնական կյանքը: Հոր մահվանից հետո Կ. Եզովի ընտանիքը զրկվեց կենսամիջոցներից, և նա ստիպված եղավ հոգալ համայն ընտանիքի կարիքները: Ընդունվելով պետական ծառայության՝ նա հարկադրված էր իր ընտանիքը Մոսկվայից տեղափոխել Ս. Պետերբուրգ: Բնակվելով Ս. Պետերբուրգում, նա մի պանսիոն բացեց, որը բացառապես հայորդիներին նախապատրաստում էր ինչպես միջնակարգ դպրոց (գիմնազիա), այնպես էլ բարձրագույն ուսումնական հաստատություններ ընդունվելու համար: Նրա պանսիոնում կրթություն ստացած անձանցից հարկ է նշել Գրիգոր Արծրունուն, Արգար Հովհաննիսյանին, Լևոն Տիգրանյանին (Մկրտիչ Սա-

նասարյանի ազգականին), Մաղաքյանին և այլոց: Նրա աշակերտների մեջ կային այնպիսիները, որոնք հետագայում բարձրագույն պաշտոններ ստանձնեցին կառավարական տարբեր հիմնարկություններում: Օրինակ, հաղորդակցության ուղիների նախկին փոխնախարար Գրիգորի Բուդագովը (7): Շաբաթ օրերին Եզովը հավաքում էր իր սաներին, որոնց հետ կապված էր բարեկամական ու ջերմ հարաբերություններով, և նրանց հասակակիցներին՝ ազգային կյանքի զանազան հարցերի քննարկման համար: Քննարկումները և բանավեճերն ընթանում էին բացառապես հայերենով: Դրանով էր բացատրվում իր պանսիոնն ավարտած երիտասարդների հայոց լեզվի հոյակապ իմացությունը՝ թեև նրանք բնակվում էին Ռուսաստանում: Այդ ժամանակվանից Եզովի անունը մեծ համբավ ձեռք բերեց հայերի շրջանում: Նրա շուրջը կազմավորվեց հայազգի գործիչների մի հիանալի խումբ՝ կոմս Միքայել Լորիս-Մելիքովը, պրոֆեսոր Քերովբե Պատկանովը, մեծահարուստներ Մկրտիչ Սանասարյանը (8), Հովսեփ Իզմիրյանցը (9) և այլք: Հետզհետե Եզովի բնակարանը վերածվեց մի կենտրոնի, ուր ձգտում էր Ս. Պետերբուրգ ժամանած ցանկացած հայ և ամեն ոք, որ ուներ որևէ կարիք, կամ խորհրդի անհրաժեշտություն մշտապես դիմում էր նրան: Յուրաքանչյուր հայի Եզովը ընդունում էր ամենայն բարյացակամությամբ՝ անտեսելով նույնիսկ ճաշի կամ հանգստի ժամերը: Առանձնապես հատուկ ջերմությամբ էր ընդունում Հայաստանից և Կովկասից ժամանած հայ երիտասարդներին: Շնորհիվ իր բացառիկ հեղինակության, որ նա վայելում էր Ժողովրդական կրթության նախարարության ոլորտում, նա կարողանում էր բազմաթիվ երիտասարդ հայերի տեղավորել բարձրագույն ուսումնական հաստատություններում, որտեղ, ի դեպ, շատ դժվար էր ընդունվել մեծ մրցակցության պատճառով: Սակայն մի պայման էր դրվում. որպեսզի Եզովը միջամտեր կամ մասնակցություն ունենար այս կամ այն հայ երիտասարդի ճակատագրին՝ այդ երիտասարդը պետք է պարտադիր տիրապետեր հայերենին: Հակառակ դեպքում նա մերժում էր աջակցության բոլոր խնդրանքները, խիստ նախատելով դիմողին մայրենի լեզվի չիմացության համար: Ինքը՝ Կ. Եզովը, Արևելյան լեզուների Լազարյան ճեմարանն ավարտելուց հետո, թեև հիանալի տիրապետում էր հայերենին, բայց իր գիտելիքները բավարար չէր համարում և արդեն հասուն տարիքում սկսեց ջանադրաբար ուսումնասիրել այն և հասավ կատարյալ իմացության: Եզովը միշտ ասում էր, թե բավական չէ լինել լավ մարդ, այլև պետք է լինել լավ հայ՝ սիրել իր ազգը և հայերի մեջ ամրապնդել ազգային ոգին: Ընդհանրապես հարկ է նշել, որ Եզովի բնակարանը միշտ բաց էր հայերի համար և յուրաքանչյուրը

օգտվում էր ոչ միայն նրա հյուրընկալությունից, այլև, եթե կարիքը կար, որևէ պետական հաստատություն ծառայության ընդունվելու համար՝ նրա աջակցությունից: Հատկապես նրա բնակարանը մարդաշատ էր պահքի ավարտին, Սուրբ Ծննդի և Զատիկի նախօրեին, երբ նրան այցելում էին ոչ միայն անձամբ իր հետ ծանոթ ուսանողներ, այլև նրանց ընկերներն ու մտերիմները, որոնցից շատերին Եզովը առաջին անգամ էր տեսնում (10):

Այժմ անցնենք նրա և նրա մերձավոր բարեկամների միջև հաստատված հարաբերություններին: Երբ 1878 թ., ռուս-թուրքական պատերազմից քիչ առաջ կոմս Մ. Լորիս-Մելիքովը եկավ Ս. Պետերբուրգ, նրա ականջին հասան ամենանպաստավոր կարծիքներ Եզովի անձի մասին: Ուստի նա ցանկություն հայտնեց ծանոթանալու նրա հետ, իսկ հետագայում այնքան մտերմացավ, որ պատերազմի նախօրեին որոշեց ընտանիքը Վիսբադենից տեղափոխել Ս. Պետերբուրգ և ռազմական գործողությունների սկսվելուց հետո այն վստահեց Եզովի հոգածությանը: Այդ ժամանակվանից Եզովը դառնում է ինչպես իր իսկ՝ կոմս Լորիս-Մելիքովի, այնպես էլ նրա ամբողջ ընտանիքի ամենամտերմավոր բարեկամը: Ռուս-թուրքական պատերազմի ավարտից հետո Եզովը մշտապես և անկաշկանդ այցելում էր կոմս Լորիս-Մելիքովին, որը, լինելով Ալեքսանդր II կայսեր օրոք Գերագույն կարգադրիչ հանձնաժողովի նախագահ՝ դիկտատորական իրավասություններով (պաշտոն, որը չի զբաղեցրել և ոչ մի պետական գործիչ ո՛չ նրանից առաջ, և ո՛չ էլ հետո), Եզովին իրազեկ էր դարձնում պետական բոլոր գաղտնիքներին և գործերին: Այսպես, օրինակ, մի սովորական այցելության ժամանակ կոմսը թվարկել էր այն նախարարների անունները, որոնք պետք է պաշտոնանկ արվեին: Իսկ երբ 1881 թ. Ալեքսանդր II-ը սպանվեց, Եզովը ամբողջ օր ու գիշեր անցկացրեց Լորիս-Մելիքովի հետ, որը, հույժ ցնցված լինելով այդ իրողությամբ, կարիք ուներ այնպիսի մտերիմ մարդու ներկայության, ինչպիսին էր Կ. Եզովը:

Կ. Եզովը մտերիմ էր հատկապես Մկրտիչ Սանասարյանի հետ: Մ. Սանասարյանը, ռուսական բանակի նախկին սպան, թեև բարձրագույն կրթություն չէր ստացել, բայց ի ծնե խելացի էր, ինչը նրան հնարավորություն տվեց տարբեր մասնավոր ընկերություններում զբաղեցնելու տնօրենի պաշտոն (11): Շնորհիվ դրան նրան հաջողվեց իր համեմատաբար համեստ դրամագլուխը հասցնել պատկառելի կապիտալի: Մ. Սանասարյանը ոչ միայն հարգում էր Եզովին, այլև շատ նվիրված էր նրան, և նույնիսկ աստվածացնում էր: Ցանկացած մտահղացում, որ Եզովն առաջարկում էր նրան, Սանասարյանն ընդունում էր դրանք՝ բարեհաջող արդյունքի ակնկալությամբ: Հետաքրքիր է, որ նա որևիցե քայլ չէր ձեռնարկում,

մինչև չստանար Եզովի հավանությունը: Եվ Կ. Եզովը օգտվելով իր մեծագույն ազդեցությունից՝ նրան ներշնչել էր այն միտքը, որ պետք է դրամագլուխ կտակել դեռ կենդանության օրոք, և ոչ թե մահվանից հետո, քանի որ միայն այդ դեպքում նվիրատուն կկարողանար ուրախությամբ հետևել հաջող ընթացքին այն գործի, որի համար նա նվիրաբերել էր իր դրամական միջոցները: Դրանով է գլխավորապես բացատրվում այն, որ ի կենդանության Սանասարյանը նվիրաբերել է իր դրամագլուխը Էրզրումում (Կարին) հայկական վարժարան հիմնելու համար, որն իր պատվին կոչվեց «Սանասարյան» (12): Այդ վարժարանի հիմնադրումը բացառապես Կ. Եզովի նախաձեռնությունն էր. նրան էր պատկանում նաև ուսումնական հաստատությունը հենց Տաճկահայաստանում հիմնադրելու գաղափարը: Եզովը միանգամայն համոզված էր, որ որքան էլ հայերը հալածված լինեին թուրքերի կողմից, պետք է ամեն գնով նրանց մեջ վառ պահել հայկական ոգին: Իսկ ամենից լավ դա կարող էր անել միայն դպրոցը: Մ. Սանասարյանի համաձայնությամբ Եզովը հրավիրեց վաստակավոր անձանց, որոնք համալրեցին այդ վարժարանի ուսուցչական կազմը. մինչ օրս կենդանի Գևորգ Արությանին, Հովսեփ Մաղաքյանին, Սարգիս Սողիկյանին (այժմ մահացած) և էլի ուրիշների: Իր նախաձեռնությամբ այս անձինք ուղարկվեցին Գերմանիա ուսումնական գործի կազմակերպումը ուսումնասիրելու և կրթությունը շարունակելու համար: Եզովին էր պատկանում նաև այն միտքը, որ Սանասարյան վարժարանում պետք է դասավանդվեն զանազան արհեստներ ու արվեստներ, քանի որ Հայաստանը մեծ կարիք ուներ տարբեր արհեստների ու արվեստների գիտակ մասնագետների: Այսպիսով, այս գործի կազմակերպչական կողմը հոգում էր Եզովը, և Սանասարյանը չէր միջամտում, քանի որ լիովին վստահում էր նրան: Դժվար է պատկերացնել ավելի սրտառուչ և հայրական վերաբերմունք, քան այն, որ Եզովը դրսևորում էր Սանասարյան վարժարանի նկատմամբ, և որը կարելի է համեմատել ամենասիրված երեխայի նկատմամբ ծնողական զգացմունքների հետ: Հետագա ամբողջ կյանքի ընթացքում Եզովը ամենայն ուշադրությամբ հետևում էր այդ վարժարանի աշխատանքներին: Կարինից նրան ուղարկում էին հաշվետվություններ, որոնք անձամբ ինքն էր ուսումնասիրում, դրանց վրա հաճախ անցկացնելով ամբողջ գիշերներ: Յուրաքանչյուր հարուստ հայի, որ ժամանում էր Ս. Պետերբուրգ, նա ասում էր. «Ահա՛ մի գործ, որին պետք է աջակցել, և որի համար հարկ է դրամ հատկացնել»: Անձամբ Եզովը համոզեց իր այրի մորաքրոջը՝ Նոր Նախիջևանցի Կազաչկովային [Մարիամ Կազաչկյանց], որ իր պատկառելի դրամագլուխը կտակի Սանասարյան վարժարանին, չնայած նրան, որ իրենց ընդհանուր

ազգականները նույնպես դրամի խիստ կարիք ունեին: Համաձայն Սանասարյանի թողած կտակի, կտակարար էր նշանակվել Կ. Եզովը, իսկ նրա մահվանից հետո Սանասարյան վարժարանի տնօրինությունը պետք է անցներ հատուկ հոգաբարձու խորհուրդին՝ Կ. Պոլսի պատրիարքի (այդ ժամանակ՝ Մաղաքիա արքեպ. Օրմանյանի) նախագահությամբ: Հոգաբարձու խորհուրդը կազմված էր վեց անդամներից և երեք թեկնածուներից, ընդ որում նախագահի փոխանորդն այստեղ Օսմանյան կայսրության պետական բարձր աստիճանավոր Գաբրիել Նորատունկյանն էր: Եզովի անձնական կտակի համաձայն, ի շահ Սանասարյան վարժարանի, նվիրաբերվել է 40.000 ոսկի ռուբլի դրամագլուխ (13):

Կ. Եզովի մերձավոր բարեկամների թվին էր պատկանում մեծ հայրենասեր և բարեգործ Հովսեփ Աբրահամի Իզմիրյանցը: Եզովի նախաձեռնությամբ ամեն կիրակի պատարագից հետո Իզմիրյանցի մոտ էին հավաքվում հայկական համայնքի մեծավորները՝ ազգային և քաղաքական կյանքի զանազան հարցեր քննարկելու համար: Կ. Եզովի խորհրդով Հ. Իզմիրյանցը 12.000 ոսկի ռուբլու դրամագլուխ կտակեց այն պայմանով, որ այդ գումարից ստացած տոկոսն իբրև մրցանակ տրվի լեզվաբանության և գրականության հարցերին նվիրված, հայերենով շարադրված լավագույն երկասիրության համար (14): Այդ դրամագլխի տնօրինությունը և պարգևատրությունների շնորհումը վստահված էր Կ. Պոլսի Հայոց պատրիարքի նախագահությամբ գործող հատուկ Հոգաբարձու խորհրդին: Նշվածներն ակնհայտորեն վկայում են այն մասին, որ Եզովը տաճկահայերի նկատմամբ հատուկ վերաբերմունք ուներ, և, ինչպես կարելի էր հասկանալ իր իսկ խոսքերից, այս ամենն արվում էր նրա համար, որպեսզի նրանց մոտ վառ պահվեր հայոց լեզուն և հայրենասիրական ոգին: Նա շատ էր հուզվում և սրտին մոտ ընդունում Տաճկահայաստանում կատարվող յուրաքանչյուր դժբախտություն:

Երբ 1890-ական թվականներին Տաճկահայաստանում տեղի ունեցավ Սասունի առաջին կոտորածը, Եզովը անմիջապես արձագանքեց այդ աղետին: Այն ժամանակվա ռուս լավագույն կատարողների մասնակցությամբ նա մայրաքաղաքում ճոխ համերգ կազմակերպեց: Համերգից հավաքված հասույթը կազմեց մի պատկառելի գումար, որն անմիջապես ուղարկվեց կոտորածից տուժածներին: Այդ պահից ի վեր նա սկսեց հետևել Տաճկահայաստանում կատարվող իրադարձություններին և բոլոր աղետները, որ տեղի էին ունենում այնտեղ, ընդունում էր խոր վշտով և ձեռնարկում էր այս կամ այն միջոցառում արևմտահայերին օգնելու համար: Սակայն սրանով բնավ չի սահմանափակվում Եզովի հասարա-

կական գործունեությունը: Նա վիթխարի ազդեցություն ուներ ինչպես հայոց ազգային, այնպես էլ քաղաքական և ամբողջ հոգևոր կյանքի վրա: Եզովը ծավալուն նամակագրություն է վարել իր օրերի բոլոր Ամենայն Հայոց կաթողիկոսների հետ, սկսած Գևորգ Դ-ից մինչև Խրիմյան Հայրիկը: Բացի այդ, Եզովը նամակագրություն ուներ Կ. Պոլսի պատրիարք Մաղաքիա արքեպ. Օրմանյանի և այլ երևելի արքեպիսկոպոսների, այդ թվում Գաբրիել Այվազովսկու և այլոց հետ: Էջմիածնի [Գևորգյան] ճեմարանի հիմնարկեքի կապակցությամբ հատուկ նամակագրություն է ունեցել Գևորգ Դ-ի հետ, որի կազմակերպմանը նա գործուն մասնակցություն է ունեցել: Այս նամակագրությունն ամբողջությամբ պահպանվել և այժմ գտնվում է Ռուսաստանի Գիտությունների ակադեմիայում՝ պրոֆեսոր Նիկողայոս Մառի հսկողության ներքո:

Երբ ռուսական կառավարության կարգադրությամբ Թիֆլիսում փակվեցին հայկական ուսումնական հաստատությունները՝ այն է Ներսիսյան դպրոցը և Անանյան վարժարանը, Եզովի համառ ու հետևողական միջնորդության շնորհիվ որոշ ժամանակ անց դրանք դարձյալ վերաբացվեցին (15): 1900-ական թվականների սկզբին՝ 1903 թ., երբ Կովկասի փոխարքա Գր. Գոլիցինի օրոք ռուսական կառավարությունը բռնագրավեց Կովկասի հայկական եկեղեցիներին և վանքերին պատկանող գույքը, գլխավորապես Եզովի երկարատև և համառ գործունեության շնորհիվ, որ ծավալվում էր Ս. Պետերբուրգում կառավարության ազդեցիկ անդամների միջնորդությամբ, հաջողվեց հասնել նրան, որ խլված գույքը ետ վերադարձվեց: Այս իրողությունը շատ քչերին է հայտնի:

Վերջապես, հարկ է նշել նաև այն կարևոր փաստը, որ վիթխարի նշանակություն ուներ Ս. Պետերբուրգի և Մոսկվայի հայերի համար: Բանն այն է, որ Ս. Պետերբուրգի և Մոսկվայի հայկական եկեղեցիները կառուցվել են Լազարյանների կողմից՝ այն Լազարյանների, որոնք Մոսկվայում հիմնեցին Արևելյան լեզուների Լազարյան ճեմարանը: Եվ քանի որ իշխան Սիմեոն Աբամելիք-Լազարյանը ամուսնացած էր Լազարյանների տոհմի մի աղջկա հետ, ապա Ս. Պետերբուրգի և Մոսկվայի հայկական եկեղեցական գույքը բացառապես տնօրինում էր Աբամելիք-Լազարյանների ընտանիքը, իսկ ծխականներին, հակառակ նրան, ինչ ընդունված էր այլ քաղաքներում, արգելվում էր մասնակցել դրանց կառավարմանը: Սակայն երկարատև ջանքեր թափելուց հետո Եզովին հաջողվեց հասնել նրան, որ այս եկեղեցիների կառավարումը ստանձնեցին ծխականները: Այդ ժամանակ մշակված և օրենքով ամրագրված կարգով ընդունվեց մի հատուկ դրույթ Մոսկվայի և Ս. Պետերբուրգի հայկական եկեղեցիների մասին, որի հա-

մաձայն՝ վերոհիշյալ եկեղեցիների գույքն ու եկամուտները պետք է տնօրիներ հատուկ եկեղեցական խորհուրդը, որի նախագահ դարձավ իշխան Ս. Աբամելիք-Լազարյանը, որն իր տեղակալին նշանակում էր ծխականներից: Երկար ժամանակ այդպիսի տեղակալ, և, ըստ էության, գործնականում նախագահն էր Եզովը: Նրա նախաձեռնությամբ է, որ բացի Լազարյան բաշակից, Լազարյան ճեմարանում հիմնվեցին նաև մի շարք նոր բոշակներ, որոնք շնորհվում էին Ս. Պետերբուրգի Հայկական եկեղեցական խորհրդի կողմից (16):

Ավարտելով, մնում է ասել, որ չնայած նրան, որ Եզովը ստիպված էր զգալի ժամանակ հատկացնել ծառայողական ու համայնքային պարտականություններին, նա ժամանակ էր գտնում զբաղվելու նաև ազգային պատմությանը վերաբերող զանազան ուսումնասիրություններով: Այդ բնագավառում նա ունի աշխատությունների մի ամբողջ շարք, որոնցից մի քանիսը հրատարակվել են, իսկ մյուսները մնացել են անտիպ (17): Վերջիններս պահպանվում են նույն այն նամակագրության հետ, որը, ինչպես վերը նշվեց, գտնվում է Լենինգրադում, Գիտությունների ակադեմիայում: Վերջին՝ հույժ ստվարածավալ աշխատությունը, որը պարունակում է բազմաթիվ արժեքավոր վավերագրեր, հրատարակվել է «Պետրոս Մեծի հարաբերությունները հայ ժողովրդի հետ» վերտառությամբ. [Փաստաթղթեր քաղված Ռուսաստանի Արտաքին գործոց նախարարության Մոսկվայի Գլխավոր և Ս. Պետերբուրգի արխիվներից, Ավստրիական արքունական և պետական արխիվներից, Բավարական թագավորական գաղտնի պետական արխիվից և այլ հիմնարկությունների արխիվներից (Ս. Պետերբուրգ, 1898)]: Այս գիրքը Եզովն անձամբ է ընծայել նախկին կայսր Նիկոլայ II-ին, որպեսզի, ինչպես ինքն էր ասում. «Նիկոլայ II-ը իմանար, թե իր նախորդները ինչպիսի բարյացակամությամբ էին վերաբերվում հայ ժողովրդին» (18):

Կարապետ Եզովը վախճանվեց 1905 թ. [մայիսի 31-ին] 70 տարեկան հասակում, կրծքահեղձուկից [ստենոկարդիա]:

## № 6

## «ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱ»-Ի ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ

«Հանդես Ամսօրյա»-ն տոնում է իր գոյության հիսնամյա տարեդարձը (1): Շնորհավորում եմ բոլոր սրտով իր տոնը, գնահատում մեծապես իր արդյունավետ և ուղեշ հասակը: Թող տոնակատարությունը պատեհ առիթ լինի և մի լիարբուռն ճվեր գա ամրապնդելու դրա նյութական հիմերը, որպեսզի շարունակե մնալ յուղառատ ճրագ հայ բանասիրության:

Հիմնադիրները ծերացան, գնացին (2): Եկան նրանց աշակերտներ (3) և թերթը պահեցին երիտասարդական աշխույժի մեջ: Հարգանք հ[այր] Տաշյանի (4) հիշատակին և հանճին նրա բոլոր անցյալ և հանգած խմբագրապետներին և աշխատակիցներին: Ողջույն և խրախույս ներկա բարեջան խմբագրին՝ հ[այր] Ակինյանին (5), իր գրչագիրներին. ողջույն ամբողջ Միաբանության:

Բրյուսել, 30 սեպտ[եմբեր], 1937

Ն. ԱԴՈՆՑ

## № 7

## Տ. ԹՈՐԳՈՄ ՍՐԲԱԶԱՆ ՊԱՏՐԻԱՐՔԻ ՀԻՇԱՏԱԿԻՆ

Մի նոր և անդարմանալի կորուստ, մի նոր և անողոք հարված Հայ Եկեղեցուն: Մայր Աթոռն այրի (1), և Երուսաղեմի պատրիարքությունը, որ կոչված է օժանդակ լինել բոլոր այն դեպքում, ուր կաշկանդված [Ամենայն Հայոց] կաթողիկոսությունը չէր կարող լսելի անել իր ձայնը՝ զրկվեց իր կոչման բարձրության վրա կանգնած և հեղինակությամբ այնքան զորավոր, այնքան ձեռնհաս ղեկավարից (2):

Պետք չէր երկարամյա ծանոթություն և ո՛չ քննող աչքի զննություն: Առաջին տեսությունն ևեթ բավ էր համոզվելու, որ հանգուցյալը սովորական եկեղեցական չէր, մի ցայտուն դեմք էր, մարմնացած պատկառանք հոգևոր հոր բոլոր և անթերի բարեմասնություններով: Եկեղեցականներ շատ ենք տեսել և ճանաչել մոտեն, թե հեռվեն, բայց լուսահոգի պատրիարքի նման քչերին ենք հանդիպել. մի բացառիկ երևույթ էր, վսեմ պատկեր ճշմարիտ վեղարավորի: Գրավիչ տեսքը, մեղմ բնավորությունը, խոսելու և ճառելու ինքնահատուկ կերպը, շարժվածքն ու կեցվածքը շնչում էին անուշություն և ջերմ վեհություն:

Կան հոգևորականներ և սակավ չեն, որոնց ինքնության գրեթե միակ վկայականը սև զգեստն է. այլապես աշխարհիկ են հոգով և մտքով, անգամ նիստ ու կացով: Որքա՜ն հեռու էր այդպիսիներից ողբացյալը. իսկական հոգևոր տեր էր, գիտակից իր կոչման վսեմության, գերազանցորեն գիտակից: Համոզմունքով էր հագել սքեմը և սրբությամբ ծառայեց նրան: Ընտրած կոչումն իր զարդարանքն էր և ինքն եղավ զարդարանք իր կոչման:

Զգայուն հոգին, նրբազգաց միտքը շատ օրորվեցին վերջին ժամանակ սև-սև հուզումներով: Էջմիածնի տխուր կացությունը, Հայրապետի խորհրդավոր անէացումը, Ամերիկայի խռովությունները, որ դարձրին եկեղեցին, խաղաղության և հաշտության այդ սրբազան տաճարը, բորբոքված և անխոհեմ կրքերի մրցարան, անտեսելով այլևոր եկեղեցու պատիվը, չխնայելով տեսնել մթություններ, հայրապետական նվիրակի, այդ լուսավոր ջահի մեջ (3), խորապես ցնցեցին հանգուցյալին և թերևս անմասն չմնացին նրա աղետալի վախճանին:

Շիջած պատրիարքը գիտեր լինել բարեկամ, ջերմ և հավատարիմ բարեկամ: Շատերի թվին, ինձ ևս պատվեց իր բանկագին զգացումներով: Մշտական գրությամբ տեղյակ կպահեր իր ծրագիրներին գրական, թե հասարակական (4): Հուսանք, որ իր հաջորդը կշարունակե անվրեպ ընթանալ նույն շավղով, ինչպես հանգուցյալը հետևեց իր նախորդին (5), իր հոգևոր ծնողին և կիրագործե անկատար մնացած գործերը: Դուրյան և Թորգոմ պատրիարքները լուսատու ճրագներ եղան հինավուրց վանքի համար, պանծացրին նրա անունը նոր և մեծ փայլով, հիացում և ակնածանք ազդելով ոչ միայն ազգային, այլև՝ օտար և խիստ պահանջկոտ շրջաններում: «Տեսա հայոց վանքը, և Թորգոմ պատրիարքն ինձ ընդունեց պարզ և մեծ արժանապատվությամբ. լավագույն տպավորություններս այնտեղ ստացավ ամբողջ ճանապարհորդությանս ընթացքին»,- ասաց ինձ անցյալ տարի Սիրիայից դարձած մի օտար եկեղեցական և մեծ գիտնական:

Մաղթենք, որ Երուսաղեմի միաբանությունը արժանավոր հաջորդ ընտրելով (6) կարենա պահել իր անունը այն բարձրության վրա, որին հասցրին երջանկահիշատակ վերջին երկու պատրիարքները: Այս կլինի լավագույն պսակը ողբացյալ պատրիարքի թարմ շիրմին:

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

### ՄԻ ԷՋ ԿԱԹՈՂԻԿՈՍՈՒԹՅԱՆ ՄԵՐՁԱՎՈՐ ԱՆՑՅԱԼԻՑ

(էջ 34)

Գրված է 1930-ական թվականների վերջերին Բրյուսելում: Նախատեսված է եղել հրատարակել Ս. Վրացյանի խմբագրությամբ Փարիզում լույս տեսնող «Վեմ» հանդեսում: Սակայն ինչ-ինչ հանգամանքներ խանգարել են հոդվածի հրապարակմանը և այն ձեռագիր վիճակում մնացել է Աղոնցի անձնական քաղոնում (տե՛ս Համազգայինի Բեյրութի գրական պահոց, Պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդ, պահարան I, զզրոց Բ, թղթածրար 1, թթ. 1-17):

Հոդվածը նույնությամբ, միայն որոշ անհրաժեշտ կետադրական միջամտություններով, մեր աշխատասիրությամբ լույս է տեսել «Հայկազյան Հայագիտական հանդես»-ում (Բեյրութ, 1997, հատ. ԺԷ, էջ 263-286): Երկրորդ անգամ լույս է տեսել Ամենայն Հայոց կաթողիկոս Մակար Ա Թեղուտցի կաթողիկոսին նվիրված «Վավերագրեր Հայ եկեղեցու պատմության», ԺԴ-րդ գրքում (Երևան, 2006, էջ 11-25):

Տպագրվում է ըստ արխիվային բնագրի:

1. **Մելքիսեդեկ արքեպ. Մուրադյան** (Գարեգին Գրիգորի Մուրադյանց, 1836-1903) – նշանավոր մանկավարժ, եկեղեցական գործիչ, Զմյուռնիայի հայոց հոգևոր թեմի առաջնորդ (1879-1888, 1898-1903): Մ. Մուրադյանի մասին մանրամասն տե՛ս Ա. Ա. Խուդավերդյանի՝ «Մելքիսեդեկ արքեպիսկոպոս Մուրադյանցը խմբագիր և հրապարակախոս» մենագրությունը (Ստեփանակերտ, 2009):- էջ 34:

2. **Մակար Ա Տեր-Պետրոսյան Թեղուտցի** (1813-1891) - Ամենայն Հայոց կաթողիկոս (1885-1891): Նախապես Վրաստանի (1864-1876), Նոր Նախիջևանի և Բեսարաբիայի (1876-1889) հայոց հոգևոր թեմերի առաջնորդ, կաթողիկոսական տեղապահ (1883-1885): Մակար Ա-ին նվիրված վերջին ուսումնասիրություններից տե՛ս Վ. Գ. Թունյանի՝ «Деятельность католикоса Макара. 1885-1891» մենագրությունը (Երևան, 2011): - էջ 34:

3. Ավելի ճիշտ՝ «Պոլոժենիե» («Положение»): Հայոց եկեղեցու կանոնադրություն, որով այն առաջնորդվում էր Ռուսական կայսրության տարածքում:- Էջ 34:

4. Գրության հեղինակը Մելքիսեդեկ եպ. Մուրադյանն է (Կ. Պոլիս, տպ. Նշան Պերպերյան, 1888, Ե + 91 էջ):- Էջ 35:

5. Երեմիա եպ. Գալուստյան (1840-1897) – Սինոդի անդամ, Ս. Կաթողիկեի փակակալ, կաթողիկոսական տեղապահ:- Էջ 35:

6. Ակնարկում է հանգուցյալ կաթողիկոս Մակար Ա-ին, որը վախճանվել էր 1891 թ. ապրիլի 16-ին:- Էջ 35:

7. Արիստակես եպ. Սեդրակյան (1840-1906) – Վրաստանի, ապա Աստրախանի հայոց հոգևոր թեմերի առաջնորդ: Մակար Ա-ի մահից հետո փորձեց զավթել կաթողիկոսական գահը:- Էջ 35:

8. Հարություն եպ. Վեհապետյան (1823-1910) – Կ. Պոլսի պատրիարքական փոխանորդ, Խարբերդի և Կարնո հայոց հոգևոր թեմերի առաջնորդ: Պատրիարք Կ. Պոլսի (1885-1888) և Երուսաղեմի (1889-1910):- Էջ 35:

9. Խորեն եպ. Աշըգյան (1842-1899) - Արմաշի վանքի վանահայր, Կ. Պոլսի հայոց պատրիարք (1888-1894):- Էջ 35:

10. Մկրտիչ Ա Խրիմյան Վանեցի (1820-1907) - Ամենայն Հայոց կաթողիկոս (1892-1907): Նախապես Վարագա վանքի վանահայր, Տարոնի և Վանի հայոց հոգևոր թեմերի առաջնորդ, Կ. Պոլսի հայոց պատրիարք (1869-1873):- Էջ 35:

11. Նկատի ունի հայ նշանավոր գրող, հրապարակախոս Միքայել Նալբանդյանին (1829-1866):- Էջ 35:

12. Մելքիսեդեկ արքեպ. Մուրադյանի կենսագրության այս և մյուս մանրամասները տե՛ս Ա. Ա. Խուդավերդյանի նշվ. աշխատությունում, էջ 6-17:- Էջ 36:

13. Նկատի ունի 1903 թ. հունիսի 12-ի հայ եկեղեցապատկան գույքը և կալվածքները բռնագրավելու մասին ցարական օրենքը:- Էջ 36:

14. Տե՛ս Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց, աշխատությամբ Մ. Աբեղյան և Ս. Հարությունյան, Տփխիս, 1913, էջ 30:- Էջ 36:

15. Հակոբ Սարգսի Շահան-Ջրպետյան (1772-1837) – հայագետ, մանկավարժ: 1798 թ. Փարիզի Արևելյան կենդանի լեզուների բարձրագույն դպրոցում հիմնադրել է

հայոց լեզվի ամբիոն, եղել դրա առաջին վարիչը (1798-1826), դասավանդել է Թիֆլիսի Ներսիսյան դպրոցում:- Էջ 37:

16. **Սերովբե եպ. Արարատյան, Կարնեցի** (? - 1847) - եկեղեցական գործիչ, մանկավարժ. Լազարյան ճեմարանի առաջին տեսուչ (1815-1822), Աստրախանի հայոց հոգևոր թեմի առաջնորդ: - Էջ 37:

17. Կանոնադրության նախագծի ստեղծմանը մասնակցել են նաև Հայկական մարզի կառավարիչ իշխան Բարսեղ Բեհբութովը և Մոսկվայի համալսարանի եկեղեցական իրավունքի ամբիոնի պրոֆեսոր Նիկոլայ Օչկինը:- Էջ 37:

18. Հայոց եկեղեցու կանոնադրության վերաբերյալ վերջին լավագույն ուսումնասիրությունները պատկանում են Վ. Գ. Թունյանին (տե՛ս «Эчмиадзинский перестол XIX – нач. XX вв.», Ереван, 2001; «Положение Армянской церкви 1836-1875 гг.», Ереван, 2001; «Церковная политика самодержавия в Закавказье I половине XIX века», Ереван, 2005 և այլն):- Էջ 37:

19. Ժամանակի Կ. Պոլսի Հայոց պատրիարքն էր Ստեփանոս Աղավնի Զաքարյանը (1831-1839):- Էջ 37:

20. **Սինոդ** (հունարեն «Հավաքույթ» բառից) - Ամենայն Հայոց կաթողիկոսին կից հոգևոր ժողով (1837-1917):- Էջ 37:

21. **Սիմոն Լազարյան** (1737-1809) – պետական գաղտնի խորհրդական, իշխան:- Էջ 37:

22. «Դավիթ-Դանիելյան աղմուկները» - նկատի ունի XIX դարի սկզբներին Ամենայն Հայոց կաթողիկոսական գահի համար Հայ եկեղեցու ներսում ծավալված երկպառակտչական պայքարը, որի գլխավոր դերակատարներն էին Դավիթ եպ. Ղորղանյանը (ապազա կաթողիկոս Դավիթ Ե՝ 1801-1807) և Կ. Պոլսի Հայոց պատրիարք Դանիել եպ. Սուրմառեցին (ապազա կաթողիկոս Դանիել Ա՝ 1801-1802, 1807-1808):- Էջ 37:

23. **Եփրեմ Ա Ձորագեղցի Տեր-Հովհաննիսյան** (1748-1835) - Ամենայն Հայոց կաթողիկոս (1809-1820): Նախապես Ռուսաստանի հայոց հոգևոր թեմի առաջնորդ (1801-1809): - Էջ 37:

24. **Ներսես Ե Շահազիզյան Աշտարակեցի** (1770-1857) - Ամենայն Հայոց կաթողիկոս (1843-1857): Նախապես Վրաստանի (1814-1828), Բեսարաբիայի և Նոր Նախիջևանի (1828-1842) հայոց հոգևոր թեմերի առաջնորդ:- Էջ 38:

25. **Մատթեոս Ա Չուխաճյան Կոստանդնուպոլսեցի** (1802-1865) - Ամենայն Հայոց կաթողիկոս (1858-1865): Նախապես Բուրսայի և Զմյուռնիայի հայոց հոգևոր թեմերի առաջնորդ, Կ. Պոլսի Հայոց պատրիարք (1844-1848):- Էջ 38:

26. Այդ ժամանակ Կ. Պոլսի Հայոց պատրիարքն էր Հակոբոս եպ. Սերոբյանը (1848-1856):- Էջ 38:

27. **Մատթեոս եպ. Իզմիրլյան** (1845-1910) – հետագայում Ամենայն Հայոց կաթողիկոս Մատթեոս Բ Իզմիրլյան Կոստանդնուպոլսեցի (1909-1910):- Էջ 38:

28. **Գևորգ եպ. Քերեստեճյան** (1813-1882) – հետագայում Ամենայն Հայոց կաթողիկոս Գևորգ Դ Կոստանդնուպոլսեցի (1866-1882):- Էջ 38:

29. **Ներսես եպ. Վարժապետյան** (1837-1884) – Կ. Պոլսի Հայոց պատրիարք (1874-1884): 1884 թ. ապրիլի 2-ին Թուրքահայոց Ընդհանուր և մայիսի 9-ին Էջմիածնի Համազգային ընտրական ժողովներում ընտրվել է կաթողիկոսության առաջին թեկնածու, սակայն առողջության վատթարացման պատճառով հրաժարվել է կաթողիկոսական գահից:- Էջ 38:

30. Ս. Էջմիածնի Համազգային ընտրական ժողովում (1885 թ. ապրիլի 21) քվեները բաշխվել են հետևյալ կերպ՝ Մելքիսեդեկ եպ.– 30, Մակար եպ.- 16, Մկրտիչ եպ. Խրիմյան – 13 և Խորեն եպ. Աշըգյան – 3:- Էջ 38:

31. Մ. Ս. Վորոնցով (1782-1856) – Պետական խորհրդի անդամ, Կովկասի փոխարքա (1844-1854):- Էջ 39:

32. **Ա. Ի. Բարյատինսկի** (1815-1879) – Պետական խորհրդի անդամ, Կովկասի փոխարքա (1856-1862):- Էջ 39:

33. Նկատի ունի Պետական խորհրդի նախագահ իշխան Ա. Ֆ. Օրլովին, որը միաժամանակ նաև նախարարների դահլիճի նախագահն էր (1856-1861):- Էջ 39:

34. Ակնարկում է Մատթեոս Ա կաթողիկոսի՝ «Խորհրդածութիւն շնորհաց և նշանաց և խորհրդոց քրիստոնէական Սուրբ Եկեղեցւոյ» (Զմյուռնիա, 1842), «Հանդիսարան Ուղղափառութեան Եկեղեցւոյն Հայաստանեայց» (Կ. Պոլիս, 1854), «Բարի Մարդ և Բարի քրիստոնեայ» (Կ. Պոլիս, 1856, նաև՝ Թիֆլիս, 1860), «Հերքումն գինդիր վայրաբանութեանց ոմանց մերազնեայ տկարամիտ անձանց» (Մոսկվա, 1861), «Հաստատութիւն ստուգութեան Դաշանց թղթոյն» (Փարիզ, 1862) և այլ ուսումնասիրություններ:- Էջ 40:

35. **Գաբրիել արքեպ. Այվազովսկի** (1812-1880) - եկեղեցական գործիչ, մանկավարժ, խմբագիր, պատմաբան: Նոր Նախիջևանի և Բեսարաբիայի, Վրաստանի հայոց հոգևոր թեմերի առաջնորդ:- Էջ 40:

36. Վրիպակ է՝ պետք է լինի Թեոդոսիա, որտեղ 1858-1871 թթ. գործել է Գաբրիել Այվազովսկու հիմնադրած Խալիբյան վարժարանը:- Էջ 40:

37. Հայ մտավոր, հասարակական-քաղաքական, եկեղեցական կյանքում Գևորգյան ճեմարանի ունեցած անուրանալի ավանդի մասին մտավոր գաղափար կարելի է կազմել «Նշանավոր ճեմարանականներ» ժողովածուի զույգ հատորներից (պրակ 1-2, Ս. Էջմիածին, 2005, 2009):- Էջ 40:

38. Նկատի ունի Առաջին համաշխարհային պատերազմը:- Էջ 41:

39. **Ս. Ա. Մանդինյան** (1844-1915) - նշանավոր մանկավարժ, հոգեբան, հասարակական գործիչ: Հեղինակ է բազմաթիվ ուսումնասիրությունների, դասագրքերի ու ձեռնարկների: 1880-1900 թվականներին (որոշ ընդհատումներով) մանկավարժություն և հոգեբանություն է դասավանդել Գևորգյան ճեմարանում:- Էջ 42:

40. **Կ. Հ. Կոստանյան** (1853-1920) – նշանավոր հայագետ, Գևորգյան ճեմարանի դասախոս (1878-1891), ապա՝ տեսուչ (1894-1899, 1902-1905):- Էջ 42:

41. **Ա. Գ. Նահապետյան** (Նահապետ եպ. Նահապետյան, 1848-1906) – մանկավարժ, եկեղեցական գործիչ, Ներսիսյան դպրոցի տեսուչ (1881-1884, 1886-1891):- Էջ 42:

42. **Ստ. Հ. Պալասանյան** (1837-1889) – նշանավոր պատմաբան, մանկավարժ: Դասավանդել է Թիֆլիսի Ներսիսյան և Ռեալական դպրոցներում, Գևորգյան ճեմարանում:- Էջ 42:

43. **Պ. Ս. Սիմոնյանց** (1830-1911) - գրական-հասարակական գործիչ, հրապարակախոս, «Մեղու Հայաստանի» շաբաթաթերթի խմբագիր:- Էջ 45:

44. **Գրիգոր եպ. Աղափիրյանց** (1827-1898) - եկեղեցական գործիչ, մանկավարժ: Նախապես Ալեքսանդրապոլի, Բեսարաբիայի և Նոր Նախիջևանի թեմական առաջնորդի փոխանորդ: Գևորգյան ճեմարանի տեսուչ (1884-1885):- Էջ 45:

45. **Մեսրոպ եպ. Սմբատյան** (1833-1911) - եկեղեցական գործիչ, հայագետ, Տաթևի և Երնջակի վանքերի վանահայր, Արարատյան թեմի առաջնորդական փոխանորդ, Սինոդի անդամ, Գևորգյան ճեմարանի տեսուչ (1886-1887):- Էջ 45:

46. Սարգիս եպ. Գասպարյան Ալաբանցի (? - 1898) - եկեղեցական գործիչ, մանկավարժ, Գևորգյան ճեմարանի տեսուչ (1891-1892, 1893-1894), Սինոդի անդամ:- Էջ 45:

47. Նիկողայոս Խոսրովյան – մանկավարժ, լրագրող: Թիֆլիսի Գայանյան օրիորդաց դպրոցի և Գևորգյան ճեմարանի տեսուչ (1885-1886):- Էջ 45:

48. Արշակ Նահապետյանը Գևորգյան ճեմարանի տեսչությունը վարել է 1881-1884 և 1886-1891 թվականներին:- Էջ 45:

49. Կ. Հ. Եզյան (1835-1905) - ականավոր հայագետ, ազգային-եկեղեցական գործիչ, պետական իսկական զաղտնի խորհրդական:- Էջ 45:

50. Փ. Հ. Վարդանյան (1842-1916) - գրական գործիչ, մանկավարժ, թարգմանիչ, Գևորգյան ճեմարանի ուսուցիչ:- Էջ 45:

51. Սանասարյան վարժարանը հիմնադրվել է 1881 թ. ազգային բարերար Մկրտիչ Սանասարյանի նվիրատվությամբ և Կարապետ Եզյանի ջանքերով:- Էջ 46:

52. Բարոն Ա. Պ. ղը Նիկոլային և Կ. Պ. Յանովսկին եղել են Կովկասյան գլխավոր վարչության խորհրդականներ, Կովկասի ուսումնական շրջանի հոգաբարձուներ: Կ. Յանովսկին անմիջականորեն է գլխավորել հայկական դպրոցները փակելու գործողությունները:- Էջ 46:

53. Հ. Մ. Հովհաննիսյան (1864-1929) - ականավոր բանաստեղծ, թարգմանիչ, մանկավարժ: Գևորգյան ճեմարանում դասավանդել է ռուս գրականություն և ռուսերեն, հունարեն, ընդհանուր գրականություն և այլն:- Էջ 46:

54. Ե. Մ. Մաղաքյան (1865-1917) - գրականագետ, մանկավարժ, լրագրող, թարգմանիչ: Պաշտոնավարել է Գևորգյան ճեմարանում (1888-1894), Շուշիի թեմական դպրոցի տեսուչ:- Էջ 46:

55. Ստ. Դ. Լիսիցյան (1865-1947) - ականավոր ազգագրագետ, բանասեր, մանկավարժ, թարգմանիչ: Դասավանդել է Գևորգյան ճեմարանում (1889-1894):- Էջ 46:

56. Հովհ. Սաղաթելյան – պատմաբան, մանկավարժ, Գևորգյան ճեմարանի տեսուչի օգնական (1891-1893), երկրորդ և երրորդ Պետական դումաների պատգամավոր:- Էջ 46:

57. Լ. Խոջայան - մանկավարժ, դասավանդել է Գևորգյան ճեմարանում (1889-1891), Երևանի թեմական և այլ դպրոցներում:- Էջ 46:

58. **Բ. Գասպարյան** – մանկավարժ, Գևորգյան ճեմարանի երկարամյա (1889-1907) ուսուցիչ:- Էջ 46:

59. **Ն. Քարամյան** - պատմաբան, բանասեր, մանկավարժ, «Արարատ» ամսագրի խմբագիր (1894-1896): Երկար տարիներ Գևորգյան ճեմարանում դասավանդել է ընդհանուր պատմություն:- Էջ 46:

60. **Մ. Պալյան** (1834-1907) – հայագետ, մանկավարժ, գրող: Դասավանդել է Խալիբյան, Ներսիսյան և Երևանի թեմական դպրոցներում, Գևորգյան ճեմարանում:- Էջ 46:

61. **Մաղաքիա արքեպ. Օրմանյան** (1841-1918) – մանկավարժ, պատմաբան, աստվածաբան, ազգային-եկեղեցական գործիչ: Արմաշի վանքի վանահայր, Բարձր Հայքի հայոց հոգևոր թեմի առաջնորդ, Կ. Պոլսի Հայոց պատրիարք (1896-1908), Գևորգյան ճեմարանի քարոզիչ և աստվածաբանական առարկաների դասախոս:- Էջ 46:

62. **Կարապետ եպ. Տեր-Մկրտչյան** (1866-1915) - եկեղեցական գործիչ, պատմաբան, մանկավարժ: Ատրպատականի և Շամախու հայոց թեմերի հոգևոր առաջնորդ, Գևորգյան ճեմարանի տեսուչ, «Արարատ» ամսագրի խմբագիր (1902-1906):- Էջ 46:

63. **Գարեգին արքեպ. Հովսեփյան** (1867-1952) - ականավոր հայագետ, մանկավարժ, մշակութային, եկեղեցական գործիչ: Ղրիմի և Նախիջևանի, Հյուսիսային Ամերիկայի հայոց հոգևոր թեմերի առաջնորդ: Եղել է Գևորգյան ճեմարանի տեսուչ (1905-1906, 1915-1917), «Արարատ» ամսագրի խմբագիր (1907-1908, 1918-1919):- Էջ 46:

64. **Տիգրան Տեր-Հովհաննիսյան** (Տիրայր արքեպ. Մելիք-Մուշկամբարյան, 1867-1956) - եկեղեցական նշանավոր գործիչ, մանկավարժ, հայագետ: Մայր Աթոռի դիվանապետ, Բեսարաբիայի թեմի առաջնորդական փոխանորդ, Հյուսիսային Ամերիկայի հայոց հոգևոր թեմի առաջնորդ:- Էջ 46:

65. **Գևորգ արքեպ. Չորեքչյան** (1868-1954) - եկեղեցական նշանավոր գործիչ: Նոր Նախիջևանի առաջնորդական փոխանորդ, Վրացահայոց հոգևոր թեմի առաջնորդ, կաթողիկոսական տեղապահ, Ամենայն Հայոց կաթողիկոս՝ Գևորգ Զ Չորեքչյան (1945-1954):- Էջ 46:

66. **Սողոմոն Գևորգյան** (Կոմիտաս վարդապետ, 1869-1935) – հանճարեղ երգահան, երաժշտագետ, մանկավարժ: Երկար տարիներ Գևորգյան ճեմարանում դասավանդել է երաժշտական առարկաներ:- Էջ 46:

67. **Լևոնդես Չոհրաբյան** (Հուսիկ արքեպ. Զոհրաբյան, 1871-1942) - եկեղեցական գործիչ, Սինոդի անդամ, Մայր Աթոռի դիվանապետ, Ռումինիայի հայոց հոգևոր թեմի առաջնորդ:- Էջ 46:

68. **Ղևոնդ Գյանջեցյան** (Եզնիկ վարդապետ, 1869 - ?) - եկեղեցական գործիչ, հայագետ, խմբագիր:- Էջ 46:

69. **Մուշեղ սարկավագ Տեր-Գաբրիելյան** (1869-1901) - բանաստեղծ, «Արարատ» ամսագրի թղթակից:- Էջ 46:

## ՀԱՅՈՑ ԵԿԵՂԵՑՈՒ ՀԱԶԱՐՎԵՑՀԱՐՅՈՒՐԱՄՅԱԿԻ ՆԱԽՕՐԵԻՆ

(էջ 47)

Գրված է 1902 թ. վերջերին Ս. Պետերբուրգում: Լույս է տեսել իր իսկ խմբագրած «Բանբեր գրականության և արվեստի» վեցամսյա հանդեսում (գիրք Ա, Ս. Պետերբուրգ, 1903, էջ 214-223):

Արտատպվում է այս հրատարակությունից:

1. **Պերիկլես** (Ք. ա. 490-429) – Հին Հունաստանի պետական, քաղաքական և ռազմական նշանավոր գործիչ:- Էջ 48:

2. **Աֆրոդիտե** - հունական դիցաբանությունում սիրո և գեղեցկության աստվածուհի:- Էջ 48:

3. **Աստարտե** - Փյունիկիայում, Բաբելոնում և Ասորեստանում պտղաբերության, սիրո և ամուսնության աստվածուհի: - Էջ 48:

4. **Սեոեռլինգ Սորիս** (1862-1949) - բելգիացի ականավոր գրող, դրամատուրգ, Նոբելյան մրցանակի դափնեկիր:- Էջ 48:

5. **Շոպենհաուեր Արթուր** (1788-1860) - գերմանացի հանրահռչակ փիլիսոփա:- Էջ 50:

6. **Bellum ad internecionem** (լատ.) – պատերազմ՝ մինչև ոչնչացում:- Էջ 50:

7. **Վլադիմիր Սերգեևիչ Սոլովյով** (1853-1900) – ռուս նշանավոր փիլիսոփա, հրապարակախոս և բանաստեղծ:- Էջ 51:

8. **«Հավատա, որ ապրես»** - Ավետարաններում՝ «Հավատա, որ փրկվես» (տե՛ս Մարկ., Ե, 34; Ժ, 52; ԺԶ, 16: Հմմտ. Ղուկ., Ը, 48; ԺԵ, 19; ԺԸ, 42):- Էջ 53:

9. **«Սիրեսցես զԱստուած քո»** - տե՛ս Մատթ., ԻԲ, 37:- Էջ 53:

10. **Sub specie** (լատ.) – ինչ-որ տեսակետից:- Էջ 54:

11. **Sensu simbolico** (լատ.) – որպես խորհրդանիշ:- Էջ 55:

## ԶԵԿՈՒՑՈՒՄ ԿԱՐԴԱՑՎԱԾ ԱՅԼԱԶԳԻՆԵՐԻ ՀԱՄԱԳՈՒՄԱՐՈՒՄ

(նոյեմբեր, 1905 թ.)

(էջ 57)

Գրված է 1905 թ. նոյեմբերին Ս. Պետերբուրգում: Զեկուցման ռուսերեն բնագիրը պահվում է հասարակական, մշակութային գործիչ Գևորգ Բալաբեկի Մելիք-Կարագյոզյանի (1873-1940) անձնական բողոնում (տե՛ս ՀՀ Ազգային արխիվ, ֆոնդ 502, ց. 1, գ. 103, թթ. 1-6): Զեկուցման բնագիրը հրատարակել են Ս. Միրզոյանն ու Ա. Ղազիյանը (տե՛ս «Բանբեր Հայաստանի արխիվների», 2004, № 1, էջ 34-37):

Ստորև տրվում է Ն. Աղոնցի զեկուցման հայերեն թարգմանությունը, որն իրականացրել է Գ. Ա. Մաղոյանը:

1. **Մոնղոլները խլամ են ընդունել 1299 թվականին**:- Էջ 57:

2. **Խոսքը Ամենայն Հայոց կաթողիկոս Ներսես Ե Աշտարակեցի Շահ-Ազիզյանի (1843-1857) մասին է**:- Էջ 58:

3. **Ռուսաստանի կայսր Ալեքսանդր II-ը սպանվել է 1881 թ. մարտի 1-ին**:- Էջ 59:

4. **Ա. Բ. Լոբանով-Ռոստովսկի** (1824-1896) - ռուսական պետական գործիչ, դիվանագետ, Ռուսաստանի արտաքին գործոց նախարար (1895-1896), այդի է ընկել իր շեշտված թուրքամետ քաղաքականությամբ:- Էջ 60:

5. **Casus belli** (լատ.) – կռվապատճառ, պատերազմի առիթ:- Էջ 60:

6. Գ. Ս. Գոլիցին (1838-1907) - ռուսական պետական գործիչ, Կովկասի կառավարչապետ (1896-1904): Հայտնի է իր հայահալած քաղաքականությամբ:- Էջ 60:

7. Նկատի ունի Գր. Գոլիցինի առաջարկով ցարական կառավարության 1903 թ. հունիսի 12-ի օրենքը, որի համաձայն Հայոց եկեղեցու և հոգևոր հաստատություններին ամբողջ անշարժ գույքը, կապիտալներն ու կալվածքները անցնում էին պետության տնօրինությանը: Օրենքը չեղյալ է հայտարարվել 1905 թ. օգոստոսի 1-ի ցարական հրամանագրով:- Էջ 60:

8. Հայ-թաթարական (ադրբեջանական) ընդհարումները սկսվել են 1905 թ. փետրվարի 6-9-ին Բաքվում և այնուհետև տարածվել ամբողջ Անդրկովկասում ու ավարտվել 1906 թ. օգոստոսի 22-ին՝ Զանգեզուրում:- Էջ 61:

9. Պետք է լինի ապրիլին:- Էջ 61:

10. Խոսքը 1905 թ. ապրիլի 3-15-ը Թիֆլիսում կայացած Անդրկովկասի հայաբնակ 24 կենտրոնների ներկայացուցիչների համագումարի մասին է: Այստեղ բարձրացվել են հատկապես Հայոց եկեղեցու ինքնավարության, եկեղեցականծխական դպրոցների, մշակութային-կրթական հիմնարկությունների վերաբացման և ազգային հետաքրքրություններ ներկայացնող այլ պահանջներ (տե՛ս «Հայ ժողովրդի պատմություն», հատ. VI, ՀԳԱ հրատ., Երևան, 1981, էջ 372-373, հմմտ. Հր. Ռ. Սիմոնյան, Ազատագրական պայքարի ուղիներում, գիրք I, Երևան 2003, էջ 178-180):- Էջ 61:

## ԿԱԹՈՂԻԿՈՍԱԿԱՆ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՍԱՄՈՒԼԸ

(էջ 62)

**Գրված է 1911 թ. նոյեմբերին Ս. Պետերբուրգում: Լույս է տեսել Գրական և քաղաքական «Մշակ» լրագրում (տե՛ս «Մշակ», Թիֆլիս, 1911, 24 նոյեմբերի, № 259, էջ 3-4; 25 նոյեմբերի № 260, էջ 1-3): Տե՛ս նաև սույն հոդվածի ընդդիմախոսությունը՝ Մ., Ինքնահավան ազիտությունը (Մեր մտավորականության բարքերից), «Հորիզոն», 1912, 19 հունվարի, № 11, էջ 2-3; 20 հունվարի, № 12, էջ 2; 21 հունվարի, № 13, էջ 2-3:**

**Արտատպվում է «Մշակ»-ի հրատարակությունից:**

1. Խոսքն Ամենայն Հայոց կաթողիկոս Մատթեոս Բ Իզմիրլյանի անսպասելի մահվանից հետո (11 դեկտեմբերի 1910) նոր գահակալի թեկնածության շուրջ

հասարակական շրջաններում և մամուլում ծայր առած բուռն վիճաբանությունների մասին է:- Էջ 62:

2. Խնդրի վերաբերյալ այլ մանրամասնություններ տե՛ս Գարեգին վարդապետ Հովսեփյան, Մաղաքիա արքեպիսկոպոս Օրմանյան և կաթողիկոսական ընտրություն, Թիֆլիս, 1911: Կաթողիկոսական ընտրություններին Մաղաքիա արքեպ. Օրմանյանի հնարավոր մասնակցության և այդ կապակցությամբ հասարակական շրջաններում և մամուլում տեղ գտած արձագանքների մասին տե՛ս այդ ժամանակաշրջանի Օրմանյանի նամակագրությունում [«Վավերագրեր Հայ եկեղեցու պատմության», Գիրք ԺԵ. Մաղաքիա արքեպ. Օրմանյան՝ Կոստանդնուպոլսի պատրիարք (1896-1908), կազմող՝ Ս. Բեհրույան, Երևան, 2007, էջ 538-626 և հետո]:- Էջ 63:

3. Խոսքը Եղիշե արքեպ. Դուրյանի մասին է:- Էջ 64:

4. Խոսքը Մեսրոպ արքեպ. Տեր-Մովսիսյանի մասին է:- Էջ 64:

5. Խոսքը Գևորգ արքեպ. Սուրենյանցի մասին է:- Էջ 64:

6. Խոսքը Խորեն արքեպ. Մուրադբեկյանի մասին է:- Էջ 64:

7. Ակնարկում է Մաղաքիա արքեպ. Օրմանյանին:- Էջ 64:

8. Ակնարկում է Կարապետ եպ. Տեր-Մկրտչյանին:- Էջ 64:

9. Նշվածներից Մեսրոպ եպ. Տեր-Մովսիսյանը և Կարապետ եպ. Տեր-Մկրտչյանը Գևորգյան ճեմարանում ուսանելու տարիներին եղել են Ն. Աղոնցի դասընկերները:- Էջ 64:

10. Այստեղ և հետագայում «քաղաքացիություն» բառի ներքո Ն. Ադոնցը նկատի ունի քաղքենիությունը («Քաղքենիներ – մանր առևտրականների, արհեստավորների, ցածր պաշտոնյաների քաղաքային դասին պատկանող անձ», տե՛ս Ա. Մ. Սուքիասյան, Հայոց լեզվի հոմանիշների բացատրական բառարան, Երևան, 2003, էջ 1189):- Էջ 65:

11. Խոսքը Մայր Աթոռ Ս. Էջմիածնի վանական կառավարության անդամ, Ատրպատականի հայոց հոգևոր թեմի առաջնորդ (1902-1904), «Արարատ» ամսագրի խմբագիր Եղիշե ծ. վարդապետ Մուրադյանի մասին է:- Էջ 67:

12. Նկատի ունի Երվանդ վարդապետ Տեր-Մինասյանին (1879-1974) - Գևորգյան ճեմարանի դասախոս, Մայր Աթոռի տպարանի տեսուչ, մանկավարժ, հայագետ: 1910 թվականին հրաժարվել է հոգևոր կոչումից:- Էջ 67:

13. Խոսքը հավանաբար Ղզլարի, ապա Հին Նախիջևանի փոխանորդ Թովմա վարդապետի մասին է:- Էջ 67:

14. Խոսքը Մայր Աթոռի տպարանի տեսուչ, ուսումնական հանձնաժողովի անդամ Մամբրե վարդապետ Մելիք-Ադամյանի մասին է: Կարգաբող է արվել Մատթեոս Բ Իզմիրլյանի 1909 թ. սեպտեմբերի 24-ի կոնդակով: - Էջ 67:

15. Խոսքը Եզնիկ վարդապետ Գյանջեցյանի (Ղևոնդ Գյանջեցյան) մասին է, տե՛ս նաև էջ 385, ծան. 68:- Էջ 67:

16. Խոսքը Մեսրոպ եպ. Տեր-Մովսիսյանի (1865-1939) մասին է:- Էջ 67:

17. Խոսքը Կարապետ եպ. Տեր-Մկրտչյանի (1866-1915) մասին է:- Էջ 67:

18. Հ. Ա. Առաքելյան (1855-1918) – մանկավարժ, խմբագիր, հրապարակախոս, հասարակական-քաղաքական գործիչ, «Մշակ»-ի խմբագիր:- Էջ 67:

19. Մատթեոս եպ. Մատթեոսյանց (1863-1936) - Ալեքսանդրապոլի փոխանորդ, Սինոդի և Ուսումնական խորհրդի անդամ, «Արարատ» ամսագրի խմբագիր, Հայոց ազգային-եկեղեցական կանոնադրության հեղինակ:- Էջ 67:

20. Պապունցի – Ով լինելը չկարողացանք պարզել:- Էջ 67:

21. Ա. Ջամալյան (Իսահակյան, 1882-1940) – խմբագիր, գրող, հասարակական-քաղաքական նշանավոր գործիչ:- Էջ 67:

22. Խոսքը Ամենայն Հայոց կաթողիկոս Մկրտիչ Ա Խրիմյանի կարգադրությամբ 1906 թ. օգոստոսի 17-ին Ս. Էջմիածնում հրավիրված Ռուսահայոց առաջին կրոնական ժողովի մասին է:- Էջ 67:

23. Նկատի ունի Սան-Ստեֆանոյի և Բեռլինի պայմանագրերում Հայկական հարցի արծարծման իրողությունները:- Էջ 69:

24. **Mutatis mutandis** (լատ.) – Փոխվելիքը փոխելով:- Էջ 69:

25. Տե՛ս Ղևոնդ, Պատմութիւն, Ս. Պետերբուրգ, 1887, էջ 122:- Էջ 69:

26. Նույնը, էջ 142:- Էջ 69:

27. Հին հայոց կյանքում այս երկու հակոտնյա ուղղությունների մանրամասն քննությանը Ն. Աղոնցն անդրադարձել է նաև իր «Քաղաքական հոսանքները հին Հայաստանում» ուշագրավ հոդվածում (տե՛ս Ն. Ադոնց, Երկեր, հատ. Ա, Պատմագիտական ուսումնասիրություններ, Երևան, 2006, էջ 218-245):- Էջ 70:

28. Ակնարկում է Հայկական բարենորոգումների 1896 թ. մայիսյան նախագիծը: - Էջ 70:

29. Մաղաքիա արքեպ. Օրմանյանը Կ. Պոլսի Հայոց պատրիարք է ընտրվել 1896 թ. նոյեմբերի 6-ին:- Էջ 70:

30. Ակնարկում է Կ. Պոլսի Հայոց պատրիարք Ներսես եպ. Վարժապետյանին:- Էջ 71:

31. Ակնարկը վերաբերում է Լեոյի գրական գործունեության 25-ամյակի առթիվ կազմակերպված հոբելյանական միջոցառումներին, որոնք անց են կացվել 1908 թվականին:- Էջ 74:

32. Մաղաքիա արքեպ. Օրմանյանին ներկայացված մեղադրանքների և դրանց հերքման մասին մանրամասն տե՛ս Ս. Չերքեզյան, Օրմանյանը գրպարտության ցանցերում, Թիֆլիս, 1911, տե՛ս նաև Սրբեց, Օրմանյան հանրային խղճին և դատաստանին առջև, Կ. Պոլիս, 1913:- Էջ 75:

## ԿԵՂԾԸ ԲԱՐՔԵՐԻ ԵՎ ՄՏՔԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

(էջ 78)

Գրված է 1912 թ. մարտ-ապրիլ ամիսներին Ս. Պետերբուրգում: Լույս է տեսել «Մշակ» լրագրում (1912, 6 ապրիլի, № 71, էջ 2-3; 7 ապրիլի, № 72, էջ 2-3): Տե՛ս նաև սույն հոդվածի ընդդիմախոսությունը՝ Լեո, Պատասխան պարոն Ն. Ադոնցին, «Հորիզոն», 1912, 18 ապրիլի, № 79, էջ 2-3; 19 ապրիլի, № 80, էջ 2; 20 ապրիլի, № 81, էջ 2: Տե՛ս նաև Լեո, Դարձյալ պարոն Ադոնց, «Հորիզոն», 1912, 29 հունիսի, № 138, էջ 2-3; 30 հունիսի, № 139, էջ 2-3; 4 հուլիսի, № 141, էջ 2-3; 6 հուլիսի, № 143, էջ 2-3:

Արտատպվում է «Մշակ»-ի հրատարակությունից:

1. **«Հորիզոն»** - հասարակական, գրական, տնտեսական և քաղաքական օրաթերթ (Թիֆլիս, 1909-1918):- Էջ 78:

2. Նկատի ունի Լեոյին, որն ընդդեմ Արոնցի «Հորիզոն»-ում հանդես է եկել հատուկ հոդվածով («Հորիզոն», 1912, 18-20 ապրիլի, № 79, 80, 81):- Էջ 78 :

3. Դժվար է հստակեցնել, թե ով է թաքնված «Մ» ծածկանվան ներքո: Հնարավոր եղավ պարզել, որ 1910-ական թվականներին այդ ծածկանվան ներքո են «Հորիզոն»-ին աշխատակցել հրապարակախոս, պատմաբան, խմբագիր Միքայել Վարանդյանը (1870-1934), գրող, թարգմանիչ, մանկավարժ Արշակ Մեհրաբյանը (1875-1957) և ուրիշներ: Հավանական ենք համարում Մ. Վարանդյանի հեղինակությունը:- Էջ 79:

4. **Պրոմեթևս** – Ըստ հունական դիցաբանության, Պրոմեթևսը Հեփեստոսի հնոցից հափշտակեց կրակը և հանձնեց մարդկանց:- Էջ 80:

5. Ореол (ռուս.) – լուսապսակ:- Էջ 80:

6. Խոսքը Կ. Պոլսի Հայոց պատրիարքական տեղապահ Բարթողիմեոս եպ. Չամիչյանի մասին է:- Էջ 80:

7. Խոսքը Կ. Պոլսի Հայոց պատրիարք (1888-1894) Խորեն եպ. Աշըգյանի մասին է:- Էջ 80:

8. **Խիկար Իմաստուն** (Ք. ա. V դար) - Ասորեստանի Սենեքերիմ թագավորի ատենադպիրը:- Էջ 84:

9. **Cuique suum** (լատ.) - Ամեն մեկինը՝ իրենը:- Էջ 85:

10. **Ռոտշիլդներ** - դրամատերերի նշանավոր ընտանիք Գերմանիայում և Ֆրանսիայում:- Էջ 86:

11. **Սպենսեր Հերբերտ** (1820-1903) - անգլիացի փիլիսոփա, սոցիոլոգ: - Էջ 86:

12. **Contradiction in adiecto** (լատ.) – հակասություն սահմանման մեջ:- Էջ 87:

13. **«Հյուսիսափայլ»** - ազգային լուսավորության և դաստիարակության ամսագիր (Մոսկվա, 1858-1864):- Էջ 88:

14. Խոսքը «Կռունկ Հայոց աշխարհին» հանդեսի մասին է (Թիֆլիս, 1860-1863):- Էջ 88:

15. Խոսքը Ամենայն Հայոց կաթողիկոս Սիմեոն Ա Երևանցու (1763-1780) մասին է:- Էջ 89:

16. Խոսքը Ամենայն Հայոց կաթողիկոս ընտրված, սակայն չօծված Հովսեփ արքեպ. Արղության-Երկայնաբազուկի (1743-1801) մասին է:- էջ 89:

17. Խոսքը Ամենայն Հայոց կաթողիկոս Ներսես Ե Աշտարակեցու (1843-1857) մասին է:- էջ 89:

18. Խոսքը նշանավոր հասարակական-քաղաքական գործիչ, խմբագիր, գրող Ա. Հ. Քալանթարի (1855-1913) մասին է:- էջ 90:

19. Խոսքը նշանավոր հասարակական գործիչ, հրապարակախոս, խմբագիր Սպանդար Սպանդարյանի (1849-1922) մասին է:- էջ 90:

20. Հավանաբար խոսքը ազգային, հասարակական գործիչ Արշակ Թաղևոսյանի մասին է:- էջ 90:

21. Խոսքը Բագրատ վարդապետ (ապա՝ եպիսկոպոս) Վարդազարյանի (1869-1938) մասին է:- էջ 90:

22. Խոսքը Սեսրոպ ավագ քահանա Մեյանի (1859-1941) մասին է:- էջ 90:

23. Նկատի ունի Արևմտահայոց ազգային սահմանադրության համաձայն ստեղծված օրենսդիր Ազգային ընդհանուր ժողովը:- էջ 91:

24. Անհրաժեշտ համարեցինք ծանոթագրությունների սույն բաժնում ընթերցողի ուշադրությանը ներկայացնել նաև Լեոյի՝ «Պատասխան պարոն Ն. Ադոնցին» և «Դարձյալ պարոն Ադոնց» գրվածքները՝ տպագրված «Հորիզոն»-ի 1912 թ. №№ 79, 80, 81, 138, 139, 141 և 143-րդ համարներում:- էջ 91:

## ՊԱՏԱՍԽԱՆ Պ<ԱՐՈՆ> ԱԴՈՆՑԻՆ

### I

Վերջնականապես ջախջախված այն խավար հոսանքը, որ իրան մկրտել է նորին եղանություն Մաղաքիա արք. Օրմանյանի անունով, դեռ չէ դադարեցրել իր ջղաձգությունները: Իր գարշելի կղքերով ամբողջ մեր իրականությունը մինչև պռունկները լցրած այդ պրոպագանդը ինքն իրան հավատարիմ է մնում, իհարկե, և անդրգերեզմանական զալարումների մեջ:

Ապացույցն այսօր մեր առաջն է, մի ավելորդ ապացույց ևս: Դա օրմանյան]ականության գաղափարախոսներից մեկն է, պ. Ն. Աղոնցը: Երկու խոսքով պատմեմ, թե ինչ է պատահել այդ պարոնին:

Դեռ կաթողիկոսական ընտրությունից առաջ պ. Աղոնցը մի ջերմ ներբողեան էր տպել, որի մեջ, ինչ կասկած, ամեն տեսակի հոգեշահ խորհրդածություններ է առաջադրել՝ նորին երանության կաթողիկոսացումը համաքաղաքային անհրաժեշտություն դարձնելու համար գոյություն ունեցող բոլոր տեսակետներից, թե՛ քաղաքական, թե՛ բարոյագիտական-կրոնական, թե՛ գրական-եկեղեցական, թե՛ մանավանդ սոցիալական:

Այս վերջին տեսակետի դեմ, այսինքն՝ պ. Աղոնցի սոցիոլոգիական ըմբռնումների դեմ «Հորիզոն»-ի մեջ դուրս եկավ պ. Մ.-ն, որ և պ. Աղոնցին «տգետ» գտավ այդ շրջանի մեջ: Պ<արոն> Մ.-ի հոդվածը տպվել է հունվարին, իսկ պ. Աղոնցը նախանցյալ շաբթին իր գիտնականությունը հաստատելու համար «Մշակ»-ի մեջ (№№ 71 և 72) տպեց «Կեղծիքը բարքերի և մտքերի աշխարհում» շնդալից վերնագրով մի հոդված, որ ստիպում է ինձ իմ խոսքն ասել:

Ուշ եմ պատասխանում, որովհետև չլինելով «Մշակ»-ի ընթերցող, ուշ իմացա իմ մի բարեկամից պ. Աղոնցի հանդես գալը: Այս հանգամանքը օգտակար էլ է պ. Աղոնցի համար: Մեր ջոջերից մեկը, պ. Սեդրակ Մանդինյանը, շտապեց նույն «Մշակ»-ի մեջ շատ հավանություններ անել պ. Աղոնցին, գտավ նրա ոճը «գեղեցիկ ակադեմիական» և ջերմ փափագ հայտնեց, որ նա, այսինքն՝ պ. Աղոնցը, հաճախ երևա՝ հայի միտքը իր պատմական տեսություններով լուսավորելու համար:

Այսպես է իրերի դրությունը:

Բայց ես զգում եմ իմ ընթերցողի դրությունը: Նա, անշուշտ, զարմացած է: Պ<արոն> Աղոնցը գրել է, որ Մ.-ն պատախանել է: Տգե՞տ է արդյոք պ. Աղոնցը, թե գիտուն, այդ իր և պ. Մ.-ի գործն է: Իսկ ես ինչ ունիմ մեջտեղ: Ես ինչո՞ւ պիտի պատասխանեմ:

Հետաքրքրականը հենց այս հարցն է:

Եվ ես մի քիչ կանգ կառնեմ՝ այդ հարցը պարզաբանելու համար. դա գրական և բարոյական բարքերի հարցն է, որ այս դեպքում մարմնավորում է օրմանյան]ական գաղափարախոսի մեջ:

Երկու ամիս մտածել է պ. Աղոնցը՝ ինչ անե, որ լավ լինի իր համար… Եվ գտել է փրկության խարիսխը այն հանգամանքի մեջ, որ իր գիտնականությունը կասկածելի դարձնող հոդվածի տակ միայն մի տառ է դրած՝ Մ. տառը: Կարելի է, ուրեմն, նախ կուրծք ծեծել, թե ինչո՞ւ գրողն իր ամբողջ ստորագրությունը չի դրել և ապա այդ անհայտության վրա կառուցանել մի

ամենափայլուն պաշտպանություն: Եվ ահա պ. Աղոնցը, ի մեծ մխիթարություն յուր, շարունակ հոլովելով այն՝ որ իր դեմ դուրս եկածը մի Մ. տառ է, շտապում է հաղթականորեն շահագործել իր պաշտպանության հանճարեղ գյուտը:

Այդ այն է, որ նա զանազան ակնարկներով* գուշակել է տալիս իր ընթերցողներին, թե ես՝ ներքո ստորագրողս եմ, որ թաքնվել եմ Մ. տառի տակ և իրան, պ. Աղոնցին, ազետ անվանել: Եվ երբ միանգամից արված է այդ զարմանահրաշ գյուտը, այնուհետև պ. Աղոնցի գործը արդեն չափազանց հեշտացած է: Նա կարող է արդեն շատ լավ ապացուցել, որ ազետը ես եմ, ներքո ստորագրողս և ոչ թե ինքը՝ պ. Աղոնցը:

Միթե մնում է կակածի տեղիք: Պ<արոն> Աղոնցը ճանաչում է ինձ, գիտե նույնիսկ, թե ես որտեղ եմ ուսում ստացել, գիտե նույնիսկ իմ վարժապետի՝ Ամիր խալիֆի անունը: Եվ պրծավ գնա՛ց: Ես մի մոնթ, Սաղմոսի և Խիկար Իմաստունի վրա դաստիարակված, իսկ ինքը՝ պ. Աղոնցը, Ս. Պետերբուրգի համալսարանի Արևելյան բաժնից պատուշաճավոր ստորագրություններ, կնիք ու թվահամար կրող դիպլոմ ստացած: Ես կյանքումս համալսարանի երես չեմ տեսել, մինչդեռ պ. Աղոնցը ամեն օր համալսարանում է լինում, ուր, եթե չեմ սխալվում, Հայաստանի աշխարհագրության դասեր է տալիս:

Երևակայում եք պ. Աղոնցի երջանկությունը ամբողջ ծավալով, այնպես, ինչպես ինքն է վայելում: Երևակայել չեք կարող:

Ահա ինչու եմ ես, բոլորովին կողմնակի մի մարդ, առաջ քաշվել, ընկել պ. Աղոնցի ծաղրի ու հեգնանքների տակ: Աշխարհի մեջ ապացույցների ի՞նչ հաղթ եղանակ, քան հակադրությունները: Մի մոնթ Լեո, մի պրիվատդոցենտ Աղոնց: Գիտնականներ կան, որոնց ամբողջ փառքը այսպիսի հակադրություններով արբենալն է: Եվ պ. Աղոնցը ինչո՞ւ պիտի զրկեր իրեն այսպիսի մի մեծ հաճույքից:

Մեղքը, իհարկե, պ. Մ.-ինն է: Եթե նա հարկավոր համարեր իր խրատների հետ պ. Աղոնցին ղրկել և իր այցետոմսը, իր դիպլոմի վրա սիրահարված պ. Աղոնցը կտեսներ, որ պ. Մ.-ն էլ ունի պատուշաճավոր ստորագրություններով վավերացրած դիպլոմ, այն էլ՝ վեճի առարկա դարձած սոցիոլոգիայի վերաբերմամբ անհամեմատ ավելի հեղինակավոր, քան այն, որ ստացել է պ. Աղոնցը Արևելյան ֆակուլտետից: Այն ժամանակ ամեն ինչ դիպլոմով չափող պ. Աղոնցը գուցե հիշեր, որ Արևելյան ֆակուլտետում

* Այդ ակնարկները այնքան բազմաթիվ են, որ եթե ես ուզենայի ապացույցներ բերել, ստիպված պիտի լինեի արտագրել պ. Աղոնցի հոդվածի կեսը:

սոցիոլոգիա չեն անցնում և, որ ինքն էլ այդ առարկայի վերաբերմամբ, լավագույն դեպքում, ամեն մի մոնքի դրության մեջ է:

Բայց ես դժգոհ չեմ պ. Մ.-ից, ընդհակառակն, շատ շնորհակալ եմ: Նրա շնորհիվ է, որ պ. Աղոնցը ցույց տվեց, թե ինչ է ինքը: Ցույց տվեց, թե ի՞նչ վիճակի կարող է հասցնել կիրքը նույնիսկ գիտնական տիտղոսով պարծեցող հային: Ցույց տվեց, թե իրապես ի՞նչ գիտական պաշարի տեր է ինքը: Ցույց տվեց, թե որպիսի փութկոտությամբ է նա կորցնում իր հավասարակշռությունը և, չամաչելով իր ուսերին բարձած գիտնականությունից, վատ տեսակի ծամածռություններ կարող է անել նույնիսկ մի խեղճ վարժապետի (ինձ այրուբեն սովորեցրած վարժապետի) շուրջը:

Սաղմոս, Նարեկ, Խիկար... fi donc! [ֆր.՝ ամոթ] պ. Աղոնցը քիթը բռնած է անցնում այս անունների մոտից: Ահա նմուշներ. «Սաղմոսը կռան տակին մեծացած գիտուն», «Ով որ «Երանեալ է այր» կարդալով...», «ասպարէզը խալիֆայական աշակերտութեանն է մնում», «խալիֆայական տեսր», «խալիֆայական գետնատարած ուսմունք», «այնպիսի սկսառակների, որոնք կերտված են սաղմոսների, առակների և կամ Խիկար Իմաստունի սերտողութեամբ»: Եվ այլն, և այլն: Այս բառերի մեջ ինձ և պ. Մ.-ին (որ էլի ես եմ) է տեսնում պ. Աղոնցը: Իսկ ինքը, օ՜, ուրիշ բան է: Ծնված Դեմավենդի գագաթին, սնված Սիմուրգի խնամքով, նա ուղղակի այդտեղից թռել, անցել է բոլոր երկրների վրայով ու մտել է Արևելյան ֆակուլտետը, ուր և կատարելապես յուրացրել է երկնքի տակ գոյություն ունեցող բոլոր գիտություններր: Երբեք ձեռք չէ առել Սաղմոս էլ, Ժամագիրք էլ, Շարական ու Խիկար էլ, երբեք չէ հագել Էջմիածնական ֆարաջա ու «թասակ», երբե՛ք, երբե՛ք:

Կիրքը կուրացրել է պ. Աղոնցին այն աստիճան, որ նա մոռացել է, որ եթե հայկական կյանքի մեջ չլինեին Սաղմոս, Առակները, Խիկար և նրանց հարակից Եղիշե ու Խորենացի (իմ ստացած կրթությունը), ինքը՝ պ. Աղոնցը, Ս. Պետերբուրգի համալսարանում այսօր տեղ չէր ունենա և չէր պարծենա իր գիտնականությամբ: Կիրքն այն աստիճան է կուրացրել պ. Աղոնցին, որ նա մինչև անգամ մոռացել է իր կուռքին, Օրմանյանին, որին հայտարարում է եվրոպական գիտություն: Գոնե այդ «գիտությունից» ամաչեր, չէ՞ որ նորին երանության եվրոպականությունը ժամագրքերի, սաղմոսների, տոնացույցների և այլ այսպիսի հնությունների շրջանի մեջ է միայն և միմիայն փայլում: Եվ չէ՞ որ ինքը, երկրպագելով այդ գիտության, երկրպագում է հենց նույն Սաղմոսին ու Խիկարին:

Բայց պ. Աղոնցն էլ զգացել է, որ բենգալյան կրակներով, feu de joie-ով [ֆր.՝ հրավառություն] բան չի դառնա և էժանագին ճայթյունքների մեջ նմուշներ է տալիս, թե ինչպես պիտի մտածե ամեն մեկը, որ ուզում է

պ. Աղոնցի բարձրագահ գիտնականության հավանությունը վաստակել: Պ<արոն> Աղոնցը հրաշալի մի օրինակ է տալիս Սաղմոսների և Խիկարների ազդեցությունից միանգամայն ազատ, առաջադեմ, նույնիսկ արմատական աշխարհայացքի: Ահա ինչ է գրում գիտնական պարոնը.

«Նրան (Մ.-ին իմա՝ ինձ) դուրեկան չէ և մինչև իսկ անըմբռնելի (կլասիկ հայերեն) մեր այն տարրական պահանջը, թե անկիրք և սանձարձակ լեզուն սահման պետք է ճանաչի եկեղեցու ավեռր պետերի նկատմամբ, լինեն նրանք նույնիսկ այնպիսի ոչնչություններ, որպիսիք են Օրմանյան, Չամիչյան, Աշըգյան՝ Կ. Պոլսի Հայոց պատրիարքներ, որոնց դժբախտությունն այն է եղել, որ գահ են բարձրացել ազգի քվեով*:

Ահա իմաստություն: Որտեղի՞ց է նրան վերցրել XX դարի հայ պրոֆեսորացուն: Հենց նույն Խիկարից, որին առերևույթս արհամարհող ու ծաղրող է ձևանում պ. Աղոնցը: Ուրիշ տեղ չկա այդ իմաստությունը: Ոչնչությունը, անչակերտ ոչնչությունը, իբրև ոչնչություն էլ ներկայացվում է պատմության մեջ, առանց նկատի առնելու ավեռ՞ր պետ է նա, թե սևամազ: Ամբողջ հայ ժողովուրդը, աշխարհի բոլոր կողմերում, իր համար նախատինք էր համարում ընդունելու, թե Չամիչյանը նույնիսկ հայ եպիսկոպոս է և անվանում էր նրան «Թարթողիմեոս էֆենդի»: Ամբողջ հայ ազգը չուներ, իհարկե, պ. Աղոնցի կիրթ ու սանձված լեզուն, ավելացնենք՝ նաև գիտնականությունը: Ոչ, հազար անգամ լավ է մոնք լինել, քան պ. Աղոնցի չափ իմաստուն:

Առանձնապես զվարճալին այն է, որ պ. Աղոնցն է խոսում «անկիրք և սանձարձակ» լեզվի դեմ: Կրթվածությունը ամենից քիչ պ. Աղոնցին է սազ գալիս: Կրթված մարդկանց մեջ չէ ընդունված ծամածռություններով խոսել: Իսկ պ. Աղոնցը ոչ միայն ինձ է լեզու ցույց տալիս, այլև իմ գրքերին: Կրթված մարդիկ այդպես չեն անում: Նրանք վերցնում են գիրքը և քննադատելով են նրան ոչնչացնում: Պ<արոն> Աղոնցը այդպիսի առաքինություն չունի: Կարծում եմ, պ. Սեդրակ Մանդինյանը մասնավորապես հիացած պիտի լինի պ. Աղոնցի ակադեմիական վարմունքի և ոճի այսպիսի մի գոհարի վրա.

«Ճշմարիտն եմ ասում, ավելի դյուրին է Մ.-ին Լեոյի գրքերը կարդալով պատմագիտության ասեղի ծակից անցնել, քան մի մանրավաճառի հիշյալ միջոցով բուրժուական դառնալ»:

---

* Ես մոնքս և Ամիր խալիֆի աշակերտս, պատիվ ունիմ հայտնելու պրիվատ-դոցենտ պ. Աղոնցին, որ նա երեկվա պատմությունն էլ չգիտե: Կ. Պոլսի Հայոց պատրիարքների ցուցակում չկա ազգի քվեով պատրիարքական գահի վրա նստելու դժբախտություն ունեցած Բ. Չամիչյան:

Ճշմարիտն եմ ասում, ես էլ հիացած եմ նոր լույս ընկած, բայց Աստծու ողորմությամբ միմիայն հայկական միջավայրին վերապահված Քրիստոսի վրա: Ճիշտ որ ակադեմիական չե-դեռվը է: Եվ ո՞նց կարողացավ պատվական դոցենտը այդպիսի ահագին սրախոսություն հերյուրել մենակ, ինքն իր ուժերով՝ ըմբռնողությունից վեր է և զարմանալի, ա՜հ, որքան զարմանալի: Չէ՞ զտնվի արդյոք պ. Աղոնցին դիպլոմի կողմից հավասար մեկը, որ խորհուրդ տար նրան ֆելիետոններ կազմել նաև Սաղմոսից, Խիկարից, Հայսմավուրքից: Այս, համենայն դեպս, ավելի անմեղ զբաղմունք կլիներ, քան Բարթողիմեոս Չամիչյանին և համապատիվ ընկերակիցներին երկրպագելը հանուն ալևորության*:

Գուցե իմ մոնքությունն է պատճառը, որ ես անպատվություն եմ համարում ինձ դնել պ. Աղոնցի հետ մի տախտակի վրա և, իբրև հատուցում, լեզու ցույց տալ նրա գրքերին: Քանի որ պ. Աղոնցը իմ գրքերին է կոչ անում, ես, իբրև նրանց հեղինակ, պարտավոր եմ հայտարարել, որ պ. Մ.-ն (ընդունելով, իհարկե, որ Մ.-ն ես չեմ), տարաբախտաբար, ինձանից չէ սովորել պատմագիտությունը և հայացքների ու ըմբռնումների վերաբերմամբ մենք հակոտնյաններ ենք: Բայց որ ինքը՝ պ. Աղոնցը, կարող է ինձանից ներշնչվածի դրության մեջ ընկնել, այս արդեն փաստ է: Ահա պ. Աղոնցը ապացուցանում է, որ հայ բուրժուազիան օտարանում է, իսկ այդ երևույթը ես շեշտել եմ տարիներից ի վեր իմ բազմաթիվ հոդվածներում: Ահա պ. Աղոնցը բնորոշում է մեր 1860-1870-ական թվականների շարժումները, ես էլ ճիշտ այդպես եմ բնորոշել միևնույն երևույթը պ. Աղոնցից շատ վաղ, իմ գրքերի մեջ:

Թո՛ղ ուրեմն, պ. Աղոնցը շտապե հրապարակավ, նույն Քրիստոսական «ամէն, ամէն ասեմ»-ով երդվե, թե չէ կարդացել եմ հոդվածներն ու գրքերը: Թե չէ՝ ժամանակը չար է, ինչպես ասում է Խիկար Իմաստունը, և ո՛վ գիտե, չի՞ զտնվի չարաճճի մեկը, որ հանդգնություն կունենա կարծելու և ասելու, թե պ. Աղոնցը բոլորովին դիպվածաբար չի կրկնում իմ ասածները: Այն ժամանակ... պետք կը լինի երևակայել, թե ի՛նչ կլինի պատվական դոցենտի դրությունը:

* Այսպիսի ֆելիետոնական մարզանքների մեջ բավական հաջող է գնում և բանասեր պ. Ստ. Մալխասյանցի գործը: Անցյալներում էլ նա էր Ժամագրքի «Հրաժարիմք»-ից սրամտության գոհար ներկայացնող մի կտոր մատուցել ինձ, իր տոմարագիտական տգիտությունը պարտկելու համար: Այս էլ Աստծուց առաքված շնորհք է, ոչինչ չունեմ ասելու: Գոնե դա մարդկանց կարողություն է տալիս ոտի վրա կանգնած մնալու և խայտառակ խորտակումից հետո:

## II

Տեսա՞ք ընթերցող, որքան ցածրարժեք են գրական այն ձևերը, որ կրծքին է սեղմել ... ավա՜ղ, ակադեմիական տիտղոսով պերճացած հայը: Ուրիշ ի՞նչ կարող է ապացուցել այս տգետ օրինակը, եթե ոչ այն, որ ակադեմիականությունն չէ տված հային:

Այսպիսի օրինակի առջև կանգնած էր Միքայել Նալբանդյանը 1860 թվականին: Ու գրում էր. «Երանի էր մեզ, եթե ունենայինք խելացի հակառակորդք. բայց որպես հայ, զրկված ենք, ներկայումս, այդ պարծանքից»:

Մի՞թե ճիշտ չէ բյուր անգամ: «Մշակ»-ի վարձկան և անվարձ արբանյակները բան ու գործ են դարձրել համարյա ամեն օր փողոցային հայհոյանքներով, ծամածռություններով, տգետ բարբաջանքներով դուրս գալ ինձ դեմ: Երանի կլինեի ոչ միայն ինձ անհատապես, այլ և հայ մտքի պատվին, հայ կուլտուրականության, եթե հայ ակադեմիականը, վեճի դուրս գալով, գոնե փոքր-ինչ տարբերվեր լրագրական մանր-մունր, սովորական խզբզողներից, փոքր-ինչ բարձր լիներ նրանցից: Բայց, ճիշտ որ, զրկված ենք այդպիսի մի պարծանքից:

Մի՞թե այսպես պիտի լիներ վեճը մի ակադեմիականի հետ: Կարո՞ղ է այդ ակադեմիականը պարզ երեսով պատմել իր օտար ընկերակիցներին, թե ինչ է արել ինքը հրապարակավ, լրագրի մեջ: Կհամարձակվե՞ր նա այդ տեսակ մի գրություն ուղարկել մի ռուս լրագրի:

Հայ իրականության մեջ է, որ ակադեմիականը պարտք է համարում լրագրական առօրյա բանասրկուի հարազատը մնալ, նրանից ընդօրինակել ծամածռություններ, անձնական անզուսպ կրքերի արտահայտության ձևեր: Որովհետև հայ իրականության մեջ է, որ ջոջը որոտընդոստ ծափահարում է հայ ակադեմիականի ցածրարժեք ձևերը: Երկուսն էլ, ուրեմն, իրար արժանի են:

Բայց վատ բարքերի ուրիշ օրինակներ էլ ունի հարգող պ. Աղոնցը: Իր առաջին հոդվածը նա ուղարկած է եղել «Հորիզոն»-ին, որ և, բնականաբար, չէ ընդունել օրման[յան]ական պարոնի ֆրազյորությունը: Իսկ պ. Աղոնցը այսպես է բացատրում այդ բանը. այնտեղ (իր առաջին հոդվածի մեջ), կային անախորժ կետեր, որ վերաբերում էին հարգող օրագրի վաստակավոր գործակցի (այսինքն՝ իմ) գրական վատանունության, անախորժ, որովհետև ինչ որ հարում է կեղծարարության (?), ծանր է, թե՛ անողի, թե՛ մերկացնողի և թե՛ լսողի համար:

Սրան ասում են երեխայական հոխորտանք: Պ<արոն> Աղոնցը երբեք չի ունեցել այն քաջությունը, որով պարծենում է այժմ, հետին թվով: Կեղծարարություն՝ սա անճարի քողովանքն է փաստերի և ապացույցների առջև: Մի ուրիշ տեղ նա ասում է, որ Մ.-ն իր վարմունքով նմանվում է «Լեոյին, որ նույնօրինակ անգրագետ բանաքաղությունը առաքինության քողոծ էր շինել իր համար և ղոնչում, փոշի էր բարձրացնում պատրիարքի (միշտ պ. Աղոնցի հափշտակության և զմայլմունքի առարկան - Օրմանյան) շուրջը, հանդյականսար թեթևամտության քողիչքով»:

Պ<արոն> Աղոնցը չի հաստատել և չի կարող հաստատել, թե ճիշտ է ասում իմ վերաբերմամբ: Բայց որ վերոհիշյալ խոսքերի մեջ նա իր սեփական պատկերն է նկարել ամենայն հարազատությամբ, այս ես կապացուցեմ իսկույն:

Ահա, պ. Աղոնցը հանձն է առել ցույց տալու, որ Միքայել Նալբանդյանը ճիշտ նույնն է եղել, ինչ է նորին երանություն Օրմանյանը: Սա միակ կետն է, ուր պարոնը, վերջապես, փորձում է խոսել կոնկրետ փաստերով, ցիտատներով: Այսպես էլ հարկավոր էր, եթե ոչ գիտնականություն, գոնե պարզ լավատեղյակություն ցուցաբերելու համար: Դժբախտությունն այն է, որ այս միակ դեպքում էլ, երբ խոսողը փաստը պիտի լինի, պ. Աղոնցը խրվել է ջուխտ ոտներով:

Բերելով 1860 թվականի «Հյուսիսափայլից»՝ Մ. Նալբանդյանի այն խոսքերը թե «Մեր դավանությունը հայոց ազգի ամբողջական ապահովության վերաբերմամբ այսպես է, թե ազգը պիտի իր գոյությունը պահպանե յուր եկեղեցու միջնորդությամբ», պ. Աղոնցը հաղթականորեն բացականչում է. «Այս՝ Օրմանյանի խոսքերը չեն, ընթերցող, այլ Նալբանդյանի»:

Եվ, ուրեմն, Նալբանդյան-Օրմանյան: Երկուսն էլ հարազատներ են: Ընթերցողը պիտի մտածի, որ պ. Աղոնցը, եթե ոչ իբրև գիտնական, գոնե իբրև ինտելիգենտ հայ, լավ ծանոթ է Նալբանդյանի գրվածքներին և բացի այս կտորից ուրիշ ոչ մի բան չի գտել, որ ընդարձակեր և բացատրեր այդ միտքը:

Այսպես չէ, ընթերցող: Պ<արոն> Աղոնցը պարզապես մի «անգրագետ բանաքաղություն» է արել: Նա կամ կարդացել է Նալբանդյանի մի էջը միայն, կամ կարդացել է բոլոր էջերը, բայց դուրս է գրել միայն այն, ինչ ձեռնտու է համարել Նալբանդյան-Օրմանյան ֆորմուլի համար: Երկու դեպքերում էլ հանցավոր է հայ ակադեմիականը:

1861 թվին Փարիզում տպվել է «Միքայել Նալբանդյանց, Երկու տող» անունով բրոշյուրը: Վերցրեք այդ գործը, կարդացեք մի քանի երես, և իսկույն կտեսնեք, որ Նալբանդյանը Աղոնց չէ, որ նա շատ լավ է իմացել, թե

ինչ է ասում: Մինչդեռ պ. Արոնցը եկեղեցի ասելով հասկանում է Օրմանյաններ, Չամիչյաններ և առհասարակ հոգևորականներ, Նալբանդյանը բոլորովին իրավացի կերպով զանազանում է եկեղեցին և հոգևորականները:

Եվ ասում է. «Եթե Հայոց ազգը յուր կրոնը պահելով մնաց աշխարհի երեսին, այդ մասին շնորհակալություն մահմեդականության. սա բացառաբար պահպանեց հայերի կրոնը: Ազգը որչափ և թաղված լիներ խավար տգիտության մեջ, այնուամենայնիվ, եթե մի մասը գիտակցությամբ, մյուս և ավելի մեծ մասը ֆանատիկոսությամբ, հեռի մնալով մահմեդականությունից, պահեց իր կրոնը, հետևաբար և ազգությունը: Թո՛ղ հայոց ազգը, յուր թագավորության կործանման օրից, ստրկանար որևէ քրիստոնյա կառավարության, այն ժամանակ կտեսնեինք..., բայց ինչպե՞ս պիտի տեսանեինք, վասն զի մենք և ծնելու չէինք որպես «հայ» (երես 27):

Ո՛չ. Նալբանդյանը Օրմանյան չէ: Ամենից առաջ հենց այն պատճառով, որ Նալբանդյանի դավանանքն է. «Մեր եկեղեցականք ժողովրդի ընտրությամբ և հաստնությամբ լինում են եկեղեցական, քանի որ մեր եկեղեցու կառավարությունը սահմանադրական է, քանի որ մեր եկեղեցականներին դեռևս շատ բան պակաս է եզիպտական քուրմ կամ եզվիտ լինելու համար: Այս դրությունը մերժելով վերստին կրկնում ենք, թե եկեղեցին ազգն է, իսկ հոգևորականությունը՝ սպասավոր այդ եկեղեցուն: Ազգը ամենայն օր իրավունք ունի այդ հոգևորներից մինը յուր լավության համար պատվելու և սիրելու, իսկ մյուսը, իր վատթարության համար, դատապարտելու և պատժելու» (երես 17):

Դուք տեսնում եք, որ Նալբանդյանը Արոնց չէ, որը Չամիչյանների համար անգամ պաշտամունք է պահանջում: Ահա ուրիշ փաստեր ևս.

«Ո՛րտեղ մի քաղաքակրթություն, որի հերոսը չէր եկեղեցական, ո՛րտեղ խռովություն, որի խմորը չէր եկեղեցական:

«Այո՛, ժամանակը լցված է, ուստի և հրապարակի առջև ասում ենք. տերութենական լրտես-եկեղեցական, ազգը մատնող և դավաճանող- եկեղեցական, փառքի և պատվանշանի համար, թողունք նյութական կողոպուտը... կաթողիկոս թունավորող - եկեղեցական, եկեղեցի կողոպտող - եկեղեցական, չարաչար արքեցության համար պատուհասվելուց փախչելով, յուր եկեղեցուն դրժող և դեպի պապականություն դիմող - եկեղեցական, կաթողիկոս չընտրվելու համար հավատն ուրացող - եկեղեցական, հրապարակյալ ճակաճանության մասին դատաստանից խիթալով վեղարը գետնին զարկող, կրոնավորական կարգը ուրացող և մինչև իր անասնական կյանքի վերջը բոզի հետ կենակից - եկեղեցական, դպրոցների գումարը

անհետացնող-եկեղեցական, ի վերջո ամեն բան - եկեղեցական. վասն զի ծանծրալի է մի ըստ միոջէ թվելով» (երես 22-23):

Դարձյալ կարդացե՛ք.

«Մարդկության գլխից անցածը ուսուցել է մեզ, որ ամենայն՝ յուր մէջ միայն փակված և կենտրոնացած կացություն, սկսած Եգիպտոսի քրմերից մինչև Պիոս Է-րդի ձեռքով վերականգնյալ պ. Չամուռճյանի հոգեհարազատը, վնաս տվեց մարդկության: Այդ կացությունքը կտրված բաժանված հասարակաց մարմնից, ոգևորված դժոխային եսականությամբ, բռնաբարեցին ուրիշները և հափշտակելով նոցա ազատությունը, զորացուցին իրենց չարաչար գործադրությունը ազատության: Այնուհետև մարդիկ ընկան բարոյական գերության մեջ, այն է մտքի ու բանականության գերության մեջ, ուր մարդը համարձակություն չունի ինքնուրույնաբար մտածելու, այլ դատապարտված է հետևել յուր դահիճների թելադրության. նա ստիպված է գնալ այն ճանապարհով, որ օգտակար է միմիայն այդ կացություններին» (երես 16):

«Անցան և անդառնալի տնցան այն խավար օրերը, երբ մարդիկ երջանիկ էին համբուրելով մի սևագլխի քղանց կամ շատ անգամ զոշաքաղությամբ և պոռնկությամբ ապականված մի ձեռք: Օ՜հ, ինչ սարսափելի վիհ կա այն անցած օրերի և այժմուս մեջ: Այս րոպեիս այդ մարդիկը քաջ գիտելով, որ արժանավորությամբ չեն կարող շահել ազգի համակրությունը, փորձ են փորձում բռնանալու նոցա վրա կոպիտ ուժի օգնությամբ, կամ յուրյանց խավարատմոսֆերի մեջ նզովքի փայլակներ փայլատակեցնելով: Երանի՜ այն մարդուն, որ յուր անձը և գրիչը կնվիրե դոցա անբնական իշխանությունը ազգի վերա պահելու համար, երանի՜, որ կաշխատի ճնշյալ ժողովրդի իրավունքը խլպառ ոտքի տակ առնելու համար: Վա՜յ մեզ, որ ոչ երբեք պիտի արժանանանք այս երանության» (երես 19-20):

Ահա մի սքանչելի կտոր.

«Մենք ազատակամ նվիրեցինք մեզ հասարակ ժողովրդի իրավունքը պաշտպանելու: Մեր անձը և գրիչը չնվիրեցինք հարուստներին, նոքա յուրյանց արծաթի թումբերի տակ միշտ անխոցելի են, նաև բռնակալների իշխանության մեջ: Բայց այն խեղճ Հայը, այն հարստահարված, ողորմելի, աղքատ, մեռք և քաղցած Հայը, ոչ միայն ճնշված օտարներից և բարբարոսներից, այլ և յուր հարուստներից, յուր հոգևորներից և, կիսագրագետ, ուսումնական կամ փիլիսոփա սավածներից, ահա այն Հայը ամենայն արդարացի իրավունքով գրավում է մեր ուշադրությունը և նորան դարձյալ, և առանց վայրկենական երկմտության, նվիրեցինք մեր բոլոր կարողությունը» (երես 21-22):

Բավականանանք այսքանով*: Ահա այսպես մտածողին և գործողին է պ. Աղոնցը բերել բազմեցրել Օրմանյանի կողքին իբրև գաղափարակից:

Բացատրությունների ո՛չ մի կարիք չկա: Անգրագետ բանաքաղության կատարած անարգ գործը ամենքի առաջ է: Անցավոր, բոպեական նպատակի համար, կրքոտ տենդենցիաների համար աղճատել ու աղավաղել երեկ դեռ միայն մեր մեջ ապրած առաջնակարգ փայլուն դեմքը - ապա ինչի է ընդունակ հայ ինտելիգենտը, այլև չասենք հայ գիտունը...

## III

Պ<արոն> Աղոնցը այս արել է, որպեսզի մի անգամ էլ հաղթականորեն հայտարարե, թե Հայ եկեղեցու մեջ չէ եղել և չկա կղերականություն: «Ժամանակն է վերջապես դեն ձգել մտքի այս եղկելի լաթերը», - ասում է նա այն մարդկանց, որոնք կղերական ոգի են գտնում հայ եկեղեցականության մեջ: Նա բացատրում է, «կղերականությունը պատմական ու քաղաքական որոշ հասկացողություն է՝ կերտված միջին դարերում, երբ եկեղեցին մրցում էր պետությունների հետ իբր համազոր կազմակերպություն»:

Կարո՞ղ է պ. Աղոնցը հավատացնել, թե Հայ եկեղեցին իր անցյալում բոլորովին խորթ է եղել այդպիսի մրցության, թե հայ հոգևորականությունը երբեք չի ձգտել բացարձակ տիրապետության:

Իսկ ի՞նչ են նշանակում կրոնական երկու հզոր դինաստիաները չորրորդ դարում, իրենց ահագին հողային հարստություններով, իրենց դինաստիական շահերով, իրենց սպանիչ մրցություններով՝ աշխարհական իշխանությունների դեմ, մրցություններ, որոնք արյունով են շաղախված:

Կարդացե՞լ է պ. Աղոնցը հենց իր գրած աշխատությունը՝ «Армения в эпоху Юстиниана», որի մեջ ցույց է տվել, թե Հայաստանի հունական մասում Հայ եկեղեցին ստացավ բյուզանդական պետական կազմակերպություն, իսկ պարսկական մասում՝ ֆեոդալական-նախարարական: Կազմակերպած կղերական դասը չէ՞ր, որ հինգերորդ դարում երկիրը ենթարկեց ապստամբության սարսափներին, թշվառության ծայրին հասցրեց նրան և

* Պարտավոր ենք ասել, որ մի տարուց հետո՝ 1862-ին, Նալբանդյանը արդեն բոլորովին ձեռք էր վերցրել մտքից, թե եկեղեցին ազգություն պահպանող է: Ահա ինչ էր գրում նա. «Եթե ազգության ներքին և էական խորհուրդը չէ տնտեսական խնդիրը, անհիմն է այդ ազգությունը, սուտ է այդ ազգությունը, և նա կկործանվի... Իսկ երբ դու ասես ինձ, պահի՛ր քո ազգությունը, հաստա՛տ կացիր քո սիրու մեջ դեպի քո աշխարհը, սիրի՛ր քո եղբայրը, պահի՛ր քո լեզուն, որ է քո ազգության դրոշը և այդ բոլորը քեզ իրավունք կտան մի կտոր հող ձեռք բերելու, որով կազատվիս ստրկությունից և աղքատությունից, այն ժամանակ ես կհասկանամ քո խոսքը (տե՛ս «Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ», Փարիզ, 1862, երես 101-102)»:

այդ գործն իր գրքերի մեջ արձանագրեց իբրև մի գաղափարական շարժում, իսկ իրերի դրությունը լավ ըմբռնած, հասկացող քաղաքական գործիչ Վասակին դավաճան, մատնիչ և ուրացող հայտարարեց, մինչև որ ուրիշների հետ դուրս եկավ և մի պ. Աղոնց, որ ասաց թե Վասակը, կղերական կազմակերպված դասի հակառակորդը, փրկել է երկիրը: Թող պ. Աղոնցը մեկ էլ կարդա իր «Марзбанъ Васакъ передъ судомъ историковъ» բրոշյուրը և ասե՝ ուրիշ ի՞նչ անուն կարելի է տալ այդ կացությանը, եթե ոչ կղերական տիրապետություն:

Փաստ չէ՞ արդյոք, որ մինչդեռ Անիի թագավորը միայն այդ փոքրիկ քաղաքն ուներ իր տիրապետության տակ, նրա կողքին նստած Պետրոս կաթողիկոսն ուներ հինգ հարյուր գյուղ: Փաստ չէ՞, որ արձանագրություններին մեջ առաջ կաթողիկոսի անունն էր հիշատակվում, ապա միայն Բագրատունի թագավորի: Տիրապետությունը էլ ուրիշ ի՞նչ բանի մեջ կարող է արտահայտվել: Եվ քաղաքական սոսկումը ուրիշ ի՞նչ ներքին պատճառից կարող էր խրախուսվել, եթե ոչ կղերականության այս աստիճան զարգացումից: Արդյոք Եգիպտոսի սուլթաններից ավելի օրհասական չէ՞ին Ռուբինյան թագավորների համար կղերի անհաշտ մրցությունները նրանց դեմ:

Քանի կար թագավորություն, կղերը նրա դեմ էր մրցում իր տիրապետությունը ապահովելու համար: Այնուհետև էլ նա չմոռացավ իր տիրապետական շահերը: Թո՛ղ պ. Աղոնցը ձանձրույթ հանձն առնե կարդալու XVII-XVIII դարերի պատմությունը, թո՛ղ տեսնե արյունը, բանտերը, աքսորները Կ. Պոլսում, դժբախտություններ, որոնք տեղի էին ունենում հայ պատրիարքների տիրապետության և թշվառ ժողովուրդը անհունապես կեղեքելու համար:

Թո՛ղ նկատի առնե պարոնը Էջմիածինը՝ կալվածատեր - ճորտատեր: Երկուսից մեկը. կամ բուն ժողովրդական շահերի տեսակետից ֆեոդալիզմը – կղերական կամ աշխարհական՝ լավ և ցանկալի սիստեմ է, կամ դասակարգային տիրապետության նողկալի տեսակն է: Պ<արոն> Աղոնցը թո՛ղ ընտրե ո՛րն ուզում է՝ հանուն իր դավանած իդեալների:

Վերջապես, ապուշների խա՞ղ էր 1860-ական թվականների սահմանադրական շարժումը թուրքահայերի մեջ: Կռիվ, մատնություններ, աքսոր և վերջը հաղթանակ, որ երգում է իբրև հայության նոր բախտ: Ի՞նչ էր այս նոր բախտը: Սահմանադրությունը քաղաքական անկախությո՞ւն էր տվել թյուրքաց Հայաստանին: - Ո՛չ, պ. դոցենտ: Սահմանադրությունը ջախջախել էր կղերական միապետությունը, խլել էր կղերից իշխանությունը և տվել էր քվեով տնօրինող ժողովրդին: Այս էր այդ նոր բախտը, որ ամեն տարի

տոնվում էր Հյունքյար-Իսկելեսիի դաշտում: Տոնվում էին Հայ եկեղեցու դարավոր ժողովրդական սկզբունքները, որոնք շարունակ կղերական ոտնձգությունների առարկա են եղել, խեղդվել են, բայց չեն կորել, մինչև որ ժողովուրդը հասել է գիտակցության և ճանաչել է իր իրավունքները, հասկացել է, որ կղերը պիտի իրեն հպատակվի և ոչ թե ինքը՝ կղերին:

Եվ միշտ մեր լավագույն գործիչները իմացել են զանազանել ժողովրդական ոգով գործող կրոնավորներին փաշա ու խան կրոնավորներից: Վերջիններին էր, որ Նազարյանցն ու Նալբանդյանը անվանում էին «աբեղայական» երբեմն և «կղերականք»: Ահա Նազարյանցը մատնված Էջմիածնի կղերական ֆանատիկոսության մի հատ Չերքեզյանի (ոչ օրման[յան]ականի) դավերով ու մատնություններով: Պ<արոն> Արոնցին այս օրինակն է՞լ ոչինչ չի ասում: Ոչինչ չէ՞ ասում այն փաստը, որ ազատամիտ ժողովրդական լրագիրները խափանվում էին կղերի միջնորդություններով:

Ժամանակն է թողնել սոփեստությունները, ժամանակն է ավելի պատվավոր դիրք բռնել ահագին պատմական երևույթների հանդեպ, քան գլուխ թաքցնելը, խոսքը կտուր գցելը այն պատրվակով, թե կղերականությունը միայն կաթոլիկ եկեղեցում է եղել, թե Եվրոպան այսպես է տեսել կղերականությունը: Համանման երևույթները զանազան մասնավոր գունավորումներ են ունենում զանազան միջավայրերի ու պայմանների մեջ: Կղերականության ոգին հայը կարող էր նկատել այնպես, ինչպես իր պատմությունն է ցույց տվել: Դա կղերական դասակարգի տիրապետություն է ի վնաս ժողովրդական շահերի: Եվ այս անհերքելի իրականություն է մեզանում:

Մի նկատողություն ևս: Կաթողիկոսական ընտրությունների ելքը, հարկավ, շատ մաղձոտ դրություն պիտի ստեղծեր օրման[յան]ական գաղափարախոսի համար: Պ<արոն> Արոնցը մխիթարում է իրեն իր սիրած ժեստերով: Մի անգամ արդեն հիմնավորապես մխիթարել է իրեն նրանով, որ ինքը դիպլոմ ունի, իսկ ես մոնք եմ: Այժմ նույնը նա մատուցանում է նորին նրանության, ասելով. «Ի՞նչ է արդյունքը. Ընդոծին աբեղայությունը հաղթանակեց եվրոպական գիտության»:

Սիրուն ժեստ է. Եվրոպական գիտությո՛ւն...: Սակայն երեխաներն էլ գիտեն, որ այս մեծահնչյուն բառերը դեռ բավական չեն: Եվրոպայում գիտություն են ստացել և՛ Սուրբ Իգնատիոս Լոյոլան, և՛ Կարլ Մարքսը: Տարբերություն, կարծեմ կա: Եթե այդ տարբերությունը զգալ չէ կարողանում պ. Արոնցը, ավելի վատ իր համար:

Այս «Եվրոպական գիտություն» խոսքերից խաղ կազմելուց հետո պ. Արոնցը խորհուրդ է տալիս չհիշել Նազարյանցին և Նալբանդյանցին,

որովհետև,- ասում է,- նրանք, սիրող էին լուսավորության և քշնամի՝ խալիֆայության:

Այստեղ էլ անգրագետ բանաքաղության կամ անգիտության մի երևույթ: Նազարյանն էլ, Նալբանդյանն էլ սքանչելի օրինակներ են տվել, թե ինչպես պետք է վերաբերվել այն գիտությանը, որի ներկայացուցիչն է նորին երանությունը: Ի՞նչ է կարծում պ. Աղոնցը, արդյո՞ք Այվազովսկին Օրմանյանից պակա՞ս էր իբրև «Եվրոպական գիտության» ներկայացուցիչ: Թո՛ղ պ. Աղոնցը շնորհ անե ձեռքն առնե Նալբանդյանցի «Երկու տողը» և տեսնե նրա վերաբերմունքը դեպի Այվազովսկին: Նա նույնիսկ մեղք էլ է համարում «վարդապետ» անունը գործածել, այլ ամեն տեղ գրում է... «պարոն Այվազովսկի», ա՜հ, ի՜նչ սարսափ Բարթողիմեոս Չամիչյանին պատվի պատվանդանի վրա կանգնեցնող պ. Աղոնցի համար: Իսկ նշանավոր հրապարակախոս Ստեփան Ոսկա՞նը: Նա իր երգիծական ոտանավոր էլ է գրել նույն Այվազովսկու վրա, այնքան սիրուն, որ արտատպվել է նույնիսկ երգարաններում մեջ.

Մօրուք Գաբրիկ ո՞ւսկէ գաս.
- Արլըքէնի սենեակէ,
Մէկ ժամ օրհնել և վակաս
Կրել, քրտնել հերիք է:
Արդ ժամ եհաս աշխարհական
Փեղոյր և վարդիք հագնիլ է արժան.
Յոյս բնաւ չիք ա՛լ օրհնենքէ
Ուստելու նայինք, հոն է շահ հիմա:
Գաբրիկ ահա գայ
Ահա կը դառնայ
Եւ որ կողմ դառնայ նոր դէմք
ցոյց կուտայ:

Իսկ Հարություն Սվաճյա՞նը իր «Մեղու»-ի մեջ: Օրինակները բավ են: Թո՛ղ պ. Աղոնցը մխիթարվի նրանով, որ Օրմանյանը անճանաչելի չէ: Հայ ազատամիտ բանակը միշտ կասկածանքով և արհամարհանքով է վերաբերվել պապականության գրկից հավատափոխության միջոցով մեզ մոտ տեղափոխված «Եվրոպական գիտության» [ներկայացուցիչներին]: Կարող եք սուտ անել, բայց փաստը փաստ է:

* «Արևմուտք», լրագիր, 1859, թ. 3:

Ձանազանություններ ըմբռնելու անընդունակություն պ. Աղոնցը ցույց է տալիս և այնտեղ, ուր հարկավոր է համարել «Մշակ»-ի այսօրվա վարիչների գլուխը շոյել: Ասենք, այս բնական է, «նման զնմանս սիրէ» և օրմանյանականը չէ կարող քնքուշ չլինել իր դեռակցի վերաբերմամբ: Բայց չէ՞ր կարելի փոքր-ինչ խելոք կերպով կատարել այդ բանը: Պ<արոն> Աղոնցը «վերին աստիճանի խրատական» է գտնում այն հանգամանքը, որ «մշակականության երեկվա հաղթ սյունը այսօր նույն մշակականությունը հակակուլտուրական հոսանք է հռչակում. ինչո՞ւ, ապահովապես ոչ գաղափարական փոփոխության համար: Երբ մշակականությունը այդպես փոփոխական, այդքան շուռ նետելու չափ թեթև գաղափար էր, ապա ավելորդ էր տարիների ընթացքում նրան ծառայել, նրանով գեղազարդվել»:

Երբ ակնարկված «հաղթ սյունը» ես եմ, ապա ուրեմն թող պ. Աղոնցը ինձանից էլ ընդունե իր համար անհասկանալի դարձած երևույթի պարզ բացատրությունը:

Օրինակ դնեմ պ. Աղոնցի առջև: Եվ օրինակը թող լինի դարձյալ նորին երանությունը:

Մշակականություն - դա ինքը Գրիգոր Արծրունին է, չէ՞: Ուրիշ պատասխան չկա: Արդ՝ Գրիգոր Արծրունին Օրմանյանին «Մշակ»-ի մեջ անվանեց եզվիտ, ներկայացրեց նրան իբրև ամենաանհամակրելի մարդ և 1892-ին Էջմիածնում եռանդուն պայքար մղեց Օրմանյանի դեմ, թույլ չտվեց, որ նա առաջ քաշի իր թեկնածու Աշըգյանին: Սա մի ահագին հաղթանակ էր մշակականության համար: Իսկ Գրիգոր Արծրունու պատահական ժառանգները 1912-ի դեկտեմբերին նույն Էջմիածնում փշե պսակներ դրին իրենց ճակատին՝ նույն «եզուիտին», նույն անհամակրելի մարդուն հայոց ազգի կաթողիկոս դարձնելու համար:

Գաղափարական որևէ տարբերություն չկա՞ Արծրունու և նրա պատահական ժառանգների մեջ: _

Կամ այս օրինակը: Երբ հայ ժողովուրդն արհամարհում է և ատում Աշըգյանին, Չամիչյանին, Օրմանյանին, երբ սովորել է նրանց համարել թշնամիներ, դրան մեծագույն չափով նպաստողներից մեկը եղել է «Մշակ»-ը, որ ներկայացրել է այդ երրորդությունը միշտ ամենավատ, ամենազզվելի դերի մեջ: Այսօր նույն այդ թերթում տպվում է Ն. Աղոնցի հոդվածը, որ խունկ ու պատարագ է պահանջում նույն այդ ազգովին ատված ու արհամարհված հերոսների համար:

Տարբերություն կա՞, թե ոչ:

Ինքը Տերը դորմե հայ մեծամիտ ակադեմիականության՝ այսքան ահագին, գլխապատառ դիլեմաներ լուծելու համար:

## ԴԱՐՁՅԱԼ Պ<ԱՐՈՆ> ԱԴՈՆՑԸ

### I

Իմ անունը քաշքշողների թիվն այնքան է, որ ստիպված եմ հերթով պատասխանել: Եվ պատասխանել, իհարկե, նրանց միայն, որոնց արժան կհամարեմ պատասխանի:

Պետք է կրկնեմ, չեմ կարող մի անգամ ևս չկրկնել այն, ինչ ասել եմ տասնյակ անգամից ավել: Պատասխաններ գրելով, ես միայն մի ակամա, վերին աստիճանի անհաճո պարտականություն եմ կատարում: Ես միմիայն ինքնապաշտպանության իրավունքս եմ գործադրում, ուրիշ ոչինչ:

Ամեն անգամ, գրիչ վերցնելով այսպիսի մի ակամա պաշտոն կատարելու համար, ես զգում եմ, ես սպասում եմ, որ համբերատար հայ ընթերցողը, վերջապես, իր իրավունքի մեջ կմտնի և կասի՝ երբ պիտի լինի բոլորի վերջը:

Այո՛, ճիշտ է, ընթերցող, ե՞րբ պիտի լինի վերջը: Զզվել եմ ես ավելի, քան ամեն մի ընթերցող, բայց չգիտեմ, թե երբ կլինի վերջը: Իմ ձեռքիս չէ դրա պատասխանը: Ես միայն մի բան գիտեմ, շարունակական, անընդհատ արշավանք իմ անձնավորության դեմ, արշավանք, որ հաճախ ընդունում է մասսայական բնավորություն, խմբական ոռնոցների կերպարանք և ինձ կտրում է իմ աշխատանքներից՝ աշխատանքներ, որոնցով իմ ուժերիս չափ կարող էի օգտակար լինել հայ ընթերցողին՝ ստությունները, զրպարտությունները, բամբասանքները հերքելու համար:

Սա մի զզվելի անհրաժեշտություն է դարձել ինձ համար: Բայց ինչ անեմ: Մեղավո՞ր եմ, որ հայ մամուլը բացի իմ անձնավորությունից ուրիշ նյութ չունի: Մեղավո՞ր եմ, որ դարձել եմ անխուսափելի նյութ լրագրական պարազիտներին կերակրելու համար: Ամեն ոչնչություն իր համար «գրական փառք» ստեղծել է ուզում ինձ վրա հարձակվելով: Մի անգամ չէ, տասն անգամ, քսան անգամ, տարիներ շարունակ, ասացին ու կրկնեցին, որ ես յոթանասուն և յոթանասուն անգամ յոթանասուն մեղքերի տեր եմ: Բայց և այնպես, չեն կարողանում առանց ինձ ապրել: Ողնածուծի բորբոքումից չորացած հայկական միտքը միայն մի ստեղծագործական կարողություն է ցույց տալիս՝ հայհոյել, անվանարկել ինձ:

Մեղավո՞ր եմ ես, որ այսպես է: Ի՞նչ կարող եմ ասել, որ իմ անամոթ թշնամիները չեն զգում, որ հասարակությունից միջոցներ են ստանում ոչ թե

իմ անձով զբաղվելու, այլ իմ գոյությանը պարազիտների պես կպչելու համար:

Այսպիսի հանգամանքների մեջ ապրող մի գրողին հայ ընթերցողը, անկասկած, չի զլանա ինքնապաշտպանության իրավունքի տեր համարել: Ես միայն ինքս ինձ պաշտպանողի դիրքում եմ եղել միշտ: Երբեք նախահարձակ չեմ եղել, լռել եմ, երբ լռել են իմ թշնամիները: Պատասխանել եմ հարյուրից մի անգամ, տասը հարձակվողներից մեկին: Պատասխանել ամենքին, պատասխանել ոհմակներին ֆիզիկապես անհնարին է մի անհատի համար:

Եվ վերջապես, ամեն մի կռանչոցի վրա ուշադրություն էլ չի կարելի դնել: Թե ինչպես է ստեղծվում կատաղի, փրփրած թշնամություն ինձ դեմ, դրա շատ պերճախոս օրինակը տալիս է ոչ թե լրագրական մի թաջիր կամ նույնիսկ թաջիրբաշի, այլ, ավա՜ղ, գիտության նվիրված մարդը, Պետերբուրգի դոցենտ պ. Առոնցը: Մեր ողորմելի իրականության այս փաստն էր պակասում, և ահա նա գալիս է բազմելու հայ մտքի նիհար կրծքի վրա իբրև մղձավանջ:

Անցյալներում ես «Հորիզոնի» մեջ (№№ 79, 80 և 81) պատասխանեցի պ. Առոնցի մի հոդվածին, որ տպված էր «Մշակի» մեջ ինձ դեմ և ցույց տվի, թե ինչ ձևերով է նա դուրս եկել ինձ դեմ: Այդ ձևերն ամոթալի էին ամեն մի, փոքր ի շատե բարեկիրթ ինտելիգենտ մարդու համար, ո՞ւր մնաց մի երիտասարդի համար, որ նոր է մտնում գիտության աշխարհը և որի համար առաջին գործը, պաշտամունքը պիտի լինի գիտական, ազնիվ, մաքուր գործունեությամբ անուն ու համբավ վաստակելը: Բայց պ. Առոնցը հրապարակական խոսքի դափնիներ հավաքելու համար գտել էր էժանագին միջոցներ՝ ծաղրել իմ վարժապետին, իմ ստացած դաստիարակությունը, նույնիսկ իմ գրքերը, ծաղրել ամենացած տեսակի սրախոսություններով, որոնք ընդունված կարող են լինել միայն գավեշտի և բալագանի աշխարհում:

Գրելով իմ այդ պատասխանը, ես քաշվեցի ընթերցողի առաջ բաց անել, թե ինչ դրդապատճառներ են ստիպել պ. Առոնցին այդ անհնարին դրության մեջ խորտակվել, թե ինչ տեսակ մանր-մունր կրքեր են նրան փոթորկելու հրապարակ նետել: Ես նույնիսկ պ. Առոնցի պատվի համար չուզեցի պատմել դրդապատճառները: Որքան և պարզ լինեին ինձ համար գիտնական պարոնի ներքին աշխարհը, բայցևայնպես, անկարելի համարեցի հրապարակել, թե ինչից է, որ ես այդքան կատաղեցրել եմ պ. դոցենտին:

Պ<արոն> Առոնցը պատասխանեց իմ այդ պատասխանին «Մշակի» մեջ շաբաթներ առաջ (№№ 115, 116, 117): Ես նոր միայն, երկու օր առաջ

կարդացի այդ պատասխանը: Եվ առաջին բանը, որ զարմանք պատճառեց ինձ, այն է, որ նա վերցրել ու պատմել է այն, ինչ ես, նրան խնայած լինելու համար զանց էի արել:

Եղածը եղած պրծած է: Եվ ինձ մնում է, հենց պ. Ադոնցի խոսքերով, պատմել, թե ինչ մանր-մունր կրքեր, սնեկոսներ, ինչ ծակ մարգարեություններ և, վերջապես, ինչ խղճուկ հասկացողություններ են նրան հասցրել «չիկացման» աստիճանին, до благо калевія, ինչպես ասում է ռուսը:

Այս պատմությունը կարևոր է մեր բարքերն ուրվագծելու համար, կարևոր է՝ ցույց տալու համար, թե ինչ է դառնում մեր իրականության մեջ, ինչ է դառնում նույնիսկ գիտության տաճարին ծառայող մարդը:

Անցյալ տարի կարոդիկոսական պայքարի միջոցին, պ. Ադոնցն իր մի բարեկամի միջոցով ուղարկել էր «Հորիզոն»-ի խմբագրության մի ընդարձակ հոդված: Ես կարողացա կարդալ նրա մի մասը միայն: Ամբողջը կարդաց խմբագրության անդամներից մեկը, որ և մանրամասն պատմեց բովանդակությունը: Եվ խորհրդակցությամբ վճռվեց չտպել այդ հոդվածը:

Պ<արոն> Ադոնցն ասում է, թե մինչև այդ ես և ինքը բարեկամներ էինք: Այո՛, գուցե և այդպես: Ավելի ճիշտ է նրա երկրորդ վկայությունը, որ մեզ երկուսին կապում էր սերը դեպի մեր ազգի անցյալը: Այդ սերը ինձ վրա պարտավորություն է դրել հրապարակավ իմ հիացմունքն արտահայտել պ. Ադոնցի բանասիրական գործունեության առիթով և համարել նրան հետզհետե աչքի ընկնող մի ուժ հայագիտության ասպարեզում: Հայոց ամբողջ մամուլի մեջ միայն ես եմ եղել, որ քանի անգամ շեշտել եմ այս հանգամանքը: Այդ համոզմունքի մեջ, իհարկե, մնում եմ և այս րոպեիս, պ. Ադոնցի կողմից կոպիտ և գռեհիկ ծաղրի ենթարկվելուց հետո: Ես պատրաստ եմ դարձյալ նույն ջերմ համակրությամբ վերաբերվել և այսուհետև պ. Ադոնցին, ամեն անգամ, երբ նրան կհաջողվի մի ուրիշ «Арменія въ эпоху Юстиніана»: Թող պ. Ադոնցը փորձե ինձ այս բանի մեջ:

Եվ այսպես, սեր դեպի անցյալը, որ կապում է մի մասնագետ պրիվատդոցենտի մի ինքնուս մարդու հետ: Անհնարին կլիներ այդ կապը, եթե մասնագետ պ. Ադոնցը չընդուներ իմ մեջ փոքր ի շատե հարգելի լավատեղյակություն մեր անցյալի վերաբերմամբ: Եվ քանի որ խնդիրը կաթողիկոսական ընտրության էր վերաբերվում, պ. Ադոնցը պետք է թույլ տար, թե ես իրենից մի քիչ ավել գիտեմ, քանի որ նրանից մի երկու շապիկ ավել եմ մաշել, քանի որ մեր կյանքի վերջին 30-40 տարիներն ինձ համար պատմություն չեն, որը ճանաչելու համար հարկավոր են հնագիտական խուզարկություններ, այլ մի կյանք, որ ապրել եմ ես, որին մասնակցել եմ,

որի մեջ նույնիսկ որոշ դեր եմ կատարել, ուրեմն և իմ սեփական կարծիքներն ունեմ կազմած:

Չեմ կարծում, որ պ. Արոնցն այնքան հեռու գնացած լինի, որ քաջություն ունենա պահանջելու, որ մեր երեկն ու այսօրը ճանաչելու համար հունական և լատինական բնագիրներ փորփրվեն ու մաշվեն:

Եվ ահա, իբրև այդպիսի մարդ, որ լավ ճանաչում է մեր նորագույն իրականությունը իբրև դեպքերի և դեմքերի ժամանակակից վկա, ես տեսա, որ պ. Արոնցի հոդվածը կաքողիկոսական հարցի մասին չէ գրված մի գիտնականին արժանի պարզությամբ և անկողմնապահությամբ: Հազար անգամ ուրախ կլինեինք, եթե գտնեինք գրվածքի մեջ խորհրդածության արժանի փաստեր, վավերագրեր, հարցի լայն պարզաբանություն: Այսպիսի առաքինություններից և ոչ մինը չկար պ. Արոնցի գործի մեջ: Էժանագին հոգեշահ խորհրդածություններ, փոքր ի շատե զարգացած մարդուն անվայել հափշտակություն ընտրելիներից մեկի անձով, մի խոսքով՝ ժամանակակից մի հրապարակախոս՝ օրմանն[յան]ական պաշտամունքով: Իբրև այդպիսին՝ պ. Արոնցն ըստ ամենայնի և համենայնի շոյում էր իր համախոհների գլուխը և հարվածում էր «Հորիզոնի» կողմնակիցներին: Անկողմնապահության և ոչ մի նշույլ: Ոչինչ իրավունք, ոչինչ հարգանք անգամ հակառակ աշխարհայացքի վերաբերմամբ:

Ուրեմն պ. Արոնցը այլևս Հուստինիանոսի նովելլաները պրպտող մի բանասեր չէր, որպեսզի համարեինք նրան որոշ չափով հեղինակավոր մի աղբյուր: Նա մի սովորական, առօրյա գրող էր, որին Հուստինիանոսի նովելլաները հազիվ թե առանձին իմաստություն սովորեցնեին: Երկնքից աստղեր նա չէր իջեցնում օրմանյանական դատին ի պաշտպանություն, այլ պարզապես կրկնում էր այն, ինչ հարյուրավոր վարիացիաներով ասել էին և ասում էին «Հովիտը», «Մշակը» և ուրիշները:

Amicus Plato, sod maqis amica veritas!

Պ<արոն> Արոնցի հոդվածը չտպվեց «Հորիզոն»-ի մեջ: Նա իսկույն կարգադրեց հանձնել հոդվածը «Մշակ»-ին, ուր և անմիջապես տպվեց, ինչ ասել կուզի ամենամեծ հաճությամբ: Տպվելու մոմենտից ստեղծվում էր «Հորիզոնի» համար իրավունք պատասխանելու իր դեմ ուղղած գրութեան: Սա այնքա՞ն պարզ է ու տարրական:

Եվ տպվեց պ. Մ.-ի հոդվածը: Պ<արոն> Արոնցը պատասխանեց, բայց ոչ թե Մ.-ին այլ ինձ, պատասխանեց կրքով կուրացած, անվայել գռեհիկ ձևով:

Ե՞ս ինչ գործ ունեմ մեջտեղ, հարցնում էի ես իմ անցյալ պատասխանի մեջ: Պ<արոն> Աղոնցը հիմա պատասխանում է իմ այդ հարցին: Եվ ահա այստեղ է բացվում երևույթի ամբողջ այլանդակությունը:

Նստած Պետերբուրգում, պ. Աղոնցը գուշակել է, թե ինչ կա «Հորիզոն»-ի խմբագրատանը: Ես եմ «Հորիզոն»-ի խմբագիրը, գլխի է ընկել նա: Ես եմ, ուրեմն մերժել իր՝ պ. Աղոնցի, գրվածքը և տպել Մ.-ի պատասխանը նրա դեմ: Այս հողի վրա էլ բռնկվել է նա ու պայթել, առանց աջ ու ձախ նայելու, առանց նույնիսկ տրամաբանական զսպանակներ որոնելու: Ամենասքանչելին կրքերի այդ վայրագ պարի մեջ այն էր, որ գիտությամբ ուռճացած, դիպլոմով հոխորտացող պարոնը ծաղրում է իմ գրքերը, առանց նույնիսկ կարդացած լինելու նրանց: Իմ վերաբերմամբ անգրագետ պ. Աղոնցը միայն կարող էր պնդել այնքան ծիծաղելի կերպով, թե պ. Մ.-ն ինձանից է սովորել պատմությունը, թե իմ և նրա աշխարհայացքների մեջ հոգեկան կապ կա, նմանողություն, հարազատություն և էլ ինչ իմանամ թե ինչ: Գիտնական տգիտություն, որ այսօր իր երկրորդ պատասխանի մեջ պ. Աղոնցը քրտինք է թափում մի կերպ պարտկել:

Ահա պատճառը, թե ինչու պ. Աղոնցը հանկարծ, զահավիժորեն, իմ «բարեկամից» դարձավ իմ անզուսպ թշնամին:

Նախ և առաջ պիտի ասեմ, որ ես «խմբագիր» բառիս իսկական իմաստով և միանձնյա ղեկավարի հասկացողությամբ ես չեմ եղել և չեմ: Եթե լինեի, իմ անունը կլիներ դրված թերթի տակ, ինչպես 1910 թվին: Այսպիսի պաշտոն տանելու ֆիզիկական հնարավորություն ես չունեմ, հենց այն պատճառով, որ անկարող եմ կարդալ բոլոր այն նյութերը, որոնք տպվում են լրագրի մեջ: Խմբագրական կազմով աշխատելու սկզբունքն է տիրում «Հորիզոն»-ի խմբագրատանը և շատ են այն դեպքերը, երբ հոդվածները տպվել են ոչ միայն առանց իմ հավանության, այլև առանց իմ գիտության:

Բայց հենց դատենք, թե ես իսկական խմբագիր էի կամ եմ: Մի՞թե սա պատճառ է, որ պ. Աղոնցը փոխանակ գործ ունենալու իր գրվածքը քննադատող Մ.-ի հետ, վերցնե ու ծաղրե իմ հեղինակությունները, իմ խեղճ վարժապետին: Ամոթ ու ցավ է այսպիսի մի հարց ուղղելը մի մարդու, որ համալսարանական ամբիոն ունի, բայց որ մամուլի մասին իր ունեցած հասկացողություններով չի տարբերվում լրագրական բաջիրներից ու բաջիրբաշիներից: Սա միայն մեր բարքերն է բնորոշում, սա միայն ցույց է տալիս, որ մեր բարոյական անկման մեջ գիտությունը, ամբիոնն անգամ կանգնեցնողի, զգաստացնողի դեր չէ կատարում, այլ փութացնողի, խրախուսողի դեր: Ո՞ւր գնանք մեր այս անողորմ բախտի հետ:

Ինչևիցե: Ճակատագիրը, եթե միայն այսպիսի փաստերով է մեզ հարվածում, ի՞նչ կարող ենք ասել: Գոհ լինենք գոնե նրանով, որ հայ գիտունը իր բերանով է պատմել այս բոլոր ամոթը, պատմել է հայ հրապարակին և երբեք չի հանդգնի ցույց տալ իր այդ պարտքը իր օտարազգի պաշտոնակիցներին, որոնք միևնույն համապատասխան հարկի տակ են խմբվում:

Մխիթարվենք գոնե այսքանով և առաջ գնանք:

Իմ առաջին պատասխանը բոլորովին ապարդյուն չի անցել պ. Աղոնցի համար:

Իր երկրորդ պատասխանի մեջ նա արդեն բավական զսպել է իրեն: Գոնե թողել է գռոշանոց ֆելիետոնական ձևերը, գրքերի վերաբերմամբ ծամածռություններ անող և լեզու ցույց տվող չէ: Բայց վատ ոճից, իհարկե, ձեռք վերցնել չէ կարողացել: Սկսում է նա նախ և առաջ իր սիրտը հովացնելով, ուստի ինձ դեմ ուղղել է ամենաթքուն գռեհարներն իր կրքերի բառարանից, «իր մտքի սովորական ջուրը ողողել է լականքով», ավելի խղճություն, արգահատանք, քան զայրույթ են հարուցանում նրա տղայական ոստոստումները, վատույժ միտքը ամբարհավանության և անգիտության ճիրաններում, «անմաքուր բերանի ապօրինի բերքը» և այլն և այլն:

Ինչո՞ւ համար է պ. Աղոնցը «ստեղծագործել» այս հայհոյական գեղգեղանքները: Որ ինձ ցույց տա, թե կիրքը իրան ի՞նչ աստիճանի կարող է հասցնել: Ավելորդ քափ ու քրտինք, քանի որ ես առանց այդ էլ գիտեմ, որ կիրքը ընդունակ է նրան մոռացնել տալ նույնիսկ դոցենտի պատիվն անգամ: Թե ուզեցել է ինձ վիրավորել: Դարձյալ իզուր: Դատարկ խոսքերը, սնամեջ, անբովանդակ խոսքերը ինչպես ասում է մեր ժողովուրդը, թռչուններ են, որոնք վերադառնում են իրենց բույնը: Այդ բոլոր դատարկաբանությունները ես ամբողջությամբ վերադարձնում եմ պ. Աղոնցին, որ զատե իր գիտնական մաղախի մեջ: Նրանք ինձ ոչինչ ասել չեն կարող: Նրանք միայն կարող են ամոթ և նախատինք դառնալ նրա համար գիտության այն տաճարում, որին նա ծառայում է:

Կա ավելի վատը, որ եթե գրչի սխալ չէ, եթե կրքոտության բռնկումից չէ առաջացել, կարող է մի ուղղակի սպանիչ վկայություն դառնալ նույն գիտության տաճարի սպասավորի համար: Ես կարդում եմ պ. Աղոնցի տողերի շարքում հետևյալը. «Հանկարծ ներս է սոքում պ. Լեոն»: Սա նշանակում է, թե ես ինքս եմ, առանց հրավերի ու պատճառի, խառնվել նրա պոլեմիկայի մեջ: Ապշեցուցիչ բան: Այդ բանը սովորական լեզվով կոչվում է անբարեխղճություն: Ի՞նչ կնմա մի գիտնականից, եթե նա զրկվի և բարեխղճու-

թյունից: Փոշի միայն: Թող բանասիրության Աստվածը պահպանե պ. դոցենտին այս վիճակից:

Ժամանակն է, սակայն, որ թողնենք պ. Աղոնցին իր մանր-մունր կրքերի և նրանց թելադրած տգեղ արարքների հետ: Ժամանակն է տեսնել նրան արդեն փոքր ի շատե լրջամիտ հակաճառողի դերում:

Այսպիսի դեր էլ է ստանձնել պ. Աղոնցն իր երկար, մեծ պասի չափ երկար հոդվածում: Սրտամաշ, տխուր գործ է պատասխանել մի գիտնականի դատարկ խնդրծանքներին, անձնական փոքրիկ հաշիվներին: Ես տհաճությամբ կատարեցի այդ բանը: Բայց այժմ հաճությամբ անցնում եմ նրա հոդվածի այն մասին, ուր գտնում եմ փաստեր, դատողություններ, արծանագրված փոքր ի շատե տանելի, մարդավայել լեզվով:

## II

Իր երկրորդ պատասխանի մեջ պ. Աղոնցը ընդգրկել է մի ուրիշ վատ պոլեմիկական դարձվածք - արհամարհել, ծաղրել ուրիշների գլուխը: Նա ասում է, թե ես ցույց տվի «որ կան անփույթ գլուխներ, որոնք մարմնի թանկագին մասերից չեն»:

Իր այս խոսքերով պ. Աղոնցը ցույց է տալիս, թե նա չափազանց սիրահարված է իր սեփական գլխի վրա և անշուշտ համարում է նրան իր մարմնի ամենաթանկագին մասը:

Տեսնենք, թե ինչ է տալիս այդ գլուխը:

Պ<արոն> Աղոնցը զանգատվում է, թե առօրյա, ժամանակակից հարցերի մեջ բերում - խառնում են պատմությունը: Այդ վատ է, նրա կարծիքով, երբ անողը ես եմ: Այդ լավ է և նույնիսկ գովելի, երբ անողը պ. Աղոնցն է:

Նա էր և ուրիշ ոչ ոք, որ հաղթանակորեն հայտարարում էր, թե չպետք է հանդգնել վատաբանել այն հոգևորականներին, որոնց ամբողջ ոժբախտությունն այն է, որ ընտրված են եղել ազգի կողմից: Եվ իբրև օրինակներից մեկը, նա տալիս է Չամիչյանի անունը:

Սա պատմություն է և ոչ թե «Հազար և մեկ գիշերներ»-ի անուններից մեկը: Ես, հիմնվելով նույն պատմության վրա, ասացի, թե Բարթողիմեոս Չամիչյանը, համենայն դեպս, ընտրված պատրիարք լինելու «դժբախտությունը» չէ ունեցել: Պ<արոն> Աղոնցը, գլուխ կորցրած այս ճշմարտությունից, պատեպատ է ընկնում և ինձ հարցնում է. «Ո՞վ էր Չամիչյանը, արդյոք սուլթանի կողմից ճշանակված կավաս էր պատրիարքարանում»:

Այո՛, ճիշտ և ճիշտ այդպես, պատկառելի պ. դոցենտ: Չգիտեի՞ք այդքանն էլ: Ժամանակը շատ է մոտ և դեռ չէ կարողացել արձանագրվել

հունական կամ լատինական հատակոտորների մեջ: Բայց նա շատ պարզ արձանագրված է հայերեն աշխարհաբար լեզվով մամուլի մեջ: Չամիչյանը եղել է պատրիարքական տեղապահի, ավելի ճիշտ՝ պատրիկ Գայմազամը: Այսպես էին նրան անվանում: Ինչո՞ւ:

Բարեհաճեցեք կարդալ «Մշակ» լրագրի 1896 թվականի 89-րդ և 92-րդ համարները և այստեղ դուք կտեսնեք ամենայն մանրամասնություններով և պաշտոնական փաստաթղթերով պատմված հետևյալը. Իզմիրլյանին հայ փաշաների, էֆենդիների, տերտերների միջոցով ստիպել տալով հրաժարվել, սուլթան Համիդը պետական մի հարվածով ջնջեց պատրիարքարանի Խառը ժողովը, որ ընտրված էր օրինավոր կարգով, ըստ սահմանադրության, Ազգային Ժողովի կողմից: Այդ Խառը ժողովը դեռ վեց ամիս ուներ պաշտոնավարելու. Համիդի իրադեն լուծարեց նրան և նշանակեց մի շարք աշխարհականներ և հոգևորականներ, որոնք և Սադրազամի կողմից հրավիրվեցին պատրիարքարան՝ տեղապահ «ընտրելու» համար: Տխրահռչակ Նուրբան էֆենդին, որ Իզմիրլյանի ժամանակ հեռացված էր ազգային գործերից, նորից իր սուլթանապաշտ դերի մեջ մտավ և սուլթանի կողմից նշանակված ժողովին «կայսերական իրադե կա» խոսքերի սհաբեկիչ ուժով «ընտրել» տվեց իր նմանին, իր սիրելիին, Չամիչյանին: Չամիչյանն այնքան էր ձուլված Նուրբանի հետ, որ «Биржевыя вѣдом.» լրագրի թղթակիցը Չամիչյանին Նուրբան էր անվանում:

Այո՛, Չամիչյանը Համիդի ձեռքով նշանակված մի կավաս էր պատրիարքարանում: Ազգը ոչ միայն չէր ընտրել նրան, այլև իրապես ատում էր և անվանում էր նրան Բարբողիմեոս էֆենդի, պատրիարք Գայմազամի, ամենևին չմտածելով, թե որքան դրանով պիտի վրդովմունք պատճառե եկեղեցականասեր պ. Աղոնցին: Ինքը՝ Չամիչյանն էլ գիտեր, թե ընդհանուր արհամարհանքի առարկա է և այդ խոստովանել է «Бирж. вѣдом.»-ի թղթակիցներին (տե՛ս № 230, 1896 թ.):

Արհամարհանքի պատճառները մենք կարող ենք իմանալ նույն ռուս թերթի երկու թղթակիցներից՝ Օսիպով և Յուրի Կազիբեկը, որոնք ամենայն անկողմնապահությամբ նկարագրել են իրենց տեսակցությունը Նուրբան (իմա՝ Չամիչյան) պատրիարքի հետ: Ես կբավականանամ միայն մի կտոր առաջ բերելով այդ նկարագրությունից: Պետք է մոռանալ, որ տեսակցությունը տեղի է ունեցել 1896-ի օգոստոսին, երբ ամբողջ Հայաստանը լողում էր արյունի մեջ, Կ. Պոլսի կոտորածների նախօրյակին:

- Ձեզ,- ասում է Չամիչյանը թղթակիցներին,- հետաքրքրում են հայկական անկարգությունները. չե՞ք հաճի արդյոք լսել իմ բերանից, թե այդպիսի անկարգություններ չկան:

- Ինչպես: Իսկ լրագրական տեղեկատվությունների՞ը, ականատեսների պատմությունների՞ը:

- Այդ լրագիրները արժանի չեն նույնիսկ ամենափոքր վստահության, որովհետև այդ բոլորը չափազանցրած է և բացի ստից ու հնարածից՝ նրանց մեջ ոչինչ չկա:

- Բայց, Ձերդ երանություն, ինչքան էլ հնարեին լրագիրները, հո չեն կարող ստեղծել հազարավոր դիակներ, որոնք թափված են գյուղերի մեջ:

- Իսկ ո՞վ է տեսել այդ դիակները,- հարցրեց պատրիարքը:

- Ես, Ձերդ երանություն,- ասաց Կազիբեկը,- այն էլ ոչ հեռու, քան մի քանի օր առաջ, Ախմարի գյուղում: Այն, ինչ վիճակվեց ինձ տեսնել, հավատացեք, գերազանցում է լրագիրների բոլոր նկարագրությունները:

Տիրեց մի անախորժ լռություն: Պատրիարքը շուռ եկավ իր բազկաթոռի մեջ և սկսեց նայել պատուհանին:

- Ես չեմ ժխտում,- սկսեց նա,- թե հայկական անկարգություններ բոլորովին չկան, բայց նրանց այդպիսի նշանակություն չեմ տալիս: Մի ամբողջ շարք առանձին, փոքրիկ ընդհարումների, որոնք հեռվից խառնվում են մի մռայլ ամբողջության մեջ: Մի տեղ անկարգությունը անձնական անբավականության հետևանք է, մյուս տեղ ունի տնտեսական պատճառ, երրորդ տեղը՝ դիմադրություն իշխանությունների պահանջներին և այլն: Բայց ինչո՞ւ այս բոլորը նկարել մի գույնով, ինչո՞ւ այս բոլորին տալ ընդհանուր բնավորություն: Ահա, ըստ իս, մամուլի սխալը այս է: Վերջապես, եթե մատնացույց են անում զոհերի ահագին քանակությունը, դարձյալ չէ կարելի թուրքերին շատ մեղադրել: Ռուսք չպիտի մոռանաք կուլտուրայի այն աստիճանը, որի վրա նրանք կանգնած են, ուստի պիտի լինիք ներողամիտ դեպի նրանց*:

Ահա ինչ տեսակ մարդու համար է պ. Աղոնցը հարգանք և պատիվ պահանջում լոկ այն պատճառով, որ նա եկեղեցական է:

Թող այս անկարելի և անհնարին քաջությունը լինի Պետերբուրգի դոցենտի միակ պարծանքը: Ոչ ոք մեղավոր չէ: Նա ինքն է իր համար այդ վիճակն ստեղծել:

Ես գիտեմ պ. Աղոնցը հրապարակ կնետվի, զանազան սոփեստություններով ու իմաստակություններով ապացուցելու համար, թե Չամիչյանի արարքները բարձրագույն քաղաքականության առաքինություններ են: Արդեն օրմանյանականների վիճակն այդ է՝ արդարացնել ամեն մի հրեշավոր երևույթ, պանծալի դարձնել ամեն մի արատ: Բայց հայ ժողովուրդը

---

* «Бирж. вѣдом.», 1896, № 230.

տառում և արհամարհում էր Չամիչյանին՝ ի՞նչ անենք, որ հայ ժողովուրդը չուներ պ. Աղոնցի գլուխը: Դա նրա համար մեղք չէ, այլ նույնիսկ պարծանք էլ է:

Պ<արոն> Աղոնցը, անկարող լինելով իր սեփական ուժերով պաշտպանել ընտրված հոգևորականներին ամեն դեպքում պատվելու իր միջնադարյան խավար պատվիրանը, վկա է կանչում Ներսես պատրիարքին: Ջուր սակայն: Ներսեսը ուրիշ շատ բաներ ունի ասած, որ չպիտի ասած լիներ հենց իր պատվի համար: Երկրորդ, հարց է՝ եթե Ներսեսը 1896-ին դուրս գար գերեզմանից, տեսներ Հայաստանի դաշտերում փռված բյուրավոր դիակները, տեսներ և այդ դիակներն ուրացող Չամիչյանին, որ օտարների ներողամտությունն էր հայցում դեպի դահիճները, կհավանե՞ր արդյոք այդպիսի մարդուն, կպատվե՞ր նրան: Պ<արոն> Աղոնցին մնում է դրական պատասխան տալ այս հարցին, և այն ժամանակ «ամենայն ինչ կատարյալ» կլիներ:

Որքա՜ն լավ բան արած կլիներ պ. Աղոնցը, եթե չխոսեր իր չիմացածի մասին:

Ես չեմ ասում, թե նրա չիմացածը միայն մեր նորագույն, ժամանակակից պատմությունն է: Նա տարօրինակ, եթե ավելին չասենք, հասկացողություն ունի և հին պատմության մասին, այն առարկայի մասին, որ նրանից կարգին – շնորհքին ծառայություն է սպասում դասատվի ամբիոնի վրա:

Բայց նախ տեսնենք պ. Աղոնցին Նալբանդյանի հարցի մեջ:

Պարոնը իր առաջին պատասխանում, ինձ և ինձ պես մտածողներին խորտակելու համար, բերել էր մի հատված, որի մեջ Նալբանդյանն ասել է, թե հայ ազգության պահպանողը եկեղեցին է: Ես բերի նույն Նալբանդյանի գրվածքներից մի շարք ցիտատներ՝ ապացուցելու համար, թե Նալբանդյանը միայն պ. Աղոնցի արտագրածը չէ ասել, այլ և շատ ուրիշ բաներ, որոնք նախ ցույց են տալիս, թե ինչպես էր նա հասկանում եկեղեցի բառը և երկրորդ՝ թե ինչպես նա հետո միանգամայն դեն ձգեց եկեղեցին ազգության պահապանների շարքից:

Իմ նպատակն էր և կարող էր լինել միայն ցույց տալ, որ պ. Աղոնցը «անգրագետ բանաքաղություններ» է անում, շահագործում է իրեն ձեռնտու կտորները և լռության է մատնում անձեռնտուները: Զբաղվել Նալբանդյանի այն գործերի գնահատումով, որոնցից ես կտորներ էի բերել, իհարկե, չէի կարող: Ինձ հետաքրքրողը լոկ փաստական կողմն էր: Փաստերով ցույց տալ, որ անբարեխղճությամբ են շահագործում մի հեղինակի, սրանից ավելի գործ չունեի ես կատարելու:

Բայց իմ այդ գործը շատ նեղն է լծել իմ դյութաբորբոք հակառակորդին: Ինչ ասի, որ լավ լինի իր համար: Ամեն ինչ արել է և ամեն ինչ անելու տազնապը, Աստված իմ, որքան արգահատելի դրություն է ստեղծել գիտությամբ ուռճացած «քաբեկամիս» համար:

Առաջ ու առաջ նա աշխատում է, ինչպես ասում են, խոսքը կտուրը գցել, կուլ է տալիս ամբողջ մեծ-մեծ կտորներ, մի երկու բառերի պոչից է բռնում, չեղած համարելով Նալբանդյանի պարզ ու բացարձակ հայտարարություններր: Տեսնում է, որ բան չի դուրս գալիս, կատաղած ինձ վրա է հարձակվում և ասում է, որ Նալբանդյանի գրած տողերի մեջ Նալբանդյանի մտքերը չեն աղավաղված, այլ... [illegible]իս, որ Նալբանդյանը չէ մեղավոր, ասելով, թե եկեղեցին ժողովուրդն է, իսկ հոգևորականները նրա սպասավորներն են, այլ ես եմ մեղավոր: Անհեթեթությունն ակներև է, և պ. Աղոնցը զարնվում է մյուս պատին՝ սկսում է քննադատել Նալբանդյանին, ասում է, որ նա կրքոտ մարդ էր (հեռո՜ւ լինի կրքոտությունը պ. Աղոնցից), որ նա խիստ շատ բան էլ չգիտեր: Ապա գալիս է երրորդ պատը և նրան էլ զարնվում է պ. Աղոնցը, հավատացնելով, թե իր բերած ցիտատն է հարազատորեն ներկայացնում Նալբանդյանին, իսկ իմ բերածները չգիտեմ ինչ են:

Մի փոքրիկ հարցի շուրջը այսքան ոստոստյուններ: Պարոնը աշխատանք է թափում, որ իր ետևից վազող չլինի, բռնող չլինի: Բայց ի՞նչ կարիք կա վազելու, երբ նա ինքն է իրեն բռնում, ինքն է իրեն ջարդում ոչնչացնում:

Արժե՞ ամեն մի անհեթեթության պատասխանել: Չարժե:

Բավական է, որ ես ցույց տամ, թե ինչ տեսակ ըմբռնողության տեր է մեծ-մեծ ջարդող պարոնը:

Նալբանդյանը,- ասում է նա,- Հայոց եկեղեցու դպիր էր և, ուրեմն, չէր կարող ուրիշ դավանանք ունենալ, բայց միայն «արտաքոյ Հայաստանեայց Առաքելական եկեղեցւոյ չի՛ք հայութիւն»: Իսկ եթե նույն այդ եկեղեցական դպիրը Բակունինի և Գերցենի ընկե՞րն է դառնում: Պ<արոն> Աղոնցը այսպիսի բան չի ընդունում: Մարդը նրա համար մի քար է, որ արգանդից ընկնում է գետին, առանց առաջ կամ հետ շարժվելու կարողության, առանց այսօր խիստ պահպանողական, վաղը ազատական Գլադստոն լինելու, առանց այսօր ուխտյալ միապետական, վաղը ոգևորված հանրապետական Վիկտոր Հյուգո և այլն և այլն ... լինելու:

Նալբանդյանն այսօր Մոսկվայում ասաց, թե հայ է միայն լուսավորչականը: Վաղը նա գնում է Կ. Պոլիս և տեսնում է որ չէ՛, այդպես չէ եղել բանը: Տեսնում է սքանչելի հայեր, բայց ոչ լուսավորչականն՝ մի Պեշիկթաշլյան, օրինակ, որի նման ոչ մի լուսավորչականն չէ երգել գեյթունցի կտրիճին: Մի Հեքիմյան, օրինակ: Եվ ամբողջ այն պատվական երիտա-

սարդությունը, որ լինելով hանդերձ օտարադավան, սուրբ ոգևորությամբ լցված աշխատում է, hայ hայրենիքի, hայ ժողովրդի hամար: Եվ տեսնելով այդ լուսաշաղախ երևույթը, այդ գեղաժպիտ hորիզոնները, Նալբանդյանը, ըստ պ. Արոնցի լոգիկայի, չէր կարող փոխվել, չէր կարող բաժանվել իր տիրացվական դավանանքից:

Մարդկային գաղափարների պրոգրես չկա: Մարդը խելամտել, զարգանալ, նոր ավազաններում մկրտվել չունի: Այսպես է պ. Արոնցի ըմբռնողությունը, ի՞նչ արած:

Եվ քոր նա տեսնում է, որ «Երկրագործության» մեջ չարենց որպես [illegible] hիշատակվում եկեղեցին իբրև ազգության պաhապան, սոփեստությունների և ծակ փիլիսոփայությունների մեջ է ընկղմում այդ զգլխեցուցիչ երևույթը hօգուտ իր երևելի գաղափարը բացատրելու hամար: Նալբանդյանը,- ասում է նա,- «Երկրագործության» մեջ միայն տնտեսական խնդիրն է նկատի առել: Ողորմելի առարկություն: Իսկ լեզո՞ւն: Սա է՞լ տնտեսական խնդիր է: Եվ սակայն նա էլ hիշված է իբրև ազգություն պաhպանող ուժ:

Ես իմ առաջին պատասխանում ասել եմ, որ պ. Արոնցը զարմանալի hաջող կերպով իր սեփական կերպարանքն է նկարագրում ուրիշին վերագրած hատկություններից մեջ: Ես բազմաթիվ փաստերով՝ ցույց տվի, որ «անգրագետ բանաքաղը» hենց ինքն է: Հիմա էլ նա ինձ ասում է, թե ես քաղվածքները բերում եմ ինչպես տիրացուն սաղմոսից: Զարմանալի ճիշտ է այս պ. Արոնցի վերաբերմամբ: Իր hամար փրկության խարիսխ է դարձել մի երկու խոսք և բացատրում է նրանց ինչպես ինքն է ուզում, մի կողմ նետելով ամբողջ աշխատությունը, որ սկզբից մինչև վերջ ցուցադրում է hայրենիքի, hողի նշանակությունը ազգային գոյություն պաhպանելու մեջ: Ահա hեղինակն ասում է. «Ազգությունը ապրում է, թե նրա մեջ կա արտաքին, ավերիչ ուժերի hավասարակշիռ զորություն. երբ ինչ է այդ զորությունը մենք hետո կխոսենք» (եր. 88): Եվ hետո ասում է. «Երբ ազգության ներքին և էական խորhուրդը չէ տնտեսական խնդիրը, անիմն է այդ ազգությունը, սուտ է այդ ազգությունը, և նա կկործանվի: Տնտեսական խնդիրն է այն զորությունը, որ մի փոքր առաջ խոստացանք անվանել» (եր. 101): Պարզ է, կարծում եմ:

Բայց պ. Արոնցը պարզ բանը պարզ կերպով hասկանալու hոժարություն չունի: Հողն է, որ ազգություն է պաhպանում, ըստ Նալբանդյանի: Խոսքը պաhպանության մասին է: Իսկ պ. Արոնցն ուզում է ապացուցել, որ hողը ազգություն **չի ստեղծում**: Ո՞վ է խոսել ստեղծելու մասին: Եվ կարո՞ղ է ասել պ. Արոնցը, թե hենց իր եկեղեցին ազգ ստեղծող ուժն է... Եվ դեռ նա է ինձ անվանում բերավարժ:

Պարծենալ այսպիսի ըմբռնողությամբ կամ խոսելով պ. Աղոնցի ժարգոնով, պարծենալ այսպիսի գլխով, բոլորովին չարժե:

Սակայն գոհարները դեռ առջևում են...

## III

Զախլիկ ու ծախորդ ըմբռնողությունից է և այն, որ պ. Աղոնցը սարսափահար է դառնում «կղեր», «կղերականություն» անուններից: Սրանք, այս անունները, պատվելի պարոնի հասկացողության մեջ նշանակում են աղետ ու խորտակում, նշանակում են ոչնչացնել հոգևորականների գոյությունը: «Վռնդել հոգևորականներին եկեղեցուց»: Եվ պ. Աղոնցը ճղակտուր է դառնում հայկական ազգը այսպիսի մի կատաստրոֆայից ազատ պահելու համար:

Ես, իբրև մի մարդ, որին պ. Աղոնցի վախեցած երևակայությունը հատկացնում է ոչ-արհամարհելի մի դեր այդ տեսակ մի աղետ պատրաստելու մեջ, կարող եմ հանգստացնել նրան, որ «կղեր», «կղերականություն» դեռ այդ սարսափները չեն պարունակում իրենց մեջ: Նրանք իրերի և դրությունների անուններ են պարզապես:

Ոչ ոք չի ասել և չի ասի, որ եթե կա եկեղեցի, նրա մեջ կարող է և չլինել հոգևորականություն: Պ<արոն> Աղոնցը թող սրբե իր աչքերից վախի ու սարսափի բռնությունը և կարդա սառնասրտությամբ: Եթե մի քիչ էլ կարողանա օգնության կանչել այն պատմությունը, որի անունից պատգամներ է արձակում, այն ժամանակ կտեսնի, որ ծուլ-ծուլ լինելու ո՛չ մի առիթ ու անհրաժեշտություն չկա:

Ամեն մի կազմակերպված եկեղեցի, լինի նա թեկուզ հեթանոսական, թեկուզ նախնական, հենված է այն սկզբունքի վրա, թե աստվածությունը գործում է աշխարհի վրա եկեղեցականության, քահանայության միջոցով: Ամեն մի կազմակերպված եկեղեցու մեջ, լինի դա Քաղդեայում, թե Եգիպտոսում, հեթանոս Հայաստանում, թե Իրանում, կղերը, Աստծո պաշտոնյան, տիրող է, իշխանապետ է հանուն տաճարի, որ Աստծո տունն է, հանուն Աստծո, որ թեև երկնաբնակ է, բայց կարգադրություններ է անում երկրի վրա:

Սա կոչվում է կղերական սկզբունք, կղերական աշխարհայացք: Ամեն մի եկեղեցի կղերական է գերազանցորեն: Դա մի ամբողջ պետություն է, որ վարչական ու տիրապետական կարգեր վերցնում է աշխարհական միապետությունից: Երկուսը՝ թե՛ աշխարհականը և թե՛ հոգևորը, մի են ոգու, սկզբունքների տեսակետից: Օզիրիսին և Ռային երկրպագող Եգիպտոսն

ունի քահանայական ուժեղ կազմակերպություն՝ վանքեր, միաբանություններ, որոնք եկեղեցու զորքն են, քրմապետներ, որոնք հոգևոր միապետներն են, այնքան ուժեղ, որ կարողանում են նույնիսկ գահից ցած գլորել աստված-փարավոնին:

Քրիստոնեական եկեղեցին յուրացրեց նույն կազմակերպչական ոգին: Ամբողջ Միջնադարը մի իղեալ ուներ՝ «Աստծո թագավորությունը այս աշխարհի վրա»: Եվ այդ թագավորությունը դարձյալ Աստծո պաշտոնյաների և փոխանորդների տիրապետության միջոցով է «իրագործվում»: Աստծո պաշտոնյան տեր ու հրամանատար է ամեն տեղ՝ դաստիարակության, գիտության, գրականության, քաղաքականության, օրենսդրության, պետական կյանքի, ընտանեկան կյանքի մեջ: Նա դատավոր է, բանտ ու խարույկ ունի, նրա ուժից սարսափում է նույնիսկ աշխարհական միապետը: Հովհան Ոսկեբերանը, սուրբի հորջորջումով պատված երախտագետ եկեղեցու կողմից, պերճորեն ապացուցում էր, թե քահանան բարձր է աշխարհական իշխանավորից և խույրը գերազանց է թագից:

Սա կղերականությունն է: Հին աշխարհը և միջնադարը պարծենում էին այդ անունով: Դա փառք էր և ոչ ամոթ կամ վիրավորանք: Եվ այդպես էլ պետք է մնար, եթե չփոխվեին կյանքի պայմանները, եթե աշխարհայացքը անշարժ մնար:

Բարեբախտաբար այդպես չեղավ: Իրար պահպանող, իրար վրա հենված ջուխտ միապետությունները՝ կղերական և աշխարհական, խախտվեցին. կրոնական և քաղաքական հեղափոխությունները կանգնեցրին հին կյանքի և պաշտամունքի հաղթական ընթացքը, խրամատներով բաժանեցին հին կյանքը նորից, որից եթե հարկավոր էր պահել «Աստծու թագավորություն» այս աշխարհի վրա, այդ հենց կրոնական և աշխարհական բռնակալությունների տապալումն էր և նրանց տեղ ժողովրդի վեհապետական իրավունքների բարձրացումը:

Մենք պատկանում ենք այդպիսի խրամատներով բաժանված նոր մարդկության ու մեզ համար կղերական աշխարհայեցողությունն երևույթ է, պատմություն է, միանգամայն օրինական իր ժամանակի, իր սահմանների մեջ, բայց ոչ երբեք իղեալ մեր ներկա կյանքի համար: Մենք կուսումնասիրենք հին կյանքն ամենայն ուշադրությամբ և հետաքրքրությամբ, իբր մարդկային մտքի սեփականություն: Մենք կհիանանք մի Քեոփսի բուրգով, բայց երբեք չենք կամենա, որ մեկը մեր օրերում այդպիսի մի դամբանական կառուցե: Մենք ուժի, եռանդի վկայականներ կտանք Գրիգոր Է-ին, բայց, այսօրվա մեր կյանքի գաղափարով լցված, ջերմապես կծափահարենք մի

բունն հայ կաթոլիկ ժողովրդին, որ հերոսական ջանքեր է անում՝ տապալելու Թերզյանի պես մի բռնակալ կղերականի:

Մեզ համար թանկագին է այդ հերոսական պայքարը հենց այն պատճառով, որ կաթոլիկ հայ համայնքը չի գործադրում պ. Արոնցի միջնադարյան խրատը՝ պատվել նույնիսկ ոճրագործ հոգևորականին: Ճիշտ է, պ. Արոնցը կարող է ասել, թե իր երևելի ազգային թեորիայի տեսակետից Կ. Պոլսի կաթոլիկ հայերը հայ չեն, քանի որ նրանց ազգությունը պաշտպանողը Հայաստանյայց առաքելական եկեղեցին չէ, բայց պ. Արոնցի «տաբու»-ն, հավատացած ենք, ոչինչ անհանգստություն չի պատճառի հայ կաթոլիկներին: Հին կոշմարը թե «արտաքոյ Հայաստանեայց եկեղեցւոյ չիք հայութիւն» վաղուց ջարդված է, վաղուց դադարել է ազգային աղետ լինելուց, և ջարդողներից մեկը եղել է հենց այն լրագիրը, որ մի ժամանակ, երբ չէր կարող երդվել իր «անկման խայտառակությամբ», հալածում էր պ. Արոնցի գաղափարական հայրերին ու պապերին, իսկ այժմ, երբ ամեն օր երդվում է «անկման խայտառակությամբ», պարծենում է Արոնցներով...

Այսպես է իրողությունը: Հինը և նորը այսպիսի հարաբերություններ ունեն իրար մեջ: Հինը դեռ շատ է աշխատում լցնել անցրպետող խրամատները և պ.պ. Արոնցների միջոցով իր հոսանքները մտցնել նորի մեջ: Բայց այդ փորձերը այլևս վտանգ չեն սպառնում մարդկության... Ճանաչողություն կա: Եվ երբ մի պ. Արոնց XX դարում իղեալ է դարձնում Չամիչյանների հասարակության դատարանից բարձր համարել, լոկ այն պատճառով, որ հանցավորները հոգևորականներ են, մենք նրա մեջ տեսնում ենք տիպիկ և նեղսիրտ մի կղերականի: Եվ երբ նա օծիք է պատռում ապացուցելու համար, թե հոգևորականներին միանձնյա իշխանությունից զրկելը նշանակում է նրանց վռնդել եկեղեցուց, մենք ասում ենք՝ ահա մի մարդ, որի մեջ խոսում են Հովհան Ոսկեբերանի ժամանակները*: Էլ ինչո՞ւ վրդովվել, ինչո՞ւ ծուլ-ծուլ լինել: Անկեղծ միապետականը, անկեղծ քրմապաշտը, որոնք չեն թաքցնում իրենց հիացմունքի և ոգևորության աղբյուրները, տասնապատիկ հարգելի են այն տեսակ պարոններից, որոնք քարոզում են կղերականություն, բայց ասում են, թե դա կղերականություն չէ, որոնք այդպիսի մի քարոզության համար պատրաստ են նահատակել թե՛ լոգիկան, թե՛ իրողությունները...

---

* Պ<արոն> Արոնցը, արդար լինենք, մի փոքրիկ զիջում, այնուամենայնիվ, անում է: Նա ընդունում է, որ ազգը իրավունք ունի դատելու, «բայց ոչ պ. Լեոն և նման ազգային դատախազները»: Համոզված եմ, որ պ. Արոնցը իրեն չի զրկի դատելու իրավունքից, և երբ հարցը իրեն գա, չի էլ թույլ տա, որ կասկածի ենթարկվի նրա կատարյալ և ազատ իրավունքը: Սա սինեդրիոնի, ինկվիզիցիական տրիբունալի հայացք է և ոչ թե XX դարի պետական մարդու դավանանք:

Պ<արոն> Արոնցը զայրանում է, թե ինչու Նալբանդյանը հարյուրավոր մեղադրանքներ է բարդել հայ հոգևորականության վրա: Ինչ էլ եղած լինին հայ հոգևորականները en masse, բայց երբ նրանց մեջ եղել են հատիկներ, որոնք լեզու են պահել, գրականություն են տվել, այդքանն էլ բավական է: Բավական է, որ մի Մեսրոպ, մի Եզնիկ, մի Առաքել Դավրիժեցի է եղել: Չամիչյանները այնուհետև կարող են հայհոյել մի ամբողջ սրախողխող ժողովուրդ և նույնիսկ մի հատ հանդիմանության էլ արժանի չհամարվել:

Եվ այսպիսի բառեր ասել հեշտությամբ կարողանում է մի մարդ, որ ամեն օր թերթում է Փավստոս, Ղազար Փարպեցի, Մովսես Խորենացի, Ստեփաննոս Օրբելյան, Մատթեոս Եդեսացի, Սամուել Անեցի և այլն և այլն, թերթում է ու կարդում, թե ինչպես վատ հոգևորականությունը հալածում էր հայ գրականության պարծանքներին, թե ինչպես Հայոց կաթողիկոսը իր ընչաքաղցության զոհ էր դարձնում Անին, թե ինչպես այդ կաթողիկոսը բյուզանդական արքունիքում ուզում էր հափշտակել այն արծաթե աթոռը, որի վրա նստած էր իր վատ արարքին իբրև վարձատրություն, թե ինչպես մի Մելքիսեդեկ ձեռնադրում էր Նիկոլին Լեհաստանում: Ասել կարողանում է մի բանասեր, որին անհայտ չէ Թովմա Մեծոփեցին, որ գրում է, թե հրեաները Քրիստոսին մի անգամ խաչեցին, իսկ Էջմիածնում հայ հոգևորականները ամեն օր են խաչում: Եվ ո՞ր մեկը հիշել, ո՞ր մեկը թողնել: Հայոց գրականությունը սկզբից իսկ լիքն է եղել Միքայել Նալբանդյաններով, իսկ Արոնցներով չափազանց աղքատ է: Եվ այդ է նրա գլխավոր ծառայություններից մեկը: Գրող հոգևորականը բոլորովին իր գրելով չէ ծածկել Չամիչյաններին և նմաններին, այլ ընդհակառակն, մերկացրել է նրանց ամբողջ հասակով: Պ<արոն> Արոնցը, այո՛, մահացու հանցանք է գործում խղճի, արդարության, պատմական իրականության դեմ, հայ անցյալի նվիրական ստացվածքը ծառայեցնելով իր պաշտած անորակելի գաղափարին՝ ոչինչ վատ խոսք մի հոգևորականի մասին: Եվ թող, եթե կարող է՝ ասե, թե մի հատիկ Փարպեցի իրավունք չուներ դատելու խավարապաշտ, հալածասեր կղերականներին...

Բայց դնենք թե այսպես չէ հայոց հին գրականությունը: Դնենք, թե նա մի րոպե հովանավորում է պ. Արոնցի և նմանների իդեալը: Այս դեպքում էլ զուր կլիներ նրան մատի փաթաթան շինել ամեն մի դեպքում: Երբ հայ հոգևորականությունը մի ժամանակ գրչի և գրքի միակ արտոնատեր էր եղել, այդ ոչ տարօրինակ երևույթ է, ոչ անհասկանալի մի հրաշք: Այդ համաշխարհային իրականության մի կտորն է, այդ այդպես է, որովհետև ուրիշ կերպ լինել չի կարող...

Իբրև հայ, շնորհապարտ ենք հայ հոգևորականության, որ գրականությունն է պահպանել: Իբրև մարդ, պակաս շնորհապարտ չենք քաղդեական և եգիպտական քրմերին, որ գրականությունն էլ են պահել, գիտություն էլ են մշակել: Բայց մեր շնորհապարտությունը մեզ չէ պարտավորեցնում այսօր, մեր կյանքի մեջ, իղձալ դարձնել քրմությունը:

Շնորհապարտ ենք, այո՛, հայ հոգևորականության: Բայց չենք ասում, որ գրականություն նա տվել է լոկ այն հանգամանքի հետևանքով, որ լուսավորչական եկեղեցու հոգևորականություն էր: Մենք շնորհապարտ ենք և ասորի, հույն եկեղեցականության, որի գաղափարները, որի գրքերը ընդօրինակում էր լուսավորչական հոգևորականը: Շնորհապարտ ենք մանավանդ կաթոլիկ եկեղեցուն, որի հարազատ զավակներն են մեզ գրական այնքան խոշոր հարստություն մատակարարած Մխիթարյանները:

Գրականությունն էլ, սակայն, ոչինչ չէ ասում հօգուտ կղերական պաշտամունքի: Գրականությունն էլ, իբրև մարդկային մտքի մի գանձ, պիտի դատվի ու գնահատվի իր ժամանակի, իր իրականության սահմաններում: Ամեն անգամ, երբ առիթ կունենանք այցելելու Հայաստանը շահ Աբբասի գերեվարությունների ժամանակները, ամեն անգամ, երբ կտեսնենք վայրենացած ու անապատ դարձած մեր երկիրը այդ միջոցին, մենք ոգևորությամբ և խորին հարգանքով կնայենք Հարանց անապատին, ուր վարդապետների ճգնության առարկան գրքեր կարդալն էր: Եվ մենք առանց վարանելու կասենք, որ դրանք վերածնության հերոսներ էին:

Բայց այսօրվա իրականության մեջ նրանք, ի դժբախտություն պ. Արղնցի, այլևս հերոսներ չեն: Հերոսությունը նրանց ձեռքից խլեցին այն սերունդները, որոնք ժողովրդականացրին և աշխարհականացրին գիրքն ու գրականությունը և մեզ տվին ազգովին ապրելու հնարավորություն:

## IV

Հայ եկեղեցու մեջ կղերական աշխարհայացքը ժխտող պ. Արղնցին ես ցույց էի տվել մի քանի պատմական փաստեր, ցույց էի տվել հենց իր պ. Արղնցի երկու աշխատությունը: Ներսիսը, հայհոյիչ դոցենտն այստեղ էլ՝ ինչպես և ամենուրեք, ուր նեղն է լծված լինում, կորցրել է հավասարակշռությունը և դարձյալ անձնատուր լինելով կրքերի մոլեգնության, իջել է փողոց, որպեսզի այնտեղից վերցրած մի բուռն խոսքով կամ մի քանի բուռն խոսքերով ամրապնդե իր մեծադղորդ «գիտնականությունը»: Առանց խարդախի ու պղպեղի օգնության դիմելու պ. դոցենտը չի կարողանում իր

զիտնականության ուժը ցույց տալ: Եվ նա այստեղ էլ իր լեզվին մի ուրիշ պղպեղային անուշություն է տվել, անվանելով ինձ «բշվառական»:

Պատվական դոցենտի լեզուն հիշոցաբանությունից հետ սովորեցնելու ամենալավ միջոցն է նրա սեփական կաշվի վրա դնել այն պղպեղն ու խարդալը, որ նա շռայլում է ուրիշների հասցեին: Թող ներե պ. Առոնցը, այս «բշվառական»-ն էլ ես պիտի վերադարձնեմ իրեն: Եթե կա մեկը, որ արժանի է վայելելու նրա անմաքուր լեզվի այդ վիժվածքն էլ, դա հենց ինքը, պ. Առոնցն է: Եվ թող այնքան միամիտ չլինի նա, թե դոցենտությունը բավական է, որ նա իրապես բշվառական չլինի: Ընդհակառակն, բշվառականի մտածմունքով դոցենտ լինելը մի փաստ է, որ մարմնացնում է ինքը պ. Առոնցը:

Ահա նա գալիս է հերքելու իմ ասածները: Եվ դարձյալ պատեպատ ընկնելով, դարձյալ տակն ու վրա լինելով: Առաջ ու առաջ նա ասում է, թե ես մեղք եմ գործել, վերագրելով նրան այնպիսի միտք, թե «Հայ եկեղեցու մեջ չէ եղել և չկա կղերականություն»: Մեղանչել եմ, շատ լավ: Հարցը այդտեղ էլ փակված պիտի լիներ, երբ պ. Առոնցը այդպիսի մեղք չէ ընդունում, էլ ինչի՞ մասին վիճել:

Բայց այդպես չէ պ. Առոնցի համար: Նա և ընդունում է և չէ ընդունում: Դարձյալ Եվրոպայի շլինքից է կախվում: Կղերականության մի օրինակ է ճանաչում՝ Հռոմը: Եվ մինչև որ Հայաստանում չլինի մի Հռոմ, նրա համար սարկության խարիսխը կա ու կա: Բայց Հայաստանում ի՞նչ կար: Թեոկրատիա, ստրկածապետություն, պատասխանում է պ. Առոնցը: Իսլամի խալիֆը տիրում էր հայերին և պետք էր «անհրաժեշտորեն մուսուլման խալիֆի կողքին կանգներ իր սեփական խալիֆը»:

Իսկապես որ հանճարեղ գյուտ է, այնքան հանճարեղ, որ մտածողության եղանակը տանում հասցնում է, «բշվառական» հորջորջումով որակվող աստիճանին: Կղերականություն, թե թեոկրատիա՝ չվիճենք այդ մասին. երկուսն էլ միևնույնն են կրոնավորական միահեծան տիրապետության տեսակետից. ես այդ տիրապետություններն եմ մատնանիշ արել և ինձ համար միևնույն է, թե պ. Առոնցը ինչ տեսակ դրոշի տակ է գալիս միևնույն իրողությունն ընդունելու համար: Խնդիրն այդ չէ: Այլ այն, որ պատմության անունից մեծ-մեծ ճառող պ. Առոնցի ընթերցողը պիտի կարծե, թե հայ եկեղեցական կազմակերպությունը նախիսլամական շրջան չէ ունեցել կամ այս շրջանում ուրիշ, ոչ-թեոկրատիկ կերպարանք է ունեցել: Իսլամի և խալիֆի անուններով բացատրել այն երևույթը, որ դեռ չորրորդ դարում զարգացած էր հայ քաղավորության մեջ, այս է նշանակում լինել իսկական «բշվառական»:

Եվ երբ ես ցույց եմ տալիս, թե հենց այդ նախիսլամական շրջանում է այն դարավոր երևույթը, որ եկան կղերական դինաստիաներ ժառանգական իրավունքներով, որոնք ահագին դեր են կատարում Հայաստանի քաղաքական կյանքի մեջ, նեղն ընկած պ. Աղոնցն ասում է, թե իմ ունեցած պաշարով ես չեմ կարող հասկանալ այդ երևույթը: Իր սեփական պաշարը նա ցույց չի տալիս: Եվ ինչ հարկավոր է, քանի որ կարելի է անճարակությունը ծածկել «գիտություն», «պաշար» և այլ այսպիսի հնչյունների մռգական քղամիդով: Էժանության միջոց է, բայց բավականաչափ ազդու՝ միամիտների համար և մխիթարիչ՝ այնպիսի գլուխների համար, որոնք սարսափելի կերպով սիրահարված են իրենց վրա:

Չկարողացա առանց ծիծաղի կարդալ պ. Աղոնցի այն խոսքերը, թե ես պատմական հեռանկար չունեմ, ես առանց պատմական կողմնացույցի եմ դատում: Խոսքեր, որոնց մեջ ինքը՝ պ. Աղոնցն է պատկերացրած, իր կանխակալ կարծիքներն ու մարզությունները պատմության վզին փաթաթող պ. Աղոնցը:

Պատմական հեռանկարի և պատմական կողմնացույցի մասին է խոսում մի մարդ, որ, Աստծու ողորմությամբ, պիտի զարմացնե ամբողջ աշխարհը, ցույց տալով, թե հայ երկրի պես մի փոքրություն սքանչելի մի բացառություն է կազմում համաշխարհային այն եկեղեցական իրականության մեջ, որ սկսեց կազմակերպվել դեռ Քրիստոսից 4-5 հազար տարի առաջ: Եվ բացառություն կազմողը պիտի լինի մի երկիր, որ իր քաղաքական և մտավոր կյանքում ամբողջովին ազդեցությունների արդյունք է, ինքնուրույնության համեստ չափերով: Պ<արոն> Աղոնցի համար գոյություն չունի համաշխարհային պատմությունը, գոյություն չունի պատմական միջավայրը:

Եթե պատմական հեռանկարի զգացմունք լինեին նրա մեջ, փոխանակ իսլամի և խալիֆի քղանցքները օգնության կանչելու, կորոներ և կիմանար, թե այդ ինչ եկեղեցի էր, որ չորրորդ դարում պաշտոնապես հաստատվեց Հայաստանում: Կտեսներ, որ այդ եկեղեցին կազմակերպվել էր Հայաստանի կողքին, Փոքր Ասիայի մեջ, Իգնատիոս Աստվածազգյացների միապետական ոգով: Կտեսներ, որ Հռոմն անգամ արևելյան այդ եկեղեցական միապետությունից դասեր վերցրեց իր կազմակերպության համար: Կտեսներ, որ հենց այդ փոքրասիական եկեղեցին էր, որ տարածվեց ամեն տեղ, ուրեմն և Հայաստան մտավ ու ծավալեց ամենուրեք Միջնադարը իր գաղափարներով ու հայացքներով, որոնք մեկ են ամեն տեղ, ուրեմն և Հայաստանում:

Եվ այս բոլորը տեսնելուց հետո միայն պ. Աղոնցը կհամոզվեր, թե որքան անարժեք ու խղճալի են իր ջանքերը, որոնցով ուզում է հավատացնել, թե հայ փոքրիկ իրականությունը մի անհազին բացառություն էր մարդկության մեջ:

Երկու խոսք էլ այն մասին, թե պ. Աղոնցը իր աշխատություններում մեջ այն չէ ասել, ինչ ես եմ եզրակացրել: Կարճ կապենք: «Վասակին նվիրած գրության մեջ,- ասում է պ. Աղոնցը,- այնպիսի բան չկա, իբր թե հոչակավոր մարզպանը կղերական կազմակերպված դասի հակառակորդն էր»:

Ահա պ. Աղոնցի խոսքերը.

«Васакъ и нахарары выжидали возвращенія пасловъ. Между темъ духовенство ревностно разжигало страсти народа. Толпа поддалась вліянію ихъ (его?) пламенныхъ речей, и открылись враждебныя действія, демонстрации и схватки» (եր. 124): Հոգևորականությունը ապստամբեցնում է, հոգևորականությունը մի կողմն է: «Мамикониды находились въ тесной связи съ духовенствомъ» (եր. 127): Այս էլ Վարդանը իբրև նույն այդ կողմի մարդ:

Հիմա՝ Վասակը: Նա հոգևորականության հետ չէ: «Такимъ образомъ, благодаря посредничеству Васака, Арменія спаслась отъ ужасной резніи» (եր. 125): Բայց ազատելով Հայաստանը սոսկալի կոտորածից, Վասակը արժանացավ հայ հոգևորականության համակրանքին: Ո՛չ, ասում է պ. Աղոնցը: «Елисей прямо заявляеть, что онь написаль исторію для того, чтобы потомство проклинало память отступника Васака» (եր. 127):

Պարզ է, ուրեմն, որ պ. Աղոնցը չէ հասկանում և իր սեփական գրվածքը:

Ի՞նչ ասեմ երկրորդ գրվածքի մասին: Մարդը ցույց է տվել, թե նախարարությունը ֆեոդալական կազմակերպություն էր և թե Հայ եկեղեցին էլ ճիշտ նույն ֆեոդալական կազմակերպությունը յուրացրեց: Եվ այս բոլորից հետո նա գնում է սար ու ձոր ընկնելու՝ չգիտեմ ինչ բան ապացուցելու համար: Փաստը փաստ է, դատողությունը՝ դատողություն: Պապական եկեղեցին էլ Միջին դարում նույն այդ ֆեոդալական հիմքերի վրա էր կազմակերպված: Մի տեղ՝ շատ, մի տեղ՝ քիչ, մի տեղ՝ մեծ չափով, մի տեղ՝ փոքր: Կարևորը չափը չէ: Կարևորը ոգին է: Դատողությունները կարող էր անել թեկուզ երեկոյից մինչև լույս, թեկուզ ամենքին հոգնեցնելու չափ: Բայց ինչ օգուտ այդ խորհրդածություններից, երբ փաստը կա:

Ես պարտավոր եմ ազատել պ. Աղոնցին մի մեծ թյուրիմացությունից: Երբ ես իրավ որ նրան ուղարկած լինեի Նալբանդյանի մոտ՝ Այվազովսկուն նրա միջոցով ճանաչելու համար, իսկապես պարզամիտ կլինեի, ինչպես

ասում է պ. Արոնցը, այն էլ, ավելացնեմ, պարզամիտ՝ անների չափով: Ասված ինձ ազատ այդքան միամտությունից: Չամիչյանի երկրպագուն չէ որ կարողանա Նալբանդյաններից, Ստեփան Ոսկաններից խոսք լսել, ուր մնաց բան սովորել այնպիսի հոգևորականի վերաբերմամբ, որպիսին է Այվազովսկին:

Կանխակալ մտածմունքներով նախապաշարված կղերապաշտության քարոզով տարված պ. Արոնցը կգրե Այվազովսկու պատմությունը ինչպես իրեն է հաճելի, ինչպես իր ախորժակին ու ճաշակին է հաճելի: Բայց մի ուրիշը, որի համար ճշմարտությունն է ամեն ինչ, կլսե և Նալբանդյանին, ինչո՞ւ չէ: Այվազովսկին միայն «Մասյաց Աղավնի»-ի խմբագիր չէ, միայն Կռիլովի թարգմանիչ չէ, միայն գեղեցիկ տպագրությունների հեղինակ չէ, այլև եկեղեցական մի պաշտոնյա, մի ամենաուժեղ բեմակալ, որ դիմում էր իշխանավորներին պաշտոնական թղթերով, պահանջում էր սանձահարել «Հյուսիսափայլ»-ը, հարկադրել Նազարյանցին ազատ չգրել: Կղերական աններողամտության մի տիպիկ ներկայացուցիչ էր Այվազովսկին, որ, սակայն, երբ հարցը գալիս էր իր անձնական փառասիրության, ոտնակոխ էր անում կղերական նվիրապետությունը, հանդիսանալով հերոս այնպիսի սև պատմության մեջ, որպիսին է նրա առաջնորդությունը Թեոդոսիայում:

Այս տեսակ վավերագրեր, ես համաձայն եմ, պ. Արոնցի պես գլուխների համար չեն մնացել: Բայց նրանք մնացել են և չեն կորչի, չեն մոռացվի, որքան էլ Այվազովսկին հոգևորական լինի, նույնիսկ Չամիչյանից շատ բարձր հոգևորական: Կգտնվեն մարդիկ, որոնք իրերին իրենց իսկական անունը կտան, որոնք չեն քաշվի և գործիչների վրա դրոշմված սև բծերը ամենայն պարզությամբ արձանագրելուց: Կգտնվեն և այնպիսիները, որոնք կհարստահարեն իրենց ուղեղները այդ սև բծերին զանազան սոփեստու-թյուններով ծիածանի գույներ տալու համար: Տարբերությունը այդ կլինի պատմական ճշմարտությունը-պաշտողների և պ. Արոնցի մեջ:

Պարոններ Արոնցներին վիճակված է ստրուկ լինել իրենց նախապա-շարմունքներին, իրենց համար ստեղծած պաշտամունքներին, որոնցից լավագույնը մի... Չամիչյանը կարող է լինել: Նրանց վիճակված է իրենց գրիչը նվիրել ամեն մի վատության, ամեն մի ոճիրի... արդարացման: Բա-րով վայելեն այդ տխուր վիճակը:

Այդ տեսակ մի ցած ծառայության մեջ է, որ պ. Արոնցը պաթոսով իրեն մխիթարում է, թե «քարկոծված» պատրիարքը (Օրմանյանը) կարող է իմ «ձեռքից բռնած հրավիրել արժանավոր տեղ գրավել Համիդի պալատում»:

Օ՜, օրմանյանական լիրիկ... Երջանիկ պիտի լինի ձեր «քարկոծվածը», եթե ձեզ և ձեր նմաններին հաջողվի անհնարին քափ ու քրտինքի գնով գեթ

մի րոպե դուրս հանել նրան, այդ «քարկոծվածին», Համիդի պալատից: Իսկ իմ այնտեղ մտնելու մասին հոգս մի անեք: Այնտեղ, Համիդի պալատում, այսօր լքված, այսօր սարդի ոստայններով ծածկված, դուք և ձեր նմանները են շարունակում բազմած մնալ Չամիչյանների «նվիրական» գզզում:

Իմ հոգը թողեք, Համիդի խավարած պալատի քնարերգու փաստաբաններ: Կարողանում եք, ձեր հոգը տեսեք:

Կարողանում եք, զգացեք, թե ինչ անարգ դերի մեջ եք...*

Նշելի է, որ Լեոյի «Դարձյալ պ. Աղոնց» գրվածքի անպատշաճ արտահայտաձևերի և կողմնակալ դիրքորոշման վերաբերյալ հանդես է եկել «Homo Sum» ծածկանունով հեղինակը (տե՛ս «Թռուցիկ բանաքաղ "պատմաբան", "բանասեր", "վիպասան" այլև "հրապարակախոս" Լեոյի հայհոյանքներից», «Հովիտ», շաբաթաթերթ, 1912, № 30, էջ 473-474): Նկատելի է, որ առաջին դեպքը չէ, որ երբ նշանավոր պատմաբանը անտեղի ու անզուսպ քննադատության է ենթարկում հայ հոգևորականությանն ու մասնավորապես ժխտում Ս. Էջմիածնի նշանակությունն իր օրերի հայ կյանքում, հանգամանք, որ մտահոգությամբ շեշտել է Կարապետ վրդապետ Տեր-Մկրտչյանը. «Ձեր ծայրահեղ կուրության շնորհիվ է, որ ահա տարիներ ի վեր ոչինչ լավ բան այլևս Ս. Էջմիածնում չեք տեսնում... Մեր վերջին խոսքն ու խորհուրդն այս է. եթե պահանջ եք զգում, որ լրջությամբ վերաբերվեն դեպի Ձեր քննադատությունները՝ ինքներդ փոքր ինչ ավելի լուրջ, արդարամիտ, լայնասիրտ և բազմակողմանի եղեք ամենից առաջ՝ ավելի պատշաճ լեզու գործ դրեք» (տե՛ս Կարապետ վարդապետ Տեր-Մկրտչյան, Լուրջ դիտողություններ, «Արարատ», 1901, էջ 442-450): Ցավոք, ինչպես ակներև է ընդդեմ Աղոնցի լույս տեսած գրվածքների, Լեոն չի հետևել այդ խորհրդին:

## ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ ԹՈՒՐՔԻԱՅՈՒՄ

**(Հաշվետվություն Ս. Պետերբուրգի Հայկական խմբակի կողմից նրա երկու գործուղված անդամների՝ Կոստանդնուպոլիս կատարած ուղևորության մասին)**

(էջ 92)

Գրված է 1913 թ. հունվարին Ս. Պետերբուրգում: Հայտնի է սույն հաշվետվության ռուսերեն մեքենագիր բնագրի մի քանի օրինակներ [տե՛ս Մաշ-

* Նախընթաց հոդվածիս «Հորիզոն» № 141 ծանոթության մեջ գրաշարը իմ գրած «գիտնական մարդու դավանանք»-ը դարձրել է «պետական մարդու դավանանք»: Սխալը պարզ է:

տոցի անվ. Մատենադարան, Կաթողիկոսական դիվան, ց. 20, թղթապանակ № 225, պահ. 6, Թուխ մանուկ, թղթապանակ № 238, վավ. 95, թթ. 1-17; ՀՀ Ազգային արխիվ, ֆոնդ 57, ց. 5, գ. 55 (2 օրինակ); ЦГИА Грузинской республики, ф. 2 с., д. 3188, лл. 24-43 և այլն]: Հաշվետվության ամբողջական տպագրությունը լույս է տեսել Մ. Գ. Ներսիսյանի աշխատասիրությամբ (տե՛ս «Պատմա-բանասիրական հանդես», 1992, № 1, էջ 197-214, նաև Մ. Գ. Ներսիսյան, Պատմության կեղծարարները, Երևան, 1998, էջ 238-266): Երկրորդ անգամ հայերեն թարգմանությամբ (թարգմանիչ՝ Վ. Ա. Դիլոյան) հրատարակել ենք մենք՝ Հայկական հարցին նվիրված Ն. Աղոնցի երկերի ժողովածուում (տե՛ս Ն. Ադոնց, Հայկական հարց, «Հայագիտակ», Երևան, 1996, էջ 25-49): Գրիգոր Զոհրապին վերաբերող հատվածը թարգմանաբար հրատարակել է Ա. Ս. Շարուրյանը (տե՛ս Գրիգոր Զոհրապ, Երկերի ժողովածու, հատ. Ձ, Երևան, 2004, էջ 316-320, տե՛ս նաև «Գրիգոր Զոհրապը ժամանակակիցների հուշերում և վկայություններում», աշխատասիրությամբ Ա. Շարուրյանի, Երևան, 2006, էջ 61):

Փաստաթղթի բոլոր հայտնի օրինակներն անստորագիր են և ներկայացված են որպես «Հաշվետվություն Ս. Պետերբուրգի Հայկական խմբակի կողմից նրա երկու գործուղված անդամների՝ Կոստանդնուպոլիս կատարած ուղևորության մասին»: Չնայած հեղինակային հստակ պատկանելիության բացակայությանը՝ պատմագիտության մեջ կարծիքներ են հայտնվել, թե Ս. Պետերբուրգի «Հայկական խմբակի» Կ. Պոլիս գործուղված երկու անդամներից մեկը եղել է Ն. Ադոնցը, իսկ մյուսը՝ Սիրական Տիգրանյանը (տե՛ս Ջ. Ս. Կիրակոսյան, Առաջին համաշխարհային պատերազմը և արևմտահայությունը, Երևան, 1967, էջ 84; Ա. Ս. Շարուրյան, Գրիգոր Զոհրապի կյանքի և գործունեության տարեգրություն, Ս. Էջմիածին, 1996, էջ 383, 393 և այլն): Հաշվետվության Ն. Ադոնցի և Ս. Տիգրանյանի հեղինակային պատկանելիությունը առարկայորեն փաստվում է Կ. Պոլսի Հայոց պատրիարք Հովհաննես Արշարունու՝ Ամենայն Հայոց կաթողիկոս Գևորգ Ե-ին հղված 1913 թ. հունվարի 18-ի թվակիր նամակից (տե՛ս ՀՀ Ազգային արխիվ, ֆ. 57, ց. 5, գ. 15, թերթ 147), ինչպես նաև մեր բերած հավելյալ փաստաթղթից (տե՛ս Ն. Ադոնց, Հայկական հարց, «Հաշվետվության» ծանոթագրությունների բաժին, էջ 203-204):

Ներկա տպագրությունը վերահրատարակությունն է Վ. Ա. Դիլոյանի թարգմանության (տե՛ս Ն. Ադոնց, Հայկական հարց, էջ 25-49):

1. «Մեր խորհրդակցության» - նկատի ունեն 1912 թ. նոյեմբերին Ս. Պետերբուրգի Հայկական խմբակի հրավիրած խորհրդակցությունը, որին մասնակցել են

հայ և ռուս նշանավոր հասարակական-քաղաքական գործիչներ, մտավորականության ներկայացուցիչներ: Ելույթ ունեցողները խրախուսել են Հայկական հարցի վերաբացման ուղղությամբ գործադրվող ձեռնարկները:- Էջ 92:

2. Խոսքն Ազգային բյուրոյի մասին է: Այն ստեղծվել էր Թիֆլիսում 1912 թ. նոյեմբերի 25-ին՝ Ռուսական կայսրության հայաշատ կենտրոնների ներկայացուցիչների 2-րդ համագումարում: Նպատակն էր նոր իրադրության պայմաններում արծարծել Հայկական հարցը և հասնել նրա լուծմանը: Դադարել է գործելուց 1917 թվականին:- Էջ 92:

3. **Սամսոն Հարությունյան** (1869-1941) - հասարակական գործիչ, Կովկասի Հայոց բարեգործական ընկերության նախագահ, Հայոց Ազգային բյուրոյի նախագահ, Հայոց Ազգային խորհրդի անդամ, «Հայ ժողովրդական կուսակցության» հիմնադիր:- Էջ 92:

4. **Կոստանդին Խատիսյան** (1864-1913) - ազգային, հասարակական գործիչ, ՀՀ Դաշնակցության հիմնադիրներից: «Ձանգ» շաբաթաթերթի, «Բաքվի ձայն» օրաթերթի խմբագիր: Բաքվի «Հայոց կուլտուրական միության» հիմնադիր: Հաշվետվության հեղինակները շփոթել են՝ խոսքը վերաբերում է ոչ թե Կոստանդին Խատիսյանին, որն այդ ժամանակ հեռացել էր ազգային ակտիվ գործունեությունից, այլ նրա կրտսեր եղբորը՝ Ալեքսանդր Խատիսյանին (1874-1945), մանավանդ, որ վերջինս Հայոց Ազգային խորհրդի փոխնախագահն էր:- Էջ 92:

5. Ակնարկը վերաբերում է Ս. Պետերբուրգի Հայկական խմբակի նախագահ, ռազմա-բժշկական ակադեմիայի պրոֆեսոր Վ. Ի. Վարդանյանին (1853-1919):- Էջ 92:

6. **«Новое время»** - օրաթերթ, որը լույս է տեսել Ս. Պետերբուրգում 1868-1917 թվականներին: Օրաթերթը բազմիցս է անդրադարձել Հայկական հարցին:- Էջ 92:

7. **Փանոս Թերլեմեզյան** (1865-1941) – հայ ազատագրական շարժման գործիչ, Հայաստանի ժողովրդական նկարիչ: - Էջ 93:

8. **«Բյուրանիա»** - օրաթերթ, որը լույս էր տեսնում Կ. Պոլսում 1912-1913 թվականներին «Ազատամարտ»-ի փոխարեն:- Էջ 93:

9. **Հակոբ Զավրիև** (1864-1920) - բժշկապետ, ՀՀ Դաշնակցության ականավոր գործիչ: Ժամանակավոր կառավարության կողմից 1917 թ. նշանակվել է Արևմտյան Հայաստանի ընդհանուր կոմիսարի տեղակալ:- Էջ 93:

10. Այսինքն՝ դեկտեմբերի 29-ին:- Էջ 94:

11. **Վահան Փափազյան** (Վան, 1876-1973) – հայ ազատագրական շարժման գործիչ, օսմանյան խորհրդարանի պատգամավոր, Արևմտահայոց Ազգային բյուրոյի նախագահ:- Էջ 94:

12. Ակնարկում է գրաքննադատ, գրականության պատմաբան, նշանավոր գրող Վրթանես Փափազյանին (1864-1920):- Էջ 94:

13. **Ռուբեն Զարդարյան** (Ասլան, 1874-1915) - գրող, հրապարակախոս, խմբագիր, մանկավարժ: ՀՀ Դաշնակցության նշանավոր գործիչ, «Ազատամարտ» օրաթերթի խմբագիր:- Էջ 94:

14. **Ներսես Փափազյան** (Մաշտոց, 1872-1915) - ԱՄՆ-ի Հայոց առաջնորդարանի տեղապահ, Թեհրանի հայոց հոգևոր հովիվ: 1906 թ. հրաժարվել է սքեմից, եղել է «Հայրենիք» օրաթերթի (Բոստոն) խմբագիր, «Ազատամարտ»-ի աշխատակից:- Էջ 94 :

15. **Աստվածատուր Խաչատրյանց** (1882-1940) - Գևորգյան ճեմարանի և Ստրասբուրգի համալսարանի շրջանավարտ, պատմաբան, Սանասարյան վարժարանի տեսուչ:- Էջ 94:

16. **Է. Ակնունի** (Խաչատուր Մալումյան, 1863-1915) – հայ ազատագրական շարժման գործիչ, հրապարակախոս, պատմաբան:- Էջ 94 :

17. **Սիմոն Զավարյան** (Անտոն, 1866-1913) – հայ ազատագրական շարժման նշանավոր գործիչ, ՀՀ Դաշնակցության հիմնադիրներից:- Էջ 94:

18. **Թուփչյանց** – ով լինելը հնարավոր չեղավ պարզել:- Էջ 94:

19. **Հարություն Շահրիկյան** (Նիթրա, Ատոմ, 1860-1915) – իրավաբան, ՀՀ Դաշնակցության նշանավոր գործիչ, բյուրոյի անդամ:- Էջ 95:

20. **«Առաջամարտ»** - օրաթերթ, որը լույս էր տեսնում Կ. Պոլսում 1912 թվականին՝ «Ազատամարտ»-ի փոխարեն: - Էջ 95:

21. **Հովհաննես եպ. Արշարունի** (1854-1929) – Կ. Պոլսի Հայոց պատրիարք (1911-1913):- Էջ 95:

22. **Գրիգորիս եպ. Պալաքյան** (1873-1934) - ազգային, հոգևոր գործիչ: Կ. Պոլսի Հայոց պատրիարքարանի քարտուղար, Եվրոպայում կաթողիկոսական պատվիրակ, Մանչեստրի, Լոնդոնի և Մարսելի հայոց հոգևոր առաջնորդ:- Էջ 95:

23. **Գենլ վարդապետ Գալեմքեարյան** – Մուշի և Սեբաստիայի հայոց հոգևոր առաջնորդ:- Էջ 95:

24. **Ստեփան Գարայան** (1855-1933) – իրավաբան, ազգային-հասարակական գործիչ, Ազգային վարչության ատենադպիր:- Էջ 95:

25. **Ոսկան Մարտիկյան** (1848-1913) – թուրքական պետական գործիչ, Մահմուդ Շեվքեթ փաշայի վարչապետության օրոք (1913 թ. հունվար - հունիս) փոստի և հեռագրատների նախարար:- Էջ 95:

26. **Աբրահամ Տեր-Հակոբյան** (1856-1938) – կրթական գործիչ, Ազգային երեսփոխան, Ազգային պատվիրակության խորհրդական:- Էջ 95:

27. Լ. Չորմիսյանը [«Համայնապատկեր Արևմտահայոց մեկ դարու պատմության», հատ. Գ (1908-1922), Բեյրութ, 1975, էջ 164] և Վ. Փափազյանը («Իմ հուշերը», հատ. 2, Բեյրութ, 1952, էջ 185) տալիս են Ապահովության հանձնաժողովի փոքր-ինչ այլ կազմ՝ Եղիշե եպ. Դուրյան, Գրիգորիս վրդ. Պալաքյան, Ստ. Գարայան, Ո. Մարտիկյան, Լ. Տեմիրճիպաշյան, Հ. Պոյաճյան, Վ. Փափազյան: Իսկ Զավեն պատրիարքը («Պատրիարքական հուշերս. վավերագիրներ և վկայություններ», Կահիրե, 1947, էջ 31, հմմտ. «Վեմ», ամսագիր, Փարիզ, 1933, № 1, էջ 2-93) ներկայացնում է բոլորովին այլ կազմ: Ենթադրելի է, որ փոփոխված այս վերջին կազմը ստեղծվել է ավելի ուշ՝ 1913 թ. սկզբներին:- Էջ 95:

28. Այսինքն՝ Գևորգ Ե Սուրենյանցը (1847-1930):- Էջ 95:

29. Նկատի ունի Ոսկան Մարտիկյանին (տե՛ս սույն, էջ 433, ծան. 25):- Էջ 96:

30. **Գրիգոր Զոհրապ** (1861-1915) - գրող, հրապարակախոս, հասարակական-քաղաքական գործիչ, Օսմանյան խորհրդարանի պատգամավոր, հեղինակ է Հայկական հարցին նվիրված «Հայկական հարցը փաստաթղթերու լույսին տակ» ֆրանսերեն ուսումնասիրության:- Էջ 96:

31. **Մ. Ն. Գիրս** – ռուս դիվանագետ, Կ. Պոլսում Ռուսաստանի դեսպան (1913-1914):- Էջ 96:

32. **«Երբ պատերազմ է գնում»** - ակնարկում են Բալկանյան առաջին պատերազմը (9 հոկտեմբերի 1912 թ. – 30 մայիսի 1913 թ.):- Էջ 96:

33. **Ա. Ն. Մանդելշտամ** (1869-1939) – ռուս դիվանագետ, իրավաբան, Ս. Պետերբուրգի համալսարանի պրոֆեսոր, Կ. Պոլսում ռուսական դեսպանության ավագ թարգման:- Էջ 96:

34. **«Ինչպես որ Ավստրիան կարգավորել է Հերցոգովինան»** - Բեռլինի կոնգրեսը Ավստրո-Հունգարիային իրավունք տվեց գրավելու Հերցոգովինան, որը և տեղի ունեցավ 1908 թ. հոկտեմբերի 8-ին: Գրաված այս տարածքներում Ավստրիան մտցրեց ինքնավարության որոշ տարրեր (հիմնականում մշակութային):- էջ 97:

35. Խորհրդաժողովը հրավիրվել է 1913 թ. մայիսին Լոնդոնում:- էջ 97:

36. **«Եռյակ համաձայնություն»** (Անտանտ) – Ռուսաստանի, Ֆրանսիայի և Անգլիայի ռազմա-քաղաքական դաշինք:- էջ 98:

37. **«Եռյակ միություն»** - Գերմանիայի, Ավստրո-Հունգարիայի և Իտալիայի ռազմա-քաղաքական դաշինք:- էջ 98:

38. Խոսքը Գևորգ Ե կաթողիկոսի կոնդակով կազմված պատվիրակության մասին է, որը գլխավորում էր Պողոս Նուբար փաշան: Պատվիրակության կազմի մեջ էին մտնում Գևորգ արքեպ. Ութուջյանը, Հակոբ Արթին փաշան, Մինաս Չերազը և Ա. Մեսատիչյանը:- էջ 98:

39. Գևորգ Ե կաթողիկոսը Ռուսաստանի կառավարությանն է դիմել նախ 1912 թ. հոկտեմբերի 2-ին Կովկասի փոխարքա կոմս Ի. Ի. Վորոնցով-Դաշկովի միջոցով, իսկ այնուհետև նամակով (տե՛ս «Հայերի ցեղասպանությունը Օսմանյան կայսրությունում», Երևան, 1991, էջ 283-284, 299-303):- էջ 98:

40. Մեսրոպ Տեր-Մովսիսյանը Ս. Պետերբուրգում բանակցություններ է վարել Կովկասի փոխարքա Ի. Ի. Վորոնցով-Դաշկովի, ճախարարապետ Վ. Ն. Կոկովցևի, արտաքին գործոց նախարար Ս. Դ. Սազոնովի հետ: Ս. Պետերբուրգում Մեսրոպ եպիսկոպոսի ծավալած գործունեության մասին տե՛ս Մ. Գ. Ներսիսյանի հրապարակումը («Պատմա-բանասիրական հանդես», 1993, № 1-2, էջ 169-170):- էջ 98:

41. **Ռայմոն Պուանկարե** (1860-1934) – պետական գործիչ, Ֆրանսիայի վարչապետ (1912-1913, 1922-1924), հանրապետության նախագահ (1913-1920):- էջ 98:

42. Խոսքը Վանի քաղաքապետ Պետրոս բեյ Գափամաճյանի (1852-1912) մասին է, որը սպանվել է 1912 թվականի դեկտեմբերի 23-ին: - էջ 99:

43. **«Մոտավորապես 1895 թ. մայիսյան ակտի ծավալով»** - բարենորոգումների նախագիծ, որ համատեղ մշակել էին Կ. Պոլսում Ռուսաստանի, Անգլիայի և Ֆրանսիայի դեսպանները, և որը ներկայացվեց սուլթանական կառավարությանը մայիսի 11-ին: Նախատեսված էր Էրզրումի, Բիթլիսի, Վանի, Սվազի, Խարբերդի և Դիարբեքիրի վիլայեթների շրջանակում բարենորոգումներ կատարել վարչական, դատական և ռազմական բնագավառներում:- էջ 99:

44. **Ն. Վ. Չարիկով** (1855 - ?) – Կ. Պոլսում Ռուսաստանի դեսպան (1909-1912):- էջ 100:

45. Այդ ժամանակ Կ. Պոլսում Ֆրանսիայի դեսպանն էր Բոմպարը:- էջ 100:

46. Ավելի ճիշտ Ջերարդ Լոութեր – Կ. Պոլսում Մեծ Բրիտանիայի դեսպան (1908-1913):- էջ 101:

47. **Ջ. Հ. Ֆիցմորիս** - անգլիական դիվանագետ, 1912 թվականից Կ. Պոլսում Մեծ Բրիտանիայի դեսպանատան առաջին քարտուղար:- էջ 102:

48. Այդ ժամանակ Կ. Պոլսում Գերմանիայի դեսպանը բարոն Հանս Վանգենհայմն էր (1859-1915): - էջ 102:

49. Ակնարկում է Գրիգորիս արքեպ. Գովրիկյանին (1841-1931)՝ պատմաբան, մանկավարժ, խմբագիր: 1861 թվականից Վիեննայի Մխիթարյան միաբանության անդամ, ընդհանուր աբբահայր (1909-1931):- էջ 103:

50. Խոսքը հայտնի հայագետ, Վիեննայի Մխիթարյան միաբանության անդամ Գրիգորիս վարդապետ Գալեմքեարյանի (1862-1917) մասին է:- էջ 103:

51. Տե՛ս էջ 433, ծան. 23:- էջ 103:

52. Լասլո Լուկաչ (Լասլաուս Ղուկասյան, 1850-1932) – Հունգարիայի պետական գործիչ, խորհրդարանի պատգամավոր, ֆինանսների նախարար (1895-1905), նախարարների խորհրդի նախագահ (1912-1913): - էջ 103:

53. **Ֆերդինանդ I Կոբուրգցի** (1861-1948) - Բուլղարիայի մեծ իշխան (1887-1908), թագավոր (1908-1918): Վարել է շեշտված գերմանամետ քաղաքականություն:- էջ 103:

54. Նկատի ունենք հետևյալ գրքերը. Օսմանյան խորհրդարանի պատգամավոր Հակոբ Պապիկյանի (1860-1909)՝ Ադանայի իրադարձությունների վերաբերյալ կազմած տեղեկագրի ֆրանսերեն հրատարակությունը (Կ. Պոլիս, 1912), որն ավելի ուշ լույս տեսավ նաև հայերեն թարգմանությամբ [տե՛ս **Հ. Պապիկյան, Ադանայի եղեռնը**, Կ. Պոլիս, 1919 (թարգմ.՝ Հ. Սարգսյան, Ֆրանսիս դը Պրեսանսեի առաջաբանով)]: Մյուսը Գրիգոր Զոհրապի (**Marcel Léart, La Question Arménienne. A la lumière des documents, Paris, 1913**) գիրքն է (տե՛ս նաև սույնի հայերեն թարգմանությունը, որը լույս է տեսել Բեյրութի «Նաիրի» շաբաթաթերթի 1972 թ. նոյեմբերյան

համարներում, ինչպես նաև առանձին գրքով՝ Գրիգոր Զոհրապ, Հայկական հարցը փաստաթղթերու լույսին տակ, Բեյրութ, 1973):- Էջ 104:

55. Տե՛ս «Տեղեկագիր հողային գրավմանց հանձնաժողովոյ», պրակ Ա-Գ, Կ. Պոլիս, 1910: «Տեղեկագրի» առաջին-երկրորդ պրակները նվիրված են եկեղեցական ու վանքապատկան հողերի, երրորդ պրակը՝ գյուղացիական հողերի, իսկ վերջինը՝ 1890-ական թվականներից հետո արձանագրված բռնագրավումներին:- Էջ 104:

56. Գեղամ Տեր-Կարապետյան (Մշո Գեղամ, 1866-1918) - գրող, պատմաբան, բանահավաք, ազգային-հասարակական գործիչ, Օսմանյան խորհրդարանի պատգամավոր: Նշված հոդվածն առաջին անգամ լույս է տեսել «Ազատամարտ» օրաթերթում (տե՛ս «Ազատամարտ», 1911, №№ 489, 490, 492, 494-496), այնուհետև հրատարակվել է առանձին գրքով՝ «Հողային հարցը հայաբնակ գավառներում մեջ» խորագրի ներքո (Կ. Պոլիս, 1911), տե՛ս նաև վերջին հրատարակությունը՝ Գ. Տեր-Կարապետյան (Տարոնի), Տարոնի աշխարհը, Երևան, 1995, էջ 310-355:- էջ 104:

57. Տիրան Քելեկյան (1862-1915) – հրապարակագիր, լրագրող, խմբագիր, բառարանագիր: Օսմանյան կառավարության «Սապահ» պաշտոնաթերթի խմբագիր:- Էջ 105:

58. Գալուստ Գյուլբենկյան (1869-1955) - ազգային բարերար, «Թուրքական նավթային ընկերության» նախագահ:- Էջ 105:

59. Նազարեթ Տաղավարյան (1862-1915) - բնագետ, մանկավարժ, խմբագիր, ազգային-հասարակական գործիչ, «Ս. Փրկիչ» ազգային հիվանդանոցի տնօրեն:- Էջ 105:

60. Նկատի ունեն պատրիարքական աթոռից Մաղաքիա արքեպ. Օրմանյանի ստիպողական հրաժարականին (16 հուլիս 1908 թ.) նախորդող և հետևող իրադարձությունները: Ընդդիմադիրների ամբաստանությունները Օրմանյանի հասցեին և ապա արդարացումը տե՛ս Մ. Օրմանյան, Ազգապատում, հատ. Գ, Ս. Էջմիածին, 2001, էջ 5379-5402:- Էջ 107:

61. Ակնարկում են Մ. Օրմանյանի քրոջ՝ Ազապի Տեր-Ներսեսյանի (1861-1905), զավակներին՝ Պողոս, Արաքսի և Սիրարփի Տեր-Ներսեսյաններին:- Էջ 107:

62. Պողոս Նուբար փաշային ուղղված կաթողիկոսական կոնդակի ամբողջական բնագիրը տե՛ս Եր. Օտյան, Պողոս փաշա Նուբար (կենսագրական նոթեր), Կ. Պոլիս, 1913, էջ 45-47:- Էջ 107:

63. Այսինքն՝ «Ահա թե ինչու իմ առաջին մտածումն է եղել Ձեզ խնդրել ընդգրկվելու պատվիրակության կազմում, որին ես անձամբ շատ մեծ նշանակություն եմ տալիս: Վերջում պետք է Ձեզ հավաստիացնեմ, որ Ձեր թեկնածությունը ինձ առաջարկվել է Էջմիածնից» (ֆրանսերեն):- Էջ 108:

64. Այդ մասին Մ. Օրմանյանն իր հուշագրությունում գրում է. «Պողոս Նուպար փաշա հայկական գավառաց բարեկարգությունը հետապնդելու համար Փարիզ գտնված ատեն զիս իրեն գործակցության հրավիրեց և ճանապարհածախսն ալ եղեց, սակայն զայն ալ մերժեցի և գումարը դարձուցի» (տե՛ս Մ. Օրմանյան, Խոհք և խոսք, Երուսաղեմ, 1929, էջ 302): - Էջ 108:

65. «Լիբանանի պես մի բան» - 1913 թ. հունվարի առաջին օրերին Լիբանանյան համաժողովն ընդունեց արմատական բարենորոգումների մի ամբողջ փաթեթ (ապակենտրոնացում, արաբերեն լեզվի պաշտոնական գործածություն, զինվորական ծառայության արտոնություն և այլն): Բարենորոգումները պետք է երաշխավորված լինեին մեծ տերությունների կողմից: Հավանական է, որ հայկական իրականությունում ևս խոսքը ոչ թե լիակատար անկախացման մասին էր, այլ ապակենտրոնացման: Հանգամանք, որ շեշտում է նաև ինքը՝ Պողոս Նուպարը Լոնդոնի «Թայմս» լրագրին 1912 թ. մայիսի 23-ին եղված իր նամակում. «Հայկական կողմը չի հետապնդում ո՛չ բաժանում, ո՛չ անկախություն և ո՛չ էլ քաղաքական ինքնավարություն, այլ միայն Բեռլինի վեհաժողովի 61-րդ հոդվածով խոստացված բարենորոգումների գործադրություն» (տե՛ս «Հորիզոն», օրաթերթ, Թիֆլիս, 1913, 1 հունիսի, № 119):- Էջ 109:

66. Այսինքն՝ Մաղաքիա արքեպ. Օրմանյանի, Գ. Գյուլբենկյանի, Տ. Քելեկյանի և Ն. Տաղավարյանի:- Էջ 109:

67. **Գաբրիել Նորատունկյան** (1852-1936) – Օսմանյան կայսրության պետական գործիչ: Առևտրի ու հանրային շինության (1906-1912) և արտաքին գործոց (1912-1913) նախարար:- Էջ 109:

68. Սանասարյան վարժարանը հիմնադրվել է 1881 թ.՝ Կարինում, ազգային բարերար Մկրտիչ Սանասարյանի (1818-1889) տրամադրած գումարներով:- Էջ 110:

69. **Կարապետ Եզյանց** (Եզով, 1835-1905) – պատմաբան, բանասեր, ռուսական պետական գործիչ, պետական զաղտնի խորհրդական:- Էջ 110:

70. **Պետրոս Հալաճյան** (1871 - ?)– թուրքական պետական գործիչ, Օսմանյան խորհրդարանի պատգամավոր, երիտթուրքական կառավարությունում հանրօգուտ շինությանց նախարար:- Էջ 111:

71. Խոսքը վերաբերում է Գրիգոր Զոհրապի ավագ որդուն՝ Լևոն Զոհրապին, որն այդ ժամանակ պատասխանատու պաշտոն էր վարում հանրօգուտ շինությանց նախարարությունում:- էջ 113:

72. **Donant-donant** (լատ.) - ընծայող, նվիրող:- էջ 114:

73. 1912 թ. վերջերին Կ. Պոլսի Հայոց պատրիարքի հանձնարարությամբ թեմակալ առաջնորդները անցկացրին հայ ազգաբնակչության մարդահամար, որի տվյալներն Արևմտյան Հայաստանի վերաբերյալ ներկայացնում են հետևյալ պատկերը՝ Էրզրումի վիլայեթ – 215.000, Վանի – 185.000, Բիթլիսի – 185.000, Խարբերդի – 196.000, Դիարբեքիրի – 105.000, Սվազի – 165.000, ընդամենը – 1.018.000 մարդ, որը կազմում է այդ վիլայեթների ամբողջ ազգաբնակչության 38,9%-ը: Հաշվի առնելով Կիլիկիայի և Թուրքիայի այլ տարածքների հայության թվաքանակը, ապա նույն պատրիարքարանի տվյալներով 1915 թ. նախօրյակին կայսրությունում այն կազմել է 2.200.000 մարդ: Առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին արևմտահայոց ճշգրտված թվաքանակը տե՛ս «Արարատ», 1914, էջ 129-133 (վեց տարբեր աղբյուրներ):- էջ 114:

74. **Սադրազամ** – մեծ վեզիր, նախարարապետ:- էջ 115:

75. Այդ ժամանակ Օսմանյան կայսրության սուլթանն էր Մեհմեդ V Ռեշադը:- էջ 115:

76. Սահմանադրական Թուրքիայում բացի խորհրդարանից ստեղծվեց նաև ծերակույտ (այան), այսինքն՝ սենատ, որի անդամները նշանակվում էին սուլթանի կողմից: Նշված իրադարձությունների ժամանակ հայերից սենատի անդամներ էին Գ. Նորատունկյանը, Զ. Տիլպերը, Ա. Երամյանը, Ա. Հյուրմուզը, Մ. Ազարյանը:- էջ 115:

77. Խոսքը Կ. Պոլսի Հայոց պատրիարք Մաղաքիա Օրմանյանի մասին է: - էջ 117:

78. **Բյուզանդ Քեչյան** (1859-1927) – հրապարակախոս, խմբագիր, «Բիւզանդիոն» թերթի հիմնադիր:- էջ 117:

79. **Ա. Ի. Գուչկով** (1862-1936) – ռուսական պետական գործիչ, III պետական դումայի նախագահ:- էջ 117:

80. Նկատի ունեն Ստեփան Գաբայանին, տե՛ս աստ, էջ 433, ծան. 24:- էջ 119:

## ԿՈՎԿԱՍԻ ԸՆՏՐԱԿԱՆ ՇՐՋԱՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

(էջ 121)

Հավանաբար գրված է 1917 թ. կեսերին: Փաստաթղթի վրա առկա «Պրոֆ. Ն. Առոնց» նշումը կարող է օգնել որոշելու գրության մոտավոր ժամկետը: Հայտնի է, որ Առոնցին պրոֆեսորի կոչում է շնորհվել 1917 թ. մարտի 1-ին, հետևաբար գրությունը պետք է հետևեր կոչմանը վերաբերյալ ցուցումին:

Գրության ռուսերեն բնագիրը գտնվում է Հայաստանի Ազգային արխիվում (տե՛ս ֆոնդ 199, ց. 1, գ. 121, թթ. 480-481): Ստորև տրվում է փաստաթղթի հայերեն թարգմանությունը, որն իրականացրել է Գ. Ա. Մաղոյանը:

1. **«Հատուկ խորհրդակցություն»** («Особые совещания») - Առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ Ռուսաստանի տնտեսական կյանքն ու կառավարումը կարգավորելու նպատակով ստեղծված պետական հիմնարկությունների սիստեմ:- Էջ 121:

2. Բերվող տվյալները վերաբերում են 1917 թվականին (տե՛ս «Кавказский календарь. 1917», Тифлис, 1916): - Էջ 121:

## ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՐՑԸ ԵՎ ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԾՐԱԳՐԵՐԸ

(էջ 124)

Գրված է 1918 թ. սկզբներին Պետրոգրադում: Ռուսերեն բնագիրն առաջին անգամ տպագրվել է «Международная политика и мировое хозяйство» ամսագրում (1918, № 3, էջ 3-17): Հոդվածի վրա մեր ուշադրությունը հրավիրել է Հ. Ա. Ավետիսյանը, որի հետ համատեղ աշխատակցությամբ էլ այն կրկին տպագրվել է ՀԳԱ ակադեմիայի «Լրաբեր»-ում (հասարակ. գիտ.), 1993, № 1, էջ 137-148:

Այս հրատարակությունից էլ կատարվել է Վ. Ա. Դիլոյանի սույն թարգմանությունը:

1. Ն. Առոնցը նկատի ունի 1918 թ. մարտի 3-ին մի կողմից Խորհրդային Ռուսաստանի և մյուս կողմից՝ Գերմանիայի, Ավստրո-Հունգարիայի, Բուլղարիայի և Օս-

մանյան Թուրքիայի միջև կնքված Բրեստ-Լիտովսկի հաշտության պայմանագիրը, որը Խորհրդային Ռուսաստանի կառավարությունը վավերացրեց 1918 թ. մարտի 15-ին: Բրեստ-Լիտովսկում Հայկական հարցի արծարծման, քննարկման ու արդյունքների մասին ընդարձակորեն տե՛ս Г. Аветисян, Брест-Литовск: Как были отторгнуты Турцией Карс, Ардаган и Батум, Ереван, 1994.- էջ 124:

2. Խոսքը 1878 թ. փետրվարի 19-ին Ռուսաստանի և Օսմանյան Թուրքիայի միջև կնքված Սան-Ստեֆանոյի պայմանագրի 16-րդ հոդվածի մասին է, ըստ որի Թուրքիան պարտավորվում էր բարեփոխումներ անցկացնել Արևմտյան Հայաստանում, իսկ Ռուսաստանն էլ հանդես էր գալու որպես երաշխավոր:- էջ 125:

3. Նկատի ունի 1878 թ. հունիսի 1-ից հուլիսի 1-ը հրավիրված Բեռլինի վեհաժողովի կողմից ընդունված 61-րդ հոդվածը:- էջ 125:

4. Նկատի ունի 1891 թ. Աբդուլ Համիդ II-ի կողմից ստեղծված քրդերից կազմված շուրջ 30 հեծելազնդերը: Համիդեական զնդերը կարևորագույն դերակատարում ունեցան 1894-1896 թթ. հայկական կոտորածներն իրագործելիս, ինչպես նաև 1915-1916 թթ. հայերի ցեղասպանությանը: Զնդերը կազմացրվել են 1920-ական թվականների սկզբներին:- էջ 125:

5. 1914 թ. հունվարի 26-ի ռուս-թուրքական համաձայնագրով Արևմտյան Հայաստանի յոթ վիլայեթները բաժանվեցին երկու հատվածների, որոնց կառավարումը հետագայում հանձնվեց ընդհանուր տեսուչներ Մ. Հոֆֆին և Լ. Վեստենենկին:- էջ 126:

6. Նկատի ունի ռուսական բանակի 1915 թ. հուլիսի 16-ի և «մարտավարական նկատառումներով» տարօրինակ այլ նահանջներ, որոնց ընթացքում ցարական զորքերը լքեցին ազատագրված Արևմտյան Հայաստանի տարածքների մեծ մասը: Նախորդ կոտորածներից հրաշքով փրկված ու Արևմտյան Հայաստան վերադարձած հայերը ենթարկվեցին նոր՝ կրկնակի ջարդերի: Ցարական բանակների անբացատրելի նահանջների հետևանքով հիմնահատակ կործանվեցին ավերածություններից զերծ մնացած Վանն ու Ալաշկերտը:- էջ 126:

7. Ն. Աղոնցն իրավացի է: Գրավելով Արևմտյան Հայաստանը՝ Ռուսաստանն այստեղ սկսեց վարել շեշտված հակահայկական քաղաքականություն: Զինվորական իշխանությունները լուրջ խոչընդոտներ էին ստեղծում վերադարձած հայերի համար, անգամ արգելվեց նրանց մուտքը Կարին: Ռուսական հրամանատարությունը զինաթափեց հայ կամավորական ջոկատներին և ընդհակառակը՝ սպառազինեց և հանդերձավորեց քուրդ բեկերի ջարդարարական հեծելազնդերին, իբր նրանց թուրքերի դեմ ուղղելու նպատակով: Պատերազմը դեռ շարունակվում էր, իսկ

ցարական կառավարությունն արդեն մշակում էր Արևմտյան Հայաստան ռուս վերաբնակիչներ տեղափոխելու, հայերին այնտեղից հեռացնելու ծրագրեր:- Էջ 126:

8. Խոսքը վերաբերում է Խորհրդային Ռուսաստանի Ժողկոմխորհի 1917 թ. դեկտեմբերի 29-ին ընդունված «Թուրքահայաստանի մասին» հրովարտակին:- Էջ 126:

9. Ն. Աղոնցը նկատի ունի Ցիմերվալդյան I-ին (1915 թ. սեպտեմբերի 5-8-ը) և Կինտալի II (1916 թ. փետրվար) միջազգային սոցիալիստական կոնֆերանսները, որոնք դատապարտեցին հայերի ցեղասպանությունը և իրենց համակրանքն արտահայտեցին հայ ժողովրդի հանդեպ (տե՛ս «Циммервальдская и Кинтальская конференции. Официальные документы», М-Л., 1924, էջ 25, 53-54):- Էջ 127:

10. Ն. Աղոնցի բերած քաղվածքը պատկանում է Բրեստ-Լիտովսկի բանակցությունների երրորդ փուլում գերմանական պատվիրակության ղեկավար, կայսերական դեսպանորդ և լիազոր-նախարար ֆոն Ռոզենբերգին, որ նա ասել է 1918 թ. մարտի 1-ին՝ հաշտության բանակցությունների եզրափակիչ փուլի ժամանակ արտասանած իր ելույթում (տե՛ս «Мирные переговоры в Брест-Литовске». Стенограмма, М., 1920, էջ 215): Հանդես գալով այդ ոգով, Ռոզենբերգը, ըստ էության, կատարում էր Վիլհելմ II-ի պահանջը: 1918 թ. փետրվարի 13-ին Համբուրգում կայացած կայսերական կառավարության և գերմանական գերագույն հրամանատարության համատեղ խորհրդակցության ժամանակ կայզրն ասել էր. «Մենք պետք է օգնություն ցույց տանք էստոնացիներին: Մերձբալթների աղերսանքն օգնության մասին, անշուշտ, օգնության աղերսանք է ընդդեմ ավազակների: Այդ ժամանակ մենք պետք է օգնենք նրանց, ինչպես օրինակ, համանմանորեն քուրքերին՝ Հայաստանում [տե՛ս «Советско-германские отношения от переговоров в Брест-Литовске до Раппальского договора». Сборник документов Министерство иностранных дел СССР и Министерство иностранных дел ГДР, т. I (1917-1918), М., 1968, էջ 326-327] : - Էջ 128:

11. Նկատի ունի հաշտության պայմանագրի 4-րդ հոդվածը, որը հռչակում էր՝ «Ռուսաստանը կանի այն ամենը, ինչ որ իրենից կախված է, որպեսզի ապահովի իր զորքերի դուրս բերումը Արևելյան Անատոլիայի նահանգներից և վերջիններիս կանոնավոր վերադարձը Թուրքիային:

Ռուսական զորքերը պետք է անհապաղ դուրս բերվեն նաև Արդահանի, Կարսի և Բաթումի մարզերից: Ռուսաստանը չի միջամտի այդ մարզերի պետական-իրավական և միջազգային-իրավական նոր կազմակերպման գործին, այլ այդ մարզերի բնակչությանը հնարավորություն կտա դրացի պետությունների, մանավանդ Թուրքիայի համաձայնությամբ հաստատել նոր կարգ [տե՛ս «Հայաստանը միջազգային դիվանագիտության և սովետական արտաքին քաղաքականության փաստաթղթե-

րում (1828-1923)», պրոֆ. Զ. Ս. Կիրակոսյանի խմբագրությամբ, Երևան, 1972, էջ 426]: Առավել ստորացուցիչ էր հենց նույն օրը ստորագրված հաշտության պայմանագրին հարակից ռուս-թուրքական լրացուցիչ պայմանագիրը (տե՛ս անդ, էջ 430-433):- Էջ 128:

12. Բերված փաստերը վերաբերում են Կարսի օկրուգին և ոչ թե մարզին, որն այդ ժամանակ ուներ 290.654 բնակիչ: Այստեղ առկա է նաև տպագրական վրիպակ՝ Կարսի օկրուգում եղել է ոչ թե 134.142, այլ՝ 135.142 բնակիչ: Դժվար է համերաշխվել հեղինակի այն պնդման հետ, թե իբր 1897 թ. մարդահամարը Կարսի օկրուգի միակ վստահելի վիճակագրությունն է: Արժեքավոր ու հավաստի են նաև վիճակագրական այլ տվյալներ, ինչպես օրինակ՝ «Обзор Карской области, за 1912 г.», «Кавказский календарь, за 1917 г.», «Վիճակագրական տեղեկագիր Անդրկովկասի բնակչության մասին», Բաքու, 1919 և այլն:- Էջ 128:

13. Կոմս Գ. Հերթլինգ - Գերմանիայի ռայխսկանցլեր (1917 թ. հոկտեմբերի 25 – 1918 թ. – հոկտեմբերի 3): Երկրի կյանքում որևէ լուրջ քաղաքական դեր չի խաղացել, ամբողջ իշխանությունը կենտրոնացված է եղել զինվորականների ձեռքում, որոնց մեջ հատկապես առանձնանում էին Պ. Հինդենբուրգը, Է. Լյուդենդորֆը, իսկ Բրեստ-Լիտովսկի բանակցությունների ժամանակ՝ Է. Հոֆմանը:- Էջ 129:

14. Ա. Բ. Լոբանով-Ռոստովսկին այդ ժամանակ Ռուսաստանի արտաքին գործոց նախարարն էր (1895-1896):- Էջ 130:

15. **Modus vivendi** (լատ.) - ապրելակերպ:- Էջ 131:

16. Նկատի ունի Ստամբուլ-Բաղդադ երկաթուղին, որը Բոսֆորը կապում էր Պարսից ծոցի հետ (2600 կմ): Երկաթուղու կառուցումն իրականացվել է Գերմանիայի հսկողության ներքո:- Էջ 133:

17. Ավստրո-գերմանական բանակները Օդեսան գրավել են 1918 թ. մարտի 13-ին:- Էջ 134:

18. Տե՛ս «Georgia and War». By Zurich Orient publishing company, 1916. Սույն գիրքը բաղկացած է 62 էջից, ունի հինգ գլուխ, չորս հավելված և մեկ քարտեզ՝ ապագա Վրաստանի սահմաններով: Թարգմանվել է նաև ֆրանսերեն:- Էջ 134:

19. Նկատի ունի 1873 թ. հուլիսի 24-ին Ռուսաստանի և Վրաստանի միջև Գեորգիևսկում (Հյուսիսային Կովկաս) կնքված պայմանագիրը, որով Վրաստանի թագավոր Հերակլ II-ը ճանաչել է Ռուսաստանի հովանավորությունը և հրաժարվել ինքնուրույն քաղաքականությունից:- Էջ 135:

20. **Weltpolitike** (գերմ.) – համաշխարհային քաղաքականություն:- էջ 137:

21. Յանուս (Janus) – հին հռոմեական դիցաբանության մեջ մուտքի և ելքի, դռների աստված: Յանուսը պատկերվել է երկու դեմքով՝ մեկով դեպի անցյալը, մյուսով՝ ապագան: Այստեղից էլ «Երկդիմի Յանուս» դարձվածքը, որը նշանակում է կեղծավոր, քծնող, երկերեսանի:- էջ 138:

22. Սույն տողերը պատկանում են XIII դարի նշանավոր տաղերգու Ֆրիկին: Ն. Աղոնցը ռուսերեն ազատ շարադրմամբ է ներկայացրել Ֆրիկի «Գանգատ բան ի Ֆրիկ գրքոյն» բանաստեղծությունը. իրականում այն ունի հետևյալ հյուսվածքը՝

**И храмы божии круша,**
**Возносят знаменье Луны.**
**Եվ վերջապես՝**
**Ты нас покинул на костре,**
**Как траву или куст сухой!**

(տե՛ս «Поэзия Армении с древнейших времен до наших дней в переводе русских поэтов». Редакция, вступительный очерк и примечания Валерия Брюсова, М., 1916): Տրվում է սույն ժողովածուի երրորդ հրատարակության համաձայն, Երևան, 1973, էջ 178-179: Իսկ հայերեն բնագիրը հետևյալն է՝

**Որքան քակեն եկեղեցի,**
**Քանի՞ շինեն պիղծ մզկիթնի:**
**... Եղէգն չեմք, կամ խոտ վայրի,**
**Որ խանձ արկեալ ես կըրակի.**
**Քան զանդաստան փշշաբերի,**
**Կամ մացառեալ ինչ պըրակի:**

(տե՛ս Ֆրիկ, Բանաստեղծություններ, կազմեցին Մ. Մկրյան և Ե. Թորոսյան, Երևան, 1941, էջ 233-234):- էջ 139:

## ՀԵՌԱԳԻՐ ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆԸ

(էջ 140)

Հեռագիրը Մոսկվայից Բեռլին է ուղարկվել 1918 թ. ապրիլի 14-ին: Հեռագրի գերմաներեն բնագրությունը տպագրվել է Յոհաննես Լեփսիուսի «Deutschland und Armenien. 1914-1918. Soemmlung diplomatischer aktenstücke, herausgegelen und eingeleitet von Dr. Johannes Lepsius», Potsdam, 1919

(էջ 378-379) ժողովածուում: Մինչ վերջերս բնագիրն անհայտ էր: Պատմաբան Ռեմ Ղազանչյանը այն հայտնաբերել է Ռուսաստանի արտաքին քաղաքականության արխիվում (АВП РА Референтура по Закавказью) և սիրով տրամադրել մեզ:

Յո. Լեփսիուսի գերմաներեն թարգմանության (որից էլ կատարվել է հայերեն թարգմանությունը) և բնագրի միջև առկա որոշ տարբերությունները ընդգծելու համար որոշեցինք նույնությամբ ներկայացնել նաև ռուսերեն բնագիրը՝

## РАДИОГРАММА ПО ПОРУЧЕНИЮ АРМЯНСКОГО НАЦИОНАЛЬНОГО СОВЕТА ПРОФЕССОРА ПЕТРОГРАДСКОГО УНИВЕРСИТЕТА НИКОЛАЯ АДОНЦА И ПРИСЯЖНОГО ПОВЕРЕННОГО АВАНЕСА ЗАВРИЕВА МИНИСТРУ ИНОСТРАННЫХ ДЕЛ ГЕРМАНИИ. коп. ПРЕДСЕДАТЕЛЮ РЕЙХСТАГА [14.IV.1918]

Армянский Национальный Совет, как высший орган волеизъявления армянского народа, обращается к Вам по поводу создавшегося тягостного положения армян. Армения, залитая кровью, едва вырванная из состояния гнета, вновь обречена на страдания. Пользуясь уходом русских войск, турецкие войска уже хлынули в беззащитную страну, подвергая поголовному истреблению не только турецких, но уже и русских армян. Вопреки условиям мира, признающего право на самоопределение трех кавказских округов, турецкая армия продвигается к Карсу и Ардагану, разоряя страну и уничтожая христианское население. Ответственность за дальнейшую судьбу армян ложится всецело на Германию, ибо по ее настояниям и были выведены русские войска из армянских областей, и ныне от нее зависит удержать турецкие войска от обычных эксцессов на почве мести и озлобления. Трудно мириться с мыслью, чтобы культурное государство, как Германия, имеющее возможность воздействовать на свою союзницу - Турцию, позволила, чтобы Брестский мирный договор послужил для армянского народа, втянутого помимо своей воли в эту мировую войну, источником неисчеслимых бедствий. Поэтому Национальный Совет уверен, что Вами будут приняты необходимые и только от Вас зависящие меры к воздействию на ту-

рецкие власти для ограждения армянского народа от новых ужасов (տե՛ս Архив внешней политики РФ, ф. 148, оп. 3, п. 2, д. 6, л. 48).

Հեռագրի հայերեն թարգմանությունն առաջին անգամ լույս է տեսել Ն. Աղոնցի՝ Հայկական հարցին նվիրված ժողովածուում (1996, էջ 63):

Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Չափազանց արժեքավոր ցուցում է այն մասին, որ նշված ժամանակաշրջանում (1918 թ. մարտ) Ն. Աղոնցը բնակվում էր հենց նոր մայրաքաղաք հռչակված Մոսկվայում, ուր նա տեղափոխվել էր քաղաքական իրադարձություններից ի մոտո լինելու, հետևաբար Հայկական հարցին ու հայ ժողովրդին հուզող խնդիրներին առավել օգտակար լինելու վճռականությամբ:- էջ 140:

2. Հայոց ազգային խորհուրդը ստեղծվել է 1917 թ. սեպտեմբերի 29-ին Թիֆլիսում գումարված Արևելահայերի ազգային խորհրդաժողովում (նախագահ՝ Ավ. Ահարոնյան): Ն. Աղոնցը նշանակվել էր Մոսկվայում Ազգային խորհրդի լիազոր ներկայացուցիչ:- էջ 140:

3. Թուրքական բանակը Արդահանը գրավել էր դեռևս 1918 թ. մարտի 3-4 (16-17)-ի մարտերի ժամանակ, իսկ Կարսը՝ ապրիլի 25-ին: Թուրքական այս հարձակման ճշգրիտ մանրամասները տե՛ս **Ф. И. Назарбеков**, Армянский корпус против турецких войск (ноябрь 1917 г. - июнь 1918 г.), «Բանբեր Հայաստանի արխիվների», 1992, № 3:- էջ 140:

4. Հովհաննես Զավրիև (Զավրյան) - ազգային հասարակական գործիչ, պատմաբան: Ավարտել է Ս. Պետերբուրգի համալսարանի իրավաբանական ֆակուլտետը: Ն. Աղոնցի անձնական բարեկամներից :- էջ 140:

5. Հեռագրի վերջում արտաքին գործերի նախարար Բուշեն Կ. Պոլսում Գերմանիայի դեսպանին տվել է հետևյալ ցուցումը՝ «Խնդրում ենք տերի (իմա՝ թուրքական – Պ. Հ.) կառավարությանը տեղեկացնեք սույնի մասին և կանխեք թուրքական կասկածելի ներխուժումը և այդ մատնանշեք»:- էջ 140:

## ԹՈՒՐՔԱԿԱՆ ՀԱՅՏԱԳԻՐԸ ԵՎ ԹՈՒՐՔԱՀԱՅԱՍՏԱՆԸ

(էջ 141)

Գրված է 1918 թ. մայիսի 17-ից անմիջապես հետո: Տպագրվել է Պետրոգրադի «Новая жизнь» օրաթերթի 1918 թ. մայիսի 24-ի համարում, ապա վերահրատարակել ենք մենք [տե՛ս П. О. Оганесян, Малоизвестная

статья «Турецкая нота и турецкая Армения» Николая Адонца, «Լրաբեր», ՀԽՍՀ ԳԱ (հասարակ. գիտ.), 1990, № 4, էջ 72-77]:

Ներկա թարգմանությունը (Վ. Ա. Դիլոյան) կատարվել է ըստ վերջին հրատարակության:

1. Ի. Վ. Ստալինի սույն հայտարարությունը, որ կրում է «Հերթական սուտ» (տե՛ս «Известия ЦИК», օրաթերթ, 1918, 17 մայիսի, № 97), անհրաժեշտ համարեցինք թարգմանաբար տալ ամբողջությամբ. «Наша время»-ի 1917 թ. № 97-ում (երեկոյան թողարկում) սնփական թղթակցի բերանից հաղորդվում է Կոստանդնուպոլսից արված զերմանական այն ռադիոգրի տեքստը, որը խոսում է այն մասին, թե «բոլշևիկները, ուժեղ օգնություն ստանալով Թուրքեստանից և Ատրպատականից, հարձակման են անցել, ընդ որում, չնայած մուսուլմանների հերոսական դիմադրությանը, բոլշևիկները վերցրել են Բաքուն»:

Հայտարարում եմ ի լուր ամենքի, որ ռադիոհաղորդագիրը ընդհանուր ոչինչ չունի իրականության հետ:

Բաքուն հենց սկզբից ճանաչել և մինչև այժմ էլ ճանաչում է Սովետների իշխանությունը և ոչ մի հարձակում Բաքվի վրա բոլշևիկների կողմից չի եղել:

... Բոլշևիկների ոչ մի պայքար մուսուլմանների դեմ չի եղել և չէր էլ կարող լինել» [համմտ. նաև «Правда», 1918, 19 մայիսի, № 97, տե՛ս նաև՝ Ի. Վ. Ստալին, Երկեր, հատ. 4 (նոյեմբեր 1917-1920), Երևան, 1948, էջ 105-106]:- Էջ 141:

2. Քեղածի - եռաձի կառքի մեջտեղի ձին:- Էջ 142:

3. Կողածի – քառաձի կառքի կողքից լծված ձի, որն ուղղություն է տալիս կառքին:- Էջ 142:

4. Այդ ժամանակ Ռուսաստանում Թուրքիայի դեսպանն էր Խալիլ Քեմալ բեյը:- Էջ 142:

5. Հավանաբար մայիսի 22-ին:- Էջ 142:

6. Գ. Վ. Չիչերին (1872-1936) – Խորհրդային Ռուսաստանի արտաքին գործերի ժողովրդական կոմիսար: Ռուսաստանի կողմից նա է ստորագրել Բրեստ-Լիտովսկի պայմանագիրը:- Էջ 142:

7. Այստեղ մատնանշվող Բրեստ-Լիտովսկում ստորագրված ռուս-թուրքական լրացուցիչ պայմանագրի 11-րդ հոդվածում ասված է. «Սահմեղական դավանանքի ռուսական քաղաքացիներն իրավունք են ստանում գաղթել Թուրքիա՝ լուծարելով իրենց գույքը և հետևերը վերցնելով իրենց սեփականությունը [տե՛ս «Документы

внешней политики СССР», т. I (7 ноября 1917 г.- 31 декабря 1918 г.), М., 1957, էջ 203]:- Էջ 142:

8. Այսինքն՝ Գերմանիայի:- Էջ 143:

9. Նկատի ունի Բալկանյան պատերազմների ընթացքում և պատերազմից հետո թուրք զաղթականներին Արևմտյան Հայաստանում տեղավորելու օսմանյան կառավարության քաղաքականության դեմ Ռուսաստանի բռնած չափազանց անհաշտ դիրքը, որը թուրքական կողմին ստիպեց հրաժարվել այդ քաղաքականությունից:- Էջ 143:

10. Հենրի Ասստեն Լայարդ - Կ. Պոլսում Մեծ Բրիտանիայի դեսպանը 1877-1880 թվականներին: Կարևոր դեր է խաղացել Հայկական հարցը փակուղի մտցնելու ուղղությամբ: Նշանավոր գրող Ծերենցը նրա մասին է գրել, թե «սրտով ու հոգով ավելի թուրք էր, քան իրենք՝ թուրքերը» (տե՛ս «Փորձ», ամսագիր, Թիֆլիս, 1879, № 1, էջ 207):- Էջ 144:

11. Մայոր Թրոտերը 1880 թվականին Էրզրումի անգլիական հյուպատոսն էր:- Էջ 145:

12. Ռուսաստանի արտաքին գործոց նախարար Ս. Դ. Սազոնովի դիրքորոշումը տվյալ հարցի վերաբերյալ հստակ երևում է Կ. Պոլսում ռուսական դեսպանին ուղղված 1912 թ. նոյեմբերի 30-ի նրա նամակից, որից էլ Ն. Աղոնցը կատարել է սույն մեջբերումը (տե՛ս «Ժողովածու դիպլոմատիկական դոկումենտների: Բարենորոգումները Հայաստանում: 1912 թ. նոյեմբերի 12-ից մինչև 10-ը մայիսի 1914 թ.»: Թարգմանեց ռուսերենից և ֆրանսերենից հրավարան Սեդրակ Ավազյան, Թիֆլիս, 1915, էջ 7-8):- Էջ 146:

13. Պիղատոս Պոնտացի – հռոմեական Հուդա նահանգի կառավարիչ (26-36): Նա է Հիսուս Քրիստոսին դատապարտել խաչելության:- Էջ 147:

## ԱՌԱՋԱՎՈՐ ԱՍԻԱՅԻ ՀԻՄՆԱՀԱՐՑԻ ԼՈՒԾՄԱՆ ՇՈՒՐՋ

(էջ 149)

Գրված է 1918 թ. Պետրոգրադում, ինչպես ինքը՝ Ն. Աղոնցն է հավաստում, «դաշնակիցների զենքի հաղթանակից մի քանի ամիս առաջ (թերևս հունիսին – Պ. Հ.)»: Սակայն ինչ-ինչ պատճառներով հոդվածի ռուսերեն բնագիրը, հեղինակի կամքից անկախ, այդպես էլ 1918 թ. լույս չի տեսել: 1920 թվականին, երբ Աղոնցը առժամանակ բնակվում էր Լոնդոնում, ան-

հրաժեշտ է համարում այն ներկայացնել անգլիացի ընթերցողներին, հաստատ համոզմամբ, թե դրա «տեսական հետաքրքրությունը մնում է ուժի մեջ»:

Այսպես, հոդվածը թարգմանվում է անգլերեն և երկու այլ հոդվածների հետ մեկտեղ հրատարակվում առանձին գրքով՝ N. Adonz, Towards the solution of the Armenian question, London, 1920, 95 էջ (տե՛ս նաև սույնի վերատպագրությունը, Yerevan, 2007): Տարիներ անց անգլերեն հրատարակությունը ռուսերեն թարգմանությամբ և Ջ. Ս. Կիրակոսյանի առաջաբանով լույս է տեսել Երևանում (Н. Адонц, К разрешению Армянского вопроса, Ереван, 1984, 75 с.): Ականավոր պատմաբանի գիտական ժառանգության այս էջերը, որ գրեթե անծանոթ էին մնացել հայ ընթերցողներին լույս տեսան նաև Վ. Ս. Դիլոյանի հայերեն թարգմանությամբ (տե՛ս Ն. Ադոնց, Հայկական հարցի լուծման շուրջ, Երևան, 1989, 116 էջ): Թարգմանիչներին, անշուշտ, անծանոթ է մնացել խնդրո առարկա և մյուս հոդվածների ռուսերեն բնագրերի գոյության իրողությունը: Բարեբախտաբար, հոդվածների ռուսերեն բնագրերը պահպանվել են և այժմ գտնվում են Ն. Ադոնցի բեյրության քողոնում, որը հայտնաբերել ենք մենք 1993 թվականին: Թռուցիկ ծանոթությունը նորահայտ ռուսերեն բնագրերի և թարգմանությունների (անգլերեն, ռուսերեն, հայերեն) միջև ի հայտ բերեցին կարևոր և չափազանց էական տարբերություններ, որոնք հետևանք էին ինչպես թարգմանչական շեղումների և պարտադրված կորուստների, այնպես էլ հեղինակային միջամտությունների: Հեղինակային կարևորագույն միջամտություններից է նաև մեզ հետաքրքրող հոդվածի խորագրի փոփոխությունը: Թարգմանությունները կրում են «Հայկական հարցի պատմական հիմքը և Թուրքիայի անկումը» խորագիրը (տե՛ս Վ. Դիլոյանի թարգմանությունը, էջ 34), իսկ ռուսերեն ինքնագիր բնագրում այն այլ կերպ է՝ «Առաջավոր Ասիայի հիմնահարցի լուծման շուրջ»: Կարծում ենք, թե հեղինակային սույն միջամտությունը եղել է ի շահ հոդվածի բովանդակության: Նման պայմաններում, բնականաբար, մենք պետք է հրաժարվեինք արդեն շրջանառության մեջ գտնվող հայերեն թարգմանությունից և ընթերցողների ուշադրությանը ներկայացնել ռուսերեն ինքնագիր բնագրից կատարված պրոֆ. Վ. Ս. Դիլոյանի հայերեն նոր թարգմանությունը, որը լույս տեսավ Ն. Ադոնցի «Հայկական հարց» ժողովածուում («Հայագիտակ», Երևան, 1996, էջ 112-136):

Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Անգլերեն տպագիրը, ինչպես նաև դրանից բխող թարգմանությունները, ռուսերեն բնագրից ունի կառուցվածքային չափազանց կարևոր շեղում: Այստեղ հենց սկզբից տրվում է հոդվածի բովանդակությունը՝ իր էական հիմնակետերով: Հավանական է, որ այս շեղումը հեղինակային է, ուստի այն բերում ենք ամբողջությամբ.

**«Ցարիզմը Փոքր Ասիայում: Հայկական հարցի ծագումը» հոդվածի կապակցությամբ, տպագրված «Revue politique international»-ում, 1917 թ. մարտ-ապրիլ:**

**Ընթացիկ կարծիքը Թուրքիայում Հայկական հարցի ծագման վերաբերյալ, ինչպես արտահայտվել է մի շնական մեկնաբան գայլի և գառան առակի օրինակով: Թուրքական պետական համակարգը որպես «Նիզամ ալթընդա հայդուգ»: Բարեփոխումների փորձերը և նրանց ձախողման պատճառները: Տեղաբնակ ազգությունները որպես Թուրքական կայսրության մշակութային և աշխատանքային հիմք: Էքսկուրս կայսրության քրիստոնեական և մահմեդական երկրները՝ պետական գանձարանի հանդեպ նրանց վերաբերությամբ: Թուրքիայում քրիստոնյաների, մասնավորապես հայերի, քաղաքակրթիչ դերը և կայսրությունը եվրոպականացնելու ու փրկելու համար նրանց օգտագործելու կորսված հնարավորությունը»** (տե՛ս Վ. Ա. Դիլոյանի թարգմանությունը, էջ 34, **համեմ.** ռուսերեն թարգմանությունը, էջ 25):- Էջ 149:

2. Առկա տպագիրներն ու թարգմանություններն այստեղ ունեն տողատակի հեղինակային ընդարձակ ծանոթագրություն «Հայկական հարցի պատմական հիմքը և Թուրքիայի անկումը» ու «Թուրքիայի անդամահատումը» հոդվածների տպագրության ուշացման և դրանց նշանակության վերաբերյալ (անդ, էջ 34-35): Ռուսերեն բնագրում այս ծանոթագրությունը զետեղված է «Հայկական հարցը Սևրում» հոդվածից անմիջապես հետո որպես տեքստ (տե՛ս աստ, էջ 220):- Էջ 149:

3. Ակնարկում է Ոդիսևսի կնոջը՝ Պենելոպեին, որը տարիներ շարունակ մերժելով տարփածուներին, հավատարմորեն սպասում էրամուսնուն:- Էջ 149:

4. **«Omnibus ligantibus»** (լատ.) - բառացիորեն՝ «բոլոր վիճող կողմերի» - Էջ 149:

5. **«Kriegsüberraschung»** (գերմ.) - բառացիորեն՝ «անակնկալ պատերազմ»:- Էջ 150:

6. **Նեմեսիս** – ըստ հունական դիցաբանության՝ վրեժխնդրության, հատուցման և արդարության աստվածուհի:- Էջ 150:

7. Տե՛ս նաև սույնի առանձին հրատարակությունը՝ **E. M. Granville, La Tsarisme en Asie Mineure, Les origines du problème arménien, Lausanne, 1917, 59 p.**- Էջ 151:

8. **«Metteur en scène»** (ֆր.) - բառացիորեն՝ «անդրկուլիսյան գործիչ» - Էջ 152:

9. **«In extenso»** (լատ.) - բառացիորեն՝ «ամբողջությամբ՝ լրիվ, բառացի» - էջ 153:

10. **Nizam altinda hayduk** (թուրք.) - բառացիորեն՝ «օրենքի ներքո եղած ավազակ»:- էջ 156:

11. **Թանզիմաթ** – Օսմանյան Թուրքիայում 1838-1878 թթ. ընթացքում ընդունված բարենորոգումների անվանում: Հայտնի են հատկապես 1838 և 1856 թվականների թանզիմաթները:- էջ 157:

12. **Սուլթան Աբդուլ Մեջիդ** I (1839-1861): - էջ 157:

13. **Մուստաֆա Ռեշիդ փաշա** (1799-1858) – Օսմանյան կայսրության պետական գործիչ, արտաքին գործոց նախարար, մեծ վեզիր: Նա է նախապատրաստել 1839 թ. նոյեմբերի 3-ի թանզիմաթը:- էջ 157:

14. **Ահմեդ Միդհատ փաշա** (1822-1883) – Օսմանյան կայսրության պետական գործիչ, պետական խորհրդի նախագահ, մեծ վեզիր: Թուրքական առաջին սահմանադրության (1876 թ.) հեղինակ:- էջ 157:

15. Ն. Աղոնցի սույն դիտարկումները հիմնավորվում են տվյալ խնդրին նվիրված վերջին լավագույն ուսումնասիրություններով (մասնավորապես տե՛ս **Դ. Ե. Երեմեև, Թուրքերի ծագումը**, Երևան, 1975):- էջ 158:

16. **Սուլթան Սելիմ I Յավուզ** (Ահեղ, 1512-1520):- էջ 160:

17. **Սուլթան Սուլեյման I Կանունի** (Փառահեղ, 1520-1566):- էջ 160:

18. **«Դևշիրմե»** - բառացիորեն մանկահավաք: Քրիստոնյա երեխաները վաղ հասակից սնանելով ֆանատիկ մուսուլմանական դաստիարակություն՝ չափահաս տարիքում համալրում էին օսմանյան բանակի զորական կազմը: Դևշիրմե հողատերերն ու զինվորականները հանդիսանում էին սուլթանիզմի հիմնական հենարանը և աչքի էին ընկնում իրենց ծայրահեղ դաժանությամբ: Այս քաղաքականության մասին մանրամասն տե՛ս **Մ. Զուլալյան, «Դևշիրմե»-ն** («Մանկահավաքը») Օսմանյան կայսրության մեջ ըստ թուրքական և հայկական աղբյուրների («Պատմա-բանասիրական հանդես», 1959, № 2-3):- էջ 161:

19. Ակնհայտ վրիպակ է, պետք է լինի Կոչիբեյ (Կուչիբեյ): Խոսքը վերաբերում է XVII դարի առաջին կեսի նշանավոր թուրք պատմագիր Կոչիբեյ Գյումուրջինելիին, որը հեղինակ է **«Ռիսալե»** («Զեկուցագիր») երկասիրության:- էջ 162:

20. Օսման I-ի (1299-1326) և նրա որդի Օրխանի (1326-1360) օրոք վերջնականապես ձևավորվեց ու պատմության թատերաբեմ իջավ Օսմանյան կայսրությունը:- Էջ 162:

21. Տե՛ս **Vital Cuinet**, La Turquie d' Asie. Géographie ad administratrative, statistique descriptive et raisonnée de chaque province de L'Asie Mineure, vol. I-IV, Paris, 1892-1895, տե՛ս նաև սույն գրքի ռուսերեն համառոտագրված տարբերակը՝ **Витал Гине, Сирия, Ливан и Палестина, вып.** 1-5, СПб., 1899-1903.- Էջ 162:

22. Թուրքիայի Հայոց պատրիարքությունը հիմնադրվել է 1461 թվականին՝ սուլթան Մեհմեդ II Ֆաթիհի հատուկ հրամանագրով: Առաջին պատրիարքն է եղել Հովակիմ եպիսկոպոսը (1461-1478):- Էջ 163:

23. **Արդամեդա** - քաղաք Պաղեստինում:- Էջ 163:

24. **Սեմեդ Ռասիմ էֆենդի** (Սեմեդ Ռասիմի) – XVII դարի թուրք պատմագիր, «Օսմանների պատմությունը» գրքի հեղինակ:- Էջ 164:

25. Քըլըչ, ավելի ճիշտ՝ Քըլըչ հակկը - բառացիորեն նշանակում է սուր, սրի իրավունք: Այսպես էին կոչվում զիամեթի կամ թիմարի հողատիրոջ եկամուտները: Պետական հողային ֆոնդի այն հողերը, որոնց տարեկան եկամուտը 20.000 մինչև 100.000 ակչե էր, կոչվում էին զիամեթներ, իսկ հողատերերը՝ զաիմներ: Տարեկան 300-ից մինչև 20.000 ակչե եկամուտ բերող հողերը կոչվում էին թիմարներ, իսկ հողատերերը՝ թիմարիոներ (տե՛ս «Օսմանյան օրենքները Արևմտյան Հայաստանում», Երևան, 1964):- Էջ 165:

26. 1328 թվականից մինչև 1687 թվականը Թուրքիայում շրջանառության մեջ է եղել արծաթե դրամի միավոր ակչեն (այսինքն՝ «սպիտակավուն»): 1687 թվականից շրջանառության մեջ է մտնում ղուրուշը:- Էջ 165:

27. Տվյալ ժամանակաշրջանի Օսմանյան կայսրության սոցիալ-տնտեսական կյանքի ու վարչական բաժանման մասին տե՛ս **Վ. Ա. Բայբուրդյանի** «Օսմանյան կայսրության պատմություն» մենագրության (Երևան, 2011), յոթերորդ գլուխը (էջ 303-326):- Էջ 165:

28. **Ն. Ադոնցի** ենթադրությունը Դանիշմանյանների հարստության հայկական ծագման վերաբերյալ ապացուցվեց հետագա ուսումնասիրողների կողմից [տե՛ս **Ս. Տ. Երեմյան**, Լիպարիտ զորավարի հաջորդները և Դանիշմանյան տոհմի ծագման խնդիրը, «Տեղեկագիր», ՀԽՍՀ ԳԱ (հասարակ. գիտ.), 1947, № 8]: - Էջ 166:

29. Նկատի ունի «Թուրքիայի անդամահատումը» հոդվածի քրդերին վերաբերող հատվածը (տե՛ս սառ, էջ 189-201): - Էջ 169:

30. Խոսքը քուրդ նշանավոր քաղաքական գործիչ, զորավար և գրող Իդրիս Հաքիմ Բիթլիսիի մասին է: Նախապես եղել է Ակ-կոյունլու Յաղուբ բեկի (1479-1490) քարտուղարը, այնուհետև անցել է օսմանցիների կողմը և ծառայել Բայազիդ II (1481-1512) և Սելիմ I Ահեղ սուլթաններին, եղել նրանց խորհրդականը: Կարևոր դերակատարություն է ունեցել քրդական ցեղերին Հյուսիսային Միջագետքից ու Պարսկաստանից Հայաստան տեղափոխելու գործում: Եղել է Արևմտյան Հայաստանը քրդերով բնակեցնելու գաղափարի հեղինակն ու առաջին կիրառողը:- Էջ 169:

31. Ճիշտ անվանաձևն է Իբրահիմ էֆենդի Մյութեֆերիքե (Պասմաճի): Իրականում նա թուրքերեն և արաբերեն գրքեր տպագրելու արտոնություն ստացել էր 1720 թվականին, սակայն թուրքերեն առաջին գիրքը տպագրել է 1729 թվականին: Թուրքիայում հայկական տպագրության և ընդհանրապես թուրքական տպագրական գործի մասին տե՛ս **Թեոդիկ**, Տիպ ու տառ, Կ. Պոլիս, 1912; **Հ. Ա. Ստեփանյան**, Հայերի ներդրումն Օսմանյան կայսրությունում, Երևան, 2012, էջ 469-504; **А. Д. Желтяков**, Печать в общественно-политической жизни Турции (1729-1908 гг.), М., 1972.- Էջ 171:

32. Պոլսահայ առաջին տպագիր գիրքը Աբգար դպիր Թոխաթեցու հրատարակած «Փոքր քերականութիւն» դասագիրքն է (1567 թ.):- Էջ 172:

33. Սփոփումը է. հայտնի է, որ Հռոմում հայկական տպագրություն հիմնադրվել է դեռևս 1579 թվականին, երբ լույս տեսավ «Դաւանութիւն հաւատոյ» գիրքը: Հետագա տարիներին (1584, 1586, 1590, 1603 թվականներին) այստեղ գործել են հայկական այլ տպարաններ ևս:- Էջ 172:

34. Վերջին տարիներին հայ գրքի պատմության ուսումնասիրողների ջանքերով ավելի է ճշգրտվել հայկական տպագրության ժամանակագրությունը, որը Ն. Առոնցի բերած տվյալներից ունի հետևյալ շեղումները՝ Միլան – 1621, Մարսել – 1672, Լիվոռնո – 1644, Նոր Ջուղա - 1638, Տրիեստ – 1776, Ս. Պետերբուրգ - 1781, Նոր Նախիջևան – 1790 (տե՛ս **Ն. Ոսկանյան, Ք. Կորկոտյան, Ա. Սավալյան**, Հայ գիրքը 1512-1800 թվականներին, Երևան, 1988):- Էջ 172:

35. Վրիպակ է. հայկական առաջին պարբերականը՝ «Ազդարարը», լույս է տեսել 1794 թվականին:- Էջ 172:

36. Իրականում թուրքական առաջին թերթը «Մոնիտյոր Օտտոման»-ն է, որը լույս է տեսել 1831 թվականին: «Թագվիմը վագայի» շաբաթաթերթը սկսել է լույս տեսնել 1832 թվականից, որը № 12-րդից սկսած ունեցր հայերեն զուգահեռ հրատարակություն՝ «Լրո գիր Մեծի տերութեան Օսմանեան» անվանումով:- Էջ 172:

37. Կ. Պոլսի և ընդհանրապես Մերձավոր Արևելքի առաջին պրոֆեսիոնալ թատրոնը «Արամյան թատրոնն» է, որը հիմնադրվել է 1846 թ.՝ Հովհ. Գասպարյանի կողմից: Թուրք թատրոնին հայերի բերած նպաստի վերջին լավագույն հրատարակություններից տե՛ս Գ. Խ. Ստեփանյանի՝ «Հայերի դերը թուրք թատրոնի զարգացման գործում ըստ թուրքական աղբյուրների» (Բեյրութ, 1987) գիրքը:- Էջ 173:

38. Օտտոմանյան բանկը հիմնադրվել է 1856 թ.՝ անգլիական և ֆրանսիական ներդրումներով:- Էջ 173:

39. Նկատի ունի Տյուզյան և Տատյան ամիրայական ընտանիքներին: Տուզյանները ժառանգաբար վարել են արքունի դրամահայությունը, իսկ Տատյանները՝ վառոդապետությունը:- Էջ 173:

40. Խոսքը սուլթան Սելիմ III-ի (1789-1807) մասին է:- Էջ 174:

41. Թյուրիմացություն է. «սև երախտամոռության» զոհ է դարձել Տյուզյան ընտանիքը, որի ներկայացուցիչներից շատերը 1819 թ. ձերբակալվել ու աքսորվել են, իսկ որոշ ժամանակ անց ընտանիքի արական ներկայացուցիչների մեծ մասը մահապատժի է ենթարկվել:- Էջ 174:

42. Դոլմաբախչեի թագավորական պալատը կառուցել է Կարապետ Պալյանը (1856), Չրաղանի պալատը Սարգիս Պալյանը (1863-1866), իսկ Բեյլերբեյի նոր պալատը՝ Հակոբ և Սարգիս Պալյանները (1864):- Էջ 174:

43. Նկատի ունի Գրիգոր ամիրա Պալյանին, որ Թոփհանեի (Նուսրեթիե) մզկիթը կառուցել է 1823-1826 թվականներին: Պալյանների ճարտարապետական ընտանիքի մասին տե՛ս Ե. Պողոսյան, Պալյան գերդաստանը, «Հանդես ամսօրյա», 1970-1973: Հմմտ. Հ. Ա. Ստեփանյան, Հայերի ներդրումն Օսմանյան կայսրությունում, էջ 439-455 և այլն:- Էջ 174:

44. Միջազգային առևտրում հայերի խաղացած նշանակալից դերի՝ Ն. Աղոնցի գնահատականներն իրենց հետագա հաստատում են ստացել խնդրո առարկա հարցի ուսումնասիրություններում (տե՛ս հատկապես **В. Байбуртян**, Армянская колония Новой Джулфы в XVII веке, Ереван, 1969; Շ. Լ. Խաչիկյան, Նոր Ջուղայի հայ վաճառականությունը և նրա առևտրատնտեսական կապերը Ռուսաս-

տանի հետ XVII-XVIII դարերում, Երևան, 1988; Վ. Հ. Փափազյան, Հայաստանի առևտրական ուղիները միջազգային առևտրի ոլորտում XVI-XVII դդ., Երևան, 1990 և այլն):- Էջ 175:

45. Անգլերեն տպագիրն այստեղ ունի ընդարձակ ծանոթագրություն, որը բացակայում է ռուսերեն բնագրում. «Արքաս Մեծի ժամանակներում հայ վաճառականը համարվում էր ամենաունակ գործակալը Ասիայի և Եվրոպայի միջև կատարվող հազվագյուտ ապրանքների և ոսկով նրանց արժեքի փոխադարձ փոխադրություններում: Կարճ ասած, նա իրավացիորեն կարող էր հավակնել այն տիտղոսին, որը քաղաքակիրթ երկրներում համարվում է որպես ամենապատվավոր բնութագրությունը հասարակության մեջ: Նա այն է, ինչ էին Վենետիկի և Ջենովայի վաճառականները, ինչ են Անգլիայի վաճառականները, բոլոր առումներով ջենթլմեն» (Ker Porter, I, p. 424):- Էջ 176:

## ԹՈՒՐՔԻԱՅԻ ԱՆԴԱՄԱՀԱՏՈՒՄԸ

(էջ 178)

Գրված է 1918 թ. կեսերին Պետրոգրադում: Առաջին անգամ լույս է տեսել անգլերեն թարգմանությամբ 1920 թ. Լոնդոնում տպագրված՝ Հայկական հարցին նվիրված Ն. Ադոնցի ժողովածուում (N. Adonz, Towards the solution of the Armenian question): Հետագայում լույս է տեսել անգլերենից կատարված ռուսերեն (1984) և հայերեն (1989, 1996) թարգմանություններով: Ներկա հայերեն թարգմանությունը (Վ. Ա. Դիլոյան) կատարվել է ռուսերեն նորահայտ ինքնագրից (թարգմանության հանգամանքների մասին տե՛ս «Առաջավոր Ասիայի հիմնահարցի լուծման շուրջ» հոդվածի ծանոթագրությունների առաջաբանը, ստ, էջ 443-444):

1. Անգլերեն տպագիրը, ինչպես նաև նրանից բխող թարգմանությունները, այս դեպքում ևս ունի ռուսերեն բնագրից չեղվող կառուցվածքային տարբերություն (հոդվածի համառոտ հիմնակետերը), որն անհրաժեշտ ենք համարում տալ ամբողջությամբ.

«Ինքնորոշման սկզբունքները Թուրքիայի վերաբերմամբ: Թուրքական կայսրության անդամահատումը հինգ հիմնական էթնիկական գոտիների՝ Օսմանյան Անատոլիայի, Հայաստանի, Սիրիայի, Քրդստանի և Արաբստանի: Հայկական տարածքները և քրդական հավակնությունները: Արդի ժամանակների քրդաեիրական քաղաքականությունը: Էրսկուրս Հայաստանը քրդացնելու օսմանյան փորձերի վերաբերյալ՝ սկսած հին ժամանակներից: Մուսուլման սեփականատերերը և հայ

**ազանդավորները հայ ավատատերերի տիրույթներում: Հայաստանը որպես աշխատանքի և մշակույթի երկիր դեռևս հայկական է»** (տե՛ս Վ. Ա. Դիլոյանի թարգմանությունը, էջ 77):- Էջ 178:

2. **Դ. Լլոյդ Ջորջ** (1863-1946) - անգլիական պետական գործիչ, վարչապետ: Հանդես է եկել Հայկական հարցը արդարացիորեն լուծելու օգտին: Այդ կապակցությամբ նրա զարգացրած տեսակետները տե՛ս **Д. Ллойд Джордж, Правда о мирных договорах, т. 1-2, М., 1957** հուշագրության երկրորդ հատորի «Ճնշված ժողովուրդների ազատագրումը» (էջ 5-12), «Փոքր Ասիան, Հայաստանը և Եվրոպական Թուրքիան» (էջ 386-453), «Ազգային փոքրամասնությունները» (էջ 469-497) բաժինները:- Էջ 178:

3. **Թ. Վ. Վիլսոն** (1856-1924) - ԱՄՆ-ի պետական գործիչ, նախագահ: Հանդես է եկել Հայկական հարցը արդարացիորեն լուծելու օգտին: Վիլսոնյան 14 կետերի մասին մանրամասն տե՛ս **С. Бекер, Вудро Вильсон. Мировая война. Версальский мир, М.-П., 1923, с. 121-193.**- Էջ 178:

4. **Cuique suum** (լատ.) - «Ամեն մեկին՝ իրենը, յուրաքանչյուրին՝ իրենը»:- Էջ 179:

5. Խոսքը սուլթան Մահմուդ II-ի (1808-1839) մասին է: Նրա օրոք սկսվեցին առաջադիմական բարեփոխումները, նախապատրաստվեց բարենորոգումների առաջին հրովարտակը:- Էջ 179:

6. **Սուլթան Աբդուլ Մեջիդ** (1839-1851) – հրատարակել է առաջին բանզիմարը՝ «Հաթթը Շերիֆը» (1839): Պետական կառավարման մեջ լայն տեղ է հատկացրել քրիստոնյաներին, մասնավորապես հայերին:- Էջ 179:

7. Նկատի ունի 1878 թ. Բեռլինի վեհաժողովի 61-րդ հոդվածը, որը հռչակում էր. «Բարձր Դուռը պարտավորվում է առանց հետագա հապաղման իրագործել հայաբնակ մարզերում տեղական կարիքներից հարուցված բարելավումներն ու բարենորոգումները և ապահովել հայերի անվտանգությունը չերքեզներից և քրդերից...» (տե՛ս «Հայաստանը միջազգային դիվանագիտության և սովետական արտաքին քաղաքականության փաստաթղթերում», էջ 12):- Էջ 181:

8. **«Արմենիակների բանակաթեմ»** - բյուզանդական զորամիավորում: Ստեղծվել է VII դարի սկզբներին Բյուզանդական կայսրության հայկական տարածքների վրա: Ծավալով և կարևորությամբ կայսրության երկրորդ բանակաթեմն էր:- Էջ 182:

9. **Ad hoc** (լատ.) - բառացիորեն՝ «Առ այս», այսինքն՝ որոշակի դեպքի համար:- Էջ 184:

10. Այստեղից սկսվող հետագա ամբողջ շարադրանքը՝ մինչև 201-րդ էջը, հիմք է հանդիսացել «Քրդերի ներթափանցումը Հայաստան» հոդվածի համար (տե՛ս սուտ, էջ 221-226): Այդ նկատառումներով էլ ծանոթագրությունները կտրվեն այդտեղ:- Էջ 189:

11. Խոսքը Դիարբեքիրի անգլիական հյուպատոս Դ. Թեյլորի մասին է: Հետաքրքրությունից զուրկ չեն նրա դիտարկումները քրդերի և հայ-քրդական հարաբերությունների մասին (**Д. Тейлор**, Путешествие по Курдистану, տե՛ս «Очерки Верхней Армении», сборник, Тифлис, 1873):- Էջ 189:

12. Ակնարկում է Կ. Պոլսի Հայոց պատրիարք (1869-1873) Մկրտիչ արքեպ. Խրիմյանին, որն այդ տարիներին բազմիցս է բողոքել Անգլիայի շեշտված հակահայ քաղաքականության դեմ:- Էջ 189:

13. Առկա բազմաթիվ գրքերից կարելի է առանձնացնել հետևյալները՝ **П. И. Аверьянов**, Курды в войнах России с Персией и Турцией в течении XIX столетия, Тифлис, 1900. **К. Н. Смирнов**, Поездка в Северный Курдистан, Тифлис, 1904. **Р. И. Термен**, Отчет о поездке в санджак Хекиарии Ванского вилайета в 1906 г., Тифлис, 1910. **А. Карцев**, Заметки о курдах, Тифлис, 1896. Քրդամետ և միևնույն ժամանակ հակահայ շեշտված դիրքորոշմամբ հատկապես աչքի է ընկնում այս վերջին հեղինակը, իսկ մեր ժամանակներում՝ Մ. Ս. Լազարևը («Курдский вопрос». 1891-1917 гг. », М., 1972): Հատկանշական է, որ անայլայլ խեղաթյուրելով պատմական եղելությունները՝ Ա. Կարցևը քրդերի ընդհանուր թիվը Առաջին համաշխարհային պատերազմի նախօրյակին հաշվում է 3 միլիոն (նշվ. աշխ., էջ 7), իսկ Մ. Լազարևը՝ ամենաքիչը 4 միլիոն (նշվ. աշխ., էջ 26): Թեև նշանավոր աշխարհագրագետ Է. Ռեկլյուն բերում է 1,8 միլիոն («Земля и люди», т. IX, СПб., 1887, էջ 294), իսկ իր քրդամետ հայացքներով հայտնի Պ. Ավերյանովը՝ շուրջ 2 միլիոն (տե՛ս **П. И. Аверьянов**, Этнографический и военно-политический обзор Азиатских владений Оттоманской империи, СПб., 1912, էջ 12):- Էջ 190:

14. Իր հակառուսական գործունեությամբ հատկապես աչքի էր ընկնում Վանում Ֆրանսիայի հյուպատոս Ս. Զարզեցկին: Կաթոլիկ միսիոներների միջոցով նա գործուն հակառուսական քարոզչություն էր տանում քրդերի շրջանում: Հայտնի է, որ նրան հաջողվել էր կազմակերպել իրանական և թուրքական քրդերի մի քանի հակառուսական ելույթներ (տե՛ս Մ. Ս. Լազարև, նշվ. աշխ., էջ 248): Իր «Քուրդ-Հայկական հարց» ուսումնասիրությունում հյուպատոսը բացահայտորեն նվազեցնելով հայերի թվաքանակը՝ քրդերինը հասցնում է մինչև 4 միլիոնի: Անհիմն է նաև

նրա այն պնդումը, թե իրր Օսմանյան կայսրությունում «հայերը միշտ էլ թուրքերի տիրապետությունը գերադասել են հարևան ազգի (իմա՝ ռուսների – Պ. Հ.) տիրապետությունից» (S. Zarzecki, La question kurdo-arménienne, «Revue de Paris», 1914, № 8, p. 884): - էջ 190:

15. Բացի նշված աշխատությունից, ֆրանսիացի լրագրող Լյուդովիկոս դը Կոնստանսոնը Հայկական հարցի վերաբերյալ հրատարակել է նաև մի քանի այլ ուսումնասիրություններ («La Turquie d'Asie, ses divisions, ses nationalités», Paris, 1896. «Les Arméniens du Caucase. Les origines de la situation actuelle», Paris, 1905. «La question arménienne», Paris, 1913. «Les réformes en Turquie d'Asie. La question arménienne. La guestion Syrienne», Paris, 1913, տե՛ս նաև վերջին աշխատության ռուսերեն թարգմանությունը՝ **Л. де Контансон, Реформы в Азиатской Турции. Армянский вопрос**, М., 1914):- էջ 191:

16. Խոսքը Սեֆյան հարստության հիմնադիր շահ Իսմայիլ I-ի (1502-1524) մասին է:- էջ 191:

17. Մոլլա Իդրիս, տե՛ս սոտ, էջ 452, ծան. № 30:- էջ 191:

18. Նկատի ունի վերջին Ակ-կոյունլու շահ Յաղուբին:- էջ 191:

19. Սեֆյանները թագավորական հարստություն են դարձել 1502 թվականին, երբ Իսմայիլ Սեֆյանը ջախջախելով Ակ-կոյունլուներին գրավեց Ատրպատականն ու Իրանը:- էջ 194:

20. Նկատի ունի Առաջին համաշխարհային պատերազմը:- էջ 196:

21. Բարսեղ I-ը պավլիկյանների մայրաքաղաք Տեվրիկը գրավել է 872 թվականին:- էջ 198:

## ՆԱՄԱԿ ԼՈՆԴՈՆԻ «ԹԱՅՄՍ» ԹԵՐԹԻ ԽՄԲԱԳՐԻՆ

(էջ 203)

Գրված է 1920 թ. նոյեմբերին Լոնդոնում: Ռուսերեն ինքնագիրը պահվում է Համազգայինի Բեյրութի գրական պահոցի Նիկողայոս Ադոնցի ֆոնդում (տե՛ս պահարան I, զգրոց Դ/Ա-7): Նույն ֆոնդում պահվում է նաև սույն նամակի անգլերեն թարգմանության մեքենագիր օրինակը (տե՛ս պահարան I, զգրոց Ծ/Ա-8): Նամակի ռուսերեն ինքնագրի և անգլերեն թարգմանության միաժամանակյա առկայությունը փաստում են այն իրողությունը, որ Ն. Ադոնցի անգլերեն գրությունները նախապես գրվել են հայերեն կամ

ռուսերեն և հետո միայն թարգմանվել անգլերեն: Հայերեն թարգմանությամբ (Վ. Ա. Ղիլոյան) լույս է տեսել Հայկական հարցին նվիրված Ն. Աղոնցի 1996 թ. ժողովածուում (էջ 116-118):

Արտատպվում է այս հրատարակությունից:

1. «Թայմս» («The Times») - անկախ օրաթերթ, որը լույս է տեսնում Լոնդոնում 1785 թվականից առ այսօր:- էջ 203:

2. Ցավոք, չկարողացանք պարզել, թե Աղոնցի սույն նամակը «Թայմս»-ում երբևիցե տպագրվել է, թե ոչ:- էջ 203:

3. Նկատի ունի 1920 թ. նոյեմբերյան տոնակատարությունները Լոնդոնում՝ ի նշանավորումն Առաջին համաշխարհային պատերազմի ավարտի երկրորդ տարելիցին:- էջ 203:

4. Այսինքն՝ Գերմանիան:- էջ 203:

5. Նկատի ունենալով այն հանգամանքը, որ խորհրդային բանակը շրջանցելով Վրաստանը, նախ արշավեց դեպի Ադրբեջան (1920 թ. ապրիլ), իսկ այնուհետև, որոշ դադարից հետո՝ Հայաստան: Ն. Աղոնցը չի կռահել, որ բոլշևիկների եզրափակիչ հարվածն ի վերջո ուղղվելու էր Վրաստանի դեմ (փետրվար, 1921 թ.):- էջ 203:

6. Ակնարկում է հայ ժողովրդի դահիճ Էնվեր փաշային, որի հայտարարությունը՝ ներկայացված Արևելքի ժողովուրդների Առաջին համագումարին (Բաքու, 1920 թ. սեպտեմբերի 1-7-ը), ուներ ոչ միայն հակահայկական միտում, այլև պատերազմի անքող կոչ էր ընդդեմ Հայաստանի Հանրապետության:- էջ 204:

7. Հետաքրքիր է, որ կիլիկյան ողբերգական այս իրադարձությունների հիմնական հերոսներից մեկը՝ ֆրանսիական գեներալ Գուրոն 1920 թ. դեկտեմբերի 9-ին հայտարարում է, որ «պետք է փոխել Սևրի դաշնագիրը թուրքերին ընդունելի ձևով, որովհետև թուրքերը երկար ժամանակն ի վեր մեր բարեկամներն էին, իսկ այնուհետև՝ մեր քաջարի և լոյալ բարեկամները» (տե՛ս Ռ. Գ. Սահակյան, Թուրք-ֆրանսիական հարաբերությունները և Կիլիկիան 1919-1921 թթ., Երևան, 1970, էջ 226):- էջ 205:

## ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՐՑԸ ՍԵՎՐՈՒՄ

(էջ 206)

Գրված է 1920 թ. հոկտեմբերի 20-ին Լոնդոնում: Հոդվածի ռուսերեն մեքենագիր օրինակը գտնվում է Համազգայինի Բեյրութի գրական պահոցում

(տե՛ս պրոֆ. Նիկողայոս Ադոնցի ֆոնդ, պահարան I, զզրոց Բ, թղթածրար Թ/Ա-8, թթ. 1-21): Առաջին անգամ անգլերեն թարգմանությամբ լույս է տեսել Հայկական հարցին նվիրված Ն. Ադոնցի ժողովածուում (Լոնդոն, 1920, էջ 5-24, երկրորդ տպագրությունը՝ Երևան, 2007, էջ 5-24): Հետագայում թարգմանվել (թարգմանիչներ՝ Ռ. Կոչոյան, Վ. Կարմիրշալյան) ու հրատարակվել է ռուսերեն (Երևան, 1984, էջ 11-24) և հայերեն (թարգմանիչ՝ Վ. Ա. Դիլոյան, Երևան, 1989, էջ 12-23):

Ներկա հրատարակությունը կատարվել է ռուսերեն մեքենագիր բնագրի հայերեն թարգմանությունից (թարգմանիչ՝ Վ. Ա. Դիլոյան, Երևան, 1996, էջ 119-131):

Թարգմանության հանգամանքների մասին տե՛ս սույն, էջ 443-444:

1. Խոսքը Մուդրոսի զինադադարի մասին է, որը կնքվել է մի կողմից Օսմանյան կայսրության, իսկ մյուս կողմից Անտանտի երկրների միջև 1918 թ. հոկտեմբերի 30-ին Լեմնոս կղզու Մուդրոս նավահանգստում:- Էջ 207:

2. Այսինքն՝ 1918-1920 թվականները:- Էջ 208:

3. Սևրի պայմանագրի 88-րդ հոդվածը հռչակում էր. «Թուրքիան հայտարարում է, որ ճանաչում է Հայաստանը, ինչպես այդ բանն արդեն արել են Դաշնակից տերությունները, որպես ազատ և անկախ պետություն» (տե՛ս «Հայաստանը միջազգային դիվանագիտության և սովետական արտաքին քաղաքականության փաստաթղթերում. 1828-1923 թթ.», էջ 676):- Էջ 208:

4. Սևրի 89-րդ հոդվածում նշվում է. «Թուրքիան և Հայաստանը, ինչպես և Բարձր պայմանավորվող կողմերը, համաձայնվում են Էրզրումի, Տրապիզոնի, Վանի և Բիթլիսի վիլայեթներում Թուրքիայի և Հայաստանի միջև սահմանատումը թողնել Ամերիկայի Միացյալ Նահանգների որոշմանը և ընդունել ինչպես նրա որոշումը, նույնպես և այն բոլոր միջոցառումները, որոնք նա կարող է առաջարկել Հայաստանին դեպի ծով ելք տալու և հիշյալ սահմանագծին հարող օսմանյան բոլոր տերիտորիաների ապառազմականացման վերաբերյալ» (անդ): Ի դեպ թարգմանություններում վրիպմամբ «89-րդ հոդված» նշումի փոխարեն տպագրվել է «90-րդ հոդված» գրառումը:- Էջ 209:

5. Իրականում յոթ վիլայեթներից չորսը ճանաչվեցին Հայաստանինը, իսկ երեքը խլվեցին նրա տարածքից:- Էջ 210:

6. Նկատի ունի 1916 թ. ապրիլի 16-ին Պետրոգրադում կնքված անգլո-ֆրանսռուսական համաձայնագիրը, ըստ որի, պատերազմի ավարտից հետո Ռուսաստանին էին միանալու Տրապիզոնի, Էրզրումի, Վանի և Բիթլիսի վիլայեթները (տե՛ս

«Раздел Азиатской Турции по секретным документам бывшего министерства иностранных дел». Под ред. Е. А. Адамова, М., 1924, док. № XCII, համա. նաև № XCVII):- էջ 211:

7. Խոսքը վերաբերում է «Թուրքիայի անդամահատումը» հոդվածին (տե՛ս սույն, էջ 178-202):- էջ 211:

8. Ն. Աղոնցի հմուտ ներթաղրությունը Դերսիմի ղզլբաշների ոչ քրդական ծագման վերաբերյալ այժմ փաստվում է բազմաթիվ այլ աղբյուրներով: Կարծում ենք հետաքրքրությունից զուրկ չէ նշանավոր արևելագետ Վ. Ա. Գորդլևսկու նկատողությունը, թե «ղզլբաշները վաղուց ապրում էին այն զաղտնի հույսով, թե շուտով կհայտնվի ինչ-որ տեղ թաքնված (փակված) թագավորը և երկրում կհաստատի խաղաղություն և արդարություն» (տե՛ս **В. А. Гордлевский**, Избранные сочинения, т. III. Силуэты Турции, М., 1962, էջ 83-84): Անշուշտ, այս պատմության նմանությունն ակներև է Փոքր Մհերի վերադարձին սպասող հայերի ակնկալություններին: Մեկ այլ վկայության համաձայն, մինչև XX դարասկիզբը Դերսիմի ղզլբաշներն այնքան ինքնավար էին, որ թվում է, թե նրանք պետություն էին պետության մեջ: Թուրքերը Դերսիմում ոտք դնել չէին կարող, իսկ քրիստոնյաները անարգել ու անվտանգ կարող էին տեղաշարժվել ու անգամ բնակվել այնտեղ: Տեղի քրդերը քրիստոնյաներին վերաբերում էին հարգանքով ու սիրով (տե՛ս **М. Т.**, Курды, «Кавказ», 1900, 21 ноября): - էջ 212:

9. Նկատի ունի Կիլիկիայի հայկական թագավորությունը (1080-1375 թթ.):- էջ 214:

10. Ակնարկում է Ֆրանսիային:- էջ 215:

11. Օսրոյենեի (Եդեսիա) բոլոր թագավորները՝ Ք. ա. II – Ք. հ. II դարերում, կրել են Աբգարիոս պատվատիտղոսը:- էջ 216:

12. Տե՛ս **Людовик де Контасон**, Реформы в Азиатской Турции. Армянский вопрос.- էջ 216:

13. Այս հատվածում թարգմանություններում առկա է մի ամբողջ պարբերություն, որը բացակայում է ռուսերեն բնագրում. «Վերջին խոսքը պատկանում է մի հզոր դեմոկրատիայի նախաձեռնին. նման իրավազորությունը խորհրդանշական է: Հայկական հարցը վաղուց դադարել է Հայկական լինելուց: Այն ժամանակակից մարդկության զիտակցության հարցն է: Հայերն արել են մարդկայնորեն հնարավոր ամեն բան հիմնավորվելու սեփական տանը: Պատմությունը չգիտե ոչ մի ուրիշ ժողովրդի խնդիր, որն այնքան զոհաբերություններ արած լիներ հանուն ազատության:

Սարկության և նվաստացման անդունդից նա բարձրացել է վեհապանծ հերոսության և ինքնազոհության բարձունքները: Հայ ժողովուրդը դեռևս խեղդվում է արյունից և անհամբեր սպասում է անկողմնակալ իրավարարի վերջնական վճռին մի ակտի մասին, որը ստորագրել են դաշնակիցները՝ կանգնած մեկ միլիոն նահատակված հայերի դիակների վրա» (Վ. Դիլոյանի թարգմանությունը, էջ 33, ռուսերեն թարգմանությունը, էջ 24):- Էջ 220:

14. Ինչպես արդեն նշել ենք (տե՛ս «Առաջավոր Ասիայի հիմնահարցի լուծման շուրջ» հոդվածի 2-րդ ծանոթագրությունը, սույն, էջ 449), սորև տրվող ամբողջ հատվածը թարգմանություններում տրված է որպես տողատակի ծանոթագրություն:- Էջ 220:

15. Ն. Աղոնցի այս ցուցումից ակներև է, որ «Հայկական հարցի լուծման շուրջ» անգլերեն ժողովածուի բոլոր երեք հոդվածները նա նախապես պատրաստել է մամուլում տպագրելու համար: Ցավոք, չկարողացանք պարզել, թե այդ հոդվածները մամուլում լույս տեսե՞լ են, թե ոչ:- Էջ 220:

## ՔՐԴԵՐԻ ՆԵՐԹԱՓԱՆՑՈՒՄԸ ՀԱՅԱՍՏԱՆ

(էջ 221)

Գրված է 1921 թվականին՝ Հայկական հարցին նվիրված Ն. Աղոնցի անգլերեն ժողովածուի լույս տեսնելուց անմիջապես հետո: Սույն հոդվածը համառոտությունն է «Թուրքիայի անդամահատումը» ուսումնասիրության համապատասխան հատվածի (տե՛ս սույն, էջ 189-201): Թոուցիկ ծանոթությունն իսկ ցույց է տալիս, որ խոսքը սոսկ մեխանիկական կրճատման մասին չէ և որ Ն. Աղոնցը որոշ հարցեր ներկայացրել է նորովի՝ նկատի ունենալով ընթերցողների նոր լսարանի քաղաքական գիտելիքներն ու ճաշակը:

Առաջին անգամ տպագրվել է Նյու Յորքում լույս տեսնող «The New Armenia» հանդեսում (1922, vol. 14, № 1, էջ 4-6): 1990 թ. Գ. Ս. Ասատրյանը թարգմանել է հայերեն և տպագրել «Երեկոյան Երևան» օրաթերթում (20 մարտի, էջ 4): 1995 թ. այն վերահրատարակվել է «Իրան-Նամե» արևելագիտական հանդեսում (հուլիս, № 3, էջ 6-7), 1996 թ.՝ Աղոնցի «Հայկական հարց» ժողովածուում, էջ 132-136): Առկա է նաև հոդվածի թուրքերեն ընդարձակ վերլուծականը, որը պատկանում է Գ. Ս. Ասատրյանի գրչին (տե՛ս **G. S. Asatrian, Hay Siyasel Düsünca Sayfalarindan, «Piya», 1990, № 13**, էջ 28-35):

Սառրև ներկայացվածը արտատպություն է Գ. Ասատրյանի թարգմանության:

1. Այսպես կոչված «Քրդական» հարցի պատմությամբ զբաղվող բազմաթիվ ուսումնասիրողների անծանոթ է մնացել Ն. Աղոնցի այս ծրագրային հոդվածի գոյությունն իսկ, թերևս բացառությամբ Վ. Ա. Բայբուրդյանի «Հայ-քրդական հարաբերությունները Օսմանյան կայսրությունում» (Երևան, 1989) և «Քրդերը, Հայկական հարցը և հայ-քրդական հարաբերությունները պատմության լույսի ներքո» (Երևան, 2008) մենագրությունների: «Քրդական» հարցին նվիրված կարևորագույն ուսումնասիրություններից տե՛ս Կարո Սասունի, Քյուրտ ազգային շարժումները և հայ-քրտական հարաբերությունները (ԺԵ դարեն մինչև մեր օրերը), Բեյրութ, 1969. Н. А. Халфин, Борьба за Курдистан. Курдский вопрос в международных отношениях XIX в., М., 1963. В. Никитин, Курды, М., 1964. М. С. Лазарев, Курдистан и курдская проблема, М., 1964, նույնի՝ «Курдский вопрос. 1891-1917 гг.», М., 1972. М. А. Гасарев, Курдский вопрос в Турции, տե՛ս «Մերձավոր և Միջին Արևելքի երկրներ և ժողովուրդներ», հատ. VII. Քրդագիտություն, Երևան, 1975, էջ 43-70 և այլն:- էջ 221:

2. Տե՛ս «Путешествие по Курдистану Д. Тейлора, бывшего консула в Диарбекире». Пер. Н. Астафьева. (Материалы для географии Азиатской Турции, «Известия Кавказского отдела императорского Российского географического общества», т. II, Тифлис, 1873 (прил. 1): Անկասկած, Դիարբեքիրի հյուպատոսը չափազանցնում է, քրդերը երբեք էլ այլքի չեն ընկել առանձին ռուսասիրությամբ:- էջ 221:

3. Պետք է նկատել, որ միակ երկիրը, որը պաշտպանեց ու ընդունեց Արևմտյան Հայաստանը Քրդստան վերանվանելու Օսմանյան կառավարության որոշումը Մեծ Բրիտանիան էր: Այդ կապակցությամբ հետաքրքրական է Մ. Ս. Լազարևի դիտողությունը (տե՛ս М. С. Лазарев, նշվ. աշխ., էջ 385, ծան. 30):- էջ 221:

4. Տե՛ս Ю. С. Карцев, Заметки о курдах, Тифлис, 1896. К. Н. Смирнов, Поездка в Северный Курдистан, «Известия Кавказского отдела императорского Российского географического общества», т. XVII, № 4, Тифлис, 1904. «Заметки о политическом положении в Южном Курдистане», «Известия штаба Кавказского военного округа», 1904, № 1-2, сс. 5-58:- էջ 222:

5. Քրդերի ծագման, նրանց Հայաստան թափանցելու և հաստատվելու վերաբերյալ գոյություն ունեցող հսկայական գրականությունից կարելի է առանձնացնել հետևյալ առավել հատկանշականները՝ О. Л. Вильчевский, Курды. Введение в

этническую историю курдского народа, М.-Л., 1961. Г. Б. Акопов, Критическая история проблемы происхождения курдов, Ереван, 1969. A. Safrastian, Kurds and Kurdistan, London, 1948. G. S. Asatrian, Notes on the Ethnic history of the Kurds and the Early Armenian-Kurdis contacts, «Acta Kurdica», vol. 2, 1995 և այլն:- էջ 222:

6. Տե՛ս սոտ, էջ 452, ծան. 30:- էջ 222:

7. Սելիմ Ահեղի հանձնարարությամբ 1514 թ. մոլլա Իդրիս Հաքիմը հանդիպեց բոլոր նշանավոր քուրդ էմիրներին և նրա միջնորդությամբ օսմանյան կառավարության և քրդական ցեղապետների միջև կնքվեց պայմանագիր, որի համաձայն քուրդ էմիրները պահպանում էին իրենց ազատությունն ու անկախությունը,>սուլթանը ճանաչելու էր նրանց ժառանգական իշխանությունը, իսկ քրդերն էլ իրենց հերթին պետք է ռազմական օժանդակություն ցույց տային օսմանյան սուլթաններին՝ նրանց մղած պատերազմներում (տե՛ս **Шараф-хан ибн Шамсаддин Бидлиси**, Шараф-наме, т. 1, М., 1967, էջ 50):- էջ 222:

8. Իդրիս Հաքիմը հեղինակ է օսմանյան սուլթաններին նվիրված պարսկերենով շարադրված «Խաշտ Բիխիշտ» վերտառությամբ երկասիրության, իսկ որդին՝ Մավլան Աբդուլ-Ֆազլ էֆենդին, որ Սուլեյման Փառահեղի օրոք եղել է Ռումելիայի դավթարդար (վիլայեթի գրանցման գործերի գրասենյակի վարիչ), նաև հայտնի բանաստեղծ էր:- էջ 222:

9. **Շարաֆեդդին (Շարաֆ-խան) Շամսեդդին Բիթլիսի** (1543-1604) – քուրդ պատմագիր, ռազմական և պետական գործիչ: Նախապես ծառայել է Սեֆյաններին, եղել Շիրվանի և Նախիջևանի կառավարիչ, հանդիսացել է Իրանի քրդերի գերագույն առաջնորդ: 1578 թ. դավաճանելով Խուդաբանդա շահին (1577-1587), անցել է թուրքերի կողմը: Մուրադ III սուլթանի կողմից ստացել է խանական տիտղոս, վարել վարչական կարևոր պաշտոններ, նշանակվել Բիթլիսի քրդական իշխանության կառավարիչ:- էջ 223:

10. Նկատի ունի «Շարաֆ-Նամե» երկասիրությունը, որը Բիթլիսին շարադրել է 1595-1596 թթ.՝ պարսկերենով: Այդ գիրքը արժեքավոր սկզբնաղբյուր է ոչ միայն քրդերի, այլև Անդրկովկասի ժողովուրդների, Թուրքիայի և Պարսկաստանի միջնադարյան պատմության վերաբերյալ:- էջ 223:

11. Տե՛ս «Scheref-nameh ou Histoire des Kurdes par Scheref, prince de Bidlis, publiée pour la première fois par. V. Véliaminof-Zernof». Texte Persian, t. I-II, St.-Pbg., 1860-1862. Տե՛ս նաև Ֆ. Բ. Շարմուայի ֆրանսերեն թարգմանությունը, որի մասին ակ-

ճարկում է Ն. Ադոնցը՝ «Chèref-nameh ou fastes de la nation kourde par Chèref – ou'ddine, prince de Bidlis, t. I-II, St.-Pbg., 1868-1875»: Գ. Ասատրյանի բարգմանությունններում Շարաֆ-Նամեի հրատարակության բվականները վրիպմամբ նշված են 1886 և 1887 (տե՛ս «Իրան-Նամե», 1995, № 3, էջ 6 և այլն):- Էջ 223:

12. «Առաջին խալիֆներ» են հորջորջվում Մուհամմեդի հաջորդներ Աբու Բաքրը, Օմարը, Օսմանը և Ալին:- Էջ 223:

13. Դերսիմի քրդերի և նրանց հայկական ծագման հարցերն առավել համակողմանիորեն արծարծված են հետևյալ ուսումնասիրություններում՝ Անդրանիկ, Տերսիմ. ճանապարհորդություն և տեղագրություն, Թիֆլիս, 1901: Լ. Լյուլեճյան, Հայ և քուրտ հարաբերությունները. Տերսիմի քուրտերը, «Պայքար», օրաթերթ, 1913, 14 մարտի: Լևոն-Մեսրոպ, Քուրդիստան և քուրդեր, Փարիզ, 1957: Գ. Հալաճյան, Դերսիմի հայերի ազգագրությունը, «Հայ ազգագրություն և բանահյուսություն», պրակ 5, Երևան, 1973 և այլն:- Էջ 223:

14. XI դարի 80-ական բվականներին Եդեսիան գտնվում էր Փիլարտոս Վարաժնունու տիրապետության ներքո, որը քաղաքի և գավառի կառավարիչ նշանակեց Հեթումի որդի Թորոս իշխանին: Եդեսիայի հայկական իշխանությունը կործանեցին Բալդուինի խաչակիրները: Տվյալ դեպքում Ն. Ադոնցը նկատի ունի Թորոս իշխանին:- Էջ 224:

## ՀՈՂԱՅԻՆ ԶԻՋՈՒՄՆԵՐ ԹՈՒՐՔԻԱՅԻՆ

(էջ 227)

Գրված է 1921 թ. փետրվարին՝ Լոնդոնի կոնֆերանսի նախօրյակին: Հայերեն սևագիր ինքնագիրը պահվում է Համազգայինի Բեյրութի գրական պահոցի պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդում (տե՛ս պահարան I, զզրոց Բ, թղթածրար 6): Առաջին անգամ հրատարակել ենք մենք (տե՛ս Պ. Հ. Հովհաննիսյան, Նիկողայոս Ադոնցի հոդվածը Հայկական հարցի մասին, «Նպատակ», ՀՀ ԳԱ ակադեմիայի գիտահասարակական պարբերաբերթ, 1993, № 8, հունիս): Երկրորդ անգամ լույս է տեսել Հայկական հարցին նվիրված Ն. Ադոնցի ժողովածուում (Երևան, 1996, էջ 144-145):

Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Խոսքը վերաբերում է 1921 թ. փետրվարի 21-ից մարտի 14-ը Լոնդոնում հրավիրված կոնֆերանսին, որտեղ վերանայվելու էր Սևրի պայմանագիրը:- Էջ 227:

2. Նկատի ունի ԱՄՆ-ի նախագահ Վ. Վիլսոնի 1920 թ. նոյեմբերի 22-ի իրավարարական որոշումը՝ Թուրքիայի և Հայաստանի միջև սահմանների անցկացման և Հայաստանին դեպի ծով հարմար ելք տալու վերաբերյալ: Տե՛ս նաև սույն, էջ 209:- էջ 227:

3. Պատերազմի նախօրյակին հայերի թիվը Վանի վիլայեթում 185.000 էր, իսկ Բիթլիսի վիլայեթում՝ 180.000, թուրքերի թիվը համապատասխանաբար 47.000 և 40.000 (տե՛ս **Е. К. Саркисян, Административная и демографическая политика османского правительства в Западной Армении**, էջ 378):- էջ 227:

4. Պատերազմի նախօրյակին հայերի թիվը Էրզրումի վիլայեթում կազմում էր 215.000 մարդ, իսկ թուրքերինը՝ 240.000 (տե՛ս նույնը, էջ 378):- էջ 228:

5. Այժմ Քուրշուդ-չայ, պատմական Ծանախաձոր գետն է:- էջ 228:

6. Խոսքը Բաղր-դաղ (պատմական Պախր) լեռների մասին է:- էջ 228:

7. Խոսքը վերաբերում է Հայկական Տավրոսի արևելյան լեռնաճյուղին:- էջ 228:

## ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻՆ ՏՐՎԵԼԻՔ ՀԻՇԱՏԱԿԱԳՐԻ ՆԱԽԱԳԻԾ

(էջ 229)

Գրված է Փարիզում 1922 թ. աշնանը՝ Լոզանի կոնֆերանսի նախօրյակին: Հայերեն մեքենագիր բնագիրը գտնվում է ՀՀ ազգային արխիվում (ֆոնդ 430, ց. 1, գ. 145, թթ. 15-20):

Առաջին անգամ հրատարակել ենք մենք (տե՛ս Պ. Հ. Հովհաննիսյան, Նիկողայոս Աղոնցը և Հայկական հարցը, «Պատմա-բանասիրական հանդես», 1999, № 1, էջ 130-138): Երկրորդ անգամ լույս է ընծայել Գր. Կարախանյանը [տե՛ս «Գիտելիք», ուսումնական և գիտամեթոդական հանդես, № 18, 2004, էջ 9-13, տե՛ս նաև նույնի անգլերեն թարգմանությունը՝ «Gitelik» («Knowledge»), № 18, 2004, p. 9-13]:

Արտատպվում է առաջին հրատարակությունից:

1. Ակնարկում է 1920 թ. սեպտեմբերին սկսված թուրք-հայկական պատերազմը և Հայաստանի Հանրապետության տարածքների զավթումը քեմալականների կողմից:- էջ 229:

2. Այսինքն՝ Սևրի պայմանագրի վերաքննության:- էջ 229:

3. Նկատի ունի Գ. Նորատունկյանի գլխավորած Ազգային պատվիրակությունը:- Էջ 230:

4. Տե՛ս Ն. Աղոնց, Հայաստանի սահմանների խնդիրը (աստ, էջ 234-241): Հմմտ. նաև՝ Ն. Ադոնց, Հողային զիջումներ Թուրքիային (աստ., էջ 227-228):- Էջ 230:

5. Սևրի պայմանագրի 92-րդ հոդվածում նշված է. «Ադրբեջանի և Վրաստանի հետ Հայաստանի սահմաններն ըստ պատկանելույն կորոշվեն շահագրգռված պետությունների ընդհանուր համաձայնությամբ...» (տե՛ս «Հայաստանը միջազգային դիվանագիտության և սովետական արտաքին քաղաքականության փաստաթղթերում», էջ 677):- Էջ 230:

6. Նկատի ունի Հյուսիսային Բուլղարիայի և Արևելյան Ռումելիայի միավորման հետևանքով (1885 թ. սեպտեմբերի 6) մեկ միասնական Բուլղարական պետության ստեղծումը:- Էջ 231:

7. Տե՛ս **Vital Cuinet**, La Turquie d'Asie. Géographie, administrative, statistique descriptive et raisonnée de l'Asie Mineure, vol. I-IV, Paris, 1892-1895.- Էջ 231:

8. Այլ կապակցությամբ Ն. Ադոնցը Վիտալ Քինեի գիրքը համարում է. «ծավալուն, բայց, ցավոք սրտի, շատ պակասավոր» (տե՛ս **Ն. Ադոնց**, աստ, էջ 162): Վ. Քինեի երկասիրությունը, որն, անշուշտ, պարունակում է հարուստ վիճակագրական և տեղեկատվական տվյալներ, պետք է օգտագործել զգուշությամբ: Նա Թուրքիա էր հրավիրվել կառավարության կողմից և հանձնարարություն ուներ գրելու Թուրքիայի աշխարհագրությունը: Ինչպես ճիշտ է նկատվել, Քինեի գիրքը գրված է սուլթանի հրահանգների և նրա քաղաքական ձգտումների համաձայն. «Լավագույն գոհացում տալու համար սուլթանի բաղձանքին, Քինեն մասնավորապես ջանք է թափած՝ թե՛ թուրքերի թիվն ավելի ցույց տալու և թե՛ հայերինը նվազեցնելու: Նա նենգափոխել է իրականությունը, ուստի կարելի չէ հավատ ընծայել իր թվերին» (տե՛ս **Ե. Խաչատրյան**, Հայոց թիվը, Բոստոն, 1965, էջ 13: Հմմտ. **Հ. Առաքելյան**, Թուրքահայ ժողովրդի վիճակագրությունը, «Արոր», 1913, դեկտեմբեր, էջ 53: Նաև՝ **Պ. Աքանյան**, Հայկական վիլայեթների ներկա տնտեսական վիճակը, «Զիքեճի», Թիֆլիս, 1915, էջ 294-331):- Էջ 231:

9. Անգամ ինքը՝ Վ. Քինեն, ստիպված է խոստովանել, որ «Մարդահամարի այնքան օգտակար և հետաքրքրական գիտությունը, ոչ միայն մուտք չի գործել Թուրքիայի սովորությունների ու բարքերի մեջ, այլև իշխանությունները գիտակցաբար մերժում են այն: Բուն պաշտոնական մարդահամարը բացարձակապես թերի է Թուրքիայում» (տե՛ս **V. Cuinet**, La Turquie d'Asie, v. I, Paris, 1892, p. 5): Այսպես, երբ Քինեի անգամ նվազեցված տվյալներով 1882 թ. Ասիական Թուրքիայում բնակվում

էր 1.181.066 հայ, ապա թուրքական պաշտոնական վիճակագրության համաձայն՝ 726.750 հայ (տե՛ս «Ավետիք», ամսագիր, Բեյրութ, 1940, № 3-4, էջ 27): Հետաքրքիր է, որ Լոզանի կոնֆերանսի ռազմատարածքային հանձնաժողովի 15-րդ նիստի ժամանակ (1922 թ. դեկտեմբերի 14), թուրք պատվիրակ Իսմեթ փաշան Քիների արդեն նվազեցրած տվյալը էլ ավելի է նվազեցնում և խոսում «մոտավորապես մեկ միլիոն հայերի մասին» (տե՛ս «Армянский вопрос на Лозаннской конференции». Извлечение из протоколов, Тифлис, 1926, с. 21).- Էջ 232:

10. Մեծ Եղեռնի նախօրյակին Թուրքիայում հայերի թվաքանակի վերաբերյալ գոյություն ունեցող գրականությունից կարելի է առանձնացնել Ե. Խաչանասյանի արդեն նշված գիրքը և Ե. Սարգսյանի՝ «Административная и демографическая политика османского правительства в Западной Армении» ուսումնասիրությունը (տե՛ս «Մերձավոր և Միջին Արևելքի երկրներ և ժողովուրդներ», գիրք 5, Թուրքիա, Երևան, 1970, էջ 357-397):- Էջ 232:

11. Ենթադրում ենք, թե խոսքը «Положение армян в Турции до вмешательства держав в 1895 году» (М., 1896) գրքի մասին է:- Էջ 233:

12. Խոսքը 1895 թ. անգլիական կառավարության կողմից հրատարակված «Blue Book» փաստաթղթերի ժողովածուի մասին է: Այստեղ զետեղված են Հայոց հարցի վերաբերյալ Մեծ Բրիտանիայի արտաքին գործոց նախարարի գրագրությունները Թուրքիայում պաշտոնավարող անգլիական դիվանագետների հետ (տե՛ս «Turkey», № 1-8, 1895-1896):- Էջ 233:

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍԱՀՄԱՆՆԵՐԻ ԽՆԴԻՐԸ

(էջ 234)

Գրված է 1923 թ. հուլիսի սկզբներին Փարիզում՝ Լոզանի պայմանագրի կնքումից առաջ: Բնագիրը գտնվում է ՀՀ Ազգային արխիվում: Առաջին անգամ լույս է տեսել Պ. Մ. Մուրադյանի աշխատասիրությամբ 1994 թ. «Ազատամարտ» շաբաթաթերթում (№ 16, ապրիլ, էջ 6-7): Երկրորդ անգամ տպագրվել է Հայկական հարցին նվիրված Ն. Առոնցի ժողովածուում (1996, էջ 137-143): Երրորդ անգամ լույս է ընծայել Գր. Կարախանյանը [տե՛ս «Գիտելիք», ուսումնական և գիտամեթոդական հանդես, № 18, 2004, էջ 1-9, տե՛ս նաև նույնի անգլերեն թարգմանությունը՝ «Gitelik» («Knowledge»), № 18, 2004, p. 1-9]:

Արտատպվում է 1996 թ. հրատարակությունից:

1. Սևրի պայմանագրի վերանայման հարցը բարձրացրել են Ֆրանսիան և Իտալիան դեռևս 1921 թ. Լոնդոնի կոնֆերանսի ժամանակ (21 փետրվարի – 14 մարտի): Կոնֆերանսի օրակարգի հիմնական երկու հարցերից մեկը Մերձավորարևելյան հարցն էր: Ռազմաճակատներում հունական բանակների ծանր պարտությունների և խորհրդա-թուրքական մերձեցման ազդեցության ներքո՝ դաշնակիցները զգալի զիջումներ կատարեցին քեմալականներին և անգամ որոշեցին վերանայել սահմանների հարցը: Ի վերջո, Սևրի պայմանագիրը վերջնականապես չեղյալ հայտարարվեց: Ահա այսպիսի սպառողական, ծանր ու անորոշ քաղաքական իրավիճակում է գրվել «Հայաստանի սահմանների խնդիրը» հոդվածը:- Էջ 234:

2. Ակնարկում է ԱՄՆ-ի նախագահ Վ. Վիլսոնին, որ որպես arbitrage (իրավարար) պետք է որոշեր սահմանը Հայաստանի և Թուրքիայի միջև:- Էջ 234:

3. Նկատի ունի քեմալականներին, որոնք խիստ թշնամական, անհանդուրժողական դիրք էին գրավել Անտանտի երկրների և նրանց կողմից Թուրքիային պարտադրված Սևրի պայմանագրի նկատմամբ:- Էջ 234:

4. «Թուրքերի նոր home-ը» (անգլ.) - բառացիորեն տուն. ներկա դեպքում՝ մայրաքաղաքը, նկատի ունի Անկարան, որը մայրաքաղաք է հռչակվել 1923 թ. հոկտեմբերի 13-ին:- Էջ 235:

5. Համեմատությունները ցույց են տալիս, որ որոշ տարբերություններ կան նաև Ն. Աղոնցի բերած թվական տվյալների միջև: Այսպես օրինակ, համեմատելի են «Հայկական հարցը Սևրում» հոդվածում բերված նմանատիպ տվյալները (տե՛ս սույն, էջ 218-219) և վերոբերված տվյալները: Ակներև է, որ Ն. Աղոնցը նախորդ հոդվածը գրելուց հետո ճշգրտումներ է կատարել իր նյութերում:- Էջ 236:

6. Համտ. սույն, էջ 232:- Էջ 236:

7. Նկատի ունի այն, որ 1909 թ. երիտթուրքական հեղաշրջումից հետո մինչև 1923 թ. հոկտեմբերը՝ մինչև Հունաստանի հետ զինադադարի կնքումը, այսինքն՝ 14 տարի շարունակ, Թուրքիան անընդհատ գտնվել է պատերազմական ընդհարումների մեջ:- Էջ 238:

8. Ակնարկում է Հուստինիանոս I-ի վարչական ռեֆորմը, որի համաձայն Տրապիզոնի ծովափը մտցվեց Առաջին Հայքի կազմի մեջ:- Էջ 240:

9. Այս վերջին հատվածները սերտ աղերս ունեն «Հողային զիջումներ» հոդվածի հետ: Նույնն են նաև հեղինակի տագնապներն ու մտահոգությունները հայրենիքի քաղաքական ճակատագրի հեռանկարի խորհրդածություններում:- Էջ 240:

## ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՐՑԻ ՆԵՐՔԻՆ ԿՈՂՄԵՐԻՑ ՄԵԿԸ

(էջ 242)

Գրված է 1920-ական թվականների կեսերին՝ Փարիզում, Լոզանի կոնֆերանսից քիչ անց: Ինքնագիրը պահվում է Համազգայինի Բեյրութի գրական պահոցի պրոֆ. Ն. Աղոնցի ֆոնդում (տե՛ս պահարան I, զզրոց Բ, թղթածրար 6, թթ. 1-6): Առաջին անգամ տպագրել ենք մենք (տե՛ս Պ. Հ. Հովհաննիսյան, Նիկողայոս Աղոնցի ճորահայտ հոդվածը Հայկական հարցի մասին, «Բանբեր Երևանի համալսարանի», 1993, № 1, էջ 126-132): Երկրորդ անգամ լույս է տեսել Ն. Աղոնցի՝ Հայկական հարցին նվիրված ժողովածուում (1996, էջ 157-161):

Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Հայ վաճառականության գիտական պատմությունն այսօր էլ կարոտ է ամբողջական ու լուրջ հետազոտության, թեև կարելի է մատնանշել Լեոյի, Ա. Գ. Հովհաննիսյանի, Լ. Ս. Խաչիկյանի, Վ. Ա. Դիլոյանի, Հ. Դ. Փափազյանի, Վ. Ա. Բայբուրդյանի, Հր. Ղ. Միրզոյանի, Շ. Լ. Խաչիկյանի, Վ. Հ. Փափազյանի, Հ. Ա. Ստեփանյանի, Խ. Ձ. Դաղայանի և այլոց առանձին հետազոտությունները:- Էջ 243:

2. Սույն արտահայտությունը վկայում է, որ հոդվածը գրվել է 1920-ական թվականների կեսերին:- Էջ 245:

3. Պաղեստինի տարածքում հրեական պետության ստեղծման գործում վճռական դերակատարություն են ունեցել ոչ միայն հրեական կապիտալն ու սիոնիզմի գաղափարախոսությունը, այլև մեծ տերությունները՝ մասնավորապես Անգլիան, իսկ հետագայում՝ նաև ԱՄՆ-ը:- Էջ 245:

4. Ակնարկում է Ազգերի լիգայի ղեկավար մարմին Գերագույն խորհրդին:- Էջ 246:

5. Մինչև 1920 թ. Իրաքի տարածքը պաշտոնապես անվանվում էր Միջագետք, հետևաբար, այստեղ հեղինակը նկատի ունի ժամանակակից Իրաքը:- Էջ 246:

6. Ն. Աղոնցի այս և այլ հաշվարկների համաձայն, տարագիր հայության վերադարձից հետո Արևմտյան Հայաստանում մեկ քառակուսի կիլոմետրի վրա կարելի էր ապահովել բնակչության միջին խտություն, այսինքն՝ 17 մարդ (տե՛ս սոտ, էջ 218):- Էջ 247:

7. Ըստ թուրքական վիճակագրական տվյալների, 1920-ական թվականներին Անատոլիայի ներքին վիլայեթներում բնակչության խտությունը մեկ քառակուսի կիլոմետրի վրա կազմում էր 10-15 մարդ:- Էջ 247:

## ՄԵԾ ԵՂԵՌՆԻ ՏԱՐԵԼԻՑԻՆ

(էջ 248)

Գրված է 1928 թ. ապրիլին Փարիզում: Բնագիրը պահվում է Բոստոնի «Հայրենիք» ամսագրի արխիվում: Առաջին անգամ տպագրվել է «Հայրենիք» ամսագրում (1928, № 8, էջ 68-76): Այնուհետև վերահրատարակվել է 1965 թ. Բեյրութի «Սփյուռք» շաբաթաթերթում (14 հուլիսի, Է, 27, էջ 1-5; 21 հուլիսի, Է, 28, էջ 4, 8): Հատվածաբար տպագրել ենք մենք «Երևանի համալսարան» շաբաթաթերթում (1990, 28 ապրիլի, № 17, էջ 3): Երրորդ անգամ լույս է տեսել Ն. Աղոնցի՝ Հայկական հարցին նվիրված ժողովածուում (1996, էջ 146-156), իսկ չորրորդ անգամ հրատարակել է Երվանդ Քասունին Բեյրութի «Ձանասեր» ամսագրում (1999, հատ. 62, № 5-8, էջ 59-65): Վերջին անգամ լույս է տեսել «Սյունյաց երկիր» տասնօրյա թերթում [2011, 18 հոկտեմբերի, № 17 (236), էջ 18, 19, 22]:

Արտատպվում է Ն. Աղոնցի «Հայկական հարց» ժողովածուից:

1. Նկատի ունի Խորհրդային Հայաստանի իրողությունը:- Էջ 248:

2. Հայոց ցեղասպանության պատմության մակերեսորեն լուսաբանված էջերից է «լքյալ գույքերի» հարցը: Այնուհանդերձ ուշադրության են արժանի Հայկազն Ղազարյանի «Հայոց լքյալ գույքերու և կալվածներու թալանը թուրքերու կողմե» (տե՛ս «Հայրենիք», օրաթերթ, Բոստոն, 1964, 6-7 հոկտեմբերի), Ե. Գ. Ճոնազյանի «Հայոց լքյալ գույքերը» (տե՛ս «Ձանասեր», ամսագիր», Բեյրութ, 1968, № 11-12) հոդվածները, Լևոն Վարդանի «Հայկական տասնհինգը և հայերու լքյալ գույքերը» մենագրությունը (Բեյրութ, 1970) և այլն:- Էջ 248:

3. Նկատի ունի ազգային-ռոմանտիկական այն պատիր հայեցակետը, որի համաձայն դրախտը տեղադրված է եղել Հայաստանում: Այս տեսակետից հետաքրքրությունից զուրկ չէ Ղ. Ալիշանի «Հայոց աշխարհիկ» բանաստեղծության հետևյալ տողերը՝

*Մեր Տերն ի երկնուց ծայրեն երբ իջավ*
*Երկրիս հիմանն քարն յԱյրարատ դրավ...*
*Հոն չափեց սահման յուր նախաստեղծին*
*Ձեփրատն զԵրասխ բաժակ դրավ դրախտին.*

*... Ի Հայոց հողեն կազմեցավ Արամ*
*Զօղն Հայոց Եվային շընչեց քաղցրահամ:*
(տե՛ս Ղ. Ալիշան, Երկեր, Երևան, 1981, էջ 17):- Էջ 248:

4. Սույն տողերը վերցված են Մ. Պեշիկթաշլյանի «Ծերն Վանայ» բանաստեղծությունից (տե՛ս Մ. **Պեշիկթաշլյան,** Երկերի լիակատար ժողովածու, Երևան, 1987, էջ 84-85):- Էջ 248:

5. Նկատի ունի XIX դարի ռուս-պարսկական և ռուս-թուրքական պատերազմները:- Էջ 249:

6. Սույն տեղիքը վերցված է Եղիշեի «Վասն Վարդանայ և Հայոց պատերազմին» երկասիրությունից (Երևան, 1957, էջ 180):- Էջ 249:

7. Կարլովիցի հաշտության պայմանագիրը կնքվել է 1699 թ. հունվարի 26-ին մի կողմից Օսմանյան Թուրքիայի, մյուս կողմից Ավստրիայի, Վենետիկի Հանրապետության և Լեհաստանի միջև: Պայմանագիրը նշանավորեց ոչ միայն Թուրքիայի պարտությունը, այլև նահանջի սկիզբը Եվրոպայից:- Էջ 250:

8. Տվյալ դեպքում նկատի ունի քեմալականներին, որոնք, ինչպես հայտնի է, նախապես հանդես էին գալիս պսոտկոմունիստական, բոլշևիկյան կեղծ լոզունգներով: Հանգամանք, որ համայնավար Ռուսաստանին ստիպեց ինքնախաբեությամբ մերձանալ քեմալական Թուրքիային և նրան վաճառել հայ ժողովրդի ազգային շահերը:- Էջ 251:

9. Զրվանականությունը զրադաշտական կրոնի տարբերակներից է: Ըստ առասպելաբանության, Զրվանից են ծնվել Ահուրամազդան և Ահրիմանը:- Էջ 251:

10. Տե՛ս **Փավստոս Բուզանդ,** Պատմութիւն Հայոց, Ս. Պետերբուրգ, 1883, էջ 206:- Էջ 252:

11. **Զրադաշտ** (Զարատուշթրա, Ք. ա. մոտ 630-553) - զրադաշտական կրոնի հիմնադիր, նախապես գործել և քարոզել է Պարսկաստանի արևելյան նահանգներում: Ըստ կրոնական առասպելաբանության՝ Մեծ Մարգարե:- Էջ 252:

12. Տիզբոնի եկեղեցին չափազանց կարևոր դեր է խաղացել երկրի ներքաղաքական կյանքում: Հանգամանք, որը հարուցում էր Սասանյանների խոր մտահոգությունն ու անհանդուրժողականությունը: Սրանով պետք է բացատրել Հազկերտ II-ից սկսված բուռն հալածանքները Պարսկաստանի և ընդհանրապես բովանդակ տերության քրիստոնեական եկեղեցիների նկատմամբ:

Հետաքրքիր է նշել, որ Ն. Ադոնցի բնյրության թողոնում են գտնվում «Քրիստոնյաների հալածանքները Սասանյան Պարսկաստանում V-VI դարերում» (ռուսերեն, 16 էջ) և «Ասորա-իրանական քրիստոնեական եկեղեցու սահմանակարգությունը» (ռուսերեն, 20 էջ) անավարտ ուսումնասիրություններ (տե՛ս պրոֆ. Ն. Ադոնցի ֆոնդ, Է/Ա-8 և Ժ/Ա-8):- էջ 252:

13. «Խոսրովների արքունիքը» - այսինքն՝ Սասանյանների արքունիքը, որտեղ հայտնի են հետևյալ չորս Խոսրովները՝ Խոսրով I Անուշիրվանը (531-579), Խոսրով II Փարվեզը (591-628), Խոսրով III-ը (629-632) և Ֆառուհզադ Խոսրով IV-ը (631-632, երկրի ծայրամասերում):- էջ 252:

14. Նկատի ունի Բյուզանդական կայսրության անկումը (1453 թ.): Թեև հայ ավանդական պատմագիտական միտքը «Արևմտյան կայսրություն» եզրի փոխարեն օգտագործում էր «Կողմանք Յունաց» արտահայտությունը:- էջ 252:

15. Այս խոսքերը պատկանում են XII դարի պատմագիր Մատթեոս Ուռհայեցուն:- էջ 253:

16. Տե՛ս Հովհաննես Դրասխանակերտցի, Պատմութիւն Հայոց, Երևան, 1996, էջ 360: Թվում է, թե Ն. Ադոնցը հենց իր՝ Դրասխանակերտցու քննադատմամբ է, որ պատմագրին անվանում է ալևոր: «Յառաջաբան»-ում պատմագիրը խոստովանում է, որ ինքը «ցաւագին ծերութեան» առջև է կանգնած (տե՛ս անդ, էջ 8):- էջ 253:

17. Նկատի ունի Հակոբ Մծբնա Հայրապետին (մոտ 270-347): Հայոց եկեղեցին սրբացրել է նրան և դեկտեմբերի 12-18-ը զուգադիպող շաբաթ օրը տոնում է նրա հիշատակը:- էջ 253:

18. «Դրսեցի հայեր» ասելով Ն. Ադոնցը նկատի ունի ընդհանրապես ռուսահայերին և մասնավորապես գաղութահայերին՝ ի հակադրություն արևմտահայերի:- էջ 255:

19. Ն. Ադոնցի այս պնդումը տարակուսելի է, քանզի ազատագրական կոչը ոչ միայն «դրսեցի» էր, այլև «ներսեցի»: Բազում առիթներով ինքը՝ պատմաբանը, նկատել է, որ կոչի հեղինակներն էին նաև ներսեցիները Մ. Խրիմյանը, Գ. Սրվանձտյանցը և շատուշատ ուրիշներ:- էջ 255:

20. Ակնարկում է Ս. Դ. Հնչակյան և ՀՀ Դաշնակցության կուսակցությունների գործունեությունը Արևմտյան Հայաստանում: «Դրոշակ»-ը ՀՀ Դաշնակցության կենտրոնական օրգանն էր, իսկ «Հնչակ»-ը՝ Ս. Դ. Հնչակյան կուսակցության:- էջ 255:

21. Նկատի ունի Շահամիր Շահամիրյանի գլխավորած հայ ազատագրական խմբակի գործունեությունը Հնդկաստանի Մադրաս քաղաքում:- Էջ 256:

22. Ամենայն Հայոց կաթողիկոս Սիմեոն Ա Երևանցու (1763-1780) սույն նամակն առ Շ. Շահամիրյանը տե՛ս «Դիվան Հայոց պատմության», գիրք Ը, մասն երկրորդ («Սիմեոն կաթողիկոսի հիշատակարանը»), հրատարակեց Գյուտ Աղանյանց, Թիֆլիս, 1908, էջ 576:- Էջ 256:

23. Նկատի ունի Մկրտիչ Խրիմյանի և Գարեգին Սրվանձտյանցի ծավալած բուռն հայրենասիրական-ազատագրական գործունեությունը:- Էջ 257:

24. Առաջին անգամ տպագրվել է 1862 թ. Փարիզում՝ Սիմոն Մանիկյան կեղծանունով, տե՛ս նաև վերջին հրատարակությունը (Մ. Նալբանդյան, Երկերի ժողովածու, հատ. 4, Երևան, 1983, էջ 34-99):- Էջ 257:

25. Տե՛ս Միսաք Թիմուրյան, Առաջարկություն առ նախապետական նորակազմ ընկերության Ակնաց, Կ. Պոլիս, 1866:- Էջ 257:

26. Նկատի ունի Եփրատից արևելք՝ Մեծ Հայքը:- Էջ 257:

27. Գ. Սրվանձտյանց ընդարձակ քաղվածներ է կատարել Մ. Թիմուրյանի վերոնշված գրքից, որից և մեջբերումներ է կատարել Ն. Աղոնցը (տե՛ս Գ. Սրվանձտյանց, Թորոս աղբար, Հայաստանի ճամփորդ, մասն առաջին, Կ. Պոլիս, 1879, էջ 262-263):- Էջ 257:

28. Տե՛ս Գ. Սրվանձտյանց, Թորոս աղբար, էջ 266-267:- Էջ 258:

29. Իրականում գյուղը գնել է ոչ թե Մ. Թիմուրյանը, այլ Գ. Սրվանձտյանցը: 1865 թ. նա Ակնի «Նախապետական ընկերության» տրամադրած 100 ոսկի գումարով գնել է Մուշի դաշտի անմարդաբնակ Շկավդիան գյուղը և հիմնադրել Նոր Հայ գյուղը (անդ, էջ 268-269):- Էջ 258:

30. Գ. Սրվանձտյանց, Թորոս աղբար, էջ 270:- Էջ 258:

31. Գ. Սրվանձտյանց, Թորոս աղբար, մասն երկրորդ, Կ. Պոլիս, 1884, էջ 54:- Էջ 259:

## ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՐՑԸ ԱՄԵՐԻԿՅԱՆ ՍԵՆԱՏՈՒՄ

(էջ 261)

Գրված է 1928 թ. օգոստոսի 30-ին Փարիզում: Ռուսերեն մեքենագիր օրինակը գտնվում է Համազգայինի Բեյրութի գրական պահոցի պրոֆ. Նիկողայոս Ադոնցի ֆոնդում (տե՛ս պահարան I, զգրոց Բ, թղթածրար Դ/Ա-8, թթ. 1-3): Առաջին անգամ լույս է տեսել Ն. Ադոնցի՝ Հայկական հարցին նվիրված ժողովածուում (Երևան, 1996, էջ 162-164):

Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Այսինքն՝ 1927 թվականին:- էջ 261:

2. Ամերիկայն սենատը Լոզանի պայմանագիրը մերժել է 1928 թ. հունվարի 18-ին:- էջ 261:

3. Ն. Ադոնցի այս մատնանշումը հաստատվում է հետևյալ փաստով. դեռևս 1927 թ. հունվարին մամուլի ներկայացուցիչներին տված իր հայտարարության մեջ սենատոր Հ. Զ. Քինգը մատնանշել էր, թե «Որոշապես անարդար և անտրամաբանական պիտի ըլլար Մ. Նահանգներում համար ընդունիլ ու հարգել Քեմալի պահանջները ու խոստումները, այնքան ատեն որ ան կշարունակեր իր հակակշռին և գերիշխանության տակ պահել Ուիլսնյան Հայաստանը (այժմ՝ «ոչ որի հողը»), երբ անդին միլիոնավոր հայ գաղթականներ և աքսորյալներ վերածված են անհայրենիք ժողովրդի մը (տե՛ս «Հայաստանը և Ամերիկյան Քոնկրեսը», Բեյրութ, 1978, էջ 114):- էջ 261:

4. 1919 թ. փետրվարի 26-ին Հայաստանի մանդատի հարցի առիթով հրավիրվեց ամերիկյան կառավարության հատուկ նիստ, որի ժամանակ նախագահ Վիլսոնը պաշտոնապես հայտարարեց. «Եթե Ամերիկայի Միացյալ Նահանգները որևէ մանդատ ընդունեն Ազգերի լիգայից, ապա առաջին հերթին նա պետք է ընդունի Հայաստանի մանդատը» (տե՛ս **В. И. Шпилкова, Империалистическая политика** США в отношении Турции (1914-1920 гг.), М., 1960, с. 66): - էջ 262:

5. Փարիզի կոնֆերանսում Տարածքային գծով հանձնաժողովը Չորսի խորհրդին ներկայացրեց իր որոշումը, որտեղ ասված էր. «ԱՄՆ-ի նախագահը Ամերիկայի Միացյալ Նահանգների անունից՝ սենատի համաձայնության պայմանով ընդունում է Հայաստանի մանդատը: Նրա սահմանները կորոշվեն ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի ու Իտալիայի պատվիրակությունների համաձայնությամբ» (տե՛ս **В. И. Шпилкова**, с. 76): - էջ 262:

6. Այդ ժամանակ ԱՄՆ-ի պետքարտուղարն էր Լանսինգը:- Էջ 262:

7. Ուորեն Գ. Հարդինգ - սենատոր Օհայո նահանգից, հետագայում ԱՄՆ-ի նախագահ (1921-1923):- Էջ 262:

8. Ավելի ճիշտ՝ մայիսի 13-ին (տե՛ս «Հայաստանը և Ամերիկյան Քոնգրեսը», էջ 109):- Էջ 262:

9. Ի վերջո, Ամերիկյան սենատը 1920 թ. հունիսի 1-ին մերժեց նախագահ Վիլսոնի առաջարկը և հրաժարվեց Հայաստանի մանդատից (Հայաստանի մանդատի վերաբերյալ լավագույն ուսումնասիրություններից տե՛ս I. B. Gidney, Mandate for Armenia, Kent Ohio, 1967):- Էջ 262:

10. Այդ ժամանակ ԱՄՆ-ի պետքարտուղարն էր Կելլոգը:- Էջ 264:

11. Խոսքը ԱՄՆ-ի նախագահ Կ. Կուլիջի (1923-1929) մասին է:- Էջ 264:

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ԵՎ ՀԱՅԿԱԿԱՆ ԳԱՂԹՕՋԱԽՆԵՐԸ

(էջ 265)

Գրված է 1930 թ. հուլիսին Փարիզում: Ինքնագիրը գտնվում է Համազգայինի Բեյրութի գրական պահոցի պրոֆ. Ն. Աղոնցի ֆոնդում (տե՛ս պահարան I, զզրոց Ա, թղթածրար Ա-8, թթ. 1-19): Նույն ֆոնդում են գտնվում նաև սույն հոդվածի միմյանցից քիչ տարբերվող անգլերեն զույգ մեքենագիր օրինակներ (տե՛ս պահարան I, զզրոց Բ, թղթածրար 2, թթ. 1-14, նաև՝ պահարան I, զզրոց Բ, թղթածրար 6, թթ. 1-12): Հավանաբար անգլերեն մեքենագիր օրինակները պատրաստվել են տպագրության համար, ցավոք, չկարողացանք պարզել այն հրատարակվել է, թե ոչ:

Առաջին անգամ ինքնագիրը լույս է տեսել մեր աշխատասիրությամբ (տե՛ս «Գարուն», ամսագիր, 1994, № 1, էջ 68-75):

Արտատպվում է արխիվային բնագրից:

1. Նկատի ունի թուրքական բուրժուազիայի ազգայնական շարժումը Մուստաֆա Քեմալի գլխավորությամբ (1919-1921 թթ.):- Էջ 266:

2. Խորհրդային Հայաստանի տարածքն իրականում ոչ թե 28.000, այլ 28,9 քառակուսի կմ է:- Էջ 266:

3. Ակնարկում է ռազմական կոմունիզմի քաղաքականությունը, որը Հայաստանում իրականացվել է 1920 թ. վերջերին – 1921 թ. սկզբներին:- Էջ 268:

4. Խոսքը զինու-կոնյակի «Արարատ» տրեստի մասին է, որը հիմնվել է 1922 թվականին:- Էջ 268:

5. Նկատի ունի 1920-ական թվականների վերջերից սկսվող արդյունաբերության ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման բոլշևիկյան քաղաքականությունը:- Էջ 269:

6. Իրականում Մեծ Արարատի բարձրությունը 5165 մետր է:- Էջ 269:

7. 1926-1930 թթ. ընթացքում Երևանի պետական համալսարանն ունեցել է հինգ ֆակուլտետ՝ իրավատնտեսագիտական, գյուղատնտեսական, տեխնիկական, բժշկական և մանկավարժական՝ իր երեք բաժիններով (կենսաբանական, ֆիզիկամաթեմատիկական և պատմագրական):- Էջ 271:

8. Խոսքը Օպերայի և բալետի պետական ակադեմիական թատրոնի մասին է:- Էջ 271:

9. Խորհրդա-թուրքական պայմանագիրը կնքվել է 1921 թ. մարտի 16-ին Մոսկվայում, իսկ 1921 թ. հոկտեմբերի 13-ին Կարսում պայմանագիր է կնքվել մի կողմից՝ Հայաստանի, Վրաստանի և Ադրբեջանի Խորհրդային հանրապետությունների, մյուս կողմից՝ Թուրքիայի միջև:- Էջ 273:

10. Վրիպակ է, իրականում ՀԲԸ միությունն ստեղծվել է 1906 թվականին:- Էջ 276:

11. Խոսքը Գրիգոր և Կարապետ Մելքոնյան եղբայրների նշանավոր կտակի մասին է, որով Մայր Հայրենիքում և Սփյուռքում հիմնադրվել են դպրոցներ, հիվանդանոցներ, ծերանոցներ, հրատարակչություն և այլն:- Էջ 276:

12. Խոսքը Փարիզի Նուբարյան Մատենադարանի մասին է, որը գործում է առ այսօր:- Էջ 277:

13. Խոսքը Փարիզի Մարի Նուբար ուսանողական տան մասին է:- Էջ 277:

14. Ակնարկում է Սամուել Մուրադին և Էդուարդ Ռափայելի Ղահրամանյանին, որոնց տրամադրած գումարներով են հիմնադրվել նշված դպրոցները:- Էջ 278:

15. **Jawboru** (անգլ.) - բոլ սկաուտների տարեկան մարզախաղեր:- Էջ 278:

16. Ուսումնասիրողների մեծամասնությունը կարծում է, թե խոսքը Փավստոս Բուզանդի մասին է:- էջ 279:

17. Պրոկոպիոս Կեսարացին (մոտ 500-563) բյուզանդական ամենանշանավոր պատմագիրներից է: Նրա երկասիրությունները արժեքավոր տվյալներ են պարունակում նաև Հայոց պատմության վերաբերյալ: Այդ տվյալներն ի մի է բերել, թարգմանել և ծանոթագրություններով հրատարակել է Հր. Մ. Բարթիկյանը (տե՛ս «Օտար աղբյուրները Հայաստանի և հայերի մասին». 5. Բյուզանդական աղբյուրներ. Ա. Պրոկոպիոս Կեսարացի, Երևան, 1967):- էջ 279:

18. Այստեղ Պրոկոպիոս Կեսարացուց բերված հատվածը տրվում է ըստ Հր. Բարթիկյանի թարգմանության (տե՛ս անդ, էջ 10-12):- էջ 279:

19. Իրականում այդ ժամանակ պարսից թագավորն էր Շապուհ II Երկարակյացը (310-379):- էջ 279:

20. Խոսքը Հայոց սպարապետ Վասակ Մամիկոնյանի մասին է:- էջ 280:

21. Հմմտ. Փավստոս Բուզանդ, IV, գլ. ԾԴ:- էջ 281:

## ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍ ԽՈՐԵՆ Ա-Ի ՀԻՇԱՏԱԿԻՆ

(էջ 282)

Գրված է 1938 թ. մայիսին Բրյուսելում: Հիշատակի խոսք է, որ արտասանվել է Ամենայն Հայոց կաթողիկոս Խորեն Ա Մուրադբեգյանի մահվան առիթով բրյուսելահայ համայնքում հրավիրված սգահանդեսին:

Բնագիրը, որ պահվում է Համազգայինի Բեյրութի գրական պահոցի պրոֆ. Ն. Աղոնցի ֆոնդում (տե՛ս պահարան I, գզրոց Ը/Ա-8, թթ. 1-3), սևագիր է, դժվար վերծանելի, երբեմն էլ անհասկանալի: Մեր շնորհակալությունն ենք հայտնում պրոֆ. Պետրոս Բեդիրյանին, որը մեծապես օգտակար եղավ աղոնցյան այս թանկարժեք մասունքները վերծանելիս: Առաջին անգամ լույս է տեսել «Հայաստանի Հանրապետություն» օրաթերթում (1996, 7 մարտի, էջ 2):

Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Վրիպակ է, պետք է լինի ապրիլի 6-ին:- էջ 282:

2. Նկատի ունի Բրյուսելի «Հայ համայնքային միությանը»:- էջ 282:

3. Ակնարկում է Հայ եկեղեցու եպիսկոպոսապետ-կաթողիկոս Գրիգոր Լուսավորչին:- էջ 283:

4. Նկատի ունի Հովհ. Թումանյանի «Թմկաբերդի առումը» պոեմի հետևյալ տողերը՝

*Չարն էլ է միշտ ապրում անմահ,*
*Անե՞րբ նրա չար գործին...*- էջ 284:

5. Նկատի ունի 1933 թ. դեկտեմբերի 24-ին Նյու Յորքի Ս. Խաչ եկեղեցում դաշնակցական ահաբեկիչների կողմից Ամերիկայի հայոց հոգևոր թեմի առաջնորդ (1931-1933) Ղևոնդ արքեպ. Դուրյանի սպանությունը:- էջ 284:

6. **Craviora sunt remedia periculis** (լատ.) - «Ծանր են կործանման բուժամիջոցները»:- էջ 284:

7. Նկատի ունի Ս. Էջմիածնից բաժանվելու, արտասահմանի հայության համար առանձին կաթողիկոսություն ստեղծելու Դաշնակցության գործելակերպը:- էջ 284:

8. Այսինքն՝ Ամենայն Հայոց կաթողիկոսը:- էջ 284:

9. Խոսքը վերաբերում է հայրապետական պատվիրակ Գարեգին արքեպ. Հովսեփյանցին:- էջ 284 :

10. Տե՛ս սույն, էջ 478, ծան. 7:- էջ 285:

11. Ձեռագիրն այստեղ ընդհատվում է:- էջ 285:

## ՀԱՅ ՀԱՅՏՆԻ ԱԽՈՅԱՆՆԵՐ ԱՆՑՅԱԼՈՒՄ

(էջ 289)

Գրված է 1930-ական թվականների կեսերին Բրյուսելում: Բնագիրը, որ պահվում է Համազգայինի Բեյրութի գրական պահոցի պրոֆ. Ն. Աղոնցի ֆոնդում (տե՛ս պահարան I, զզրոց Գ/Ա-8, թթ. 1-8), սևագիր է, անմշակ, դժվար ընթեռնելի: Հանրամատչելի ոճը, անփույթ ձեռագիրը, գիտական ապարատի բացակայությունը, մեծ թվով հապավումներն ու պայմանական նշանները վկայություն են այն բանի, որ սա հավանաբար եղել է զեկուցման թեմայի ուրվագիծ: Առաջին անգամ տպագրվել է «Էջմիածին» ամսագրում (2003, № Ե, էջ 97-105): Ծողատակերը (գիտական ապարատ), որ կազմվել է մեր կողմից, այստեղ տրվում են որպես ծանոթագրություններ:

Արտատպվում է այս հրատարակությունից:

1. **Արտավան Արշակունի** - բյուզանդական բանակի հայազգի զորավար, Հովհաննես Արշակունու որդին: Նախապես մարտնչել է Բյուզանդիայի դեմ, 539 թ. սպանել է Արևմտյան Հայաստան արշաված բյուզանդական զորավարներ Ակակիոսին և Սիտտասին: Այնուհետև ծառայել է Հուստինիանոս I կայսեր: Հյուսիսային Աֆրիկայում մարտնչել է վանդալների դեմ: 545 թ. սպանել է Նումիդիայի զորահրամանատար Գոնթարիսին և հպատակեցրել Նուբիան (546 թ.): Նշանակվել է Նուբիայի կառավարիչ: 548 թ. Հուստինիանոս I-ի դեմ կազմակերպել է դավադրություն, որի անհաջող ելքից հետո բանտարկվել է: Ներում շնորհվելուց հետո նշանակվել է նախ Թրակիայում (549 թ.), ապա Սիցիլիայում (551 թ.) տեղակայված բյուզանդական զորքերի հրամանատար:

Ն. Ադոնցը Արտավան Արշակունուն հատուկ ուսումնասիրություն է նվիրել (տե՛ս «Արտավան Արշակունի», «Հայրենիք» ամսագիր, 1929, № 11, էջ 96-109: Նաև՝ **Ն. Ադոնց**, Պատմական ուսումնասիրություններ, Փարիզ, 1948, էջ 297-319):- Էջ 290:

2. **Արտավազդ** (?-542) - բյուզանդական բանակի հայ զորավար: Աչքի է ընկել գոթերի դեմ մղված իտալական արշավանքների (541-542) և հատկապես Վերոնա քաղաքի պաշարման ժամանակ: Ընդունել է գոթերի Վալարիս զորականի՝ իր հետ մենամարտելու առաջարկը և սպանել նրան:- Էջ 290:

3. **Անզալաս** (Ընջյուղ) - բյուզանդական բանակի հայ զորական: 553 թ. Տուկանա քաղաքի մոտ տեղի ունեցած ճակատամարտի ժամանակ ընդունել է գոթերի բանակից Կոկկաս անունով մի քաջ մենամարտիկի հրավերը և գոտեմարտի ժամանակ սպանել նրան:- Էջ 290:

4. **Հովհաննես Գուզես** - բյուզանդական բանակի հայազգի զորավար, Հայաստանի կոմես Թովմայի որդին: Աչքի է ընկել 551 թ. Լազիկայի և Կողքիսի համար մղված պատերազմներում: Մենամարտի ժամանակ սպանել է հսկա մարմնով մի քաջ ալանի և ապահովել բյուզանդական բանակի հաղթանակը:- Էջ 290:

5. Ակնարկում է բյուզանդական նշանավոր պատմիչ Պրոկոպիոս Կեսարացուն: Հայաստանի և հայերի մասին Պրոկոպիոսի վկայությունները տե՛ս «Պրոկոպիոս Կեսարացի», թարգմանություն բնագրից, առաջաբանը և ծանոթագրությունները՝ Հրաչ Բարթիկյանի, Երևան, 1967:- Էջ 290:

**6. Հատվածը շարադրված չէ: Արտավանի մասին տե՛ս սույն, էջ 479, ծան. № 1:- Էջ 290:**

**7. «Պատմություն Սեբէոսի»**, աշխատասիրությամբ՝ Գ. Վ. Աբգարյանի, Երևան, 1979, էջ 92:- Էջ 290:

8. Բացօթյա կրկեսի բեմ, որի վրա տեղի են ունենում կառամարզումներ, ցլամարտեր և այլ մրցումներ:- Էջ 291:

9. Մերէոս, էջ 92:- Էջ 291:

10. Անդ, էջ 93:- Էջ 291:

11. Մովսէս Խորենացի, Պատմութիւն Հայոց, Տփղիս, 1913, էջ 218:- Էջ 291:

12. Մերէոս, էջ 93:- Էջ 291:

13. Սեբեոսի հրատարակիչներից Թ. Միհրդատյանցը («Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն», Կ. Պոլիս, 1851, էջ 104), Ք. Պատկանյանը («Պատմութիւն Սեբէոսի...», Ս. Պետերբուրգ, 1879, էջ 65), Գ. Աբգարյանը («Պատմութիւն Սեբէոսի», Երևան, 1979, էջ 101) նախընտրել են «Շում» տարընթերցվածը:- Էջ 292:

14. Սեբէոս, էջ 102: - Էջ 292:

15. Մեկ այլ կապակցությամբ Ն. Ադոնցը բառս սրբագրել է «սկայազայրք» (տե՛ս «Պատմական ուսումնասիրություններ», էջ 118): Այսպես է վարվել նաև Գ. Աբգարյանը (էջ 103): - Էջ 292:

16. Ստ. Մալխասյանցը բառը հենց այդպես էլ սրբագրել է («վերտ և ամուր», տե՛ս «Սեբէոսի Եպիսկոպոսի Պատմութիւն», ի ձեռն Ստ. Մալխասյանց, Երևան, 1939, էջ 68, սակայն Գ. Աբգարյանն առաջարկում է «վերտամուտ» տարբերակը (տե՛ս Գ. Աբգարյան, էջ 103, հմմտ. էջ 270-271, ծան. 312):- Էջ 292:

17. Հմմտ. Բասլաց բագավորի դեմ մարտնչող Տրդատ III Մեծի զրահը՝ «վերտ պահպանակօք» (տե՛ս Մովսէս Խորենացի, էջ 230):- Էջ 292:

18. Մերէոս, էջ 103:- Էջ 292:

19. Ն. Ադոնցը թեև խորագրել, սակայն այս հատվածը ևս չի շարադրել: Այլ առիթներով նա բազմիցս անդրադարձել է Վասիլ I կայսեր պատմական ծնկարագրին (տե՛ս «Վասիլ Հայկազն», «Հայրենիք», ամսագիր, 1931, №№ 8, 9, 10, 11, հմմտ. նույնի՝ ֆրանսերեն տարբերակը «Byzantion» հանդեսի 1933 թ. համարներում, տե՛ս նաև N. Adontz, Etudes Armeno-Byzantines, Lisbonne, 1965):- Էջ 292:

20. Զարմանալի է, սակայն Ն. Ադոնցը չի ուղղել Մատթեոս Ուռհայեցու մոտ նկատվող այս ակնհայտ անախրոնիզմը: Հայտնի է, որ Գագիկ I Շահնշահը մահացել է 1020 և ոչ թե 971/972 թվականին: Հետևաբար, նշված դեպքերն էլ տեղի են ունեցել 1020 թվականից հետո:- Էջ 292:

21. **Մատթեոս Ուռհայեցի**, Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898, էջ 9:- Էջ 293:

22. Խոսքը վերաբերում է նշանավոր քաղաքական ու ռազմական գործիչ, մատենագիր, փիլիսոփա, մանկավարժ Գրիգոր Մագիստրոս Պահլավունուն (990-1058):- Էջ 293:

23. **Մատթեոս Ուռհայեցի**, էջ 13-14:- Էջ 293:

24. Անդ, էջ 92:- Էջ 294:

25. Անդ, էջ 109:- Էջ 294:

26. Եղբայրները աքսորում մնացին մինչև 1056 թ., երբ Թեոդորա կայսրուհին «մեծաւ փառաւորութեամբ արձակեաց զնոսա ի հայրենի աշխարհն իւրեանց ի բերդն Արկնի» (անդ, էջ 122):- Էջ 294:

27. «Պատմութիւն թաթարաց Վարդանայ պատմչի», Երուսաղեմ, 1870, էջ 47:- Էջ 295:

28. Անդ, էջ 49:- Էջ 295:

## ՑՈՒՑՄՈՒՆՔ «ԴԱՇՆԱԿՑՈՒԹՅԱՆ ԳՈՐԾԻ» ԱՌՆՉՈՒԹՅԱՄԲ

(էջ 296)

1905-1907 թթ. Ռուսական հեղափոխության պարտությունից հետո, ցարական կառավարությունը լայնածավալ հարձակում սկսեց երկրի դեմոկրատական ու հեղափոխական ուժերի նկատմամբ: Ուշադրության կենտրոնում հայտնվեց նաև ՀՀ Դաշնակցություն կուսակցությունը, որին Ռուսաստանի վարչապետ, փաստացի դիկտատոր Պ. Ստոլիպինը համարում էր ցարական վարչակարգի համար ամենավտանգավոր քաղաքական ուժն Անդրկովկասում: Արդեն 1908 թ. վերջից նախաձեռնվեց ՀՅԴ-ի ու նրա միջոցով՝ Անդրկովկասի հայ մտավորականության ընտրանու դեմ ուղղված հալածանքների, ձերբակալությունների, դատավարությունների մի լայնածավալ գործընթաց, որը պատմության մեջ մտավ «ՀՅԴ-ի գործ» կամ «Լիժինյան» դատավարություն՝ հաճախ նույնանալով այդ գործը վարող Նովոչերկասկ քաղաքի օկրուգային դատարանին կից հատուկ կարևորության գործերով դատական քննիչ Ն. Լիժինի անվան հետ: Ձերբակալվել էին հարյուրավոր դաշնակցականներ, նաև՝ համակիրներ, այդ թվում՝ մտա-

վորական, քաղաքական, ազգային գործիչներ, անգամ՝ հոգևորականներ: Ցարական Օխրանայի կազմած այսպես կոչված «159-ի» գործի քննությունն իրականացնող Ն. Լիժինը կազմեց մի հսկայածավալ գործ՝ բաղկացած 135 հատորից, ավելի քան 45.000 թերթ ծավալով: Այդ ծավալից կազմվեց 6 ամփոփ մեքենագիր մեծածավալ հատոր՝ 4915 թերթ ընդհանուր ծավալով:

ՀՅԴ-ն մեղադրվում էր գործող ցարական վարչակարգը բռնի, ահաբեկչական եղանակով տապալելու ձգտման մեջ, և անխտիր բոլորը, ովքեր ՀՅԴ անդամ էին, պատժվում էին քրեական օրենսգրքի 102-րդ հոդվածով (պետական հանցագործություն): Կազմված դատական գործն իր ծավալով աննախադեպ էր անգամ Ռուսաստանի նման երկրի պատմության մեջ: Նիկոլայ II-ի հրամանով կառավարող Սենատը հատուկ ներկայացուցչությամբ պետական հանցագործության գործով 1912 թ. հունվարի 17 – մարտի 20-ին վճիռ կայացրեց 146 հոգու վերաբերյալ՝ Ավետիս Ահարոնյան, Ռոստոմ, Արմեն Գարո, Համո Օհանջանյան, Հովհաննես Քաջազնունի, Աբրահամ Գյուլխանդանյան, Ավետիք Սահակյան, Հովսեփ Արղության, Գարեգին Խաժակ, Սեքարեցի Սաքո, Սեբաստացի Մուրադ, Սեպուհ, Գարեգին Նժդեհ, Համազասպ Սրվանձտյան, Մինաս Բերբերյան, Սիմոն Վրացյան, Լևոն Թաղևոսյան, Լևոն Աքաբեկյան, Դավիթ Զավրիև, Սիրական Տիգրանյան, Հովհաննես Թումանյան, Ավետիք Իսահակյան, Հակոբ Սաոիկյան, Հուսիկ վարդ. Զոհրաբյան և ուրիշներ: Նրանց հիմնական «մեղքը» այն էր, որ 1905-1909 թթ. մասնակցել էին Դաշնակցության գործունեությանը: Նրանց մեծ մասը (94 հոգի) ազատվեցին՝ համարվելով արդարացված դատական կարգով (այդ թվում՝ Մ. Բերբերյանը, Ս. Տիգրանյանը, Հովհ. Թումանյանը, Աբր. Գյուլխանդանյանը, Գ. Նժդեհը): 52 հոգի դատապարտվեցին կարճաժամկետ բանտարկության և աքսորի ու անմիջապես ազատվեցին՝ արդեն իսկ բանտարկություն կրած լինելու և համապատասխան ժամկետը լրանալու պատճառով: Դատավարությունը «կազմակերպված» էր բավականին հապշտապ, անասելիորեն անփույթ (հատկապես ձևակերպումների, անձնանունների, տեղանունների հիշատակման և այլնի առումով): Մեղադրանքները ներկայացվել էին առանց իրավական լուրջ հիմնավորումների, այսպես կոչված «ըսի-ըսավ»-ների վրա հենվելով: Այս դատավարությունը ցարական իշխանություններին անհրաժեշտ էր ոչ միայն ՀՅԴ-ին, այլև նրա օրինակով՝ կայսրությունում գործող այլ կուսակցություններին ահաբեկելու նպատակով:

«Դաշնակցության գործի» առնչությամբ ի թիվս 283 այլ վկաների (Սուքիաս արքեպ. Պարզյանց, Գարեգին վարդ. Հովսեփյան, Մանուկ Աբեղյան,

Կարապետ Կոստանյան, Գևորգ վարդ. Չորեքչյան, Ներսես եպ. Մելիք-Թանգյան և ուրիշներ), 1910 թ. հոկտեմբերի 26-ին ցուցմունք է տվել նաև Ն. Աղոնցը (տե՛ս ՀՀ Ազգային արխիվ, Հայ հեղափոխական դաշնակցության ֆոնդ 1457, ցուցակ 3, գործ 5, թթ. 4256-4257):

1. Իրականում 1910 թ. Ն. Աղոնցը ոչ թե 37, այլ 39 տարեկան էր: Այլ առիթներով ևս, դժվար է ասել, թե ինչու, նա իր ծննդյան թվական է նշել 1873 թվականը: Սակայն, ինչպես ակներև է Բռնակոթի գյուղական ծխական մատյանից, Ն. Աղոնցը ծնվել է 1871 թ. հունվարի 10-ին (տե՛ս ՀՀ Ազգային արխիվ, ֆոնդ 47, ց. 3, գ. 237, համտ. նույն տեղում, ֆոնդ 312, ց. 2, գ. 1448, թ. 1):- Էջ 296:

2. Խոսքը 1906 թ. օգոստոսի 15-ից 30-ը Ամենայն Հայոց կաթողիկոս Մկրտիչ Ա Խրիմյանի օրհնությամբ Էջմիածնում գումարվելիք Ռուսաստանի հայերի պատգամավորական Կենտրոնական ժողովի մասին է: Ժողովում քննարկվելու էին եկեղեցու ժողովրդականացման, դպրոցական, տնտեսական, կրթական և այլ հարցեր:- Էջ 296:

3. Նիկողայոս Աղոնցն այդ ժամանակ գործուն դերակատարություն ուներ Ս. Պետերբուրգի հայկական համայնքի կյանքում, եղել է Եկեղեցական խորհրդի անդամ, Հայոց եկեղեցական գույքերի վարչության փոխնախագահ:- Էջ 296:

4. **Մինաս Բերբերյան** (1871-1919) - գրականագետ, թարգմանիչ, մանկավարժ: Դասավանդել է Գևորգյան ճեմարանում, եղել այդ ուսումնական հաստատության տեսուչ (1907):- Էջ 296:

5. **Պողոս Չուբարյանց** (1878-1920) – իրավաբան, հասարակական, քաղաքական գործիչ, 1906 թ. մասնակցել է Էջմիածնում հրավիրված Ռուսաստանի հայերի պատգամավորական Կենտրոնական ժողովի աշխատանքներին: - Էջ 297:

6. Նկատի ունի Թոփտի գյուղը, որը Պ. Չուբարյանցի ծննդավայրն էր:- Էջ 297:

7. «Նոր Դար» - գրական, քաղաքական օրաթերթ (Թիֆլիս, ընդհատումներով՝ 1883-1916 թթ.): Ունեցել է շեշտված ազգային-պահպանողական ուղղություն:- Էջ 297:

8. **Դավիթ Զավրիև** - Ս. Պետերբուրգի հայկական համայնքի գործուն ներկայացուցիչ:- Էջ 298:

9. Նկատի ունի այն հանգամանքը, որ Պ. Չուբարյանցը սովորել է Նախիջևանի թեմական դպրոցում և Էջմիածնի Գևորգյան ճեմարանում, որտեղ էլ ձեռնադրվել է սարկավագ: - Էջ 298:

10. Իրականում Պ. Զուբարյանցը ՀՀ Դաշնակցություն կուսակցության անդամ էր: Հետագայում՝ 1918 թ., այս կուսակցության կողմից ընտրվել է Ադրբեջանի Հանրապետության խորհրդարանի պատգամավոր: Սպանվել է մուսավաթականների կողմից:- Էջ 298:

## ՀԱՆՐԱԳԻՏԱՐԱՆԱՅԻՆ ՀՈԴՎԱԾՆԵՐ

(էջ 300)

Գրված է Ս. Պետերբուրգում 1910-1911 թվականների ընթացքում: Լույս են տեսել «Новый энциклопедический словарь» (Второе изд. под общ. ред. К. К. Арсеньева, изд. Ф. А. Брокгауза и И. А. Ефрона, т. 3, СПб., 1911) համբավավոր հանրագիտարանում՝

ա. Հայաստան, էջ 596-620,

բ. Հայ գրականություն, էջ 641-656,

գ. Հայոց լեզու, էջ 658-664 (տե՛ս նաև իմտերնետային կայքում):

Որոշեցինք հանրագիտարանային այս հոդվածների հայերեն թարգմանությունները (թարգմանիչ՝ Գ. Ս. Մաղոյան) ընթերցողի ուշադրությանը ներկայացնել առանց անխուսափելի թվացող ծանոթագրությունների: Հակառակ դեպքում դրանք կարող էին տասնյակ էջերի ծավալ ունենալ, որը մեզ շատ հեռու կտաներ: Գրված լինելով անցած դարասկզբին՝ այդ հոդվածները արդյունք են և արձագանք ժամանակի գիտության բարձրաչափի: Բնականաբար, այժմ՝ տարիներ անց, հոդվածներում զարգացված առանձին տեսակետներ, թվական տվյալներ և գավազանացանկեր այլևս համահունչ չեն գիտության արդի ձեռքբերումներին:

Մանավանդ առարկությունների տեղիք են տալիս հայ ժողովրդի կազմավորման և հարակից առանձին հարցերի արծարծման մեկնաբանությունները, ինչպես նաև հայերի նախահայրենիքի տեղադրման, Ուրարտուի էթնիկ բնույթի վերաբերյալ արտահայտված տեսակետները և այլն: Ինչպես արդեն նշել ենք «Հայաստանի պատմություն: Ակունքները (X-VI դարեր Ք. ա.)» ուսումնասիրության ծանոթագրությունների առաջաբանում՝ «Վերջին 50-60 տարիների ընթացքում պատմական Հայաստանի տարբեր հատվածներում կատարված հնագիտական պեղումները զգալիորեն հարստացրել են մեր հնագույն պատմության և մշակույթի ուսումնասիրության աղբյուրագիտական հենքը: Նորահայտ նյութերի հետ մեկտեղ

շրջանառության մեջ մտան ավանդական պատկերացումներից արմատապես տարբերվող նոր մեկնաբանություններ և տեսակետներ, որոնց արդյունքում շատ հարցեր վերանայվել են» (տե՛ս Ն. Ադոնց, Երկեր, հատ. Դ, Երևան, 2009, էջ 594):

Ն. Ադոնցի հանրագիտարանային հոդվածները, անկասկած, նոր և քարմ խոսք են մեր անցյալի պատմության, մշակույթի և լեզվի վերաբերյալ: Հոդվածներ, որ հավուր պատշաճի են ներկայացրել օտար ընթերցողներին հայրենի եզերքն ու նրա մշակութային նկարագիրը, հայերի ավանդը համաշխարհային պատմության մեջ: Նպատակ չունենալով կանգ առնել դրանց կարևորություն և առանձնահատկությունների վրա՝ նշենք, որ հոդվածները գրված են ջերմ հայրենասիրական շնչով, սեփական պատմության ու մշակույթի նկատմամբ հպարտության և պատկառանքի անքաքույց զգացողությամբ:

## ԽՈՍՔ ԱՊՐԻԼԻ 11(24)-ի ՍԳԱՀԱՆԴԵՍԻՆ

(էջ 366)

Գրված է 1929 թ. ապրիլին Փարիզում: Լույս է տեսել Ազգային, քաղաքական և գրական «Յառաջ» օրաթերթում՝ (տե՛ս «Ապրիլ 11/24-ի սգահանդեսը. հազարավոր ժողովրդի հարգանքը մեռելներու հիշատակին», 1929, 30 ապրիլի, № 944, էջ 1): Սգահանդեսը, որ տեղի է ունեցել «Փըթի ժուռնալ»-ի ընդարձակ սրահում, նախագահել է պրոֆ. Ն. Ադոնցը:

Նախագահի բացման խոսքը տրվում է ըստ «Յառաջ»-ի հրատարակության:

## ԿԱՐԱՊԵՏ [ՀԱՐՈՒԹՅՈՒՆԻ] ԵԶՈՎ (ԵԶՅԱՆՑ)

(էջ 367)

Գրված է 1934 թ. Բրյուսելում: Միայն տարակուսելի է ռուսերենով գրված լինելու հանգամանքը. հավանաբար նախատեսված է եղել տպագրության Փարիզի ռուսալեզու մամուլում:

Սույն հոդվածը, որ բնորոշ չէ Ադոնցի պատմագիտական ճաշակին և զերծ է պատմա-քննական վերլուծությանը հատուկ տարրերից, հանրամատչելի, պարզ շարադրանք է, հարգանքի տուրք ազգային նշանավոր գործչի բարի հիշատակին:

Եզովը բախտորոշ դեր է խաղացել պատմաբանի ճակատագրում: Նրա անմիջական հոգողությամբ է, որ երիտասարդ Ադոնցը ընդունվել է Ս. Պետերբուրգի համալսարանի պատմա-բանասիրական ֆակուլտետ, ապա տեղափոխվել Դորպատի համալսարանի իրավաբանական ֆակուլտետը և ի վերջո ուսումնառությունը շարունակել Ս. Պետերբուրգի համալսարանի Գրականության և արևելյան լեզուների ֆակուլտետում: Ն. Ադոնցի ուսումնառության ծախսերը, դարձյալ Կ. Եզովի համառ երաշխավորությամբ, պատրաստակամորեն իր վրա է վերցրել ազգային մեծ բարերար Ալեքսանդր Մանթաշյանը: Վերջապես Եզովի միջնորդությամբ է, որ Մանթաշյանը ֆինանսավորել է Ն. Ադոնցի արտասահմանյան եռամյա (1899-1902) ուսումնառության ծախսերը՝ Մյունխենի, Փարիզի, Լոնդոնի և Վենետիկի գիտական կենտրոններում:

Իր ստեղծագործական երկարամյա գործունեության ընթացքում, համապատասխան առիթների դեպքում, արդեն նշանավոր պատմաբանը հոգու պարտք է համարել հրապարակային դասախոսություններ կարդալ Կ. Եզովի և նրա ջանքերով ստեղծված Սանասարյան վարժարանի մասին (տե՛ս «Յառաջ», 1927, 7 և 16 հունիսի): Ստորև ներկայացվող աշխատանքը գրված է նման մի հանգամանքի՝ Եզովի ծննդյան 100-ամյակի առթիվ: Հոդվածը, որի ռուսերեն ինքնագիրը պահվում է Համազգայինի Բեյրութի գրական պահոցի պրոֆեսոր Նիկողայոս Ադոնցի ֆոնդում (պահարան I, գզրոց Է, թղթածրար Ա-8, թթ. 1-12), հայերեն է թարգմանել Օ. Ս. Վարդազարյանը:

1. Բնագրում՝ «Г. А. Езов = Герасим Артемевич», թարգմանությունում անվանաձևն ամենուր դարձրել ենք Կարապետ Հարությունի:- Էջ 367:

2. Որոշ ժամանակ Եզովը ստանձնել է նաև հայոց լեզվի ամբիոնի վարիչի պարտականությունները: - Էջ 367:

3. Հավանաբար նրանց դուստրերն էին Մանուշակ և Շուշանիկ Բողդանյան քույրերը, որոնք Եզովի գիտական ղեկավարությամբ հրատարակության էին պատրաստել XIX դարի ռուսական 248 անուն թերթերում և ամսագրերում տպագրված հայերին և Հայաստանին վերաբերող հոդվածների մատենագիտական մի ցանկ (2586 միավոր): Ցավոք, չափազանց արժեքավոր այդ աշխատանքի հետագա ճակատագիրն անհայտ է: Միայն ստույգ է, որ Կ. Եզովը փորձել է այն տպագրել Էջմիածնում, սակայն ապարդյուն (տե՛ս Յու. Վարդանյան, Մեսրոպ Տեր-Մովսիսյանի նամակները Կարապետ Եզյանին, «Լրաբեր», ՀԽՍՀ ԳԱ (հասարակ. գիտ.), 1977, № 10, էջ 98, 100): Այս մատենագիտական ցանկի մասին տե՛ս նաև

«Известия Императорской Академии наук», СПб., 1916, նմտ. «Армянский вестник», М., 1916, № 22, с. 17.- Էջ 367:

4. Որպես պատմաբան - արևելագետ Եզովը լայն ճանաչում ուներ Ռուսաստանում: Արևելագետների միջազգային գիտաժողովներում նա հաճախ էր ներկայացնում ռուսական արևելագիտությունը և հանդես գալիս գիտական զեկուցումներով: Եվ պատահական չէ, որ նա ռուսական և եվրոպական արևելագիտական մի շարք ընկերությունների անդամ էր:- Էջ 368:

5. **Ստեփան Մամիկոնյան** (1859-1921) – նշանավոր հասարակական ու մշակութային գործիչ, իրավաբան: Հետագայում Մոսկվայի հայկական կոմիտեի նախագահ:- Էջ 368:

6. Տե՛ս տեղեկատվությունը՝ «Կոնդակ օրհնության Կարապետ Եզյանցի 50-ամյա հոբելյանի առթիվ», «Արարատ», 1904, էջ 919:- Էջ 368:

7. **Գրիգորի Բուդագով** (1852-1921) - ճարտարապետ, կամրջաշինարար, պետական գաղտնի խորհրդական, Ռուսական կայսրության երկաթուղային հաղորդակցության փոխնախարար:- Էջ 369:

8. **Մկրտիչ Սանասարյան** (1818-1890) – մեծատուն, ազգային բարերար: Նրա տրամադրած դրամական միջոցներով են բացվել Վանի Մարիամյան օրիորդաց վարժարանը, Վանի նահանգի Խառակոնիս, Նուխի գավառի Նիժ և Վարդաշեն գյուղերի դպրոցները, Կարինի Սանասարյան կրթարանը, աջակցել է Գևորգյան ճեմարանի հիմնադրմանը:- Էջ 369:

9. **Հովսեփ Իզմիրյանց** (1817-1883) - մեծատուն, ազգային բարերար: Պարբերաբար նվիրատվություններ է կատարել ազգային ամենատարբեր հաստատությունների՝ եկեղեցուն, դպրոցին, մասնավորապես Գևորգյան ճեմարանին: Հայոց լեզվի և պատմության լավագույն աշխատությունների համար սահմանել է դրամական պատկառելի մրցանակ (տե՛ս «Արարատ», 1875, էջ 114-115, 149-153; 1880, էջ 40-41; 1881, էջ 332 և այլն):
Հովսեփ Իզմիրյանցի կտակի վերաբերյալ մանրամասն տե՛ս Կ. Եզյանց, Հովսեփ Իզմիրյանցի կտակը և նորա կատարումը, «Արարատ», 1889, էջ 661-668:- Էջ 369:

10. Պանսիոնի սաներից Ալ. Երիցյանը վկայում է, որ Ս. Պետերբուրգի հայ երիտասարդներին միավորողը և ուղղություն տվողը Կ. Եզովի ընտանիքն էր. «Եզյանցի մայրը և քույրը իրենց սիրալիր և գթասիրաբար ընդունելություններով շատերին մոռացնել էին տվել ընտանիքի և բարեկամների կարոտը: Այստեղ շատերն են օգնություն ստացել, սփոփվել և մխիթարվել, այստեղ շատերն են բարի խորհուրդներ

լսել և պաշտպանություն գտել: Վերջապես այստեղ շատերն են սովորել ճանաչել իրենց պարտականությունները դեպի ընկերը, դեպի ընտանիքը, հայրենիքը և հասարակությունը: Եվ ահա պարոն Եզյանցի տունը դարձել էր մի գրավիչ կենտրոն մայրաքաղաքի հայ ուսանողության համար» [տե՛ս Աղ. Երիցյանց, Գրիգոր Արծրունին և նրա քսանհինգ տարվա գրական գործունեության առթիվ (1865-1890), Թիֆլիս, 1890, էջ 52, հմմտ. Վլ. Բ. Բարխուդարյան, Մոսկվայի և Պետերբուրգի հայկական գաղութների պատմություն (XVIII դարի կես – XIX դարի սկիզբ), Երևան, 2010, էջ 168-169]:- Էջ 370:

11. Մկրտիչ Սանասարյանը եղել է Ս. Պետերբուրգի շոգենավային ընկերության տնօրենների խորհրդի անդամ, երկար տարիներ ղեկավարել «Վոլգա-Կասպից ծով-Պարսկաստան շոգենավային հաղորդակցության ընկերություն»-ը և այլն:- Էջ 370:

12. Սանասարյան դպրոցն իր պարապմունքներն սկսել է 1881 թ. հոկտեմբերի 1-ին: Ուսման տևողությունը ինը տարի էր, կից գործում էր երկու տարվա ծրագրով ուսուցիչների վերապատրաստման դասընթաց:- Էջ 371:

13. Դպրոցի կանոնավոր գործառման համար Սանասարյանը կտակել է նաև «268.428 ռուբլու տոկոսաբեր արժեթղթեր, որոնք բորսային գներով այն ժամանակ կազմում էին մոտավորապես 345.000 ռուբլի» (տե՛ս «Մշակ», 1890, 8 նոյեմբերի, № 102): Բացի այդ, «նա թողել է 202.894 ռուբլու ոչ ժամկետանց և 52.391 ռուբլու ժամկետանց պարտամուրհակներ» (տե՛ս Երվանդ Շահազիզ, Կարապետ Եզյան, Մկրտիչ Սանասարյան, Լևոն Տիգրանյան, «Էջմիածին», 1946, նոյեմբեր-դեկտեմբեր, էջ 47): Եզովի խորհրդով Սանասարյանը Կ. Պոլսի Հայոց պատրիարք Մաղաքիա արքեպ. Օրմանյանին 2000 ռուբլի է տրամադրել վարժարանի համար կալվածք գնելու (տե՛ս «Արարատ», 1904, էջ 919): Ինքը՝ Եզովը, Սանասարյան վարժարանին է կտակել իր ճոխ գրադարանը: Սանասարյան վարժարանին նվիրաբերված կտակների մասին տե՛ս «Ա. Հիմնական կանոնադրություն Սանասարյան վարժարանի: Բ. Կտակագիր Մկրտիչ Սանասարյանցի: Գ. Կտակագիր տիկին Մարիամ Մարտիրոսյան Կազաչկյանցի: Դ. Կտակագիր բարեհիշատակ Կարապետ Եզյանցի», Կ. Պոլիս, 1910:- Էջ 372:

14. Խոսքը Սահակ-Մեսրոպյան գրական մրցանակաբաշխության մասին է:- Էջ 372:

15. Ցարական կառավարությունը հայկական դպրոցները փակել է երկու անգամ՝ 1885 թ. սկզբին (մոտ 300 դպրոց) և 1896 թ. հունվարին (230 դպրոց):- Էջ 373:

16. Ս. Պետերբուրգի Հայոց եկեղեցական խորհրդի, նրա եկամուտների ու ծախսերի, դերի ու նշանակության մասին մանրամասն տե՛ս Վլ. Բ. Բարխուդարյան,

Մոսկվայի և Պետերբուրգի հայկական գաղութների պատմություն (XVIII դարի կես – XX դարի սկիզբ), էջ 65-100:- Էջ 374:

17. Կ. Եզովի երկասիրությունների վերաբերյալ մատենագիտական ցանկեր չկան: Այստեղ ներկայացնում ենք նրա՝ մեզ հայտնի աշխատությունների համառոտ մատենագիտությունը.

1. «Об учении персидских магов. Сочинение Езника, армянского писателя V в.», տե՛ս «Журнал Министерства народного просвещения», 1858, № 1, январь, с. 247-287; № 4, апрель, с. 15-32: Տե՛ս նաև առանձին գրքով (СПб., 1859).
2. «Об изучении в Европе армянского языка, истории и литературы», տե՛ս «Современник», 1858, т. 68, отдел II, с. 257-264.
3. «Армянская журналистика в России», տե՛ս «Современник», 1858, т. 70, отдел II, с. 135-136.
4. «Внутренный быт древней Армении», СПб., 1859.
5. «Ներքին կյանք հին Հայաստանի: Պատմաբանական քննություն», ռուսերեն բնագրից թարգմանեց Պերճ Պռոշյանը, Շուշի, 1864:
6. «Բոնի միութիւն Հայոց Լեհաստանի ընդ եկեղեցւոյն Հռովմայ. Ժամանակակից յիշատակարանք», Ս. Պետերբուրգ, 1884:
7. «Պատմութիւն Լեւոնդեայ Մեծի վարդապետի Հայոց», առաջաբանը (80 էջ), Ս. Պետերբուրգ, 1887:
8. «Հովսեփ Իզմիրյանցի կյանքը և նրա կտակը», տե՛ս «Արարատ», 1889, էջ 661-668:
9. «Եվրոպական լեզուներով գրված գրքեր և հոդվածներ հայերի և Հայաստանի մասին», տե՛ս «Հանդես գրական և պատմական», Մոսկվա, 1890, գիրք 3, էջ 1-14 (հավելված):
10. «Յովհաննու Դարդելի Ժամանակագրութիւն Հայոց», առաջաբանը (81 էջ), Ս. Պետերբուրգ, 1891:
11. «Aperçu de l'étude de la langue arménienne en Europe. (Actes du 8° Congrès Inter. des Orientalistes. Partie 3, sect. 2, fasc. 1), Leide, 1892.
12. «Сношение Петра Великого с Армянским народом». Документы, առաջաբանը (150 էջ), СПб., 1898.
13. «Начало сношения Эчмиадзинского патриаршего перестола с русским правительством. Историческое исследование по неизданным документам», տե՛ս «Кавказский вестник», Тифлис, 1901, № 10: Տե՛ս նաև առանձին գրքով (Тифлис, 1901):

14. «Ս. Էջմիածնի Մայր Աթոռի և ռուսաց կառավարության հարաբերությունների ծագումը», տե՛ս «Լումա», Թիֆլիս, 1904, սեպտեմբեր-հոկտեմբեր, № 5, էջ 5-24; № 6, էջ 23-43: Տե՛ս նաև առանձին գրքով (Թիֆլիս, 1904):

Կ. Եզովի պատմագիտական ժառանգության ընդհանուր բնութագիրը տե՛ս Հ. Ժ. Հովհաննիսյան, Հայագիտությունը Ռուսաստանում (պատմագիտություն. XIX դար), Երևան, 2004, էջ 327-353:- Էջ 374:

18. Որպես բնաբան Եզովն ընտրել է Պետրոս Մեծի՝ առ հայ ժողովուրդը հայտնի ուղերձի հետևյալ հատվածը.

«... понеже Мы оной Армянской
народъ въ особливую Нашу Императорскую милость
и протекцію приняли».

Ноября 10 дня 1724 г.
ПЕТРЪ. - Էջ 374:

## «ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱ»-Ի ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ

(էջ 375)

Գրված է 1937 թ. սեպտեմբերի 30-ին Բրյուսելում: Բնագիրը պահվում է Վիեննայի Մխիթարյան միաբանության արխիվում: Առաջին անգամ տպագրվել է «Հանդես ամսօրյա» ամսաթերթում (1937, սեպտեմբեր-հոկտեմբեր, էջ 451):

Արտատպվում է այս հրատարակությունից:

1. «Հանդես ամսօրյա»-ն հիմնադրվել է 1887 թվականին Վիեննայում՝ որպես Մխիթարյան միաբանության բաղոյական, ուսումնական, արվեստագիտական, իսկ 1919 թվականից՝ հայագիտական ամսաթերթ:- Էջ 375:

2. Ամսաթերթը հիմնել է Վիեննական Մխիթարյան միաբանության աբբահայր Արսեն աբբեպ. Այտընյանը (1824-1902): Առաջին խմբագիրն է եղել հ. Ղևոնդ Հովհաննիսյանը (1887-1889):- Էջ 375:

3. Հաջորդաբար «Հանդես ամսօրյա»-ն խմբագրել են՝ Հակոբոս վ. Տաշյանը (1890-1895), Գրիգորիս ծ. վ. Գալեմքեարյանը (1895-1898), Վարդան վ. Մեսրիսեղեկյանը (1898-1901), հ. Թովմաս Կետիկյանը (1901-1906), հ. Հմայակ Համբարյանը (1906-1909), հ. Ներսես Ակինյանը (1909-1913, 1920-1963), հ. Ալեքսանդր Մատիկյանը (1913-1920) և ուրիշներ:- Էջ 375:

4. Հակոբոս վ. Տաշյան (1866-1933) – նշանավոր հայագետ: 1885 թվականից Վիեննական Մխիթարյան միաբանության անդամ, վարդապետ, խմբագրել է «Հանդես ամսօրյա»-ն: - էջ 375:

5. Հայր Ներսես Ակինյան (1883-1963) – նշանավոր հայագետ: 1901 թվականից Վիեննական Մխիթարյան միաբանության անդամ, մատենադարանապետ, «Հանդես ամսօրյա»-ի խմբագրապետ:- էջ 375:

## Տ. ԹՈՐԳՈՄ ՍՐԲԱԶԱՆ ՊԱՏՐԻԱՐՔԻ ՀԻՇԱՏԱԿԻՆ

(էջ 376)

Գրված է 1939 թ. փետրվարի 10-ից հետո Բրյուսելում: Տպագրվել է Երուսաղեմի Հայոց պատրիարքարանի «Սիոն» ամսագրում (1939, մարտ-ապրիլ, № 3-4, էջ 112):

Արտատպվում է այս հրատարակությունից:

1. Ակնարկում է Ամենայն Հայոց կաթողիկոս Խորեն Ա Մուրադբեգյանի ողբերգական մահը:- էջ 376:

2. Թորգոմ պատրիարք Գուշակյանը մահացել է 1939 թ. փետրվարի 10-ին:- էջ 376:

3. Նկատի ունի Հայրապետական պատվիրակ Գարեգին արքեպ. Հովսեփյանցին:- էջ 376:

4. Թորգոմ պատրիարք Գուշակյանի և պրոֆեսոր Նիկողայոս Ադոնցի մեծ ու անկաշառ բարեկամության վկայագիր կարող են ծառայել նրանց նամակագրության ընձեռած տվյալները (տե՛ս «Թորգոմ պատրիարք Գուշակյան և պրոֆեսոր Նիկողայոս Ադոնց», հրապարակումը՝ Պ. Հ. Հովհաննիսյանի, «Հասկ», հայագիտական տարեգիրք, «Նոր շրջան», Է-Ը տարի, 1995-1996, Անթիլիաս-Լիբանան, 1997, էջ 469-476):- էջ 377:

5. Նկատի ունի Եղիշե արքեպ. Դուրյան պատրիարքին (1921-1930):- էջ 377:

6. Թորգոմ արքեպ. Գուշակյանին փոխարինել է Մեսրոպ արքեպ. Նշանյանը (1939-1944):- էջ 377:

ԱՆՁՆԱՆՈՒՆՆԵՐԻ

32-66

## ՏԵՂԱՆՈՒՆՆԵՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

# ՀԱՎԵԼՎԱԾ

ՆԻԿՈՂԱՅՈՍ ԱԴՈՆՑ

# ԵՐԿԵՐ

Ձ

ՀՐԱՊԱՐԱԿԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ


Կազմի ձևավորումը՝ Գ. Վ. Մարիկյանի
Սրբագրիչ՝ Վ. Վ. Դերձյան
Համ. շարվածքը
և ձևավորումը՝ Ս. Ա. Գասպարյանի

Տպաքանակ՝ 500: Պատվեր 66:

ԵՊՀ հրատարակչություն, Երևան, Ալ. Մանուկյան 1

ԵՊՀ տպագրատուն, Երևան, Աբովյան 52

